

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՑ

•

ՏԵՂԱԳՐԱԿԱՆ, ՊԱՏՄԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

•

ՀԱՄԱԴՐԵՑ՝

ԱՐՇԱԿ ԱԼՊՈՅԱՃԵԱՆ

1961
ՏՊ. ՍԵՒԱՆ
ՊԷՅՐՈՒԹ

A PUBLICATION OF
EDUCATIONAL SOCIETY OF MAŁATIA

# HISTORY
# OF THE ARMENIANS IN MALATIA

With Topographical, Historical and Ethnographical Information

Edited by
**ARSHAG ALBOYADJIAN**

Printed by
**SEVAN PRESS**
P. O. Box 2669
BEIRUT (Lebanon)




էջ

*ՅԱՌԱՋԱԲԱՆ* — *ԺԱ*

*ՑԱՆԿ ՆԻՒԹԵՐՈՒ* — *ԺԵ*


## Ա· ՄԱՍ

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ


| | |
|---|---|
| Ա· Մալաթիա եւ շրջակայքը իբրեւ աշխարհամաս | 1 |
| Բ· Աշխարհագրական դիրք | 2 |
| Գ· Երկրաբանութիւն | 4 |
| Դ· Լեռնագրութիւն | 5 |
| Ե· Ջրագրութիւն | 6 |
| Մելաս–Մելոս (թրք· Թոխմա) գետ | 11 |
| Սուլթան Սու (գետակ) | 12 |
| Զ· Բուսականութիւն | 19 |
| Է· Կենդանական հարստութիւն եւ անասնապահութիւն | 26 |
| Ը· Հանքային հարստութիւն | 29 |
| Թ· Կլիմայ | 32 |
| Ժ· Հաղորդակցութեան միջոցներ | 36 |
| ԺԱ· Վարչական բաժանումներ | 46 |
| ԺԲ· Հնութիւններ եւ պատմական յիշատակարաններ | 56 |
| Այրեր եւ նշանաւոր վայրեր | 62 |
| Անշարժ հնութիւններ, խաներ եւայլն | 63 |
| Նուիրական հնութիւններ (կործանած կամ կանգուն) | 63 |
| Հին Մալաթիա քաղաքին հնութիւնները | 73 |
| Ասլան Թեփէ | 74 |
| Մրցորդ քրիստոնէութեան | 82 |

# Բ· ՄԱՍ

# ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑԵԱԼ

•

## ՄԱԼԱԹԻՈՅ ՆԱԽԾՍԱԿԱՆՆ ՈՒ ՊԱՏՄԱԿԱՆԸ՝ ՔԱՐԱՅԻՆ ՇՐՋԱՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԻՍԼԱՄԱԿԱՆ ԳՐԱՒՈՒՄԸ

Գրեց՝ ԵՂԻԱ Ս· ՔԱՍՈՒՆԻ

էջ

Ա· Փոքր Ասիոյ նախապատմութիւնը 85
Բ· Մալաթիա հին հաթեանց օրով 92
Գ· Անցումն Հաթեան շրջանէն դէպի Ասորեստանեանը 97
Դ· Մալաթիա բնիկ թագաւորաց ներքեւ 108
Ե· Մելիտինէ Ասորեստանեայց նահանգ 126
Զ· Հատեան Մալաթիոյ մշակոյթը 142
Քանդակագործութիւն 145
Մալդիյայի խմբանկար քանդակը 147
Մալդիյա եւ Ուրարտու 148
Մելիտինէի նոր–Հաթեան մշակոյթին նշանակութիւնը 149
Է· Կատաւոնիա եւ Մելիտինէ՝ Պարսկական եւ Յունական շրջաններուն 154
Ը· Մելիտինէ Հռովմայեցւոց օրով·— Քրիստոնէութիւնը Մելիտինէի մէջ 161
Թ· Մալաթիա Արաբական շրջանին 176
Ժ· Արաբներու եւ Բիւզանդացիներու համար Մելիտինէի մասնաւոր կարեւորութիւնը 208
ԺԱ· Ասիական բարբարոսները Մելիտինէի շուրջ 213
ԺԲ· Մելիտինէ՝ Փիլարտոսի իշխանապետութեան մաս 222
ԺԳ· Մալաթիոյ նորտ իշխանները եւ Գաբրիէլ «Յոյն»ը 227
ԺԴ· Քեսունի իշխանութիւնը եւ այլ մանրապետութիւնք Եփրատացւոց մէջ 241
ԺԵ· Մալաթիա Դանիշմենտեանց իշխանութեանց տակ (1124–1178) 253
ԺԶ· Մալաթիա Ռումի Սելճուկ տիրապետութեան տակ (1178–1315) 263
ԺԷ· Մալաթիա Թիւրքմէն կէս-անկախ իշխանութեան տակ (1315–1516) 277
ԺԸ· Մալաթիա Օսմանեան տիրապետութեան տակ 289

## Գ. ՄԱՍ

# ՀԱՅԵՐԸ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՄԷՋ

## (ՀԻՆ ՕՐԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ)

էջ

Ա. Հնագոյն ժամանակներէն մինչեւ Ալեքսանդր 307
Բ. Ալեքսանդրի աշխարհակալութենէն մինչեւ Հռոմէական տիրապետութիւն 309
Գ. Հռոմէական տիրապետութեան տակ 310
Դ. Բիւզանդական շրջան 315
Ե. Արաբական շրջանի Մելիտինէի Հայերը (Է—ԺԱ դար) 325
Զ. Ասիական բարբարոսներու արշաւանքները մինչեւ Օսմանեան տիրապետութիւն 336
Հայերու թիւը 341
Կրօնի ազատութիւն և հոգեւոր վարչութեան կազմակերպութիւն 345
Հայ տարրը եւ իր դերը այս շրջանին 351
Հայ արուեստներու դերը 355
Է. Մալաթիոյ Հայերը Օսմանեան Թիւրքերու տիրապետութեան տակ 366

## Դ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻԱ ԵՒ ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

## Ա

### ՄԱԼԱԹԻԱ ՔԱՂԱՔԸ

Ա. Քաղաքին վայրը եւ դիրքը 381
Բ. Քաղաքին անունը, անցեալին մէջ ունեցած վիճակները եւ տեղափոխութիւնները 398
Տեղափոխութիւն կամ փոփոխութիւն հին եւ նոր քաղաքի 402
Գ. «Արկածք եւ Պատահարք» 436
Դ. Բնակչութիւնը եւ Հայոց թիւը 446

## Բ.

### ՄԱԼԱԹԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

Ա. Մալաթիա գաւառ 463
1. Օրտուզի կամ Հորտէօզ 467

Էջ
2· Հին Մելիտինէ կամ Էսքի Շեհիր 470
Բ· Աղնա Տաղ գաւառը 471
Գ· Պեսնի–Պահեստին 481
Դ· Հիւսնի–Մանսուր կամ Ադիեաման 491
Ե· Քեալդա – Գաղթոյ – Քեալդէ 506

# Է· ՄԱՍ

# ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԿԵԱՆՔ

## Ա·

## ԿՐՕՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Ա· Եկեղեցիներ եւ աղօթատեղիներ 523
1· Ս· Աստուածածին Եկեղեցի 528
2· Ս· Երրորդութիւն Եկեղեցի 531
3· Ս· Յարութեան Եկեղեցի 533
4· Անծածկոյթ Սրբավայրեր 537
Բ· Առաջնորդութիւն 538
1· Իր հաստատութիւնը 538
2· Իր դիրքը Հայ Եկեղեցւոյ նուիրապետութեան մէջ 543
Գ· Թեմագրութիւն 545
Դ· Իր յարաբերութիւնները բարձրագոյն աթոռներու հետ 555
Ե· Գաւազան առաջնորդներու 555
ՄԱՂԱԹԻԱ 556
Զ· Յարակից թեմեր 583
Է· Հայ վանքեր 591
ա· Սուրբ Փրկիչ վանք 592
բ· Ս· Լուսաւորիչ վանք 603
գ· Անարծաթ բժիշկի վանք 616
դ· Կարմիր վանք (Ս· Կարապետ) 623
ե· Ահարոնի վանք 624
զ· Թէոդորոսի կամ Ս· Թորոսի վանք Դերձկի 624
է· Ս· Սարգիս վանք 626
ը· Ս· Գէորգ վանք 627
թ· Ծ· Մարտիրոս վանք 627
ժ· Ս· Կոնոնոս վանք 628
ժա· Ս· Օհան վանք 628
ժբ· Ս· Օհան Հեքիմխանի 629

Էջ

ժգ· Ս· Աստուածածին վանք Հէքիմ խանի 630
ժդ· Կարկառի Ս· Տիմոթէոսի վանք 632
ժե· Քեսունի կարմիր վանքը 636

Բ·

ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷՆԵՐԸ 640
Առաջնորդները 641
Հայ–կաթոլիկ կրթ· հաստատութիւններ 646
Թեմօրայք 648
Լատիններ 649

Գ·

ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ–ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆՆԵՐԸ 651
Հովիւները 663
Մալաթիոյ գաւառին Հայ–Աւետարանականները 666
Հայ Աւետարանական դպրոցներ 669
Աղանդաւորական շարժումներ 672

# Ջ· ՄԱՍ

# ԻՄԱՑԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔ

## 1

Ա· Մալաթիա իբր վայր մտաւորական շարժման 673
Բ· Առանձնական ուսուցում 679
Գ· Ընթերցում եւ գրչութիւն 681
Դ· Հայ դպրոցներ 690
1· Սահակեան մայր վարժարան 707
2· Ներսէսեան վարժարան 713
3· Աստղիկ Ընկերութեան վարժարան 714
4· Արամեան վարժարան 714
5· Կրթասիրաց վարժարան 715
6· Գայեանեան վարժարան 716
7· Սանդխտեան վարժարան 717
8· · · · · · 718
9· Հռիփսիմեանց վարժարան 718
10· Մանկապարտէզ 718
11· Ազգային Որբանոց 720

## Չ

## ՅԱՐԱՆՈՒԱՆԱԿԱՆ ԵՒ ՕՏԱՐ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա.

### ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ


1. Խաչատուրեան վարժարան 721
2. Որբանոց 724
3. Լատին վարժարանը 725
4. Լատին որբանոց 726


### Բ.

### ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ


1. Համայնքային դպրոցներ 726
2. Ամերիկեան որբանոց 731
3. Գերմանական որբանոց 732

Ե. Կրթական մշակներ 733
Զ. Վիճակային վարժարաններ 768
Առաջնորդական վիճակ Մալաթիոյ (տախտակ) 771
Է. Կրթական, մշակութային եւ բարեգործական ընկերութիւններ 772
Աստղիկ ընկերութիւն 782
Ներսէսեան ընկերութիւն 783
Կրթասիրաց ընկերութիւն (1880—1895) 783
Գայեանեան խնամակալուհիներու ընկերութիւն 785
Ընթերցասիրաց սանուց ընկերութիւն 785
Կրթասիրաց Երիտասարդաց ընկերութիւն 785
Ծիածան Մելիտինէի ընկերութիւն 786
Մալաթիոյ կրթասիրաց ընկերութիւն 787
Կրթասիրաց ընկերութիւն 788
Մասեաց ընկերութիւն 789
Ընթերցասիրաց ընկերութիւն 790
Զմշուտ ընկերութիւն (1908) 790
. . . . . ընկերութիւն (1896—1898) 790
Բանասիրաց ընկերութիւն 791
Մանկական ընկերութիւն 791
Մելիտինէի միութիւն (1925) 792
Հայ Բարեգործական Ընդհանուր Միութիւն 793
Արամեան ընկերութիւն Հիւսնի Մանսուրի 794

էջ

Բարեգործական ընկերութիւն Հիւսնի Մանուրի ... 794
Ը· Լսարաններ 794
Կիրակնօրեայ լսարան 794
Թ· Մամուլ եւ տպագրութիւն 796
Մատենադարան 798
Թատրոն 798

# Է· ՄԱՍ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ա· Ազգային հաստատութեանց մատակարարութիւն 800
Բ· Կարօտեալներու հոգածութիւն 806
Գ· Կուսակցական պայքարներ 812

# Ը· ՄԱՍ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ա· Մալաթիոյ մէջ Հայ եւ Թուրք յարաբերութիւնները մինչեւ ԺԹ. դարուն կէսերը 818
Բ· Հայ եւ Թուրք յարաբերութեանց վատթարացումը 828
Գ· Հայերու անբաղձալի վիճակը եւ ազդեցիկ Հայերու կատարած դերը 836
Դ· Պերլինի վեհաժողովին ձախող արդիւնքը եւ Հայ յեղափոխական կուսակցութեանց կազմութիւնը 851
Ե· Հարստահարութիւններ Մալաթիոյ եւ շրջակայից մէջ 856
Զ· Յեղափոխական կուսակցութիւններու գործունէութիւնը Մալաթիոյ մէջ 862
Է· Մալաթիոյ 1895–ի ջարդը եւ Հայոց ինքնապաշտպանութիւնը 881
1895–Ի ՄԱԼԱԹԻՈՅ ԿՈՏՈՐԱԾԸ, *Գրեց՝* ԽՈՍՐՈՎ ՊՈՆԱՓԱՐԹԵԱՆ 885
*Ծանօթութիւններ* 894
Ը· 1915–ի Հայաջինջ աղէտը 912
Թ· Մալաթիոյ Հայոց ջարդը եւ տարագրութիւնը 928
Ժ· Տարագրութենէն ետք Մալաթիոյ Հայ բեկորները 958

# Թ· ՄԱՍ

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ա· Մալաթիա իբր առեւտրական կեդրոն 970
Բ· Մալաթիոյ տնտեսական կեանքին մէջ Հայոց դերը 985

| | Էջ |
|---|---|
| Տնտեսական վիճակ (արհեստ եւ վաճառականութիւն) | 986 |
| Արտածութիւն եւ ներածութիւն | 987 |
| Հեռաւորութիւն շրջակայ քաղաքներու | 987 |
| Արտածութիւն | 987 |
| Ներածութիւն | 988 |
| Նիւթական վիճակ եւ կացութիւն | 989 |
| Գ. Տնտեսական պայքար Հայոց դէմ | 991 |
| Դ. Հողային արդիւնաբերութեանց մէջ Հայերու դերը | 997 |
| Ե. Հայոց վաճառականութիւնը | 999 |
| Զ. Հայ ճարտարարուեստականները | 1002 |
| Է. Հայ արհեստաւորները | 1004 |
| Ը. Արհեստակցական միութիւններ | 1008 |
| Թ. Ներկայ Մալաթիոյ տնտեսական կեանքը | 1019 |

# Ժ. ՄԱՍ

# ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԱԼԱԹԻՈՅ

| | |
|---|---|
| Ա. Մալաթիացին | 1023 |
| Բ. Մալաթիոյ Հայոց լեզուն | 1027 |
| Ուրուագիծ կամ քերականութիւն | 1033 |
| Գործածական դերանուններ | 1035 |
| Բայ | 1035 |
| Ածանցմունք եւ բարդութիւնք | 1036 |
| Բառարան Մալաթիոյ գաւառաբարբառին | 1038 |
| Մանկական լեզու | 1091 |
| Արկօղեան բարբառ | 1092 |
| Հայերէնէ փոխառեալ բառեր թուրքերէնի մէջ | 1093 |
| Գ. Նիստ ու կաց | |
| ա. Տուն տեղ | 1097 |
| բ. Հագուստ կապուստ | 1099 |
| գ. Ուտելիք խմելիք | 1103 |
| *Քանի մը միրգերու եւ քաղցուեղէններու պատրաստութիւնը* | 1104 |
| Դ. Ընտանիք | |
| ա. Տունը | 1106 |
| բ. Ընտանեկան անդամներու հեղինակութիւնը եւ փոխադարձ յարաբերութիւնները | 1107 |
| գ. Փոքրերու խնամածութիւնը եւ դաստիարակութիւնը | 1108 |
| դ. Ընտանեկան զուարճութիւններ | 1110 |

Էջ

Ե. Սովորոյթներ
ա. Ամուսնական սովորութիւններ 1110
բ. Հարսանիք 1114
*Տան եւ հինգ* 1120
*Մէրէնց տունը լաւ հագցնելու տեն* 1121
*Աղջկան բերնէն* 1122
գ. Ծնունդ եւ մկրտութիւն 1123
դ. Մահուան եւ յուղարկաւորութեան սովորութիւններ 1127
Զ. Ժողովրդային բժշկութիւն
(Հիւանդութիւններ եւ ժողովրդային դեղեր) 1129
Է. Հաւատք
ա. Քրիստոնէական հաւատքի ըմբռնումը 1131
բ. Կրօնական պարտականութիւններ եւ տօնակատարութիւններ 1135
գ. Պառաւաշունչ (նախապաշարումներ եւ
աւելորդապաշտութիւններ) 1148

# ԺԱ. ՄԱՍ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

Ա. Հաւաքական ստեղծագործութիւն 1152
ՀԱՒԱՔԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ԱՏԱՂՁՆԵՐԸ
ա. Առակներ 1156
*Էշ, եզ եւ մշակ* 1157
բ. Առածներ կամ ասացուածքներ 1160
գ. Հանելուկներ 1181
դ. Մանրավէպեր 1182
Չորս խուլերը 1183
Անսուրական մանրավէպեր 1187
Անէծքներ 1189
Երդումներ 1191
Օրհնութիւնք 1192
Բարեւել եւ ուրիշ բարեմաղթութիւններ 1193
Աղօթքներ 1194
Օրօրներ 1197
Մանկական երգեր 1199
Սիրահարական երգեր 1201
Եղերերգ 1202
Վիճակներ 1203

Էջ
Անհատական ստեղծագործութիւններ 1206
Աշուղներ 1207

# ԺԲ. ՄԱՍ

# ՀԱՅ ԳՐՉԱԳԻՐՆԵՐ

1209

# ԺԳ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԷՄՔԵՐԸ

1235

Եկեղեցականներ 1236
Կառավարական պաշտօնեայք 1239
Հայ առաջականներ, արհեստաւորներ, մտաւորականներ եւ կուսակցական գործիչներ 1243
Հայ բժիշկներ 1248
Գեղագործներ 1252
Եփրատ գոլէն (շրջանաւարտներ) 1253
Սանասարեան վարժարանի Մալաթիացի շրջանաւարտները 1255
Խարբերդի փրանսական գոլէնի Մալաթիացի շրջանաւարտները 1256
Այնթապի Ամերիկեան գոլէճէն շրջանաւարտ Մալաթիացի 1256
Վենետիկ Ռափայէլեան վարժարանէն շրջանաւարտ Մալաթիացի 1256

# ԺԴ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻԱՑԻՔ ՄԱԼԱԹԻԱՅԷ ԴՈՒՐՍ

*Ընդհանուր ծանօթութիւն* 1257
Պետական պաշտօնատարներ 1264
Էրմէնի Սիւլէյման փաշա 1264
Եկեղեցականներ 1267
ա. Հայ Առաքելական եկեղեցիի պատկանողներ 1267
բ. Հայ Կաթողիկէ Նուիրապետութեան պատկանողներ 1269
Մտաւորականներ եւ արուեստագէտներ 1270
Հասարակական դէմքեր 1278

էջ

# ՅԻՇԱՏԱԿԱՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ


*Աշխատասիրեց՝ ԻՍՐԱՅԷԼ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ* 1283
Զօն 1285
ՍԿԶԲՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ 1287
Մալաթիացիները Ամերիկայի մէջ 1290
Ցանկ 1895–էն առաջ Ամերիկա եկող մալաթիացիներու եւ Մալաթիա վերադարձող եւ հոն մեռնող կամ զոհ եղողները 1294
ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ 1298
Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը 1299
Ընկերութեան կազմութեան պարագաները եւ ունեցած գործունէութիւնը 1302
Առաջին Պատգամաւորական Ժողով 1310
Երկրորդ Պատգամաւորական Ժողով 1312
Երրորդ Պատգամաւորական Ժողով 1313
Չորրորդ Պատգամաւորական Ժողով 1315
ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ 1317
Հինգերորդ Պատգամաւորական Ժողով 1318
Վեցերորդ Պատգամաւորական Ժողով 1319
Եօթներորդ Պատգամաւորական Ժողով 1320
Ութերորդ Պատգամաւորական Ժողով 1322
Իններորդ Պատգամաւորական Ժողով 1323
Տասներորդ Պատգամաւորական Ժողով 1324
Տասնեւմէկերորդ Պատգամաւորական Ժողով 1325
Տասներկուերորդ Պատգամաւորական Ժողով 1330
Տասներեքերորդ Պատգամաւորական Ժողով 1332
Տասնչորրորդ Պատգամաւորական Ժողով 1337
Տասնհինգերորդ Պատգամաւորական Ժողով 1339
Տասնվեցերորդ Պատգամաւորական Ժողով 1340
Տասնեօթներորդ Պատգամաւորական Ժողով 1342
Տասնութերորդ Պատգամաւորական Ժողով 1344
Տասնիններորդ Պատգամաւորական Ժողով 1345
Քսաներորդ Պատգամաւորական Ժողով 1346
ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ 1383
Քսանմէկերորդ Պատգամաւորական Ժողով 1383
Քսաներկուերորդ Պատգամաւորական Ժողով 1355
Քսաներեքերորդ Պատգամաւորական Ժողով 1357

Լ

Էջ

Քսանչորրորդ Պատգամաւորական ժողով 1360
Քսանհինգերորդ Պատգամաւորական ժողով 1362
Քսանվեցերորդ Պատգամաւորական ժողով 1365
Քսանեօթներորդ Պատգամաւորական ժողով 1367
Քսանութերորդ Պատգամաւորական ժողով 1368
Քսանիններորդ Պատգամաւորական ժողով 1371
Երեսուներորդ Պատգամաւորական ժողով 1373
Երեսունմէկերորդ Պատգամաւորական ժողով 1376
Երեսուներկուերորդ Պատգամաւորական ժողով 1378
Երեսուներեքերորդ Պատգամաւորական ժողով 1381
Երեսունչորրորդ Պատգամաւորական ժողով 1383
Երեսունհինգերորդ Պատգամաւորական ժողով 1385
Երեսունվեցերորդ Պատգամաւորական ժողով 1386
Երեսունեօթներորդ Պատգամաւորական ժողով 1388
Երեսունութերորդ Պատգամաւորական ժողով 1389
Երեսունիններորդ Պատգամաւորական ժողով 1390
Քառասուներորդ Պատգամաւորական ժողով 1391
Քառասունմէկերորդ Պատգամաւորական ժողով 1392
Քառասուներկուերորդ Պատգամաւորական ժողով 1394
Քառասուներեքերորդ Պատգամաւորական ժողով 1396
Քառասունչորսերորդ Պատգամաւորական ժողով 1398
Քառասունհինգերորդ Պատգամաւորական ժողով 1400
Քառասունվեցերորդ Պատգամաւորական ժողով 1401
Քառասունեօթներորդ Պատգամաւորական ժողով 1404
Քառասունութերորդ Պատգամաւորական ժողով 1406
Քառասունիններորդ Պատգամաւորական ժողով 1408
Յիսուներորդ Պատգամաւորական ժողով 1410
Յիսունմէկերորդ Պատգամաւորական ժողով 1414
Յիսուներկուերորդ Պատգամաւորական ժողով 1417
Յիսուներեքերորդ Պատգամաւորական ժողով 1420
Յիսունչորսերորդ Պատգամաւորական ժողով 1424
Յիսունհինգերորդ Պատգամաւորական ժողով 1430

ՀԱՇՈՒԵՏՈՒՈՒԹԻՒՆ 1437

«ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ» Պարբերաթերթը 1441

ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ 1443

Նիւ Եորքի մասնաճիւղ 1445
Ֆիլատելֆիոյ մասնաճիւղ 1448

Էջ

Ուստրի մասնաճիւղ 1454
Քլիվլենտի մասնաճիւղ 1458
Պոսթոնի մասնաճիւղ 1464
Փրաւիտենսի մասնաճիւղ 1468
Ֆրեզնօյի մասնաճիւղ 1471
Նորթ Արլինկթընի մասնաճիւղ 1472
Վոքեկընի եւ Շիքակոյի մասնաճիւղերը 1472
Կրանիթ Սիթիի մասնաճիւղ 1475
Լոս Անճելէսի մասնաճիւղ 1477
Տիթրոյիթի մասնաճիւղ 1478
Ֆիչպուրկի մասնաճիւղ 1480
Ֆրեզնոյի մասնաճիւղ 1481
Պրաքթընի մասնաճիւղ 1482
Հէյվըրհիլի մասնաճիւղ 1485
Լարենսի մասնաճիւղ 1485
Նիւպրիփորթի մասնաճիւղ 1485
Լովելի մասնաճիւղ 1485
Հաւանայի (Քուպա) մասնաճիւղ 1486
ՖՐԱՆՍԱՅԻ ՇՐՋԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐԸ 1490
Լիոնի մասնաճիւղ 1491
Ռոմանի մասնաճիւղ 1497
Վալանսի մասնաճիւղ 1500
Սէն Շամոնի մասնաճիւղ 1504
Պէյրութի մասնաճիւղ 1514
Հալէպի մասնաճիւղ 1517
Շնորհակալութեան եւ գնահատանքի քանի մը խօսք 1527
Ցանկ նկարներու 1531



# Գ. ՄԱՍ

# ՀԱՅԵՐԸ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՄԷՋ

## (ՀԻՆ ՕՐԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ)

*Մալաթիոյ պատմական անցեալին նուիրուած էջերուն մէջ տեսանք որ Հայերը խառնուած են Մալաթիոյ պատմութեան եւ գրեթէ միշտ անոր բնակչութեան մէկ կարեւոր մասը կազմած են, նոյնիսկ երբեմն իրենց թիւովը հայացնելու աստիճան այդ հնօրեայ պատմական շահաստանը, որ հայկական նկատուած է հայ եւ օտար պատմիչներէ՝ մինչեւ բաւական մօտ ժամանակներու մէջ։*

*Այսպէս Կիրակոս Գանձակեցի Հայ պատմիչը (էջ 113) եւ Միքայէլ պատրիարք Ասորի (էջ 272—6) կը յիշատակեն զայն իբր «Մելտինոյ» կամ «ՄԵԼԻՏԻՆԷ ՀԱՅՈՑ» հաւանօրէն անոր անյիշատակ ժամանակներէ ի վեր Հայաստանէն դուրս, սակայն հայաբնակ քաղաք մը, եւ հակառակ իր ենթարկուած զանազան տիրապետութիւններու, կրած փոփոխութիւններուն, տեղափոխութիւններուն, վերելքներուն եւ վայրէջքներուն, միշտ հայ բնակչութիւն ունեցած ըլլալուն համար։*

*Ուրեմն Մելիտինէի եւ շրջականերուն պատմութեան ամէն մէկ շրջաններու մէջ Հայերու դերը կը ներկայացնեմ շրջան առ շրջան։*

## Ա.

# ՀՆԱԳՈՅՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ԱԼԵՔՍԱՆԴՐ

*Մելիտինէի շրջանակը անյիշատակ ժամանակներէ սկսեալ հայաբնակ եղած էր, Եփրատի արեւմուտքը գտնուող ուրիշ կարգ մը շրջանակներու պէս, որոնք բնակավայրը եղած են նոյնիսկ նորքարային շրջանին սկիզբը միեւնոյն ցեղային նկարագիրը կամ ծագումը ունեցող ժողովուրդներու կամ աւելի ճիշդը ազգերու։*

*Այս հնագոյն բնակչութիւնը, որ հիմնախաւ մըն էր, որ տեղափոխութիւններով եւ ցեղախառնումներով, ինչպէս նաեւ նոր բնակավայրերու մի–*

ջավայրին ազդեցութիւններով, ծնունդ տուած է նոր ազգերու, որոնք պահած են մինչեւ մեր օրերը հազարաւոր տարիներ ետք, իր ֆիզիքական եւ մշակութային առանձնայատկութիւնները եւ զանոնք փոխանցած են ուրիշ ժողովուրդներու, որ իրեն հետ շփում ունեցած են:

Հայերն ալ անկէ շատ բան ժառանգած են՝ Քր.է 4000 տարի առաջ պատմութեան արշալոյսէն մինչեւ Քր.է առաջ Է.—Զ. դար տեւող ժամանակամիջոցին, ենթարկուելով ազգերու տեղափոխութիւններու, եւ ցեղախառնումներու հետեւանքներուն, մինչեւ որ արդի Հայ–Արմէն ազգը կազմուած է Հայաստան–Արմենիա կոչուած բարձրաւանդակին վրայ:

Այս պատկառելի հնութեան մէջ ինչպէս տեսնուեցաւ, Վեր. Եղիա Քասունիի ուսումնասիրութեան մէջ (տես վերը էջ 93—7) Մելիտինէի շուրջը կ'ապրէր ժողովուրդ մը, որ ցեղային եւ քաղաքակրթական բազմաթիւ նմանութիւններ ունէր Հայկական Լեռնադաշտին վրայ այդ դարերուն ապրող ժողովուրդներու հետ:

Ինչպէս յայտնի է, Հայկական Լեռնադաշտին վրայ Հայերէն առաջ ապրած են շատ մը հին ժողովուրդներ, որոնք Քր.է առաջ 4000 թուականէն ըսկըսեալ մինչեւ Հայ–Արմէն ազգին կազմութիւնը, Քր.է վեց կամ եօթը դար առաջ, ունեցած են պատմութիւն մը, որ քիչ շատ ծանօթ է, բայց տակաւին շատ բաներ կան լուսաբանութեան կարօտ:

Այս շրջանին վրայ աշխատասիրութիւններ կան, հեղինակաւոր օտար եւ Հայ գիտուններու կողմէ, որոնցմէ մէկն է Վեր. Եղիա Քասունի, որ հաճած է Մելիտինէի այդ ժամանակամիջոցի պատմութիւնը եւ մշակութային կեանքը պատկերացնել ուսումնասիրութեամբ մը (տես վերը, էջ 85–175), որով կը բացուի Մելիտինէի պատմական անցեալին նուիրուած էջերը այս գիրքին մէջ:

Հոն տեսնուեցաւ թէ ի'նչպէս Մերձաւոր Ասիոյ մէջ երեւան եկած է զանազան ցեղախառնումներով նոր ազգ մը, որ Պարսիկ Աքիմենեան տիրապետութեան տակ իր վերջնական կազմաւորութիւնը ստացած է, եւ կը ներկայացնէ Արեւմտեան Արմենիոյ սատրապութեան մէջ ապրող ազգերուն ամենէն կարեւորը:

Դարեհ Վշտասպեանի ժամանակ (Ն. Ք.) 550–ին այդ սատրապութեան կեդրոնն էր Մելիտինէ, ուր կը բնակէին նաեւ Հայ–Արմէններ, որոնց անունով արդէն սատրապութիւնը կոչուած էր ԱՐՄԵՆԻԱ:

Ուրեմն, Մելիտինէ հակառակ անոր որ Հայաստանի բնական սահմանագլուխը կազմող Եփրատի անդին կողմը՝ Հայաստանէն դուրս՝ կը գըտնուէր, շատ կանուխէն հայաբնակ եղած էր, եւ երկար ատեն ալ այնպէս մընացած:

Դժբախտաբար այդ շրջանին վրայ աւելի լայն ծանօթութիւններ կը պակսին մեզի:

Ինչ որ շատ պարզ է եւ անժխտելի, այն է որ այդ հին եւ մութ շրջանին մէջ, Մելիտինէ եւ շրջակայք ունէին բնակչութիւն մը, որ ցեղակից էր Հայաստանի բնակչութեան, որ եթէ մեր այսօրուան Հայը չէր, անոր նախածընողն էր։

Բ.

# ԱԼԵՔՍԱՆԴՐԻ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԵՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՀՌՈՄԷԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

Աղեքսանդրի աշխարհակալութիւնները մեծ յեղաշրջում մը առաջ բերին Մերձաւոր Ասիոյ մէջ։

Հելլենականութիւնը թափանցեց Ասիոյ մէջ։ Հայաստան եթէ չէր նուաճուած, սակայն սելեւկեան գերիշխանութեան ենթարկուած էր, որմէ ձերբազատուեցան Արեւելեան եւ Արեւմտեան Հայաստանի երկու թագաւորութիւնները, երբ Անտիոքոս 5 Հոկտ. 190–ին (Ք. Ա.) պարտուեցաւ Հռոմէն՝ Մագնեսիոյ ճակատամարտին մէջ։

Մեծ Հայքի Արտաշէս եւ Ծոփքի Զարեհ թագաւորները թօթափեցին սելճուկեան լուծը Հռոմէն քաջալերուած եւ եղան բոլորովին անկախ։

Մելիտինէ, Խարբերդի, այսինքն Անձիթի հետ կը գտնուէր Արեւմտեան Հայաստանի կամ Ծոփաց թագաւորութեան մէջ (Դկտ. Յ. Աստուրեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ, 1947, էջ 51)։

Մեծն Տիգրան երբ միացուց երկու հայ թագաւորութիւնները իր մականին տակ, մեծ մասամբ Հայերէ բնակուած Մելիտինէն չկրցաւ իր ձեռքը պահել, եւ շուտով տեղի տուաւ Հռոմի լեգէոններուն առջեւ եւ վանուեցաւ անկէ 63–ին (Ք. Ա.)՝ կրկին հոն դառնալու եւ կրկին գրաւելու համար։

Այս անգամ ալ հոն չկրցաւ մնալ երկար, վասնզի 64–ին (Ք. Ա.) Արտաշատի դաշինքով հարկադրուեցաւ թողուլ զայն։ Նոյնիսկ Հայաստան ըստիպուեցաւ ենթարկուիլ Հռոմի գերիշխանութեան։

Այս շրջանը, զոր փոխանցման ժամանակամիջոց մը կրնանք համարել, Մելիտինէի շուրջ կ՚ապրէր հայ բնակչութիւն մը՝ դուցէ իբր ազգ տակաւին ոչ–ձեւաւորուած եւ ոչ–կազմուած։

Գ.

# ՀՌՈՄԷԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

Հայաստան, Արտաշատի դաշինքէն ետք, երկու ոյժերու միջեւ տարուբերուած եւ երկիրը քաղաքական անհաստատ կացութեան մը մատնուած է։

Այս վիճակը պատճառ եղած է որ Հայերը միշտ գաղթեն դէպի արեւմուտք՝ Եփրատի աջ եզերքը տարածուող հողերը, ուր արդէն կ՚ապրէին անյիշատակ ժամանակներէ սկսեալ. այնպէս որ բնիկ ժողովուրդ կը համարուէին, այնպիսի ատեն մը երբ տակաւին հայ ազգը իր վերջնական կազմը չէր առած, այլ ԼԻՆԵԼՈՒԹԻՒՆ էր եւ իր բնակավայրը՝ Հայկական Բարձրաւանդակն իսկ դեռ չէր հայացած լիովին։

Այս պայմաններու մէջ Հայաստանէն հեռացող հայ գաղութները ենթակայ էին բնակակից ժողովուրդներու հետ խառնուելու վտանգին։

Մասնաւորապէս Եփրատի արեւմուտքը ապրող Հայերը, որոնք կը կրէին հելլէն–հռոմէական մշակութային ազդեցութիւնը, դժուար էր որ կարենային տոկալ այդ խմորումին, նկատի ունենալով մինչեւ քրիստոնէութեան տարածումը այդ մշակոյթը ցեղերը միացնող միակ ոյժը հանդիսացած էր։

Անժխտելի իրողութիւն մըն է որ շատ հին ժամանակներէ սկսեալ Հայերու թիւը միշտ ստուար էր այդ կողմերը։

Հայ ցեղին դէպի արեւմուտք այդ տարածումը եւ մասնաւորապէս անոր այնքան մեծ թիւի մը հասնիլը, Եփրատի արեւմտեան կողմը տարածուած այդ հողերը Հայաստան համարել տալու աստիճան, ապացոյց մըն է Հայերը հայացուցած էին այդ կողմերը, եւ իրենց անունը տուած էին անոր։

Փոքր Հայքը, այսինքն Սեւ Ծովի դրացի նահանգները եւ Մելիտինէի արեւմտեան եւ հիւսիսային կողմերը (Laurent, **L'Arménie entre Byzance et l'Islam,** էջ 190), ինչպէս նաեւ մերձակայ Կապադովկիան եւ Կոմմագինէն, գէթ մինչեւ Դ. դար, հայ եւ հայ ծագումով բնակչութեամբ լի էին (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա., էջ 128)։

Նոյնիսկ կարելի է ենթադրել մեծ հաւանականութեամբ թէ Փոքր Հայքի բնակչութեան մէջ Հայերը մեծամասնութիւն կը կազմէին, եւ այդ իսկ պատճառով այդ երկիրը կոչուած էր ՓՈՔՐ ՀԱՅՔ (**Armenia Minor**)։

**Եթէ այդպէս պատկառելի մեծամասնութիւն մը ունեցած չըլլային Հայերը Փոքր Հայքի մէջ, Պոմպէոս զայն պիտի չբաժնէր եւ առանձին թագաւորութեան պիտի չվերածէր Հռոմի պաշտպանութեան տակ, ինչպէս ըրաւ Կապադովկիոյ համար, մինչեւ որ ուղղակի հռոմէական երկրի վերածուեցաւ։**

*Մելիտինէն, որ այս նոյն Թագաւորութեան մաս պէտք է կազմէր, տըրուեցաւ Կապադովկիոյ Թագաւորութեան, որ նոյնպէս կը պարունակէր շատ ստուար թիւ Հայութիւն մը: Կապադովկիոյ ուղղակի Հռոմի իշխանութեան ենթարկուելէն ետք, Մելիտինէ իր աշխարհագրական բացառիկ դիրքին եւ յարմարութեան համար եղաւ բանակատեղի լեգէոնի մը, ինչպէս նաեւ կուսակալանիստ վայր մը:*

*Բ., Գ. եւ Դ. դարերուն, եթէ Հայերը Փոքր Հայքի մէջ գերակշիռ թիւ մը ունեցած չըլլային, ի՞նչպէս կարելի կրնար ըլլալ Մելիտինէն բանակատեղի ունեցող* Շանթահարաց *կամ* Շանթահարեալ *ԺԲ. լեգէոնի զինուորներուն մեծամասնութեամբ Փոքր Հայքէն եւ Հայեր ըլլալը (Դիոն Կասիոս, ՀՌՈՄԷԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, ԿԱ.):*

*Ասոնք, ինչպէս հռոմէական բոլոր բանակները, տարիներով նոյն տեղը մնալով ամուսնութեամբ, վաճառականութեամբ, բարքերով տեղացիներու խառնուած էին եւ ձուլուած (Դիոն Կասիոս, նոյն):*

*Իր զինուորները, հուժկու լեռնականներ գրեթէ բոլորն ալ, տեղացիներ էին եւ Ապողինարեան ԺԷ. գունդին հետ կը գործէին Փոքր Ասիոյ մէջ:*

*Այս գունդին մէջ հետզհետէ քրիստոնեաներու թիւը աճեցաւ, եւ եղաւ ատեն որ բոլորն ալ քրիստոնեայ եղան (Եւսեբիոս, ԵԿԵՂ. ՊԱՏՄ., Ե. Գ.) եւ հա՛յ՝ անժխտելիօրէն:*

*Ասոնցմէ մէկուն Ս. Պոլիկտոսի (նահատակուած 258–ին կամ 259–ին) ազնուական հայազգի հարիւրապետի անունը իբրեւ վկայի եւ սուրբի՝ պատմութիւնը մեզի բերած է:*

*Նոյնպէս, երբ ՀԱՅԿԱԿԱՆ առաջին եւ երկրորդ կոչումները, որոնք 360 թուականէն առաջ երկու լեգէոններու տրուած են (ԱՄՄԻԱՆՈՍ ,20–6, 1–7. 20. 7. 1. Աստուրեան, ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՀՌՈՄ, էջ 289), փաստ մըն է թէ Փոքր Հայքի եւ թերեւս աւելի արեւմուտք ալ տարածուող երկիրներու մէջ, պատկառելի թիւով հայ բնակչութիւն մը գոյութիւն ունէր:*

*Մելիտինէ, Փոքր Հայքի ամենէն կարեւոր քաղաքն ալ, նոյնպէս ըստուար հայ բնակիչներ պէտք է ունեցած ըլլար: Հոն հաստատուած էր երբեմն 20–րդ լեգէոնը եւ ապա 12–րդ լեգէոնը (տես վերը, էջ 162) եւ Մելիտինէ կը նկատուէր կեդրոնը Հայերով բնակուած նահանգներու:*

*Հռոմ մեծ կարեւորութիւն տուած է այս ռազմական դիրքին եւ հետեւաբար քաղաքը շատ զարգացած եւ բարգաւաճ էր: Հոն կը բնակէին բազմաթիւ Հայեր, որոնց թիւը միշտ կը շատնար, վասնզի Հայաստան՝ իբր պարթեւ-հռոմական կամ սասանեան–հռոմէական պայքարին ենթարկուած երկիր մը՝ կրած է բոլոր հետեւանքները երկարատեւ այն պատերազմներուն, որոնք աղիտաբեր եղած էին Հայաստանի համար, որ ոչ միայն պատերազմի դաշտ դարձած, այլ եւ ներքնապէս ալ պառակտուած էր, վասնզի երկու մաքառող կողմերու համախոհներէն կազմուած էին կուսակցութիւններ:*

Այնպէս որ ամէն անգամ որ Պարսիկները Հայաստանի տէր դառնային, Հռոմի կուսակիցները եւ պատերազմի աղէտներուն ենթարկուած բնակիչներէն մաս մը երբեմն ինքնաբերաբար եւ երբեմն բռնադատեալ կ'անցնէին հռոմէական երկիրներ եւ հոն կը փնտռէին այն հանգիստը եւ անդորրութիւնը, զոր իրենց երկրին մէջ չունէին։

Երբեմն նոյնիսկ պարսիկ ճնշումին տակ Հռոմ կը լքէր Հայերը եւ կը քաշուէր մինչեւ Եփրատ՝ իր հետ տանելով իրեն կուսակից կամ համակիր Հայերու բազմութիւն մը, որոնք կը հաստատուէին մերձակայ հռոմէական երկիրները։

Այսպէս հայացած էր Եփրատի եւ Ալիսի միջեւ գտնուող երկիրը, որ Մեծ Հայքի հակադրաբար Փոքր Հայք կոչուած էր եւ որուն մէջ մտած էր Ստրաբոնի կողմէն յիշատակուած Կապադովկիոյ տասը նահանգներէն եօթը, առաջինը ըլլալով ՄԵԼԻՏԻՆԷՆ։

Այսպէս, Փոքր Հայքը, որ նախապէս փոքր տարածութիւն մը ունէր, ընդարձակուած էր եւ ի վերջոյ Դիոկղետիանոս կայսեր (284—305) ատեն վերածուած էր առանձին նահանգի, որուն մայրաքաղաքն էր Մելիտինէն, զոր Հռոմ զարգացուցած եւ ընդարձակած էր[1]։ Վաղէս կայսրը (364—378) Փոքր Հայքը բաժնեց երեք մասերու՝ Ա. Բ. Գ. Հայք անուններով, վերջինին, այսինքն Փոքր Հայքի մայրաքաղաք տալով Մելիտինէն։

Սակայն հռոմէական տիրապետութեան հելլէն մշակոյթին տիրական ազդեցութեան տակ, յունացան առաւելագոյն չափով, ինչպէս Փոքր Ասիան, նոյնպէս նաեւ Փոքր Հայքը, ուր սեպհական մշակոյթով Հայերու գոյութիւնը դուցէ խնդրական է եւ տարակուսելի, վասնզի կրօնական անխտրականութեամբ՝ Հայերը խառնուած էին եւ միացած՝ տեղացի ոչ-հայ բնակիչներուն հետ եւ հռոմէացի (=Հոռոմ կամ Ծաթ) դարձած եւ հայ ազգութեան համար կորած էին։

Քրիստոնէութիւնը ջնջած էր անոնց մէջ ազգային ոգին, եւ տիեզերական եղբայրակցութեան իր գաղափարականով ընդհանուր միութեան մը մէջ ձուլած էր զանոնք երբ դեռ հայերէն գիր եւ դպրութիւն գոյութիւն չունէր, մինչ պետութենէն հովանաւորուած Տիեզերական Եկեղեցին Հռոմի կայսրերու ձեռքը գործիք՝ եռանդուն աշխատանք կը կատարէր, իմացական եւ մշակութային, վարդապետական եւ մեկնողական գործերով։

Այնպէս որ տակաւին սեպհական գիրէն զուրկ եւ արտաքին գիտութեանց մշակութեան անհաղորդ Հայերուն նուաճումը անխուսափելի էր, եւ իրապէս ալ Հայերը քաղաքականօրէն բոլորովին պիտի ընկճուէին, եթէ Ե. դարուն սկիզբները հայ գիրերու գիւտը չփրկէր Հայերը անփառունակ անէացումէ մը։

(1) Այս քաղաքին տեղը այսօր բոլորովին աւերակ է եւ անոր շքեղ շէնքերէն ոչինչ մնացած է։ Արդի Մալաթիայէն երկու ժամ դէպի հիւսիս-արեւմուտք գտնուող ԷՍԿԻ ՇԷՀԻՐ կամ ԷՍԿԻ ՄԱԼԱԹԻԱ կոչուած տեղն է։

*Դ. դարուն վերջերը հակառակ անոր որ Փոքր Ասիոյ ծագումով հայ բնակչութիւնը — որ ընդհանուր բնակչութեան մեծամասնութիւնը կը կազմէր — շատ բան վրայ տուած էր իր ինքնութենէն, սակայն տակաւին կը պահէր մասամբ իր հայ նկարագիրը, վասնզի երբ Ս. Բարսեղ «ՀԱՍՏԱՏԵՑԻ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ Ի ՄԷՋ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ՀԱՅՈՑ» կ'ըսէ, երբեք տարբերութիւն չի դներ Մեծ ու Փոքր Հայոց եպիսկոպոսներուն միջեւ ինչպէս կը կարծէ Օրմանեան (ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 227), այլ կը խօսի ընդհանուր առմամբ, ինչպէս կը խորհի Հ. Վարդան Վրդ. Հացունի (ԲԱԶՄԱՎԷՊ, 1920), հիմնուելով մանաւորապէս Տերենտիոս հռոմայեցի զօրավարին առ Ս. Բարսեղ ուղղած մէկ նամակին վրայ, որ յանձնարարութիւն կը պարունակէր Հայաստան եպիսկոպոս ղրկելու եւ իբր թեկնածու կը ներկայացնէր Յոյներ:*

*Ս. Բարսեղ կ'ընդդիմանայ օտար թեկնածուներուն իբր անյարմար Հայոց առաջնորդութեան եւ կ'ուզէր Հայեր կոչել պաշտօնի: Կեսարիոյ աթոռը հակառակ անոր որ յաւակնութիւններ ունէր Հայքի այն մասերուն վրայ, որոնք հռոմէական տիրապետութեան տակ էին, զգոյշ եղած է եւ չէ ուզած բոլորովին յոյն եպիսկոպոսներ նշանակել եւ աշխատիլ բռնի յունացնելու:*

*Եթէ Փոքր Հայք Դ. դարուն տակաւին ստուար թիւով հայութիւնը պահած բնակչութիւն չունենար, Ս. Բարսեղ* (370–374) *Սատաղ ճամբորդութիւն ըրած ատեն հայերէն գիտցող մարդիկ պիտի չփնտռէր Փոքր Հայքի եպիսկոպոսական աթոռներուն համար* (Migne, **Patrologie,** 32, 502):

*Զափազանց նշանակելի է որ ոչ միայն հայերէն լեզուին ծանօթ անձեր փնտռուած է հռոմէական տիրապետութեան տակ գտնուած, այլ հայաբնակ երկիրներու համար, այլեւ հայազգիներ՝ անշուշտ բնակչութեան մէջ Հայերու մեծամասնութիւն ունենալուն համար:*

*Այսպէս, Ս. Բարսեղ յաճախ կը յիշէ իր թուղթերուն մէջ* **ՋՈՐԵՓ ՔԱՂԱՔԵԱՆ ՀԱՅՔ** *ըսուած կարեւոր թեմ մը, որ Փոքր Հայքի մէջ կը գտնուէր՝ իր հոգեւոր իրաւասութեան տակ:*

*Փոքր Հայքի եպիսկոպոսանիստ* Սեբաստիա, Նիկոպոլիս, Սատաղ, «Գաղութք Հայոց» *կոչուած վայրերը կը կազմէին հայաշատ կեդրոններ:*

*Ասոնց եպիսկոպոսները ընդհանրապէս ծագումով Հայ էին, սակայն յոյն կրթութեամբ սնած եւ մեծցած, անունով ալ յունացած:*

*Այսպէս, Նիկիոյ ժողովին* (325) *մասնակցող եպիսկոպոսներէն՝ Սեբաստիոյ Եւլալիոս, Կոմանայի՝ Էլպիտիոս, Սատաղի՝ Եւիթիոս եւ Ատրիկէս եպիսկոպոսները Հայեր էին:*

*Եւիթիոսէն ետք Սատաղի եպիսկոպոս եղած է Կիւրեղ, որուն դէմ ժողովուրդը գրգռուած եւ ըմբոստացած է եւ Ս. Բարսեղ ստիպուած է անձամբ երթալ հոն եւ հաշտեցնել հօտը՝ իր հովիւին հետ:*

*Փոքր Հայքի մէջ կ'երեւի թէ յաճախ կը պատահէին այս տեսակ դժտութիւններ եւ չփոթութիւններ, որոնց համար Ս. Բարսեղ կը հարկադրուէր* «կտրել անցնել ամեն ժամանակ հայկական ձիւնապատ լեռները, խաղաղեցը–

ճելու եւ բարեճորոգելու համար հայ թեմերը», ինչպէս կը գրէ ան իր Թուղթերուն մէջ գանգատելով:

Ս. Բարսեղ գործ ունեցած է Սեբաստիոյ նշանաւոր Եւստաթիոս հայ ծագումով եպիսկոպոսին հետ, որ մաքառած է անոր դէմ: Սոկրատ եւ Սոզոմենոս եկեղեցական պատմիչները կը գովեն Եւստաթիոս Սեբաստացին, կը պարսաւեն անոր նկարագիրը, իբր ամէն բանի մէջ ծայրայեղ եւ փոփոխամիտ (Հ. Յովհաննէս Վրդ. Թորոսեան, ԲԱԶՄԱՎԷՊ, 1932, էջ 352):

Կապադովկեան եկեղեցիին էքսարքը, որուն աթոռանիստ քաղաքն էր Կեսարիա, կը նկատուէր պետը 12 Մետրոպոլտութեանց, որոնց մէջ էին Առաջին Հայքի (Սեբաստիա) եւ Երկրորդ Հայքի (Մելիտինէ) թեմերը:

Ասոնց կարգին կարելի է դասել նաեւ Առաջին Հայքի պատկանող Նիկոպոլիս (Շապին Գարահիսար), Գերասիա (Կիրասոն), Սատաղ եւ Կողոնիա (Քէօյլիւ Հիսար) քաղաքներու եպիսկոպոսները եւ Փոքր Հայքի այլ եպիսկոպոսները, որոնց աթոռանիստ վայրերը չեն ճշդուած (ԲԱՐՍԵՂԻ ԹՈՒՂԹԵՐ, 95), բայց Կեսարիոյ աթոռէն կախում ունէին եւ տակաւին Հայ կը մնային իրենց հօտին հետ՝ լեզուով եւ ցեղային նկարագիրով:

Թէեւ անզգալաբար եւ անգիտակցաբար յոյն դառնալու ճամբուն վրայ կրօնքով ապազգայնացման ճամբուն մէջ մեծ դեր կատարած է Կապադովկիոյ եկեղեցին, որ Բիւզանդիոնի պատրիարքական աթոռին պէս ամէն ճիգ ի գործ դրած է հնազանդեցնելու Հայերը յունադաւան եկեղեցիին եւ իր գերադասութիւնը ընդունիլ տալու նաեւ Մեծ Հայքի կամ գէթ անոր այն մասերուն վրայ, որոնք Հռոմի քաղաքական իշխանութեան տակ կը գտնուէին:

Le Quien (**Orians Christianus**, I, տեսնել էջ 825) եւ Կըղեմէս Կալանոս (ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ԸՆԴ ՄԵԾԻ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ՀՌՈՄԱՅ, 1690) կը հաստատեն թէ Հռոմի իշխանութեան տակ գտնուող Արեւմտեան Հայաստանի Հայերը Կեսարիոյ էքսարքին իրաւասութեան տակ կը գտնուէին եւ ոչ Հայոց կաթողիկոսին, եւ Բիւզանդիոնի կողմէ ընդհանուր կուսակալ կարգուած Անատոլիոս զօրավարը — որ Մելիտինէ կը նստէր — երբ Ս. Սահակ Պարթեւ հայրապետ աքսորուեցաւ (428) եւ Սուրմակ Պարսից բաժինին կաթողիկոս ճանչցուեցաւ, Հռոմէական Հայաստանի առանձին կաթողիկոս մը դրաւ Հաւուկ Կուկուճուցին կամ Կուկայառիճցին (ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ, 1852, էջ 80), որ թէպէտ Եպիսկոպոսապետ կը կոչուի, բայց հաւանօրէն Կեսարիոյ էքսարքին ենթարկուած մետրոպոլիտ մըն էր (Օրմանեան, ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 306):

Հռոմէական տիրապետութեան ենթարկուած աշխարհամասերէն ներս հնար չէր որ Տիեզերական Եկեղեցին որեւէ զիջում ընէր եւ թողուր, որ Հայոց կաթողիկոսը եպիսկոպոսներ անուանէր Մելիտինէի, Սեբաստիոյ եւ այլ հռոմէական տիրապետութեան տակ գտնուած գաւառներու համար:

Այնպէս որ բնաւ զարմանալի պիտի չըլլար հայ ծագում ունեցող բնակչութեան ժամանակի ընթացքին բիւզանդացի դառնալը Դ. եւ Ե. դարերէ

նոք, եթէ հայ գիրերու գիտը Հայաստանի եւ դրացի երկիրներու հայ բնակչութեան վրայ սթափեցնող ազդեցութիւն մը չունենար ։

## Դ.

## ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՇՐՋԱՆ

Դ. դարու վախճանին 396–ին երբ հռոմէական մեծ կայսրութիւնը երկուքի բաժնուեցաւ, արեւելեան կայսրութեան մաս կազմեցին կայսրութեան սահման նահանգները ։ Այս շրջանին այլեւս գործածութենէ կը դադրի Փոքր Հայք բացատրութիւնը ։ Մեծն Կոստանդիանոս (306—334) իր վարչական նոր կարգադրութեան համաձայն Փոքր Հայքը բաժնեց երկու գաւառներու, Առաջին Հայք եւ Երկրորդ Հայք անուններով ։ Ասոնցմէ երկրորդին կեդրոնն էր ՄԵԼԻՏԻՆԷ ։

Իսկ երբ Հայաստան երկուքի բաժնուեցաւ (384–ին) պարսիկ-հռոմէական համաձայնութեամբ, Մեծն Թէոդորոս կայսրը (379—395) ըրաւ նոր կարգադրութիւններ արեւելքի մէջ, եւ 379–էն 386–ի տեմենները Փոքր Հայքը կրկին բաժնեց երկու մասի Ա. Հայք եւ Բ. Հայք անուններով (Հիւպշման, ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԵՂԻՈՑ ԱՆՈՒՆՆԵՐԸ, էջ 76) ։

Այս երկու նահանգները դուրս կը մնային Հռոմէական Հայաստանէն, որ կը բաղկանար Փոքր Հայքի դրացի Եկեղեաց գաւառէն, Դերջանէն, Խորձեանէն, Կարինէն եւ հին հռոմէական սատրապութիւններէն, ինչպէս Ծոփքէն, Անգեղտունէն եւայլն ։

Բիւզանդական կայսրութեան տիրապետութեան առաջին շրջանին, այսինքն Դ. դարու վախճանին, Մելիտինէ հայաբնակ քաղաք մըն էր եւ շատեր զայն կը համարէին Հայաստանի մաս (ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 334), նըման Կապադովկիոյ մաս կազմող եւ անոր դրացի բաւական ընդարձակ երկիրներու, որոնք ստացած էին Հայք կոչումը, այսինքն Հայաստան համարուիլ, վասնզի բնակչութիւնը մեծ մասամբ Հայեր էին ։

Երբ 390–ին վերջ տրուեցաւ Հռոմէական Հայաստանի անկախութեան, Առաջին եւ Երկրորդ Հայք, խառնուելով այս նոր կցուած երկիրին, ընդհանուր կուսակալ մը դրուեցաւ ։

Արկադիոս (395—408) իր հօրը կատարած այս վարչական կարգադրութիւնը պահեց ։ Իր որդին Թէոդոս Բ. Փոքրի (408—450) անչափահասութեան ժամանակ՝ Անթիմիոս խնամակալը կարգ մը փոփոխութիւններ մտցուց Հռոմէական Հայաստանի վարչութեան մէջ, յոյն պաշտօնատարներով կառավարելով եւ բիւզանդական ձուլման մեթոտները կիրարկելով, բնակչութիւնը բիւզանդացի դարձնելու համար ։

Արշակունեաց պետութեան ընկճուած պահուն (428)՝ ապահովաբար Փոքր Ասիոյ այն մասերը, որոնք սահմանակից էին Հայոց պետութեան եւ բաւական ապահովութիւն կը ներշնչէին պարսիկ լուծէն հեռու մնալու, լեցուած էին հայ գաղթականներով:

Եփրատէն արեւմուտք մինչեւ Ալիսի եւ Ճիհանի հովիտները՝ լեցուն էին խիտ հայ բնակիչներով եւ նոյնիսկ Դ. դարուն վերջերը Սեբաստիա եւ Սատաղ, ինչպէս նաեւ Մելիտինէ եւ իր անմիջական շրջակայքը, կը համարուէին մաս Հայաստանի, որուն աշխարհագրական սահմանները այսպէս կ՚ընդարձակուէին Եփրատէն արեւմուտք:

Հոն Հայերը երկիրին բնիկները դարձած եւ կրօնական անխտրականութեամբ — քանի որ դեռ հակաքաղկեդոնականութիւնը սուր երեւոյթ չէր առած — տեղական տարրերու հետ խառնուած՝ ծնունդ տուած էին Հայ-Հոռոմ տարրի մը, զոր Յոյները սովորութիւն ունէին Արմենեակներ անունով կոչելու:

Հակառակ անոր որ այդ երկիրներու հայկական ծագումը մոռցնել տալ կ՚ուզէին, Թէոդոս Բ.ի ատեն հայկական գաւառներու շրջագիծը ընդարձակուեցաւ եւ կազմուեցան երկու նահանգներ դարձեալ Առաջին եւ Երկրորդ Հայք անունով, որոնցմէ Երկրորդին մայրաքաղաքն էր դարձեալ ՄԵԼԻՏԻՆԷ եւ գլխաւոր քաղաքներն էին.

1. ԱՐԿԱ (արդի Կերկեր կամ Կարկառ)
2. ԿՈԿԻՍՈՆ (հիմա Կէօքսու)
3. ԱՐԱԲԻՍՈՆ (հիմա Եարբուզ Զէյթունի մօտ)
4. ԱՐԻԱՐԱԹԻԱ (հիմա Ազիզիէ կամ Կիւրին)
5. ԿՈՄԱՆԱ կամ ԿՈՄԱՆԱ ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ (հիմա Հաճընի եւ Ազիզիէի միջեւ աննշան գիւղ մը):

Մելիտինէ եւ այս քաղաքները ամէնքն ալ Հայաստանի սահմաններէն դուրս էին, բայց Հայք անունով կոչուած նահանգի մը մաս կը կազմէին: Ասիկա փաստ մըն է թէ գոնէ ստուարաթիւ հայ ծագումով բնակչութիւն մը կար հոն մասնաւորապէս: Արշակունեաց Թագաւորութեան պարսիկ եւ բիւզանդական գերիշխանութեան տակ երկուքի բաժնուելէ ետք երբ Հայերու գաղթը Մեծ Հայքէն դէպի արեւմուտք աւելի մեծ համեմատութիւններ առաւ, եւ նոյնիսկ երբեմնի Փոքր Հայքի երկրորդական քաղաքները, օրինակի համար Կոկիսոն եւ Արաբիսոն եւայլն, հայաբնակ դարձան:

Այսպէս, գիտենք որ Յովհան Ոսկեբերան 404-ին երբ աքսորուեցաւ Կոկիսոն, հոն գտաւ հայ բնակչութիւն, եւ Մորիկ կայսրը, որ հայ էր, այդ դարուն ծնած էր Արաբիսոնի մէջ:

428-ին երբ Արշակունի Թագաւորութիւնը վերջացաւ, դէպի արեւմուտք գաղթային նոր հոսանք մը սկսաւ եւ հին ապազգայնացած Հայերու տեղ՝ Եփրատի աջակողմը հաստատուեցան նորէն մեծ թիւով նոր հայ գաղթականներ, որոնք լեցուեցան Կապադովկիա, Փոքր Հայք եւ Մելիտինէի հարաւը՝

Կոմմագինէ — ուր Հայերը շատ հին ատեն Ասորիներու հետ բնակակից էին — ըստ Քասունիի (տես վերը էջ 169):

Բայց անոնց Հայք կամ Հայոց երկիր ըլլալը չուրանալով հանդերձ՝ Բիւզանդացիք նկատելի է որ անոնց իբր երկրամաս աշխարհագրական միութիւնը, երբեմն իբր անկախ Թագաւորութիւն վարչական առանձին միութիւն մը կամ նահանգային առանձին վարչութեամբ մը օժտուած ըլլալու յիշատակը իսկ կ՚ուզէին ջնջել, բայց չէին կրնար, վասնզի բնակչութեան ստուար մասին հայ ծագումը յայտնի էր, եւ հակառակ պետութեան եւ անոր գործիք եկեղեցիին ջանքերուն՝ անոնք բոլորովին չէին յունացած, լեզուով եւ կրօնքով, այլ կը մնային Հայ, միայն կրօնքով յունադաւան եւ առած էին Արմենեակ կամ Հայ-Հոռոմ կոչումը:

Այս այլասերած Հայերը պէտք է ըսել թէ վաղնջական ժամանակներու հայացեղ բնակիչները չէին, վասնզի անոնք շատոնց կորսնցուցած էին իրենց ցեղային նկարագիրը եւ մանաւանդ լեզուն, ինչպէս բացատրուեցաւ:

Ընդհակառակը մասնաւորապէս Դ. եւ Ե. դարերուն Փոքր Հայքի մէջ հաստատուած Հայերը Եփրատի արեւմտեան կողմը գաղթած էին Հայաստանի քրիստոնէացումէն ետք, քանի որ շատ որոշ է որ քրիստոնէութենէն ետք Հայերու դէպի արեւմուտք տեղափոխութիւնը անհամեմատ աւելի աճած էր, սակայն այս նոր գաղթականներն ալ հիներուն վիճակակից ըլլալու դատապարտուած էին, քանի որ այդ դարերուն ամէն բանէ վեր էր կրօնի ըմբռնումը, որով իրարու կապուած կ՚ապրէին ժողովուրդները՝ առանց իրենց ցեղային ծագումին ամենադոյզն կարեւորութիւն տալու: Այդ օրերուն աւելորդ էր որոնել ազգային կազմակերպութիւն եւ հայ սեպհական կեանքի հետքեր:

Հայ ըլլալէ դադրած էին եւ հոռոմ եղած էին, ոչ թէ ինքնաբերաբար, այլ պետութեան ձեռք առած միջոցներով, վասնզի Բիւզանդիոնի համար պետութեան բաղկացուցիչ տարրերու հոռոմացումը նպատակ մըն էր, որ վաղեմի ժամանակներէ սկսեալ ընդգրկած էր բիւզանդական կայսրութիւնը, որ կը ջանար կազմել կայսրութեան բոլոր բնակիչները իրարու հետ խառնելով նոր ազգ մը՝ Բիւզանդացին մէ՛կ կրօնքով, մէկ լեզուով եւ մէկ մշակոյթով:

Եւ իրաւամբ այս ձեւով կերտուած էր բիւզանդական կայսրութեան բնակչութեան ստուար մասը կազմող ՀՈՌՈՄ կոչուած հաւաքածոյ, խառնուրդ եւ արուեստական ազգը, որ այսօրուան Ամերիկայի Միացեալ Նահանգներու քաղաքացիներուն նախատիպարն էր:

Եթէ Եփրատի աջ կողմը անընդհատ տեղափոխուող Հայերը ենթարկուած չըլլային Բիւզանդացի դառնալու ճնշումներու, բիւզանդական կայսրութեան ասիական նահանգները Հայաստան պիտի դառնային, ինչ որ դժբախտաբար կարելի չէր եղած, եւ Եփրատի աջ կողմը գաղթող Հայերը, փոխանակ այդ երկիրները հայացնելու՝ իրենք յունացած էին, մասնաւորապէս կայսրերու ձեռքը ազգու գործիք մը հանդիսացող Օրթոտոքս Եկեղեցիին եւ անոր պետը եւ կայսրերու աջակիցը Կ. Պոլսոյ Տիեզերական Պատրիարքներուն ջանքերով:

Առանց Օրթոտոքս Եկեղեցիին գործադրած հալածանքներուն՝ ոչ միայն Փոքր Հայք, այլ նաեւ Փոքր Ասիա ամբողջ տարբեր պատկեր մը պիտի ներկայացնէին յաջորդ դարերուն, եթէ սաստիկ հալածանք չգործադրուէր եւ յոյն եկեղեցին աւելի աններող չըլլար:

Շատ բացորոշ է որ առանց այդ ճնշումներուն՝ մինչեւ Ե. դար ամբողջ բիւզանդական կայսրութեան տիրապետութեան ենթարկուած Հայաստանի մասերը եւ դրացի հայաբնակ գաւառները — որոնց գլխաւորներէն մէկն էր Մալաթիան — շատ աւելի չեչտուած հայ նկարագիրով բնակչութիւն մը պիտի ունենային, մինչ կը տեսնենք թէ շատ տժգունած էր իրենց հայութիւնը, չյիշելու աստիճան նոյնիսկ իրենց ծագումը:

Այդ գաղթականները, որոնք շարունակ Մեծ Հայքէն կ'անցնէին Փոքր Հայք, գրեթէ ամբողջովին խառնուած էին բնիկներու հետ, քրիստոնէութեան շնորհիւ որ ազգութեան գաղափարը փոխարինած էր քրիստոնէական անխտրականութեամբ եւ տիեզերական եղբայրակցութեամբ, որոնք զանազան ազգերէ մարդիկ քով քովի կը բերէին եւ իրարու կը միացնէին միակ կրօնքով մը:

Ասոնց նման իրենց ազգութենէն հեռացուած կամ օտարացած Հայեր անհամար եղած են, Դ. դարէն մինչեւ Է. դար՝ Արաբներու տիրակալութիւնը: Անընդհատ Անատոլեան Նահանգները գաղթող Հայերու իրենց ազգային նկարագիրը կորսնցնելուն հետեւանօք, Հայերս կորսնցուցած ենք շատ մը համաշխարհային համբաւով անձերու ծնունդ տուած ըլլալու հպարտութիւնը:

Այսպէս, միայն Փոքր Հայքի վրայ խօսելով՝ համաշխարհային պատմութեան մէջ իբր հռոմայեցի տեղ գրաւած են Պրոյերեսիոս (Պարոյր Հայկազն), Ս. Բարսեղ Կեսարացի հայրապետ, Գրիգոր Նազիանզացի եւ ուրիշներ (տես ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա. հտ., էջ 130), որոնց հայ ըլլալը շատոնց մոռցուած է եւ իբր բիւզանդացի յիշուած են, եւ մինչեւ հիմա այնպէս կը ներկայացուին, հակառակ անոր որ անոնց հայ ծագումը որոշ է՝ հաստատ եւ անժխտելի փաստերով:

Այս արդիւնքը ձեռք բերուած էր որոշ աշխատանքով որուն լծուած էին Օրթոտոքս Եկեղեցին եւ բիւզանդական կայսերական վարչութիւնը, որոնք երբեմն յայտնի եւ անվերապահ եւ երբեմն սքօղեալ եւ թաքուն կերպով կը դիմէին առաջադրուած նպատակին, որ էր Հայերու եւ այլ բնիկ փոքր-ասիական ժողովուրդներու ընկլուզումը բիւզանդական արուեստական ազգին մէջ:

Երբեմն այնքան ճարտարօրէն ծածկուած էր նպատակը, որ կարելի չէր ըլլար թափանցել կրօնական եւ քաղաքային իշխանութիւններու բուռն դիտումին, եւ երբեմն ալ յայտնի կը տեսնուէր:

Ամենէն կարեւոր ճնշումը, որ ի գործ կը դնէր բիւզանդական պետութիւնը Փոքր Հայքի բնակչութեան վրայ, կրօնականն էր: Ինչպէս տեսնուե-

*ցաւ, Հայերը կրօնական ազատութիւն չունէին: Կ. Պոլսոյ Տիեզերական Պատրիարքը չէր հանդուրժեր որ կայսրութեան սահմաններուն մէջ պետութեան եկեղեցիէն զատ ուրիշ եկեղեցիներ գոյութիւն ունենային:*

*Միակ զիջումը, զոր թերեւս ըրած է յունադաւան եկեղեցին, այն է որ հոծ թիւով Հայեր գտնուած տեղեր Հայերը իրենց յատուկ հայ եպիսկոպոսը ունենային հայախօսներու համար:*

*Այս կերպով միայն կրնայ մեկնուիլ Քաղկեդոնի Ժողովին* (451) *մասնակցող եպիսկոպոսներու անուանացանկին մէջ յիշատակութիւնը երկու Մելիտինեցի եպիսկոպոսներու, մին՝ Կոստանդին Եպիսկոպոս Մելիտինոյ Հայոց, եւ միւսը՝ Արխսիոս Եպիսկոպոս Մելիտինոյ, հաւանօրէն մին յունախօսներու եւ միւսը՝ հայախօսներու համար, քանի որ Մելիտինէի մէջ Հայերը եւ Յոյները իրարու քով կ'ապրէին, իրենց լեզուները պահելով:*

*Յուստինիանոս եւ իր յաջորդները՝ Հայերը — որոնց հաստատամտութիւնը կը զայրացնէր զիրենք — բաժնելու համար իրենց եկեղեցիէն, խորհեցան զանոնք ցանուցիր ցրուել Թրակիոյ մէջ եւ անկէ տեղահան ընել Պուլկարները, զորս կը փոխադրէին Մելիտինէի եւ Ծոփաց նահանգները* (Kévork Aslan, **Etudes Historiques sur le peuple Arménien**, 1928, *էջ* 263):

542-*ին Յուստինիանոս երբ Պարսիկներուն յաղթեց, հայ նախարարական այն տուները, որոնք Պարսիկները լքելով իր կողմը անցած էին, երբ թէ* «մարդասիրութեամբ ընդունեցաւ» (*Պրոկոպիոս*, Ի ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՎԱՆՏԱԼԱՑ, *Բ.*, *էջ* 24) *եւ ամբողջ իրենց պարագաներով եւ զինուորներով փոխադրել տուաւ Պոլիս, Թրակիա եւ Մակեդոնիա, հաւանօրէն թոյլ չտալու համար որ ուծանալու վրայ եղող բնակչութիւնը նոր աւիւնով մը զարթնու եւ հայ ոգի արծարծուի:*

*Այս նախարարները Յունաց դէմ դառնացան եւ Պարսից բաժինը անցան:*

*Խոսրով անոնց հետ աղէկ չվարուեցաւ. այս պատճառով անոնք դարձեալ բիւզանդական հող ապաստանեցան եւ հաւանօրէն անցան Մելիտինէ, ուրկէ կայսրը զանոնք փոխադրեց Պոլիս* (ՊԱՏՄ. ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, *Ա.*, *էջ* 147), *վասնզի անոնց քաղկեդոնականութեան հանդէպ հակակրութիւնը իրեն շատ յայտնի էր, ինչպէս կը հաստատէ Պրոկոպիոս: Բիւզանդական պետութիւնը կրթութիւնն ալ ծառայեցուցած էր իր առաջադրութիւններուն:*

*Պատմութիւնը կը յիշատակէ թէ Մելիտինէի Մեծն Եւթիմէոս* (377—473) *հայազգի եւ ազնուական անապատականը, իր ծննդավայրին մէջ հաստատած էր դպրոց մը կրօնական դաստիարակութեան համար, որուն Հայեր ալ կ'աշակերտէին* (*Մկրտիչ Եպս. Աղաւնունի*, ՏԱԹԵՒ ՏԱՐԵԳԻՐՔ, *Բ. տարի*, 1926, *Հալէպ*, *էջ* 86) *իբր յունադաւաններ կամ Հոռոմներ:*

*Եւթիմէոսի աշակերտած է Մելիտինէի մէջ Սիտանիոս հայազգի ազնուականը, որ եղած է Մելիտինէի եպիսկոպոսական ընծայարանին ուսուցիչ:*

Եւթիմէոսի 405–ին Երուսաղէմ երթալէն եւ հոն հաստատուելէն ետք, Սիտանիոս, 430–ին, իր երեք եղբօրորդիներուն հետ Մելիտինէէն Երուսաղէմ գացած է իր ուսուցիչը՝ Եւթիմէոսը տեսնելու համար (Մկրտիչ Եպս. Աղաւնունի, ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ՎԱՆՔԵՐ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՆԵՐ Ս. ԵՐԿՐԻՆ ՄԷՋ, 1931, էջ 337—9):

Ս. Մեսրոպ Մաշթոց 422–ին Բիւզանդիոն գացած ատեն իրեն հետ ունէր աշակերտներու խումբ մը, զոր ձգած է Մելիտինէ քաղաքին Ակակիոս եպիսկոպոսին[1] հոգածութեան տակ, դաստիարակութեան ունենալով իր աւագ աշակերտներէն Ղեւոնդ Վանանդեցի երէցը:

Այդ հայաստանցի աշակերտները Մելիտինէի մէջ ուսման պարապեցան Մելիտինէի յոյն եպիսկոպոսարանին Ընծարանին մէջ:

Ս. Մեսրոպ Կ. Պոլիսէն դարձին այդ աշակերտները իր հետը բերաւ Հայաստան եւ զանոնք գործածեց իբր ուսուցիչ իր բացած հայ դպրոցներուն մէջ:

Գերպ. Սահակ Կոգեան (ՄԵԼԻԴ., ՄԵԼԻՏԻՆԷ ՄԱԼԱԹԻԱ, էջ 14—5) կ'ենթադրէ թէ հայ վարժարան մըն ալ բացուած է Մելիտինէի մէջ այդ օրերուն եւ, ինչպէս տեսնուեցաւ (վերը էջ 170), Վեր. Եղիա Քասունի ալ համաձայն է Կոգեան Եպս.ի տեսութեան, սակայն անժխտելի փաստ մը գոյութիւն չունի որ Ե. դարուն որոշ չափով հոռոմ դարձած այս քաղաքին մէջ Հայերը ազատ ձգուած ըլլային հայ վարժարան մը բանալու, քանի որ գիտենք թէ Ս. Սահակ Պարթեւ եւ Ս. Մաշթոց ի՛նչ արգելքներու հանդիպեցան Հայաստանի յունական բաժինին մէջ հայ դպրոցներ բանալու համար:

Հետեւաբար առանց վարանման կրնանք ըսել թէ Մելիտինէի Հայերը Փոքր Հայքի բոլոր Հայերուն պէս ձուլման վտանգին տակ էին կամ արդէն կիսովին հոռոմ եղած էին, թէեւ կը պահէին քիչ շատ իրենց լեզուն եւ թերեւս ինքզինքնին Հայ կը կոչէին[2], բայց վերջապէս եկաւ ատեն մը որ անոնք իրենց սերտ յարաբերութիւններով բնակակից յունադաւան ժողովուրդին եւ բնիկներու հետ կնքած խառն ամուսնութիւններով արագօրէն ապազգայնացան մինչեւ Է. դար՝ արաբական տիրապետութեան սկիզբը, երբ մեծ թիւ ունէին

(1) Ակակիոս եպիսկոպոս ալ յունացած կամ Հայ-Հոռոմ էր (Ն. Ադոնց, Մաշթոց եւ Նրա աշակերտները, էջ 88). Սահակ Պարթեւ Հայրապետի հետ թղթակցութիւն ունեցած է (տես Գիրք Թղթոց, էջ 14 - 20): Գիրք Թղթոցի մէջ (էջ 103) թուղթի մը մէջ Պետրոսի... մը գրուած Ակակին համար ըսուած է «որ ի Հայոց աշխարհին քաղաքայապետ եղելոց», ինչ որ զարմանալի է, կամ այնպէս ընդունելու է թէ Մելիտինէ «Հայոց աշխարհ» մըն էր:

(2) Յիշատակուած է որ 428-ին Մելիտինեցի 800 կամ 400 հայ ուխտաւորներ գացած են Երուսաղէմ եւ այցելած՝ իրենց հայրենակից Ս. Եւթիմէոսի (F. Raymond Genier, Vie de Saint Euthyme le Grand, էջ 377—473 եւ Աղաւնունի Մկրտիչ եպս., Հայկական հին վանքեր եւ եկեղեցիներ, էջ 329–339): Ասիկա ալ փաստ մըն է թէ ո՛րքան մեծ թիւով Հայեր կային Ե. դարուն Մելիտինէի մէջ եւ միանգամ փաստ է թէ անոնք ո՛րքան յարում ունէին յունադաւանութեան:

*Հայերը ամբողջ բիւզանդական կայսրութեան մէջ, ուր ըստ Հ. Գելցերի մեր օրերուն պէս այն ատեն ալ գլխաւոր քաղաքներէն շատերը հայ գաղութ եւ եկեղեցական հաստատութիւն մը ունէին* (ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ, 1907, *էջ* 225)։

*Զ. դարուն սկիզբը Անաստաս կայսրը* (491—518) *հարկ զատած էր Մելիտէն պարսպել եւ գործի ձեռնարկած էր, բայց չկրցաւ աւարտել, վասնզի մահը վրայ հասաւ։*

*Պրոկոպիոս, որ Մելիտինէն զուտ հայ քաղաք կը ներկայացնէ Զ. դարուն, կը վկայէ թէ Յուստինիանոս կայսրը* (527—565) *լրացուց Անաստասի կիսատ թողած գործը, զայն կատարել «տեղացի Հայոց» յանձնելով, ինչ որ կարեւոր վկայութիւն մըն է որ կը փաստէ քաղաքին Հայերով լեցուն ըլլալը* (*Հմմտ. Մկրտիչ Եպս. Աղաւնունի*, ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ՎԱՆՔԵՐ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՆԵՐ Ս. ԵՐԿՐԻՆ ՄԷՋ, *էջ* 130)։

*Զ. դարուն վերջերը եւ Է. դարուն սկիզբները, ոչ միայն Մելիտինէն, այլ նաեւ այդ քաղաքին եւ Կապադովկեան Կեսարիոյ միջեւ տարածուած լեռնային շրջանակը հայաբնակ երկիր կը համարուէր։ Հայերը Հայաստան չինած էին այդ հողերը, բայց Բիւզանդացիք յաջողած էին հայկական Մելիտինէն դարձնել կամաց-կամաց յոյն քաղաք, օրթոտոքս եկեղեցիին գործադրած ճնշումներով, սակայն տակաւին այն նահանգը, ուր կը գտնուէր ան, կը պահէր Հայք կոչումը, ուր միայն պատմական նշանակութիւն մը ունենալ սկըսած էր։*

*Է. դարուն երբ Արաբները պատմութեան խառնուեցան եւ գրաւեցին բիւզանդական Մելիտինէն, ան արաբ տիրապետութեան տակ դատարկուեցաւ իր բնակչութենէն, վասնզի Մելիտինէ արաբական տեւական յարձակումներու ենթարկուեցաւ եւ գրաւուեցաւ անոնցմէ եւ քանի մը անգամ վանուեցան եւ նորէն երեւցին։*

*Այս շրջանին Արաբները եւ Բիւզանդացիք, մանաւանդ Եփրատի հովիտին մէջ կը մաքառէին իրարու դէմ։*

*Արկածախնդիր եւ պատերազմասէր Հայերը կ'անցնէին բիւզանդական երկիրներ, ոմանք փախչելով մահմետական հալածանքներէ կամ ցեղային կռիւներէ, իսկ այլք բախտ որոնելու Կայսրութեան երկիրներու մէջ։*

*Անընդհատ յարաբերութիւն կար Բիւզանդիոնի եւ Հայաստանի միջեւ եւ միշտ տեղափոխութիւն բնակչութեան դէպի բիւզանդական երկիրներ, որուն մանաւանդ Եփրատամերձ հողերը կը լեցուէին Հայերով Ժ. դարուն առաջին յիսնամեակին, Կոստանդին Ծիրանածինի գահակալութենէն մինչեւ Նիկեփոր Փոկասի իշխանութիւնը յափշտակելը* (963)՝ *Փոքր Ասիոյ մէկ վայրէն միւսը։ Հայաստանէն մինչեւ Բիւզանդիոն տարածուող բոլոր քաղաքներու մէջ առհասարակ հաստատուած էին Հայերը՝ Հայաստանի սահմաններուն մօտ հողամասերուն վրայ շատ աւելի ստուարաթիւ, իսկ հեռուները՝ աւելի*

նոսը (Հմմտ. ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՑ, էջ 334—6), բայց անոնք ժամանակի ընթացքին կ'օտարանային եւ կը հեռանային ազգէն, Հոռոմ դառնալով:

Բիւզանդական շրջանին Մելիտինէի, ինչպէս նաեւ Եփրատի արեւմըտեան կողմը տարածուած ընդարձակ տարածութիւններու յունացումը արդիւնքն էր այն միջոցներուն, զորս կիրարկեցին բիւզանդական կայսրութեան վարիչները, որոնք նախ հայաբնակ վայրերու բացառիկ եւ առանձնայատուկ վարչութիւնը ջնջելով զանոնք երկիրին ընդհանուր օրէնքներուն ենթարկած էին, երբեմն շնորհք մը ընելու եւ առաւելութիւն մը պարգեւելու ձեւերը տալով եւ տրուած որոշումները ներկայացնելով իբր ապացոյց բարեկամութեան:

Բիւզանդիոնի կայսրերը յաճախ իրենց զինուորական հրամանատարութիւններուն եւ նահանգներու քաղաքային վարչութեան համար ըրած կարգադրութիւնները ըրած են այնպիսի եղանակով մը որ ծառայէ որքան զինուորական եւ քաղաքային պետական պահանջները գոհացնելու, նոյնքան ալ բիւզանդական պետութեան ներքին քաղաքականութեան նշանաբանին իրագործման ծառայէ:

Յուստինիանոս կայսրը (527—565) իր գահակալութեան երկրորդ տարին (528) իսկ ջնջեց «Հայոց իշխանին» կամ Բիւզանդական Հռոմէական Հայաստանի Կոմս կամ Դուքս տիտղոսով կուսակալի պաշտօնը, եւ Հայաստանի սահմանագլուխներուն վրայ գտնուող զինուորական հրամանատարութիւնները եւ միակ զինուորական պետի մը (Magister Militum) ենթարկեց, որ կը կրէր **Magister Militum par Armenia et Pontum Polemoniacum et gents** տիտղոսը որմէ կը հասկցուի թէ անոր իրաւասութեան տակ էր Հայաստանէն զատ Պոլեմոնեան Պոնտոսը (արեւմտեան Պոնտոս) եւ խառն բնակչութեամբ «Ազգաց» վայրերը:

Այս է սկիզբը Հայկական կոչուած բանակաթեմին, որ կրած է յետոյ շատ փոփոխութիւններ, բայց պահած է միշտ Հայկական անունը:

Այս ընդհանուր հրամանատարութիւնը ստորաբաժանուած էր առաջ երեք երկրորդական հրամանատարութեանց՝ մէյմէկ դուքսերու հրամանին տակ, որոնք կը նստէին՝

Ա. ԱՐՏԱԼԻՍՈՆ (Artalison) Խորձեան (այժմ Քղի կամ Կեղի):

Բ. ՄԱՐՏԻՐՈՊՈԼԻՍ (Martyropolis) Ծոփաց աշխարհին մէջ:

Մարտիրոսաց քաղաք Նփրկերտ — Մայաֆարղին:

Գ. ԿԹԱՐԻՃ (Kitharidzon) Հաշտեանք (Ճապաղջուր) գաւառին մէջ: (Հիւպշման, ՀԻՆ ՀԱՅՈՑ ՏԵՂԻՈՑ ԱՆՈՒՆՆԵՐԸ, Գելցեր, ՍԿԶԲՆ. ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ԲԱՆԱԿԱԹԵՄԵՐՈՒ եւ Laurent, **L'Arménie entre Byzance et l'Islam**, էջ 302):

Յուստինիանոսի զինուորական վարչութեան համար ըրած այս կարգադրութեանց հետ միաժամանակ երկիրին քաղաքային վարչութիւնն ալ փո-

խեց եւ նորակազմ բանակաթեմը կուսակալութեան վերածեց՝ 15 Ապրիլ 536-ին։ Կրօնական եւ քաղաքական նպատակներով Յուստինիանոս գործադրութեան դրաւ նոր օրէնք մը, որով բիւզանդական Հայաստան կայսրութեան ընդհանուր օրէնսդրութեան կ՚ենթարկուէր։

Նոյն թուականով հրաման մը Հայաստանը կը բաժնէր վարչական չորս շրջանակներու՝ Առաջին, Երկրորդ, Երրորդ եւ Չորրորդ Հայք, այնպիսի եղանակով մը, որ ծառայէ Հայերը բիւզանդական զանգուածին մէջ ձուլելու։

Այս նոր բաժանումներուն առեն (որոնց մասին տես ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 344) չկրցան ուրանալ հայկական նկարագիրը Եփրատի արեւմտեան ափին վրայ գտնուող Անատոլեան այն նահանգներուն, որոնք ընդհանուր անունով մը հին առեն ՓՈՔՐ ՀԱՅՔ կը կոչուէին, առաւելապէս իր բնակչութեան մեծամասնութեան Հայու ծագում ունենալուն համար։

Յուստինիանոս այն կայսրն է, որ ամենէն աւելի աշխատած է Փոքր Հայքի հայ բնակչութեան իր ծագումը մոռցնել տալու, բայց չէ կրցած եւ իր կազմած չորս նահանգները Ա. Բ. Գ. Դ. Հայք կոչած է։

Այս բաժանումներէն ԵՐՐՈՐԴ ՀԱՅՔի մէջ էր Մելիտինէ քաղաքը, որ կեդրոնն էր նահանգին։

Այս քաղաքը «նշանաւոր էր եւ ունէր հրաշալի տեսարան եւ կը գտնուէր Եփրատի հոսանքէն քիչ հեռու» (Լէօ, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ, Ա., էջ 170)։ Յուստինիանոս Մելիտինէ քաղաքին «այնպիսի փայլ տուաւ որ ժամանակակիցները զայն անուանեցին «Հայաստանի զարդ» (Ն. Ադոնց, ՀԱՅԱՍՏԱՆ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ԺԱՄԱՆԱԿ, էջ 141)։

Նկատելի է որ Մելիտինէ, որ, ինչպէս յայտնի է, Հայաստանի մէջ չէր, այլ անոր սահմանին մօտ Եփրատի արեւմուտքը, սակայն հայկական քաղաք մը կը նկատուէր եւ Հայաստանի զարդ կը կոչուէր, միայն անոր համար որ այդ շրջանին իր բնակչութիւնը, ինչպէս իր շրջակայքին, մեծամասնաբար Հայեր էին։

ԵՐՐՈՐԴ ՀԱՅՔը, որուն կեդրոնն էր Մելիտինէ, իր մէջ կը պարունակէր երբեմնի Երկրորդ Հայքի բոլոր քաղաքները։

Զ. դարուն վերջերը, երբ տակաւին Արաբները՝ բիւզանդական կայսրութեան մեծ ոսոխները եւ յաւիտենական թշնամիները՝ հրապարակ չէին եկած, եւ Բիւզանդիոն կը գտնուէր իր զօրութեան եւ տարածութեան զենիթին վրայ, ճիշդ այս շրջանին Մօրիկ հայ կայսրը (582—603) 591-ին, երբ Պարսից հետ համաձայնութեամբ Հայաստանը բաժնեց եւ ինքը առաւ Աղձնիք, Տարօն, Այրարատ նահանգները (Հիւպշման, ՀԻՆ ՀԱՅՈՑ ՏԵՂԻՈՅ ԱՆՈՒՆՆԵՐԸ եւ Laurent, **L'Arménie entre Byzance et l'Islam,** էջ 393), Հայաստանը փոխանակ չորսի՝ եօթը նահանգներու բաժնեց, որոնց Առաջին Հայք կոչուածին մէջ — որ կազմուած էր հնագոյն Բ. Հայքի եւ Յուստինիանոսի Գ. Հայքի մէյմէկ մասէն եւ իր մէջ կը բովանդակէր Մելիտինէ, Արկա, Կոկիսոն եւ Կոմանա քաղաքները, միշտ Մելիտինէն ըլլալով կեդրոնը նահանգին։

*Հայկական բնագաւառէն դուրս գտնուող այս հողամասը բիւզանդական դիւաններու մէջ Հայ երկիրին մաս կը նկատուէր, պարզապէս ստուարաթիւ Հայերու բնակավայր ըլլալուն համար։ Վարչական այս նշանակելի ոլորտներէն զատ, որոնց նպատակակէտը ըստ բիւզանդ. կայսրութեան պետական ներքին քաղաքականութեան այլակրօն եւ այլալեզու տարրերու բիւզանդական զանգուածին մէջ ձուլումը կը կազմէր, ուրիշ զանազան միջոցներ ալ կիրարկած են Բիւզանդացիք Հայերը բիւզանդացի դարձնելու համար։*

*Արդարեւ Բիւզանդիոն աշխատած է վարչական–պետական միջոցներն ալ կիրարկել, կրօնական–եկեղեցական միութեան զօրաւոր ազդակէն անջատ, նպաստելու համար ձուլումի գործին։*

*Հակառակ այս բոլոր միջոցառումներուն Եփրատի արեւմտեան կողմի երկիրները կատարելապէս չօտարացան Հայութենէ եւ մինչ այդ երկիրները հայկական բան մը պահեցին իրենց մէջ, նոյնիսկ այնպիսի ժամանակներուն՝ երբ հայ ազգային գիտակցութիւնը կորսնցուցած էր այդ երկիրին բնակչութիւնը կա՛մ պատերազմական թոհուբոհին եւ կա՛մ բնական աղէտներու պատճառաւ, երբ պահեր եղած էր որ բնակչութենէ պարպուած էին Մալաթիա եւ իր շրջակայքը։*

*Նշանակելի է որ բաւական երկար տոկացած են Հայերը Փոքր Հայքի մէջ հակառակ անոր որ կարելի չէր պետական օրթոտոքս դաւանութենէ զատ ուրիշ դաւանութեան հետեւողներէն համայնք կազմել, անջատ եկեղեցի ու հոգեւոր վարչութիւն ունենալ։*

*Ասոնց չէին հանդուրժեր մոլեռանդ բիւզանդացի կղերականները եւ ժողովուրդը։ Բայց հակառակ իրենց սպասող անհանդուրժողութեան դարձեալ Հայերը գունդագունդ կը գաղթէին բիւզանդական երկիրներ, ուր գոնէ քաղաքային իշխանութիւնը աւելի լայնախոհ ըլլալ կը թուէր, թերեւս սպառնացող արաբական վտանգին դէմ Հայերը օգտակար նեցուկ մը նկատելով։*

*Նոյնիսկ կը թուի թէ անոնք կը չփացնէին Հայերը, ինչպէս կը հաստատէ հայատեաց յոյն մատենագիր մը* **(Sathas, Les Exploits de Degenis Akritas,** Paris, 1825, LXIX), *որ արդարեւ Ը. դարուն սկիզբները գրած է թէ «Հայերը, յոյն կայսրութեան չփացած տղաները, գրաւած էին Կապադովկիան, հոն հիմնած էին զինուորական գաղութներ եւ հաստատցնելու համար ազգային տարրը՝ հարկադրած էին իրենց անունը բոլոր նահանգին»* (*տես* **ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ**, Ա., էջ 248)։



## Է.

# ԱՐԱԲԱԿԱՆ ՇՐՋԱՆԻ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՀԱՅԵՐԸ

(Է. դարէն մինչեւ ԺԱ. դար)

*Արաբական տիրապետութեան սկիզբը, Թէոդորոս Ռշտունիի կնքած դաշինքով Հայաստան բաւական ապահով դիրք մը ունեցաւ, բայց Հայերը բիւզանդական սադրանքներով Արաբներու դէմ ըմբոստանալով ինքզինքնին վտանգեցին եւ վերատին բիւզանդական երկիրներ ապաստանեցան, սակայն դժբախտաբար Յոյները կարճմտութեամբ չկրցան օգտուիլ Հայերէն եւ կրօնական հալածանքներով զառնացուցին զանոնք: Այս պատճառով երբեմն Հայերը Արաբներու տիրապետած երկիրները բնակիլ նախընտրեցին:*

*Նոյնքան ձախող քայլեր առած են Արաբները, որոնք երբեմն կրօնական եռանդով բորբոքած՝ բոլոր իրենց ոչ-իսլամ հպատակները իսլամացնել աշխատած են, եւ այսպէս իրենք ալ զառնացուցած են իրենց հպատակները: Երկու մաքառող կողմերուն այս պարբերական հալածանքները շուարումի մատնած են Հայերը, որոնք չեն կրցած երկու պետութիւններէն մին նախընտրել եւ մէկէն միւսը անցած են ազատելու համար կրօնական հալածանքներէն:*

*Ինչպէս տեսնուեցաւ, յոյն մատենագիր մը կը չարախօսէր Հայերու դէմ, հաւանօրէն արձագանգ ըլլալով ժողովրդային մտայնութեան, որ պըղտորուած էր յոյն կղերին կողմէ եւ ստեղծած ատելութիւն հայ եւ յոյն ազգերու միջեւ:*

*Այս ատելութիւնը տխուր դեր կատարած եւ երբեմն պատճառ եղած է աւելի արծարծելու գայրոյթը Հայոց, որոնք Արաբներուն ի նպաստ գործած են՝ Յունաց դէմ (տես* ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա., *էջ* 360—1) :

*Երկու կողմերէն մէկուն նախընտրութիւն տալուն վարանած են Հայերը եւ հետեւաբար չեն կրցած հաստատուն ուղղութեան մը հետեւիլ: Մալաթիոյ Հայութիւնը Արաբներու պատմութեան ասպարէզ գալէն ետք դժբախտութիւնը ունեցած էր ենթարկուելու — թերեւս ամէն տեղերու Հայերէն աւելի — այս շուարուն վիճակին, որուն պատճառ կը հանդիսանային այն երկարատեւ պատերազմները, զորս մղեցին արաբ խալիֆաները եւ Բիւզանդիոնի կայսրը իրարու դէմ, մանաւորապէս Մալաթիան եւ շրջակայքը ռազմավայր ունենալով, քանի որ հոն էր շփման վայրը երկու պետութիւններուն եւ Մալաթիա էր այն կամրջագլուխը, ուրկէ միայն Արաբները կրնային մտնել Փոքր Ասիա եւ Բիւզանդացիք՝ Միջագետք եւ Սուրիա:*

Մալաթիոյ աշխարհագրական այդ դիրքին պատճառով, այդ շրջանակին մէջ մղուած պատերազմները Մալաթիոյ համար ճակատագրական դժբախտութիւն մը եղան, եւ ամբողջ այդ հողամասը դարձաւ գօտեմարտի վայր մը, որ ձեռքէ ձեռք կը յափշտակուէր:

Այս մշտատեւ պայքարը, որ Է. դարէն մինչեւ ԺԱ. դար տեւած է, կազմած է առանցքը մերձաւոր Ասիոյ այս տարիներու պատմութեան:

Ակնարկ մը այդ չորս դարերու պատմութեան վրայ ցոյց պիտի տայ թէ ի՞նչ կրնայ եղած ըլլալ Հայերու վիճակը Մելիտինէի մէջ, երբ երկու մեծ պետութիւններու բանակները լեցուած կրօնական եւ քաղաքական ատելութիւններով իրարու դէմ կը մաքառէին սաստկութեամբ:

Հայերը, որոնք շատ հին ժամանակներէն ի վեր հաստատուած էին Մելիտինէի մէջ եւ շուրջը, հրապուրուած անոր իբր կարաւաններու ճանապարհի վրայ գտնուող քաղաք ընծայած առեւտրական վայրի առաւելութիւններէն, միշտ հոն գացած են յանձն առնելով պատերազմի վայրի մը դժբախտութիւններուն ենթարկուելու վտանգը:

Հազիւ արաբ արշաւները սկսած՝ 650-ական թուականներուն իսկ գրաւուած է Մելիտինէն «անհաւատներէ» — ինչպէս Բիւզանդացիք կը կոչէին Արաբները — եւ քանի՛, քանի՛ անգամներ այդ թուականէն ետք առած-տուած են երկու մաքառող ոյժերը:

Այնպէս որ քաղաքին բնակչութիւնը, որուն մէջ Հայեր ալ կային, շատ քիչ կրցած են վայելել խաղաղութեան բարիքները, սակայն եւ այնպէս Հայերը քաղաքին ամենէն հաստատուն բնակիչները եղած են, այնպէս որ 702-ին, երբ Մալաթիա աւերուած էր, հոն կ՚ապրէին դեռ Հայեր, մինչ Յոյները փախած էին:

Թերեւս անոր համար որ Հայերը Յոյներուն պէս չէին փախած: Փիլիպիկոս կայսրը Արաբներուն հոն մտնելէն ետք, 711-ին Հայերը վտարեց հոնկէ: Արաբները կրկին հոն բերին Հայերը, որոնք երախտապարտ՝ անոնց բարեկամ եղան, եւ իրենց վիճակակից Բիւզանդացիներէն հալածուած եւ արաբ տիրապետութեան տակ գտնուող հողերու վրայ հաստատուած՝ ուրիշ Հայերու հետ կատաղի թշնամիներ եղան Բիւզանդացիներուն եւ ծառայեցին Արաբներուն ու կռուեցան Բիւզանդացիներու դէմ:

Արաբները Մելիտինէն շէնցնելու աշխատած են՝ հոն բերելով ուրիշ վայրերէ բնակիչներ եւ կառուցանելով գեղեցիկ շինութիւններ:

Հոն բերուած բնակիչներու մէջ Հայերը մեծամասնութիւն կը ներկայացնէին:

Բիւզանդացիք երբ արաբ խալիֆայութեան ներքին խռովութիւններէն օգտուելով 751-ին Մելիտինէն գրաւեցին, պարպեցին մայրաքաղաքը իր բնակիչներէն — մեծ մասամբ Ասորի եւ Հայ, որոնք Թրակիա տեղափոխուեցան, բոլորովին անբնակ ընելով քաղաքը:

Արաբ տիրապետութիւնը 756-ին վերահաստատուեցաւ, եւ քաղաքը վե-

բաշխնուեցաւ· հոն եկան նախկին բնակիչներէն — դարձեալ մեծ մասամբ Հայեր, ողջ մնացողներէն — եւ իրենց նախկին բնակավայրը չէնցուցին:

Եւ այս պատմութիւնը քանի մը անգամ կրկնուեցաւ:

Յոյնը եւ Արաբը յաջորդաբար Մալաթիոյ բնակչութիւնը ցրուեցին՝ ակամայ կամ կամաւոր տեղափոխութիւններու հարկադրելով, եւ նորէն անմիջապէս լեցուցին նոր գաղթականներով, միշտ անոնց մեծ մասը Հայեր ըլլալու պայմանով:

Արաբ տիրապետութեան ենթարկուելէն ետք այս գաղթը չէ դադրած եւ շարունակուած է անընդհատ, կարելի է ըսել նոյնիսկ աւելի մեծ չափերով: Ասոր համար է որ Մելիտինէ արաբ տիրապետութեան ենթարկուելէ ետքն ալ միշտ հայկական նկարագիրը պահած է եւ հայկական հող նկատուած է թէ՛ բիւզանդացի եւ թէ արաբ մատենագիրներու կողմէ[1], եւ հակառակ անոր որ դուրս էր Հայաստանէն, ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ նահանգին (որ դրացի էր Մելիտինէի) մէջ նկատուած է:

Արաբ խալիֆայութիւնը երբ տկարացաւ եւ կամաց-կամաց աւատապետական վարչաձեւը ընդգրկեց, մասնաւորապէս պետութեան ծայրագաւառներուն մէջ կազմուեցան կիսանկախ ճորտ իշխանութիւններ՝ Էմիրներու եւ Ամիրաներու իշխանութեան տակ:

Այդ ծայրագաւառներէն մէկն էր Մալաթիա, որ ունեցաւ Ը· դարէն ըսկըսեալ իր առանձին էմիրը:

Մալաթիոյ էմիրութիւնը, իբր առեւտրական եւ ռազմական մեծ կարեւորութիւն ունեցող շրջանակի մը տէրը, ստացաւ Հայոց համար մասնաւոր կարեւորութիւն մը, վասնզի անիկա ապաստանի վայր մը եղաւ Բիւզանդացիներէն սաստկութեամբ հալածուած և Արաբներէն գրկաբաց ընդունուած Պաւղիկեաններուն համար:

Եւ պէտք է գոնէ ընդունիլ թէ այս կրօնական շարժման հեղինակները Հայերը չէին, գոնէ անոր հետեւողներու մէկ կարեւոր մասը հայադաւան Հայեր եւ Հայ-Հոռոմներ էին:

Հայերը իրենց ազատ մտածութիւններով ոչ միայն օրթոտոքս կղերին կաշկանդումներուն և սեղմումներուն դէմ ծառացած են, այլ նաեւ իրենց անհանդարտ եւ որոնող միտքով, նորանոր աղանդներ ստեղծելով սպառնալիք մը դարձած էին, զի կը քանդէին Յուստինիանոսով ստեղծագործուած եւ իր յաջորդներէն փայփայուած, մէկ կրօնքով, մէկ լեզուով, եւ մէկ մշակոյթով միաձոյլ կայսրութիւն մը կազմելու մեծ երազը:

Բիւզանդ· եկեղեցին, որ ուրիշ եկեղեցիներու գոյութեան չէր հանդուրժեր կայսրութեան հողերուն վրայ եւ չէր ուզեր որ Հայերը հաստատ մնան իրենց ազգային եկեղեցիին դաւանանքին եւ մերժեն Քաղկեդոնականութիւնը, յամառօրէն ինքզինքնին գտան նոր պառակտումներու եւ հերձուածներու

(1) Փաստեր եւ ապացոյցներ փնտռողներ կրնան գտնել «Պատմութիւն Հայ Կեսարիոյ» գործին մէջ (էջ 349–368):

առջեւ, որոնք կը սպառնային օրթոտոքս բիւզանդական եկեղեցիին գոյութեան:

Մասնաւորապէս Ը. եւ Թ. դարերուն պատկերամարտութիւնը եւ Թ. դարուն անոր յաջորդող Պաւղիկեանութիւնը իբր միաւոր լուսաւորութեան փայլատակումները խոշոր ցնցում մը առաջ բերին Արեւելեան Եկեղեցիին մէջ:

Եւ Բիւզանդիոն, որ միշտ աններող դիրք բռնած էր Հայ Եկեղեցիին հանդէպ եւ անխորհրդաբար հալածած էր յատկապէս Ը. դարուն վերջերը Հայերը, երբ Հայ տարրը բիւզանդական կայսրութեան մէջ ամենայն ինչ էր և անոր զօրութիւնը կը ներկայացնէր իբր անոր զինուորական յենարանը եւ պետութիւնը վարող ամենէն կարկառուն դէմքերը տուող ցեղը, պիտի չվարանէր աւելի սաստկութեամբ հալածել Փոքր Ասիոյ մէջ ծնունդ առած պատկերամարտութեան եւ Պաւղիկեան աղանդները, որոնցմէ մասնաւորապէս վերջինը հայ մտքին յղացումը կը նկատուի: Իսկ եթէ զայն ստեղծողները Հայերը չէին, գոնէ անոր հետեւողներուն մէջ մեծ թիւով Հայեր կային, որոնցմէ մէկ մասը երբ հալածուեցան, ապաստանեցան Մելիտինէ, որուն էմիրը Խօմէր Իպն Օպէյտալլահ եւ Հայաստանի կուսակալ Ալի պէն Եահիա էլ Արմանի, Պաղտատի խալիֆային հրամանով զանոնք հովանաւորեցին եւ անոնց օգնեցին: (Ն. Ադոնց, **Les Fonds Historiques de l'Epopée Byzantine, Digenis Akritas**, BYZANTINISCHE ZEITSCHRIFT, XXIX, էջ 209 եւ ՊԱՏՄ. ՀԱՅ ԳԱՂԹ., Ա., էջ 335):

Մելիտինէ այս կերպով մէկ գլխաւոր կեդրոնը եղաւ Պաւղիկեանութեան յարած Հայերուն:

Պաւղիկեանութիւնը երբ անողոք խստութեամբ հալածուեցաւ եւ հազարաւորներ ջարդուեցան, անոր զոհ եղան բազմաթիւ Պաւղիկեան Հայեր, վասնզի անոնք կազմած էին Մելիտինէէն մինչեւ Սեբաստիա եւ աւելի լայն շրջագիծով հողամասի մը վրայ, կրօնական հասարակապետութիւն մը, Տիվրիկը կեդրոն ունենալով եւ իբր զինակից Մալաթիոյ մահմետական էմիրներուն՝ մաքառած բիւզանդական կայսրութեան դէմ:

Անոնք մինչեւ Վասիլ Ա. Մակեդոնացիի (867—886) օրերը պատուհաս մը եղան բիւզանդական կայսրութեան համար, որ վերջապէս դժուարութեամբ ընկճեց այս աղանդը, սոսկալի ջարդերով եւ անգթութիւններով, որոնց նաեւ զոհ եղան Մալաթիա եւ շրջակայքը[1], երբ Ժ. դարուն սկիզբը Բիւզանդիոն ժամանակաւոր փայլով մը, շնորհիւ իր հայ տաղանդաւոր զօրավարներուն — մասնաւորապէս Նիկեփոր Փոկասի և Յովհ. Չմշկիկի — կրցաւ երկար ատեն արաբ տիրապետութեան տակ մնացած իր երբեմնի հողերը վերագրաւել եւ սուրէ անցընել իսլամ բնակիչները եւ հեռացնել՝ Պաւղիկեան աղանդաւորները զանոնք Պալքանեան թերակղզին տարագրելով ու անոնց տեղը բերե–

(1) Մալաթիոյ էմիրն ալ ընկճուած է այս շրջանին եւ մտած է բիւզանդական հովանաւորութեան տակ եւ Արաբներու դէմ կռուած:

լով քրիստոնեաներ, մասնաւորապէս Հայեր եւ Ասորիներ, անոնց տալով արաբ բնակիչներու հողերը (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 337)։

Այդ նոր գաղթականները, որոնք իսլամներէն բնակուած այդ շրջանները նորէն քրիստոնեայ երկիր դարձնել կոչուած էին, նոյնիսկ մասնաւոր օրէնքներով սիրաշահելու աշխատեցան Բիւզանդացիք, Հայերու տալով ոչ-ստրուկ եւ ազատ բնակչութեան իրաւունքներ, ինչպէս կը հաստատեն բիւզանդական օրինագիրքերը (տես Գելցեր ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹԻՒՆ ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐԵՐԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, էջ 155 եւ Ա. Ալպոյաճեան ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 360)։ Մասնաւորապէս Նիկեփոր Փոկաս կայսեր (963—969) հրատարակած մէկ օրէնքը յատկապէս Հայոց կը վերաբերէր (տես Ն. Քարամեանց, ՅՈՎՀԱՆՆԷՍ ՉՄՇԿԻԿ ԿԱՄ ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅ ԿԱՅՍՐՆԵՐԻՑ ՄԷԿԸ, Լումայ, 1897, Բ. գիրք, էջ 57), ինչպէս նաեւ Չմշկիկի այն հրամանը, որ ապահարկ կ'ընէր Հայերը։ Բայց օրթոտոքս եկեղեցին աններող անհանդուրժողութեամբ մը չէր ըմբռնած կայսրերու քաղաքական նրբամտութիւնը եւ այդ վտանգաւոր շրջանին չարաչար հալածած է Հայերը կրօնական պատճառներով։

Նշանաւոր են 986-ի Վասիլ Բ. Պուլկարասպանի (976–1025) ատեն գործադրուած հալածանքները՝ Մելիտինէի Հայերուն դէմ իրենց մոլեռանդ յոյն Մետրոպոլիտէն, որ ժամանակակից Սեբաստիոյ կաթողի մետրոպոլիտին օրինակին կը հետեւէր (տես ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿ, էջ 188—9)։

Այս հալածանքներուն պատճառով Սեբաստիոյ՝ Սիոն եւ Լարիսայի՝ (Լիկանտոն) Յովհաննէս եպիսկոպոսները եւ կարգ մը հայ քահանաներ՝ չտոկալով տկարացած եւ Քաղկեդոնականութեան յարած են։

Ստեփանոս Ասողիկ (էջ 268) նաեւ կը պատմէ թէ Վասիլ Բ. 1000 թուականին երբ Հայաստան կ'երթար Դաւիթ Կիւրապաղատին իրեն կտակած հողերուն տիրանալու համար, Մելիտինէի մէջ, Սեբաստիոյ հայ քահանաները անոր ընդառաջ եկան։ Կայսրը հրամայեց Հայոց ազատօրէն «հնչեցուցանել զձայն ժամահարի», զոր արգիլած էր 986-ին Սեբաստիոյ մետրոպոլիտը (ԱՍՈՂԻԿ, էջ 189)։

Առաջին եւ Երկրորդ Հայքերու մէջ գործադրուած հալածանքները տեղի տուած են գաղթի մը բիւզանդական երկիրներէն դէպի արաբական հողեր, ինչպէս Մալաթիայէն հեռացած եւ անցած են արաբ տիրապետութեան տակ գտնուող երկիրներ։

**Այնպէս Բիւզանդիոն մոլեռանդութիւնը եւ Հայոց աւանդապահութիւնը իրարու դէմ մաքառեցան եւ հակառակութիւն եւ ատելութիւն սերմանեցին երկու ազգերուն միջեւ եւ տեղի տուին տխուր պատահարներու, որոնք ծանր կշռած են Հայերու վրայ, եւ անոնք բիւզանդական հողերը ձգած հեռացած են։**

Մեծ սխալ մըն է որ բիւզանդական կայսրերը թոյլ տուին կղերին որ օրթոտոքսութեան ախոյեան հանդիսանայ եւ աշխարհի կայսրութեան սահ-

մանները ապաստանած գաղթական Հայերը յունադաւան դարձնելու, նոյնիսկ բռնական միջոցներով:

Հալածանքը բուռն հակազդեցութիւն մը առաջ բերաւ եւ Հայերն ու Ասորիները ըմբոստութեան մղեց:

Հայ Եկեղեցին անընկճելի մնաց եւ նոյնիսկ կայսրութեան սահմաններուն մէջ ապրող Հայերը կարելի չեղաւ բոլորովին հնազանդեցնել Կ. Պոլսոյ Տիեզերական Պատրիարքութեան եւ Հայերը՝ մնալով հաւատարիմ իրենց սեպհական ազգային եկեղեցիին՝ առանձնայատուկ դեր մը բռնեցին եւ զբաղեցուցին Բիւզանդիոնը, մասնաւորապէս Պոլսոյ եկեղեցիին ույժը ջլատող աղանդաւորական շարժումներու ծնունդ տալով, ինչ որ մեծ ցնցումներ առաջ բերաւ պետութեան մէջ:

Եւ երբ Ժ. դարուն սկիզբը, զինուորական գերակայութիւնը՝ շնորհիւ Նիկեփորի, Զմշկիկի եւ Վասիլ Բ.ի պէս տաղանդաւոր զօրավարներու եւ վարիչներու՝ անցաւ Բիւզանդացիներուն եւ յաջորդական յաղթանակներով Մալաթիա ինկաւ կրկին բիւզանդական տիրապետութեան տակ երբեմն բիւզանդական կայսրութենէն կորզուած ընդարձակ հողերու հետ, եւ բիւզանդական բանակները՝ նախ Եփրատ եւ ապա մինչեւ Տիգրիս առաջացան: Մալաթիոյ բնակչութեան, յատկապէս անոր մահմետական մասը, անօրացած էր, վասնզի կա՛մ ջարդուած կա՛մ դէպի խալիֆային տիրապետութեան տակ գտնուող վայրերը ապաստանած էր. այնպէս որ Մալաթիա բոլորովին անշքացած էր:

Բիւզանդացիք այս վերագրաւումէն ետք Մալաթիոյ պարիսպները քանդեցին, որպէսզի Արաբները հոն չամրանան:

Ոչ միայն Մալաթիա, այլ եւ անոր շուրջ գտնուող քաղաքները, որոնք նոյնպէս Հայերով լեցուած էին, յարձակման ենթարկուեցան:

Բիւզանդացիք իրենց ժամանակաւոր տիրապետութեան շրջանին հոն դրին Կուրատոր (վերակացու) մը, առանց ջնջելու Մալաթիոյ էմիրին իշխանութիւնը, որ պահուեցաւ, պայմանով որ անիկա փոխանակ Պաղտատի խալիֆային՝ իբր գերիշխան ճանչնայ Բիւզանդիոնի կայսրը (928):

Քիչ ետք Մալաթիա արագօրէն վերածուեցաւ ծաղկեալ քաղաքի մը, ապահովաբար շնորհիւ հայ ձեռներէց եւ յաջողակ առեւտրականներու, որ դարձեալ հոն հաստատուած պէտք է ըլլան, օգտուելով այն նուաճումներէն, զորս առաջնակարգ հայ զօրավարները կատարած էին՝ պետութեան սահմանները մինչեւ Տիգրիս տարածելով:

Այնպէս որ Մալաթիա իր այս վերածաղկումը մասնաւորապէս Հայերու կը պարտի:

Այդ օրերուն ոչ միայն Մելիտինէ քաղաքը, այլ եւ անոր շուրջն ալ վերըստին հայ բնակչութիւն մը կը խտանար, ինչպէս Ամանոս լերան եւ Եփրատ գետին միջեւ գտնուող երկրամասը, այսինքն Մալաթիոյ եւ Սամոսատի շրջանները, որոնք դեռ նոր ազատուած էին Արաբներու տիրապետութենէն,

*Յովհաննէս Գուրգէն զօրավարը հայազգի Գէորգ Մլեհին տուաւ ի վարձատրութիւն անոր պուլկարական պատերազմին մէջ ընծայած նշանաւոր ծառայութիւններուն, եւ Մլեհ հոն Հայերու թիւը շատցուց եւ հայաբնակ գաւառ մը կազմեց Լիկանտոս անունով (913)՝ Լարիսա քաղաքը կեդրոն ունենալով։ Մլեհ այս թեմին թէ՛ քաղաքային եւ թէ զինուորական պետն էր Պատրիկի տիտղոսով։*

*Այս բանակաթեմին մէջ էր Կամմաղինէ (=Եփրատացիք) ուր Մլեհի իշխանութեան տակ հաւաքուած Հայեր տարածեցին անոր իշխանութիւնը դէպի Կիլիկիա, ուր Անարզաբա եւ Մամեստիա քաղաքները գրաւուեցան։*

*Այսպէս, Մալաթիա — զոր Յոյները ամրացուցած էին — վերստին հայկական քաղաք մը եղաւ, բայց Մուսուլի արաբ էմիրը 932-ին զայն առաւ Մլեհէն, որ երկու տարի ետք 934-ին Յովհաննէս Գուրգէնի հետ կրկին եկաւ պաշարելու քաղաքը։*

*Մելիտինեցիք, որոնց կը սպառնար սովը, ստիպուեցան անձնատուր ըլլալու համար բանակցութեան մտնել, բայց դեռ չհամաձայնած՝ Բիւզանդացիք նենգութեամբ քաղաք մտան 18 Մայիս 934-ին։*

*Տրուած խոստումին համաձայն բնակիչները անարգել մեկնեցան քաղաքէն։*

*Յետոյ պարիսպները հիմնայատակ քանդուեցան, անպաշտպան քաղաքի մը վերածելով զայն, ենթակայ արաբ յարձակումներու, զորս 944-էն ետք գործադրեց Հալէպի Համտանեան էմիրը, որ Սէյֆ էտ Տէօվլէի[1] գլխաւորութեամբ այդ շրջանակին մէջ կարեւոր դեր մը գրաւած էր։ 961-ին Սէյֆ էտ Տէօվլէի Մամլուքը՝ Նաճա Հանճիթ արշաւած ատեն Մալաթիոյ վրայ ալ յարձակեցաւ եւ 962-ին 18 օր Մալաթիոյ գաւառը աւերեց հուրով ու սուրով, օգտուելով Նիկեփոր Փոկասի Կրետէի մէջ զբաղած ըլլալէն։*

*Նիկեփոր երբ 964-ին Մելիտինէն վերստին գրաւեց, իսլամ բնակիչները հեռացուց քաղաքէն եւ հոն ուզեց բնակեցնել քրիստոնեաներ։*

*Բայց Բիւզանդացիք մերժեցին հոն բնակիլ՝ վախնալով արաբ յարձակումներէն։ Այն ատեն, ինչպէս տեսնուեցաւ, Նիկեփոր հոն բնակեցուց Յակոբիկեան միաբնակ Ասորիները, իրենց Իգնատիոս պատրիարքի աջակցութեամբ, խոստանալով չհալածել զանոնք։*

*Այս պայմանով 969-ին մեծ թիւով Ասորիներ հաստատուեցան Մալաթիա, որ անգամ մը եւս սկսաւ բարգաւաճիլ, ինչպէս պատահած էր հռոմէական կայսրութեան ատեն։ Հայերը անգամ մը եւս համաձայնեցան միասին կռուիլ ներխուժող բարբարոս ցեղերու դէմ, բայց բնակչութեան մէջ այս անգամ մեծամասնութիւն էին Ասորիները, որոնք ասորի քաղաքի վերածեցին զայն բազմաթիւ եկեղեցիներով եւ վանքերով։*

---

(1) *Այս մահմետական հերոս վեհապետին վրայ, որուն մայրաքաղաքն էր Հալէպ, ընդարձակօրէն խօսած է Քասունի (տես* Պատմութիւն Անթէպի, *էջ 190—6)։*

Ասորի պատրիարքն ալ հոն հաստատեց իր աթոռը։

Նիկեփոր կայսրը յոյն մոլեռանդ կղերին ազդեցութեամբ չյարգեց իր խօսքը եւ հալածեց Ասորիներ զանոնք պետական եկեղեցիին մէջ ձուլելու համար, բայց հակառակ արդիւնքի հասաւ, վասնզի Ասորիները իսլամներու ապաստանեցան։ Նոյնպէս Յովհաննէս Զմշկիկ (969—976) ստիպուեցաւ հակառակ իր կամքին զոհացում տալու համար Օրթոտոքս կղերին միադաւան Ասորիները եւ Հայերը Կարնոյ եւ Մելիտինէի շրջաններէն եւ ընկճուած Պաւղիկեաններու մնացորդները — որոնց գոյութեան չէր հանդուրժեր օրթոտոքս կղերը — տարագրել Պալքանեան Թերակղզին, Անտիոքի Թէոդորոս Կոլոնիացի հայածին պատրիարքին թելադրութեամբ, եւ հաստատել զանոնք Փիլիպուպոլսոյ շուրջը ամայի հողամասերու վրայ, որպէսզի չկարենան ապրել (Կենդրինոս, Սքիլիտէս, Պրոֆ. Եորտան Իւանով եւ Dr. E. Tachalla, **Le Muséon et la Revue des Religions, No 1-3, 1897,** էջ 104)։

Բիւզանդական կայսրութեան մէջ Հայերը հալածուեցան ոչ միայն կրօնական, այլ նաեւ քաղաքական պատճառներով։ Այսպէս, Ժ. դարուն վերջին քառորդին, Սքլերոսի եւ Փոկասի երկու ապստամբութիւնները, որոնք հայկական նկատուած են, երկու զինուորականներուն ալ գլխաւոր աջակիցները Հայերը ըլլալուն համար, պատճառ եղան որ Հայերու դէմ ատելութիւնը սաստկագոյն աստիճանի հասնի եւ լարուին հայ եւ յոյն յարաբերութիւնները (տես Ա. Ալպոյաճեան ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա., էջ 304), եւ բոլոր անոնք որ այդ ապստամբ զօրավարներուն օգնած էին, անոնց պարտութենէն ետք կարելի է որ ապաստանած ըլլան Արաբներու քով (Նոյն, էջ 365)։

Սակայն միշտ այս հեռացողներու պարապ թողած տեղերը գրաւած են նոր գաղթականներ, որոնք լեցուցած են մանաւանդ Եփրատէն մինչեւ Ալիս տարածուող հողերը։

Ամենահին ժամանակներուն իսկ հայ «Գաղթականներու զանգուածը կը հաստատուէր նախասիրաբար արեւելեան նահանգներու մէջ եւ Եփրատի մօտը, ընդ մէջ Մելիտինէի, Սեբաստիոյ եւ Կեսարիոյ։ Հոն բնակչութիւնը միշտ այնքան զօրաւոր կերպով խառնուած էր Հայերով որ այս շրջանակին տուած էին Փոքր Հայք անունը, ինչ որ յետոյ Արմենիակներու կառավարութիւնը եղաւ» (J. Laurent, **L'Arménie entre Byzance et l'Islam depuis la conquête arabe jusqu'en 886** էջ 4)։

Արաբական շրջանին, այսինքն Է. դարէն մինչեւ ԺԱ. դար, այդ խիտ Հայութիւնը, ինչպէս տեսնուեցաւ, ենթարկուած է պատերազմի աղէտներուն, վասնզի Փոքր Հայքը եւ մանաւանդ անոր հարաւային մասերը, Մելիտինէ եւ Կոմմագինէ միշտ անկայուն վիճակ մը ունեցած են։ Այնպէս որ կարելի է ապահովութեամբ ըսել թէ Դ. դարէն մինչեւ Է. դար Հայաստանէն Փոքր Հայք անցնող մեծ թիւով հայ գաղթականներու այն հատուածները, ո-

*րանք Մելիտինէ հաստատուած էին, գրեթէ մեծ մասով հեռացած էին Է. դարէն մինչեւ ԺԱ. դար:*

*Բայց եթէ Մելիտինէի Հայերն ալ հալածուած եւ ստիպուած էին հեռանալ — ինչ որ հաստատ չենք գիտեր — անկասկած է որ նոր գաղթականներ եկած են ԺԱ. դարուն սկիզբները, երբ Հայաստանի արեւելեան սահմանին վրայ կ'երեւային Ասիական բարբարոսներու նախակարապետները, որոնց դէպի արեւմուտք խուժումը տեղի պիտի տար գաղթային նոր մեծ հոսանքի մը, երբ արդէն բիւզանդական բանակներու յաղթական արշաւը Ժ. դարուն յոյսեր կը ներշնչէր տեւականութեան քրիստոնեայ կայսրութեան տիրապետութեան՝ այդ շրջաններուն վրայ:*

*Այնպէս որ ԺԱ. դարուն Հայերը դարձեալ* «կը գրաւէին կայսրութեան նահանգները, կը կազմէին բնակչութեան գրեթէ ամբողջութիւնը Իբերիոյ (*հիւսիսային Եփրատի հովիտ*) եւ Միջագետքի (*հարաւային Եփրատ*) թեմերուն, որոնք զուտ հայ երկիրներ էին, բայց անոնք կը բնակէին նաեւ մեծ թիւով Եփրատի արեւմտեան երկիրը, ուր գաղթականներ եկած էին անոնցմէ: Անոնք գրաւած էին Տաւրոսը, ՄԵԼԻՏԻՆԷի, Սեբաստիոյ, Կապադովկեան Կեսարիոյ, Տարսոնի, հիւսիսային Սուրիոյ եւ Եդեսիոյ երկիրին միջեւ: Մելիտինէէն Սեբաստիա, Փոքր Հայոց մէջ, Հայերը ամէն ատեն շատ մեծ էին, բայց Միջին դարուն անոնք դարձան բացարձակ տէրը այս երկիրին» (Laurent, **Byzance et les Turcs,** *էջ* 67):

*Այս ստուարաթիւ հայ գաղթականներէն մաս մըն ալ, ինչպէս* Laurent *կը հաստատէ, եկած է Մալաթիա եւ լեցուցած է քաղաքը, որուն իբր առեւտրական վայր ունեցած յարմարութիւնները գաղթականները հրապուրած պիտի ըլլային հոն հաստատուելու:*

*Եթէ այդպէս չըլլար, Արիստակէս Լաստիվերտցի զայն «Ծահաստան» եւ Կիրակոս Գանձակեցի եւ Միխայէլ Ասորի «Մելիտինէ Հայոց» պիտի չկոչէին քաղաքը:*

*Այնպէս որ անկասկած Մալաթիա Է. դարէն մինչեւ ԺԱ. դար միշտ հայաբնակ եղած է, հակառակ անոր որ հոն ապրող Հայերը բնաւ հանգիստ չեն եղած եւ միշտ երերուն վիճակ մը ունեցած են եւ նոյնիսկ եղած է ժամանակներ որ Հայերը բոլորովին հեռացած են քաղաքէն — ինչպէս տեսնուեցաւ — եւ նորէն եկած են հոն:*

*Վասիլ Բուլղարասպան* (976–1025), *որ արար խալիֆայութեան տկարացումէն օգտուելով տարածած էր կայսրութիւնը մինչեւ Պարսկաստան, մեծամտութենէ մղուած երբ քանդեց բիւզանդական կայսրութեան պատուարները՝ Բագրատունի եւ Արծրունի հայ թագաւորութիւնները ջնջելով եւ զանոնք իրենց բնակիչներով եւ զինուորներով բիւզանդական երկիրներ փոխադրել աշխատելով, բնական է Եփրատի աջ եզերքը ստուարացաւ հայ բնակչութիւնը:*

*Այդ ստուարաթիւ Հայերը եթէ չհալածուէին, թերեւս նեցուկ ըլլային*

*բիւզանդական կայսրութեան, սակայն ո՛չ Բիւզանդիոնի կայսերը եւ ոչ ալ Կ. Պոլսոյ Օրթոտոքս Տիեզերական Պատրիարքները կրցան ըմբռնել պետութեան իրական շահերը, եւ խրատուիլ նախընթաց փորձառութիւններէն եւ յանուն յունադաւանութեան շարունակեցին հալածանքները եւ վիրաւորեցին Հայերու, Ասորիներու եւ այլ քրիստոնեաներու զգացումները, եւ աւելի եղան անոնց:*

*ԺԱ. դարու առաջին տարիներուն, 1007-ին Ծառզատիկի պատճառաւ յանուն օրթոտոքսութեան ոչ միայն 10.000 ոչ-քաղկեդոնական քրիստոնեաներ ջարդուեցան Երուսաղէմի մէջ (ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ, էջ 104 եւ ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ 53), այլ նոյնիսկ Կ. Պոլսոյ եւ բովանդակ բիւզանդական կայսրութեան մէջ Հայոց եւ Յունաց մէջ վէճեր ու կռիւներ տեղի ունեցան:*

*Այս պատճառաւ Հայերը երբ առիթ կը գտնէին, կը գործէին բիւզանդական կայսրութեան դէմ եւ զայն տագնապի կը մատնէին:*

*Կենդրինոս (Բ., էջ 628) յոյն պատմիչը կը պատմէ թէ Իսահակ Կոմնէն կայսրին (1057—1059), որ 1057-ին Պափլագոնիոյ մէջ կայսր հռչակուած էր ընդդէմ Միքայէլ Զ. Ստրատոնիկի (30 Օգոստոս 1056—1057 Օգոստոս 31), միացած էին հայ պզտիկ իշխանութիւնները եւ անոր զօրքերը Հայեր էին, Սեբաստիայէն, Մելիտինէէն եւ Տիվրիկէն բերուած, այսինքն մասնաւորապէս այն տեղերէն, որոնք քիչ առաջ Օրթոտոքս կղերէն բռնի կերպով հարուածուած էին:*

*Ո՞վ կրնայ ապահովել որ 1055-ին կամ 1058-ի միջեւ Մալաթիա արշաւող եւ քաղաքը գրաւող սելճուկ բանակը առաջնորդող Իւանէ Ուրբելեան[1], Երզնկայի վրացի տէրը, նոյն այդ ատելութեան հետեւանքով չէր գործակցած Ապու-Դինարի զօրքին, երբ ան Մալաթիոյ վրայ կ՚արշաւէր:*

*Բիւզանդիոն եթէ կարենար սիրաշահիլ Հայերը, եթէ չվիրաւորէր զանոնք՝ անոնց դէմ կրօնական հալածանքներ գործադրելով եւ ազգամիջեայ ատելութիւն գրգռելով, թերեւս պիտի կարենար ապահովել Հայերու անձնուիրութիւնը եւ պիտի շահէր շատ բան:*

*Բիւզանդիոն ոչ միայն չօգնեց Հայերուն որ իրենց երկիրը պաշտպանեն բարբարոսներուն դէմ եւ թոյլ չտան որ անոնք բիւզանդական երկիրներ մտնեն, պատուար հանդիսանալով ասիական բարբարոսներու դէպի արեւմուտք խուժելուն, այլ եւ կրօնական մոլեռանդութեամբ՝ յարմար առիթ նկատեց Հայերը իրենց երկիրէն հեռացնելով փոխադրելու օրթոտոքս զանգուածներու մէջ, որպէսզի անոնք ալ օրթոտոքսացնէ եւ բիւզանդացի ընէ, եւ այսպէս աւելի զայրացուց Հայերը. որով գաղթը քաջալերեց եւ իր իսկ պատուարը քանդեց: Մնացին, յոյն հողին վրայ, քիչ օգտագործելի ճորտեր, աւելի հոգածու իրենց ազատութիւններուն եւ իրենց անձնական շահերուն քան թէ*

---

(1) Կը կարծուի թէ ասոր որդին էր իսլամացած Տայլու՝ Դանիշմէնդեանց հիմնադիրը (տես Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց, էջ 189):

կարգապահութեան եւ զոհողութեան։ Անոնք զգուշացան խնամով Յունաց հետ խառնուելէ։ Պահեցին իրենց տարազները, իրենց ճաշակները, իրենց բարքերը, իրենց լեզուն եւ իրենց կրօնը։ Անոնք մերժեցին խրոխտօրէն միանալ Կ. Պոլսոյ կրօնական դաւանանքին։

Բիւզանդացիք մոլեռանդական կուրութեամբ կարծես թէ անընդունակ դարձած էին իրատեսութիւն ունենալու եւ ըմբռնելու թէ Եփրատի աջ եզերքը հաստատուած Հայերը, որոնցմէ առաջ եկած էին մեծ կալուածատէրեր, արքաներ, ցեղապետներ, հարուստներ, որոնք ամբողջ գաւառակներու տիրացած էին (C. Bayet, տես Եղիշէ Արքեպս. Դուրեան, ԱԶԳ. ԱՊԱՏՄՈՒԹԻՒՆ, էջ 446) եւ մեծ դեր կը կատարէին եւ կը ներկայացնէին երկիրի ընտրանին եւ ոյժ մը (տես, ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 368—372), ընկճել դիւրին չէր եւ զանոնք հալածել կայսրութեան համար վտանգ մըն էր։ Մի քանի կայսրեր խորտակել ջանացին այդ մեծ կալուածատէրերը, անոնց հողային հարստութիւնը գրաւել աշխատելով առանց մեծ յաջողութեան (ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 373—7)։

Հետեւաբար Հայերը չհանդուրժեցին երբ Բիւզանդացիք Ժ. դարէն ըսկըսեալ յաջողեցան Արաբներէն խլել Մալաթիան եւ իրենք տիրել հոն, վասնզի անոնք միշտ այլամերժօրէն մոլեռանդ եւ աններող չհանդուրժողներ եղան տարբեր դաւանանքներու եւ երբեք չթողուցին որ Հայերը ունենան իրենց ազգային-եկեղեցական վարչութիւնը եւ անջատ համայնք մը կազմեն։

Ուստի Է. դարէն մինչեւ ԺԱ. դար հայկական մասնաւոր եւ առանձին կեանքի մը վերաբերող յիշատակութիւններ գրեթէ չկան։

Գլխաւոր նկատելի իրողութիւնը այն է որ հակառակ այն աննպաստ պայմաններուն, որոնց մէջ հարկադրուած էին ապրիլ Հայերը, քանի՛ անգամ հեռանալէ ետք՝ դարձեալ հոն դիմած եւ հաստատուած են եւ զարկ տուած են անոր տնտեսական բարգաւաճման։

Անոնք կրնային այլապէս ալ օգնել, իբր զինուորներ կայսրութիւնը պաշտպանելու, երբ Բիւզանդացիք կարենային սիրաշահիլ զանոնք, չվիրաւորելով անոնց կրօնական զգացումները, եւ յարգէին անոնց խղճի ազատութիւնը։

Բիւզանդացիք բնաւ հեռատես չեղան եւ իրենց բարեկամները եւ բնական զինակիցները վշտացուցին եւ դառնացուցին։ Իրենց այս մեծ սխալին պատճառով ասիական բարբարոսները անցան Եփրատը եւ Փոքր Ասիա մտան եւ հուսկ ուրեմն տապալեցին բիւզանդական կայսրութիւնը, որ տասը դար քրիստոնէական քաղաքակրթութեան եւ մշակոյթին ջահակիրը հանդիսացաւ, մաքառելով Իսլամներու դէմ եւ աշխատելով փրկել հելլենականին վրայ պատուաստուած արեւելեան քրիստոնեայ մշակոյթը, մինչեւ որ ինկաւ գիտապաստ՝ հազարամեայ պայքարէ մը ետք։

Ջ.

# ԱՍԻԱԿԱՆ ԲԱՐԲԱՐՈՍՆԵՐՈՒ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ ՄԻՆՉԵՒ ՕՍՄԱՆԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

Բիւզանդական կայսրութեան ասիական մասը ԺԱ. դարուն նոր վերիվայրումի մը կ'ենթարկուէր, ճիշդ այնպիսի պահու մը որ Բիւզանդիոն պատրանքը ունէր ընկճուած տեսնելու իր չորս դարերու անվհատ ոսոխները՝ Արաբները, որոնք այլեւս սպառնալիք մը ըլլալէ դադրած էին:

ԺԱ. դարու առաջին քառորդին Կեդրոնական Ասիոյ անապատները արեւելքէն դէպի արեւմուտք կը շարժէին Թուրանական բարբարոսները՝ աւեր սփռելով Մերձաւոր Արեւելքի մէջ, սկսելով Հայկական Բարձրաւանդակէն:

Բարբարոսներու ճնշումը այնքան ուժգին էր որ Բիւզանդիոնի ջանքերը անբաւական կու գային յաճախ պաշտպանելու Հայաստանը, որուն բնակիչները ատելով հանդերձ Յոյները՝ նորէն գաղթել կը պատրաստուէին բիւզանդական երկիրներ, ուր անոնք կ'ընդունուէին եւ կը տեղաւորուէին եւ նոյնիսկ կը ստանային ճորտ իշխանութիւններ, մինչ նենգ դիտումներով, որոնց հետապնդած նպատակը ուրիշ բան չէր եթէ ոչ Հայերը հնազանդեցնել Կ. Պոլսոյ Տիեզերական Պատրիարքի եւ զանոնք օգտագործել իբր պատուար, բարբարոսներու արշաւանքներուն դէմ կազմելով Փոքր Ասիոյ մուտքին վրայ պաշտպանութեան երկրորդ գիծ մը:

Այս նպատակներով Վասիլ Բ.ի կողմէ 1018—1020-ին կիսահայ Սեբաստիոյ մէջ ճորտական իշխանութիւն մը տրուեցաւ Սենեքերիմ Արծրունիի, եւ առաջարկուեցաւ 1045-ին Գագիկ Բ. Բագրատունիի Անիի փոխարէն ստանալ Մելիտինէն եւ շրջակայքը, ուր Նիկեփոր Փոկասի եւ Յովհաննէս Զմշկիկի որոշումով ջարդուած ու վանուած իսլամ բնակչութեան տեղ մեծ թիւով քրիստոնեաներ — ի մէջ այլոց Հայեր — հաստատուած էին Ժ. դարուն:

Արիստակէս Լաստիվերտցի (տպ. 1912, Թիֆլիս, էջ 61) պատմագիրը, որ ժամանակակից է, կը պատմէ թէ Բիւզանդիոնի կայսրը առաջարկած է Անին թողուլ իրեն եւ առնել «փոխանակաւ զՄելիտինէ եւ զգաւառսն, որ շուրջ զծովու», սակայն Գագիկ «ոչ առնու յանձն»:

Ասիկա փաստ մը կրնայ նկատուիլ որ այդ դարուն նորէն Մալաթիոյ մէջ մեծ թիւով Հայեր բնակութիւն հաստատած էին:

Ուռհայեցի (էջ 111) Գագիկի մերժումէն ետք կ'ըսէ թէ «տայր Մասմախըս Գագկայ զԿալօնպիղատն եւ զՊիզու», ինչ որ կը համաձայնի Յոյն Կեդրենոս պատմագիրի (Բ. 551) տեղեկութեան հետ մասամբ, քանի որ անիկա կը հաստատէր թէ Գագիկի տրուած է Մագիստրոսի տիտղոս եւ թոշակ, Կ. Պոլսոյ մէջ պալատ մը, հողեր Կապադովկիոյ, Ղարսեանի եւ Լիկանտոսի, Կա-

լանպաղատի եւ Պիզուի մէջ (հմմտ. Schlumberger, **L'Epopée Byzantine,** Գ. հատոր, էջ 487, Chalandon, **Les Comnènes II, Jean II Comnène et Manuel I Comnène,** p. 489, J. Laurent, **Byzance et les Turcs,** p. 20, 238).

Հայ պատմագիրներու համաձայն Գագիկի կեդրոնը կամ բնակավայրը եղած է Պիզու[1], ուր շինած է ան Ս. Խաչ անուն վանք մը:

Հաւանօրէն Գագիկի անհատական քաջութիւնը օգտագործելու համար էր որ Մոնամախոս Մալաթիոյ պէս ռազմական դիրք մը կը վստահէր անոր, բայց ան կը մերժէր:

Գագիկ, որ շատ դառնացած էր Յոյներուն իրեն հանդէպ ցոյց տուած նենգութեան եւ խարերայութեան համար, պիտի չուզէր անոնց աջակցիլ եւ օգնել:

Ասով հանդերձ շատ Հայեր ատելով հանդերձ Յոյները, ակամայ հարկադրուած են նորէն բիւզանդական երկիրներ երթալ, երբ Հայաստան ողողուած էր սելճուկ բարբարոսներով:

Եւ այսպէս, ինչպէս Laurent կ'ըսէ, «Հայերը ունեցան թուական գերակշռութիւն մը արեւմտեան Փոքր Ասիոյ, Սեբաստիոյ, Կեսարիոյ, Մելիտինէի եւ Տաւրոսի շուրջը եւ համարձակեցան գործել նոյնիսկ ընդդէմ Բիւզանդացիներու, որոնք զիրենք կը հալածէին կրօնական պատճառներով: Անոնք զայրացած դիւրացուցին Սելճուկեանց արշաւները, կամ անջատօրէն եւ առանձին դիմադրեցին թրքական արշաւանքին կամ միացան անոր ինքնակամ, թողլով անկախ Պոլիսէն, մանաւանդ Ռոմանոս Դիոգինէսի մահէն (1071) ետք» (Laurent, **Byzance et les Turcs,** էջ 17):

Մանազկերտի պարտութենէն (19 Օգոստոս 1071) ետք երբ անիշխանութեան ենթարկուեցաւ բիւզանդական կայսրութիւնը, Հայ ճորտ թագաւորութիւնները, Սեբաստիա, Պիզու եւ Ծամնդաւ կեդրոններով, անկախ եղան, ինչպէս նաեւ անիշխանութենէն օգտուելով երեւան եկան յելուզակներ, աւազակներ կամ բախտախնդիրներ, որ իշխողներ դարձան Եփրատի հովիտին շուրջը»:

(1) Ս. Մ. Ծովիկեան (Արեւմտահայ աշխարհ, 1917, էջ 374) Պիզուն կը նոյնացնէ Մալաթիոյ հետ եւ կ'ըսէ թէ Թուրքերը զայն կ'արտասանէին Ապրչէ, բայց այս նոյնացումը հաւանական չէ: Լաստիվերտցի (էջ 62) Գագիկի Մալաթիան Անիի փոխարէն առնալ յանձն չառնելը գրելէ ետք կ'ըսէ թէ երբ Յոյները «տիրեցին Անւոյ եւ ամենայն աշխարհին», «Գագիկ աներախտի մնաց առ Թագաւորն, յորում առ մարդասիրութեան՝ տուեալ նմա տեղիս, զոր ինքն կամեցաւ» (էջ 62): Այդ յանուն մարդասիրութեան տրուած տեղերէն մէկն էր Պիզու, որ չէր կրնար Մալաթիան ըլլալ, քանի որ Գագիկ զայն մերժած էր: Գագիկ չուզելով բիւզանդական կայսրութեան պաշտպանութեան համար մեծ նշանակութիւն ունեցող այս քաղաքին իշխանութիւնը ստանձնել՝ իբր անվստահելի աւելի կայսրութեան կեդրոնին եւ բիւզանդական պահականոցներու մօտ վայր մը առաւ:

*Ասոնք կերպով մը քաջալերուեցան Ռոմանոս կայսեր նահանջի գիծը պաշտպանելու պաշտօն ունեցող Փիլարտոսէն, որ կայսեր գերի իյնալէն ետք ինքն ուզեց կազմել Փոքր Ասիոյ մուտքին վրայ հայ իշխանութիւններու համար համադաշնակցութիւն մը՝ հոն հաւաքուած հայ զանգուածներուն վրայ յոյս դնելով, բայց դժբախտաբար յաջող նախաքայլեր առնելէ ետք, տեղի տալու բարբարոսներու հարուածներուն առջեւ, վասնզի անոնք շուտով հասնելով Եփրատ, 1080-ին գրոհ պիտի տային Փոքր Ասիա, պիտի խորտակէին Բիւզանդիոնի կազմած երկու պաշտպանութեան գիծերը եւ աւլէին հայ ճորտ թագաւորութիւնները, որոնք Փոքր Ասիոյ արեւելեան ծայրը հաստատուած էին*[1]:

*Մալաթիա այդ բարբարոսներու արշաւանքներուն առաջին զոհերէն մէկը եղած է իբր Եփրատի անցքը, նոյնիսկ 1080-ի մեծ գրոհէն երկու տասնեակ տարիներ առաջ, 1058-ին, երբ բարբարոսները կը հասնէին իր դուռներուն առջեւ եւ յարձակումով կը գրաւէին քաղաքը:*

*Քաղաքացիներէն մէկ կարեւոր մասը — հաւանօրէն մեծամասնութեամբ Հայեր — կը փախին շրջակայ լեռները, ուր կը մեռնին անօթութենէ եւ ցուրտէ:*

*Մալաթիա կը կողոպտուի եւ կը հրկիզուի: Իսկ բնակչութենէն անոնք որ ձեռք կ՚անցուին, գերի տանելու համար ճամբայ կը հանուին, սակայն Սասունցիներու անակնկալ յարձակումով կը փրկուին:*

*Այսպէս, 1058-ին Մալաթիա աւերակի կը վերածուէր եւ բնակչութիւնը կը ցրուէր, սակայն 1060—1061-ին, Սելճուկներուն ետ քաշուելէն ետք, Կոստանդին Ժ. Տուկաս (1059—1067) կայսրը հոն կը հաւաքէր բնակիչներէն ողջ մնացողները եւ կը կառուցանէր զոյգ պարիսպներ, բնակչութեան ապահովութեան համար:*

*Քիչ ետք երբ Ալփասլան կ՚արշաւէ դէպի Փոքր Ասիա, բոլոր իր անցած տեղերը կը բնակեցնէ սելճուկ-թուրք ցեղին պատկանող ընտանիքներ, որոնք իրենց տուն-կառքերով կը հետեւէին իր բանակին:*

*Այսպէս, Մալաթիա որ մինչեւ այն ատեն տեւականօրէն միայն քրիստոնեայ յոյն, հայ, ասորի եւ արաբ մահմեդական բնակիչներ ունեցած էր, այդ թուականէն ետք կ՚ունենայ նաեւ թուրանեան ցեղէն բնակիչներ, որոնք քաղաքակրթական մակարդակով կը գտնուէին նախկին բնակիչներէն վար մակարդակի վրայ:*

*Այս ժամանակամիջոցին Փոքր Ասիոյ մուտքին վրայ Եփրատի աջակողմը գտնուող հողերը կը մատնուին անիշխանութեան, բարբարոսներու բանակին հետ, անոր առջեւէն խոյս տուող կամ կողոպուտի ցանկութեամբ անոր հետեւող աւազակաբարոյ տարրերու կողմէ:*

---

(1) *Այս հայ թագաւորութիւններու կազմութեան, գտնուած տեղերուն եւ կեանքին վրայ մանրամասնութիւններ՝ տես Ա. Ալպոյաճեան, Պատմ. Հայ Կեսարիոյ, էջ 412—464:*

Այս ասպատակները կարգ մը հրոսապետներու հրամանին տակ նոյնիսկ իշխանութիւններ կազմելու կը յաջողին, ինչպէս Ահմէտ Տայլուն, Աւշէնը եւ Կիւմիւշթէքին:

Բիւզանդական կայսրը Ռոմանոս Դ. Դիոգինէս (1067—1071) թէեւ կը ճարտարօրէն կայսրութեան հեղինակութիւնը վերահաստատելու եւ յաջողութիւններ ալ կ'ունենայ, սակայն, ինչպէս տեսնուեցաւ, Մանազկերտի ճակատամարտը (19 Օգոստոս 1071), ուր Ռոմանոս կայսրը գերի կ'իյնայ Ալփասլանի, դարձակէտ մը կ'ըլլայ եւ արեւելեան կայսրութիւնը խոշոր հարուած մը կը կրէ: Տեսնուեցաւ թէ Փիլարտոս Հայը ի՛նչպէս առիթը օգտագործեց՝ հիմնելու համար իր իշխանապետութիւնը, որ իրեն յենարան ունէր շրջանին հայ բնակչութիւնը, որուն թիւը աւելցնելու համար Փիլարտոս իր իշխանապետութեան սահմաններուն մէջ տեղաւորեց Մեծ Հայաստանէն բարբարոսներու առջեւէն փախստական բոլոր Հայերը, ինչպէս նաեւ Փոքր Հայք տեղափոխուած հայ թագաւորները՝ իրենց զօրքերով եւ հպատակներով, որոնք հայ խիտ բնակչութեան մը գոյանալուն նպաստեցին կարճ ժամանակի մէջ, մասնաւորապէս 1080-էն ետք, երբ Դանիշմենտեան իշխանութեան նախաձեռնութեամբ բարբարոսները յարձակեցան Փիլարտոսի պաշտպանութեան տակ գտնուող հայ ճորտ թագաւորութեանց վրայ եւ անոնց հողերը գրաւեցին, վասնզի Փիլարտոս չկրցաւ անոնց օգնութեան հասնիլ, նոյն պահուն իր վրայ ալ յարձակում գործուած ըլլալուն համար:

Ասով հանդերձ Փիլարտոս մեծ ճիգեր բրաւ այդ շրջանակին մէջ սեղմուած մնացեալ հայ իշխանութիւններէն կազմուած համադաշնակցութիւն մը կազմելու եւ անոնց իբր իշխանապետ վեց տարի եւս կրցաւ տոկալ, բարբարոսներու դէմ: Իր հովանիին տակ գտնուող իշխաններէն երկու կարեւորներն էին 1. Մալաթիոյ Գաբրիէլ հայ-հոռոմ իշխանը եւ 2. Քեսունի Գող մականուանուած Վասիլ իշխանը, որոնք երկուքն ալ հաւանօրէն այդ հողամասերուն վրայ ասպատակող հրոսակներէն էին, որոնք յաջողած էին զօրաւոր իշխանութիւններ կազմել:

Դժբախտութիւն մըն է որ հակառակ այն տագնապալի կացութեան, որուն մատնուած էր երկիրը եւ որ բնաւ ձեռնտու չէր ներքին վէճերու արծարծումին, կ'երեւի թէ յոյն օրթոտոքս կղերը բնաւ խրատուած չէր պատմութենէն եւ իր սխալ քաղաքականութիւնը կը շարունակէր հանդէպ բնակակից ոչ-քաղկեդոնական բնակչութեան:

Ինչպէս տեսնուեցաւ, Մալաթիոյ իշխանը Գաբրիէլ «Յոյն» չափազանց փափուկ շրջանի մը, երբ երկիրը տակնուվրայ էր եւ սելճուկ սպառնալիքի տակ, փոխանակ իր հպատակները սիրաշահելու՝ սաստիկ հալածած է միադաւան Ասորիները, որոնց գլխաւոր կեդրոններէն մէկն էր Մալաթիա, ուր Ասորիներու հետ կ'ապրէին նաեւ միադաւան Հայեր, որոնք նաեւ հալածուած են հաւանօրէն, թէեւ ասորի պատմագիրը, որ իր ժողովուրդին հալածանքը նկարագրած է, Հայոց մասին չի խօսիր:

*Ապուլ Ֆարաճի իր պատրիարք իր օրհնութիւնը ղրկելը Գաբրիէլի (տես անդ, էջ 232) այնքան յատկանշական է որ տարակոյս չի ձգեր Գաբրիէլի անձնական կամ յոյն կղերէն դրդուած մոլեռանդութեան, որ շատ վնասակար դեր կատարած է ժողովուրդը պառակտելով եւ ներքին բաժանումներ առաջացնելով:*

*Ասոր հետեւանքը տեսնուեցաւ ճիշդ այն ժամանակ երբ Դանիշմենտ կը նեղէր Մալաթիան՝ երեք տարի յաջորդաբար յարձակելով այդ քաղաքին վրայ: Այդ տագնապալի վիճակին մէջ մոլեռանդ Գաբրիէլ «Յոյնը» արտաքին թշնամիներէն աւելի ներսէն կը նեղէր քաղաքին ոչ-քաղկեդոնական բնակչութիւնը տխմարութեամբ:*

*Միխայէլ Ասորի* (Michel le Syrien, *Գ. հատոր, էջ* 188) *այս առթիւ, ինչպէս վերը տեսնուեցաւ, ունի նշանակելի վկայութիւն մը, ուրկէ կը հասկցուի թէ Հայերը, որ դարձեալ թիւ մը կը ներկայացնէին Մալաթիոյ մէջ, երբ Գաբրիէլ «Յոյն» ճարահատ Մալաթիան լատին Պոհեմունդի ձգելու որոշում կու տայ, շատ սիրով չեն դիտեր այս որոշումը եւ ինչպէս ասորի պատրիարքը կը պատմէ, Հայերը դարաններ կը լարեն* «որովհետեւ կը վախնային որ մի գուցէ զիրենք հեռացնէ այս տեղերէն, ուր իրենք կ'իշխէ», *քանի որ Պոհեմունդ ինքն ալ քաղկեդոնական մըն էր եւ մոլեռանդ Գաբրիէլի բարեկամը կամ անկէ հրաւիրեալը:*

*Այս հաւանական վտանգին դէմ կանգնելու համար Հայերն ալ հրաւիրեցին գաղտնի Դանիշմենտը, որ գայ եւ գրաւէ քաղաքը:*

*Գաբրիէլի գործադրած անգութ հալածանքները պատճառ եղան որ նոյնիսկ իր զինուորները քաղաքին դուռները բանան Դանիշմենտի, որ* 18 *Սեպտեմբեր* 1101*-ին մտաւ քաղաք, քաղաքին Պոհեմունդի յանձնուելէն առաջ, թէեւ Գաբրիէլ իր խոստումը յարգելու մտադիր չէր, վասնզի զղջացած էր:*

*Դանիշմենտ, ինչպէս բացատրուած է վերը (անդ, էջ* 240)*, թէեւ թողուց որ իր զօրքերը կողոպտեն քաղաքը, բայց բնակչութեան կեանքին վնաս չհասցուց, զիրենք իրենց տուները դարձուց, անոնց պաշար հասցուց, իր երկիրին մէջ գերի քրիստոնեաները ազատ արձակեց եւ զանոնք Մելիտինէ ղրկեց որ հոն բնակին: Նոյնիսկ հոն քրիստոնեայ կառավարիչ մը դրաւ, որպէսզի շահի քրիստոնեայ բնակչութիւնը (հմմտ.* (Michel le Syrien, *Գ., էջ* 188, *հայերէն ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ*, 1871, *էջ* 406) :

*Այնպէս որ Հայերու եւ Ասորիներու համար Դանիշմենտի գրաւումէն ետք նպաստաւոր պայմաններ ստեղծուեցան, եւ որչափ կարելի է մակաբերել ինչ ինչ տուեալներէն, անոնք հոն նոր բարգաւաճում մը ունեցան, հակառակ անոր որ խառնակ եւ անհաստատ վիճակ մը կը տիրէր հոն, վասնզի Մալաթիոյ եւ անոր շրջակայքի տիրապետութեան կը ցանկային Դանիշմենտները, Ռումի Սելճուկները, Բիւզանդացիք, Խաչակիրները եւայլն:*

*Այնպէս որ ԺԱ. դարուն ամբողջ տեւողութեան շարունակ տէր փոխած է երկիրը, ուր իսլամը քրիստոնեային, քաղկեդոնականը հակաքաղկեդոնա-*

կանին, Ասորին՝ Հայուն դէմ կը կռուէին:

ԺԲ. դարուն սկիզբը 1101–ին Դանիշմենտեանք տիրապետեցին եւ 1178–էն անոնցմէ առաւ Մալաթիան՝ Ռումի Սելճուկ սուլթանութիւնը, որ մինչեւ 1315 հոն տիրեց:

Այս երկու իշխանութիւնները թէեւ բարբարոսներէն կազմուած, սակայն բաւական կարգաւորեալ կառավարութիւններ էին, որոնք որոշ ուղղութեամբ մը յաջողեցան կառավարել իրենց տիրած երկիրը:

Իսկ 1315–էն ետք այլեւս հաստատուն վիճակ մը չունէր Փոքր Ասիան, այլ վրդովուած էր երկիրը: Ասով հանդերձ Հայերը հոն տակաւին կը պահէին իրենց նշանակելի թիւը եւ բնակչութեան կարեւոր մէկ մասը կը ներկայացնէին եւ իրր այն կարեւոր դեր կը կատարէին:

## ՀԱՅԵՐՈՒ ԹԻՒԸ

Հայերու թիւը ազգին ֆիզիքական գոյութեան հարցը ըլլալով հետաքըրքրական է գիտնալ թէ ի՞նչ փոփոխութիւններ կրած է 250 տարիներու այդ շրջանին, որուն սկիզբն իսկ երկիրը ենթարկուած էր վերջնապէս իսլամ տիրապետութեան:

Այս պատճառով հաւանական է որ հայ իշխաններու վերջին մնացորդները, որոնք Փիլարտոս իշխանապետին քով ապաստանած էին, մեծ մասամբ անցած են Կիլիկիա — ուր 1080–ին հիմնուած էր Ռուբինեան իշխանութիւնը — եւ աւելի հեռուն քրիստոնեայ երկիրներ:

Սակայն անժխտելի է որ իսլամ տիրապետութեան տակ եւս միշտ ըստուար թիւով Հայեր ապրած են:

Ասիկա կը հաստատուի սա իրողութեամբ որ երբ 1096—1097–ին Խաչակիրները հասան Տաւրոսեան լեռներու մօտերը եւ Եփրատի եզերքները, հոն գտան ստուար թիւով Հայեր, եւ կոչեցին այդ երկիրը Hermoniorum Terra = «ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԿԻՐ» (տես ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ՀԱՄԱՅՆԱԳԻՏԱՐԱՆ)[1]:

Այս ստուար հայ բնակչութիւնը մէկէն չէ գոյացած:

Հայերը, ինչպէս նախ քան Դանիշմենտ եւ Սելճուկեան տիրապետութիւնը, նոյնպէս նաեւ անկէ ետք պահեցին իրենց կարեւորութիւնը անոնց երկիրներուն մէջ, թէ՛ իրենց պատկառելի թիւով եւ թէ իրենց բարոյական արժէքով:

Սելճուկեանք անոնց նոյնիսկ արտօնութիւններ եւ առանձնաշնորհներ տալով՝ յաջողեցան հրապուրել ուրիշ Հայեր որ վաճառականութեան, շահու

---

(1) Այն ատեն Խաչակիրները բուն Հայաստանը ԻԲԵՐԻԱ (Վրաստան) անունով կը ճանչնային, վասնզի Վրաստան անկախ թագաւորութիւն էր եւ կը տիրէր Մեծ Հայքի մէկ կարեւոր մասին:

եւ աշխատութեան համար Ռումի Սելճուկներու սուլթանութեան երկիրներ դարձեն ։

Ամբողջ շրջանին ալ Եփրատացւոց եւ Մալաթիոյ շրջանին մէջ Հայերը մնացին, եւ հոն հաստատուած մահմետական զանազան փարչաձեւերով իշխանութիւններու տակ ապրեցան ։

Առաջին հաստատուն իշխանութիւնը, որ Մալաթիոյ տիրած է, ինչպէս տեսնուեցաւ, Դանիշմենտներն էին որ կը թուի, ինչ ինչ երեւոյթներու վրայ հիմնուած՝ քրիստոնեայ — Հայ կամ Վրացի — ծագում ունէին եւ, ինչպէս կը հաստատուի իրենց պատմութեամբ, իրենց տիրապետած երկիրներուն յատկապէս ոչ-յունադաւան քրիստոնեաներու նկատմամբ թոյլատու քաղաքականութիւն մը ընդգրկած էին ։

Նոյնպէս Ռումի Սելճուկ կայսրութիւնը իր հիմնադիրին՝ Սիւլէյման Իպն Գուլթուլմիշի (1072—1080) օրերէն սկսեալ ընդգրկած էր իբր պետական ուղղութիւն չափազանց սիրաշահող ուղեգիծ մը եւ քրիստոնեաները իր կողմը շահելու համար անոնց նպաստաւոր կարգադրութիւններ ըրած էր ։

Դանիշմենտ էմիրները եւ Իկոնիոյ սուլթանները մասնաւորապէս իրենց հպատակներուն ընծայած էին երկու մեծ առաւելութիւններ .—

Ա. Աշխատութեան ազատութիւն եւ Բ. Կրօնական ազատութիւն, որուն մասնաւորաբար կարօտ ունէին Հայերը, չարաչար տառապած ըլլալով յունադաւան կղերին հալածանքներէն ։

Այս վարուողութեան շնորհիւ քրիստոնեաները, որոնք նախ քան Դանիշմենտ եւ Ռումի Սելճուկ տիրապետութիւնները, Փոքր Ասիոյ մէջ կը բնակէին մեծ մասամբ մնացին իրենց տեղերը եւ աւելի բազմացան, վասնզի մեծ թիւով ուրիշ վայրերէ ալ հոն եկան եւ հաստատուեցան ։

Բնակչութեան մէջ քրիստոնէից թիւին առատութիւնը ամբողջ այս երկու իշխանութիւններու տեւողութեան չի կրնար վէճի տակ ձգուիլ ։ Ուիլլիամ Ռուբրուք, որ 1253—1255 թուականներուն անցած է Փոքր Ասիայէն, կ՚ըսէ թէ «Դուք պէտք է գիտնաք Թուրքերու մասին, որ անոնց երկիրին մէջ տասը մարդէն մէկը Սարակինոս[1] է, գրեթէ ամբողջութեամբ Հայեր են եւ Յոյներ» (Յովհ. Յակոբեան, ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ, էջ 30) ։

Բնակչութեան այս համեմատութիւնը հաւանօրէն հարկադրած է խոհագէտ Թուրքերը քրիստոնեաները, մասնաւորապէս Հայերը, որոնք պետութեան մէջ շատ կարեւոր թիւ մը ունէին, սիրաշահող քաղաքականութիւն մը ընդգրկել, քանի որ ոչ միայն անձուկ միտքով Հայերով լեցուն Փոքր Հայքը եւ այլ հայաբնակ վայրեր, ուր հայկական ծագումով բնակչութեան մը գոյութիւնը կը կանխէր դարերով Դանիշմենտ եւ Սելճուկ տիրապետութիւնները, այս իշխանութիւններու կը հպատակէին, եւ, ինչպէս կը տեսնուի, չափազանց մեծ թիւ մը ունէին՝ բնակչութեան 90°/°ը կազմելով ։

(1) Հոս կարծեմ ՄԱՀՄԵՏԱԿԱՆ պէտք է հասկնալ եւ ոչ թէ Արաբ։

Եւ զարմանալի է որ հակառակ քրիստոնեայ բնակչութեան մեծամասնութիւն ըլլալուն՝ այս իշխանութիւնները միշտ աշխատած են քրիստոնեայ բնակչութիւնը աւելի շատցնել: Նոյնիսկ Դանիշմենտ Եաղուպ Ասլան (1143—1165), որ մաքառած է Սելճուկ Ռումի Գոնիայի Սուլթան Գլըճ Ասլան Բ.ի դէմ, ինքն ալ աշխատած է շատցնել իր երկիրին մէջ ոչ թէ քրիստոնէից — Հայ, Ասորի եւ Հոռոմ — բարեկամ ըլլալուն, այլ իր պետութեան օգուտին համար, քանի որ մոլեռանդ իսլամ մըն էր, ինչպէս պատմութիւնը կը հաստատէ (ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 502):

Քրիստոնեաները իրենց երկիրին մէջ շատցնելու մասնաւոր ջանքեր ըրած են նաեւ Գոնիացի Մազուտ (1116—1156), Ասետտին Գլըճ Ասլան Բ. (1156—1191), Ղայասետտին Կայ Խոսրով Ա. (1191—1193 եւ 1204—1211), Ասետտին Կայ Քաուս Ա. (1211—1220) եւ Ալայետտին Կայ Խոպաթ Ա. (1220—1236) Սուլթանները, գրեթէ յաջորդաբար (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 531—6):

Այսպէս Մազուտ, երբ Մարաշի կը տիրէ, կը ջարդէ «զարս եգիտ յաշխարհի եւ բազում այն էր որ խաբէութեամբ երդնուին յանուն մեծին Աստուծոյ եւ իջուցանէին յամրոցաց զքրիստոնեայսն՝ գերի վարեալ զամենեսեան» եւ ապա կը դարձնէ «անդրէն զերեսս իւրեանց տանելով զառեալ գերեալսն յաշխարհ» (ԳՐԻԳՈՐ ԵՐԷՑ, ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ 501):

Ծոյլին զայն հետապնդելու համար Հայոց Գրիգոր Տղայ կաթողիկոսին (1113—1166) եղբօրը եւ Կարկառի տէր Վասիլ Պահլաւունիին պաշտօն կու տայ:

Խարա Ասլան, Խարբերդի տէրը, յարձակելով՝ 400 հոգի կը ձերբակալէ եւ Վասիլ իշխանն ալ գերի կը բռնէ եւ կը տանի Կարկառի դղեակին առջեւ, եւ կը պարտաւորէ անձնատուութեան՝ երդմամբ վստահեցնելով որ ոչ մէկ վնաս պիտի հասցնէ եւ զանոնք իրենց տեղերը պիտի ղրկէ եւ արդարեւ «ի ձեռն հաւատարիմ զօրաց իւրոց առաքեաց մինչեւ ի Սամոսատ»: Իսկ Վասիլ իշխանն ալ պատուով կը տանի իր երկիրը եւ անոր հողեր կու տայ (տես նոյն):

Մազուտի որդին եւ յաջորդը Ասետտին Գլըճ Ասլան Բ. ամէն կողմ իր պաշտօնատարներուն հրահանգած էր «քաղցր կամօք» նայիլ քրիստոնեաներուն (ԳՐ. ԵՐԷՑ, էջ 522): Պեհեսնիի կառավարիչը այս հրամանին հակառակ կը գործէ եւ կը նեղէ քաղաքին բնակիչները, որոնք կը հեռանան ցաւով քաղաքէն:

Գըլըճ Ասլան Բ. երբ կ՚իմանայ, կը հրամայէ Պեհեսնեցիներուն որ դառնան իրենց տեղերը: Պատմագիրը կ՚ըսէ «Ապա սկսան մի ըստ միոջէ գալ բնակիչք տեղւոյն ի քաղցրութենէն սուլթանին եւ լցաւ քաղաքն ամենայն թափուր եւ ունայն ի գոյից իւրոց» (ԳՐ. ԵՐԷՑ, էջ 524):

Նոյն սուլթանին իշխանութեան ատեն Քեսունի «տեսուչ եւ կողմնապահ» նշանակուած պաշտօնատարները՝ անկարող քաղաքը պաշտպանելու՝

անկէ հեռացուցած էին քահանաները, տանուտէրերը եւ բոլոր այր մարդիկը։ Անոնք որ չէին կրցած հեռանալ, «ի հովանի ծառոց եւ ի պատից նստեալ դեգերէին անբան եւ անգործ՝ ակն ունելով սրոյ եւ գերութեան եւ յայսմ երկիւղէ մոռանային զպանդխտութիւն եւ զանհանգիստ կեանս իւրեանց» (ԳՐ. ԵՐԷՑ, էջ 524—5)։

Եւ ամիսներ տեւող այս վիճակը վերջ կը գտնէ երբ Գըլըճ Ասլան Բ. կուգայ Բերդուս եւ երկիրը կը խաղաղեցնէ եւ բնակիչները իրենց տեղերը կը դարձնէ։

Գըլըճ Ասլան Բ. (1156—1193) սելճուկ վեհապետներու մէջ անոնցմէ մէկն է որ ամենէն աւելի քրիստոնեաներու նկատմամբ բարեացակամ եղած է (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 533) եւ անոնց թիւը չատցնելու նախանձախնդիր։

Գըլըճ Ասլան Բ. եւ Դանիշմենտ Եաղուպ Ասլան (1143—1163) իրարու ձեռքէ յափշտակած են Լիկանդոնի քրիստոնեաները եւ զանոնք ոչ-դերութեամբ իրենց երկիրները փոխադրած (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, 501—2 եւ 533)։

Նոյնպէս իր միջամտութեան արդիւնք պէտք է համարել եւ ոչ թէ հըրաշք — ինչպէս կ'ուզէ հաւաստել Միքայէլ Ասորի (էջ 482—3) Մալաթիոյ ամիրային ընթացքին փոփոխութիւնը։ Ան կը պատմէ թէ Մալաթիոյ քրիստոնեայ բնակիչները «ի չարութենէ եւ ի խիստ բարուց ամիրային իւրեանց որ մնացեալ էր յազգէն Դանշմանայ» եւ սոյնէն՝ սաստիկ նեղութեան մէջ էին 1179-ին, սակայն երբ թէ քրիստոնեաներու ապաշաւին հետեւանքով՝ ամիրան «զղջացաւ ի գործ իւր եւ առաքեաց առ Սուլտանն (Գըլըճ Ասլան Բ.) եւ առ ի նմանէ զանձս եւ ետ ի նա զՄելիտինէ եւ ինքնել գնաց ի Խարբերդ եւ եղեւ մեծ դիւրութիւն քրիստոնէից եւ առատութիւնս հացի եւ ամենայն իրաց ընդարձակութիւն»։ Եւ ինչ որ կը նշանակէ թէ Մալաթիոյ քրիստոնեայք — Հայ եւ Ասորիք մեծամասնութեամբ — օգնութիւն եւ նպաստ ստացած էին Գըլըճ Ասլան Բ.էն։ Այս ուղղութիւնը իր յաջորդներուն կողմէն ալ շարունակուած է կանոնաւորապէս (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 533)։

Ալայետտին, ամենէն երկրաչէն վեհապետը Սելճուկ Ռումի սուլթանութեան, մեծ օգնութիւն ընծայած է քրիստոնեաներու եւ անոնց թիւը, իբր ճարպիկ եւ գործունեայ տարր մը, շատցնելու համար մասնաւոր աշխատանք տարած։ Ասոր առաջարկած նպաստաւոր պայմաններէն Հոռոմները կամ Բիւզանդացիք հրապուրուելով մեծ թիւով գաղթած են անոր երկիրը (Գելցեր, էջ 381), այսպէս կազմուած է քրիստոնեայ մեծամասնութիւն մը։

Այս քրիստոնեայ — յատկապէս հայ բնակչութիւնը — իրարու ձեռքէ յափշտակելու պայքարը շարունակուած է երկար ատեն, ինչպէս տեսնուեցաւ։

Երկիրին անապահով եւ խռովեալ վիճակը շուտով քրիստոնէից անդորրութիւնը եւ ապահովութիւնը խանգարեց, մանաւանդ երբ Դանիշմենտ էմիրութիւնը երկուքի բաժնուեցաւ եւ վերջապէս բոլորովին ջնջուեցաւ, մասնաւորապէս Հալէպի Նուրետտին սուլթանին մահէն ետք երբ «բազում գործակալք յարեան ի վերայ իրերաց եւ կոտորեցին զմիմեանս եւ եղեւ յոլով վնաս

եւ պակասութիւն քրիստոնէից վասն չփոթոյ իւրացն այնոցիկ» (ՄԻԽԱՅԻԼ ԱՍՈՐԻ, էջ 408)։

Ինչ որ ալ եղած ըլլայ Հայերուն կրած տառապանքները, անոնց թիւը նոյնքան մեծ էր որ կարելի չէր որ անմիջապէս Հայերէն դատարկանային այս շրջանները, որոնք շատ քիչ ժամանակ ետքը սելճուկ ռումի կայսրութեան հնազանդեցան, եւ քրիստոնեայ զանգուածներուն համար բացուեցաւ բարօրութեան եւ հանդստութեան շրջան մը։

Անոնք, ժամանակակից՝ Դանիշմենտներու, դրեթէ նման աշխարհահայեացք ունեցած են։

Անոնք շահած են բնիկ բնակչութեան համակրութիւնը եւ գիտցած են օգտուիլ պարագաներէն։ Հետեւաբար հետզհետէ զօրացան եւ Խաչակրութեանց շրջանին չափազանց կարեւոր դեր մը կատարեցին, վասնզի որքան ոյժ եւ քաջութիւն, նո՛յնքան ալ քաղաքական հասունութիւն եւ իմաստութիւն ունեցան՝ Բիւզանդացիներու եւ Խաչակիրներուն միջեւ գոյութիւն ունեցող փոխադարձ թշնամութենէն օգուտ քաղելու եւ զանոնք շահագործելու ի նպաստ իրենց նպատակներուն եւ կազմելու ընդարձակ պետութիւն մը Փոքր Ասիոյ սիրտին վրայ տեղաւորուած։

## ԿՐՕՆԻ ԱԶԱՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՀՈԳԵՒՈՐ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ

Հայ եւ օտար պատմիչներու տուած տեղեկութիւններէն որոշ կ՚երեւի թէ քրիստոնեայք քիչ շատ տանելի կեանք մը ունէին Դանիշմենտ էմիրութեան եւ Ռումի Սելճուկ Սուլթանութեան մէջ, ուր կրօնական հալածանք գոյութիւն չէ ունեցած եւ վեհապետները իրենք անձնապէս պաշտպանած էին քրիստոնեաները իսլամ մոլեռանդութեան դէմ։

Իրապէս, մասնաւորապէս սելճուկ ռումի կայսրութեան մէջ կրօնական ազատութիւն կար, վասնզի այդ պետութիւնը իբր վարչական սկզբունք ընդունած էր կրօնական մոլեռանդութենէ հեռու մնալը եւ իսլամի եւ քրիստոնէային միջեւ խտիր չդնելը, եւ Հայերը՝ իբր աւելի վստահելի՝ մեծ բարեացակամութեան եւ հոգածութեան առարկայ ըրած էր, ինչպէս տեսնուեցաւ։

Գոնիոյ սուլթանները կրցած էին հաստատել հաւասարակշռութիւն մը, թոյլ չտալով որ կրօնքի համար ազգ մը ուրիշ ազգ մը հալածէ։

Այնպէս որ հոն ուր բիւզանդական մոլեռանդութիւնը նոյնիսկ հայ եկեղեցիին ժամաձայնը կամ կոչնակը արգիլած էր, հայ եպիսկոպոսական աթոռներ երեւան եկան։ Նոյնպէս Սելճուկները օգնած են Հայերու որ աղօթարաններ, եկեղեցիներ եւ վանքեր ունենան, եւ որովհետեւ Յոյները շատ ունէին եւ երկիրէն հեռանալով անոնք լքուած կը մնային՝ զանոնք գրաւելով

*Հայոց տուած են շատ վայրերու մէջ, յունական եկեղեցիներ եւ վանքեր, Մալաթիոյ վանքերէն մասնաւորապէս ոմանք նոյնիսկ իրենց անուններով կը մատնեն իրենց բիւզանդական եւ ասորի ծագումը, ինչպէս պիտի տեսնուի վարը վանքերու վրայ խօսուած ատեն:*

*Մինչեւ ասիական բարբարոսներու արշաւանքները, այսինքն մինչեւ ԺԱ. դար, արդէն վաղուց հայաշատ վայրեր էին Եփրատի արեւմուտքը հիւսիսէն մինչեւ հարաւ, Իրիսի հովիտէն — ուր էր Եւդոկիա — մինչեւ Կոմմագինէ, Սեբաստիա, Մալաթիա եւ այլ հայաշատ վայրեր եւ նոյնիսկ մեծ հաւանականութեամբ հակառակ բիւզանդական եկեղեցիին անհանդուրժողութեան, առանձին հոգեւոր հովիւներ ունեցան կամ ունենալ փորձած էին:*

*Բիւզանդացիք սաստիկ հալածած են Հայերը եւ Ասորիները, որոնք Քաղկեդոնի դաւանանքը ընդունելու չէին համակերպեր: Սեբաստիոյ եւ Մալաթիոյ մոլեռանդ մետրոպոլիտներու* 976*-ին գործադրած հալածանքները ցոյց կու տան թէ յունադաւան եկեղեցին ի՛նչպէս տրամադրուած էր Հայ Եկեղեցիին նկատմամբ, սակայն միշտ Հայերը ամուր կապուած էին իրենց եկեղեցիին, եւ պահած էին մեծ մասամբ հայադաւանութիւնը:*

*Եթէ Եփրատի արեւմտեան կողմը ապրող Հայերը յունադաւան (Հայ-Հոռոմ) դարձած ըլլային,* 1062*-ին Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը պիտի չփոխադրուէր Թաւ-Բլուր եւ անկէ պիտի չշրջէր այդ շրջանակին մէջ Ծամընդաւ, Մուտառասուն, Քեսուն, Հոնի, Մարաշ, Ծովք եւ վերջապէս Հռոմկլայ:*

*Մելիտինէ եթէ աւելի կանուխ հայ եպիսկոպոսութեան աթոռ մը չէ եղած, պատճառը թերեւս ան է որ անիկա շատ մօտ էր Ամենայն Հայոց կաթողիկոսական այս նոր աթոռներուն եւ թերեւս ուղղակի կաթողիկոսին խընամքին տակ էր:*

*Ամէն պարագայի,* 1179*-էն ետքը Մալաթիա ունեցած է հայ եպիսկոպոսներ, ինչ որ ապացոյց մըն է որ հոն մեծ թիւով Հայեր կային:*

*Եթէ սելճուկ ռումի սուլթանները հոգածու չըլլային պահպանելու իւրաքանչիւր կրօնի ազատութիւնը, գուցէ Ասորիները՝ իբր հին բնիկները երկիրին՝ պիտի նեղէին Հայերը, որոնք դուրսէն եկած յափշտակիչ եկուորներ կը նկատուէին Ասորիներէն եւ երբեմն բուռն հակառակութեան առարկայ կ'ըլլային:*

*Հայերը, սելճուկ* (1064)*, մոնկոլ* (1220) *եւ էօզպէք-Թաթար* (1382) *արշաւանքներու ատեն դէպի արեւմուտք խոյս տալով Եփրատի արեւմուտքը հաստատուած Հայոց թիւը աւելի շատցած է:*

*Մասնաւորապէս* 1065*-ին Անիի գրաւումէն, ինչպէս նաեւ* 1236*-ին Բագրատունեաց մայրաքաղաքին կործանումէն ետք, բազմաթիւ Հայեր գաղթած են այլեւայլ վայրեր: Անոնցմէ ոմանք ըստ Ստեփան Մանուչեանի (տես* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, *ԺԵ. տարի, Թ.* 3—4, *էջ* 44 *եւ ԺԳ. տարի, Թիւ* 4, *էջ* 15) *հօս-հոն թափառելէ ետք եկած հաստատուած են Մելիտինէ, եւ ցրուած Ա-*

նարծաթ Բժիշկի վանքէն մինչեւ Վարի Քաղաք: Անոնք եղած են ըստ Ս. Մանուչեանի՝ Մալաթիոյ Հայոց նախահայրերը, ըլլալով վարպետ արհեստաւորներ, երկրագործներ եւ վաճառականներ, որոնք ոչ միայն իրենց ապրուստը ճարած են, այլ եւ քաղաքին յառաջացման մեծ սատար հանդիսացած են (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի, Թիւ 3—4, էջ 44):

Հսկայ պարիսպներով քաղաքը քրիստոնեայ իշխանութիւններով պաշտպանուած ըլլալը մինչեւ ԺԴ. դարուն վերջերը, Լենկթիմուրի արշաւանքին ատեն (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԴ. տարի, Թ. 4, էջ 15) շատ կասկածելի ըլլալով հանդերձ, ճիշդ է թէ Մալաթիա թերեւս այս նոր գաղթականութեան շնորհիւ վաճառաշահ քաղաքի մը, ինչպէս նաեւ հա՛յ քաղաքի մը վերածուած էր:

Քրիստոնեայ իշխանութիւններու ձեռքը այդ շրջանակին մէջ ԺԱ. դարուն շատ կարճ տեւած էր եւ մինչեւ ԺԵ. դար չէ տեւած բնաւ, վասնզի հայ ճորտ իշխանութիւնները, որոնք կազմուած էին Եփրատի եզերքները, ամրակուռ կառոյցք չունէին, ինչպէս տեսնուեցաւ:

Ասորիները՝ գոհ աչքով կը նայէին Հայոց, անոնց թուական առաւելութիւն ձեռք բերած ըլլալուն համար, եւ այսպէս երկու դաւանակից ազգերը գոնէ հաշտ էին այդ եռացող աշխարհամասին մէջ: Սակայն Դանիշմենտեանք եւ Սելճուկեանք, որոնք պէտք ունէին քրիստոնեաներուն, պահած են հաւասարակշռութիւնը եւ ամէն կրօնք ազատ թողած են:

Հայերը օգտուած են ուրեմն կրօնական ազատութենէն, զոր գրեթէ միշտ յարգեցին Դանիշմենտեանք եւ Սելճուկեանք՝ թերեւս բնակչութեան թիւին մէջ գտնուող քրիստոնեայ մեծամասնութենէն պատկառելով:

Ասիկա հաստատել կը թուի իրողութիւն մը, որ նշանակելի է:

Հակառակ անոր որ Դանիշմենտեանք այնքան լաւ վարուած են քրիստոնեաներուն հետ, երբ Խաչակիրները հասան այս իշխանութեան սահմանները՝ Մուհամմէտ Կիւմիւշթէքինի կամ Պէն Էլ Դանիշմենտի (1072—1106) ատեն, Հայերը Խաչակիրներու օգնեցին անխոհեմաբար:

Նոյնիսկ հայ եպիսկոպոսներ, ինչպէս Անտիոքի Կիպրիանոս եւ Գերմանիկէի (Մարաշի) Գրիգորիս եպիսկոպոսները, կռուած են Խաչակրաց բանակին մէջ (ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ 372 եւ Օրմանեան, ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 1322):

Ասիկա պատրուակ կրնար ծառայել որ Մուհամմէտ Կիւմիւշթէքին թըշնամանար քրիստոնեաներու հետ եւ եթէ չջարդէր զանոնք, գոնէ նեղէր, բայց չէ ըրած, այնպէս որ Մատթէոս Ուռհայեցի պատմիչը զայն կը կոչէ «այր բարի», «ողորմած ի վերայ հաւատացելոց Քրիստոսի», եւ կը պատմէ թէ իր մահուան առթիւ քրիստոնեայք սուգի մատնուած են: Ասիկա ցոյց կու տայ թէ հակառակ անոր որ Հայերը զէնք առած էին իրեն դէմ, անիկա գերազանց ներողամտութեամբ վարուած էր, մինչ Լատինները, որ արեւելքի քրիստոնեաներուն աջակցութիւնը վայելած էին, ամէն չարիք կ՚ընէին անոնց, ինչպէս կը հաստատէ Մատթէոս Ուռհայեցի, որ կ՚ըսէ թէ անոնք «միայն նրս-

տեալ խորհէին զչարութիւն, զհիլա[1] եւ զամենայն ճանապարհս չարեաց սիրէին, բարեաց եւ ամենայն երախտեաց մոռացողք»:

Նշանակելի է որ հայ պատմիչը այս առթիւ կ՚ըսէ որ «զբազում անիրաւութիւնս նոցա կամէի գրել, բայց ոչ համարձակեցայ, զի ընդ իշխանութեամբ նոցա էաք» (ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ 424):

Ասիկա ցոյց կու տայ թէ հին պատմութիւն մըն է քրիստոնեաներու անբարեացակամութիւնը եւ նենգութիւնը հանդէպ արեւելքի քրիստոնեաներու, որոնք միամտօրէն խաբուած միշտ անոնցմէ եւ իրենց դէմ դրդուած են իրենց բնակակից այլակրօն ազգերը:

Երբեմն մոլեռանդ նկատուած իսլամները աւելի լայնախոհ եղած են քան այդ քրիստոնեաները, որոնք Հայերը հալածած են՝ դաւանական անիմաստ տարբերութիւններու համար:

Այսպէս, ի պատիւ Մուհամմէտ Կիւմիւշթէքինի պէտք է ըսել թէ անտեսահարելով կրօնական նախապաշարումները զինակցած է Պոհեմունդի հետ Գիլճ Ասլանի եւ Ալեքս կայսեր դէմ: Դանիշմենտեան այս իշխանը ցոյց չէ տուած կրօնական մոլեռանդութիւն եւ նախընտրելի դարձուցած է իր իշխանութիւնը, վասնզի իր շնորհիւ Հայերը դերծ մնացած են յունադաւաններու հալածանքէն:

Ասկէ քաջալերուած Դանիշմենտներու եւ ռումի սելճուկ սուլթաններու տիրապետութեան շրջանին Հայերը մնացած են իրենց եղած տեղը, եւ նոյնիսկ ծառայութիւններ մատուցած են այս իսլամ տէրութիւններուն:

Այսպէս, Մալաթիոյ Հայերը նպաստած են Դանիշմենտեանց, որ 1102-ին գրաւեն քաղաքը, վասնզի դժգոհ էին Գաբրիէլ «Յոյն»էն, որ «խստագոյնս ճնշէր զքաղաքն քան զարտաքոյսն» (ՄԻԽԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 406, ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ 333—5) կրօնքի համար, եւ աւելի նախամեծար կը համարէին իսլամ տիրապետութեան տակ մնալ քան թէ զիրենք հալածող քրիստոնեաներուն:

Գոնիայի սելճուկ սուլթանները, դուցէ անոր համար որ իրենց հպատակներուն 90%ը քրիստոնեաներ էին, այս քաղաքականութեան յարած եւ քրիստոնեաներու մօտութիւն ցոյց տուած եւ քրիստոնեայ կառավարութիւններու ձեւին վրայ կառավարութիւններ կազմակերպած են:

Իրենց նախատիպարը եղած է բիւզանդական կայսրութիւնը, որուն Ծերակոյտին նմանութեամբ կազմած էին Տիւան մը, որ Վեզիրին նախագահութեան տակ կը գումարուէր եւ կը վարէր պետական գործերը:

Նոյնպէս բիւզանդական արքունիքին նմանողութեամբ՝ ասոնց ալ պալատական աստիճանաւորները եւ իրենց տիտղոսները բազմադիմի էին:

Ռումի կայսրութեան մէջ կը կիրարկուէր նաեւ աւատական դրութիւնը հանդէպ քրիստոնեայ իշխաններէն անոնց, որոնք իբր ճորտ կը ճանչնային

(1) ՀԻԼԱ՝ նենգութիւն:

Գոնիոյ ռումի սուլթանին գերիշխանութիւնը, տուրք կը վճարէին եւ ի հարկին զօրքով կ'օգնէին անոր:

Այս քրիստոնեայ կառավարութիւններու նմանութիւններէն սելճուկ վեհապետներու բարեացակամութիւնը քիչ շատ քրիստոնեաներուն համար ապահոված է խաղաղ կեանք սելճուկ ռումի կայսրութեան մէջ եւ Հայերը կրցած են պահել իրենց գոյութիւնը եւ զարկ տալ իրենց կրօնական կեանքին, եկեղեցիներ շինել, հոգեւոր վարչութիւններ ստեղծել եւ կրօնական հալածանքներէ զերծ մնալ:

Կարելի չէ ճշդել այս բարեացակամութեան բուն շարժառիթները եւ որքան թաքուն նպատակներէ զերծ ու անկեղծ ըլլալը, սակայն որոշ է որ այս վեհապետները հակառակ անոր որ իրենց հպատակները համաձայն չէին իրենց լայնախոհութեան, անոնք բարեացակամ եղած են հանդէպ քրիստոնէից եւ նոյնիսկ շփացուցած են իրենց քրիստոնեայ հպատակները: Սելճուկ սուլթաններու կանանոցին մէջ քրիստոնեայ կիներ կային, որոնք իբր սուլթանուհի կ'իշխէին եւ անշուշտ որոշ ազդեցութիւն մը ի գործ կը դնէին:

Այսպէս պետութեան հիմնադիրին Սիւլէյման Իպն Գութուլմիշի անդրանիկ որդին եւ սելճուկ ռումի երկրորդ վեհապետը Գըլըճ Ասլան Ա. (1092—1107) ամուսնացած էր յոյն զօրավարի մը աղջկան հետ, Ղայասետտին Կայ Խոսրով Ա. (1191—1193 եւ 1204—1211) յոյն կին մը ունէր եւ իր զաւակը՝ Ալայէտտին Կայ Խուպատ Ա. (1220—1236), որ այդ յոյն կնոջմէն ծնած էր, ունէր հայ կին մը[1] եւ Ղայասետտին Կայ Խոսրով Բ.ի երեք կիներէն երկուքն քրիստոնեայ էին, մին յոյն քահանայի մը եւ միւսը՝ Վրաց թագուհիին աղջիկները:

Սուլթաններու այս մօտաւորութիւնը դէպի քրիստոնեաները տեղի տուած է խռովութիւններու եւ ըմբոստութիւններու, վասնզի Իսլամները մոլեռանդութեամբ չէին հանդուրժեր սուլթաններու այս ընթացքին: Ճիշդ այսպիսի պոռթկումի մը հետեւանօք սպաննուեցաւ իբրեւ անաստուած Ռուքնետտին Սիւլէյման սուլթանը (1193—1204) եւ Ղայասետտին Կայ Խոսրովի իշխանութեան շրջանին խմորուեցաւ կրօնական շարժում մը, որուն հիմնադիրն էր Ճելալետտին Մուհամմէտ Ռումի[2], կազմակերպիչը Մեւլեւիներու կամ Մաւլաւիներու կարգին:

Ասոնք կազմեցին տերվիշական միութիւններ եւ տարածուեցան ամբողջ երկիրին մէջ: Այս զօրաւոր մարմինները, յաճախ դժգոհ սուլթաններուն ազատական սկզբունքներէն եւ քրիստոնեաներու տուած արտօնութիւններէն, կ'արծարծէին իսլամական մոլեռանդութիւնը, որուն դէմ կը մաքառէին սուլ-

(1) Այս հայ կինը Կալոնոռոսի բերդին տէր Կիռ Վարդի դուստրն էր, զոր բանի՝ «ոչ կամաց»՝ առած էր Ալայէտտին եւ անիկա «վասն քրիստոնէութեան ոչ ճակեցաւ ի ճետս» (տես Սմբատ Սպարապետ, 1859, Փարիզ, էջ 119):

(2) Ճելալետտին Ռումի ծնած էր Թուրքաստան 1195-ին եւ յետոյ անցած էր Գոնիա, ուր ապրած էր մինչեւ 1224:

թաններըˏ պետութեան լաւ ըմբռնուած շահերուն հասկացողութեամբ։ Այսպէս երբ Ղայասեատին Կայ Խոսրով առաւելագոյն չափով դէպի քրիստոնեաները ցոյց տուած յարումին համար տերվիշները ապստամբութիւն յարուցին, սուլթանը չվարանեցաւ քրիստոնեայ զինուորներու աջակցութեան դիմել եւ անոնց օգնութեամբ խեղդել այս ապստամբութիւնը (ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ՀԱՄԱՅՆԱԳԻՏԱՐԱՆ)։

Ռուբրուք կը նկարագրէ նաեւ Թուրքերու եւ Թուրքմէններու զայրոյթը եւ հակառակութիւնը Ղայասեատին Կայ Խոսրով Բ.ի (1237—1247) դէմ, որ, ինչպէս տեսնուեցաւ, ամուսնացած էր երկու քրիստոնեայ կիներու հետ։

Ռուբրուք կը պատմէ թէ ի՛նչպէս «խումբ մը Թուրքեր եւ Թուրքմէններ դաւադրած էին... սպաննելու համար քրիստոնեայ կիներուն զաւակները», եւ ինչ որ աւելի սարսափելի է, «անոնք կարգադրած էին որ այն պարագային որ յաղթական ըլլային, պիտի ոչնչացնէին բոլոր եկեղեցիները եւ մահացնէին բոլոր անոնք, որոնք չէին համակերպեր ընդունելու մահմետականութիւնը» (Հմմտ. Յովհ. Յակոբեան, նոյն, 30—2)։

Այս տողերը ցոյց կու տան թէ արքունիքը որքան որ քրիստոնեաներու մօտ եւ բարեկամ էր, եւ անոնցմով լի, ժողովուրդին զանգուածը մոլեռանդ իսլամ էր եւ անհանդուրժող։

Այնպէս որ անխուսափելի եղած են մոլեռանդութեան տխուր դէպքեր, ինչպէս նաեւ բռնի իսլամացումներու պատճառով՝ նահատակութիւններ։ Մահմետական օրէնքներու համաձայն իսլամը կարելի չէ որ հեռանայ իր կրօնքէն եւ յարի ուրիշ կրօնքի մը։ Ասիկա մահապարտ արարք մըն է ըստ Շերիաթի։ Սելճուկները թէեւ լայնախոհ այս մասին, սակայն խիստ եղած են։ Այնպէս որ կը յիշուին իսլամութենէ հրաժարողներու եւ քրիստոնէութիւն քարոզող եկեղեցականներու մահուան դատապարտուիլը, ինչպէս եղած է 1263-ին՝ Այրի վանքի միաբան Յովհաննէս Վրդ. Գառնեցիի համար (տես ԴԻՒԱՆ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, Ժ. հտ., էջ 43, ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 529)։

Այս անցողակի պատահարներէն դուրս սելճուկ եւ թաթար տիրապետութիւններու շրջաններուն Հայերը շատ գանգատելու պատճառներ չեն ունեցած եւ ոչ միայն պահած են իրենց գոյութիւնը, այլ եւ զարկ տուած են իրենց կրօնական կեանքին, շինած են եկեղեցիներ եւ վանքեր, ունեցած են կանոնաւոր հոգեւոր վարչութիւն եւ նոյնիսկ ԺԱ. դարու սկիզբէն ԺԵ. դար անընդհատ յաջորդաբար գրիչներ, որոնք ձեռագիրներ ընդօրինակած են, ինչ որ նշան մըն է մտաւորական շարժման։

Այդ շրջանին Մալաթիոյ Հայերը կը թուի թէ ունէին բարգաւաճ եւ կրօնական հալածանքներէ զերծ վիճակ մը։

Սելճուկ կայսրութիւնը գոնէ որոշ ժամանակ մը զգուշացած է այն սխալներէն զորս Բիւզանդացիք գործած են, եւ խոհեմութեամբ վարուած էր եւ անկէ Հայերը օգտուած են։

# ՀԱՅ ՏԱՐՐԸ ԵՒ ԻՐ ԴԵՐԸ ԱՅՍ ՇՐՋԱՆԻՆ

Երկու հարիւր յիսուն տարուան այս շրջանին, Հայերը կարեւոր դեր կատարած են, իբրեւ բնակչութեան մէկ կարեւոր մասը Եփրատացւոց շրջանին, ինչպէս նաեւ Մալաթիոյ եւ շրջականերուն մէջ։

Ինչպէս կը տեսնուի, թէ՛ Դանիշմէնտ էմիրները եւ թէ՛ Իկոնիոյ սելճուկ սուլթանները, շատ լաւ ըմբռնած ըլլալ կը թուին Հայոց կարեւորութիւնը։

Ասոր համար էր անշուշտ որ Դանիշմէնտները, երբ տիրած են Մալաթիոյ, խնամք ունեցած են քրիստոնեայ բնակչութեան վրայ։

Միխայէլ Ասորի (էջ 406) կ'ըսէ թէ Մուհամմէտ Կիւմիւշթէքին Մալաթիան գրաւելէն ետք «արար դիւրութիւն եւ շինութիւն... ինքն խնամ արկ ի վերայ նոցա՝ տալով նոցա հաց եւ ազատութիւն, եւ շինեցան»։

Կիւմիւշթէքինի յաջորդներն ալ, եթէ ոչ բոլորը, սակայն շատերը, այս քաղաքականութեամբ վարուեցան եւ սիրաշահեցան իրենց քրիստոնեայ հպատակները, որոնք երկիրին բարօրութեան համար պէտք էին։

Հետեւաբար բնաւ զարմանալու չէ երբ բնիկները համակերպած կը տեսնենք իսլամ լուծին եւ նոյնիսկ քիչ թէ շատ մոլեռանդ Դանիշմէնտ վեհապետները կը գովուին հայ պատմագիրներէն։

Այսպէս Մատթէոս Ուռհայեցի (էջ 363—9) կը գրէ. «Մեռաւ Դանիշմենտ մեծ ամիրայն Հոռոմոց աշխարհին, որ լեալ յազգէն Հայոց, այր բարի եւ շինող աշխարհի եւ էր յոյժ ողորմած ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, եւ եղեւ սուգ մեծ Քրիստոնէից, որք էին ընդ ձեռամբ նորա»։

Նոյնը կը հաստատէ Վարդան Պատմիչ (էջ 112—3)՝ գրեթէ նո՛յն բառերով։

Դժբախտաբար լայնամիտ ուղղութիւնը չեն կրցած պահել իրեն յաջորդներէն ոմանք, որոնք «ատեցող քրիստոնէից» դուրս եկած են (ՄԻԽ. ԱՍՈՐԻ, էջ 414) եւ քանդած են քրիստոնեայ եկեղեցիներ, վանքեր եւայլն (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 499) եւ մի քանի ազատ քիչ մը բռնի իսլամացումի փորձերը, որոնք յոռի ազդեցութիւն ունեցած են Դանիշմէնտեանց տիրապետութեան ենթարկուած երկիրներու վրայ, որոնցմէ բաւական թիւով քրիստոնեաներ պէտք է գաղթած ըլլան մասնաւորապէս ռումի սելճուկ երկիրներ, վասնզի անոնք իրենց հիմնադիրէն՝ Սիւլէյման Իպն Գութլումիշէն ընդգրկած քաղաքականութիւնը չէին լքած, եւ միշտ սիրաշահած էին իրենց ստուարաթիւ քրիստոնեայ հպատակները։

Թէ ի՛նչ էր Սիւլէյման Իպն Գութլումիշի եւ անոր յաջորդող ռումի սելճուկ սուլթաններու ուղղութիւնը, շատ յստակ կը տեսնուի։ Սիւլէյման ճարպիկ դիւանագիտութեամբ մը շահեցաւ երկիրին բնիկները եւ այս կեր–

պով էր որ մահացու հարուած մը հասցուց բիւզանդական խոնարհիլ սկսած կայսրութեան:

Նրբամտութեամբ անիկա կատարեց տնտեսական յեղափոխութիւն մը, որուն հետեւանքները շատ մեծ եղան բիւզանդական կայսրութեան համար (Հմմտ. Գելցեր, ՀԱՄ. ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐԵՐԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, էջ 310):

Այս տնտեսական յեղափոխութեան հիմն է ջնջումը ճորտութեան եւ ստրկութեան, եւ ազատութիւնը՝ գլխահարկ վճարող հպատակներուն (Նոյն), որոնք կրնային հողատէր դառնալ:

Մի քանի բիւզանդացի կայսրեր փորձած էին փոքր հողատիրութիւնները քաջալերել, բայց չէին յաջողած, եւ հողերը մնացած էին մեծ կալուածատէրերուն ձեռքը եւ ժողովուրդը՝ ստրուկ:

Սելճուկները ջնջելով ստրկութիւնը, գիւղացի աշխատաւորները սերտիւ կապեցին սելճուկ իշխանութեան, որ առանց անոր ալ արդէն իր կողմը ունէր խալամներու եւ ոչ-քաղկեդոնական հայ եւ ասորի քրիստոնեաներու համակրութիւնը (Գելցեր, Նոյն):

Այս իսկ պատճառով Հայերը մեծ յարում եւ անձնուիրութիւն ցոյց տուած են հանդէպ այս պետութեան, որուն վարիչներն ալ փոխադարձաբար աւելի մեծ վստահութիւն ցոյց տուած են Հայոց նկատմամբ, վասնզի եկուոր էին եւ երկիրին նախկին տէրերը ըլլալու յաւակնութիւնը չունէին Յունաց պէս, որոնք իբր Բիւզանդացի կամ Հռոմ՝ կապուած ըլլալով Բիւզանդիոնի, կասկածելի կը նկատուէին:

Նոյնիսկ Գոնիոյ սուլթաններուն եւ Կիլիկիոյ Թագաւորներու իրարու հետ ունեցած անհամաձայնութիւնները մինչեւ Թաթարներու արշաւանքը շատ տեւական եւ խոր չեն եղած եւ չեն վնասած սելճուկ ռումի կայսրութեան մէջ ապրող Հայերուն, որոնք նպաստաւորուած են:

Սիւլէյման Իպն Գուրթուլմիշի գործադրած տնտեսական յեղափոխութենէն մեծապէս օգտուած է երկիրը, վասնզի անիկա նպաստած է երկիրին տնտեսական վերելքին եւ ծաղկման, եւ մեծամասնութիւն կազմող քրիստոնեայ բնակչութիւնը կապած է սերտիւ պետութեան, որ անոնց տուած էր ազատութիւններ եւ առանձնաշնորհներ:

Հայերը օրինակի համար կը վայելէին կարգ մը իրաւունքներ: Անոնք կը կրէին իշխանական տիտղոսներ (տես ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 499):

Ասկէ զատ, ինչպէս բոլոր քրիստոնեաները, նոյնպէս նաեւ Հայերը ամէն ասպարէզի եւ գործի մէջ կրնային մտնել, նոյնիսկ զինուորականութեան, որ բոլոր խալամ երկիրներու մէջ մինչեւ մեր օրերը տիրող տարրին մենաշնորհը եղած է:

Այսպէս «յամենայն ազգաց քրիստոնէից» (ՍՄԲԱՏ, էջ 117) եւ նոյնիսկ Լատիններէն (ՀԵԹՈՒՄ, էջ 18—9) վարձկան զինուորներ առնուած ըլլալը յիշուած է:

Այս քրիստոնեայ զինուորները ապահովաբար Հայեր էին մեծ մասամբ, վասնզի Յոյները վստահելի չէին կրնար ըլլալ։

Կիրակոս Գանձակեցի (էջ 133) Մուհամմէտ Ճելալետտինի դէմ երեք իսլամ վեհապետներու դաշնակցաբար մղած պատերազմին մէջ կը յիշատակէ միայն Հայ եւ Լատին զինուորներու գոյութիւնը, եւ նշանակելի է որ պատմագիրը կ'ըսէ թէ «իսկ Սուլթանն, զի արք բարեպաշտ էին, ոչ ապերախտ լինէին առ զօրն քրիստոնէից, զի գիտացին թէ ի ձեռն նոցա ետ Տէր զյաղթութիւն» (նոյն, էջ 134)։ Կայ Խոսրովի Թաթարներուն դէմ մղած պատերազմին մէջ (1243) օտար պատմիչներ (Խալիլ Էտհէմ, ԴԱՅՍԵՐԻ ՇԵՀԻՐԻ, էջ 79) կը հաստատեն թէ Սելճուկեանց հետ կռուած են նաեւ Հայերը եւ Ֆրէնկները։

Իսկ զարմանալի է ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ՀԱՄԱՅՆԱԳԻՏԱՐԱՆԻՆ սա հաւաստումը թէ Գոնիոյ սուլթանները աւելի կը վստահէին իրենց քրիստոնեայ գունդերուն քան թէ Թուրք զինուորներուն, որոնք շատ օգտակար չէին կանոնաւոր պատերազմի մը մէջ։

Բացի զինուորական ասպարէզէ՝ պետական պաշտօնէութեան մէջ ալ քրիստոնեաներ կը յիշուին, ինչպէս 1162-ին շատ փափուկ պաշտօնով մը Բիւզանդիոնի կայսեր ղրկուած Քրիստափոր դպրապետը (տես ՄԻԽԱՅԻԼ ԱՍՈՐԻ, էջ 444) — իմա կառավարական դիւանի պետը — որուն ազգութիւնը չէ ճշդուած, բայց կա'մ Հայ կա'մ Հոռոմ կրնայ եղած ըլլալ անունէն դատելով։

Ուրիշ նշաններ ալ կան որ Սելճուկները ցոյց տուած են անխտրականութիւն եւ քրիստոնեաները չդառնացնելու քաղաքականութիւն մը։

Սելճուկները իրենց երկիրը բաց պահած են Եւրոպացի քրիստոնեայ վաճառականներուն առջեւ եւ անոնց նոյնիսկ տուած էին մենաշնորհներ (տես ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 527)։

Երբ հեռաւոր Եւրոպայի վաճառականներուն թոյլ կու տային իրենց տնտեսական կեանքին մէջ դեր կատարել, չէին կրնար ընիկ տարրերու զլանալ այդ իրաւունքը։ Հայերը, որոնք իբրեւ առեւտրական համբաւուած էին, անշուշտ մասնակցած են երկիրին առեւտրական շարժման, քանի որ այս մասին անընդունակ էին տիրողները։

Ասոր համար Դանիշմենտ եւ ռումի սելճուկ իսլամ վեհապետները հոգածութիւն ունեցած են վաճառականներու եւ երկրագործ-մշակներու մասին։

Ասիկա կը հաստատուի Թաքիետտին Աhմէտ-Մագրիզիի շնորհիւ մեզի հասած դաշնագիրի մը բնագիրէն (տես ԲԱՆԱՍԷՐ, 1902, էջ 69—70)։ Այս դաշնագիրը կնքուած էր 2 Մայիս 1285-ին ընդ մէջ Կիլիկիոյ Լեւոն Գ. Հայոց թագաւորին (1270—1289) եւ Եգիպտոսի Մեմլուք Սուլթան Գալաուն էլ Մելիք Մանսուրի (1279—1290), որ ինքզինքին կու տար դերիշխան եւ պաշտպան վեհապետի հոլերը հանդէպ բոլոր իսլամ տէրութեանց, որոնց մէջ էր նաեւ

ռումի սուլթանը (տես ԲԱՆԱՍԷՐ, 1902, էջ 73), որուն ի նպաստ քանի մը արձանագրութիւններ կը տեսնուին դաշնագիրին մէջ:

Այս դաշնագիրով Լեւոն Գ. յանձն կ'առնէր ազատ անցք տալ խալամ երկիրներ երթեւեկ ընող վաճառականներուն եւ իր երկրին մէջ գտնուող «Ռումի երկիրին եւ Սուլթանին պետութեան պատկանող մշակները… դրկել … Սուլթանին երկիրը» (ԲԱՆԱՍԷՐ, 1903, էջ 77):

Նկատելի է որ ապահովաբար այս քրիստոնեաները մեծ մասամբ Հայեր էին, վասնզի նախ մեր պատմագիրները, որոնք կը խօսին հազարաւոր տեղափոխութիւններու վրայ, քրիստոնեայ երբ կ'ըսեն՝ առ հասարակ Հայերը կը հասկնան եւ երկրորդ՝ այն գաւառները (Լիկանդոս, Ճահան, Ալպիստան), որոնցմէ կը բերուէին այս գաղթականները, վաղուց հայաբնակ էին: Հետեւաբար պարզ է թէ այս սովորաբար ոչ– գերութեամբ տարուած քրիստոնեաները, որոնք իրենց ստացուածքներուն վրայ կը բնակեցնէին Սելճուկները եւ նոյնիսկ հողեր կու տային, եթէ ոչ ամբողջ՝ գէթ ստուար մեծամասնութեամբ Հայեր էին:

Այսպէս ռումի սուլթանութեան շրջանին, ինչպէս ուրիշ նոյն իշխանութեան պատկանող վայրերուն, նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ, ինչպէս նաեւ շրջակայ քաղաքներուն մէջ Հայոց թիւը պէտք է աճած ըլլայ:

Այս գաղթականները հաւանօրէն Կիլիկիայէն Տաւրոսի կիրճերէն անցնելով ինքնաբերաբար եկած են, իսկ կարեւոր մաս մըն ալ «ոչ–գերութեամբ», սակայն բռնի փոխադրուած են, ինչպէս ուրիշ տեղեր, նոյնպէս նաեւ Մալաթիա, Սամոսատ, Կարկառ, Քեսուն, Բերդուս եւ Մալաթիոյ շուրջը գտնուող ուրիշ քաղաքներ:

Մալաթիա գաղթողներու մէջ Կիլիկեցիներու որոշ թիւ մը ունենալը շատ որոշ է:

Մալաթիոյ Կիլիկիոյ կաթողիկոսական աթոռին ենթարկուած ըլլալը ցոյց կու տայ այդ շրջանին հայ բնակչութեան Կիլիկիոյ հետ կապակցութիւնը: Նոյնպէս Մալաթիոյ մէջ կը գտնուէին հայերէն ձեռագիրներ, որոնք Կիլիկեան ծագում ունէին, եւ գրուած էին Հռոմկլայ եւ Կիլիկեան քաղաքներու մէջ, եւ հաւանօրէն Մալաթիա տարուած են հայ գաղթականներու կողմէն:

Գարեգին Եպսկ. Սրուանձտեանց, որ 1879–80-ին այցելած է Մալաթիա, իր ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ-ին մէջ (Ա. հտ., էջ 324—7) կը յիշատակէ ձեռագիր Աւետարան մը, զոր գրել տուած է Կոստանդին կաթողիկոս (1222—1267) Հռոմկլայի կաթողիկոսարանին մէջ իր եղբօր որդւոյն Թորոս Ռոսլինի, որ հռչակաւոր եւ արդիւնաւոր գրիչ մըն էր, որ բազում ձեռագիրներ գրած է, որոնք ծանօթ են իրենց գերազանցապէս գեղեցիկ մանրանկարչութեամբ: Այս Աւետարանին յիշատակարանը ցոյց կու տայ թէ ձեռագիրը Կիլիկիոյ հայ արքունիքին սեփական է եւ կը պատկանի Հեթում Թագաւորի թոռ եւ Լեւոն Թագաւորին որդի «պարոն» Հեթումին, որ ինքն ալ Թագաւորած է:

Այս Աւետարանը չի գիտցուիր թէ կիլիկեան արքունիքէն ի՞նչպէս դուրս ելած եւ որո՞նց ձեռքը անցած եւ յետոյ ի՞նչպէս եկած է Մալաթիա, յայտնի չէ. բայց ամէն պարագայի մէջ Կիլիկիայէն գաղթողներ բերած կրնան ըլլալ:

## ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏՆԵՐՈՒ ԴԵՐԸ

Իկոնիոյ Սուլթանները, որոնք ինքզինքնին պճնած էին «Հռոմէական» (Ռումի) տիտղոսով, կը յաւակնէին ժառանգորդները ըլլալ բիւզանդական կայսրութեան եւ շարունակել զայն, անոր բնակիչներով: Ուստի նմանցնել աշխատեցան նաեւ անոր կառավարելու եղանակը, պետական դրութիւնը եւ կազմը, ինչպէս նաեւ անոր մեծագործութիւնները:

Նմանելու փորձը, զոր այս վեհապետները կը կատարէին, ունէր իր ծիծաղելի կողմերը, վասնզի Սելճուկները շատ հեռու էին Բիւզանդացիներէն՝ գեղարուեստական հասկացողութեամբ եւ մշակութային զարգացմամբ:

Ռումի սուլթանները, ընդօրինակելով հռոմէական կայսրերու ճոխութիւնը, պերճանքը եւ շքեղութիւնը, իրենք ալ փափաքեցան մեծագործութեանց եւ երկիրին բոլոր կողմերը պճնազարդեցին գեղեցիկ շինութիւններով:

Մանաւորապէս իր շինարարական գործունէութեամբ համբաւաւոր եղած է Ալայէտտին Քայ Խուպաթ Ա. (1220—1236)՝ «այր իմաստուն եւ աստղաբաշխ» (ՍՄԲԱՏ, էջ 118), ամենէն զօրաւոր եւ նշանաւոր իշխողը սելճուկ Ռումիներուն: Անիկա շքեղ շինութիւններով զարդարեց իր պետութեան դըլխաւոր քաղաքները: Իրեն նման ուրիշ սուլթաններ ոչ միայն հռոմ-բիւզանդական նմոյշներու նմանութեամբ հրաշակերտներ կ՚արտադրէին, այլ նաեւ պարսիկ եւ արաբ յիշատակարաններէն կը ներշնչուէին եւ կը ստեղծէին գեղեցիկ եւ պերճ շինութիւններ:

Այս ուշագրաւ շինութիւնները սելճուկ ինքնուրոյն յղացումով չեն կանգնուած, այլ փոխառութիւններ են պարսկականէն եւ բիւզանդականէն, ինչպէս կը հաստատէ Հ. Գելցեր իր ԲԻԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐԵՐԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ մէջ (էջ 295), քննադատելով զանոնք որ թրքասիրական հակումներով կը խօսին Սելճուկեանց խիստ զարգացած քաղաքակրթութեան հրաշալի մնացորդներուն վրայ, որոնք Սելճուկներու յղացումները չէին, այլ յոյն, հայ եւ սուրի արուեստագէտներու, զորս գնահատելու առաքինութիւնը գոնէ ունեցած են Գոնիայի սելճուկ սուլթանները, մանաւորապէս Ալայէտտինի հօրը՝ Քայ Խոսրով Ա.ի օրերէն սկսեալ:

Ղիյասետտին Քայ Խոսրով Ա. (1191—1193 եւ 1204—1211), որ յունական արքունիքին մէջ Կ. Պոլիս ապրած էր տասը տարի, հրապուրուած Բիւ-

զանդիոնի չքեղութենէն եւ պերճանքէն, իր երկիրն ալ գեղազարդելու աշխատած է եւ այս նպատակին հասնելու համար բիւզանդացի վարպետներ զանազան խոստումներով հրապուրած եւ իր երկիրը հրաւիրած է (տես Գելցեր, նոյն, էջ 381)։

Իսկ իր զաւակը Ասետտին Կայ Քայուս Ա. (1211—1220) իր հօրը ըսկըսած գործը շարունակած է։ Այս վերջինին եղբայրը Ալայետտին Կայ Խոպատ Ա. (1220—1236) կը գերազանցէ իր բոլոր նախորդները իբրեւ մեծագործ վեհապետ մը։

Իր օրով մեծ զարկ կը ստանան արուեստները, եւ գեղեցիկ յիշատակարաններով կը ճոխանան սելճուկ սուլթանութեան քաղաքները։

Ալայետտին ըստ արաբ եւ Թուրք պատմիչներու 1234–ին Կալանորոսը գրաւելէ ետք զայն քաղաքի մը վերածեց, որ իր անունով Ալայա կոչուեցաւ։ Ալայետտին հոն մթերեց իր գանձերը եւ հոն բնակեցաւ։

Ալայետտին իր իշխանութեան շրջանին շինել տուած է բազմաթիւ մըզկիթներ, մետրէսէներ, հիւանդանոցներ, քարվանսարայներ, ինչպէս նաեւ աղբիւրներ (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 549)։

Սելճուկ ռումի կայսրութեան բոլոր քաղաքները, ինչպէս Սեբաստիա, Կեսարիա, Ամասիա, Գարաման, Անտալիա, Էրզրում, Տիվրիկ եւայլն բարեզարդուած են։ Անոնց մէջն է Մալաթիա որ շինութիւններով զարդարուած է։ Հոն գրեթէ բոլորովին լքուած հին քաղաքին մէջ, որ կը գտնուէր 8 քիլոմեթր հեռու արդի քաղաքէն հիւսիս, կը տեսնուին տակաւին ուշագրաւ փլատակները ընդարձակ սելճուկեան մզկիթի մը, 53–է 40 մեթր տարածութեամբ, որուն դուռը կառուցուած 1247–ին (Հիճրէթի 645–ին) Խոսրով անուն ճարտարապետի մը ձեռամբ՝ մզկիթին արեւմտեան դրան վրայ գտնուող արձանագրութեան համաձայն։

Իսկ հարաւ–արեւելեան դրան վրայ կը նշանակուի մզկիթին վերանորոգութիւնը Հիճրէթի 672 թուականին, այսինքն Քր.ի 1273—1274 թուականին սուլթանի մը հրամանով, որուն անունը եղծուած եւ անընթեռնլի եղած է, եւ որ միայն կրնայ ըլլալ Ղայասետտին Կայ Խոսրով Գ.ը (1267—1283)։

Այս նորոգութիւնն ալ կատարուած է նոյնպէս Խոսրով անուն ճարտարապետի մը կողմէն, որ 1247–ի դրան շինողն է հաւանօրէն։

Նոյն մզկիթին հիւսիսային գլխաւոր մուտքին աջակողմեան սիւնի վրայ կը յիշուի իբր «գործը Եադուպ Իպն Ապու Պեքիր Մալաթիացի ճարտարապետին»՝ առանց որեւէ ուրիշ յիշատակութեան։

Իսկ ինչ որ ամենէն նշանակելին է, այս մզկիթին դէմը հարաւային կողմը կը գտնուէին փլատակները հին մետրէսէի մը, որուն մուտքի դուռը զարդանկարուած էր, արձանագրութեամբ մը անթուական, եւ միւս կողմը

գրուած էր «գործ վարպետ Թագւորի, որդի Ստեփանի»[1], որուն հայ ըլլալը ոչ մէկ կասկած կը վերցնէ։ Սակայն Grenard կը կասկածի որ 1247-ին եւ 1273-ի յիշատակուած Խոսրով ճարտարապետն ալ Հայ մըն է, քանի որ եթէ մահմետական եղած ըլլար, հօրը անունը կամ ծննդավայրը յիշուած պիտի ըլլար հաւանօրէն (տես **Journal Asiatique**, 1901, էջ 551)։

Ասիկա աւերուած քաղաքին միայն փրկուած մի քանի արձանագրութիւններուն մէջ յիշուածներն են։

Ապահովաբար ուրիշ այս տեսակ արձանագրութիւններ կային, որոնք եթէ հաւաքուած ըլլային, երեւան պիտի հանէին ուրիշ անուններ եւ պիտի ապացուցուէր թէ ինչպէս ուրիշ վայրերու, նոյնպէս Մալաթիոյ մէջ Հայերը իրենց քրտինքը խառնած են քաղաքին կարեւոր յիշատակարաններուն շինութեան աշխատանքին։

Անոնք նոյնպէս ապահովաբար ոչ միայն մասնակցած են այդ շինարարութեանց — ինչպէս պետութեան բոլոր կողմերը կանգնուած յիշատակարաններուն, — այլ նաեւ Մալաթիոյ մէջ կառուցուածներուն վրայ դրոշմած են հայկական արուեստին ցոլքերը եւ ազդեցութիւնը, ինչպէս իսլամական ճարտարապետութեան ուսումնասիրողներէն A. Saladin կը հաստատէ (հմմտ. **Manuel d'Art Musulman**, Paris, 1907, էջ 138—441)։

Այս ազդեցութիւնը կրնայ մեկնուիլ սա կերպով որ Հայաստան քարուքանդ եղած ըլլալով բարբարոսներու արշաւանքներու հետեւանքով այս աւերուած երկիրին զաւակները իրենց բնիկ երկիրէն դուրս իրենց արուեստը կը կիրարկէին եւ կը ծաղկեցնէին, թերեւս նոյնիսկ երկար տարիներէ ի վեր, իրենց նախնական հայրենիքին կառուցողական արուեստներու աւանդութիւնները պահելով եւ զանոնք կիրարկելով իրենց նոր հայրենիքին մէջ, որուն բնիկները դարձած էին։

Նաեւ կարելի է ենթադրել թէ սուլթանները կրնային Հայաստանէն բերած ըլլալ ճարտարներ իրենց շինութիւններուն համար։ Թորամանեան կը հաւաստէ թէ առանց ճարտարապետները եւ շինողները ճշդուած ըլլալու՝ շինութեանց ոճէն կարելի է վստահօրէն հետեւցնել թէ հայկական ճարտարապետութեան դասական ոճով շինուած են Սելճուկեանց այդ շինութիւններուն մեծ մասը։ Այսպէս Հայաստանի մէջ ԺԱ. դարուն վերջին քառորդին ճարտարապետութիւնը նուազելու եւ անէանալու վրայ էր, երբ հեռաւոր Գոնիոյ մէջ կը կառուցուէր Ալայէտտինի հռչակաւոր մզկիթը, որուն զարդաքանդակները մեծ մասամբ հայկական էին։

Ճարտարապետն էր հաւանօրէն Ախլաթցի դաւանափոխ Հայ մը[2], որ

(1) Այս բոլոր արձանագրութիւնները հրատարակուած են Grenard-ի կողմէ «Note sur les monuments du moyen age de Malatia, Diwrighi, Sivas, Darendeh, Amasia et Tokat (տես Journal Asiatique, XVII, 1901, էջ 550—1)։

(2) A. Saladin (նոյն, էջ 531) ասոր անունը կը նշանակէ Zigani = Ցիգանի։

1150 կամ 1158-ին Մեքքէն վերադարձին շինած է այդ մզկիթը (G. Migeon, Manuel d'Art Musulman, հտ. Բ., էջ 120 եւ Թ. Թորամանեան, ԱՆԱՀԻՏ, 1911, էջ 21)։

Հաւանօրէն այս ճարտարապետը հրաւիրուած է Գոնիա, ինչպէս երբեմըն պարսիկ արհեստաւորները, որպէսզի իրենց ճաշակով զարդարեն շինութիւնները (A. Saladin նոյն, էջ 446)։

Այս պատճառով է որ սելճուկեան առաջին յիշատակարանները ունին խիստ շեշտուած պարսկական նկարագիր մը (նոյն)։

Հրաւէրով եկողներէն զատ Թաթարական արշաւանքներու հետեւանքով գաղթողներ ալ կրնան գտնուած ըլլալ։ A. Saladin (էջ 446) կ'ըսէ թէ «Այն օրէն որ Գոնիա հաստատուեցան Սելճուկեանք, իրենց թագաւորութեան բարգաւաճումը ապահովաբար իրեն քաշեց ուշադրութիւնը Սիւրիոյ եւ Հայաստանի արուեստագէտներուն, որոնք եկան եւ խառնուեցան Միջագետքի եւ Պարսկաստանի արուեստագէտներուն։ Այս է պատճառը այն տարբեր ազդեցութիւններուն, որոնց գոյութիւնը ամէն վայրկեան կը հաստատուի Գոնիոյ յիշատակարաններուն մէջ։ Երբեմն անոնք իրարու կը յծորդուին առանց իրարու խառնուելու...»։

Այս խառնուրդի մէջ հայկական արուեստն ալ իր տեղը ունէր եւ ասիկա Հայաստանի բնիկները կրնային փոխադրած ըլլալ ռումի սելճուկ երկիրներ, ուր գործ գտնելու համար կրնային գացած ըլլալ։

Ահա թէ ինչո՛ւ Թաթար արշաւանքներէ առաջ Հայաստանէն դուրս ուրիշ երկիրներու մէջ կը գտնենք դարձեալ զուտ հայկական ոճով կառուցուած մահմետական յիշատակարաններ։ A. Saladin (էջ 442) առանց վարանման Հայաստանի կը վերագրէ ազդեցութիւն մը սելճուկեան արուեստին վրայ եւ անկէ անցանցեալ Թուրք արուեստին վրայ, եւ կ'ըսէ թէ ամէն ժամանակ Հայաստան ունեցած է գերազանց որմադիրներ — վանզի Հայաստանի մէջ կը գտնուին շատ ընտիր շինութեան քարեր եւ Ժ. դարէն առաջ կը յայտնուէին հայ տաղանդաւոր ճարտարապետներ (հմմտ. Schlumberger, **L'Epopée Byzantine,** Բ. հտ., էջ 182)։ 989-ին Այա-Սոֆիայի գմբէթը նորոգող Տրդատ Ճարտարապետը այդ տաղանդաւորներէն մէկն էր եւ թերեւս ուրիշներ ալ կային այլեւայլ տեղեր եւ Յուստինիանոսի օրերէն ի վեր անոնք գեղեցկացուցած էին արեւմտեան Հայաստանը (Պրոկոպիոս, ՅԱՂԱԳՍ ՇԻՆՈՒԱԾՈՑ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ, Լինչ, ՀԱՅԱՍՏԱՆ, Ա. հտ., էջ 384 եւ A. Saladin էջ 442) բազմաթիւ եկեղեցիներով եւ այլ շինութիւններով։

Հայ ճարտարապետութիւնը ունէր իր սեպհական ոճը, որ ներգործական դեր մը կատարած է նաեւ ուրիշ ազգերու ճարտարապետութեան վրայ ըստ Պրոֆ. Յովսէփ Ստրչիգովսկիի, Շարլ Տեհլի եւ Ա. Շաւազիի, եւ երբ Սելճուկները առաջին անգամ Հայաստան կը մտնէին, հայ ինքնուրոյն ճարտարապետութիւն մը գոյութիւն ունէր արդէն հոն։

A. Saladin, Լինչ, M. Max von Barcham եւ այլ գիտնականներ

բազմաթիւ նմանութիւններ գտած են հայկական յիշատակարաններու եւ Սելճուկեաններու միջեւ, եւ անուրանալիօրէն ակներեւ կը վկայեն հայկականի ազդեցութիւնը։ Մասնաւորապէս ԺԳ. դարէն սկսեալ հայ ոճը կու գայ բոլորովին զգալի ընել իր ազդեցութիւնը սելճուկեան յիշատակարաններու վրայ, ինչպէս 1228-ին կառուցուած Տիվրիկի մեծ մզկիթին մէջ, որուն դուռը հիացման արժանի այնքան ինքնատիպ զարդարանքներ ունի ( A. Saladin նոյն, էջ 456)։ Եւ սոոր նման հայկական նկարագիրով ուրիշ յիշատակարաններ կը յիշեն հայ եւ սելճուկ ճարտարապետական յիշատակարաններով զբաղող դէմքեր (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 555—6)։

Այդ շէնքերը ԺԳ. դարուն մէջ կառուցուած են մեծ մասով։ Անոնց ճարտարապետներէն անունով կը յիշուին Գալուստ մը (Քելուք) «որդի Ապտալլահի (հաւանօրէն կրօնափոխ հայ մը) եւ Գալոժանի» (Յոյն) եւ անշուշտ անծանօթ մնացած ուրիշներ, ինչպէս նաեւ հայ քանդակագործներ, որ գործած են այդ շրջանին, ինչպէս կը փաստէ A. Saladin (նոյն, էջ 456)։

Մալաթիոյ մէջ անխուսափելի է որ այս շրջանին հայ միտքը եւ հայ ձեռքը գործած ըլլան, այն աշխոյժով որ գործած էին պետութեան ուրիշ մասերուն մէջ։

Դժբախտութիւն մըն է մեր պատմագիրները անփոյթ եղած են ժողովուրդին կեանքը ներկայացնել իր բոլոր կողմերով եւ շատ քիչ անգամ զբաղած են պատերազմական գործերէ դուրս, եւ ընկերային ու տնտեսական կեանքի վերաբերեալ տեղեկութիւններ տուած։

Հետեւաբար չունինք լիակատար տեղեկութիւններ ընդհանուր ազգին կեանքին վրայ։ Երբ հարցը մասնաւոր շրջանի մը վրայ է, բոլորովին կը դժուարանանք գտնել տեղեկութիւններ, որոնք լուսաբանեն ժողովուրդին կեանքը իր բոլոր կողմերով։

Մալաթիոյ համար ալ նոյն դժուարութեան առջեւ ենք։ Զկան որոշ տեղեկութիւններ բարբարոսներու արշաւանքներու շրջանին Մալաթիոյ Հայոց կեանքին վրայ, եւ մասնաւորապէս ոչ-կղերական հասարակ ժողովուրդին տնտեսական վիճակին, արհեստագործութիւններու, վաճառականական գործառնութիւններու եւ այլ մարզերու մէջ Հայոց ցոյց տուած կարողութիւններու մասին։

Ամէն պարագային մէջ՝ Հայերը այլազան մարզերու մէջ կը փայլէին իրենց աշխատութիւններով, անոնք կը մշակէին քրտնաջան աշխատանքով հողը, կը գործէին կերպասներ բամպակէ, բուրդէ եւ նոյնիսկ մետաքսէ, կը զբաղէին մանրավաճառութեամբ եւ վաճառականութեամբ, կը կերտէին շէնքեր եւայլն։

Անոնք հասարակ առօրեայ տնտեսական կեանքի պահանջներէն դուրս, արհեստներ եւ արուեստներ կը մշակէին, որքան իրենց ապրած միջավայրը եւ իսլամ կրօնքին պատուէրները արգելք չէին հանդիսանար։ Պատկերները եւ արձանները, որոնք իսլամ կրօնքով արգիլուած էին, բնաւ չէն քա–

ջալերուած. անոր համար այս տեսակ արուեստագէտներու գոյութիւնը չատ հաւանական է:

Իբրեւ արուեստ նախապատիւ գործը ճարտարապետութիւնն էր, որուն օժանդակ էին որմազրութիւնը եւ քանդակագործութիւնը, որով կը գեղազարդէին հանրային շէնքերը՝ պալատ, մզկիթ, դպրոց եւայլն:

Նոյնպէս փայտի վրայ քանդակագործութիւնը, որուն վարպետները Հայերն էին, ծառայած է զարդարելու հանրային շէնքերու ներքին մասերը (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 556—7):

Դժբախտաբար չունինք հայ որմազիրներ եւ քանդակագործ արհեստաւորներու անունները, բայց պետութեան ուրիշ քաղաքներուն մէջ անոնց գոյութիւնը մակաբերաբար մեզ կը պարտաւորէ ընդունիլ թէ Մալաթիոյ մէջ նաեւ կային անոնցմէ:

Գալով սովորական ընթացիկ կեանքի հետ կապ ունեցող արհեստներու, — ինչպէս երկաթագործութիւն, պղնձագործութիւն, հիւսնութիւն, դարբնութիւն, կօշկակարութիւն, դերձակութիւն եւայլն — հետեւող Հայերը ապահովաբար բազմաթիւ էին:

Ոսկերչութիւնը որ ամենահին ժամանակներէն մշակուած գործ մըն էր Հայաստանի մէջ, հաւանօրէն Մալաթիոյ մէջ ալ Հայերու կողմէ մշակուած է եւ յիշատակարան մը մեզի կը բերէ անունը «արհեստիւ ոսկերիչ» «ի Մելիտինոյ Հայոց» ԶԱՒՐԱՎԱՐ անուն անձի մը, «յոյժ ազնուական ի ճարտարաց եւ [յ]ընտրելոց, այլ իմաստուն եւ հանճարեղ բնաւորութեամբ, բարեբարոյ եւ հեզ եւ ամենայն առաքինութեամբ զարդարեալ, տիրելով ի դպրութիւն ընթերցողութեան», որ Հռոմկլայի մէջ իր արհեստը ի գործ դրած ատեն 1204-ին Գրիգոր անուն դպիրի մը գրել տուած է Իգնատիոսի ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ գործը (Թ. 334 ձեռագիրը Երուսաղէմի Հայոց Վանքին հաւաքածոյին):

Դժբախտաբար յիշատակարանը ընդհատուած է կազմուած ատեն ինկած ըլլալով մէկ մասը:

Կարելի է ենթադրել թէ ոսկերիչ Զօրավար, ձեռագիրը ստանալէ ետք, փոխադրուած է իր ծննդավայրը՝ Մելիտինէ, ուր թերեւս ունէր չատ արհեստակիցներ:

Այս կիսկատար տեղեկութիւնները անբաւական են գոհացնելու մեր հետաքրքրութիւնը, սակայն որոշ գաղափար մը կու տան եւ գոնէ մեզ կը համոզեն սա ճշմարտութեան թէ Մելիտինէի Հայերը քաղաքին բարգաւաճ շրջանին, գոնէ մինչեւ Թաթարներու արշաւանքը, բաւական բարօրութիւն վայելած են:

Սակայն ԺԳ. դարուն երկրորդ կէսէն սկսեալ, դժբախտութիւններ իրարու յաջորդած են:

1269-ին պարհուրելի սովը, 1315-ին ջարդը եւ յաջորդ տարիներու ուրիշ աղէտները, քաղաքին բնակչութեան կեանքը խռոված են, եւ քաղաքը անհրքացուցած են:

*
**

Ինչպէս տեսնուեցաւ Դանիշմենտ եւ Ռումի Սելճուկ երկու տէրութիւնները, որոնք մինչեւ ԺԴ. դարուն սկիզբը տիրած են Մալաթիոյ եւ Եփրատի հովիտին, քիչ ու շատ կարգաւորեալ պետութիւններ էին, որոնց սահմաններուն մէջ Հայերը ապրած են առանց դժգոհելու մեծ պատճառներ ունենալու:

Սակայն այս վիճակը չտեւեց երկար ատեն: Մոնկոլները, որ ԺԳ. դարուն առաջին կէսին ընդարձակ կայսրութիւն մը հիմնած էին՝ Խաղաղական ծովէն մինչեւ Փոքր Ասիա, 1242-ին առաջին անգամ Բաչու Նուին զօրավարին հրամանատարութեամբ մտան Սելճուկ ռումի սուլթանին երկիրները եւ պաշարեցին եւ գրաւեցին Մալաթիան եւ շատ աւարով եւ գերիներով ետ դարձան:

Յաջորդ տարիներուն Մոնկոլները հետզհետէ գրաւեցին սելճուկ ռումի կայսրութեան արեւելեան սահմաններուն վրայ գտնուող քաղաքները եւ իրենց ազդեցութեան ենթարկեցին այդ կայսրութիւնը, որ քայքայուեցաւ եւ յիսուն տարիներու երկար հոգեվարքէ մը ետք մահացաւ ԺԴ. դարուն սկիզբը 1301-ին:

Ռումի սելճուկ թագաւորութիւնը, որ այնքան փայլուն կեանք մը ունեցած էր, սկսաւ դիմել իր անկումին կամ մայրամուտին, իբր հետեւանք վարչական ապիկարութիւններու եւ թաթարական սպառնալիքներու եւ ներքին խռովութիւններու (ինչպէս էր պարագան Պապա Իսհագի ապստամբութիւններուն) պատճառաւ:

Այս երկարատեւ եւ հիւծող պայքարներուն մէջ դժբախտաբար Հայոց վիճակին վրայ մեզի տեղեկութիւններ չեն տար մեր պատմիչները եւ այլ յիշատակարանները, հետեւաբար չունինք տուեալները, իսկ քաղաքական պատմութիւնը, արդէն ծանօթ է:

Հոս կը տեսնուի թէ ԺԴ. դարու սկիզբէն կը ստեղծուի խառնակ կացութիւն մը, ինչպէս շատ վայրերու նոյնպէս նաեւ Եփրատի հովիտին մէջ եւ Մալաթիոյ շուրջը, որոնք երբեք խաղաղութիւն չվայելեցին: Գալով երկիրին ամենազգի բնակիչներուն, որոնց մէջ կարեւոր թիւ մը ունէին Հայերը, տառապանքներու ենթարկուեցան:

Ամէն բանէ առաջ խանգարուեցաւ Հայերու տնտեսական բարօրութիւնը, վասնզի անկարելի էր որ պատերազմները եւ անոր յարակից յուզումները չվնասէին առեւտուրին, երկրագործութեան, արհեստներու եւ արուեստներու զարգացման:

Հայերը այլեւս չունէին այն նպաստաւոր վիճակը, զոր ունեցած էին Դանիշմենտ էմիրներու եւ սելճուկ ռումի առաջին սուլթաններու շրջանին, բայց որովհետեւ խառնակութիւնը, որ Մալաթիոյ շուրջը կը տիրէր, համատարած էր, եւ շրջակայ երկիրներն ալ նոյն վիճակը կը ներկայացնէին: Հա-

յերը ԺԳ. եւ ԺԴ. դարերուն չեն տեղափոխուած այլուր եւ պահած են իրենց թիւը, վասնզի աւելի ապահով շրջանակ մը չկար մօտերը, որպէսզի հոն գաղթէին:

Անոնք իրենց գոյութիւնը պահեցին այն երկրամասին մէջ, ուր պահպանեցին իրենց ազգային հոգեւոր կազմակերպութիւնը:

Մոնկոլները, որ Կիլիկիոյ հայ թագաւորութեան դինակիցները եղած են եւ բարւոք յարաբերութիւններ մշակած են, ուրիշ տեղերու Հայերուն հետ լաւ վարուած պէտք է ըլլան, թէեւ ապացոյցներ կը պակսին:

Ամէն պարագայի մէջ Մոնկոլները, որոնք իրենց պատմութեան ասպարէզ եկած առեն իսլամութեան վերջնապէս յարած չէին, բոլոր քրիստոնեաներուն նկատմամբ բարեացակամութեամբ վարուած են, որուն իբրեւ փաստ կրնայ ներկայացուիլ Ապուլ Ֆետայի այն տողերը թէ Փոքր Ասիոյ մէջ Մոնկոլները դերիշխան եղած առեն Քրիստոնեաները եւ Իսլամները իրարու քով կ՚ապրէին կատարեալ խաղաղութեամբ եւ համաձայնութեամբ, ինչ որ շատ հաւանական չէ:

Դժբախտաբար Մոնկոլները չկրցան առանց մրցակիցի տիրել Մերձաւոր Ասիոյ մէջ, վասնզի իրենց դէմ ելան հարաւէն առաջացող Եգիպտացիները, որոնք, ինչպէս տեսնուեցաւ, 1315–ին մինչեւ Մալաթիա հասան, եւ պաշարեցին քաղաքը:

Քաղաքին բնակիչները Թաթարներու տիրապետութեան աւելի փափաքող էին, ուստի անոնց կուսակից: Անոնց յաղթութիւնը ապահովելու համար պաշարուած քաղաքէն տեղեկութիւններ կը հանէր Թաթարներուն ըստ Ապուլ Ֆետայի:

Սակայն Մոնկոլները չկրցան փրկել քաղաքը, որուն բնակիչները անձնատուր եղան, պայմանով որ իրենց կեանքին խնայուի:

Թունկուզ հրամանատարը խոստացաւ, բայց չկրցաւ յարգել իր խօսքը, վասնզի զինուորները անհրաման կողոպտեցին եւ հրդեհի տուին քաղաքը, եւ աւերակի վերածեցին եւ բնակչութիւնը գերի վարեցին, քաղաքը սարսափի տակ պահեցին, ինչպէս 1316–ին գրուած ձեռագիր Աւետարանի մը յիշատակարանը կը հաստատէ: Մոնկոլները քաղաքը կը ջարդեն եւ ողջ մնացողները գերի կը վարեն:

Այդ յիշատակարանին մէջ ուշագրաւ է որ քաղաքը կը յիշատակուի «Մայրաքաղաքն Մելիտինին Հայոց» ձեւով եւ տարի մը ետք (1316) գրուած Ճաշոցի մը ձեռագիրին մէջ կը կարդանք «մեծանուն մայրաքաղաքն Մելիտինի Հայոց առին եւ զայլ բազում քաղաքս եւ զգաւառս եւ զանմատչելի ամրոցս հիմն ի վեր տապալեցին»...

Յիշատակարանին մէջ կը պատմուի թէ «զամենեսեան մաշեցին ի սուր սուսերի եւ զմնացեալս ի գերութիւն վարեցին» (ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ, Ա. հտ., էջ 81, Գարեգին կաթողիկոս, ՅԻՇԱ–

ՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, էջ 521—530)[1]:

Ուրեմն շատ կարճ ժամանակին մէջ Հայերը նորէն հոն համախմբուած էին, եւ կազմած էին մայրաքաղաք մը նկատուելու աստիճան մեծ քաղաք մը: 1335—1380 անիշխանութեան շրջանին, երբ Մոնկոլները Հայաստանի մէջ էին, միշտ միտում մը կար ստորաբաժնելու իշխանութիւնները. Ռումի Սուլթա-նութիւնն ալ բազմաթիւ անկախ պէյութիւններու բաժնուեցաւ: Շրջանի պատ-մութիւնը մեզի չի տար Հայոց յատուկ տեղեկութիւն մը, որուն վրայ ծան-րանալ կարելի ըլլայ:

Այս խառնակութեան ժամանակամիջոցին մէջ Եգիպտացիք գրաւած են Մալաթիան եւ իրենց իշխանութեան տակ առած, սակայն 1389-ին Հալէպի հետ մեծ ապստամբութեան մը որրան եղած է:

1391-ին Օսմանցի Թուրքերու Սուլթանը Պայազիտ Ա. (1389—1402) գը-րաւած է Մալաթիան, բայց չէ կրցած պահել զայն:

Այդ շրջանի Մերձաւոր Ասիան կատարեալ խառնարան մըն էր, — ինչ-պէս տեսնուեցաւ — եւ Հայաստանի մէջ կազմուած երկու Թուրքման իշխա-նութիւնները, որոնք Ակ-Գոյունլու եւ Գարա-Գոյունլու կոչումով ծանօթ են, թերեւս կազմակերպուէին եւ հիմնաւորուէին, եթէ նոր փոթորիկ մը տակնու-վրայ չընէր բոլոր արեւելքը:

Այդ նոր աղէտն էր Խօզպէք-Թաթարներու արշաւը Լենկթիմուրի գըլ-խաւորութեամբ: Այս արինարբու գազանը ԺԴ. դարու երկրորդ կիսուն Մերձաւոր Արեւելքի մէջ երեւցաւ եւ ինչպէս արդէն տեսնուեցաւ, Մալա-թիան գրաւեց, հակառակ անոր որ քաղաքը շրջապատուած էր բարձր եւ ամ-րակերտ պարիսպներով եւ պաշտպանուած ամրոցներով (Ա. Քէքէճեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Ա. տարի, թ. 3, էջ 5): Քաղաքին պարիսպներուն շուրջ փորուած խորունկ խրամները՝ արտաքին վտանգի պահուն ջուրով լեցուելով՝ հին ժա-մանակներու մէջ թշնամի ոյժերուն քաղաքին մերձենալը ու զայն գրաւելը արգիլած են, սակայն Լենկթիմուրի հրոսները ԺԴ. դարուն վերջերը յաղ-թահարեցան եւ հակառակ ցոյց տրուած հերոսական դիմադրութեան պարտու-թեան մատնեցին (նոյն):

Բնակիչները մեծ մասամբ սրախողխող եղան եւ մնացեալները գերի տարուեցան: Քաղաքին ամբողջ հարստութիւնը կողոպտուեցաւ եւ տարուե-ցաւ իրր աւար: Դարաւոր երկար աշխատանքի արդիւնք եղող պատմական շինութիւններ ու փառաւոր տաճարներ քանդուեցան եւ անոնց հետ տեղ-տեղ քարուքանդ եղաւ բարձր պարիսպը բարբարոսներու ձեռքով, որոնք

(1) Աստուածատուր եպս. Տէր Յովհաննէսեան իր «Պատմութիւն Սբ. Երուսաղէմի (Ա. հտ., էջ 203) գործին մէջ կը գրէ թէ «... ազգս իսմայէլեան ... առին եւ զմայ-րաքաղաքն Հայոց Մելիտինէ եւ աւարի եառուն եւ զայրեալս իւրոյ վարեցին ի գերու-թիւն»:

Այս տողերը ունին աղբիւր մը, որ չէ նշանակուած հեղինակին կողմէ: Կ'ենթա-դրեմ թէ Երուսաղէմի մատենադարանի թ. 375 ձեռագիրը պէտք է ըլլայ:

պարիսպի ամէն մէկ քարը իրենց գերի վարած ժողովուրդի շալակով, ձեռ-քէ ձեռք՝ շղթայ կազմած՝ Եփրատը թափել տուին, որպէսզի Մելիտի-նէի պարիսպը անգամ մըն ալ չվերաշինուի եւ քաղաքը թշնամի յարձակ-մանց դէմ պաշտպանուելու հնարաւորութենէն ընդմիշտ զրկուի (Ա. Քէքէ-լեան, Նոյն) :

Այս աւանդութեան վաւերականութիւնը հաստատող յիշատակութիւն մը չկայ գրաւոր, հետեւաբար չեմ կրնար երաշխաւորել անոր իրականու-թիւնը, սակայն յայտնի է թէ Լենկթիմուրի գրաւումէն ետք քաղաքը կորսն-ցուցած է իր երբեմնի մեծութիւնը եւ կարեւորութիւնը :

Նախ քան Լենկթիմուրի այս գրաւումը Մալաթիոյ տիրած էր 1397—98-ին Աղ-Գոյունլուներու պետը Գարա Եուլուք Օթման կամ Օսման (ՊԱՏ-ՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ., էջ 203), բայց չէր կրցած պահել, այլ շուտով կորսնցուցած էր : 1400-ին երբ Լենկթիմուր գրաւեց Մալաթիան եւ շրջակայքը, զայն տուաւ իրեն զինակից Աղ-Գոյունլուներու կամ Պայան-տըրեանց, որոնք վերստին տիրեցին Մալաթիոյ :

Քաղաքը մինչեւ 1468, Աղ եւ Գարա-Գոյունլու իշխանութիւններու միութիւնը, մնաց Աղ-Գոյունլուներու իշխանութեան տակ, միայն կարճ ժա-մանակ մը Զիւլղատրեանց իշխանութեան տակ մնալով :

Այս 68 տարուան շրջանին (1400—1468) հաւանական է որ Մալաթիա բնակուած ըլլայ եւ կրկին Հայեր ալ հոն հաստատուած ըլլան, թուրք շատ քիչ թիւով :

Թովմա Մեծոփեցի (էջ 72) Աղ-Գոյունլու Օսմանը կը ներկայացնէ «սի-րող յոյժ ազգիս Հայոց» եւ «քաջ զօրական» : Ան մեծ բարեկամ մը եւ պաշտ-պան մը եղած է 1430-ին Ամիթ քաղաքի եւ Միջագետքի եպիսկոպոսութեան[1] կոչուած Մկրտիչ Նաղաշի, որ շնորհիւ այս պաշտպանութեան՝ շատ ազդեցիկ դիրք մը ունեցած է Միջագետքի մէջ. իր կարողութիւններով եւ ձեռներէցու-թիւններով Նաղաշ Աղ-Գոյունլու Օսմանի շատ սիրելի էր, որով զանազան արտօնութիւններ ստացած է քրիստոնէից համար, ինչպէս կարգ մը եկեղե-ցիներու ապահարկութիւնը, պաշտամունքի ազատութիւնը եւ գերիներու ա-զատութիւնը :

Իրեն համար ստեղծած էր կարեւոր դիրք մը, գրեթէ Աղ-Գոյունլու բոլոր իշխանութեան մէջ գուցէ առանց մասնաւոր կարգադրութեան, այս թուրքմէն տիրապետութեան մէջ ապրող Հայերուն հոգեւոր պետը դառնա-լով ըստ յիշատակարանի արքեպիսկոպոս հաստատուելով «ի վերայ ԻԴ. (24) գաւազանի» :

Օսման կամ Օթման, որ կը տիրէր Խառանէն մինչեւ Տրապիզոն, իր իշ-խանութեան տակ գտնուող բոլոր քրիստոնեաներու պետ կարգեց զայն եւ մեծ

(1) Առաքել Դաւրիժեցի զայն կը կոչէ 1444-ին «Առաջնորդ Արղնի», իսկ ինք կը ստորագրէ «եպիսկոպոս Ամիթ քաղաքի եւ Մելիտրնայ, Ուռհայոյ եւ Թելկուրնա (Թըլ-կուրան), ՀԻՆՈՒ եւ ԱՐՂՆՈՒՆ», բայց ոչ Մալաթիոյ:

*պարգեւներով, Թագաւորական խելաւով եւ արքունի ձիերով կառավարեց։ Երբ Նաղաշ Ամիրայի քով երթար, ան զայն կը դիմաւորէր, կը համբուրէր եւ իր արքայական գորգին վրայ կը նստեցնէր եւ իր մոլլաներն ալ կը կանչէր, ամբողջ գիշերը կը խօսէր եւ կը լսէր զայն։*

*Նաղաշի պաշտպանը Աք-Գոյունլու Օսման Կարինի մէջ սպաննուեցաւ Գարա-Գոյունլու Իսկէնտէրէն* (1436), *որ անասանելի չարիքներ հասցուց ընդարձակ տարածութեամբ երկիրներու։*

*Օսմանի յաջորդեց իր որդին Համզա* (1436—1444), *որ աւելի կը պատուէր Նաղաշը եւ իր մեռած հօր փոխարէն զայն հայր կ՚անուանէր։ Համզա այնքան կը սիրէր եւ կը պատուէր Նաղաշը որ զրոյց տարածուեցաւ որ Համզա քրիստոնեայ եղած է։ Մկրտիչ Նաղաշ, ինչպէս Օսմանի նոյնպէս Համզայի բարեացակամութենէն օգտուելով հրաման ստացաւ շինելու եւ նորոգելու զանազան եկեղեցիներ։* 1433-*ին հիմնեց Արտի Բարձրահայեաց Ս. Աստուածածին վանքը,* 1439 *սկսաւ նորոգել Ամիթի Ս. Թէոդորոս մայր եկեղեցին, որ* 1443-*ին աւարտեցաւ, եկեղեցականները ապահարկ ըրաւ եւ մեռեալներուն համար զագազ գործածելու հրաման ստացաւ։*

*Այս արտօնութիւնները եւ մասնաւորապէս Ամիթի Ս. Թէոդորոս եկեղեցին, որ քաղաքին մինարէներէն աւելի բարձր եւ շքեղ էր, գրգռեցին մահմետականները, որոնք բողոքեցին Եգիպտոսի Սուլթանին, Պարսից Շահին եւ Թուրքաց Սուլթանին, որոնք Համզայէն պահանջեցին քանդել այդ եկեղեցին։ Համզա գործադրեց իսլամ վեհապետներուն հրամանը։ Այս բանը այնպէս գէշ ազդեց Նաղաշի վրայ, որ ձգեց եւ մեկնեցաւ Ամիթէ, գնաց Տրապիզոն, Պոլիս եւ Խրիմ։*

*Համզայի մահէն* (1444) *ետք յաջորդեց իր որդին Ջիհանկիր Իպն Ալի* (1444—1467), *որ գտաւ Նաղաշը եւ հրաւիրեց Ամիթ եւ արտօնեց եկեղեցին վերաշինել։*

1447-*ին ժողովուրդը* 10 *օրուան մէջ վերաշինեց եկեղեցին գիշեր-ցերեկ աշխատելով։*

*Նաղաշ շուրջ* 1473-*ին մեռած է։*

*Մկրտիչ Նաղաշի նկատմամբ Աք-Գոյունլու վեհապետներուն ցոյց տուած սէրը եւ յարգանքը նշան մըն է թէ գոնէ ժամանակաւորապէս այս իշխանութեան տակ Հայերը պահ մը հանգիստ վայելած են, հակառակ մոլեռանդներու ատելութեան եւ նախանձին։*

*Բայց խնդիր է թէ այս ժամանակաւոր քաջալերական երեւոյթները բաւական եղա՞ծ են Հայերը քաջալերելու որ դառնան ու գան Մալաթիա եւ զայն շէնցնեն կրկին։*

*Ինչ որ ալ ըլլայ սակայն յայտնի է որ Հայեր նորէն հաստատուած էին Մալաթիոյ մէջ, վասնզի առաջնորդական աթոռը անընդհատ շարունակուած է սակայն։*

«ԺԵ. դարէն վերջ, շատ քիչ կը լսուի եւ կը յիշուի անցեալին այդ շէն

ու փառաւոր քաղաքին անունը, եւ պատմութիւնը շատ տարտամ յիշատակութիւններ միայն կ'ընէ անոր ինքնապահմանման համար կատարած թոյլ կամ ուժեղ հետագայ ոգորումներուն մասին», ինչպէս կը գրէ Ա. Քէքէլեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Ա., Թ. 3, էջ 5), ինչ որ շատ հաւանական է:

## Է.

## ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅԵՐԸ ՕՍՄԱՆԵԱՆ ԹՈՒՐՔԵՐՈՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

Մալաթիա վերջնականապէս Օսմանեան Թուրքերու տիրապետութեան կ'ենթարկուէր, 1516-ի Սուլթան Սելիմ Ա. Եաւուզի (1512—1520) ատեն:

1468-ին երբ կազմուեցաւ պարսկական մեծ պետութիւնը Ուզուն Հասանին վեհապետութեան տակ, Մալաթիա այս նոր պետութեան սահմաններուն մէջ էր, իբր Աք-Գոյունլուներու պատկանող վայր մը:

1468—1516 շրջանին պարսիկ-թուրք երկու խլամ մրցակից պետութիւններուն պայքարին ատարկաներէն մէկը եղաւ Մալաթիա, որուն ռազմական դիրքը երկու պետութիւններն ալ իրենց համար կարեւոր կը նկատէին:

Նաեւ 1516-էն ետքը պայքարը շարունակուեցաւ այս երկու պետութիւններուն միջեւ, մինչեւ որ Պարսկաստանը տկարացաւ եւ Թուրքերը մնացին յաղթական:

1517-ին երբ Սուլթան Սելիմ Ա. գրաւեց Եգիպտոսը, գրեթէ միաժամանակ Եփրատէն հեռու վանուեցաւ Պարսկաստան եւ այնպիսի վիճակի մը ենթարկուեցաւ որ այլեւս անկարող եղաւ վերստին Եփրատը անցնելու:

Այս կերպով Մալաթիա անյիշատակ ժամանակներէ ի վեր առաջին անգամ ըլլալով դադրեցաւ կռուախնձոր ըլլալէ եւ ապահովուեցաւ արտաքին յարձակումներու դէմ:

Երբ Սելիմ Ա. Մալաթիոյ տիրեց, քաղաքը անշքացած էր գրեթէ, եւ իրապէս այն օրէն մինչեւ հիմա, այլեւս չկրցաւ կարեւոր քաղաքի մը կարգին բարձրանալ, վասնզի հակառակ անոր որ Մալաթիա սահմանագլուխի քաղաք մը ըլլալէ դադրելով պատերազմի դաշտերէն հեռու մնաց, սակայն ապահովութիւն չունեցաւ եւ միշտ ներքին խռովութիւններ վրդովեցին անդորրութիւնը քաղաքին որ չէ ունեցած զօրաւոր վարիչ մը, անկանոն եւ անկարգ տարրերը զսպելու համար:

Օսմանեան կայսրութիւնը իր գոյութեան բոլոր ընթացքին չկրցաւ բնաւ ըլլալ կարգաւորեալ պետութիւն մը եւ երկրին մէջ չնուաճուած եւ ինքնագլուխ եւ ապստամբ շրջաններ միշտ գոյութիւն ունեցան եւ շարունակ օսմանեան պետութիւնը զբաղեցուցին:

Մալաթիոյ շուրջ երկու տարբեր կային, որոնք գրեթէ միշտ ըմբոստ

էին եւ չէին ճանչնար սուլթաններու հեղինակութիւնը եւ միայն երբեմն անուանական կերպով կ'ընդունէին անոր գերիշխանութիւնը։

Այս երկու տարրերը Տաւրոսեան լեռներու անցքերը գրաւող Թուրքմէններն եւ Մալաթիոյ չուրջը հաստատուած Քիւրտերն էին։ Այս երկու ցեղերը շատ վնասակար եղած են քաղաքին եւ արգելք՝ անոր զարգացման եւ բարգաւաճման, հակառակ անոր որ Մալաթիա ունէր գերազանցապէս արգաւանդ հող։

Այս պատճառով քաղաքը պահած է իր գոյութիւնը, սակայն փայլուն վիճակ մը չէ ունեցած։

Հայերն ալ այդ անչուք վիճակին մատնուած քաղաքին մէջ իրենք ալ անփառունակ կեանք մը ունեցած են։ Ա. Եաղուպեան (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 2, էջ 9) այնպէս կը թուի թէ համոզուած է որ Մալաթիա ոչ միայն աւերուած էր, այլ եւ բոլորովին անապատի վերածուած եւ անբնակ եղած էր։ Ասոր համար կը գրէ որ «Յոյնք, Հռոմայեցիք, Ասորիք, իսլամանալով կամ ջարդուելով անհետացեր են, իսկ Հայք օսմանեան տիրապետութեան միջոցին, Վանէն, Պիթլիսէն, Սասունէն՝ Մզովկա, Անսուր, Հեքիմխան եւ այլ տեղերէն եկած եւ հաստատուած են Մալաթիա, իրենց հետ բերելով հին Հայոց սովորութիւնները, բարքերը եւ հաւատալիքները։ Մալաթիոյ Հայութիւնը զտարիւն Հայ էր»։

Այս տեսութիւնը արդարացնող հաստատուն փաստեր ես չկրցայ գտնել։ Օսմանեան տիրապետութեան սկիզբը Հայերուն Մալաթիայէն բոլորովին հեռացած ըլլալը եւ քաղաքը անբնակ վայր մը դարձած ըլլալը չի հաստատուիր, բայց հայ նոր գաղթականներու գալուստը թերեւս անհաւանական չէ։

Ա. Եաղուպեան չէ ճշդած թէ ե՛րբ Հայերը լքած են Մալաթիան եւ հեռացած։

Մալաթիան 1316–ին Մոնկոլներու կողմէն երբ գրաւուեցաւ, շատ հաւանական է որ անոնց գործադրած ջարդերով եւ գերեվարութեամբ քաղաքին բնակչութիւնը պակսեցաւ, բայց շատ մը փաստեր կան, որոնք ցոյց կու տան թէ քաղաքը շատ շուտով վերաշինուած է եւ Հայեր վերստին հոն հաստատուած են, եւ ԺԴ. եւ ԺԵ. դարերուն հոն Հայեր կ'ապրէին իրենց հոգեւոր եւ ազգային վարչութեամբ, վանքերով եւ եկեղեցիներով։

Այդ ժամանակամիջոցին նոյնիսկ դրչագրական շարժում մը կը տեսնուի, վասնզի բազմաթիւ հայերէն ձեռագիրներ կը գրուին։

Այսպէս 1500–էն ձեռագիրի մը յիշատակարանը հասած է մեզի, Ս. Փրկիչ վանքին մէջ գրուած, երբ երկիրը պատերազմի դաշտ դարձած էր։

1516–ին Թուրքերու քաղաքին տիրելէն մինչեւ 1544, հազիւ 28 տարուան շրջան մը ձեռագիր մը դրչագրուած չըլլալը կրնայ դիպուածի մը կամ երկիրին վիճակին հետեւանքով ըլլալ, եւ ոչ թէ Հայեր չգտնուելուն։

Նոյնպէս Մալաթիոյ առաջնորդական աթոռին վրայ 1455–էն մինչեւ

1544, 90 *տարի առաջնորդի անուն մը չյիշուիլը չի կրնար փաստ նկատուիլ թէ Հայեր չկային Մալաթիոյ մէջ, վասնզի այդ պարագային* 1544–*էն մինչեւ* 1600, *այնքան արդիւնաւոր գրչագրական դպրոց մը գոյութիւն չէր կրնար առած ըլլալ*:

*Նոյնպէս եթէ* 1516–*ին Մալաթիան բոլորովին աւերուած ըլլար եւ Հայերը հեռացած ըլլային*, 1524–*ին*, *հազիւ ութը տարի ետքը քաղաքին եկեղեցին չէր կրնար կառուցուած ըլլալ եւ անոր փակակալը կամ լուսարարը նահատակուած* (*տես Զամչ*., *Գ*., 516, *Աճառեան*, ***ՆՈՐ ՎԿԱՆԵՐ***, *էջ* 359, *Օրմանեան*, ***ԱԶԳԱՊԱՏՈՒՄ***, *էջ* 2228, *եւ Աճառեան*, ***ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ***, *Բ. հտ*., *էջ* 610):

*Ասով հանդերձ չեմ կրնար պնդել թէ իմ տեսութիւնս բացարձակ ճիշդ է եւ քաղաքը բնաւ ամայացած չէ, օսմանեան տիրապետութեան ըսկիզբը*:

*Նոյնպէս ինծի համար կարելի չեղաւ ոեւէ գրական փաստ գտնել հաստատող թէ Մալաթիա գաղթած են* 1516–*էն ետք Վանէն*, *Պիթլիսէն*, *Սասունէն*, *Մշովկայէն*, *Անսուրէն եւ Հեքիմխանէն Հայեր*, *ինչ որ — ինչպէս ըսի — հաւանական էր*, *սակայն վճռական ըլլալու համար պէտք էր փաստեր գտնուէին*, *ինչ որ չկան*:

*Այս խառնակ շրջանին վրայ դժբախտաբար շատ քիչ բան գիտենք*.

*ԺԶ. դարուն վերջերը այնքան մեծ խռովութիւններ պատահած են Փոքր Ասիոյ մէջ որ խիստ մեծ դժբախտութեան մատնուած են երկրին ամենազգի բնակիչները*, *ինչպէս նաեւ Հայերը*:

*Այս վիճակը իսկական անիշխանութիւնն էր որ երկրին ամէն կողմը տարածուած էր եւ տեսակ մը սովորական կացութիւն եղած էր*, *վասնզի օսմանեան բանակները*, *եւ մանաւանդ զայն կազմող Ենիչէրիները անկարգ տարրեր էին եւ կը կռուէին ոչ մէկ այլ նպատակով բացի կողոպուտէ*:

*Այնպէս որ Թուրքերը երկիրը բնաւ չէին կրցած կազմակերպել եւ մեծ դժգոհութեանց տեղի տուած են*:

*Կեդրոնին իշխանութիւնը արհամարհած էր եւ յաճախ նահանգները ապստամբ եւ կուսակալները՝ ինքնիշխան դարձած էին եւ նոյնիսկ իրարու դէմ պատերազմ մղած էին*:

*Դարանաղցի իր* ***ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ*** *մէջ* (*էջ* 15) 1603–*ի վիճակը նկարագրած է*, *շատ յատկանշական տողերով*, *որոնցմէ կը հասկցուի թէ օսմանեան պետութիւնը որքան կը նեղուէր արտաքին թշնամիներէն*, *նոյնքան եւ աւելի կը նեղուէր ներքին անիշխանութիւններէն*:

*Ան կը պատմէ թէ* «Սուլթան Մուհամմատի անհոգութենէն երեկ Շահ Աբասն Պարսից թագաւորն, բազում աշխարհի բերդուեայք եւ քաղաքուեայք եւ բազում գաւառք ի մէկ տարոյն միջումն զամէնքն էառ՝ վասն անտէրանալ լինելով աշխարհացն... Եւ այս Սուլթան Մուհամմատին թոյլամորթ լինելոյն եւ անփոյթ առնելով աշխարհացն, որ ամենայն իշխանք եւ դատաւորք եւ զօրք

եւ զօրականք եւ բազումք ի յռամիկ զօրացն եւ իշխանականացն նեղեալ ի յանիրաւ զրկանացն եւ յափշտակութեանց ընչիցն եւ իշխանացն նեղեալ յանիրաւ դատաստանէ թագաւորին եւ վազերացն որ կաշառովք տային զիշխանութիւն զաւառապետութեանց եւ աշխարհակալութեանց եւ դատաւորութեանց եւ տակաւին դեռ ի տեղին ոչ էին հասեալ, մանշուլ[1] առնէին եւ զտեղի նորա այլ ումեմն տային:

Յորժամ յետինն գայր, առաջին եկեալն չտայր մտանելոյ եւ նստելոյ ի տեղին եւ երկոքինն մարտնչէին ընդ միմեանս ի վերայ տեղոյն: Եւ զօրաժողով լինէին ի հողագործ ռամկացն ժողովէին եւ մեծ բանակ լինէին...: Եւ եղեն իբրեւ զձկունս մեծամեծք եւ փոքունք որ զմիմեանս կլանեն... եւ զմիմեանս կու սպառէին առանց օտար թշնամեաց, այլ թշնամիք եղեն առ միմեանս եւ առ ազգային իւրեանց եւ այսպէս չարանալով բնաջինջ արարին զամենայն աշխարհն Անատոլու» (ԴԱՐԱՆԱՂՑԻ, էջ 15):

*Այս կռուակալներու իրարու դէմ մղած պատերազմները ինչպէս նաեւ օսմանեան պետութեան մէջ գոյութիւն ունեցող անհնուաճ վայրերու օրինակը թելադրած է շատ մը բռնակալներ ըմբոստանալու կեդրոնական իշխանութեան դէմ եւ անկախ ըլլալու աշխատիլ: Այս ձգտումը եւ փափաքը վերջապէս շատ տարածուած հանգամանք առաւ եւ եկաւ յանգեցաւ մեծ եւ դառնագոյն անիշխանութեան մը, որուն հետեւանօք եղաւ ժամանակ որ Անատոլուն բոլորովին անջատուեցաւ Պոլսոյ կառավարութենէն եւ մեծ մասամբ յաղկահար եւ տապաստ ապստամբներու ձեռքը անցաւ:*

*Այս ապստամբները, որոնք* Ճելալիներ *կը կոչուէին, ծանօթ են օսմանեան պատմութեան մէջ եւ արդէն յիշուած են եւ ներկայացուած նոյնիսկ այս գիրքին մէջ, Մալաթիոյ պատմական անցեալին վրայ խօսուած ատեն:*

*Այդ մեծ ապստամբութեան ամենէն կարեւոր հետեւանքներէն մէկը եղաւ այն մեծ գաղթը, որ Հայաստանէն եւ Փոքր Հայքէն դէպի Կ. Պոլիս եւ Մարմարայի եւրոպական եւ ասիական եզերքները կատարեցին ամբողջ Ասիական Թուրքիոյ բնակիչները անխտիր: Ճելալիներու ամենէն գլխաւոր պետն էր Գարա Եազըճի, որուն զբաղած առաջին վայրերէն մէկն էր Մալաթիա (տես անդ, էջ 293), ուր ան գործադրեց բոլոր այն խժդժութիւնները, որ իրեն սովորական էին:*

*Անոնց անդրադառնալ աւելորդ աշխատանք մը պիտի ըլլար այս տողերը գրողին համար որ Ճելալի ապստամբներու գործած աւերները Հայաստանի եւ Փոքր Ասիոյ մէջ բաւական մանրամասն ներկայացնելու առիթ ունեցած է, օգտուելով երկու ժամանակակից պատմագիրներու տուած բաւական ընդարձակ տեղեկութիւններէն[2]:*

---

(1) *Պաշտօնանկ ընել կ'ուզէ:*

(2) *Ժամանակակից պատմագիրներն են Գրիգոր Դարանաղցի եւ Առաքել Դաւրիժեցի: Իսկ անոնցմէ օգտուելով՝ անոնց արարքները ներկայացուած է այս տողերը գրողը* Պատմութիւն Հայ Կեսարիոյ (*1936*), Պատմութիւն Հայ Եւդոկիոյ (*1952*) *եւ* Պատ-

Հետեւաբար անոնց վրայ պիտի չխօսիմ, մանաւանդ որ ուղղակի Մալաթիոյ հետ կապ չունին, այլ երկիրին ընդհանուր վիճակը կը ներկայացնեն:

Ճելալիներու այդ շահատակութիւններուն եւ խժդժութիւններուն, ինչպէս բոլոր Փոքր Ասիա ընդհանուր կերպով, նոյնպէս նաեւ Մալաթիա մասնաւոր կերպով ենթարկուած է: Իսկ աւելին ըլլալով Մալաթիոյ Հայերը այդ բանակայներէն կրած են ծանր վնասներ, բայց մասնաւորապէս անոնցմէ մէկէն ստացած են բարոյական վիրաւորանք, որուն արժանաւոր հատուցումը՝ մահու պատիժը տուած են:

Ահա անոր պատմութիւնը.—

Ճելալի ապստամբները իրենց աւազակութիւններով երկիրը տկարացուցած էին եւ այս կազմալուծումէն եւ քայքայումէն օգուտ քաղելով Պարսիկները կը փորձէին յարձակիլ օսմանեան կայսրութեան վրայ:

Պետութեան սպառնացող այս վտանգին դէմ ճակատելու համար Ճղալի զադէ Սինան փաշա մեծ ճիգեր կ'ընէ ստուարաթիւ զօրք հաւաքելու, մեծ բանակ մը ունենալու համար իր ձեռքին տակ, որպէսզի Պարսիկները ջախջախէ:

Այս նպատակով Սինան փաշա իր քով հրաւիրեց բոլոր կուսակալները, ցեղապետները, պէյերը եւ առհասարակ այն բոլորը, որոնք զինուորական ոյժ ունէին իրենց ձեռքը: Եւ որովհետեւ զինուորական ամենախոշոր կազմակերպութիւնները Ճելալի հրոսախումբերն էին, ուստի անոնց ալ դիմեց եւ անոնցմէ օգնութիւն խնդրեց:

Այդ ժամանակ անոնց ամենէն նշանաւոր դէմքերէն մէկն էր կատաղի հրոսակապետ Ղարաղաշ, որ յարձակած էր Երզնկայի վրայ եւ առանց կարենալու գրաւել քաղաքը — որ ամրոցներով պաշտպանուած էր — գիւղերը աւերած եւ մեծ չարիք հասուցած էր:

Սինան փաշա, այս ապստամբ հրոսակապետին, ինչպէս ուրիշներուն, խոստացաւ որ եթէ հնազանդէին սուլթանին եւ անոր թշնամիին՝ Պարսից շահին դէմ կռուէին, իրենց ոչ մէկ վնաս պիտի հասցնէր եւ պատերազմէն ետք անոնց իշխանութեան համար հողեր պիտի տրուէին (ԴԱՐԱՆԱՂՑԻ, էջ 42):

Այսպէս, օսմանեան պետութիւնը անձնատուր կ'ըլլար եւ կ'ենթարկուէր պետութիւնը աւերող հրոսակներուն:

Ղարաղաշ առաջիններէն մէկը եղաւ, որ սուլթանին հնազանդեցաւ եւ Սինանի բանակին միացաւ իր զինեալ հետեւորդներով:

Սինան փաշա, կը յուսար որ Ճելալիները պատերազմին մէջ կը ջար—

---

մական Հայաստանի Սահմաններ (1950) գործերուն մէջ:

Հայ պատմագիրները սկսեալ Զամչեանէն, խօսած են Ճելալի շարժումին վրայ: Նշանակելի է ի մէջ այլոց Լէոյի ասոնց համար գրած տողերը, իր Հայոց Պատմութիւն-ին (1946) մէջ (Գ. հատոր, էջ 229 - 236) եւ շատ ուրիշներ, որոնց մէջ ուշագրաւ է Հայկ Պէրպէրեանի գրած մէկ ուսումնասիրութիւնը «Պայքար»ի 1948ի Փետրուարի թիւերուն մէջ:

զուէլն եւ օսմանեան պետութիւնը կ՚ապատէր անոնց պատուհասէն:

Դժբախտաբար իր յոյսը չիրականացաւ: Սուֆեանի (Դաւրէժի մօտ-կայ) ճակատամարտին մէջ Պարսիկները յաղթեցին: Սինան փաշա, փախաւ Վան, Պարսիկներու ձեռքը ձգելով բանակին հարստութիւնները եւ դանձերը:

Ճելալիներուն պետերէն միայն մէկ քանին սպաննուած էին պատերազմին մէջ, բայց Ղարաղաշ փրկուած էր եւ կը պահանջէր Փաշայէն որ իր խոստումը գործադրէր իրեն տալով իշխանութիւն: Սինան փաշա անոր տուաւ փաշայութեան աստիճան եւ կառավարիչ նշանակեց Մելիտինէի (1604):

Այսպէս, նշանաւոր ճելալի աւազակ մը կամ հրոսապետ մը, պաշտօնապէս Մալաթիոյ կառավարիչ կը դառնար իբր Բ. Դրան ներկայացուցիչը եւ իր աւազակութիւնը կը նուիրագործէր: Ղարաղաշը, զոր Սինան փաշա Մալաթիոյ կառավարիչ դարձուցած էր, որպէսզի դէթ այդպէս հրաժարէր աւազակութեան կամ հրոսապետութեան արհեստէն, անփոփոխ մնաց եւ շարունակեց կեղեքել իրեն իշխանութեան վստահուած բնակչութիւնը, այս անգամ, անշուշտ, աւելի բացարձակ յանդուգն կերպով, մինչեւ որ սպաննուեցաւ իր զոհերէն մէկուն ձեռքով:

Դարանաղցի կը պատմէ թէ «յորժամ Ջղալի որդին փաշայութիւն ետուր Ղարաղաշին եւ ուղարկեց ի Մելտենի, նա ոչ զգօնացաւ եւ ոչ եթող զսովորական չար գործս իւր, այլ առաւել ի գործ ածէին զանօրէնութիւնս իւրեանց յայնժամ քան որ յառաջն էին: Այնչափ չարացաւ ինքն, որոց գլխաւորաց քաղաքին որ խռովէր, բերել տայր զկանայս նոցա եւ իւր զօրացն խայտառակել տայր ի մէջ հրապարակին, որպէս Իրզմիտ արքայն Պարսից արար Փառանձեմայ, կնոջն Արշակայ թագաւորին Հայոց, նմանապէս եւ այս չարս առնէր ուսանելով ի սատանայէ:

Եւ յետ այսորիկ այլ մեծագոյն չարիս արար, որ տեղացի լաւ Պարոն կացեր, որ ամենայն աշխարհին շնորհակալ էին յիւրմէն, նա մօտ աւուրքն մեռեալ էր, զնորա պատանի որդեակն յափշտակեաց եւ առ վասն պղծութեան աղագաւ, որպէս սովորութիւն է Տանկաց որ զգործս կանանցն յարանցն խնդրել, եւ չար թուաց զգործն այն յաչս մեծամեծաց Տանկացն քաղաքացւոց: Եւ տղան այլ խապար դրկելով յառաջագոյն առ արանցն պատուականաց թէ՝ ձեզ անո՞ւն է որ ես մեծ իշխանի որդի լինիմ եւ սա մէկ Ջալալի զիս ի տեղի կնոջ ըմբռնէ, ձեզ անո՞ւն է, կամ իմ հօր, մէկ ճար ու հնար այն էր, զիս յայս Ջալալուս ազատէր: Եւ մեծունայքն խրատեցին զպարոնորդին թէ՝ սպան զնա ի գիշերի յանկողնի եւ ազատեսցիս դու եւ ամենայն աշխարհն: Եւ ըստ խրատու նոցա սպան զնա յանկողնի: Եւ յորժամ լսեցին չար զօրքն, ցրուեցան եւ կորեան եւ ամենեքեան ազատեցան աշխարհաւ եւ այսպէս բարձաւ չարն յերկրէ» (ԳՐ. ԴԱՐԱՆԱՂՑԻ, էջ 47—8):

Պէտք է նկատել թէ Ղարաղաշն իր տեսակին մէջ բացառիկ դէմք մը չէր եւ իրեն պէս շատեր կային վայրագ բռնակալներ, որոնք անասնական

պղծութիւններու մէջ կը յղփանային, եւ ապականութեան մէջ կ'անցընէին իրենց ժամանակը:

Բայաններու գեղեցիկ կիները եւ աղջիկները, նոյնպէս գեղեցիկ տղաքը բանակայններու քմահաճոյքին ենթարկուած էին եւ յաճախ կը կորսուէին իրենց ծնողքներէն, պաղանային կիրքերու գոհ ըլլալու համար:

Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան կը գրէ թէ «Յաչն թագաւորաց եթէ դիպեցի մանուկ մի պատկերով զի հաճեցի ի գեղ կերպարանացն, հնար ոչ գոյ այնուհետեւ որ պիտի առնէ զմանուկն, կամ թէ լիցի կարճահասակ՝ որում *ճուճէ* անեն կամ համր, որում *տիլսիզ* անեն կամ չէզոֆ որ զմօրուս եւ զմազունս չունենայ, որում *հատըմ* անեն, կամ լինի կաֆաւող եւ ձայնեղ զուսան կամ եթէ իցէ անուանի բժիշկ յարհեստ ճարտար կամ վերծանող հոչակեալ եթէ ի հարկաւոր պատճառէ երթայ առաջի թագաւորին, պիտի որ զուրացութեան թեֆլիփ անեն» (*տես Լէօ*, ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, *Գ. հտ., էջ* 127):

*Նշանակելի է Ղարաղաչի պէս աւազակի մը եւ գազանի մը Մալաթիոյ մէջ գործադրած այս պղծութիւնէն ոչ շատ ժամանակ ետք, պետութեան գլուխ եւ ժողովուրդին կեանքին, պատիւին եւ ինչքին պաշտպանը ըլլալու կոչուած եւ եթէ ոչ Աստուծոյ փոխանորդը, գէթ անոր ստուերը ըլլալու յաւակնութիւնը ունեցող օսմանեան պետերէն մէկը՝ Սուլթան Մուրատ Դ.* (1622—1639) *նմանօրինակ խայտառակ եւ սրիկայական արարք մը կատարած է, ինչպէս Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան կը հաստատէ:*

*Անիկա կը գրէ թէ* «Զայլ թագաւորաց ոչ եմֆ լուեալ[1], այլ Սուլթան Մուրատն որ զհայազգի մանուկ մի առեալ առ ինքն՝ մուսահիպ[2] արար: Եւ ի Մալաթիոյ մանուկն, որ յետոյ վէզիր եղեւ Սիւլէյման փաշա[3]» (*տես Լէօ*, ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, *Գ., էջ* 127):

*Այս Սիւլէյման փաշան[4], որ օսմանեան պետութեան մէջ կարեւոր դեր մը կատարած է, կը կոչուէր «Էրմէնի»* (Հայ): *Մանկաժողովով յափշտակուած տղաներէն մէկը ըլլալ կը թուի[5]:*

*Այս անիրաւ, ապականեալ, մարդկային արժանապատուութիւնը վիրաւորող մթնոլորտը, ուր Մալաթիոյ Հայերը կ'ապրէին, սխալ է մտածել թէ գիւղացիական երեւոյթ մըն էր այդ տեղը պատահած, այլ պէտք է գիտնալ*

---

(1) *Եթէ Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի ըսած չըլլալը հաւատալիք մըն է որ անկէ առաջ չէր պատահած, ասիկա փաստ մը կրնար համարուիլ թէ Օսմ. Սուլթանները եւ իրենց արքունիքը հետզհետէ աւելի ապականած եւ անբարոյացած էին:*

(2) *Թուրքերէն* խօսակից, մտերիմ *եւ* կենակից *կը նշանակէ:*

(3) «Օրագրութիւն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի», *որ տպուեցաւ 1939-ին Երուսաղէմ, ունի 1655 Օգոստոս 9 թուականին տակ սա տողերը.* «Մուրատ փաշան փոխեցին եւ ետ զմօհրն վէզիրութեան Սիւլէյման փաշային Մալաթիացոյ՝ որդի հայոյ»:

(4) *Մալաթիացի Էրմէնի Սիւլէյման փաշա ծնած է 1605ին եւ մեռած է 1690ին: Եպարքոս եղած է 1655—1656-ին:*

(5) *Իր կենսագրութիւնը պիտի գրուի Մալաթիացի հայածին երեւելիներու բաժինին մէջ:*

թէ այս լղիրչ եւ զարշելի կեանքը, զոր կը վարէին Թուրք իշխանաւորները իրենց պալատներուն եւ ապարանքներուն մէջ՝ անարգելով եւ ոտնակոխելով Ռայաներուն զգացումները, ընդհանուր էր, երկիրին մէկ ծայրէն միւսը, եւ բոլոր ժամանակներու մէջ անփոփոխ ու տեւական:

Երկրին ոեւէ մէկ մասը առաւել կամ նուազ կը նմանէր ուրիշ մէկ մասին, վասնզի օսմանեան պետութիւնը, իբր կառավարութիւն իր վարչաձեւով, իր կազմակերպութիւնով, եւ իր ընտրած կառավարական մեթոտներով, Թրքական բարբարոսութեան մարմնացումը եղող այն պետութիւնն է, որ լաւ ծանօթ է մանաւորապէս Հայերուս, եւ զայն ներկայացնելու անգամ մըն ալ պէտք չկայ:

Բոլոր Հայերը անոր վրայ գաղափար ունին, ինչպէս նաեւ բոլոր ոչ-իսլամ եւ նոյնիսկ իսլամ հպատակներէն անոնք, որ նստակեաց եւ խաղաղ բնակչութիւնը կը կազմեն երկիրին, ինչպէս Արաբները, Ալպանացիները եւ Պոսնացիները, որոնք Թուրքերէն նուաճուած էին: Ոչ մէկ տարակոյս թէ անտանելի եւ անհանդուրժելի էր կեանքը օսմանեան պետութեան մէջ, ուր կը հիծէին եւ կը քայքայուէին բոլոր տիրապետուած ազգերը:

Հոն ստեղծուած էին այնպիսի պայմաններ, որոնց հանդուրժելու համար բացառիկ ճիգեր պէտք էր կատարուէին:

Օսմանեան պետութեան բոլոր բնակիչները ընդհանրապէս, իսկ ոչ-իսլամ հպատակները մանաւորապէս, ապահովութիւն չունէին իրենց կեանքին համար, զոր մէկ օրէն միւսը կրնային կորսնցնել Սուլթանին կամ իր վէզիրին եւ կամ մէկ կուսակալին եւ նոյնիսկ Ենիչէրիի մը քմահաճոյքով:

Նոյնպէս ստացուածքի եւ ինչքի ապահովութիւն գոյութիւն չունէր երկրին մէջ, ուր քմահաճ հրամաններով մարդիկ մէկ օրէն միւսը կրնային ընչազուրկ եւ մուրացիկ դառնալ առանց դատաստանի եւ օրէնքի:

Արդէն գոյութիւն չունէր օրէնքին առջեւ հաւասարութիւն, եւ երկու տարբեր օրէնքներ կային երկիրին մէջ, մէկը՝ իսլամներուն յատուկ եւ միւսը՝ Ռայաներուն: Օրէնքներէն մէկ մասը հիմնուած էր Շէրաիաթի տրամադրութեանց վրայ, որոնք օրէնք ըլլալէ աւելի պետական հնարքներ (ՀԻԻՖ-ՄԵԹԸ ՀԻԻՖԻԻՄԷՏ)էին եւ այնպիսի ձեւով մը խմբագրուած էին որ նպատակ ունէին այնպէս մը ընել որ իր ինչքերը ապահովելու համար Ռայան իսլամութիւնը ընդունէր:

Մանաւորապէս ոչ-իսլամի մը հարստութեան միայն իսլամացած ազգականները ժառանգելու իրաւունք ունենալնին աղիտալի դեր մը կատարած է եւ ոչ-իսլամները ընչազուրկ դարձնելու նպաստած է:

Յիշեցնենք նաեւ մանկաժողովները (Տէվշիրմէ), Ենիչէրիութիւնը եւ բռնի իսլամացման դէպքերը, որոնց նպատակակէտը շատ որոշ էր:

Հակառակ ջանքերուն, զորս կը կատարէին Հայերը ոեւէ կերպով Թուրքերու վայրագութիւնը մեղմելու համար, կոյր մոլեռանդութիւնը կը ճնշէր զիրենք:

Հայերը, իբր Ռայա ձայն չէին կրնար ունենալ երկիրին վարչութեան

մէջ, եւ դատապարտուած էին ապրիլ արհաւիրքի մէջ:

Գրեթէ ոչ մէկ ազատութիւն կը վայելէին, տուրքերու ծանրութեան տակ կը հեծէին, ահռելի կերպով կը կեղեքուէին եւ կը հարստահարուէին: Գոնէ իրենց վաստակին տէ՛ր ըլլային: Ան ալ չէին, քանի որ ամէն վայրկեան կառավարութիւնը կամ տեղական իսլամ բռնակալը կրնար գրաւել իր հարստութիւնը:

Աւելցուցէք այս անբնական պայմաններուն վրայ Թուրք եւ պարսիկ երկարատեւ կռիւները, որոնք կը քամէին երկիրը եւ զայն կ՚աղքատացնէին. այնպէս որ ԺԵ. եւ ԺԶ. դարերուն, ինչպէս կը վկայեն ուղեւորներ, Փոքր Ասիոյ բնակչութիւնը չափազանց պակսած էր, դաշտերը անմշակ մնացած էին եւ ամէն կողմ կը տեսնուէին աւերուած գիւղեր, խոպան դարձած այգիներ եւ արտեր (ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, 1943, Երեւան, էջ 239):

ԺԶ. դարուն վերջին տասնամեակի սկսող Ճելալիներու ապստամբութիւնները բոլորովին խանգարեցին ԺԷ. դարուն առաջին կիսուն բնակչութեան թուական համեմատութիւնը, վասնզի այս տագնապին ատեն ստուար թիւով բնակիչներ, իսլամ եւ քրիստոնեայ, դիմեցին պետութեան այն մասերը, որ համեմատաբար աւելի ապահով էին:

Ճելալիներու յարուցած այս համատարած խառնակութեան միջոցին, Հայկական Բարձրաւանդակէն գունդագունդ արեւմուտք դիմող ամենազգի բնակիչները, որոնք պետութեան կեդրոնը եւ անոր մօտերը կ՚ապաստանէին, ստուար մեծամասնութեամբ հաւանօրէն Մալաթիայէն անցած են, վասնզի Եփրատի ամենէն բանուկ անցքը հոն էր: Ապահովաբար անոնց խառնուած են Մալաթիացիներ ալ, եւ անոնք ալ դիմած են դէպի արեւմուտք, եւ այսպէս պակսած է Մալաթիոյ բնակչութիւնը, ինչպէս կը հաստատուի Սիմէոն Լեհացի Դպիրին կողմէ:

Այս Դպիրը, որ Ճելալիներու խռովութիւններէն քիչ ետքը անցած է Մալաթիայէն եւ հոն երեք շաբաթ մնացած է, իր «ՈՒՂԵԳՐՈՒԹԵԱՆ» մէջ (էջ 190) կ՚ըսէ թէ Մալաթիոյ մէջ գտած է միայն 100 տուն եւ Աղպունի գիւղին մէջ 30 տուն Հայ, ինչ որ ապացոյց մըն է թէ Ճելալիները Մալաթիոյ քաղաքին մէջ չարիք հասուցած էին եւ զայն ամայեցուցած:

Բայց չափազանց զարմանալի է որ Սիմէոն Դպիրէն ոչ շատ ետքը Թավեռնիէ (1605—1689), որ 1632—1668 երեսուն տարուան մէջ վեց անգամ արեւելք շրջած է, կը գրէ թէ «Թոգատէն մինչեւ Թաւրէժ՝ երկիրը գրեթէ միմիայն քրիստոնեաներէ բնակուած է, եւ ըստ որում այս ընդարձակ տարածութիւնը նախնեաց Հայաստանի նահանգ կոչուածն էր, պէտք չէ զարմանալ եթէ քաղաքներուն եւ գիւղերուն մէջ մէկ մահմետականի փոխարէն յիսուն Հայ կը գտնուի» **(Les six voyages de Jean Baptiste Tavernier en Turquie et Perse et aux Indes**, Paris, 1713, I, p. 47—8):

Ուրեմն բնակչութիւնը եթէ պակսած իսկ էր, դարձեալ Հայերը Հայաս-

տանի մէջ ունէին մեծամասնութիւն, եւ Փոքր Հայքի մէջ պէտք էր որ մեծ թիւ մը ունենային:

Սակայն Մալաթիոյ չար բախտէն այնպէս կը թուի թէ այս քաղաքը թերեւս Ղարաղաշի պէս անբարոյ աւազակի մը իշխանութեան ենթարկուած ըլլալով Հայերը բացառաբար շատ աւելի զանգուածային կերպով հեռացած են եւ անոնց տեղը լեցուած են Թուրքեր, Թիւրքմէններ եւ մանաւանդ Քիւրտեր, որոնք եկուորներ ըլլալ կը թուին այս շրջանակին մէջ:

Այս կիսավայրենի ժողովուրդները ընդհանրապէս աւազակութեամբ եւ աւարառութեամբ եւ Բայաճ կեղեքելով կը դրացէին, օգտուելով պետութեան անկարգ, անկանոն եւ անկազմակերպ վիճակէն:

Հայերը իբր օսմանեան պետութեան հպատակներէն մէկը՝ չունէին հանգարտ եւ անդորր կեանք մը, որպէսզի կարենային իրենց պարկեշտ աշխատանքով եւ ճակտին քրտինքով խաղաղ ապրիլ: Հետեւաբար միշտ գաղթողներ եղած են իրենցմէ՝ ազատելու համար օսմանեան պետութեան մէջ տիրող անտանելի վիճակէն:

Պէտք չէ անտեսել նաեւ սա իրողութիւնը թէ խստութիւններու սաստկացումը եւ մեղմացումը, որոնք պարբերաբար կը յաջորդէին իրարու, իրենց ազդեցութիւնը ունեցած են բնակչութեան թիւին վրայ, վասնզի անկարգութեան, անիշխանութեան եւ բռնապետներու կեղեքումներու շրջաններուն շատեր իրենց ծննդավայրը ձգելով հեռացած են, յաճախ նիւթապէս փճացած: Արտաքին եւ ներքին պատերազմներու հետեւանքով ստեղծուած անապահովութիւնը նոյնիսկ արգելք էր երկրագործական աշխատութիւններու եւ կը վնասէր առեւտրական կեանքի բարգաւաճման:

Քրիստոնեաները ենթարկուած էին բազմատեսակ չարիքներու, զորս մի առ մի ներկայացնելու պէտք չկայ կարծեմ, վասնզի շատ ծանօթ են եւ ամենուն յայտնի:

Այդ չարիքները ընդհանուր կերպով երկու տեսակի կը բաժնուէին.—

Ա. Անոնք որ Թուրք բարբարոս ժողովուրդին իսլամական կրօնքով գրգռուած արիւնարբու նկարագրին հետեւանքներն էին,

Բ. Անոնք որ օսմանեան պետութեան կառավարութեան ընդգրկած ուղղութեանը եւ պետական քաղաքականութեան հետեւանքներն էին: Թուրքի ժողովուրդին, իբր տիրող ցեղին եւ իբր Մուսլիման առանձնաշնորհեալի յատկութիւնները կրնային չէզոքացուիլ, եթէ չքաջալերուէին կառավարութենէ, որ Թուրքերու անհատաբար գործադրած բոլոր ապօրէն կեղեքումներուն եւ չարիքներուն մէջ պետութեան քաղաքականութեան նպաստ մը կը տեսնէր եւ ատոր համար աչք կը գոցէր Թուրքերու գործադրած կեղեքումներուն:

Գալով կառավարութեան գործադրած չարիքներուն՝ անոնք, հետեւանքը՝ այն մեծ դժուարութիւններուն, որոնց մատնուած էին Թուրք սուլ-

*թանները, էին իրենց սակաւաթիւ բանակներով կառավարել պարտաւորուած ըլլալուն ընդարձակ երկիրներ, որոնց բնիկ բնակիչները Թուրք չէին:*

*Հետեւաբար օսմանեան սուլթաններու համար ներքին քաղաքականութեան գլխաւոր հարցը թիւի խնդիրն էր եւ իրենց համար ցանկալի նպատակէտ մըն էր իրենց հպատակներուն ամբողջական թրքացումը իսլամացումով:*

*Որչափ ատեն որ օսմանեան սուլթանները Թուրք աննշան փոքրամասնութեան մը կը կրթնէին, քրիստոնեաները սիրաշահող քաղաքականութեան մը հետեւած են եւ անուղղակի միջոցներով լուծել աշխատած են թիւի խնդիրը, ստեղծելով այնպիսի պայմաններ որ ոչ-իսլամները առաւելութիւններ եւ անհատական հանգիստ ունենալու համար ինքնայօժար իսլամանան կամ թրքանան եւ խառնուին պետական ազգին մէջ, որ իր սկզբնական օրերուն հազիւ 50·000 հոգիէ կը բաղկանար: Այս հազիւ աշիրէթ մը կազմող թիւը արագ աճեցաւ՝ շնորհիւ կամաւոր կամ բռնի իսլամացումներու:*

*Հպատակներէն շատեր իսլամանալը փրկութիւն նկատեցին, վասնզի օսմանեան պետութիւնը ստեղծած էր այնպիսի դժնդակ պայմաններ որ շատեր ուրիշ ելք հնար չեն գտած բացի իսլամացումէն:*

*Այս դժնդակ պայմանները ստեղծելու միջոցները, որոնք կիրարկուած են անհանդուրժելի դարձնելու համար ոչ-իսլամին կեանքը օսմանեան պետութեան մէջ, որպէսզի անիկա հարկադրուի իսլամանալ կամ հեռանալ երկրէն, բազմաթիւ եւ այլազան էին եւ կը կազմէին Թուրքիոյ վարիչներուն համար պետական անփոփոխ ծրագիր մը, որուն իրագործման լռելեայն եւ առանց աղմուկի աշխատիլ նուիրական աւանդութիւն մը եղած է Թուրք կառավարութեան պաշտօնատարներուն համար:*

*Այս մեթոտիկ աշխատանքը, որ դասական ձեւ մը առած էր երկիրին մէջ, Մալաթիոյ մէջ ալ գործադրուած է անխուսափելի կերպով, վասնզի, ինչպէս յայտնի է, այս աւանդական քաղաքականութիւնը օսմանեան պետութիւնը հետապնդած է՝ որքան ատեն որ կրցած է առիթ գտնել:*

*Վերջապէս յաջողեցաւ լիովին իրագործել 1914—1918-ի առաջին Համաշխարհային Պատերազմին, առանց ոեւէ վերապահութեան գործադրելով մասնաւորապէս Հայերու բնաջնջման ծրագիրը, վասնզի արգիլող ոյժ մը չէր: Ընդհակառակը անիկա քաջալերուեցաւ եւ զօրավիգ գտաւ գերման կայսրութենէն, որ իր քաղաքական-տնտեսական շահերուն նպաստաւոր կը համարէր Հայերու բնաջնջումը:*

*Այս աւանդական վաղեմի քաղաքականութիւնը թերեւս տակաւին կը գործադրուի այն խլեակներուն դէմ, որոնք Մալաթիոյ մէջ «իրենց հոգի տուած գաղտուկ կ'ապրին», ինչպէս նկարագեղ բացատրութեամբ մը կ'ըսէ ժողովուրդը:*

*Մօտաւորապէս հինգ-վեց հարիւր տարիներէ ի վեր ոչ-իսլամները բնաջնջելու համար կիրարկուած միջոցներուն ամենէն դառնը հարկատուութիւն-*

ներն էին, որոնք օրէնքի անունով կեղեքումներ էին եւ կողոպուտներ՝ հպատակները աղքատ եւ թշուառ դարձնելու համար:

Իսկ իբր տուրք օրինականացուած ամենէն դժոխային եւ անմարդկային գազանութիւնը մանկաժողովն էր, զոր իբր տուրք քրիստոնեաներու մանուկները յափշտակելով կը գործադրէին Թուրքերը, տեսակ մը անճիտումի ենթարկելով երկրին քրիստոնեայ բնակչութիւնը, իրենց մայրերու գիրկէն խլելով եւ իսլամացնելով քրիստոնեայ մանուկները:

Այս ձեւով հաւաքուած տղաքները կը սնուցանէին Ենիչէրիներու թիւը՝ որքան զինուորական ոյժը զօրացնելու, նոյնքան ալ երկիրը իսլամացնելու նպատակով: Այս սոսկալի հարկատուութիւնը մասնաւորապէս ԺԶ. դարուն շատ խստութեամբ գործադրուած է սուլթան Սելիմ Եաւուզի (1512—1520) եւ Սիւլէյման Քանունիի (1520—1566) ժամանակ:

Այս անմարդկային հարկատուութեան համար Թադէոս Վրդ. Սեբաստացի ունի ոտանաւոր ողբ մը՝ իր ականատես եղած մէկ մանկաժողովին առթիւ, իսկ Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան՝ իր ձեռագիրներուն մէջ յիշատակութիւններ, որոնք կը մնան Վենետիկի վանքը (հմմտ. Լէօ, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ, Գ. հտ., էջ 127):

Այս առթիւ ձեռներէց եկեղեցական մը Մաղաքիա Վրդ. Դերջանցի դիմած է Կ. Պոլիս եւ աղերսագիր մը ներկայացուցած է սուլթանին եւ կրցած է 1545-ին հրաման ձեռք բերել վերջ տալու այս վայրագ հարկահաւաքութեան՝ գէթ Դերջանի եւ Բաբերդի մէջ, բայց հակառակ ատոր մի քանի անգամ եւս գործադրուած է (Չամչեան, Գ., 513 եւ Լէօ, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ, Գ., 122) եւ բաւական ժամանակ վերջը ընդհանուր կերպով դադրած է (Օրմանեան, ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 2236—8):

Միւս հարկերու տեսակները եւ անոնց քանակները անհամեմատ եւ չափազանց ծանր էին եւ այնքան բազմատեսակ (տես Լէօ, ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Գ. հատոր, էջ 90—7 եւ Ա. Ալպոյաճեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 636—8 եւ Մ. Զուլալեան, 16-ՐԴ ԴԱՐՈՒՄ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՏԻՐՈՂ ԹՈՒՐՔԱԿԱՆ ՀԱՐԿԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԸ, Հայկական ՍՍՌ գիտութիւնների Ակադեմիայի տեղեկագիր, 1952, թիւ 2, էջ 39—53, խնամեալ աշխատութիւն), որոնց չէին կրնար տոկալ քրիստոնեաները:

Այս էր օսմանեան պետութեան սկզբնական օրէնքն մինչեւ ԺԷ. դար իբրու կացութիւնը այս անկազմակերպ կառավարութեան մէջ, ուր հպատակները կ՚ապրէին զրկանքներով, յայտնի խտրականութեամբ, տեսակ-տեսակ հարստահարութիւններու եւ անարդարութիւններու ենթակայ:

Հայերը, որ օսմանեան պետութեան Ասիական նահանգներուն մէջ ամենէն կարեւոր տարրը կը ներկայացնէին, մօտաւորապէս վեց դար այս անհանդուրժելի մթնոլորտին մէջ տուայտած են, ապրելէ աւելի քաշքշուելով եւ գոյութիւնը պահելու համար միջոցներ հնարելով, քանի որ իրենց անկարելի էր զէնքով ինքնապաշտպանութեան դիմել: Այս պատճառաւ անոնք ա-

լի յաճախ շփում ունէր տիրողներուն հետ — մէջ տարածուեցան բարոյական տկարութիւններ, քծնումներ, շողոքորթութիւններ, ստախօսութիւններ, մատնութիւններ:

Յաճախ այս միջոցներով քրիստոնեաները կը յաջողէին ոչ միայն իրենց գոյութիւնը պահպանել, այլ նաեւ ազդեցիկ դիրք ստեղծել իրենց կրօնակիցներուն մէջ: Այսպէս երեւան եկան քրիստոնեայ իշխանաւորներ, Ջէլէպի, Ամիրա եւ այլ տիտղոսներով, որոնք առաջացած էին կաշառքով, վաշխառութեամբ եւ այլ միջոցներով:

Այս մարդիկը երբեմն ազդեցիկ պաշտօնեաներու բարեկամութիւնը շահելով կը կարգադրէին քրիստոնեայ համայնքին գործերը: Անոնց գլխաւոր ոյժը դրամն էր, որով իրենց ստրուկ կը դարձնէին գաւառներու մէջ Վալիները (կուսակալները) եւ կեդրոնին մէջ՝ Վեզիրները (նախարարները)՝ անոնց փոխառութիւններ ընելով եւ այս կերպով ազդեցութիւն ձեռք բերելով: Այսպէս անձնական յարաբերութիւններով այդ բարբարոս ժամանակներու մէջ, հնարիմացութիւններով, դրամական զոհողութիւններով եւ այլազան վարպետութիւններով ազգը ապրեցուցած են եւ անոր ապահոված՝ կարելի եղածին չափ նիւթական բարօրութիւն տրուած պայմաններուն մէջ:

Այդ հինները իրենց նուաստացումին մէջ մեծ են, վասնզի անոնք գէշ-աղէկ ազգը ապրեցուցած են եւ չարիքը որքան կարելի է չափաւորած են:

Իբր սեղանաւորներ կուսակալներու, խորհրդականի դիրք ձեռք բերած են եւ շատ անգամ իբր պարտական անոնց նկուն վիճակը օգտագործած են, որոշ չափով մը մեղմացնելով անոնց խստութիւնները եւ սանձարձակ վայրագութիւնները՝ այնպիսի ժամանակներու մէջ, երբ օսմանեան պետութիւնը ոչ միայն իր հպատակները, այլ եւ բովանդակ Եւրոպան կ'ահաբեկէր եւ Հայերը՝ եթէ խլրտելու ըլլային, իրենց բնաջնջումը անխուսափելի էր:

Այսպէս օսմանեան պետութեան բարբարոս վարչութեան մէջ հինները գիտցած են գտնել modus vivandi մը եւ տեւել եւ տոկալ լաւագոյն օրերու յոյսով, որ բնաւ չեկաւ՝ նորերու յիմար եւ յախուռն արարքներով:

Պէտք է անկեղծ ըլլալ ըսելու համար թէ այդ ազդեցիկ Հայերը, որոնք պետական շրջանակներու մէջ իրենց դրամով կամ հնարիմացութեամբ կրցած էին դիրք մը ձեռք բերել, որոշ չափով մը Հայերու տառապալից կեանքին մէջ մեղմացումներ առաջ կրցած են բերել, մինչեւ որ օսմանեան պետութիւնը օտար ճնշումի տակ, գոնէ «ի ցոյց մարդկան» եւ ակամայ, եւրոպականացման ուղին ընդգրկեց արտաքուստ՝ ներքնապէս պահելով իր հին հայեացքները, եւ շարունակեց իր աւանդական քաղաքականութիւնը:

Հայերուն ոեւէ կերպով ձեռք բերած հեղինակութիւնը ոչ միայն նըպաստ մը եղաւ իրենց գոյութիւնը պահելու, այլ նաեւ այս դժոխային պայմաններուն մէջ պահպանելու իրենց ազգային եւ եկեղեցական վարչութեան առանձնաշնորհը, որ դրամական մեծ զոհողութիւններով ձեռք բերուած է,

նուղիղ միջոցներու ալ դիմեցին իրենց կաշին փրկելու համար: Հետեւաբար ժողովուրդին, մանաւանդ անոր քաղաքներու մէջ ապրող մասին — որ աւե– օգտուելով իսլամ եւ քրիստոնեայ կրօնքներու անհաշտ տարբերութիւններէն:

Մալաթիոյ Հայերն ալ ուրիշ վայրերու Հայերուն պէս ունեցած են այս տեսակ ազդեցիկ հայ անհատներ, որոնք արժեցուցած են ինքզինքնին եւ օգտակար եղած են հայ ազգին եւ հայ անհատներուն, ինչպէս պիտի տեսնուի հայ եւ Թուրք յարաբերութեանց վրայ խօսուած ատեն ստորեւ:

Արդ, հայ եւ Թուրք յարաբերութիւններու պատմութիւնը, որ պատմութիւնն է այն ճիգին, զոր մենք ըրինք կրօնական համայնք մը ըլլալու տեղ քաղաքական գործօն մը ըլլալու համար, նիւթը կը կազմեն ԺԹ. եւ Ի. դարերու Հայոց պատմութեան, ուր անճարակ եւ անփորձ մարդոց ղեկավարութեան տակ քաղաքականութիւն խաղաց ազգը եւ չարաչար պարտուեցաւ, վասնզի դժբախտաբար ցնորամիտ մարդիկ, ինչպէս չահախնդիր խաչագողներ, որոնք յեղափոխութեան անունը լփրճեցին՝ դայն խանութի վերածելով եւ գործի վրայ երեւալու համար անխորհուրդ ցուցարարութիւններ ընելով: Տեսանք անոնք թէ ո՛ւր հասցուցին այս կենսունակ ու պատուական ժողովուրդը, որ թէ՛ իր դարաւոր հայրենիքէն եւ թէ՛ իր հարստութենէն զրկուեցաւ եւ կարմիր ջարդով անճիտուեցաւ եւ այսօր սպիտակ ջարդով ամէն օր իր գոյութենէն շատ բաներ կը կորսնցնէ ապազգայնացման ուղիներուն վրայ, հեռաւոր օտար հորիզոններու տակ:

Հայ քաղաքական այս ձախող փորձարկութեան Մալաթիոյ բաժինը իբր քաղաքական կեանք պիտի տեսնուի ստորեւ, իր ողբալի պատկերով եւ կարգ մը սփիւռներու անճպարար արարքներով:





# Դ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻԱ ԵՒ ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

## Ա.

## ՄԱԼԱԹԻԱ ՔԱՂԱՔԸ

### Ա. — ՔԱՂԱՔԻՆ ՎԱՅՐԸ ԵՒ ԴԻՐՔԸ

*Մալաթիա քաղաքը կը գտնուի հիւսիսային լայնութեան 38° 32–ին եւ Կրինուիչէն դէպի արեւելք 39° միջօրէականի վրայ, ծովէն 2852 ոտք բարձր դաշտի մը մէջ, որ կը տարածուէր քաղաքի շուրջը՝ 60 մղոն տրամագծով:*

*Քաղաքը հաստատուած է Եփրատի աջակողմը՝ չորս ժամ միայն հեռու այդ գետէն եւ հինգ ժամ հեռու Մելաս (Թոխմա–Սու) գետէն:*

*Քաղաքին հարաւակողմը կան լեռներ, իսկ հիւսիսակողմը դէպի գետ, դաշտային է, նախ զառիթափ.* «Իսկ գետաճորը լայն է, ուր կ'իջնէ գետը գալով արեւմտեան բարձունքներէն, որ կ'անուանուին Մեծ Իրան եւ Հազարացուլ, եւ իր մէջն ամփոփելով հիւսիսէն եւ հարաւէն իջած վտակները, կը հոսի նախ բուռն սաստկութեամբ եւ ապա հեզասահ կը հասնի եւ կը թափի Եփրատ» (*Գերպ. Ալեքսանդրեան*, *ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ*, *էջ* 400):

*Աշխարհագրական տեսակէտով, ունի բնական ամրոցի մը բոլոր առաւելութիւնները, ինչպէս կը շեշտէ Գէորգ Մելիտինեցի* (*ՆԱԽՃԻՐՆԵՐ*, *էջ* 13) *եւ կը յայտնէ թէ* «Ճիշդ է որ մասնաւորապէս քաղաքին բնակութեան վայրը դաշտային է, բայց երբ դիտողը քիչ մը իր տեսողութեան սահմանը ընդլայնէ, դիւրութեամբ պիտի տեսնէ նմանութիւնը այն պարտէզին հետ, որ իր մըշակելի հողին, ծառերուն եւ ծաղիկներուն ետին ունի հաստ ու ամուր ցանկապատ՝ իբրեւ վահան իր պաշտպանութեան՝ բնութեան եւ մարդկութեան աւերիչ տարրերուն դէմ: Երեւակայեցէք միջին հաշուով ութը ժամ (ոտքով) երկայնութեամբ եւ լայնութեամբ տարածութիւն մը, օժտուած արգասաբեր հողով, ինքնաբուխ ջուրի առատ հոսանքներով, բարձրաբերձ ու սաղարթախիտ ծառաստաններով, շրջապատուած երեք կողմերէն երկնասլաց լեռներով ու մէկ

կողմէն ջուրով, եւ դուք կ'ունենաք Մալաթիոյ ամբողջական պատկերը: Անճիշդ է ու սխալ այն կարծիքը, թէ Մալաթիան դաշտային քաղաք է, նոյնպէս դոյզն քննադատութեան չի դիմանար այն վարկածը, որով կը պատճառաբանեն *«Եթէ Մալաթիա լեռնային քաղաք է, օժտուած բնական ամրութիւններով, ապա ինչո՞ւ կառուցուած են վարի քաղաքի պարիսպները»*: Նախ, եթէ Մալաթիա լինէր առաւելապէս դաշտային քաղաք, ապա բնականօրէն չէր կրնար ունենալ ինքնաբուխ ջուրերու առատ երակներ, որ իր ամբողջ տարածութիւնը կ'ակօսեն, պարգեւելով կեանք ու կենդանութիւն:

Յետոյ ի՞նչ անուն տալ Պէկ Տաղի, Աղճատաղի եւ այլ լեռնաշղթաներու գոյութեան, որոնք օձային գալարումներով իրարու շղթայուած, մշտարթուն պահակներու պէս ցցուած են քաղաքի գլխուն վերեւ: Ճիշդ է որ Մալաթիան ունի դաշտային հսկայ տարածութիւն, բայց ճիշդ հող է արդէն անոր բնական առաւելութիւնը, որուն վրայ յենուած՝ Ռուբէն Որբերեան արդարացիօրէն կը մականուանէ զայն ԿԱՆԱՉԻ ԱԽԱՉԱՆ, եւ հող է նոյն թիւրիմացութեան աղբիւրը որ շատեր կորսուելով անոր անծայրածիր դաշտերուն եւ սաղարթախիտ ծառաստաններուն մէջ, կ'անտեսեն հսկայ ու վիթխարի լեռներու գոյութիւնը եւ կը կոչեն զայն դաշտային քաղաք» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 14):

*Պրոֆ. Մկրտիչ Որբերեան ալ կը հաստատէ թէ Մալաթիոյ դաշտը, որ առանց բացառութեան զարդարուած է ցրդիի եւ կաղնիի ընդարձակ անտառներով ու հազարումէկ անուշաբոյր ծաղիկներով, շրջապատուած է լեռներով:*

*Այսպէս, հիւսիսային կողմէն դաշտը կ'եզերեն Սարը Չիչէկի եւ Տերսիմի լեռները, արեւմտեան կողմէն՝ Աղճատաղը, հարաւային կողմէն՝ Պէկտաղը եւ արեւելքէն՝ Խարբերդի դաշտը զատող լեռները:*

*Դաշտին հիւսիսային արեւելեան անկիւնէն Եփրատ գետը կը մտնէ հոն եւ արեւելեան կողմի լեռնաշղթային քղանցքէն կ'իջնէ դէպի հարաւ-արեւելեան անկիւնը:*

*Աղճատաղի մէջտեղէն դէպի արեւելք Եփրատ կը դիմէ Թոխմա-Սու, որ դաշտը երկուքի կը բաժնէ, Տարենտէի եւ Կիւրինի կողմերէն բխելով: Դաշտին հիւսիս-արեւմտեան անկիւնէն հոն կը մտնէ ուրիշ ջուրի ընթացք մը՝ Գուրու-Չայ, որ Թոխմայի բերնին չմօտեցած կը կցուի Եփրատի: Գուրու-Չայ Հեքիմ Խանի քովերէն կը բխի, թէեւ ամառը երբեմն բոլորովին կը ցամքի:*

*Դաշտին հարաւային մասը վայրահակ է դէպի Թոխման, որ բոլոր ջուրերը կ'ընդունի իր մէջը:*

*Հարաւային լեռներէն՝ Թոխմա-Սուի արեւմուտքէն կը միանան յաջորդաբար եւ հաւասար հեռաւորութեամբ, Սուլթան-Սուի, Էյմէնտիկ, Պէյլէր Տէրէսի, Խաթուն Սույու եւ Փունար Պաշի գետակները:*

*Պէյլէր Տէրէսիի եւ Փունար Պաշիի մէջտեղ, ճիշդ լերան քղանցքին վրայ կը գտնուի ներկայ Մալաթիան, շրջապատուած ընդարձակ անտառներով,*

*բարեբեր եւ արգասաբեր հողերով, խնկապէս մեծ քաղաք մը ըլլալու յարմար վայրի մը մէջ, վասնզի մեծ թիւով բնակութիւն պահելու համար ամէն տեսակ յարմարութիւններ կը ներկայացնէր:*

*Բայց Գերպ. Ալեքսանդրեան (**ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ**, էջ 396) կը յայտնէ թէ չորս կողմէն չրջապատուած ըլլալով լեռներով, ամրութիւններ կանգնելու յարմար պայմաններ չէին կրցած գտնել. որով յաջորդաբար ասիական բարբարոս հրոսներու արշաւանքներուն հետեւանքով՝ քաղաքը շատ փայլուն եւ տեւական զարգացում չէ կրցած ունենալ, հակառակ անոր որ երկրին բարեբերութիւնը մեծ նպաստ մը կրնայ բերել քաղաքին. եթէ ոչ տնտեսական գէթ զինուորական տեսակէտով կարեւոր դիրք մը ունի Մալաթիա իբր կամրջագլուխ Եփրատի (Հմմտ. **ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ**, էջ 396):*

*Ըստ Բախտիկեանի (այժմ Ներսէս Վրդ. Բախտիկեան) Մալաթիա, հնագոյն ժամանակներէն մինչեւ մեր օրերը, էր* «Հանգոյց մը ճամբաներու, հին կայսրութիւններու ռազմական ու առեւտրական քառուղիին վրայ» (***ՈՍԿԵԳԵՏԱԿ***, *Գ. հտ., էջ* 413): «Իր այս բացառիկ դիրքին հետեւանքով հանդիսացեր է պատերազմներու կրկէս, զօրագունդերու պահակատեղի»:

«Իր դիրքին վրայ երբ աւելցնենք իր դաշտագետնի պարարտութիւնը, կլիմայական յարմարութիւնը, անհատնում բուսական հարստութիւնը, պատկերը կը դառնայ լրիւ» (*Նոյն*):

*Ինչպէս որ Մալաթիա իբր քաղաք հրաշալի միջավայրի մէջ է՝ կանգնած դաշտի մը մէջ, ուր ամէն կողմը կը պլպլան առուները. բզզացող մեղուները, թռչող թիթեռնիկները եւ պճլտացող միջատները կարծել կու տան այցելուին թէ Եդեմի դրախտը կը մտնէ (Բրոֆ. Մկրտիչ Որբերեան, **ԲԻՒՐԱԿՆ**,* 1900, *էջ* 68):

*Գարեգին Եպիսկոպոս Սրուանձտեանց, որ այցելած է նաեւ Մալաթիա, իր **ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ**-ին մէջ (Ա. հտ., էջ* 297—336) *ընդարձակօրէն խօսած է այս քաղաքին եւ այդ դաշտին վրայ, ուր կը գտնուի ան:*

*Սրուանձտեանց, որ Արաբկիրէն անցած է Մալաթիա, հովիտին սկիզբէն մինչեւ Մալաթիա* 11 *ժամ կը հաշուէ.* «այլ սակայն իւր բազմախուռն ծառոց եւ այգեստանեաց ծաւալը իբրեւ սեւ գիծ մը կ'երեւի:

«Առաւօտ դեռ արեւը չծագած՝ հեծանք: ... Արկաւան գաւառն ենք, քանի մը գիշեր անցնելով հասանք Թէհէր Քէօյ, ուր միւտիր կը նստի ... Ամբողջ չորս ժամ կ'երթանք, ջուր չկայ, գեղի եւ մարդոց երեսը չենք տեսներ, ահագին տարածութիւն մը խոտալից, թռչունք անգամ չեն թռեր, ահոտ եւ սարսափոտ վայրեր. շարունակ կը պատմեն այս տեղեր պատահած սպանումներ եւ կողոպտումներ: Աղճատաղը կը ցուցնեն, Աղճատաղցող մինչեւ այսօր ապստամբ լինելը, ասոնց ձեռքով կարաւանաց եւ բնակչաց հասած ծղեռներ եւ վնասներ, քանի մը տարի առաջ պարսից Շահզադէի մը սպաննիլը եւն. : Արեւը կիզիչ է եւ դաշտային գնացքը կարծես ձանձրացուցիչ. ահա կը հասնինք Բալաբան գեղը, որոյ բնակիչք Գըզըլպաշ են ... գրած էին գեղիս մեծա–

ւորաց Պէկթաշին եւ Մահմուտ Ալիին, որ քանի մը ձիաւորով զմեզ ապահով հասցնեն Մալաթիա, բայց այս երկուքն ալ գեղը չէին: Հանգչեցանք ուռենեաց շուքը, ջրոց ափը, եւ մեծ ախորժակով ճաշ ըրինք, թան, պանիր, վարունգ, սոխ եւ սխտորով ու եղով տապակուած հաց՝ վրան ալ մածուն դրած:

Ծանր հոգածութեան մը եւ խորհրդեան հետ են մեր ոստիկանները եւ Քրդերը· առանձին կը խօսին, կը վիճին, եւ վերջապէս կը յայտնեն մեզ իրենց որոշումն այն է գիշերը այս գեղն մնալ, մինչեւ որ մարդ առնունք հետերնիս, որովհետեւ ահա կը սկսի Եազլի–խանի դաշտը, որ այնքան սոսկալի հռչակ ունի իբրեւ ազատ ասպարէզ աւազակաց եւ ուր ամէն օր մարդ կը կողոպտուի, մարդ կը սպաննուի: Ես կը պնդեմ երթալ··· մենք կը հեծնանք եւ կը քշենք: Կ'անցնինք Գուրու–Չայ գետակէն, որ գեղի առջեւէն կը հոսի, եւ յաշնան ու գարնան ահագին կը մեծնայ եղեր: Անմիջապէս կը սկսի Եազլի խան, որոյ լայնութիւն է 2 ժամ եւ երկայնութիւն՝ 12 ժամ ընտիր հող, բայց անջուր մնալուն համար՝ անմշակ եւ անբնակ է: Թոխմա Սույու գետոյն վերին կողմէն դիւրաւ կրնայ ջուր հանուիլ այս դաշտը, բայց ո՞վ է շինողն: Ամայութիւն, որ տիրած է կողմերը, անհուն է եւ զարհուրելի, անդորրութիւն եւ ապահովութիւն չկայ, լեռնականաց յափշտակութեանէն եւ կառավարչաց անհոգութենէն դեռ ցայսօր ամայանալու վրայ է երկիրը: Ահմադը[1] միշտ մեզմէ յառաջ կ'ընթանայ, ամէն կողմն կը դառնայ, կը դիտէ, թէ՛ նա եւ թէ ոստիկանները զէնքերը առ ձեռն ունին, մենք ալ մեր նետիչները եւ ձիերու վրայ քաջազօտի զինուորի նման սուր կ'արշաւենք, ժամ ու կէս հասանք Եազլի–խանի մէկալ եզրը· ուստի Թոխմա սույին խորոխտ ու բնակչաց նման բարբարոս արշաւանքով կ'անցնի, քակելով փլցունելով ափերը, ողողելով ցորենոյ, բրինձի, բոստանի ընտիր արտեր, որոց ջուրն ալ ինքն կու տայ, եւ բերքերը ինք կ'ապականէ· ինչի՞ կը նմանի այս: Մեծ ու հին կամուրջով մը կ'անցնինք, զոր ԳԸՐԳ–ԿԷՕՉ կ'անուանեն, շինուած Սուլթան Մուրատէն, բայց մէկ մասը դիակ եւ մէկ մասն կմախք դարձած է: Ասկէ մինչեւ Մալաթիա խճուղի շինուած է, հեռագրի թելեր եւ սիւներ գտանք, խորին ազդեցութիւն ըրին վրաս, զորս Սեւաստու լեռներէն կորուսած էինք: Բաղդատի մեծ ճանապարհի մէջն ենք: Անցուդարձքներ, մշակներ, քաղաքացիք եւ գիւղացիք կը հանդիպին· լոյս աշխարհ ինկանք: Կամարակապ աղբիւրին քով ծառոց շուքը շընթրուկեր են խոշոր շներ, իրենց շոգէն լեզուն դուրս ձգած լըխկ լըխկ կ'ընեն, անոնց իսկ կովն ու հորթ, էշն ու քուռակ, Քրդու աղջիկն ու կեղտոտ պառաւ, եւ քանի մը բաց գլուխ եւ անվարտիկ կուռ, կնէ, փոքրիկ լամուկներ՝ այծերու մօրուքէն կը քաշկռտեն, կը կմկմացնեն:

---

(1) *Ահմէտ՝ Գըզըլպաշ Թաթառ պէկի մշակն էր, կարիճ ու ճարպիկ, ինչպէս Սրբուանձտեանց կ'ըսէ: Բարեաղ պէկն ալ կէս ապստամբ, իբրեւ Հարամահարիչ եւ գողեր գործածող, նոյնիսկ իր անուանած աշիրէթին ընկեր եւ թեւապետ կը ներկայացնէ Սրբուանձտեանց (տես* Թորոս Աղբար, Ա., *էջ 298):*

Զովանալով այս ջրով, եւ զուարճանալով այս տեսարանով, թողինք ու առաջացանք. հարթ ու ընտիր արտորայք կան մեր երկու կողմն, ամէն տեղ կալ կ'ընեն, որանեք կը կրեն: Լեռներու կը մօտենանք, արեւը կը խոնարհի, զովագին օդը զուարթութիւն կը սփռէ ի մեզ, եւ Քիւրտ Ահմէտն ու ոստիկանք փոխ առ փոխ «Բօռ–օղլի»ն եւ այլ խաղեր կը կանչեն: Ծառաստանք եւ վազուած ջրեր կը սփոփեն մեր տքնութիւնը՝ ողջունելով զմեզ: Մօտ ենք հին Մալաթիա քաղաքին, կլոր երկայն քար մը կայ տնկուած ճանապարհին վրայ, որ յունարէն գիր ունի, եւ գագաթը քիչ մը փոս, կը պատմեն թէ՝ Սուլթան Մուրատի տնկած քարն է այս, իբր կէս կամ կեդրոն Իւսքիւտարէն մինչեւ Բաղդադ երթալուն, թէ՝ աղջիկ մը մէկ ձեռքով բարձած այս քարը եւ Սուլթանին դիմացն եկած է, որոյ քաջութեան ի նշան հրամայեց կանգնել կոթող անոր յիշատակին թէ՝ քարի գլխու փոսին մէջ ափ մը ոսկի դրեր է Սուլթանն եւ Բաղդադէն վերադարձին տեսեր է որ այն ամբողջ նոյնութեամբ կը կենայ, զարմացեր Մալաթիոյ բնակչաց քաջութեան եւ հարստութեան, որոց տկար աղջիկն քարէ սիւն մը մէկ ձեռքով կը բառնայ, որոց մէջ աղքատ ու կարօտ մէկը չկայ: Երանի տուեր այս երկրին, երանի իր թագաւորութեան, բայց այդ քարը եւ իր արձանագիրը իմաստասիրելու արժանի առարկայ մ'է:

Վերջապէս համեղութեամբ, խոշորութեամբ, աղուորութեամբ եւ առատութեամբ հռչակաւոր Մալաթիոյ մրգաստանեայց մէջն ենք, թթենի, ծիրանի, տանձենի, խնձորենի եւ այլ պտղատու ծառոց դրախտներ, եւ զանոնք վայելելու, ժողվելու ու զօրացնելու զբաղող, Ադամ–Եւաներ, ամէն ուրեք: Այս քաղաքի պարիսպներ, բուրգեր, որք տեղ–տեղ փլած են, խրամներ, որոց մէջ թիւթիւն տնկած են, ականակիտ ջրեր, ուր խումբ–խումբ Թրքուհիք կտաւ եւ ներմակեղէն կը լուանան, մինարէներ, գմբէթներ, քարաշէն տուներ, բաղնիքներ, միջնաբերդ, մեծամեծ քարակերտ շէնքեր, զորս առանց մէջը շրջելու՝ կը դիտենք. ամենուն ալ աւերումն իր ծանր ձեռքով հարուած տուած, այս է եղեր այն պատմական հին եւ անուանի Մելիտինէն Հայոց, զոր այժմ կը կոչեն ԷՍԿԻՇԷՀԻՐ, Հին Մալաթիա... Ծառաստանք կը վերջանան, քաղաքի ներքին աւերակներէն աչքերդ վեր առնելով յանկարծ կը պատահիս անթիւ գերեզմանաքարերու խառնուածքի մը, ուր կը ներկայանան Մալաթիոյ Թրքաց փաթթոցաւոր գլուխներու կերպ կերպ ձեւեր, որոց երեւոյթն իսկ կը զարհուրեցնեն զմարդս, թէ ի՛նչ սոսկալի անձինք են եղած, որք թէպէտ հողոյ տակ՝ այլ դեռ սարսափ կ'ազդեն տեսնողին...

Մեր ձախ կողմն մօտ ընդ մօտ գեղեր կ'երեւան Թրքաց, ջրերով եւ ծառերով առատ, եւ ահա վերջապէս Մալաթիոյ բերանը հասանք:

Քաղաքին շէնքերը բնաւ չեն տեսնուիր, ժամէ մը աւելի տարածեալ ծառաստունկերու անտառ մը կը բուսի, բարձրացած բարդիներ եւ այլ եւ այլ տունկք թանձր ու խիտ կը փակեն աչքիդ քաղաքն ու ջրերը, փողոցները կանոնաւոր եւ անկանոն, գրեթէ ամբողջովին անմաքուր, ջրալից առուներ ամէն

թաղ, ամէն տեղ տեսածդ՝ Թուրքեր են, լամուկներու յետին աստիճան լիրբ սրիկաները եւ արբեցողները կը վխտան :

Դռներու վրայ ճամոյ մեծ գլուխներով եւ երկայն մօրուքներով Թուրքերը նստած կը ծխեն եւ ծանր-ծանր կը խօսակցին, խոժոռ ու խորհրդաւոր հայեացներ ձգելով անցուդարձ ընողին վրայ» (*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, Ա., էջ 297—307) :

*Այս տպաւորութիւնը, զոր Մալաթիա վայրը թողած է Սրուանձտեանցի վրայ, ընդհանուր է գրեթէ : Ուրեմն անժխտելի է քաղաքին տեղւոյն բացառիկ գեղեցկութիւնը եւ առաւելութիւնները, որոնք հայ եւ օտար այցելուներ հաստատած են :*

1895——1896-*ի Համիտեան ջարդերէն ետք* J. Redel Harris *եւ իր աղջիկը* Helen R. Harris *հայ աղէտեալներու նպաստ հասցնելու համար՝ Հայաստան շրջած են : Անոնք իրենց տպաւորութիւնները հրատարակած են հատորով մը* **Letters from Armenia** (*տպ. Լոնտոն*, 1897) *խորագրուած :*

*Անոնք ի մէջ այլոց այցելած են Մալաթիա, ուրկէ Ռ. Հարրիս* (*տես էջ* 166) *գրած է նամակ մը* 3 *Օգոստոս* 1896 *թուականով, ուր ուշագրաւ են սա տողերը ·*

«Մինչեւ հիմա Ասիական Թուրքիոյ այցելած քաղաքներուս մէջ ամէնէն գեղեցիկը Մալաթիան է : Եթէ մենք հին Պարսիկներուն պէս «Դրախտ» անուանենք զայն, արդար է, վասնզի նման է կամ էր դրախտի :

Գեղեցիկ պարտէզներու մնացորդ մըն է, անոր մէջ տնկուած են կաղամախի եւ զանազան տեսակի պտղատու ծառեր, որոնք մօտակայ լեռներէն հոսած գետերով կը ջրուին : Գրեթէ բոլոր տուները շրջապատուած են պարտէզներով եւ այդ պատճառով, երբ մէկը քաղաքին կը մօտենայ, երկար տարածուած անտառի մը տպաւորութիւն կը կրէ ան, քան թէ բնակավայրի մը, վասնզի տուները ծառերու տակ անտեսանելի կը մնան» (*էջ* 166) :

*Հայաստանի հնութեանց գերման հետախոյզ մը, Լէյման-Հաուպտ, որ նշանաւոր եղած է իր ուսումնասիրութիւններով, Մալաթիոյ վրայ ալ խօսած է եւ գրեթէ նոյնը կ'ըսէ* «Եփրատէն մի քանի ժամ հեռու» *գտնուող քաղաքին մասին որ* «իր դիրքին ու շինուածքին համեմատ մեծ նմանութիւն ունի Պարսկաստանի Մարաղա քաղաքին հետ :Ասոր պէս ան ալ կ'երկարի մէկ ու կէս գերմանական մղոնէ աւելի տեղ : Տուները կատարելապէս կը կորսուին ծառաստաններու եւ պտղաբեր պարտէզներու մէջ : Մալաթիա հռչակաւոր է իր հասցուցած պտուղներով» :

*Բոլոր այս վկայութիւնները կը միտին կարծես հաստատելու թէ Մալաթիա կը գտնուի բնութենէն օժտուած միջավայրի մը մէջ, թաղուած ծառերու խտութեան մէջ եւ ջուրերու առատութեամբ ճոխացած, բայց խոնաւ* (*տես վերը, Աշխարհագրական մաս, կլիմայի բաժին էջ* 1-84) :

*Այս տեղագրական ծանօթութիւններուն հետ հոս պէտք է ներկայացնել*

նաեւ այս հետաքրքրական տողերը, որ համաշխարհային համբաւով ծանօթ գերման Մարեշալ Մոլթքէ գրած է Մալաթիոյ վրայ։

Մոլթքէ 1836—1839 թուականին օսմանեան բանակին մէջ իբր մարզիչ պաշտօնի կոչուած է եւ այդ ժամանակամիջոցին կռուած՝ Սուրիան գրաւող եգիպտական բանակին դէմ եւ ըմբոստ Քիւրտերը զսպելու համար, Եփրատի հովիտը պաշտպանող բանակին դէմ, որուն առաջին հրամանատարն էր Ռաշիտ փաշա, որուն մահէն ետք, նոյն պաշտօնին կոչուած էր Հաֆըզ փաշա, որուն բանակին մէջ էր Մոլթքէ։

Մոլթքէ իր այս պանդխտութեան ժամանակամիջոցին իր ընտանիքին գրած նամակները հրատարակած է յետոյ[1], որոնք այդ շրջանին Թուրքիոյ կեանքին վրայ թանկագին տեղեկութիւններու աղբիւր մը նկատուած են։

Նոյնքան թանկագին են իր տեղեկութիւնները հին Մալաթիոյ դատար–կացման եւ նորին հիմնարկութեան օրերուն վերաբերեալ։

Մոլթքէ Մեզրէէն[2] 19 Մարտ 1838–ին գրած նամակին մէջ կը գրէ.—

«Քեպան Մատէնէն ելլելով կը մագլցինք բարձունքները եւ երեք ժամէն կը հասնինք վերջապէս խորտուբորտ բարձրավանդակ մը, ուր ցիրուցան քուրդ գիւղեր կը գտնուին։ Բանի կը յառաջանանք, այնքան երկիրը ծած–կուած է բազալդի գնդուածներով։ Այս աւերակներուն միջեւ ցցուած է։ Իրիկուան մօտ մեր առաջ կը պարզուի գալարուն դաշտագետին մը գեղերով եւ այգիներով պատած, զորս կը կտրեն առուներ եւ ճամբաներ։ Բարդիներու եւ ընկուզենիներու տեսքէն կը հանգչի՝ լեռներու մերկութենէն խոնջած աչքը։ Գիւղերը փառաւոր տեսք ունին, բարձրադիր տուները հողածածուկ պատշ–գամներ ունին, մաքուր բնակարաններ՝ ցեխով շինուած կը բարձրանան, ո–րոնց վրայ կը փայլի արեւմուտքի ճառագայթներէն ոսկեզօծուած Խարբերդ քաղաքը, իր հին միջնաբերդով եւ մի քանի մինարէներով. շուրջբոլորը, բայց մեծ հեռաւորութեան վրայ, հորիզոնը փակուած է ժանիքաւոր եւ մշուշապատ լեռներու շարանով մը։

Կէս ժամ կանգ առինք քաղաքին դուռը Մեզրէ գիւղին մէջ, ուր կը գըտ–նուի այս պահուս ընդհանուր բանակատեղը։ Կաւաշէն եւ կարճ կտորով մեծ շէնք մը կը կազմէ ընդհանուր կեդրոնը, պզտիկ պահակատուն մը, բազմա–թիւ ծառաներ, քաւաղներ, թաթարներ եւն. բակը լեցուած են։

Փաշան կը գտնեմ վերնայարկ սենեակի մը մէջ, որուն տախտակամածը եւ տիվանը կապոյտ գորգով մը ծածկուած են եւ որու պատուհանները փա–կուած են թուղթով։ Պատերէն կախուած են զէնքեր, սոփաներուն վրայ, շը–ղարշներու մէջ փաթթուած խել մը նամակներ կը տեսնուին, կարմիր կնիքով

(1) Այս հատորը ֆրանսերէնի թարգմանուած է Lettres du Maréchal de Moltké sur L'Orient, trad. par Alfred Marchand, Paris. Այս գիրքին Բ. տպագրութենէն քաղուած են մէջբերուած հատուածները։

(2) Այն ատեն տակաւին աննշան վայր մը ըլլալով, Մոլթքէ իբր բացայայտիչ «Խարբերդի մօտ» բառերը կ'աւելցնէ։

կնքուած։ Ինչպէս Թրքական տուներու մէջ, նոյնպէս հոս չկան սեղաններ, աթոռներ, հայելիներ. մեծ Թիւով սպասաւորներ եւ սպաներ կանգուն են սենեակին մէջ, համր եւ Թեւերնին ծալլած կուրծքերնուն վրայ։ Փաշան նստած է գետինը վագրի մորթի մը վրայ, հագած էր կապոյտ վերարկու մը սամոյր մուշտակով, Փէսը գլխին։ Նորին վսեմութիւնը մեզ ընդունեցաւ գլխի Թեթեւ շարժումով մը, նշան ըրաւ որ նստինք եւ պահ մը լռութենէ յետոյ բարի գալուստ մաղթեց։

Հաֆըզ փաշա, ծնունդով չերքէզ է։ Սուլթանէն սերային համար գընուելէ ետք, իր պաշտօնակիցներէն աւելի խնամակալ դաստիարակութիւն ըստացած է. գիտէ կարդալ եւ գրել. քիչ մը պարսկերէն եւ արաբերէն լեզուներու ծանօթ է. կը հետաքրքրուի երկրին հին դարերու պատմութեամբ։ Հինգ տարի առաջ Ռուսիա ղրկուած դեսպանութեան հետեւորդ եղած է։ Ալպանիոյ մէջ, ի Շքոտրա տասներեք ամսուան դիմադրութիւն ցոյց տուող են զինք չըրջապատող Արնաուտները եւ երբ Ռեշիտ փաշա մեռաւ Տիարպեքիրի մէջ, Սուլթանը իրեն յանձնեց Քիւրտերու դէմ ղրկուած բանակին հրամանատարութիւնը, բայց այս բանակին գլխաւոր պարտականութիւնն էր եգիպտական եւ սիւրիական գունդերու շարժումներուն հսկողութիւնը։ Փաշան, իր պաշտօնակիցներուն մեծ մասէն կը տարբերի տեսքով. գունատ է եւ նիհար։ Ֆէսը, զոր ատենը անգամ մը ետ կը մղէ, կը ծածկէ բարձր եւ խորշոմներով խորապէս ակօսուած ճակատ մը։ Մեր ժամանելէն քանի մը շաբաթ առաջ մեռած էին իր որդին եւ աղջիկը։ Կասկած չկայ որ վիշտի զգայուն ըլլալով հանդերձ, հանդարտ եւ համակերպած արտայայտութիւն մը պահեց. ինչպէս արժան է, ամէնուրէք, բայց մանաւանդ հոս՝ ազնուական մարդը կը յատկանշէ։ Մեր ճամբորդութեան վրայ մի քանի հարցումներէ ետք, մեզ արձակեց։

Մեզ առաջնորդեցին, ամէն կերպով Փաշային սենեակին ծառայող խոշոր սենեակ մը։ Հաֆըզ իր հարեմէն անկողիններ ղրկեց մեզի եւ մեր խոնջէնքը առինք մինչեւ հետեւեալ օրուան իրիկունը։ Հազիւ արթնցած էինք, Փաշային կողմէ մեզի նուէր բերին չորս սքանչելի արաբական նժոյգներ։ Զբաղած էի դեռ երկու ձիերս Թամբելով եւ սանձաւորելով, երբ փաշան եկաւ անձամբ մեզի այցելութեան. մեծապէս հետաքրքրուեցաւ մեր կարած ամբողջ ճամբան ներկայացնող յատակագիծովս, բերել տուաւ իր բոլոր քարտէզները եւ հրամայեց անոնց մէջ նշանակել զայն։ Յետոյ փաշային հետ գացինք քաղաքին ստորոտը գտնուող մեծ զօրանոցը, որ կառուցուած է Հաֆըզի նախորդէն։ Զօրանոցը կրնայ 6000 զինուոր պարունակել։

Ամբողջ պահակազօրքը մարզանքի վրայ էր։ Խարբերդի մէջ զինուորները մարզանք կ'ընէին տուներու տանիքներուն վրայ, որ այս լեռնային շրջանին միակ հարթ տարածութիւններն էին։ Տուն դառնալնուս, գտանք մեծ սափեր, լեցուն պիստակով, չոր դեղձով, Մալաթիայի խնձորով, մեղրով, որ շրջակայ լեռներու բերքն է. փաշային մէկ նոր նուէրն էր այս» (**Lettres de Maréchal de Moltké** etc., էջ 166)։

Մոլթքէ 28 Մարտ 1838-ին Մարաշէն իր գրած նամակին մէջ կը խօսի ի մէջի այլոց Մալաթիոյ և Ասպուզի վրայ, Հաֆըզ փաշայի կողմէ դէպի Սուրիոյ սահմանագլուխը, փոքրաթիւ հետեւորդներով կատարուած ճամբորդութիւնը նկարագրած ատեն: Այդ նամակին մէջ հետաքրքրական բազմաթիւ դըրուագներ կան, որոնց առաջինն է սա միջադէպը, որ լաւ է որ թողունք որ Մոլթքէ ինքն պատմէ.—

Խարբերդի դաշտավայրէն դէպի Եփրատ իջնելէ ետք կ'ըսէ թէ «Գիշերը վրայ հասնելով ապահովութիւն խնդրեցինք կիրճի մը մէջ ծուարած քրտական գիւղէ մը, ուր մեզ հիւրընկալեցին: Սակայն այս լեռներուն մէջ մասնաւոր գոհունակութիւն մը կ'առթէ լաւ ընթրիքի մը պատրաստութիւնը Արաբիոյ պակլայով, Հնդկաստանի շաքարեղէգով, չինական տերեւով, Փրանսական գինիով, Եփրատի կարմրախայտով եւ Սիբերիոյ պխտակով: Կէս գիշերին ահագին աղմուկ մը փրթաւ. դուռը ուժգին զարկին, ձիաւորներ հասան քառասմբակ պոռալէն. զինուորներ ներս մտան մեր բնակարանին տիրանալու: Մալաթիոյ միւսէլլիմին հետեւորդներն էին, որ Խարբերդ կ'երթային: Իմ Թաթարներուս ձգեցի որոշել թէ ո՛վ աւելի իրաւունք ունէր տան վրայ: Միւսէլլի՞մը թէ ես: Բայց ոչ միայն Միւսէլլիմը ուրիշ ապաստանատուն մը որոնեց գիշերելու, այլեւ հրաման արձակեց պատրաստել եւ լաւ ընդունելութիւն մը սարքել մեծ փաշային հիւրին կամ միսաֆըրին:

Արշալոյսը ծագելէն առաջ իջանք Եփրատի ափունքը. հոս գետը կը ճեղքէ Տաւրոսի շղթաներէն մին, կը նեղնայ, հազիւ ութսուն ոտք լայնութեան եւ կը խոյանայ նետի արագութեամբ ձիւնածածուկ դաժան դարվարներու մէջէն: Ձախ ափին՝ ատամնաւոր ժայռերէն մէկուն վրայ թառած է հին դղեակի մը աւերակը, աջ ափին կը բարձրանայ մզկիթ մը՝ կարաւանսէրայով, կառուցուած՝ Սուլթան Մուրատէն:

Եփրատը անցանք Իզօղլուէն եւ կէսօրէն ետք հասանք Մալաթիա: 5000 աղիւսէ կառուցուած տուներով կարեւոր քաղաք մըն է, տանիքի տեղ դրատափերով, մզկիթներու եւ բաղնիքներու գմբէթները նոյն հողէն ծածկուած են եւ ամբողջ քաղաքը նոյն գորշ գոյնը ունի: Աշխարհի այս մասին մէջ ապակիի գիւտը դեռ գոյութիւն չունի, եւ ափսոսացի որ ոչ ոք եկեր է հոս թուղթի մըթերքով՝ այս պակասը լրացնելու համար, որպէս մարդասէր ապակեգործ:

Մալաթիոյ մէջ այցելեցի իմ սեննեկակիցներէս մէկուն, Թնդանօթաձիգ գնդապետ մը, որ ինձմէ երկու օր առաջ եկեր էր եւ որուն հաղորդեցի փաշայի անուանուելուն աւետիսը: Ուրախութենէն խոստացաւ զոյգ մը մոյկ չինել ինծի, որովհետեւ ատենօք կօշկակար է եղեր, եւ երբեմն այս արհեստը կը կիրարկէր սիրողի հանգամանքով:

Մալաթիա անմարդաբնակ է ամառը, բնակչութիւնը Ասպուզու կը քաշուի, 5000 տնակներով գիւղ մը, թաղուած երկու փարսախ երկարութեամբ անտառի մը մէջ, որ բաղկացած է կեռասենիներէ, ընկուզենիներէ, թզենիներէ եւ ծիրանի ծառերէ: Շնորհալի բարտիներ քաղաքին մինարէներուն պէս

այս անտառակէն կը բարձրանան իրենց սպիտակ բուներով, եւ գմայլելի ջրվէժ մը, շշնջալով կը շրջի բոլոր փողոցներէն՝ զանոնք լուացնելով իր վճիտ ջուրով: Քաղաքէն դէպի վեր լեռներն անապատ է, աւազուտ եւ մերկ. դէպի վար ամէն կողմ յուռթի պարտէզներ՝ կտրուած ջուրի անհամար առուակներով ոռոգուած...»:

Մոլթքէ, Խարբերդէն 20 Յուլիս 1838 թուականով գրած ուրիշ նամակի մը մէջ նկարագրած է մանրամասն Եփրատի եւ Տիգրիսի ընթացքը:

Հոն կը գրէ թէ Քեպան-Մատէնի «Ներքեւ, Եփրատ երկու վայրի լեռներու մէջ փանդակուած է, բայց շուտով աջ ափը կը տափակնայ հետզհետէ եւ կը կազմէ Մալաթիոյ ընդարձակ դաշտը: Քէօմիւր խանի մէջ խիստ բարձր լեռներու խոշոր զանգուածներ կրկին կը մերձենան իրարու եւ այդ պահէն սկսեալ գետը կը հոսի ահռելի կուրութեամբ վիհերու մէջէն...»:

Այս 20 Յուլիս 1838 թուականով երկար նամակին վերջաւորութեան Մոլթքէ Սուլթան Սուի հովիտէն դէպի Մալաթիա մուտքը կը նկարագրէ.—

«Այս առուին ղարվար՝ ամէն կողմ դրախտ է, ղարվեր՝ անապատ մը: Ջուրին թաւ կանանչութիւնը, որուն ներքեւ 20.000 հոգիներ կը բնակին, ոքանչելի հակասութիւն մը կը կազմէ բարձունքի գորշ եւ կարմրաւուն քարքարուտքին հետ, որ ծիրանավառ կը թուի ցերեկուան հրավառ լոյսէն, եւ որուն տակ ո՛չ մէկ մացառ, ոչ մէկ խոտի շիւղ չի բուսնիր: Ընկուզենիներու եւ թթենիներու լայնապատ հովանիներ կը ծածկեն բնակարանները. այնպէս որ պատշգամ մը կամ մինարէ մը հազիւ թէ դուրս կը ցցուի, հազարաւոր պարտէներ մէկէն թաւուտքէն կը սլանան սաւարացնելու զայն: Բանջարանոցներն ու պարտէզները, հազարաւոր փողոցները, տուները, կամուրջները այս հովանաւոններուն տակ պահուած են:

«Փաշային ուշադրութիւնը հրաւիրեցի Պրուսայէն կամ Ամասիայէն մետաքսագործներ բերել տալու օգտակարութեան վրայ, այս ընտիր կերպասին մշակումը մտցնելու համար Ասպուսի մէջ, ուր առնուազն 20-էն 30 հազար թթենիներ կան, որոնց պտուղները միայն կը քաղեն ցարդ»:

Գերմանացի զինուորականը կ'ուզէ օգտակար ըլլալ երկիրին այս տեսակ թելադրութիւններով, որոնցմէ դժբախտաբար օգտուող չէ եղած:

Մոլթքէ 23 Յուլիս 1838-ի իր նամակին մէջ, զոր Մալաթիայէն գրած է, կ'ըսէ.

«Մալաթիա, կամ աւելի եւս, Ասպուսու, հազուագիւտ բնակատեղի մըն է, որուն նմանը քիչ կը գտնուի. փափաքած վայրդ կրնաս ջուր ունենալ, ոտքի հաստութեամբ վճիտ եւ մաքուր ջուրի առուակներ կը փրթին: Մալաթիայէն երեք ճամբաներ դէպի բարձունքները կ'առաջնորդեն, մէկը՝ Եփրատին է: Փաշան կը յանկացնէ Խալիլ պէյը 40 ականահատներով, իրեն նշանակած եօթ կէտերը բանալու համար:

Դժբախտաբար պէյը հիւանդ է. պզտիկ փաշաները չեն ուզեր անհանգիստ ըլլալ, «կը նայինք» կ'ըսեն եւ գործը ետ կը մնայ:

Անշուշտ անգործունէութեան զօրաւոր պատճառ մըն է առողջապահական սոսկալի վիճակը. քաղաքը նստած մէկ վաշտի մէջ 350 հիւանդ կայ։

Չեմ գիտեր այս ցեղը արդեօք ջղայի՞ն է, թէ չէ ուրիշ պատճառներ կայ այս դժբախտութեան։

Այս մարդիկը երկու ժամ մարզանք կ'ընեն առտուն, իրիկունն ալ մէկ ժամ կամ երկու ժամ։ Ուտելիքը լաւ է եւ առատ, վրանները մաքուր, բանակատեղին չոր, ջուրն առողջարար եւ բաւարար, եւ այս ամենուն հետ 100-էն 30-ը հիւանդ։

Ռազմագիծի գինուորներուն առողջական վիճակը լաւագոյն է, բայց ոչ գոհացուցիչ. վաշտի վրայ վաթսունը հիւանդ, ի՞նչ հետեւանք պիտի ունենայ այս կացութիւնը։ Ամէն չարիք օդին կը վերագրեն։»

Մոլթքէ 2 Սեպտեմբեր 1838 Թուականով Սամսատի բանակատեղէն գրած մէկ նամակին մէջ դարձեալ Մալաթիոյ եւ մանաւանդ Սամսատի վրայ կը խօսի.—

«Իմ նախորդ նամակներուս մէջ արդէն նկարագրեցի այս գմայլելի վայրը. ջուրերու առատութիւնը, սպարթներու զովութիւնը կը յիշեցնեն մեզի Լոմպարդիոյ դաշտերը։ Իմ զոնաքս (տուն) փոքր է, բայց պտուղներուն մէջ էն աղուորը... այս փոքրիկ պալատս նորէն երդիք ունի եւ երեք պատ միայն։ Զայն հետեւորդներուս ձգեցի եւ ինքս կը բնակիմ կամրջակի մը վրայ, ծառի մը տակ. այդ կամրջակը փայտէ բարձրավանդակ մըն է, առուի մը վրայ ձգուած, զովութիւն ստանալու համար։

Ասիկա ութ քառակուսի ոտք է։ Սալոնիս գետինը ծածկուած է գորգերով եւ բարձերով. ձեղունը բաղկացած որթատունկերէն, որոնք ընդելուզուելով վեհատեսիլ ընկուզենիներուն՝ ամէն եղանակի գմայլելի հովանոց մը կը կազմեն այս բնակարանիս վրայ։ Կոթողասալաց բարտիներու պատնէշը կը բաժնէ երկու բակեր, ուր կը գտնուին ձիեր ու ջորիներ, շրջապատուած պարտէզներէն, լի՝ հսկայական դդումներով, սեխերով, ձմերուկներով, եգիպտացորենով, վարունգներով, լուբիաներով, ծիրանիներու, ընկուզենիներու, սալորենիներու, տանձենիներու, խնձորենիներու եւ թթենիներու հովանիին տակ։

Եղանակը արդէն քիչ մը զովացաւ, բայց կէսօրէն ետք, նոյնիսկ հովանեակ բնակարանիս մէջ քսան հինգ աստիճան տաք կ'ընէ, գիշերները ջերմաչափը կ'իջնէ զգալի կերպով, եւ արեւածագէն առաջ կանոնաւորապէս 11—12 աստիճան կ'ընէ։ Օդի այս զգալի փոփոխութիւնը պտուղի լիառատ ճաշակման հետ, հաւանաբար գլխաւոր պատճառն է մեր զօրքին մէջ ճարակող բազմաթիւ հիւանդութիւններուն։ Արդեօք չէ՞ն հասկնար թէ ի՛նչպէս Թուրքիացիք կրնային մուշտակ կրել. ես ինքս ամբողջ ամառը մուշտակը կռնակէս վար չառի։ Օրն ի բուն 25° տաքութեան տակալէ ետք, մարդ խիստ զգայուն կ'ըլլայ 14—15° տաքութեան։ Մեծ թիւով տեղացիներ երկու-երեք մուշտակ կը հագնին վրայէ վրայ, ամառ թէ ձմեռ, յետ միջօրէին թէ գիշերը։ Չի Թուրքիա—

*ցիք հագուած կը նստին, կամ դրեթէ․ ըստ իրենց՝ հագուստներու զանգուածը կը պաշտպանէ թէ՛ տաքին եւ թէ պաղին դէմ։*

*Տան մէջ կը հագնէի Քիւրտերու հագած սպիտակ բամպակեայ վերարկուն, զոր Մալթայի ասպետները Եւրոպա բերած են։ Այս զգեստէն աւելի օգտակարը եւ հաճելին չ'ըլլար․ անոր տակէն կրնաս հագուիլ թէ՛ տաք եւ թէ թեթեւ կերպով․ վերարկուն կը պատսպարէ ձի նստած ատենդ, թէ՛ արեւին ջերմութենէն, թէ՛ անձրեւէն։ Գիշերը ծածկոցի տեղ կը ծառայէ եւ ըստ անով զգեստաւորուելու ձեւիդ, կամ մարմնոյդ շուրջը պատելուդ, թէ՛ զգեստ է, թէ՛ գօտի, թէ՛ ապարօշ (փաթթոց)....։*

*Հագուստի վերաբերմամբ արեւելքցիներէն սորվելիք շատ ունինք։ Փարիզի եւ Վիեննայի էն ճարտար դերձակներուն գլուխ գործոցները մեր հարեւան արեւելցւոց աչքին աշխարհիս էն նեղիչ եւ խեղճուկրակ բաներն են։ Երբ նեղ տաբատները, սեղմուած մօյկերը կը տեսնեն, որոնց մէջ դիւցազնական ճիգերով կարելի է մտնել, բարձր եւ սեղմ փողկապ մը եւ կարծր ու սեւ* սիլինտիր *մը կը տեսնեն, զոր ամէն վայրկեան դէմքիդ վրայ պիտի մխրճես՝ նորէն հանելու եւ խոնարհեցնելու համար, այս կամաւոր չարչարանքները մտմտուքի կը մատնեն զիրենք, զարմանահար նայուածք մը կը բարձրացնեն երկինք, որպէս թէ ըսել ուզէին․ «Ալլահ, խելքս չի հասնիր»։*

*Թուրքերը ձի կը հեծնեն պառկած ատեն իրենց կրած զգեստներով։ Ոչ ոք այլ զգեստ կը հագնի, ասպինճանաւորի մը ներկայանալու համար, բացի սակայն հարուստ բայաներէն, որ այդ առթիւ բզիկ–բզիկ եղած պարեգօտ մը կը հագնին։*

*Հոս, ամէն կողմ հնաւուրց զգեստը կը տեսնուի․ փաթթոցը այնքան աղուոր է որքան օգտակար։ Նստուկ՝ թէ՛ արեւին եւ թէ անձրեւին դէմ պատսպարուիլ պէտք է․ շալը մէկ կամ միւս կողմը կը դարձնեն, գլխարկ կրելով՝ արեւահար ըլլալու վտանգի կ'ենթարկուի մարդ։ Տաբատը ինը գրկաչափ լայնութեամբ պարկ մըն է՝ մարմնոյն շուրջը հանգրիճուած, անոր վարի ծայրերը երկու ծակ բացած են, որմէ դուրս կ'ելլեն ոտքերը, այլազան գոյնի գուլպաներով, երկու, երեք, վեց կամ ութ բաճկոններ յաճախ ծանրագին ասեղնագործուածքներով ծածկած, մարմինը կը պաշտպանեն ըստ կարեաց, լայն գօտի մը կամ ցփսի մը մէջքին փաթթած, կը պարունակէ քսակը, ծխատուփը, դանակ մը, դաշոյնը, ատրճանակներ, գրպանակ․ երկար մուշտակ մը կ'ամբողջացնէ զգեստը եւ այծի ստեւէ վերարկու մը՝ կը պաշտպանէ օդի խստութեանց դէմ ու կը ծառայէ որպէս անկողին։*

*Այս զգեստաւորութեամբ, որուն նուազագոյն շարժումը անոր կու տայ վեհափառ կերպարան մը, ամէն վայրկեան գծագրուելիք դէմք մը կը նշմարես։ Պարապ տեղը չէ որ Թուրքերը նկատեր են որպէս աշխարհիս ամենէն գեղեցիկ մարդիկը, մինչեւ այն ատենը երբ եւրոպական զգեստ հագան։ Եթէ մեր լաւ կրթուած անձինք Թուրքի զգեստ հագնէին, մեծաչուք կերպարան կ'ունենային։*

Կը տեսնես, քեզ հաղորդելիք նոր բան չկայ։ Մալաթիա բնակութիւնս կը նմանի արագավազ հոսանքի մը փոքրիկ սահանքներուն· յարդի շիւղերը եւ տերեւներ պահ մը անոնց մէջ կանգ կ'առնեն, յետոյ հանդարտօրէն իրենց ընթացքը շարունակելու համար»։

Մոլթքէի Մալաթիայէն 8 Դեկտեմբեր 1838–ին գրած նամակով շատ լաւ կը բացատրուի թէ այդ թուականին ի՛նչպէս հին Մալաթիա քաղաքը Ասպուսու փոխադրուեցաւ։

«Երկրին կենցաղը ու սովորութիւնները թոյլատու չեն, կ'ըսէ, մեր մէջ եղածին պէս զօրականները բնակեցնել· 1—5 զօրագունդը եւ 1—5 բնակչութիւնը պէտք է տունէն դուրս ելլեն։ Մալաթիոյ մէջ, վերջին պայմանը ընտրեցինք։ Ամբողջ բնակչութիւնը 12·000 հոգի հրաւիրուեցաւ երթալ տեղաւորուիլ այս Ասպուսուի ամարանոցը։ Գալով քաղաքին, ան միահաղոյն և միակ զօրանոց մը կը կազմէ, ուր ոչ այր, ոչ կին, ոչ մանուկ կը տեսնուի, այլ միմիայն զօրք։ Տուները կազմուած ըլլալով նոյն ձեւով՝ որպէս ծիծեռնակի բոյներ, անոնց մէջ կը պեղեն քիչ հեռաւորութեամբ դուռ մը կամ պատուհան մը, հօս–հոն պատ մը կը փլցնեն եւ տանտէրը տուն վերադառնալուն դժուարութեամբ բնակարանը կը ճանչնար եւ կարծեմ հազուագիւտօրէն զայն գեղեցկացած կը գտնէ»։

Մոլթքէ իր եւ բանակին ամառնային կեանքէն ետք կը նկարագրէ ձմեռանոցը (տես 23 Դեկտեմբեր 1838 նամակը), զոր կը գտնէ անհրապոյր· ապրելով Մալաթիոյ մէջ, ուր այդ օրերուն վերը երկինք եւ վարը զինուոր էր, բայց կը յարէ թէ «Անշուշտ, քաղաքը տխրապետուած է սքանչելի կերպարան ունեցող հպարտ լեռներէն, պսպղուն ձիւնով պատած, եւ երբեմն ինքզինքս սիրտ տալու համար կ'ըսեմ մտքէս։ Հոս Հայաստան է, հոս կը հոսի Եփրատը, որուն աղբիւրները երբեք չէի կրնար նշանակել աշխարհագրութեան դասերուն, զի անոնք կը թուէին ինծի աւելի հեռաւոր քան աշխարհի ծայրը»։

Մոլթքէ, ինչպէս կը տեսնուի, հակառակ զինուորական մը ըլլալուն, Թուրքիոյ մէջ երկիրին վիճակին պատճառով շարունակ զինուորները զէնքի տակ պահելու հարկադրանքին աղիտալի հետեւանքները շատ լաւ բացատրած է 23 Մարտ 1839 թուականով նամակին մէջ եւ շատ լաւ կը բացատրէ անոր պետութեան ճակատագրին վրայ ունեցած հետեւանքները եւ կ'եզրակացնէ որ «Եթէ եւրոպական տէրութիւնք ուղղակի շահագրգռուած են իսլամ կայսրութեան տեւականութեամբ եւ ամրապնդումով, հաւասարապէս շահագրգռուած են այն դժբախտ կացութեան բարելաւմամբ, կացութիւն՝ որուն մէջ ծածկուած է Դուռը՝ սպառնալից նպատակ մը»։

Երեւոյթները, ինչպէս ցոյց կու տայ Մոլթքէ, անխուսափելի կը դարձնէին Եգիպտոսի դէմ պատերազմը։ Մոլթքէ այն ատեն Հարիւրապետ օսմանեան ծառայութեան մէջ՝ Նիզիպի մէկ ճակատամարտէն մէկ քանի ամիս առաջ Մալաթիայէն 5 Ապրիլ թուականով գրուած նամակին մէջ կը գրէ թէ «Ութը–տասը օրէն մեր ընդհանուր բանակատեղիին հեռանայ Մալաթիա–

յէն եւ հեռաւոր Սամսաթէն: Մեծաթիւ գունդերու երկարատեւ ներկայութիւնը այժմու բնակչութեան պաշարները սպառեց եւ խոտի պակասը կը ստիպէ աւելի տաք վայրեր փնտռել, ուր ձիերը ապահովութիւն ունենան արօտատեղիներ գտնելու: Ասկից զատ խստաշունչ ձմեռը եւ ամառուան տօթը թոյլ չեն տար կանոնաւոր մարզանք կատարել՝ ինչպէս աշնան եւ գարնան; եւ սպարապետը որոշեց հետեւաբար որ յառաջիկայ ամիսը օգտագործուի մեծ ռազմափորձերու»:

Մոլթքէ այս նամակին մէջ կը յուշէ Հայերէն զինուոր առնելու հարցը, զոր Հաֆըզ փաշա յարուցած է եւ Մոլթքէ ալ արդարացի կը գտնէ: Այս առթիւ Կ. Պոլսոյ, Մալաթիոյ, Խարբերդի եւ այլ մերձակայ շրջանակներու մէջ Հայերու հետ ունեցած իր ծանօթութիւններու վրայ հիմնուած, կը տեսնուի որ նպաստաւոր գաղափար մը կազմած է Հայերուն վրայ, որոնց համար կ'ըսէ թէ «Ասիոյ Հայերը բազմաթիւ ու հուժկու ցեղ մըն են, վարժուած հնազանդութեան եւ մեծ մասամբ կը վայելեն բարեկեցութիւն, որոշ չափով: Կրնայ ըլլալ որ անոնք այս պահուս աւելի մեծ հաւատարմութիւն եւ անձնուիրութիւն ցոյց կու տան Բ. Դրան քան իսլամ ժողովուրդը, Քիւրտերը կամ Արաբները»:

Մոլթքէ սակայն կը տարակուսի շատ իրաւամբ թէ կարելի պիտի ըլլա՞յ Հայերէն զինուոր առնել իսլամներու անհանդուրժողութեան պատճառով: Իր այս գուշակութիւնը ճիշդ էր:

Մոլթքէ բոլոր բարենորոգչական ձեռնարկները երկիրին ապագային համար եւ տուած խորհուրդները անօգուտ եղած են, վասնզի Թուրքերը իրենց երկիրը բնաւ չեն բարենորոգած:

Մոլթքէ Նիզիպի ճակատամարտէն ետք 12 Յուլիս 1839-ին Ասպուսույէն նամակով կը հաղորդէ իր վերադառնալու մտադրութիւնը, եւ արդարեւ անկէ կը դառնայ Կ. Պոլիս, ուր Վեզիրին կը ներկայանայ եւ ապա կ'արժանանայ Սուլթան Ապտիւլ-Մեճիտի ունկնդրութեան:

Կ. Պոլսէն կը գրէ Սուլթան Մահմուտ Բ.ը ներբողող նամակ մը եւ 1839 Սեպտեմբերին կը դառնայ Գերմանիա, հակառակ իր բարեացակամութեան եւ ճիշդ դիտողութիւններու չկարենալով օգտակար ըլլալ «Հիւանդ Մարդուն»՝ Թուրքիոյ, ինչպէս չէին կրցած ուրիշ շատեր բնիկ եւ օտարական:

Բայց իր Մալաթիոյ վրայ տուած տեղեկութիւնները գոնէ — ինչպէս տեսնուեցաւ — շատ շահեկան էին, մանաւանդ քաղաքին միջավայրին եւ անոր վերջին տեղափոխութեան մասին եւ ատոր համար է որ օգտուեցայ անոնցմէ, առաւելագոյն չափով:

Իսկ Մալաթիա քաղաքը առանձին առնելով, այսօր ան գլխաւոր քաղաքն եւ կեդրոնն է համանուն կուսակալութեան, որ երբեմն նոյն սահմաններով Միւթեսարրըֆութիւն մըն էր Խարբերդի կամ Մամուրէթ էլ Ազիզի կուսակալութեան մէջ:

Այս քաղաքը շատ հին ատենէն կը յիշուի:

Կը գտնուի Եփրատի վերին ընթացքէն ոչ շատ հեռու, կարեւոր ուղիներու խաչաձեւման կէտին վրայ:

Հին դարերուն՝ Պարսկաստանի արքունի եւ Եփրատի ճանապարհները հոս իրար կը կտրէին, իսկ նոր ժամանակներու մէջ, Սամսոն—Սեբաստիա—Մալաթիա—Տիարպեքիր եւ Կեսարիա—Ալպիսթան—Մալաթիա—Խարբերդ ճանապարհները: Քաղաքը շինուած է դաշտավայրի մը մէջ, որ բեղմնաւոր ու արգաւանդ է եւ պտղատու ծառերով ու ամէն տեսակ պտուղներով հարուստ է:

Այդ դաշտին արգաւանդ հողը գոված են թէ՛ հին արար եւ թէ մեզի ժամանակակից աշխարհագիրները, ինչպէս տեսնուեցաւ:

Քաղաքը կառուցուած է Տաւրոսի հիւսիսային ստորոտը, ոչ հեռու Թախմա-Սուէն, զոր Արաբները կը կոչէին Նահր Գուպաքիպ, որուն վրայ հոս տեղ կը գտնուի հին կամուրջ մը, քառասուն կամարով, որ կը կոչուի Քըրքկէօզ:

Քաղաքին խմելի ջուրը կը հայթայթուի Ույուն Տաուրիյայի աղբերակներէն եւ Եփրատէն (ԻՍԼԱՄ ՀԱՄԱՅՆԱԳԻՏԱՐԱՆ):

Բրոֆ. Մկրտիչ Ոսբերեան (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 6) քաղաքին մէջ գտնուող ակերը կը մանրամասնէ: Ան կը գրէ թէ «Քաղաքին մէջ գլխաւոր եօթը ջուրի ակեր կան, որոնց ամենէն նշանաւորը Տէր Մեսիհն է, որ քաղաքին բուն կեդրոնէն 7 մղոն հեռու հարաւ-արեւմտեան կողմը բարձրադիր ճորամէջէ մը կը բղխի՝ պղպջալէն, եւ երկու վայրկեան վար կը փրփրի, կը կատղի եւ մեծ շառաչիւնով կը փախչի ձորն ի վար, հսկայ ընկուզենիներու, մեղրահամ տանձերու եւ դեղձերու պարտէզներուն մէջէն: Գետակին գլուխը, ուռենիներու տակ թաղուած եկեղեցիի մը հիմերը տեսանելի էին տակաւին: Անունէն դատելով սրբական մատուռ մը ըլլալ կը կարծուի: Հայք՝ Տէր Մեսիա եւ Թուրքերը Տերմէ սու կը կոչեն զայն:

Ակէն 2 մղոն վար ջուրին ընթացքը ուղղուած են արհեստական առուի մը մէջ, որ լերան կուրծքը պատռելով կը հասնի արդի քաղաքի պարտէզները, զորս այնպէս կ՚ոռոգէ որ կը նպաստէ ծառեր հասցնելու:

Ջուրի առատութեան տեսակէտով երկրորդ տեղը կը գրաւէ Խարաթայի առուն, որուն քով Ս. Կարապետ անուամբ ուխտավայրերու քարակոյտերը կային:

Պապուխի ջուրի ակը զբօսասէր անձերու զուարճութիւն եւ մաքրասէր կիներու առատ ջուր կը պարգեւէ:

Շկոնիի աղբիւրն ալ նոյն ծառայութիւնները կը մատուցանէ:

Կ՚աւանդուի թէ այս վերջինին քով կառուցուած է երբեմն Ասորւոց Ս. Պարսումի ճգնարանը:

Հետաքրքրական է Գարնակը (Գարնան ակ) որ միայն Մարտէն մինչեւ Յունիս կը բխի՝ եփելով եւ յետոյ կը ցամքի բոլորովին:

Բունար Պաշիի վրայ կը գտնուի Անարծաթ Բժիշկի կործանուած մատուռը, որ երկար տարիներէ ի վեր լքուած է։

Այս գետին մէջ առատ են ձուկերը, զորս յիշած է Սրուանձտեանց։

Այս գլխաւոր ակերէն զատ կան բիւրաւոր աղբիւրներ, որ փողոցները եւ պարտէզները կ՚ոռոգեն։

Ամէն տան մէջ աղբերակ մը կայ որ տան տիրոջ ճաշակին ու կարողութեան համեմատ զարդարուած ու շինուած է»։

Տոքթ. Միքայէլ Քեշիշեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 25, էջ 10) Մալաթիոյ վերոյիշեալ հինգ ակերէն զատ կը յիշէ հետեւեալ չորս ջուրերը.

1. Խաթուն Սույու

2. Սուլթան Սույու

3. Սիւրկիւ Սույու

4. Թոխմա, որ՝ ինչպէս քանիցս յիշուեցաւ՝ կը միանայ Եփրատի։

Յ. Գոճապաշեան (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 30, էջ 11) Տոքթ. Քեշիշեանի այս յաւելուածական տեղեկութեան համար վերապահումներ ունի։ Ան դիտել կու տայ թէ Խաթունի Սույին առանձին ջուր չէ, այլ Պապ Ուխտի եւ այլ ակերու ջուրերուն միացումը եւ շարունակութիւնը։

Իսկ Սուլթան Սույին համար կ՚ըսէ թէ իր ծագումը կ՚առնէ Սիւրկիւ Սույէն։ Սուլթան Սույի անունը առած է, վասնզի 1885-ի ատենները Սուլթան Համիտ առաջին անգամ ըլլալով Մալաթիոյ մէջ կը սկսի հողեր գրաւելու, իր մօր անունով ագարակներ շինելու համար, երեք անուններով, որոնք էին Էլեմենդիկ, Ջիֆթլիք եւ Արղա։ Վերջինը իր անունը կ՚առնէր համանուն գաւառակէն եւ կը ճանչցուէր որպէս Արղայի կշլայ։

Այս հողերուն մեծագոյն մասը ոռոգելու համար Սիւրկիւ Սույի կոչուած գետակէն ճիւղ մը կ՚առնեն եւ մնացած գետակն ալ կ՚առնէ կամ կ՚որակուի Սուլթան Սույի անունը սուլթանական հողերը ոռոգելու համար։

Հոս աւելորդ չ՚ըլլար յիշել որ գրաւուած վայրերուն մէջ կային Հայերու կալուածներ ալ, մասնաւորապէս Գարաօղլանեաններունը (Յ. Գոճապաշեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 30, էջ 11)։

Գոճապաշեան Մալաթիոյ նշանաւոր ջուրերուն վրայ կ՚աւելցնէ նաեւ Էլեմենդիկ անուն ջուրը համանուն Ջիֆթլիկին կից։

Յ. Գոճապաշեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 30, էջ 11) այս առթիւ կը ճշդէ Թոխմա Սուի Եփրատի հետ միացման կէտը։

Տոքթ. Միքայէլ Քեշիշեան Պորան գեղին ստորոտը կը նշանակէ երկու գետերուն միացման վայրը, մինչ Գոճապաշեան կը ճշդէ գիւղին անունը՝ Կորսաճուգ, անոր կցելով ժողովրդային «դուն պէտք է Կորսաճուգ երթաս» բացատրութեան մեկնութիւնը։

Ան կ՚ըսէ թէ Եփրատ գետին եւ Թոխմա գետակին միացման տեղը փոքրիկ կղզի մը կար, որուն վրայ ուխտատեղի մը շինուած էր։ Սակայն անոր անունը չի յիշեր։ Այս ուխտատեղին մօտային հիւանդութիւններ ունեցող հի-

ւանդներ (խենթեր) ըմշկելու յատկութիւն ունէր, եւ կամ աւելի ճիշդ, ժողովուրդը այդ յատկութիւնը կը վերագրէր այդ ուխտատեղիին:

Ահա այդ բերումով է որ փոխանակ մէկու մը ուղղակի խենթ ես ըսելու կ'ըսէին «դուն պէտք է Կորսաճուց երթաս»:

*
**

Ինչպէս կը տեսնուի՝ Մալաթիա այսքան առաւելութիւններով օժտուած վայրի մը մէջ, պէտք էր խիստ բարգաւաճ եւ ծաղկեալ քաղաք մը դառնար, սակայն դժբախտաբար չէ եղած, հակառակ այն մեծ ջանքերուն, զորս ըրած են Արեւելքի իշխողներէն ոմանք զայն մայրաքաղաք մը ընելու համար եւ հակառակ անոր որ երկիրը կ'ընծայէր բոլոր այն առաւելութիւնները, որոնք կրնային օգտակար ըլլալ ստուար բնակչութեան մը համար, վասնզի ջրաշատ ու արգաւանդ եւ դալար դաշտերով շրջանակի մը մէջ կը գտնուէր ան, անծայրածիր պարտէզներու մէջ, որոնք կը տարածուէին դաշտին մէջ ընդարձակ անտառի մը նման: Սակայն այս առաւելութիւնները անբաւական էին սահմանագլուխին վրայ գտնուող քաղաքի մը համար, որ անյիշատակ ժամանակներէ ի վեր կանգնած էր արեւելքէն խուժող ժողովուրդներու արշաւուղիին վրայ:

Զինուորական տեսակէտով աւելի աննպաստ դիրք կարելի չէր ընտրել:

Շրջապատուած բարձր լեռներու պատնէշով, քաղաքը պաշտպանուած էր միայն հիւսիսէն Թոխմա Սու գետակով, որ շատ դիւրաւ անցանելի, հունաւոր (guéable) էր տարւոյն մէկ մասին (A. Texier, Asie Mineure, էջ 587—8): Բայց հարաւային կողմէն կատարուած յարձակումներու դէմ քաղաքը պաշտպանող ոչ մէկ պատուար գոյութիւն ունէր: Ուստի բնակիչները ստիպուած էին փախուստ տալ դէպի լեռները (Նոյն), ամէն անգամ որ հարաւէն Արաբները խուժելու համար Փոքր Ասիա կ'անցնէին Եփրատէն:

Ուստի Մալաթիա ապահովութեան տեսակէտով դժբախտ երկիր մը եղած էր:

Իբր ռազմական դիրք աննպաստ այս վայրը բնութենէն օժտուած ըլլալով հոն հաստատուած քաղաքը, հակառակ անոր որ ոչ մէկ ապահովութիւն ունէր, սակայն անոր վտանգաւոր դիրքը արհամարհելով միայն անոր միւս առաւելութիւնները նկատի առնելով, մինչ բաւական թիւով բնակչութիւն մը հոն ապրած է:

Քաղաքը իբր բնակավայր այս անպաշտպան ըլլալու անպատեհութենէն զատ ունէր կլիմայական անյարմարութիւն մը: Սաստիկ տաք կ'ըլլար ամառը:

Բնակչութիւնը չէր կրնար մնալ քաղաքը ամառը եւ հարկադրուած էր ամառանոցները երթալ շրջակայքը եւ այգիներու եւ պարտէզներու մէջ գտնուող թեթեւ բնակարաններ ապաստանիլ, ինչ որ բաւական դժուարութիւններ կը պատճառէր եւ ինչպէս տեսնուեցաւ նոյնիսկ պատճառ եղաւ քաղաքին

տեղափոխութեան եւ հին քաղաքին լքումին ։

Մալաթիա երբ շտեմարան հողային արդիւնաբերութեան նշանաւոր էր, վաճառի ունէր հողային անհաւատալի բարեբերութիւն եւ ոռոգուած էր բազմաթիւ մշտաբուխ ակերով, որու գլխաւորն էր Սուլթան Սու, օժանդակներէն մին էր Թոխմա-Սու, որ ծնունդ կ'առնէր քաղաքին հարաւակողմը գտնուող դաշտին մակերեւոյթէն աւելի քան 100 մեթր բարձր կրային բլուրի մը ստորոտը հովիտի մը մէջէն ։

Այս ջուրերը արուեստական ջրանցքներով կ'ոռոգէին պտղատու ծառերու պարտէզները որոնց գեղեցկութիւնը և բեղմնաւորութիւնը չեն հերքեր հին համբաւը արգասաւորութեան որ այս երկիրը ունեցած էր ամենահին ժամանակներէ սկսեալ ։

Խաղողի ողկոյզներ որոնք որթերէն կը կախուէին ուրիշ նահանգներու մէջ գրեթէ անծանօթ մեծութիւն մը ունէին ։

Արդեօք այս հարուստ խաղողո՞վ կը շինէին Ստրաբոնէ յիշատակուած Monarité գինին ։ Հայաստանի բնիկ ծիրանի ծառը կը զարգանայ այս տեղ այնպէս ինչպէս իր ծննդավայրին մէջ, բայց հակառակ կլիմային մեղմութեան ձիթենին երբեք չի յաջողիր ։ Կարելի է ենթադրել թէ ծովուն մակերեւոյթէն երկիրին բարձրութիւնը արգելք մըն էր այս ծառին գոյութեան, թէեւ հիները կը յիշեն ձիթենին պտղատու ծառերու կարգին որոնք կը զարդարէին առասպելական Շամիրամի այս ենթադրեալ բնակավայրը ։

Բ .

## ՔԱՂԱՔԻՆ ԱՆՈՒՆԸ, ԱՆՑԵԱԼԻՆ ՄԷՋ ՈՒՆԵՑԱԾ ՎԻՃԱԿՆԵՐԸ ԵՒ ՏԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Մալաթիա բառին իսկական նշանակութեամբը հնօրեայ քաղաք մըն է որուն հիմնարկութիւնը կը կորսուի անցեալին մթութեան մէջ, սակայն անյիշատակ ժամանակներէ դոնէ մեզի հասած են յիշատակութիւններ անոր վերաբերեալ ։

Պէտք է ըսել թէ քաղաքին պատմութեան հնագոյն շրջաններուն վրայ տակաւին շատ բաներ կան լուսաբանութեան կարօտ, որոնք օր մը կատարուած պեղումները երեւան պիտի հանեն ։

Սկզբնաւորութիւն մըն է ինչ որ մինչեւ հիմա երեւան հանուած է ։ Անշուշտ նոր ուսումնասիրութիւններ նոր յայտնութիւններու առաջ պիտի գնեն խուզարկուները ։

Քաղաքին հնագոյն պատմութեան վերակազմութեան իրականացումը ապագայի հեռապատկեր մը ըլլալով այսօր ստիպուած ենք բաւականանալ մինչեւ ցարդ կատարուած պրպտումներովը ։

Հետեւաբար նախ կ'ուզեմ ներկայացնել Մալաթիոյ ամբողջական տեղագրութիւնը եւ պատմութիւնը կատարել փորձող քաղաքին քահանաներէն Տ.

Կարապետ Քհ. Պէննէեանի երկու աշխատութիւններուն մէջ քաղաքին անունին եւ անցեալին մէջ ունեցած վիճակներուն եւ տեղափոխութիւններուն մասին տուած տեղեկութիւնները:

Տ. Կարապետ Քհ. Պէննէեան 1916 աղէտաբեր տարին Մալաթիոյ նահատակուած քահանաներէն մէկը, որ քիչ չատ բանգէտ անձ մը ըլլալ կը թուի, իրեն համար խիստ պատուաբեր նախաձեռնութեամբ մը հետաքրքրուած է իր ծննդավայրի տեղագրութեամբը եւ պատմութեամբը, եւ 1907-ին եւ 1912-ին պատրաստած է երկու աշխատութիւններ: Ասոնցմէ երկրորդին մէջ, որ աւելի ընդարձակ է քան առաջինը եւ աւելի կատարելագործուած ունի հատուած մը՝ «ՊԱՏՄԱԿԱՆ ԵՒ ՀԻՆ ՈՒ ՆՈՐ ՄԵԼԻՏԻՆԷ» խորագիրով, ուր կէս-աւանդական եւ կէս-պատմական տուեալներով կը ջանայ ստուգաբանել թէ քաղաքին անունը, թէ անոր անցեալին մէջ ունեցած վիճակները եւ թէ տեղափոխութիւնները:

Զուգելով Հովեւեան քահանային աշխատութիւնը մասնահատել հոս մէջ կը բերեմ ամբողջութեամբ այդ գլուխը, ընթերցողներուն յանձնարարելով որ միշտ նկատի ունենան որ անոնք վերջին խօսքը չեն եւ կան ուրիշ բազմաթիւ տեղեկութիւններ, որոնք կը լրացնեն եւ կը ճոխացնեն Տ. Կարապետ Քհն. Պէննէեանի գրածները:

Ինչպէս պիտի տեսնուի նահատակ քահանան, իր աշխատութիւնը պատրաստելու ատեն իր ձեռքին տակ չէ կրցած ունենալ Մալաթիոյ մէջ ուրիշ աղբիւրներ եւ այս պատճառով չէր կրցած օգտուիլ օտար եւ նոյնիսկ հայկական արտասահմանեան հրատարակութիւններէն, բայց իրր առաջին փորձ իր պատուոյ տեղը ունի: Ուստի զայն կը ներկայացնեմ ահա նոյնութեամբ:

«Մելիտինէ՝ որ (ի հնումն Մելիտէ Մելաթ) Թուրք. Մալաթիա կ'ըսուի, յունարէն կը ստուգաբանուի եւ կը նշանակէ Մեղրածորան կամ քաղցր[1]: «էր մեծ եւ անուանի քաղաք փոքուն Հայոց, լեալ ամենայն բարեօք եւ փարթամութեամբ ի ժամանուն իւր զաւառի ի հիւսիսոյ Մելաս գետոյ մերձ ի խառնումն նորա յեփրատ գետ, զոր առին պարսիկք եւ դեհեցին ի Թուականին հայոց ԵԾԵ[2]» (Հայկազ. բառարան):

Անոր հիմնարկութիւնը կը վերագրուի «Կաթոտն տիեզերակալ զշխոյ»-ին (Շամիրամ): Ոմանք կ'ըսեն թէ ՄԵԼԻՏՈՍ անուն յոյն մը հիմնադրած ըլլալով իր անուամբը Մելիտինէ կոչած է: Ճշգրիտ պատմութիւններ պակսելուն՝ ստուգութեան կը կարօտի: Սակայն իր (հին թէ նոր քաղաքի) շրջանակներուն մէջ այլ եւ այլ տեղերէ գտնուած հեթանոսական եւ քրիստոնէական դարերէ մնացած այլ եւ այլ հնութիւններ կ'ապացուցանեն թէ Մալաթիա 4-5000 տարուան քաղաք մ'է:

---

(1) Աւիշան իր աշխարհագրութեան մէջ քաղաքին անունը առնուած կը կարծէ Մելոս գետէն կամ բառ այլոց Մելիտ տարեառնեան դիցուհիէն, որ Շամիրամ կը կոչուէր եւ որ քաղաքին հիմնողը կը կարծուի:

(2) ԵԾԵ=505 կը համապատասխանէ Քր.ի 1056 թուականին եւ ճիշդ կը համապատասխանէ Սելճուկներու Մալաթիան գրաւելու թուականին:

Ասկէց իբր 20 տարի առաջ[1] ԱՍԼԱՆ ԹԷՓԷՍԻ ըսուած բլուրին մէջէն գտնուած մեծկակ քարի մը վրայի արձանագրութիւնէն եւ Բալուի բերդին եւ Եագըլը Թաշի սեպագիրներէն կը հաստատուի թէ Մելիտինէ Քետացիներու կարեւոր կեդրոն եւ սահմանագլուխ եղած է։

Մելիտինէ՝ Քրիստոսէ 500 տարի չափ առաջ Կապադովկիոյ իշխանութեան տակ՝ ամբողջ Կապադովկիոյ հետ կառավարուած է Յուլիոս Կեսարի կողմէ։

Տրայիանոս Քրիստոսի Ա. դարուն (53—117) Մելիտինէի դիրքն ու բարեբերութիւնը սիրելով՝ իր իշխանութեան երկրին Արեւմտեան Սահմանագլուխ որոշած եւ չուրջը պարսպապատած եւ աշտարակներ կանգնած է։

Սոյնպէս Բիւզանդիոնի կայսրներէն Անաստաս Ա. Քրիստոսի Դ. դարուն Մելիտինէի չուրջը պատսպարել տալու ձեռնարկած է, բայց իր յաջորդը՝ Յուստինիանոս կրցած է լմնցնել զայն։ Եւ Խոսրով Ա. Պարսից Թագաւորը՝ Յուստինիանոսի հետ ունեցած կռւոյն մէջ (576—7) չարաչար պարտուած՝ երբ ետ կը դառնայ, ուրիշ քաղաքներու հետ Մելիտինէն ալ կը կործանէ, կ'այրէ եւ ահագին բանակ մը կը կեցնէ հոդ, որմէ յետոյ Սարակինոսները տիրապետելով՝ վերաշինած են թէեւ, բայց Յոյներ կրկին ձեռք բերելու յաջողելով՝ քանդած կործանած եւ բնակիչները Ճեզիրէ եւ ուրիշ տեղեր ցրուած ու փոխադրած են։ Իսկ Ը. դարուն վերջին կէսին մէջ (754—75) Ապպասեան իշխանութեան հրամանատարներէն Ապտիւլ Վէհապ եւ Հասան 70—80000 զօրաց հրամանատարութեամբ Յոյներու ձեռքէն առած են քաղաքը եւ նախկին բնակիչները ժողվելով իրենց տեղերը հաստատած են, սակայն Թ. դարուն Յոյները նորէն ձեռք ձգելու յաջողած են։

Մելիտինէ՝ քաջալերութեամբ Նիկեփորոս Ա. յոյն կայսեր բաւական տարիներ Յակոբիկեան աղանդին (Ասորիներու) քաղաք կը դառնայ, ասոնք վերջինները հոս իրենց կեդրոն հաստատելով, բաւական կ'աճին ու կը յառաջանան մինչեւ ... (այսպէս), որմէ յետոյ, Իկոնիոյ իշխանութեան կողմէ Տանիշմենտ կու գայ քաղաքին վրայ, մէջի ժողովուրդը անարգել կը բանայ դռները անոր առջեւ եւ անձնատուր կ'ըլլայ. որով Իկոնիոյ Գըլըճ Ասլանի իշխանութեան տակ կը կառավարուի մինչեւ ԺԵ. դարուն վերջերը։ Սելճուկեանք պատշաճապէս կը շինեն ու կը բարեզարդեն քաղաքը։ Այդ շէնքերուն մէջ նշանաւոր է Ուլու ճամի ըսուածը, որ դեռ կանգուն է։ Եւ հուսկ յետոյ ԺԶ. դարուն՝ Երլտըրըմ Սուլթան Պայազիտ խանի օրով Թիմուրթաշ փաշայի շնորհիւ Օսմանեան կայսրութեան քաղաք կ'ըլլայ, որ մինչեւ հիմա հանգիստ եւ խաղաղ կը մնայ անոր հովանւոյն տակ։

Մելիտինէի հարուստ եւ բազմամարդ ու վաճառաշահ քաղաք մը ըլլալուն համար կ'ըսուի թէ ԺԳ. դարուն՝ Եգիպտացիք «առնուն Մելիտինէ (Մալաթիա) եւ կոտորեն զՀայս։ Եւ ի 19000 ասուեղործ գտանին անդ» (Հ. Ղեւոնդ Ալիշան, ՍԻՍՈՒԱՆ)։

Կը պատմուի թէ ԺԱ. դարուն մինչեւ 60—70 հազար մարդիկ կրնար հանել։

(1) Այսինքն 1890ական թուականներուն սկիզբը։

Մելիտինէ որչափ որ այս ու ան ազգերու եւ իշխանութեանց հպատակած է ի հնումն, սակայն ինք միշտ Հայոց քաղաք նշանակուած է պատմութեան էջերուն մէջ:

Մելիտինէին իբր Հայոց քաղաք տիրապետած են Փրկչի Ա. դարուն, Տիգրանին եւ ի Քս. հաւատացեալ Աբգար Թագաւոր Հայոց, Սենեքերիմ Արծրունի եւ չորրորդ իշխանութենէն Լեւոն Ե.:

Ինչպէս ամէն երկիր, նոյնպէս Հայաստանի մէջ քրիստոնէութիւնը տարածուելուն հալածում եւ չարչարանքները անպակաս ըլլալուն պէս՝ Մելիտինէ ալ իրեն նահատակ եւ սուրբ վկաներն ունեցած է: Ասոնցմէ կը յիշուին.—

1.— Դ. դարուն սկիզբները Հայոց Պարսիկներու հետ ունեցած, կրօնական պատերազմին մէջ (Վարդանա՞նց արդեօք) Սուրբն Ղեւոնդ շատ մը քաջագործութիւններ ցոյց տալէ յետոյ կը նահատակուի: Ս. Ղեւոնդ, այդ ատենները Մելիտինէի վանքերէն Օրտուզիի (Ս. Փրկիչ) մէջ աստուածաբանական դպրոցը կը վարէր:

2.— Պոլիքտոս կամ Նեարխուն, «էր Ս. վկայ Քրիստոսի ի Մելիտինէ քաղաքէ Հայոց, որ է Մալաթիա, ուր եւ նահատակեցաւ յաներէ իւրմէ, որ էր իշխան քաղաքին, Փելիքս անուն, յամի Դեկոսի կայսեր, եւ անդէն թաղեցաւ» (ՅԱՅՍՄ., 9 Յունվ.):

3.— Եւթիմիոս քահանայ, էր յաւուրս բարեպաշտ թագաւորին Մեծի Թէոդոսի եւ Դրատիանոսի ի Մելտինոյ Հայոց քաղաքէն... Շինեաց շատ վանորայս... եւ ապա գնաց յԵրուսաղէմ իւր վանս յայրն յորում Դաւիթ փախըստական ապրեցաւ ի Սաւուղայ, եւ հանգեաւ ի Քս. Ղէ. ամաց (ՅԱՅՍՄ., 20 Յունվ.):

4.— Պարթենիոս, յամս Մեծի Կոստանդիանոսի, էր որդի Քրիստափոր Սարկաւագին Մելիտինոյ Եպիսկոպոսարանի: Եպիսկոպոսն Մելիտինոյ ձեռնադրեաց զՊարթենիոս քահանայ եւ Եպիսկոպոսապետն Կիլիկիոյ ձեռնադրէ զնա Եպսկ. ի վերայ քաղաքին Լամառքայ (ՅԱՅՍՄ., Ը. Փետր.):

5.— «Սուրբն Պարսամ էր ի Մելիտինւոյ Հայոց քաղաքէն ազգաւ Ասորի». ծնողքը կանուխ մեռնելուն, կ'որդեգրուի բարեսէր մէկէ մը: Յետոյ խստակեաց ճգնաւոր մը կ'ըլլայ տեղւոյն վանքերէն մէկուն մէջ: Բիւրիտոնի Եպս.էն քահանայ կը ձեռնադրուի... Պոլիս կ'երթայ եւ Թէոդոս կայսեր կողմէն Պապ. կ'առաջարկուի: Մարկինոս Բաղ. ժողովին կը հրաւիրէ զինք... եւ դարձեալ Մելիտինէ գալով բարի մահուամբ կը մեռնի (ՅԱՅՍՄ.):

Մելիտինէ իր ծագումէն մինչեւ հիմա — Քեթայւոց, Հայոց, Պարսից, Հռովմէացւոց եւ Յունաց, Ասորոց եւ Տաճկաց եւն. — մերթ այս ու մերթ այն իշխանութեան ու բռնապետութեան տակ իբրեւ կռուոյ խնձոր, եւ իբրեւ Փոքր Ասիոյ կամ փոքուն Հայոց կարեւոր ու վաճառաշահ քաղաք սուրն ու կրակը միշտ իր վրայէն անպակաս եղած է. այնպէս որ իր ամէն մէկ ափ մը հողը այլազան ազգաց հազարաւոր մարդոց պատմական արիւնովն ողողուած, ներկուած ու շաղուած է:

# ՏԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ ԿԱՄ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՔԱՂԱՔԻ

*Մելիտինէի էն առաջուան հիմնարկութիւնն՝ հին քաղաքի (Էսկի շեհիր) հարաւային և* Օրտուզի *հիւսիսային կողմը* Ասլան Թէփէսի *ըսուած տեղը* Քու-ճուր Պաշը *անուն փառքին եղերքն ու երկայնքը եղած կը կարծուի։ Յետոյ երկու փոփոխումներ ունեցած է Նոր Մելիտինէի մէջ։ Մէկը հարաւէն դէպի հիւսիս, այսինքն* Պէկտաղըի *առորատէն* Զարմուզը, *և միւսը արեւելքէն արեւմուտք, այն է արդի շուկայէն* Տելիֆլը Թաշ *կամ* Զեմեսկէ *անուանեալ դաշտը ու* Պազբեփէի *բլրակները, որոնց յայտնի ապացոյցներն են սոյն շրջանակներու մէջ տեսնուած հին շէնքերու մնացորդները և որոնց մէջէն գտնուած հաղամաններու և այլեայլ հնութիւններու բեկորներն ու փշուրները։*

*Այս երկու փոփոխումներէն յետոյ* 1000—1500 (*Ք. Ա.*) *փոխադրուած են հին քաղաքի մէջ։ Հին քաղաք կամ ըստ Թիւրքաց* Աշաղը *կամ* Էսկի Շեհիր *ներկայ քաղաքէն դէպի հիւսիս՝ երկու ժամ՝ և Մելասի ու Եփրատի աջ եզերքը դէպի հարաւ երեք ժամ հեռաւորութեամբ ընդարձակ ու գեղեցիկ դաշտի մը վրայ շինուած ու կրկին պարիսպներով շրջապատուած պատմական ու պատուական քաղաք մըն է, ուր բնակած են* 19–*րդ դարուն սկիզբները, և ապա փոխադրուած արդի քաղաքը։*

*Հին Մելիտինէի պարիսպը տեղ-տեղ գետնին հաւասար և տեղ-տեղ կիսափուլ վիճակ մը ունի։ Իր չորս դռներէն միմիայն արեւմտեանին տեղը որոշ է, որ* Սդ. Թուրուզ(*Ս. Թորոս*) Գաբուսը *կ՚անուանուի, մօտերը գտնուած «Ս. Թորոս» անուամբ եկեղեցիի մը անունէն։ Պարսպամէջի գետնին մակերեսը դուրսէն* 8—9 *մեթր բարձր է։ Եւ այս բարձրութեան պատճառը ուրիշ բան չէ, եթէ ոչ այլեայլ դարերու մէջ մէկէ աւելի անգամներ կործանման և աւերման ենթարկուիլը. այնպէս որ ներկայիս գտնուած կանգուն ու կիսակործան շէնքերէն ոմանք գետնափոր և ստորերկրեայ շէնքեր են կարծես, ինչպէս են Ս. Ստեփաննոս եկեղեցին,* Զուգուր *ըսուած աղբիւրը և մօտի համամին բաղնիքը և մէկ քանի ջրհորներ։*

*Հին քաղաքին մէջ դեռ կանգուն են, ինչպէս ըսինք, Ս. Ստեփաննոսի եկեղեցին*[1], Ուլու ճամի *ըսուած փառաւոր մզկիթը*[2], *անոր հանդիպակաց մե-*

---

(1) *Սա ալ «շաքաթացած» է կրնայ ըսուիլ* 1895 *դէպքին պատճառաւ։*

(2) *Գործ Սելճուկեանց։ Շատ սքանչելի է այս ճամիի շէնքը. ժամանակին ճարտարապետութիւնը իր գեղարուեստի բոլոր կարողութիւնը թափած է. քանդակ, ներկ ու նկար կը զարմացնեն զմարդ։*

տրէսէն, Աղ ու Կիւճիւկ մինարէներն ու անոնց մզկիթները եւ ուրիշ քարաշէն եւ կղմինտրաշէն երեք մինարէներ եւ Աղճա Գաբու[1] բացուած ընդարձակ պանդոկի կամարները միայն: Ասոր մօտ կը գտնուին մէկ քանի խանութներ եւ սրճարան մը: Ու քաղաքին մէջ այլեւայլ տեղերէ գաղթող երկրագործներու 4—5 հարիւր տուն բնակչութեան մէջ 3 տուն ալ Հայեր, որոնք մնացորդներն են 95-ի ջարդի ատեն կոտորուող 15—20 տուներու: Պարսպէն դուրս կը գըտնուին Գարայեաճ Թօփ Թաշը եւ ուրիշ արուարձաններ եւայլն:

Արդի քաղաքին ներկայ հաստատումը կամ շինութիւնը տեղի ունեցած է 1840—41-ին՝ քրտական ապստամբութիւնները զսպելու եւ ընդդէմ Եգիպտոսի Մուհամմէտ Ալի փաշայի Նիզիպի վրայ ունեցած պատերազմին համար օսմանեան բանակին հոս ձմեռելու շրջանին: Այդ տարին, երբ Հաֆըզ փաշայի հրամանատարութեամբ բազմաթիւ զօրք կու գայ կը հասնի Մալաթիա, քաղաքացիք, Ասպուզի[2] նոր քաղաքին մէջ կը գտնուէին՝ իրենց պարտէզներու արդիւնքն առնելու համար: Զօրքը աշնան վերջերը հոն եկած ըլլալուն՝ հարկ կը տեսնուի հոն ձմեռել: Ուստի քաղաքացւոց կը ծանուցուի որ այդ ձմեռ իրենց ամարանոցներէն չփոխադրուին: Զօրքերը կը պատսպարուին քաղաքին տուներուն մէջ, սակայն վերահաս ձմեռը խիստ ծանր եւ երկար տեւելուն կը սկսին իրենց գտնուած տուներու մէկ կողմը քակել ու վառել. այնպէս որ գարունը ալ բնակարան կամ տուն բռնելու բան չի մնար: Զօրքը մեկնելէն ետք քաղաքացիք թէեւ կ'ուզեն վերաշինել, բայց կառավարութենէն կ'որոշուի որ ալ հին քաղաք չփոխադրուին: Ուստի կը սկսին ներկայ քաղաքը շինել, ընդարձակել եւ բարեզարդել, քակել եւ փոխադրելով հին քաղաքի մէջ ունեցած իրենց շէնքերն ու տաղձը: Այնպէս որ հին քաղաքը կը զրկուի իր հնաւուրց գեղեցկութենէն, հոյակապ եւ փառաւոր շէնքերէն ու հաստատութիւններէն, գետնին հետ հարթ հաւասար կ'ըլլայ իր կանխաւեր պարիսպը, քաշելով եւ մերկացնելով անոր արտաքին երեսը գտնուած կարեւոր քարերն ալ, որով կը շինեն նոր քաղաքի տուները, շուկան եւ աղօթատեղիները:

Հիմա Նոր Մալաթիա (Ասպուզին)՝ սկսելով վարի Զորմուզիէն (հիւսիսային ծայրէն) մինչեւ հարաւային ծայրը Քիւնտուզէկ գիւղի վերեւ, երեք ժամ երկայն եւ կէս ժամ լայնութեամբ միջոց մը բոլորովին ծառալից է. այնպէս որ հեռուէն դիտող մը կանանչութեան ծով մը պիտի կարծէ այս վայրը,

---

(1) Գործ Սուլթան Մուրատ Դ.ի զինակիրներէն ՄՈՒՍԹԱՖԱ փաշայի:

(2) ԱՍՊՈՒԶԻ (Աս-պուզի կամ Ասպ պու. ձի. իջի՝ հետք ձիու): Թուրքերէն բառերու նշանակութենէն կ'առնուի թէ ԱՍՊՈՒԶԻՑԻՆեր միշտ կը մնային իրենց տեղը եւ բնաւ քաղաք չէին գաղթեր: Իսկ երբ քաղաքացիք քաղաք վերադառնային, մինչեւ յաջորդ գարունը շատ վնասներ կը պատճառէին անոնց, քակելով շէնքերը եւ կտրելով պարտէզներու ծառերը: Քաղաքացիք ճարահատ անոնց ձեռքէն, կը դիմեն կառավարութեան, որպէսզի Ասպուզիցիներն ալ քաղաք գան ձմեռը: Կառավարութիւնը թէեւ կը պնդէ որ իրենք ալ համակերպին քաղաքացիներուն, բայց անոնք կ'ընդդիմանան ու կը պատասխանեն թէ՝ «Ասփիփի կըթմէզիզ...» Ասպուզիցի Հայերէն ծանօթ են հիմա Աղաւնիկեանք, Բէքիճ Մատոյեանք, Օլոյեանք, Շեհրիկեանք եւն.:

*բայց այս կարծուածը ուրիշ բան չէ եթէ ոչ խիտ ու ընդարձակ անտառ մը արգարեւ: Եւ մինչեւ որ քաղաքին մէջ մտնելով չմօտենայ չէնքերուն, պիտի չհաւատայ անոր քաղաք մը ըլլալուն: Այս կարծուածը, սակայն, ոչ ծով է եւ ոչ ալ անտառ, այլ գեղեցիկ ու դրախտանման պարտէզներ, պարտէզներ՝ որ խճողուած են քաղցրապտուղ ծառերու, բարձրաբերձ բարտիներու, հեղաչուք ուռիներու եւ ուրիշ տեսակ* բազմաթիւ ծառերու *հիւաքանչ չարքով, պարտէզներ՝ որոնց բերքն ու արդիւնքը հազարաւոր ոսկիներ կը կորզեն օտար երկիրներէ, շրջակայ քաղաքներէ եւ գիւղերէ: Պարտէզներ՝ վերջապէս, որ Մելիտինէի կեանքը, հարստութիւնը եւ ամէն ինչն են:*

*Ներկայ քաղաքը արեւմուտքէն դէպի արեւելք չորս երկար պողոտաներու վրայ շինուած՝ բազմաթիւ փողոցներով իր մէջ կը պարունակէ* 10000–*ի մօտ տուներ, որոնցմէ* 2000–*ը Հայոց եւ* 8000–*ը Տաճկաց կը վերաբերին, եւ որոնք բաժնուած են հետեւեալ թաղերու.—*

ՍԱՆՃԱԳՏԱՐ, ՈՒՃՊԱՂԼԱՐ, ԳԸՐՋՈՒԱԼ, ՊԷՕՅԻՒԿ ՀԻՒՍԷՅԻՆ ՊԷԿ, ՔԻՒՉԻՒՔ ՀԻՒՍԷՅԻՆ ՊԷԿ, ՔԱՌՆԱԿ, ԹԷՔ ՄԵՋԱՐ, ՖԵՀՐԱՏԻԷ, ՄԵՐԱՑ, ԽԱԼԷՖ-ԻՒՏ-ՏԻՆ, ՍԱՐԸՃԸ ՕՂԼՈՒ, Ենի Համամ*, Գալէմքեար*, Ճալէօփրիւ*, Չեքեմլէր*, Ժամկոչ*, Խարազա*, Չաթալպենտ*, Մնաւր*, Սանտգեր*, Չորպաճը*, Չըթազ*, Թարխան*, Գզլքեշիշ*, Թէքչեշմէ*, Ճրճրքէօշէ*, Զաւուշ Օղլու*, Կէօք Սոգու*, Տապաղխանէ*, Նիյազի, Այնթապլի, Հիտաթի, Իսկենտէր, Նուրիյա, Ասլանպէկ Օղլու, Իզզեթիյէ, Հաճի Խալիլ Զատէ, Իլիաս, Պենտպաշը, Չարմուղը, Չգուր Տէրէ, Գաբտան Օղլու, Ջատիյէ, Շէյխ Պայրամ, Ապտիւլգաֆար, Չիլէսիզ, Մուսթաֆա Փաշա, Հաճի Ապտի, Շիփակ Իւլեա, Շիփակ Սիւփլա, Սամանլըօղլու, Տաֆիր Փաշա[1]:



*(1) Այս վերջինին բնակիչները 1877–1878 Ռուս եւ Թուրք Պատերազմի ատեն Կարնոյ կողմերէն եկող մուհաճիրներէն. որով այդ Թաղին* էրզրում *մահալլէսի ալ կ'ըսուի:*

Յիշեալ թաղերէն մեծամասնները զուտ Թուրքերու են, առաղանչուած-ները՝ Հայոց, իսկ միւսներն ալ՝ խառն:

Նոյնպէս չորս պողոտաներէ երեքին վրայ Թուրքերու, իսկ մէկին վրայ ալ (վարի, հիւսիսային) Հայերու տուներն շինուած են: Որչափ որ կեդրոն-ները Հայերու տուներ ալ գտնուին, քաղաքին կարեւոր եւ օդը լաւ տեղերը Թուրքերը գրաւած են ընդհանրապէս:

Տուները այնպէս մը շինուած ու շարուած են որ մարդ կը ձանձրանայ թաղէ մը ուրիշ թաղ մը երթալու ատեն, որովհետեւ հակառակ ճամբաներու լայնութեան եւ փողոցներու շատութեան, տան յարակից պարտէզներու ոս-տերը խրարու կցուած ըլլալով՝ շէնքերը խրարմէ անջրպետուած եւ հաղոր-դակցութիւնը դժուարացուցած են: Մանաւանդ փողոցներէ մեծ մասին անել ըլլալն է գլխաւոր պատճառը ճամբաներու երկարելուն (ընդարձակ, էջ 12—21):



Այս տեղեկութիւնները կը կարօտին լրացումներու նոր հետազօտու-թեանց տուեալներով: Անտարակուսելի ճշմարտութիւն մըն է թէ Մալաթիա աշխարհի հնագոյն քաղաքներէն մէկն է եւ նուազագոյն 30 դարերու պատմա-կան անցեալ մը ունի, եւ զարմանալի է որ քաղաքը գրեթէ այդ երկար ժամա-նակամիջոցին պահած է իր անունը անփոփոխ կամ քիչ փոփոխուած, ինչ որ քիչ անգամ պատահած է:

Ասորեստանեան բեւեռագիր արձանագրութիւններու մէջ յիշուած է Մելիտան (Melidda) ձեւով (տես Encyclopédie de l'Islam, Գ. հտ., էջ 208):

Այս քաղաքը, որ Կիմմերեան արշաւանքէն ետք լքուած է, շինուած էր Հին Մալաթիա կամ Էսկի Շեհիր կոչուած վայրին հարաւակողմը, հոն ուր կանգնած է Արսլան Թէփէ բլուրը, որուն ընդարձակ նկարագրութիւնը տը-րուած է արդէն(*): Անիկա կը գտնուէր Օրտուզիի մօտ: Մելիտայ հնագոյն քաղաքն է որ յիշուած է նաեւ Ուրարտեան արձանագրութեանց մէջ:

Մելիտը, որ ծանօթ դասական պատմութիւնը կանխող ժամանակաշըր-ջանի մը կը պատկանի, լման պատմութիւն չունի: Ինչ որ ցարդ կարելի եղած է ձեռք բերել պեղումներով եւ դրացի երկիրներու արձանագրութիւններով, վերը՝ Վեր. Եղիա Քասունիի կողմէ գրի առնուած տողերուն մէջ բացատը-րուած է արդէն: Քաղաքին անունը ստուգաբանել դժուար է, վասնզի շատ հին ժամանակներէն կը հասնի մեզի: Հնագոյն կոչումն է Մելիտ ըստ Գերպ. Ալեքսանդրեանի (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 391). «Անունն է Դիցու-հոյ եւ կ'աւանդուի թէ անոր անուամբ կառուցած է Շամիրամ Ասորեստա-նեայց դշխոյն կամ ինչպէս ուրիշներ կ'ուզեն՝ Շահ-Մեր-Ամ իշխանակալն: Սա-ստոյգ է որ քաղաքիս սկիզբը շատ հին է, բեւեռագրաց մէջ կայ իր յիշատակն

(1) Տես սատ էջ 74-82:

եւ ուրոյն թագաւորութիւնը, զոր Ս. Գիրքն եւս կը յիշէ, մանաւանդ Հոլոփեռնէսի ժամանակ»։

Կարլ Ռիտտէր այս անուան մէջ կը տեսնէ Ասորեստանցիներու դիցուհին՝ Մերիդդա–Մելիտտա (Հերոդոտոս, Ա., էջ 199, Հ. Սահակ Կոգեան, ՄԵԼԻԴ, ՄԵԼԻԴԻՆԷ, ՄԱԼԱԹԻԱ, էջ 19)։

Մելիդդա կամ Մելիտտա «դիցուհին էր արգասաբեր ուժին, որուն արգասիքները սփռուած էին այս հրաշագեղ դաշտին վրայ» (Կոգեան, էջ 19)։

Թերեւս այս պատճառով իսկ առասպելական Շամիրամի վերագրուած է Մելիտինէի հիմնարկութիւնը։ Այս առասպելին արձագանգ եղած է Պլինիոս (Դ. 3), որ կ'ապրէր Քրիստոսէ յետոյ Ա. դարուն եւ մեռած էր 79 թուականին։

Պլինիոս միայն իբր թէ Շամիրամէն կառուցուած Մելիտա անուն ամրոց կը յիշատակէ, մինչդեռ Ստրաբոն, որ Քր. է առաջ Ա. դարուն ապրած է, արդի Մալաթիոյ գաւառին մէջ այս անունով քաղաքի մը գոյութիւնը կ'անգիտանայ եւ միայն այդ անունով կը յիշէ Կապադովկեան նահանգ մը, Կատաւոնիայի եւ Եփրատի միջեւ։

Ուրեմն Մելիտա էր անունը նահանգին, ուր յետոյ կառուցուած էր համանուն ամրոցը։ Այս Մելիտա կոչումը, առանց յաւելական ինչ ածանցին, ճշդիւ համաձայն է արձանագրութիւններու մէջ պահուած ձեւին (Կոգեան, նոյն, էջ 11)։

Մելիտ բառէն ածանցուած են Մելիտինէ եւ Մելիդա կոչումներ, որ ինէ եւ ա տեղանուն կազմող մասնիկներով կազմուած են։ Այս մասնիկներէն ինէ վերջաւորութիւնը տեղական է, հաւանօրէն փոքր–ասիական լեզուներու մէջ շատ տարածուած եւ յայտնապէս տեղ նշանակութիւնն ունէր (Ա. Խաչատրեան, ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԵՊԱԳՐԱԿԱՆ ՇՐՋԱՆԻ ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, 1933, Երեւան, էջ 202)։

Իսկ ա վերջաւորութիւնը խալդի լեզուին մէջ կը կատարէ նոյն դերը (նոյն)։

Մելիտինէ կը գտնուէր Խանիգալբատ եւ Միտանի երկիրներու մէջ, որ նոյն քաղաքական եւ աշխարհագրական հասկացողութիւնները կը ներկայացնեն ըստ Պրոֆ. Ա. Խաչատրեանի (նոյն, էջ 9)։

Պլինիոս (ԲՆԱԿԱՆ ԳԻՏ., Զ., 8) այս քաղաքը կը կոչէ Melita a Semiramide condita.

Այս անունը հաւանաբար կապ ունի քաղաքին առասպելական հիմնադիր դիցուհիին անունին հետ, որ պահուած էր թերեւս Շամիրին ամրոցի անունին մէջ, զոր Միքայէլ Ասորի (Թրգմ. Շապոյ, Գ., էջ 277) կը յիշատակէ։

Այս քաղաքին մէջ նստած են աքեմենեան պարսիկ տիրապետութեան շրջանին արեւմտեան Հայաստանի սատրապները, որոնցմէ նշանաւոր էր Տիրիբազ, որուն արքայավայել կեանքին վրայ բաւական տեղեկութիւններ մեզի հասած են։

Մեծն Աղեքսանդր այս աշխարհամասը խլեց Պարսիկներէն եւ անոր մահէն ետք ան մաս կազմեց Սելեւկեան թագաւորութեան, որ կը թուի թէ երկիրին հնօրեայ թագաւորութիւնը իբր ճորտ իշխանութիւն մը պահած է։ Այդ թագաւորութիւնը կը բաղկանար Մեծ Ծոփաց աշխարհէն կամ Չորրորդ Հայք նահանգէն, իրեն հետ ունենալով Մալաթիոյ շրջակայքը։

Առաւել կամ նուազ անկախ այս հայկական թագաւորութիւնը ապրած է մինչեւ Մեծն Տիգրան եւ անոր կողմէ կցուած է Մեծ Հայքի։

Ծոփաց թագաւորութեան մէջ Մելիտինէն ո՛չ յիշուած է իբր մայրաքաղաք եւ ոչ ալ իբր գլխաւոր քաղաք, վասնզի այս թագաւորութեան կեդրոնը Արածանիի հովիտին մէջ էր։ Հետեւաբար Մելիտինէ գուցէ բոլորովին անշքացած եւ նոյնիսկ մեզի անյայտ պատճառով մը աւերուած կամ կործանած էր։

Այս հին քաղաքը, որուն փառաւոր անցեալին վկաներն են իր մնացորդները, ինչպէս տեսնուեցաւ, կը մնան դեռ Ասլան Թէփէ կոչուած բլուրին կատարը։

Այս քաղաքը, որ պատմական հնագոյն շրջանի մը մէջ գոյութիւն ունեցած է, տակաւին իր պատմութեան բոլոր ծալքերով չէ ծանօթացուած, վասնզի պեղումներ չեն կատարուած եւ ան նոր կը խուզարկուի։

Ինչ որ ցարդ լուսաբանուած է արդէն, ցոյց տրուած է վերը։ Հոս անշուշտ պիտի չկրկնեմ Մալաթիոյ նահանգին 30 դարերու պատմութիւնը, որ արդէն ներկայացուցած եմ վերը, պատմական շղթայումով մը, անյիշատակ ժամանակներէ սկսեալ մինչեւ մեր օրերը։

Այդ տեսութեան մէջ, յայտնի կը տեսնուի թէ առանձնապէս առնելով քաղաքին պատմութիւնը, անոր մէջ շատ կարեւոր դեր կատարած է իր վայրին բացառիկ արգաւանդ հանգամանքը։ Այնպէս որ շատ անգամ կործանուած, բայց շուտով վերստին կառուցուած է, վասնզի իր բնակավայրը կը ներկայացնէր բացառիկ առաւելութիւններ եւ նպաստաւոր պայմաններ։

Ստրաբոն, փոքր-ասիացի աշխարհագիրը, որ շատ ճշգրիտ տեղեկութիւններ տուած է Փոքր Ասիոյ Քր. մէկ դար առաջուան վիճակին վրայ, Մալաթիոյ նահանգին վրայ հիացումով կը խօսի։ Քաղաքը այս ատեն գոյութիւն չունէր, բայց այդ վայրերը, ուր ետքը ծնունդ առաւ քաղաքը, Կապադովկիոյ 10 նահանգներէն մին էր, ըստ Ստրաբոնի, Կատաւոնիոյ եւ Եփրատի միջեւ։

Սակայն հակառակ անոր որ Ստրաբոն այնպէս կը ներկայացնէ որ իր ատենը Մելիտինէ գիւղաքաղաք մը իսկ չէր, նորագիւտ ուրարտեան արձանագրութիւններ ցոյց կու տան որ (Ն. Ք.) Թ. դարուն Մելիտինէ թագաւորներ ունեցած է եւ Բալուի եւ Քէօմիւրխանի[1] սեպագիրները կը յայտնեն թէ Հայութեան կարեւոր կեդրոն եւ սահմանագլուխ եղած է։

(1) Մալաթիոյ արեւելեան կողմը 9 ժամ հեռու՝ Եփրատի ափին ապառաժի մը վրայ։

Համանօրէն կիմմերեան արշաւանքներու կամ ուրարտու-ասորեստանեան պայքարներու միջոցին կործանուած պէտք է ըլլան Մելիտ քաղաքը եւ թագաւորութիւնը, որ ուրարտեան դաշնակցութեան իբր մէկ անդամը կը յիշուի:

Հետեւաբար Ստրաբոնի ատեն այս անունով քաղաք գոյութիւն չունէր, այլ արդի Մալաթիոյ շրջանակը կը ներկայացնէր Կապադովկեան կամ Գամրական նահանգ մը, ուր միայն ամրոց մը կար, ուր կը մնար Քր. ի Ա. դարուն հռոմէական սահմանապահ զօրաբաժին մը:

Տիտոս կայսրը (40—89) Մալաթիան իր ԺԲ. Լեգէոնին կայան ընտրած էր 79—81 թուականներուն:

Հոն մնացող սահմանապահ զօրքը կը կազմէր քսաներորդ լեգէոնը (Ադոնց, ՀԱՅԱՍՏԱՆ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ՇՐՋԱՆԻՆ, էջ 98):

Մելիտա ամրոցին շուրջ տակաւ կը հաստատուէին ժողովուրդ եւ կը շինուէին տուներ, եւ ան կը դառնար Բ. Հայքի գլխաւոր վայրը (Charles Texier Asie Mineure, էջ 587) թէեւ ըստ Պտղոմէոսի ան տակաւին քաղաք չէր, այլ այն մասը Կապադովկիոյ, որ կ'երկարի դէպի Հայաստան, Եփրատի ծունկին դէմ: Հոն է, կը գրէ Պլինիոս, այն ամրոցը, զոր շինած է Շամիրամ եւ որ կը կոչուի Մելիտա (ՊԼԻՆԻՈՍ, Զ. Գ., Գերպ. Ս. Կոգեան, ՄԵԼԻՏ, ՄԵԼԻՏԻՆԷ, ՄԱԼԱԹԻԱ, էջ 11):

Մելիտա էր ուրեմն նահանգին եւ անոր ամրոցին անունը. ուստի ճշդիւ համաձայն արձանագրութիւններու մէջ պահուած ձեւին դասական պատմութեան ծանօթ շրջաններու, ինչպէս հռոմէական-բիւզանդական եւ ապա արաբական-սելճուկեան տիրապետութեան տակ քաղաքը կը գտնուէր ուրիշ տեղ մը, որ հիմա ծանօթ է Էսկի Շեհիր (հին քաղաք) կոչումով:

Նախ քան Քրիստոս Զ. դարուն արմենական վերնախաւին Հայաստանի մէջ տեղաւորուելէն ետք կազմուած էր, ինչպէս բացատրուեցաւ գիրքիս պատմական բաժնին մէջ, առանձին թագաւորութիւն մը Մելիտինէի շուրջը, պատմական Հայաստանի Ծոփաց աշխարհին հետ միացեալ: Այդ ժամանակէն սկսեալ մինչեւ արաբական տիրապետութիւն, Մելիտինէի աշխարհամասին քաղաքական անցքերը ներկայացուած են վերը(*): Ահա այդ երկար ժամանակամիջոցին է որ երեւան կու գայ նոր քաղաք մը՝ չորս քիլոմեթր դէպի հիւսիս տարածուող բարձրադիր դաշտի մը մէկ կուրծքին վրայ, որ ծովէն 2852 ոտք բարձր է եւ 15·730 քառակուսի քիլոմեթր ընդարձակ (Հմմտ. Կոգեան, նոյն, էջ 7 եւ Բռօֆ. Մկրտիչ Որբերեան, ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 115):

Այս հին քաղաքը 10 քիլոմեթր հեռու է արդի Մալաթիայէն (Albert Gabriel, Voyages Archéologiques dans la Turquie Orientales, I. Paris, 1940, էջ 261), արեւմտեան կողմը Մալաթիա-Սըվազ ճամբուն (նոյն):

Hordenz-ի բարբարոս անունը, որ ոեւէ նշանակութիւն չունի թուրք լեզուին մէջ, կարելի է նոյնացնել ըստ Texier-ի Ad-Aras իջեւանին յիշուած ծանօթ անտոնինոսեան իջեւանագրութեան մէջ:

(*) Տես անդ, էջ 154—175:

Անիկա քիչ հեռու էր Մալաթիայէն։ Ինչպէս տեսնուեցաւ, Պոմպէոսի Արտաշատի մէջ կնքած դաշինքով Ծոփաց թագաւորութիւնը Տիգրանէն առնուելով իր համանուն որդւոյն եւ այս սահմանակից թագաւորութիւններուն եւ մասնաւորապէս Կապադովկիոյ թագաւորներուն տրուեցաւ։

Յետոյ կազմուեցաւ Փոքր Հայք անուն առանձին թագաւորութիւն մը, որուն մայրաքաղաքն էր Մելիտինէն, ուր թագաւորեցին Կոտիս, Արիստաբուղ, Տիգրան եւ ուրիշներ, Հռոմի հովանաւորութեան տակ։

Յետոյ Հռոմ կցեց իր պետութեան եւ հռոմէական նահանգի վերածեց Մելիտինէն։

Տիտոսի իշխանութեան ատեն (79—81) ԺԲ· Լեգէոնը, որ Jul missata կը կոչուէր, բանակեցաւ Արսլան Թեփէէն չորս քիլոմեթր հիւսիս գտնուող այս դաշտին մէջ։

Անոր շուրջը շինութիւններ գոյութիւն առին եւ այսպէս ծնունդ առաւ Մելիտաճ կամ եւրոպական ազգերու Մելիտինէն, Արաբներու եւ Թուրքերու Մելաթեաճ, որ անպաշտպան քաղաք մըն էր մինչեւ Կոստանս կայսեր (305—6) ժամանակ։

Տրայիանոսի իշխանութեանը ատեն (98—117) Մելիտինէ միակ քաղաքն է այս նահանգին։

Տրայիանոս Պարթեւաց յաղթելէ ետք վերաշինեց Մալաթիան։ Անկէ ետք Մալաթիա Փոքր Հայքի մաս կազմեց եւ եղաւ հայկական ոստան։ Կոստանս կայսրը (305—306) ձեռնարկեց շինելու Մալաթիոյ շուրջը պարիսպ մը, զոր սակայն չկրցաւ իրականացնել։ Հռոմէական կայսրութեան արեւմտեան եւ արեւելեան մասերու բաժանման ատեն Մալաթիա մաս կազմեց Արեւելեան Հռոմէականին կամ Բիւզանդականին եւ պահեց իր բարգաւաճումը իբր մայրաքաղաք Երկրորդ ՀԱՅՈՑ։

Մինչ այն քաղաքը միշտ կը զարգանար, ունենալով հիմնական պակաս մը, որ շատ ծանր կը կշռէր պատերազմներու ատեն քաղաքին վրայ։

Այդ թերին պարիսպի մը գոյութիւն չունենալն էր (Պրոկոպիոս, Նոյն)։ Այս պակասը լրացնել կ'աշխատի նախ Անաստաս կայսրը (490—518) բայց չի կրնար լրացնել իր վերահաս մահուան պատճառով։

Անաստասի սկսած գործը լրացուց, երբ արդէն քաղաքը կարեւոր դիրք մը գրաւել սկսած էր, Յուստինիանոս Ա· (527—565), որ ոչ միայն պարիսպը ամբողջացուց, այլ նաեւ շքեղացուց քաղաքը նորանոր շինութիւններով (Պրոկոպիոս, ՎԱՍՆ ՇԻՆՈՒԹԵԱՆՑ, Գ·, 15 եւ Գեր· Սահակ Կոգեան, էջ 16)։

Յուստինիանոս կայսրը, որ մեծ ջանքեր ըրած է ամրացնելու համար Բիւզանդական կայսրութեան սահմանագլուխները պարսիկ յարձակումներուն դէմ, բոլորովին փոխած է քաղաքին տեսքը եւ իրաւասութիւն տուած է Պրոկոպիոսի կառուցանելու պաշտպանութեան բերդեր, ամրոցներ եւ ճամբաներ։ Պրոկոպիոս ըրաւ նաեւ քաղաքը գեղազարդող շինութիւններ։ Յուստինիանոսի օրով այսպէս լոյս ծագեցաւ Մելիտինէն եւ դարձաւ Փոքր Ասիոյ

առաջնակարգ քաղաքներէն մին, եւ նկատուիլ սկսաւ մայրաքաղաք Փոքր Հայքի :

Երբ Փոքր Հայք եւ Կապադովկիան, ինչպէս նաեւ Արեւմտեան Հայաստանը ենթարկուեցան 532–ին վարչական նոր բաժանումներու, Մելիտինէն կեդրոնը եղաւ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՔ կոչուած նահանգին : Յետոյ յաջորդաբար մայրաքաղաք կամ կուսակալանիստ եղաւ նաեւ ԱՌԱՋԻՆ եւ ԵՐՐՈՐԴ ՀԱՅՔ նահանգներուն :

Դժբախտաբար Մելիտինէի զարգացման ընթացքը բնականոն պայմաններու մէջ չէ առաջացած եւ պարբերաբար կասած է, այնպէս որ Յուստինիանոսի շինութիւններէն ոչ մէկ հետք մնացած էր վերջը :

Յուստինիանոս կայսեր մահէն (565) հազիւ տասներկու տարի ետք, 572–ին Մելիտինէ ընդունեց մեծ հարուած մը վասնզի Խոսրով Ա. Նուշիրուան (531–579) Պարսից Արքայից Արքան մեծ ճակատամարտ մը մղեց Բիւզանդացւոց դէմ, ի Մելիտինէ, քաղաքը գրաւեց եւ հրոյ ճարակ բրաւ եւ աւերեց եւ ապա թողուց գնաց : Յետոյ խայտառակ պարտութենէ մը ետք, երբ ետ կը դառնար Սեբաստիոյ հետ Մալաթիան ալ աւերակի վերածեց :

Բիւզանդացիք աւերուած քաղաքը վերստին շինեցին եւ շէնցուցին, սակայն Մալաթիա եւ շրջակայքը, ինչպէս տեսնուեցաւ (վերը էջ 171), նոյնիսկ Արաբական աշխարհակալութիւններու առաջին օրերուն, Է. դարու կէսերէն իսկ ենթարկուեցան Արաբական տիրապետութեան եւ դառնալով Բիւզանդական կայսրութեան եւ Արաբ խալիֆայութեան շփման գօտիին մէջ այս երկու ոսոխ ուժերուն իրարու տուած հարուածներուն տխուր հետեւանքները կրեց, քանդումի եւ աւերումի ենթարկուելով :

Մալաթիան ետքը դարձեալ գրաւուեցաւ «անհաւատ»ներէն — ինչպէս Բիւզանդացիք կը կոչէին Արաբները — եւ քանի քանի անգամներ ձեռքէ ձեռք անցաւ :

Արաբները զայն 658–ին լքեցին, մեծ տարածութեամբ հողերու հետ, որոնք վերստին գրաւեցին Արաբները 661–ին Ումմեանց խալիֆայութեան հաստատութենէ ետք բայց դարձեալ չկրցան զայն պահել եւ ետ քաշուեցան 662–ին վերստին գրաւելու եւ հոն այս անգամ Արաբ պահակազօրք եւ Արաբ կառավարիչ մը դնելու, (տես վերը էջ 178) եւ իրենց տիրապետութիւնը տեւականացնելու համար :

Պէլլատհօրին Արաբ պատմիչը կը հաստատէ թէ Մալաթիոյ բնակիչները անկէ հեռացած են Ապտալլահ Իպն Ալ–Զուպայրի ժամանակ (ԲԱԶՄԱՎԷՊ, 1953, էջ 132) գուցէ չտոկալով քաղաքին պատերազմական վայր մը ըլլալուն անպատեհութիւններուն եւ անոր հետեւանք այն նեղութիւններուն որոնց կ'ենթարկուէին տարուբերելով երկու պետութիւններու միջեւ, որոնք իրարու ձեռքէ կը յափշտակէին Մելիտինէն, թոյլ չտալով անոր բնակչութեան որ խաղաղութեան բարիքները վայելէ :

Է. դարուն վերջերը երբ Արաբները բուռն յարձակումներ կ'ընէին Բիւ–

*-զանդական հողերու վրայ Մալաթիոյ բնակիչները լքեցին իրենց քաղաքը եւ Յոյները գրաւեցին եւ աւերեցին զայն :*

702-*ին աւերուած Մալաթիոյ մէջ կ'ապրէին միայն Հայեր եւ ուրիշ ոչ-մահմետական ժողովուրդներ :*

703-*ին, հաւանօրէն մոլեռանդութեամբ, Յուստինիանոս Բ. կայսրը* «Հալածեաց ... զազգս Հայոց ... ի ձեռն Փիլիպպիկոսին, եւ խնդութեամբ ընկալան զնոսա (*այսինքն վտարուած Հայերը*) : Տաճիկք Մելտինի եւ ի Միջագետս : Ու եղեւ մեծ ամրութիւն ուղղափառաց Ասորւոց կալով ընդդէմ երկաբնակացն եւ շինեցան վանօրայք եւ անապատք եւ գիւղօրէք Հայաստանեայց, եւ կան մինչեւ ցայսօր» (*Մ. ԱՍՈՐԻ*, 332) :

*Եփրատացւոց երկիրն ալ, Անթէպի շրջանակը ներառեալ Տաճկաց ձեռքն էր այն ատեն եւ մաս կը կազմէր ՄԻՋԱԳԵՏՔ նահանգին (Հմմտ. Դիոնիսիոս Բարսալիբիի. տես ՊԱՏՄ. ԱՆԹԷՊԻ, Ա.*, 18 *եւ Գալուստեան, ՄԱՐԱՇ, էջ* 201) :

*Հայերու թիւը Մալաթիոյ մէջ նորէն աճեցաւ երբ* «711-ին Փիլիպպիկոս կայսրն Հայաստանէն տարագրեալ Հայերը ստիպեց որ Մալաթիա եւ Դ. Հայոց երկիրները բնակին» (*ԹԷՈՖԱՆԷՍ, էջ* 585) :

*Այս Հայերը, երախտապարտ՝ Արաբներուն, անոնց բարեկամ եղան եւ իրենց վիճակակից Բիւզանդացիներէն հալածուած ու արաբ տիրապետութեան տակ գտնուած հողերու վրայ հաստատուած ուրիշ Հայերու հետ կատաղի թշնամիներ եղան Բիւզանդացիներուն, եւ ծառայեցին Արաբներուն եւ կռուեցան Բիւզանդացիներու դէմ :*

*Անաստաս Բ.* (713-715), *Թէոդոս Գ.* (713-717) *եւ Լեւոն Գ. Իսաւրացի* (25 *Մարտ* 717—741) *կայսրերը չկրցան վճռական յաղթանակ մը շահիլ եւ Արաբները վանել Եփրատէն անդին, այլ ընդհակառակը չկրցան տոկալ եւ նահանջեցին :*

*Այդ շրջանին Հայերը եւ Նաբատացիները, այսինքն արամերէն խօսող գիւղացիները* (Noldeke) *զորս Փիլիպպիկոս կայսրը վտարած էր պետութենէն, հաստատուեցան Մալաթիա եւ ամբողջ Չորրորդ Հայքին մէջ (ՊԵԼ-ԼԱՏՀՈՐԻ, էջ* 185, Michel le Syrien *Բ., էջ* 482) :

*Նոյնպէս այդ կռիւներու միջոցին է որ Օմար Իպն Ապտ էլ Ազիզ խալիֆան* (717—730) *երբ բիւզանդական հող մտաւ եւ գրաւեց Տարենտէն եւ զայն կործանեց, անոր բնակիչները փոխադրեց Մալաթիա, անշուշտ չէնցնելու համար քաղաքը :*

*Բիւզանդացիք փոխադարձեցին Արաբներուն* 740-*ին մինչեւ Մալաթիա առաջանալով, եւ քաղաքը ու շրջակայքը աւերելով, բայց երբ լուր առին թէ Արաբները օգնութեան պիտի գան Մալաթիացիներուն, նահանջեցին :*

*Հաշամ Իպն Ապտըլ Մելիք անձամբ եկաւ Մալաթիա եւ բանակը դրաւ քաղաքին դէմ եւ գործաւորներ բերելով կործանուած քաղաքը վերաշինեց իր ներկայութեան :*

Արաբներ մինչեւ 750, անվրդով պահեցին քաղաքը իրենց ձեռքը :

751-ին Կոստանդին Ձ. Կոպրոնիմոս կայսրը Արաբական խալիֆայութեան խռովեալ վիճակէն օգտուելով առաջացաւ Մալաթիա եւ պաշարեց քաղաքը : Տեղացիները օգնութիւն խնդրեցին Արաբներէն որոնք իրենց ներքին խռովութիւններուն պատճառով չկրցան օգնութեան հասնիլ :

Մալաթիա անձնատուր եղաւ ճարահատ : Կայսեր պահանջով քաղաքը պարպուեցաւ եւ իր բնակիչները այլուր տեղափոխուեցան :

Կոստանդին Ե. Կոպրոմինոս (741—775) կայսրը քարուքանդ ըրաւ քաղաքը եւ ինչպէս տեսնուեցաւ (վերը էջ ......) միայն ցորենի կիսաքանդ մթերանոց մը կանգուն ձգեց (752). (Հմմտ. Գելցեր, ՀԱՄ. ԲԻԶԱՆԴ. ԿԱՅՍԸՐՆԵՐԻ ՊԱՏՄ., էջ 161) :

Կոստանդին կայսրը Մալաթիայէն անցաւ Զորրորդ Հայք եւ անոր զանազան քաղաքներէն բազմաթիւ գերիներ տարաւ դէպի պետութեան կեդրոնը, մասնաւորապէս Թրակիա, ուր փոխադրուեցան նաեւ Մալաթիոյ հայ եւ ասորի բնակիչները (Ալպոյաճեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ., էջ 556) :

Այնպէս որ գրեթէ Մալաթիա պարպուած էր իր բոլոր հայ բնակիչներէն, երբ քաղաքը կ՚անցնէր բիւզանդական տիրապետութեան, գրեթէ աւերակի վերածուած :

Երբ Աբբասեան Խալիֆայութիւնը հաստատուեցաւ 750-ին եւ Արաբները դարձեալ զօրացան, Ապու Ճա'աֆար էլ Մանսուր, Աբբասեան երկրորդ խալիֆան (754—775) 756—757-ին (Հիճրէթի՝ 139—140) իր քեռորդին Իպրահիմ Իմամին որդին Ապտիւրահմանը ղրկեց Մալաթիոյ վրայ 70·000 մարդերով եւ վերագրաւեց քաղաքը երբ Կոստանդին Է. Կոպրոնիմոս կայսեր մղած կռիւներուն պատճառաւ աւերակի վերածուած էր համաձայն Րաշա էլ Մխիթար արաբ պատմագիրին :

Մանսուր խալիֆան վերաշինեց քաղաքը 756-ին (Հիճրէթի՝ 139-ին) վեց ամսուան մէջ, արաբական ոճով :

Ան շրջապատեց քաղաքը ամուր պարիսպներով, համաձայն Գալդաշանի պատմագիրին :

Նոյնը կը հաստատէ Խալիֆա Պին Խայեաթ մէկ տարուան թուականի յապաղումով մը՝ Մալաթիան վերաշինուած ցոյց տալով Հիճրէթի 140 (Քր.ի 757) թուականին, Իսլամներու ձեռքով, որոնք բնակութիւն հաստատած էին հոն :

Խալիֆան հոն շինել տուած էր գեղեցիկ մզկիթ մը եւ 1000 դինուոր դրած էր (Պելյատհօրի, էջ 185—7, Իպն էլ Յաքիհ, էջ 134 G. Le Strange, **The Hands of t e Eastern Cal pha e**, Cambridge, 1885, p. 120) :

Այս կայազօրքէն պզտիկ ջոկատներէ իւրաքանչիւրին համար բնակարաններ շինեց, երկյարկ եւ տակը ախոռով (Le Strange, **Palestine under the Muslems,** London, 1880, p. 499) : Շինեցին նաեւ դինուորական կայան մը

քաղաքէն 3 մղոն հեռու եւ ուրիշ մը Քուպաքիպ (արդի Թոխմա Սու) գետին վրայ:

Իպն Խալիքան, իր ՎԵՖԱՅԱԹ ԷԼ ԱԼԱՅԱՆի մէջ (տես Թրգ. Գէորգ Մարլեան էջ 238) կ'ըսէ թէ Մալաթիոյ վրայ խօսած են Միւթենեպպի եւ Ապու Ֆերաս իրենց բանաստեղծութիւններուն մէջ: Մանսուրի վերաշինած քաղաքը մասնաւորապէս Իսթախրի (էջ 62) Ժ. դարուն կը նկարագրէ իբրեւ ընդարձակ շինավայր մը, շրջապատուած բլուրներով, որոնց վրայ կը հասնէին որթատունկ, նշենին եւ կաղնին որովհետեւ իր հողերը կ'արտադրէին թէ՛ տաք եւ թէ ցուրտ երկիրներու բոյսերը (Հմմտ. ԻՊՆ ՀԱՈՒԳԱԼ, էջ 120):

«Մալաթիա, կ'ըսէ Իսթախրի, ընդարձակ քաղաք մըն է, եւ ամենահըզօր ամրոցներէն մէկը եւ ամենէն կարեւորներէն մէկը, իր կայազօրքով եւ շինութեամբ», ինչպէս անգամ մը յիշուեցաւ վերը[1]: Իսթախրի[2] (էջ 55—62), Միջին Դարու երկրաչափ պատմագիրը, որ Փոքր Ասիոյ մէջ շատ մը շինութիւններ կը վերագրէ Մանսուրի (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Բ. տարի, Թ. 2, էջ 10) Մելիտինէի ալ կարեւոր շինութիւնները անոր կը վերագրէ: Արդարեւ անոր կառուցած մզկիթներուն եւ նշանաւոր բաղնիքներուն մնացորդները կը նշմարուէին մինչեւ վերջերը:

Քաղաքին վերաշինութենէն ետք 758-ին հոն համախմբուեցան նախկին բնակիչներէն ողջ մնացողները եւ շէնցուցին քաղաքը: Անոնց մէջ ապահովաբար Հայերը կարեւոր թիւ մը ունէին:

Այդ թուականէն ետք Մալաթիա շատ անգամներ գրաւուեցաւ Բիւզանդացիներէն եւ ետ առնուեցաւ Իսլամներէն:

Այնքան անհաստատ էր արար տիրապետութիւնը որ Եագութ ԺԳ. դարուն (Քր.է ետք) զայն իբրեւ յունական քաղաք մը կը յիշէ[3]: Իսկ յաջորդ դարուն Mustawfi Մալաթիան կը ներկայացնէ գեղեցիկ քաղաք մը հզօր ամրոցով մը (Le Strange, նոյն, էջ 120):

Հաւանօրէն Արաբները Մալաթիան վերջնապէս գրաւած են Հարուն էլ Ռաշիտ խալիֆայի (786—809) ատեն, երբ ան կ'առաջանար դէպի Պոնտոս:

Քիչ ետքը Մալաթիա բուն աւատական կարգերու կը դառնար կեդրոնը առանձին էմիրութեան մը, որ ճորտ էր Պաղտատի խալիֆային:

Այս էմիրը իբր սահմանապահ, կարեւոր դեր կատարած է, մանաւանդ այն պահուն երբ Պաւլիկեանք մեծ ուժ մը կը ներկայացնէին եւ մեծ աջակից մըն էին Արաբներու պայքարին ընդդէմ Բիւզանդացիներու, որոնք չափազանց անգթօրէն կը վարուէին այդ աղանդաւորներու հետ, զանոնք ծա—

(1) Տես վեր, էջ 185:

(2) Իսթախրի կամ Ասթախրի (950 Քր.ե), արաբ նշանաւոր երկրաչափ եւ շրջիկ պատմագրան հեղինակ՝ Մասալիք ալ Մամալիք եւ Ուխդուլ իւլ Աշտալի եւ մեծ ներքողը Մանսուրի արշաւանքներուն եւ շինարարութիւններուն:

(3) Քիչ մը առասպելապատում է, վասնզի անոր շինութիւնը Աղեքսանդրի կը վերագրէ. իսկ Մանսուրի շինած մզկիթը՝ Մարգարէին ընկերներէն մէկուն:

նոր հալածանքի առարկայ ըլլալով։ Արաբները օգտուեցան բիւզանդական կայսրութիւնը տագնապի մատնող այս շարժումէն, որուն մէջ կարեւոր դերակատար մըն էր կայսրութեան հայ բնակչութիւնն ալ, եւ ներքնապէս քայքայելու եւ տկարացնելու համար քրիստոնեայ կայսրութիւնը՝ զանոնք հովանաւորեցին եւ քաջալերեցին։

Խալիֆան հրահանգ տուաւ Մալաթիոյ էմիրին որ զանոնք հիւրընկալէ եւ անոնց տեղեր յատկացնէ եւ անոնց համար քաղաքներ շինէ։ Մալաթիոյ էմիրը՝ Օմէր այս ուղղութեամբ շատ օգտակար եղաւ Պաւլիկեաններու, որոնք կազմեցին կրօնական հասարակապետութիւն մը Տիվրիկ քաղաքը կեդրոն ունենալով։

Իրենցմէ մաս մըն ալ ապահովաբար Մալաթիա հաստատուած էր, այնպէս որ հակառակ անոր որ Արաբները աւելի ամրացուցին քաղաքը 871-էն, եւ կրցան դիմադրել Վասիլ Ա.ի, բայց իր դիրքը կայսրութեան դրան եւ սահմանագլուխին վրայ տեւականապէս վտանգուած էր, եւ Բիւզանդացիները պարտաւոր էին մեծ ճիգեր ընել զայն պաշտպանելու համար, քանի որ Մալաթիան մեկնակէտն էր յելուզակային եւ աւարառութեան արշաւանքներուն, զորս Արաբները կը գործադրէին։

Վասիլ Ա. Մակեդոնացի (867—886) հազիւ ուրեմն յաջողեցաւ Մալաթիան (871-ին) եւ պաւլիկեան կեդրոնը՝ Տիվրիկը գրաւել (878) եւ ջախջախել անոնց մարտական ուժը, որ Փոքր Ասիոյ մուտքին վրայ մեծ վտանգ մը կը ներկայացնէր Արաբներու հետ գործակցելով։

Բիւզանդական կայսրութիւնը երկար մաքառումէ մը ետքն էր որ կրցաւ զայն ընկճել, կանգ չառնելով որեւէ զոհի եւ նեղութեան առջեւ, վասնզի կ'ուզէր ամէն գնով Մալաթիոյ կամրջագլուխը եւ կարեւոր ռազմական դիրքը իր ձեռքը ունենալ։

Իսթախրի կ'ըսէ թէ Բիւզանդացիք հայ իշխաններու մէջ իրարու հանդէպ ատելութիւն սերմանեցին։ Սեբաստիոյ, Բալուի եւ Ամիթի պէս մօտակայ իշխանութիւններ անտարբեր մնացին Մելիտինէի վրայ գործուած արշաւանքներուն հանդէպ. այնպէս որ Մելիտինէն չդադրեցաւ ձեռքէ ձեռք անցնիլ եւ տեւական կերպով տիրող մը չունեցաւ մինչեւ որ Պաւլիկեանք չտկարացան։

Պաւլիկեանք առաջին կարեւոր հարուածը ստացան 3 Սեպտեմբեր 863-ին երբ ահեղ ճակատամարտի մը մէջ ինկան Պաւլիկեանց պետը Կարբէաս եւ Մալաթիոյ էմիրը՝ Օմէր։

Պաւլիկեանց աններող հալածողը Վասիլ Ա. Մակեդոնացի (867—886) շարունակեց անոնց դէմ պայքարը, մինչեւ որ ընկճեց զանոնք, բայց Մալաթիա չփրկուեցաւ վտանգուած վայր մը ըլլալէ, քանի որ Միջագետքէն, Սուրիայէն եւ Հայաստանէն կատարուած յարձակումներուն առաջին թիրախը ան էր։

Լեկանտոն գաւառը, որ նախապէս հայկական զինուորական թեմի մաս

կը կազմէր, եւ իր կեդրոնը Մելիտինէի շուրջն էր, Լեւոն Զ. Իմաստունը (886—912) Արաբներու ճնշումը նկատելով՝ անոր առանձին կարեւորութիւն տուաւ եւ իր յաջորդը Կոստանդին Է. Ծիրանածին (912—959) 913–էն ետք Լեկանտոնը առանձին թեմի վերածեց (Ramsey, **The Historical of Asia Minor,** էջ 317):

Այս զինուորական հրամանատարութեան իրաւասութեան տակ էր Հաճնոյ մօտ Կամանայէն մինչեւ Մելիտինէ եւ Եփրատ, կեդրոն ունենալով Լարիսա քաղաքը: Այս թեմին թէ՛ քաղաքային եւ թէ զինուորական պետ նշանակուեցաւ Մլեհը, Պատրիկի աստիճանով:

Այդ բանակաթեմին մէջ էր Կամմաղինէ (Եփրատացիք), ուր Մլեհի առաջնորդութեամբ եկան Հայեր եւ տարածեցին իրենց իշխանութիւնը դէպի Կիլիկիա, ուր Անարզաբա եւ Մամեստիա քաղաքները գրաւեցին:

Արաբական տիրապետութեան տակ Մալաթիան ալ փայլուն շրջան մը ունեցած է: Այս շրջանին, ուր Բագրատունիք ալ փայլուն վիճակ մը ունէին արաբական Հայաստանի մէջ, իբր շէն եւ բարգաւաճ քաղաք յիշուած վայրերուն մէջ էին Մելիտինէ (Լաստիվերտցի, ԻԱ., էջ 92), Դուին (Թովմա Արծրունի, էջ 58), Արճէն (Լաստ., ԺԲ., էջ 58), Կարս (Լաստ., ԺԵ., էջ 61), Անի (նոյն, ԻԳ., էջ 109), Կարին (Կեդրինոս, Բ., 597) եւ վերջապէս Պարտաւ, ուրկէ կ'անցնէին Տերպենտի ճամբով հիւսիսէն բերուած վաճառելի գերիները (**Michel le Syrien,** Գ., 145):

Համբաւուած էին Մելիտինէ իր բարգաւաճ վաճառականութեամբ, Կարին իր հարստութիւններով, Կարս՝ իր շուկային կարեւորութեամբ, եւ Պարտաւ իբր գերեվաճառութեան վայր:

Այդ շրջանին, ինչպէս Լաստիվերտցի կը հաստատէ, անուանի էին Մելիտինէի վաճառականները ամբողջ աշխարհի մէջ: Michel le Syrien (Գ. հտ., էջ 145) ալ կը խօսի Մելիտինէի բնակիչներէն ոմանց հարստութեան վըրայ:

Վերստին բիւզանդական տիրապետութեան ենթարկուելէ ետք Մալաթիա կորսնցուց իր փայլը, վասնզի Արաբները չդադրեցան մշտապէս արշաւանքներ կատարել Եփրատի արեւմուտքը եւ Բիւզանդացիք շատ դժուարութեամբ կը կասեցնէին արաբ յարձակումները: Ժ. դարուն սկիզբը նոյնիսկ Բիւզանդացիք շնորհիւ հայ տաղանդաւոր զօրավարներու՝ 916—917 թուականներէն սկսեալ դէպի արեւելք առաջացան եւ հասան մինչեւ Եփրատ եւ նոյնիսկ Տիգրիս:

925–ին Դոմեստիկոս Յովհաննէս Գուրգէն առաջին անգամ յաղթական արշաւ մը կրցաւ գործադրել դէպի Մալաթիոյ շրջակայքը եւ գրաւեց քաղաքը, ուր հաստատուեցաւ բիւզանդացի ԿՈՒՐԱՏՈՐ (=վերակացու) մը, առանց ջնջելու Մալաթիոյ էմիրին իշխանութիւնը, որ պահուեցաւ պայմանով որ անիկա փոխանակ խալիֆային՝ Կ. Պոլսոյ ծառայ դառնար (928):

*Սակայն շատ քիչ ժամանակ վերջը Արաբները նորէն գրաւեցին քաղաքը, ուր Յովհաննէս Գուրգէն 934–ին կրկին գալով հոն գրաւեց եւ գերի վարեց բնակչութիւնը, եւ որովհետեւ իր գրաւման տեւականութեան վրայ հաւատք չունէր, քանդեց պարիսպները, որպէսզի Արաբները հոն չամրանան։*

*Այսպէս քաղաքը զրկուեցաւ թէ՛ իր բնակչութենէն եւ թէ իր ամրութիւններէն. Մալաթիա մնաց անպաշտպան եւ ամայի եւ ենթակայ յարձակումներու, որոնք տեւական հանգամանք առած էին։*

*Նիկեփոր Փոկաս (963—969), որ ունէր աւելի հսկայ ծրագիր մը, որոշած էր Իսլամները բոլորովին ջնջել բիւզանդական կայսրութեան բոլոր հին եւ նոր հողերուն վրայէն։ Մելիտինէն կրկին բնակիչներով (մանաւանդ Ասորի) լեցուց եւ վերստին շէնցուց։ Բիւզանդացիք յաջողեցան Մելի-*




**ՀԻՆ ՔԱՂԱՔԻ ՅԱՏԱԿԱԳԻԾԸ**

**1. Պարիսպներ, 2. Ուլու ճամի, 3. Աւերակ մէդրէսէ, 4. Ասփլ ճամի, 5. Չիարէք, 6. Հին շէնքերու մնացորդներ, 7. Մինարէթ, 8. Ազ-մինարէ, 9. Կարաւանսերայ։**

*տինէն պահել զայն մէկ դարէն քիչ մը աւելի ժամանակ իրենց իշխանութեան տակ, երբ իբր հետեւանք ասիական բարբարոսներու արշաւանքներուն՝ ԺԱ. դարու առաջին քառորդին Փոքր Հայք հաստատուեցան Վասպուրականի Արծրունիները եւ շուրջ նոյն դարուն կէսերը հոն փոխադրուած Անիի եւ Կարսի Բագրատունի պետերը, որոնք իրենց հետեւորդներով հաստատուած էին Փոքր Հայքի հարաւային կողմերը՝ Տաւրոսի լեռներուն մէջ ամրացած ուրիշ քանի մը գլխաւոր իշխաններու հետ, որոնց նստոցներն էին Մարաշ, Տարսոն, Անտրուն, Անտիոք եւ Եդեսիա քաղաքները։*

*Անոնցմէ մէկն էր նաեւ Գաբրիէլ Մալաթիոյ հայ-հոռոմ իշխանը, որ*

խնամին էր Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին: Ասոնք միացնելով համադաշնակցութեան մը մէջ Փոքր Ասիոյ մուտքը պաշտպանելու ձեռնարկը, զոր Փիլարտոս իշխանապետ կատարեց, ձախողեցաւ Բիւզանդիոնի անհեռատեսութեամբ, որ չկրցաւ պէտք եղած միջոցները ձեռք առնել գոնէ Եփրատի գիծը պաշտպանելու համար:

Սելճուկները, որ Տուղրիլի հրամանատարութեամբ 1057-ին հասած էին մինչեւ Եփրատ, 1058-ին Ապուտինարի եւ Իսանէ Ռուպելեանի առաջնորդութեամբ անցան Եփրատը, եւ ինչպէս տեսնուեցաւ՝ գրաւեցին Մալաթիան եւ Հանձիթը: Մալաթիա տասը օր կողոպտուեցաւ եւ գերեվարութեան ենթարկուեցաւ Սելճուկներու կողմէ (Հ. Սահակ Վրդ. Կոգեան, ՄԵԼԻՏ, ՄԵԼԻՏԻՆԷ, ՄԱԼԱԹԻԱ, էջ 5, ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ, էջ 89, Յովհաննէս Ժ. Մար Շուշան Ասորի պատրիարք, եւ այլք (1):

Կոստանդին Դուկաս կայսրը (1059—1066) վերաշինեց քաղաքը եւ պարիսպները 1060—1061-ին, բայց քաղաքը մնաց բարբարոսներու սպառնալիքին տակ:

Ալփասլան (1063—1078) սելճուկ աշխարհակալը, որ մինչեւ Քեսուն տիրապետած է, ջարդեց Մալաթիոյ յոյն բանակը (Լաստիվերտցի, էջ 167) եւ տիրեց Մալաթիոյ:

19 Օգոստոս 1071-ի Մանազկերտի ճակատամարտը, որ բիւզանդական կայսրութեան համար ճակատագրական նշանակութիւն մը ունեցաւ, ազդանշան մը եղաւ կայսրութեան ասիական նահանգներուն ըմբոստացման: Փիլարտոս՝ Ռոմանոս կայսեր նահանջի գիծը պաշտպանելու պաշտօնն ունեցող զօրավարը, ինչպէս տեսնուեցաւ, յղացաւ գաղափարը Փոքր Ասիոյ մուտքին վրայ համադաշնակցութիւն մը կազմելու Հայաստանէն հոն փոխադրուած հայ թագաւորներու եւ իշխաններու գործակցութեամբ, որոնք իրենց զինուորներով գաղթած էին Փոքր Ասիա:

Փիլարտոս անոնց հողեր կու տար եւ զանոնք կը հովանաւորէր:

Անոնցմէ մէկն էր Գաբրիէլ հայ-հոռոմ, որուն տուաւ Փիլարտոս Մալաթիան (2), ուր ան տիրեց մինչեւ 1101 Սեպտեմ. 18, մաքառելով իսլամ իշխանութիւններու դէմ:

Ան 1098-ին պաշտպանեց Սելճուկ Ռումի Սուլթան Գիլճ Ասլան Ա.ի (1092—1107) դէմ Մալաթիան երբ ան պաշարեց քաղաքը: Գաբրիէլ իշխան քաջութեամբ դիմադրեց այս յարձակման, որ ապարդիւն անցաւ, վասնզի Սուլթանը երբ լսեց որ Խաչակիրները Կոտրֆուայի առաջնորդութեամբ իր սահմանները մտած են, թողուց Մալաթիան եւ գնաց իր տէրութեան արեւմտեան սահմանագլուխը պաշտպանելու:

Սելճուկները, որոնք Բիւզանդացիները քշած էին մինչեւ Կ. Պոլսոյ դուռները ԺԱ. դարուն, երբ Խաչակիրներէն վանուած Փոքր Ասիա քշուեցան եւ ստիպուեցան իրենց կեդրոնը Նիկիայէն փոխադրել Իկոնիոն:

Խաչակիրները դէպի արեւելք առաջանալով պարտութեան մատնեցին

(1) Տես անդ, էջ 214-5:

(2) Տես անդ, էջ 230:

Գլըճ Ասլանը, որ ապաստանեցաւ Փոքր Ասիոյ գրաւման համար իրեն մրցակից հանդիսացող Դանիշմենդի քով, որուն հետ զինակցելով իր ոյժերը կազմակերպեց եւ չորս տարի ետք յաղթեցին Խաչակիրներուն: Դանիշմենդ պաշարեց Մալաթիան եւ թէպէտ Անտիոքի կոմսը Պոհեմունդ օգնութեան հասաւ, բայց գերի ինկաւ եւ Դանիշմենդ Կիւմիւշթէքին 18 Սեպտ. 1101-ին գրաւեց Մալաթիան, որ ունեցաւ խաղաղութեան շրջան մը՝ Դանիշմենդ Ղազի Սուլթանին առեն (1106—1136):

Բայց միշտ Մալաթիա կը ներկայացնէր ապահովութեան տեսակէտով դժբախտ երկիր մը:

Դանիշմենդ հազիւ հինգ տարի տիրակալած էր, երբ Գլըճ-Ասլան Ա.ի (1092—1107) զօրքերը գրաւեցին Մալաթիան: Անընդհատ պայքարներէ ետք, որուն թատրը Մալաթիան եղաւ, Դանիշմենդ կրկին տիրեց քաղաքին, որ ունեցաւ խաղաղութեան շրջան մը Դանիշմենդ Ղազի Սուլթանին առեն (1106—1136):

ԺԱ. եւ ԺԲ. դարերու այս խառնակ ժամանակամիջոցին, երբ Մերձաւոր Արեւելքը Խաչակրութիւններու հետեւանօք տակնուվրայ էր, Մալաթիա ենթարկուեցաւ Ֆրանկներու կամ Լատիններու կողմէ Ասորիքի կամ Սուրիոյ մէջ կազմուած իշխանութիւններէն մէկուն՝ Եդեսիոյ կոմսութեան, որ միայն կէս դար տեւեց, միշտ տեւական պատերազմի մէջ:

Հետեւաբար չէ կրցած ունենալ շատ հաստատուն սահմանագլուխներ: Բայց այն կը տարածուէր արդի Մալաթիոյ, Սեւերեկի, Ուրֆայի, Մարաշի եւ Անթէպի գաւառներուն վրայ: 28 Նոյեմբեր 1144-ին Մուսուլի տէրը Զանգի, քանի մը օրերու պաշարումէ մը ետք, գրաւեց Եդեսիան եւ վերջ տուաւ այս կոմսութեան (Բարհեբրէոս, ՔՐՈՆԻԿ, էջ 326, Իբն էլ Աթիր. Թ. 64—66, ՊԱՏՄԱԳԻՐՔ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԽԱՉԱԿՐԱՑ, հտ. Բ., մաս Բ., էջ 118 եւ Rubina—Duval, **Histoire Politique, Religieuse et Littéraire d'Edesse,** p. 299 etc.):

ԺԲ. դարուն Մալաթիա այս կոմսութեան տակ էր եւ այս պատճառով պահ մը Մալաթիոյ եպիսկոպոսութիւնը Եդեսիոյ արքեպիսկոպոսութեան ստորադաս էր (Եդեսիոյ կոմսութեան երկիրներուն եւ այլ մանրամասնութիւններու համար E. Rey, **Les Colonies Franques de Syrie aux XIIme et XIIIme Siècles,** Paris, 1883), ինչպէս նաեւ Բաբգէն կաթողիկոս ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԿԻԼԻԿԻՈՅ, 1939, էջ 246—250):

Բոլոր լատին իշխանները չկրցան տոկալ, վասնզի ԺԱ. դարուն Ա. Խաչակրութեան ժամանակ Դանիշմենդները կը ճնշէին եւ ԺԲ. դարուն Իսլամները անկէ կը վանէին քրիստոնեայ Պալտուինը, որ տեղի կու տար Արաբներու առջեւ:

Ռումի Սելճուկ Սուլթանը Մանսուր 1143-ին Խաչակիրներէն կ՚առնէր վերջնականապէս Մարաշը, ինչպէս նաեւ Ռապանը, Քեսունը եւ Պեհեսնին (ՈՒՌ., էջ 501, 504—5 եւ ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 423), սակայն չի կրնար առնել Մալաթիան:

Նոյն ժամանակները, Ճոսլին գնաց Մար-Պարսամայի վանքը (Մալա—

թիոյ մօտ) եւ խաչերով անոր ընդառաջ ելան, եւ տարին դայն Աստուծոյ եկե-
ղեցին, եւ նա վանքին ամրոցն առաւ եւ հոն զօրք կեցուց, եւ ինքը Թլպաշար
եկաւ: Եւ նոյն տարին Թուրքաց ձեռքն ինկաւ պարապ եւ ոչինչ առիթով մը,
քանզի կ՚ըսեն թէ որսի ելաւ, եւ հեծեալներն իր քովէն ցրուեցան եւ ձին գինքը
ծառի մը զարկաւ. որով ինկաւ եւ խելքը կորսնցուց, եւ երկու Թուրք դայն
գտան եւ առանց ճանչնալու Հալէպ տարին եւ Հրեայի մը ծախեցին: Յետոյ
ճանչցուելով տարուեցաւ Նուրեատինի քով (Հալէպի Սուլթանին, որ Զանգիի
որդին էր): Եւ անիկա դայն բանտը դնելով, բոլոր երկիրը անկէ խլեց — Ս.-
գայը, Թլպաշարը, Պիրը, Ռատանը, Մարաշը, Պեհեսնին, Հասնիմանսուրը,
Սամոսատը, Կարկառը, Քախթան եւայլն: Միմիայն իրենց մնաց Հռոմկլան,
ուր իր կինը իր դուստրներովը ապաստանած էին: (ՄԻՔ. ԱՍՈՐԻ, էջ 423):
ճօսլին մեռաւ բանտին մէջ (ՄԱՐԱՇ, էջ 201 եւ ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 1328):
Մալաթիան պահ մը Լատիններու, Յոյներու եւ Սելճուկներու միջեւ
կռուախնձոր ըլլալէ ետք՝ 1176–ին Գըլըճ Ասլան Բ. (1156—1193) կը յաղթէ
Յունաց Մալաթիոյ մօտ (Հ. Յ. Վրդ. Տաշեան, ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ, էջ 349) եւ
1178–ին չորս ամսուան պաշարումէ մը ետք վերջնապէս կը գրաւէ Մալաթիան:
Ռումի Սուլթանները քաղաքին պարիսպները վերաշինեցին եւ կրցան դայն
պահել իրենց ձեռքը մինչեւ Մոնկոլներու արշաւանքը (1235):
Սելճուկեան շրջանէն միայն քանի մը դրեթէ ամբողջ կործանուած եւ
աւերուած շէնքեր կը մնային (Հմմտ. Ch. Texier, Asie Mineure, p. 587):
Մոնկոլները, որոնք իրենց իշխանութիւնը կը կանգնէին սելճուկ կայ-
սրութեան աւերակներուն վրայ, կողոպուտի ենթարկեցին բազմաթիւ եկեղե-
ցիներ, որոնք կը գտնուէին Անտիոքի պատրիարքին իրաւասութեան ենթակայ
եպիսկոպոսին իշխանութեան տակ: Անոնց մեծ մասը կողոպտուէն ետք աւե-
րուեցան կամ հրկիզուեցան (ԱՊՈՒԼՖԱՐԱՃ, Hist. Dynastiarum, p. 318, 333.
ըստ Ch. Texier):

Այս աղէտէն ետք դարձեալ աղքատութեան ենթարկուեցաւ Մալաթիան,
որ մոնկոլ Իլղանեան ճիւղին ձեռքը անցաւ:
1315–ին, քաղաքը գրաւեց Եգիպտոսի Սուլթան Մալիք էլ Նասիրը, ո-
րուն զօրքերը կողոպտեցին եւ հրդեհեցին քաղաքը (տեսնել ձեռագիրներու
բաժինը. Թ. 271 եւ Թ. 343, Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքի ձեռագիրնե-
րը, Գարեգին Կաթողիկոս Յովսէփեան, ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, էջ
Ա. 529—530), որ բաւական երկար ատեն մնաց Մեմլուքներուն իշխանութեան
կամ հովանաւորութեան տակ, վասնզի Զիւլքատրեան իշխանական տոհմը կա-
ռավարեց երկիրը, Մեմլուք գերիշխանութեան ներքեւ:
Օսմանեան Թուրք Սուլթան Պայազիտ Ա. առաւ Մալաթիան 1391–ին
բայց չկրցաւ հոն հաստատուիլ մէկ անգամէն եւ քանի մը անգամ պարտաւո-
րուեցաւ լքել քաղաքը կրկին գառնալու համար:
Վերջին ուժգին հարուածը տուաւ Լենկթիմուր, որ 1401–ին գրաւեց
Մալաթիան հակառակ ցոյց տրուած հերոսական դիմադրութեան: Քաղաքին

բնակիչներուն մեծ մասը կը ջարդուի: Մաս մըն ալ կը գերեվարուի: Թիմուրլենկի հրոսները քաղաքին ամբողջ հարստութիւնը կը կողոպտեն եւ կը տանին իրենց հետ: Ինչ որ մնացած էր կանգուն հնօրեայ քաղաքին յիշատակարաններէն, ինչպէս դղեակները եւ մզկիթները, հրոյ ճարակ կ'ըլլան: Անոնց հետ քարուքանդ կ'ըլլայ քաղաքին պարիսպը: Բարբարոսները պարիսպի ամէն մէկ քարը՝ իրենց գերեվարած ժողովուրդին շալակով, Եփրատ թափել կու տան որպէսզի պարիսպը անգամ մըն ալ չվերաշինուի (Ա. Քէքչեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Ա. տարի, Թ. 3, էջ 5): Եւ երբ Սուլթան Սելիմ Ա. Եաւուզ (1512—1520) Գող Հիսարի յաղթանակէն ետք 1516-ին վերստին կը գրաւէ Մալաթիան, հոն կը գտնէ միայն աւերակոյտ մը, զոր կարելի չէր վերածել քաղաքի մը:

Ան բնակավայրը եղաւ վաչկատուն եւ թափառիկ քիւրտ աշիրէթի մը, որ բնաւ չճանչցաւ Բ. Դրան հեղինակութիւնը եւ դարձաւ տեւական արգելք մը Մալաթիոյ բարօրութեան վերականգնումին, հակառակ քաղաքին իր շտեմարան նպաստաւոր դիրքին:

Հին քաղաքին վրայ խօսող հայ ուղեգիրներու անդրանիկն է Սիմէոն Լեհացի, որ 1613-ին այցելած է: Անիկա Մալաթիան կը նկարագրէ շատ սեղմ տողերով, որոնք շատ բան չեն ըսեր, սակայն բաւական յատկանշական են, վասնզի ցոյց կու տան որ թէեւ քաղաքը օսմանեան տիրապետութեան ենթարկուած էր հարիւր տարիէ ի վեր, սակայն տակաւին մեծ քաղաքի մը շուքը չունէր:

Սիմէոն Լեհացի, որ Խարբերդէն Մալաթիա այն ատենուան ճամբորդութեան միջոցներով վեց օրէն հասած է, քաղաքին դիրքը կը նկարագրէ· «Բնաւ շէնք չտեսանք, միայն խանէր: Եւ էր խան մի գեղեցիկ, զոր Կուրնի խան կոչեն: Եւ Մալաթիա էր պարսպաւոր եւ մրգաշատ, բայց մարդ չկայր, միայն պահապանք, եւ ասեն թէ Աղպուս գեղն են, զի ամէն տարի կրոցն կ'երթան ի գեղն, եւ քաղաքն մէն(մինակ) կու մնայ որպէս Սիս» (*ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆ*, էջ 189—190):

Զարմանալի է որ բնաւ չի խօսիր քաղաքին շինութիւններուն եւ ուրիշ որպիսութիւններուն վրայ: Միայն կ'ըսէ թէ «Կայր մեծ եկեղեցի մը քարէ Լուսաւորիչ անուն, եւ երեք քահանայ, հարիւր տուն հայ եւ լիութիւն, աժանութիւն առատ, խ (40) խիարն մէկ դրամ · Ե · (5) Զ · (6) ձմերուկ մէկ դրամ, Դ · (4) հաց մէկ դրամ, չորս դրամ օխա մը միս»:

Այս հետաքրքրական եւ անհամեմատ աժանութեամբ քաղաքին վրայ դժբախտաբար ուրիշ տեղեկութիւններ չի տար այս Դպիրը, որուն ուղեգրութիւնը այսքան ժլատ չէ եղած ուրիշ քաղաքներու համար:

Հակառակ անոր որ երկու շաբաթ մնացած է հոն, իր տեղեկութիւնները շատ խեղճ են:

Սիմէոն Դպիրէն ետք, ԺԹ. դարու սկիզբը, 1806-ին, Հ. Ղուկաս Վրդ. Ինճիճեան իր ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ ՉՈՐԻՑ ՄԱՍԱՆՑ ԱՇԽԱՐՀԻ գործին մէջ այս քաղաքին մասին տուած է կարգ մը տեղեկութիւններ, որոնք չեմ կարծեր

*թէ ականատեսի տեղեկութիւններ ըլլան, սակայն անշահեկան չեն:*

*Ահա թէ ի՛նչ կը գրէ Ինճիճեան Վրդ. Մալաթիոյ համար.—*

«Մայրաքաղաք... հռչակաւոր յոյժ, ի նախնումն կառուցեալ ի հիւսիսակողմն լայնարձակ դաշտի՝ որ պատեալ կայ լերամբք, յարեւմտեան կողմն Եփրատայ, իբրեւ 2 մղոնաւ հեռի ի նմանէ, ընդ որ անցանեն նաւակօք, որք ի պատրաստի կան անդէն, եւ 3 օթեւանք հեռի ի Սեւաստոյ, պարիսպ նորա քայքայեալ: Առ պարսպաւն անցանէ Թուխմա գետակ, բնակիչք են տաճիկք եւ յազգէս Հայոց, յորս բազումք գտանեն հետամուտք գրոց: Ջուր քաղաքին առատ. ունի շուկայս, բաղանիս, մզկիթս եւ իջեւանս, այսինքն խանս, յորոց զմին շինեաց Մուստաֆա փաշայն, որ էր թիկնապահ, այսինքն սիլէհտար Դ. Սուլթան Մուրատին, վասն գոլոյ քաղաքիս մի ի յանցիցն արեւելեան կողման՝ ի գալն ի Կոստանդինուպոլսոյ, եւ վասն յաճախութեան երթեւեկաց ի սմա: Եկեղեցի քաղաքիս յանուն սրբոյն Ստեփանոսի, եւ առ նովաւ տաճար սրբոյն Սարգսի, եկեղեցիքն են քարաշէն, իսկ ժամատունքն փայտաշէն:

Արտաքոյ քաղաքին ի... Օրտուղու պարտէզն՝ է վանք յանուն Սուրբ Լուսաւորչի. անդ նստի եպիսկոպոս Մալաթիոյ: Յայսմ քաղաքի ծնեալ ասեն զՊատտալ Ղազին որպէս գրէ Քեաթիպ Չէլէպին, եւ տեղի ծննդեան նորա ուխտատեղի գոլով առ այլազգիս, Մէլէք Ահմէտ փաշայն զմբէթ քարակերտ կանգնեաց ի վերայ նորա ի 1056 Հիճրէթին, յամին 1646»: (*ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ ՉՈՐԵՑ ՄԱՍԱՆՑ ԱՇԽԱՐՀԻ*, Ա., հտ., էջ 322):

*Իսկ* 1853-*ին Հ. Ղեւոնդ Ալիշան իր ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԵԱՆ մէջ* (*էջ* 556) *հին եւ նոր Մալաթիաներու վրայ կը խօսի իբրեւ պատմական նշմար: Ան ունի տեղեկութիւններ, որոնք հին Մալաթիոյ կը պատկանին, ըստ այսմ Մելիտինէ էր* «Գլխաւոր քաղաք... Մելիտինեայ վիճակին ի Դ. Հայս, ուր դադարեցին առ վայր մի աշակերտք Ս. Մեսրոպայ յերթալ նորա ի Բիւզանդիոն, պատերազմ մեծ մղեալ առ սովաւ Յուստինիանոս կայսր ընդ Խոսրովու Պարսից արքային յամին 572: Ի Ժ. եւ ԺԱ. դարու մեծացաւ վաճառականութեամբ կարաւանաց Հնդկաց անցանելով ընդ այս եւ եղեւ շահաստան մեծ 56 եկեղեցիք էին յայնժամ ի նմա, ի կէս ԺԱ. դարու առեալ զայն սկիւթական Պարսից կոտորած անհնարին գործեցին բազմամբոխ բնակչացն[1], մինչ զի ծփայք յարենէ ի ծայրէ ի ծայր, ըստ ասելոց ուրումն ի մերոց պատմչաց, եւ յզկնիսն բազում անգամ բռնաբարեալ ի Պարսից եւ յիշխանաց Անտիոքայ՝ վտանգեցաւ յաճախ»: *Հ. Ղ. Ալիշանի համաձայն նոր Մալաթիան քովն էր հինին եւ Մելասի եզերքէն քիչ հեռու, պատեալ խարխուլ պարիսպներով: Ըստ Ալիշանի ոչ-սակաւ վտանգուած է Հաֆըզ փաշայի մղած պատերազմներուն մէջ եւ հետեւաբար քաղաքը ետ մնացած է:*

*Ալիշան, ինչպէս կը տեսնուի, հին քաղաքի վրայ կը խօսի, վասնզի կ'ըսէ թէ վատառողջ է քաղաքը, ուստի ամառը եւ աշնան բնակիչները կ'ապա—*

---

(1) *Ականարկութիւն 1058-ի Սելճուկներու գրաւումին:*

*տանին Ասպուզի աւանը դաշտին մէջ, առողջարար օդով եւ թթենիներով եւ բազմազան ծառերով եւ ջրաղարձերով զուարճացեալ :*

*Այսպէս* 1840 *թուականէն ի վեր չարաթացեալ քաղաքին մասին Սրբուանձտեանց Գարեգին Եպս. իր* ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*ի մէջ* (*Ա. հտ., էջ* 304—6) *կը խօսի առանց սակայն մեծ նորութիւններ տալու :*

*Ան աւելի իր այցելութեան տպաւորութիւնները կու տայ : Ան հոն գտած է քաղաքին մնացորդները.—*

«Պարիսպներ, բուրգեր, որոնք տեղ–տեղ փլած են, խրամներ, որոնց մէջ թիւթիւն տնկած են, ականակիտ ջրեր, ուր խումբ–խումբ Թրքուհիք կըտաւ եւ ներմակեղէն կը լուանան, մինարէներ, մզկիթներ, քարաշէն տուներ, բաղնիքներ, միջնաբերդ, մեծամեծ քարակերտ շէնքեր, զորս առանց մէջը շրջելու կը դիտենք, ամենուն ալ աւերումն իր ծանր ձեռքերով հարուած տուած, այս է եղեր այն պատմական հին եւ անուանի *«Մելիտինէն Հայոց»*, զոր այժմ կը կոչեն ԷՍՔԻ ՇԵՀԻՐ, Հին Մալաթիա : Այս քաղաքն է որ հին դարերու մէջ՝ արեւելեան եւ արեւմտեան խուժդուժ ազգաց, ժողովրդոց եւ իշխանութեանց արշաւանքներ տեսած է, Միջագետք՝ որ յաւուրց Աղեքսանդրի՝ Յունաց եւ Հռոմէացւոց, Բաբելացւոց, Մարաց, Պարսից եւ Հնդկաց ուժերու, զիրար ջախջախելու, աշխարհակալելու թատր եղած էր, այդ ամենայն անցքը Միջերկրականէն եւ Բաբելոնէն երկուստեք Մելիտինէն էր : Ինքն իսկ երբեմն նպատակ լինելով յարձակողաց, մանաւանդ Միջին դարուն, մասնաւորապէս Հագարացւոց եւ Թաթարաց արշաւանաց առջեւ, անուանի հանդիսացած է ընդհանուր, ազգային եւ եկեղեցական պատմութեանց մէջ, որ շատ մարտիրոսներ ունեցած է, այլ իրօք վերջին դարերուն մէջ Թուրքաց շահաստան մը :

«Հազիւ 45—50 տարի կայ որ ձգած են բնակիչք այս քաղաքը, եւ գնացած ժամ մը հեռի Նոր Մալաթիան կը բնակին, ուր յառաջ իրենց այգեստանրն ու ամարանոց է եղած : Սակայն հին քաղաքին դիրքն ու օդը լաւագոյն է նոր քաղաքէն : Դեռ կան քանի մը հարիւր տուն թուրք բնակիչք հոս եւ նոքէն ալ ամառը շատեր կու գան իրենց պարտէզները եւ պտուղներ մշակելու եւ կթելու :

Ծառաստանք կը վերջանան. քաղաքիս ներքին աւերակներէն աչքերդ վեր առնելով՝ յանկարծ կը պատահիս անթիւ գերեզմանաքարերու խռնուածքի մը, ուր կը ներկայանան Մալաթիոյ Թրքաց փաթթոցաւոր գլուխներու կերպ–կերպ ձեւեր, որոնց երեւոյթն իսկ կը զարհուրեցնէ զմարդ, թէ ի՞նչ սոսկալի անձինք են եղած, որք թէպէտ հողոյ տակ, այլ դեռ սարսափ կ'ազդեն տեսնողին» :

*Աւելի ուշ*, 1900–*ին հին քաղաքին վրայ իբր մալաթիացի եւ պատրաստուած ուսումնասէր անհատ մը, ամենէն աւելի սպառիչ տեղեկութիւններ տուած է Բրոֆ. Մկրտիչ Որբերեան* (ԲԻՒՐԱԿՆ, 1900, *էջ* 115—7), *որուն գրածը հոս նոյնութեամբ կը ներկայացնեմ.—*

«Կ'ըսուի թէ անյիշատակ ժամանակի մը մէջ եւ իբր թէ Մելիտոս անունով Յոյն մը հիմնադրած է: Առջեւը ունի ընդարձակ տեսարան մը, ուր կէտկիտուած են ցան ու ցիր գիւղեր, որոնց մէջէն դէպի հիւսիս կը պառկի խնունին գորշ օձի մը նման:

Արեւելեան կողմը Եփրատը կապուտագոյն՝ դալար–դալար կը ծռի դէպի հարաւ, թեթեւ շոգի մը հանելով վեր: Քաղաքը շրջապատուած է տեղ–տեղ հիմնայատակ եւ տեղ–տեղ կիսաւեր երեք մղոն երկայն պարիսպով մը, զայն պատող խրամը ներկային մէջ (*այսինքն* 1900–*ի Ա. Ա.*) ափիոնի, ծխախոտի եւ ուրիշ բանջարեղէններու իբր արտ կը ծառայէ»:

Պարիսպին միջնակողմը քարակոյտերու եւ կանգուն ու քայքայուն աւերակներու ցուցահանդէս մըն է[1], որուն մէջ ներկայ բնակիչներու հարիւրէն աւելի տնակները, կղմինտրաշէն ու քարաշէն կարմիր ներմակ մինարէները, մզկիթներու, *գիւրէճ*ներու, եւ բաղնիքներու սուր կամ զոգ գմբէթները եւ անոնց կատարներուն վրայ շինուած արագիլներու ճիւղակազմ խոշոր բոյները ուշադրութիւնդ կը գրաւեն:

Քարակոյտերուն մէջ, տեղ–տեղ մաքրուած միջոցները, ուր բանջարեղէն կը մշակուի, թուրք եւ հայ հասարակութիւնը բակ կ'անուանէ: Էն ուշագրաւ շէնքը *Ուլու Ճամի*[2] կոչուած մզկիթն է, իբր նմոյշ մը հիանալի ճարտարապետութեան, նրբարուեստ քանդակագործութեան եւ ճարտար նկարչութեան, զոր թողուցած է սելճուկ միտքն ու ձեռքը, երբ ԺԱ. դարուն այս կողմերը այցելած ու ապրած մինչեւ ԺՁ. դար:

Ոչ նուազ զարմանալի է Սուլթան Մուրատ Բ.ի թելադրութեամբ կառուցուած ընդարձակ, համակ քարուկիր խանը, որուն միայն պատերը եւ հսկայ դուռը կը մնան:

Քրիստոնէութեան յիշատակներէն Ս. Ստեփանոս անունով քսան կանգուն երկայն եւ 15 կանգուն լայն, անլոյս ծակ մատուռ մը կայ թաղուած աւերներու մէջ: Մէջը իջնելու համար երկու կանգուն աստիճան մը շինուած է: Հոն կարգ մը կղերականներու տապանագիրերը հողին տակ ընկղմած են:

Պարիսպէն դուրս՝ արեւելքի, հարաւի ու արեւմուտքի կողմերը ասեղ ձգելու տեղ չկայ. աչքդ ուր դարձնես, գերեզմանի կը հանդիպի, ընդարձակ քնարանը այդ քաղաքացիին, ուրտեղ բիւրաւոր՝ ցցուած, ինկած թաղուած, հլսած, փրխրած, կոտրտած, բողբողոտած շիրիմներ կան:

---

(1) Ա. Բէքէմեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ Ա. Բ. 3, էջ 5) կը հաստատէ գոյութիւնը հսկայական ամրոցներու, քաղաքին պարսպամիջի ներքին հաղորդակցութեանց գաղտնի ճանապարհներու, փառաւոր եկեղեցիներու, ջրանցական բաժանմունքներու եւ այլ բազմաթիւ արժեքաւոր կառուցումներու:

(2) Ուլու Ճամին Ս. Իգնատիոս մայր եկեղեցին էր ըստ Կ. Գ. Նաճարեանի (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Բ. տարի, Թ. 2, էջ 10), որ կառուցուած էր Իգնատիոս Մելիտինէի Ասուրի եպիսկոպոսին կողմէ երբ Նիկեփոր կայսեր գրաւումէն վերջ Յակոբիկեան Ասորիք կայսեր հրաւէրով Մալաթիա հաստատուեցան՝ խաբուելով անոր հալածանքէ ազատ մնալու խոստումներէն, որոնք չյարգուեցան Բիւզանդական մոլեռանդ կղերին ճնշումին տակ, եւ վերստին հալածուեցան Ասորիները (տես վերը, էջ 201–2):

Այս թաղերուն տակ թաղուած են Քեսացին, Պարսիկը, Թաթարը, Ա-ռաբին, Հայը, Յոյնը, մարդկութիւն մը գոնէ 30 դարերու:

Հայերու գերեզմանոցին կռազատ ու հալած քարերուն վրայ ԺԵ., ԺԲ. եւ Ժ. դարերը ծանուցանող կոշտ գրերով արձանագրութիւններ գտնել դը-ժուար չէ:

Յունական յիշատակագիրերը ջնջուած են, շատ դժուարութեամբ կտոր-տորդուն գրուածքներ պիտի գտնես: Ասորական գերեզմանոցը աւելի անվնաս պահուած է:

Այս վերջինին մէջ 40 մանուկներու տապանակ մը[1] կայ, որուն բոլորտի-քը առանց շնչառութեան դարձողը իր մուրատին կը հասնի, եթէ աղջիկ է՝ սիրականին, երիտասարդ՝ սիրուհիին, աղքատ՝ հարստութեան, եւայլն:

Դարձեալ այս շրջանակին մէջ տապանաքարեր կան, որոնց վրայէն գըլ-տորած ընկուզի չափ քարդ կը ցուցնէ քեզի թէ դժո՞խք պիտի երթաս կամ ար-քայութիւն:

Պարսկական եւ թաթարական բաժնին մէջ, ժամանակին՝ վարպետն ու աշկերտը առանձին մէկ-մէկ գմբէթ շինած են, որոնցմէ վարպետինը կործա-նած ու աշակերտինը կանգուն բլլալուն համար առած մը շիներ է ժողովուր-դը՝ «ՈՒՍՏԱ ՇԱՅԻՏ» *պուլպուլուր*, զոր կ'ըսէ՝ երբ նորելուկի մը գերազանցու-թիւնը կը տեսնէ հինին կամ վարպետին վրայ:

Թրքերու բաժնին մէջ, ինչպէս նաեւ քիչ մը դուրսերը, գմբեթաշէն *Զիյարէթ*ներ կան՝ Գարապապա, Ալի պապա, Ահմէտ Թուրան, Մեր-ճօմէր, Գոճոնվաիզ, Սարըլըգ, Գըրգլար, Հանի պայրամ, Հաթեմ տէտէ, Իւչ գար-տաշլար, Ետի գարտաշլար եւ այլ անուններով, որոնց նկատմամբ շատ բաներ կ'ըսուին, բայց ստոյգ ծանօթութիւն չկայ:

Պարիսպի չորս դուռներէն մէկուն տեղը դեռ որոշ է, զոր թէ՛ թուրք եւ թէ հայ հասարակութիւնը Զոդդորոդ[2] կ'անուանէ, աղաւաղումն Ս. Թորոս ա-նուան: Ուսկի՞ց մնացած է այս անուանումը. չեմ գիտեր» (*Մ. Որբերեան*, *ԲՒՒՐԱԿՆ*, 1900, *էջ* 115—7):

*Ասոր պէտք է կցել Հոկայական շէնքը* Եշիլ Ճամիսի (*կանաչ մզկիթ*), *Ասոր պէտք է կցել Հսկայական շէնքը* — 

*որ ժամանակին Հաւանօրէն յոյն եկեղեցի էր եւ զոր Թուրքերը մզկիթի վերա-ծած էին: Այս նախկին եկեղեցիին գմբէթն է որ* Ուստա-շակերտ Կուպէսի *կը կոչուէր, ինչպէս յիշած էր Որբերեան, որ Համիտական դրաքննութեան պատճառով չէր կրցած* Եշիլ Ճամիի *քրիստոնէական եկեղեցի մը ըլլալը յի-շել*[3]:

(1) *Մալաթիացիք տապանակ կը գործածեն գերեզմանոցի մէջ իւրաքանչիւր ըն-տանիքի յատկացուած թաղին տեղին համար: (Ծանօթ. Որբերեանի)*:

(2) *Ա. Բէքէվեան «Զողդըրոս» կ'ուղղագրէ եւ Ս. Թորոս անուն նշանաւոր եկե-ղեցիին տեղը կը նկատէ: Իսկ ըստ Սրուանձտեանցի* (Թորոս Աղբար, *Ա., էջ* 322) *հին քա-ղաքին մէկ դուռը Թորոսի մը անունով, որ կրնայ Ս. Թորոս կամ Թորոս Լեւոն ալ ըլլալ, Թուրքերը կը կոչէին* Թորոս Գարուսու:

(3) *1893-ի երկրաշարժին՝ այս մզկիթին գմբէթը գագաթէն ճեղքուած եւ եր-կուքի բաժնուած էր եւ հայ վարպետներու ձեռքով երկաթէ խոշոր ու ամուր օղակնե-րու մէջ առնուած, ճեղքերը փակուած ու նորոգուած էին եւ մինչեւ 1914 կանգուն կը մնար շէնքը (Ա. Բէքէվեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Ա. տարի, Թ. 3, էջ 5)*:

Գերպ. Անտրէաս Վրդ. Ալեքսանդրեան 1912-ին իր ՍԵԲԱՍՏԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ մէջ Մալաթիոյ վրայ առհասարակ ընդհանուր տեղեկութիւնները կու տայ, որոնք նորութիւններ չեն։

«Ժամանակ մը Մալաթիա Սելճուկներու ձեռքը մնալէն, երբ, 1235-ին, Մոնկոլները դրաւեցին, տակաւին կային բազմաթիւ եկեղեցիներ, եւ կ՚առաջնորդէին անոնց եպիսկոպոսներ եւ ասոնց ամէնքն Անտիոքոյ հայրապետին իշխանութեան ներքեւ էին։ Բայց աւարի առնուեցան եւ մնացածը մեծաւ մասամբ քանդուեցան եւ կրակի տրուեցան։

«Սուլթան Պայազիտ Ա. ինքնակալ Օսմանցւոց յամին 1396 առաւ Փոքր Ասիոյ այս կողմերը... 1401-ին ընկաւ Լենկթիմուրի իշխանութեան ներքեւ, եւ ինչ որ մնացած էր դղեակներէն եւ մզկիթներէն՝ ամբողջ կրակի տրուեցաւ։ Երբ Սելիմ Ա. նորէն առաւ Մալաթիան, աւերակներու կոյտ մը գտաւ զայն, զոր այլեւս չկրցաւ քաղաքի մը կարգը բարձրացնել։

Հին քաղաքը հիմա գրեթէ բոլորովին լքուած է եւ խարխուլ տներուն մէջ կը գտնուին սակաւաթիւ բնակիչ Թուրք եւ հայ։ Առաջ տարին երեք մասը կ՚անցընէին պարտէզներուն մէջ, եւ միայն մէկ մասը կը բնակէին քաղաքը, որ կիսաւեր եւ ապականած է։ Իսկ հիմա հաստատուած են ամարանոցին մէջ, ուր մրգաստաններն են, ուր պտղատու ծառերը գեղեցիկ տեսարան մը կ՚ընծայեն ակնահաճոյ, այգիներն առատ են, ողկոյզներն ունին անհաւատալի մեծութիւն»։ (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 397—8)։

Գերպ. Ալեքսանդրեանի գիրքին տպագրութեան տարին Տ. Կարապետ Քհն. Պէննէեան գիրի առած է իր աշխատասիրութիւնը, որուն Հին եւ Նոր Մալաթիոյ մասին տուած տեղեկութիւնները արդէն ներկայացուցի։

Իսկ Գէորգ Մելիտինեցի իր ՆԱԽՃԻՐՆԵՐուն մէջ Հին քաղաքին կամ Մալաթացւոց աւելի յաճախ ՎԱՐԻ ՔԱՂԱՔ կոչած վայրին համար շատ սեղմ աս տողերը ունի, որոնք ինչպէս պիտի տեսնուի, նորութիւն մը չեն բերեր.—

«Բաղդատմամբ առաջիններուն[1]՝ աւելի նոր, ունի եկեղեցիներու, պարիսպներու եւ այլ շէնքերու կիսակործան փլատակներ, որոնք կը կրեն հայկական եւ առաւելապէս բիւզանդական դրոշմ։ Լենկթիմուր եղած է պարիսպի գլխաւոր քանդողը, որուն երկայնքին փորուած խորութիւնը (ջուր լեցնելու համար) կը վկայէ քաղաքի երկար ժամանակ պաշարուած մնալը։

Գլխաւոր վայրերն են Ալաճա Գարու, Զոտ տը Բող, Ուլու Ճամի, Ս. Ստեփանոս եկեղեցին, Թոփ Գարու, եւայլն։ Ուլու Ճամին նախապէս եղած է յունական եկեղեցի[2], ապա օսմանեան տիրապետութեան շրջանին վերածուած է մզկիթի։ Պատերը զարդարուած են կանաչ կարմիր ու ճերմակ, եռանկիւն եւ քառանկիւն նրբօրէն տաշուած քարերով, որոնք ցարդ անաղարտ կը պահեն իրենց գոյները»։

---

(1) Այսինքն ԱՍԼԱՆ ԹԷՓԷՍԻ եւ ԻՆՃԻԼԻՔ ԹԷՓԷՍԻ, որոնք հնագոյն ՄԵԼԻՏԸ ըլլալու են։

(2) Սելճուկ շինութիւն է եւ հաւանական չէ յունական եկեղեցի ըլլալը։

Տ. Կարապետ Քհն. Պէննէեան կ՚ըսէ թէ Նոր քաղաքին հաստատուելէն ի վեր «Հին քաղաքը իր սքանչելի գեղեցկութիւններէն եւ հոյակապ եւ փառաւոր շէնքերէն մերկացած ու զրկուած, պարիսպի մնացորդները գետնին վրայ հարթ հաւասար եղած՝ աւերակաց տխուր տեսարան մը կը պարզէ այցելուին աչաց առջեւ, որովհետեւ ամբողջ շէնքերը փլցուելով եւ պարիսպը քակելով, ատաղձն ու նիւթը կը փոխադրեն Նոր քաղաքի տուները, շուկան, աղօթարանները եւայլն շինելու» (Պէննէեան, համառօտ, տպ. Պէյրութ, էջ 15)։

Ըստ Պէննէեան Քհն.ի՝ հին քաղաքի շէնքերէն կանգուն կը մնային Ս. Ստեփանոս Հայոց եկեղեցին, Ուլու Ճամի փառաւոր մզկիթը, հինգ քարաշէն աշտարակներ, Ալաճա Գաբու պանդոկը, զոր շինած էր Սուլթան Մուրատ Դ.ի զինակիրներէն Մուսթաֆա փաշա, Ստ. Տուրուշ[1] բացուած պարիսպի դուռը եւայլն։

Պաղտասար Պէրպէր-Իգիկեան (Հին օրերու յիշատակներ, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 1, էջ 21) հին քաղաքը կը ներկայացնէ իբր բերդաքաղաք մը՝ «շրջապատուած լայնեղը պարիսպով։ Ունէր երկու դուռ, մէկը մուտք եւ ելքի, մուտքի դուռը Ալաճա-Գաբու եւ ելքի դուռը՝ Զպտրըգ։ Երբ մուտքի դռնէն ներս մտնէիր, ուշադրութիւնդ կը գրաւէր վիթխարի տըշպըտադի ծառը, որուն համար մեր մամիկները կ՚ըսէին թէ Նոյ Նահապետը տնկեր է, եւ ատոր համար ալ ոչ ոք կը համարձակէր այդ ծառին կային կամ յօտոց զարնել։ Մեր օրերուն[2] շուկան մեծ չէր, հազիւ երեսուն խանութներ կային մանրավաճառներու եւ արհեստաւորներու։ Շուկային մօտ էր քաղաքապետարանը[3]։

Քաղաքապետարանի տակէն պիտի անցնէին բոլոր ճամբորդները պանդոկ (խան) երթալու համար։ Սայլապան, ջորեպան, ուղտապան, կառապան, մէկ խօսքով բոլորին ճամբան այդ էր։

Պանդոկը շատ ընդարձակ էր ու հաստատուն։ Ունէր շատ մը սենեակներ, սրահներ, մառաններ, մարագներ։ Ունէր մեծ բակ մը առջեւի կողմը։ Քաղաքապետարանը կործանուած էր, բայց դեռ հիմերը տեղն էին։ Քաղաքապետարանին տակէն ճամբայ մը կ՚անցնէր, ասոր համար Թուրքերը կ՚ըսէին «Ալթը եօլ, Իւսթը Ճամի» (տակը ճամբայ, վրան մզկիթ)։ Շէնքէն կախուած է եղեր մեծ շղթայ մը, գողերը, աւազակները կախելու համար, որպէսզի ուրիշները տեսնելով խրատուին։

Մելիտինէն հարուստ էր հնութիւններով, բայց աւա՜ղ որ Թուրքերը իրենց տուներու եւ գոմերու շինութեան համար կը քանդէին պատմական յի-

---

(1) Ստ. Տուրուշ, Ս. Թորոս անունին աղաւաղեալ ձե՞ւն է։ Պէննէեան քհնյ. կ՚ըսէ թէ այս դրան ներքին կողմը հրապարակ մը կայ խոշոր քարերով ու ծառերով շրջապատեալ, ուր կը տեսնուի Ս. Թորոս անուն եկեղեցիի հետքը։ Ասկից 50—60 քայլ անդին է Ս. Ստեփանոս եկեղեցին։

(2) Պէտք է հասկնալ 1839-ին՝ Հին Մալաթիան լքուելէն ետքը։

(3) Գուցէ կառավարիչի պաշտօնատունը ըսել կ՚ուզուի։

չատակարանները, ու կառավարութիւնը երբեք արգելք չէր ըլլար։ Անոնց համար որեւէ յիշատակարան երկրի բնիկ տէրը յիշեցնող փաստ էր եւ մոնկոլական բարբարոսները չէին հանդուրժեր ատոր։

Եթէ միայն պանդոկը կանգուն կը մնար, ատոր ալ պատճառը այն էր որ իրենց համար անհրաժեշտօրէն պէտք էր»։

Զպտըրըդ Գարուն, որ արեւմտեան կողմն էր, շուկայէն շատ հեռու չէր։ Այս դրան կողմը հնութիւններ շատ չկային, աւելի ճիշդ, արդէն ամէն ինչ հողին հաւասարեցուած էր։ Զպտըրըդի դուռը տասը վայրկեան հեռու էր Հայոց Թաղէն։ Հայերը հազիւ 30 տուն կը հաշուէին այն ժամանակները, եւ բոլորն ալ անուանի· երեք տուն բողոքական էին, կաթոլիկ չեմ յիշեր· մնացածները լուսաւորչական էին։ Անոնք բոլորն ալ ջերմեռանդ հաւատացեալներ էին, եւ կ՚աղօթէին Ս. Ստեփանոս եկեղեցիին մէջ»։

Պատմական Մելիտինէին կամ Մալաթիացի Հայերու Վարի քաղաք եւ Թուրքերու Էսկի Շեհիր կոչած 1839-ին լքուած քաղաքին մէջ ողջ մնացած մէկ եկեղեցի կար Ս. Ստեփանոս անունով, որ կը ծառայէր նաեւ իբրեւ դըպրոց։ Տղաք ամառը գերեզմանաքարերու վրայ կը նստէին։ Ս. Ստեփանոս Նոր Մալաթիոյ եկեղեցիներու բարձրութիւնը եւ գեղեցկութիւնը չունէր, բայց գտնուած այլ եկեղեցիներուն մէջ ամենահինն էր (հմմտ. ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 2, էջ 21)։

Վարի քաղաքին կամ հին Մելիտինէի մէջ «կային այլ ուխտատեղիներ· այսպէս Ալի Պաշա, Գարա–Պաշա, Պէչ Գարտաշլար, Վոչ Օճաղի, Կորխ Օճաղի, Ուլու Ճամի, Զօթում Տէրէ եւայլն։ Ուխտատեղիներէն շատեր Հայերու, Յոյներու, Հռոմայեցիներու օրերէն մնացած յիշատակարաններ էին, որոնք աղաւաղուելով թրքացուած էին ժամանակի ընթացքին։ Օրինակի համար Հօքում Տէտէն, արդեօք մեր հին Հեթում Տէտէն, արդեօք մեր Հեթում Թագաւորի աղաւաղումը չէ՞, ինչպէս որ Զոդորթաղը՝ Սուրբ Թորոսի։

Հինէն ի վեր սովորութիւն էր որ ամէն գարնան ու աշնան ժողովուրդը Պապ Ուխտի կ՚երթար մաքրութեան, կտաւ ճերմկցնելու եւ ուրախութեան համար։ ... Հայոց կալուածատեղին էր, ջրարբի ու մրգառատ Պապ Ուխտին, որուն հողերուն 75 տոկոսը Հայերուն կը պատկանէր» (Պաղտասար Պէրպէր Եգիկեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 2, էջ 21—2)։

Ժողովրդային ուրախութիւն մը գոյութիւն ունէր։ Կ՚ըսէին՝

Ասպզեցոց արաղ[1],
Օրտուզեցոց մատաղ,
վարի քաղքցոց ալ տայաղ[2]։

Վարի քաղաք (Էսկի Շեհիր) հակառակ Պապ Ուխտիի ջուրի առատութեան՝ անջրդի էր կ՚ըսէ Պաղտասար Պէրպէր Եգիկեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 3, էջ 22) եւ սակայն գլխաւոր պատճառներէն մէկը կը նկատէր ժողո–

(1) Արաղ՝ ռակի բառն է = օղի։
(2) Տայաղ = ծեծ։

*վուրդի տեղափոխութեան դէպի արդի Մալաթիան, որ քալելով գրեթէ երկու ժամ հեռու էր։*

*Սակայն Պաղտասար Պէրպէր Եղիկեան կը կարծէ թէ հին Մալաթիացիք առաջին անգամ իրենց ամարանոց–տուները հաստատած էին Խօրէնի մէջ, եւ ասոր իբր փաստ կը յիշէ որ վերջերը երբ քանի մը տուներ դեռ իրենց մեռել–ները Խօրէնի մէջ կը թաղէին, գերեզման փորելու ժամանակ յաճախ երեւան կու գային թոնիրներ, սուրճի գաւաթներ եւ այլ տնային առարկաներ (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, թ. 2, էջ 22)։*

*Գալով այն կարծիքին թէ ջուրի նուազութիւնն էր պատճառ քաղաքին երրորդ տեղափոխութեան, շատ հիմ չունի։*

*Գիտենք թէ այդ տեղափոխութիւնը կատարուած է ԺԹ. դարուն առա–ջին կիսուն Եգիպտոսի Փոխ–արքայ Մէհէմէդ Ալիի որդիին Իպրահիմ փաշայի արշաւանքին հետեւանքով, ինչպէս Զօր. Մոլթքէի կողմէ բացատրուած է*[1]*։ Բուն Մելիտինէն լքուելէ ետք՝ աւերակի վերածուած է, ուր Թուրք եւ Հայ մի քանի հարիւր հողագործ ընտանիքներ կը բնակէին տակաւին 1880–ական թուականներուն (ՄԱՍԻՍ, 1881, թ. 2845)։ Այս թիւը հետզհետէ պակսած է եւ 1914–ին հոն շատ քիչ էր մանաւանդ Հայ բնակիչներուն թիւը։*

*Շարլ Թեքսիէ որ անձամբ այցելած է անցեալ դարու առաջին կէսին Մալաթիա, կ'ըսէ թէ լքեալ քաղաքին պարիսպները, որ ըստ սովորութեան արեւելեան քաղաքներու ձեւով շինուած էին արեւով չորցուած աղիւսներով, ցոյց կու տան այլեւս միայն գիծերը շրջապատնէշին, բլրակի ձեւով, իր վրայ կը կրէ խեղճուկրակ գալարիք մը։*

*Մզկիթները, վստահուած քանի մը Սոֆթաներու հսկողութեան, ստա–ցած չեն ոեւէ դոյզն նորոգութիւն Թուրք սուլթաններու տիրապետութենէն ի վեր։*

*Քէվրան սարայը անբնակ, պաղարները՝ պարապ եւ տուները՝ կիսովին փլած, ձգուած են պահապաններու, որոնք ենթարկուած են վատառողջ ազ–դեցութեան այս շրջապատին, որուն մթնոլորտը ապականուած է կուտակու–մով դարաւոր աղտեղութիւններու։*

*Այս պատկերը անշահեկան չէ անոնց համար, որոնք չեն զններ քաղաք–ները միայն յիշատակարաններով շահագրգռուելով, այլ կ'ուզեն ուսումնա–սիրել նաեւ բոլոր ազդակները քաղաքներու զարգացման եւ բարգաւաճման։*

*Քիչ է թիւը այն աւերակներուն, որոնք կը մնան դեռ կանգուն, եւ ո–րոնք կը պատսպարեն սատրիկ ձմեռներուն քանի մը հոգի, բայց կարելի էր ապահովութեամբ նախատեսել թէ հին Մալաթիան պիտի դադրէր շուտով գո–յութիւն ունենալէ իբրեւ քաղաք։*

*Հայ եւ օտար հեղինակներու այս տեղեկութիւնները ներկայացնելէ ետք, հոս հարկ կը դատեմ եւրոպացի նոր հեղինակի մը* Albert Gabriel *ի հնախուզական ճամբորդութեամբ բերած տեղեկութիւնները տալ, իբր նորա–գոյն այցելութեան մը տպաւորութիւնը։*

---

(1) *Տես անդ, էջ 387—394։*

Albert Gabriel կը հաստատէ թէ հին քաղաքը քանի մը հարիւր բնակիչ հազիւ ունի (**Voyage Archéologique dans la Turquie Orientale, I,** p. 261) երբեմն բերդաքաղաք այս տեղը դաշտի վերածուած է հիմա, ինչպէս կը վկայէ Albert Gabriel (նոյն, էջ 261), եւ պարիսպները մեծ մասամբ քանդուած են:

Ուլու Ճամին, որ ԺԳ. դարու շինութիւն մըն է, միայն կը մնայ հին քաղաքէն, լի արձանագրութիւններով:

Ուլու Ճամիի հարաւակողմը կայ մէտրէսէ մը, որուն միայն մէկ մասը կը մնայ տակաւին դարերու աւերին: Մզկիթը շինուած է ամբողջովին ճերմակ ու կակուղ որմաքարէ (moelban) եւ ՄԻՀՐԱՊը կը պահէ ինչինչ հետքեր կըճածեփի (stic) ծաղկազարդերուն:

Մզկիթի արեւմտեան կողմը կը գտնուի գերեզման մը ծածկուած գըմբէթով խորշացած գերեզմանին վրայ: Մէտրէսէին դրան վրայ Ժ. Կրընար կարդացած է արձանագրութիւն մը, որ այսօր գոյութիւն չունի, ինչպէս Ալպէռ Կապրիէլ կ՚ըսէ:

Այդ արձանագրութենէն կը հասկցուի որ ճարտարապետ է ատաղձագործ Շեմսետտին Մուհամմէտ Իպն Օթման:

Ուրիշ կողմ մը փորագրուած է ուրիշ ստորագրութիւն մը՝ «գործ վարպետ Թագաւորի որդի Ստեփանի» (Grenard, **Note sur les Monuments du moyen âge de Malatia, Journal Asiatique, XVIII,** 1901, p. 551):

Յիշուած գերեզմանը կը գտնուէր քաղաքէն դուրս մէկ քիլոմեթր՝ հարաւը մեծ մզկիթէն: Արձանագրութեան թուականն է Հիճրէթի 610 (=1232 Քրիստոսի) եւ կը կարդացուի Քայքաուզ անունը, որ հաւանօրէն տիրող սուլթանին անունն է ( Albert Gabriel , նոյն, էջ 261):

Հին քաղաքին մէջ կը գտնուի նաեւ աւերուած Քերվանսերայ մը ուղղանկիւն, 68—76 մեթր տարածութեամբ:

Այս քերվանսերայը շինուած է Մուրատ Դ.էն (1627—1645) (նոյն, էջ 275):

Հին քաղաքին հիւսիսակողմը գտնուող գիւղաքաղաքին տուները շրջապատուած են աւերակներովը ընդարձակ քերվանսերայի մը (ԷՎԼԻՅԱ ՉԷԼԷՊԻ, Դ., էջ 9), որ թերեւս նոյն է այս քերվանսերային հետ:

Brant որ 1835-ին գացած է Մալաթիա, իր այցելութեան ատեն կը պատմէ թէ հոն կը տիրէին ժանտախտի համաճարակ եւ Քիւրտերու աւարառութիւնները:

Ան հոն գտած է երկու մզկիթ եւ երկու քերվանսերայ: Անոնց շինութեան ոճը պարսկական էր (**Journey Through a part of Armenia,** Journal of Geogr. Soc. of London, Դ., 1836, էջ 211):

1837-ին, այս հին քաղաքին վերջնական լքումէն ետք, պատկերը աւելի տխուր էր, վանքի բոլորովին աւերակի վերածուած էր:

1883-ին **Wünsch** հոն գտած է դարձեալ երկու մզկիթ, գեղեցիկ զարդաքանդակներով եւ հին հայ եկեղեցի մը, հիմնուած 3 կամ 4 մեթր մշակուած

հողին մակերեւոյթէն վար[1]: Պարիսպները բաւական լաւ վիճակ ունէին:

Հին Մալաթիոյ ամրութիւնները մեծ մասամբ դետնին հաւասարուած են հիմա, սակայն Ալպէր Կապրիէլ (նոյն, էջ 226) կ'ըսէ թէ կարելի է վերակազմել յատակագիծը անոնց, վասնզի հետքերը կը մնան:

Աւերակները անկանոն են եւ յստակ գաղափար մը չեն տար: Անոր զանազան մասերուն շինութեան ժամանակն ալ որոշել կարելի չէ:

Գալով մեծ մզկիթին անոր վրայ կը խօսի Էվլիա Չէլէպի իր ՈՒՂԵՓՈՐՈՒԹԵԱՆ մէջ (Դ., էջ 10), բայց յատկանշական ոչինչ ունի: Միայն կը հաւաստէ թէ զայն շինողները եղած են Մարգարէին ընկերները, եւ աւերուած է կոստանդին Զ.էն եւ վերստին աւերուած է Էլ-Մանսուրէն 756—758-ին (Հիճրէթի 139—140): Այս մզկիթը անտարակոյս շինուած էր նախնական Ուլու Ճամիին տեղը:

Մզկիթին տարածութիւնն էր մօտաւորապէս 33×50 մեթր (Albert Gabriel նոյն, էջ 269):

Շինութեան քննութիւնը ցոյց կու տայ երկու շրջաններ: Սկզբնաշէն մասը առաջ յախճապակիով զարդարուած քարաշէն էր, ծածկուած շաղախով (սվա): Բայց կարելի չէ ճշդել թէ ո՛րն է սկզբնական շինութիւնը եւ ո՛րն է վերանորոգուած մասը:

Յախճապակիներէն կը հասկցուի թէ շինողն է Եագուպ, որդի Մալաթիացի Ապու Պաքրի, եւ գեղարուեստը՝ Ահմէտ, որդի Եագուպի:

Շինութիւնը կատարուած պէտք է ըլլայ Է.—Ը. դարերուն: Ճարտարապետական ոճը պարսկական է (Albert Gabriel նոյն, էջ 273):

*
**

Երկու տեղափոխութիւններէ ետք՝ երրորդ մըն ալ ունեցած է Մալաթիա: Հին Մելիտինէէն 6 մղոն հարաւ երրորդ քաղաք մըն ալ երեւան եկած է, որ է արդի քաղաքը, որ շուրջ 120—130 տարուան հնութիւն մը հազիւ ունի այսօր:

Տակաւին հազիւ 40 տարուան քաղաք մըն էր արդի Մալաթիան, երբ Սրուանձտեանց Գարեգին Եպս. այցելեց հոն:

Իր նկարագրութեան համաձայն, ինչպէս կը տեսնուի, քաղաքին մասին գրեթէ որեւէ տեղեկութիւն չի տար Գարեգին Եպս. Սրուանձտեանց, որ Մալաթիոյ նկատմամբ լաւ տրամադրուած չէ եւ ամէն բան գէշ կը տեսնէ գրեթէ:

Բրոֆ. Օրբերեան իր ծննդավայրը ոչ կը փառաբանէ իրական կամ երեւակայական առաւելութիւններով եւ ոչ ալ չափազանցութիւններ կ'ըսէ, եւ հնարաւոր անկողմնակալութեամբ կը խօսի արդի Մալաթիոյ վրայ, աւելի

---

(1) Ս. Ստեփանոս եկեղեցին է, որուն վրայ պիտի խօսուի:

իրական տուեալներով ներկայացնելով Մալաթիոյ տեղափոխութեան պարագաները եւ Նոր քաղաքին իսկական պատկերը :

Իրեն պատմութիւնը սա է .—

«Հին ատենէ ի վեր Մելիտինեցին ամառ եղանակին վեց ամիս պարտէզներուն (այսօրուան քաղաքին տեղը) եւ ձմեռը վեց ամիս ալ տանը մէջ ապրած է :

1841-ին[1] Նիզիպի պատերազմին ատեն ընդդէմ Մէհմէտ Ալի փաշայի երբ կայսերական զօրքերը եկած են Մալաթիա, ամառ ըլլալով արդէն ժողովուրդը այգիները փոխադրուած (կոչած — կէօղ), իրենց տուները պարապ մնալով յօժարութեամբ յանձնած են զանոնք զօրաբանակին որ զօրքերը պատըսպարեն :

Խորհուած էր թէ քիչ ժամանակէն պատերազմը կը վերջանայ եւ գիւղէն դարձի ատեն զօրքերը կը քաշուին եւ տուները կը յանձնուին տէրերուն :

Բայց ժողովուրդը տեսնելով թէ խնդիրը կ'երկարի եւ զօրաբանակը ստիպեալ է մնալ հայրենիքին պաշտպանութեան համար, յանձն կ'առնէ այդ տարին իր ամարանոցին մէջ ձմերել : Յաջորդ տարին թէեւ զօրքը կը չուէ, բայց հանրութեան մեծագոյն մասը կը նախընտրէ այլեւս իր այգիին մէջ ապրիլ քան տարին երկու անգամ տեղափոխուելու նեղութիւնը եւ ջրի ու վառելանիւթին անձկութիւնը կրել, քանի որ ձմեռն ալ հոն կրնայ ապրիլ (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 115—6) :

Եւ այդպէս ալ կ'ընէ :

Պէննէեան Քհն. (Համառօտ, էջ 15) կը գրէ թէ «1838-ին Օսմանեան Պետութեան Եգիպտոսի Սուլթանին հետ Նիզիպի վրայ ունեցած պատերազմին եւ ապստամբ Քիւրդերը նուաճելու համար երբ Հաֆըզ փաշայի[2] հրամանատարութեամբ բազմաթիւ զօրք կու գայ Մելիտինէ կը հասնի, աշնան վերջին ըլլալով կ'ուզէ հոն ձմերել : Ուստի քաղաքացիք կը հարկադրուին մնալ Ասպուզի, ընդարձակելով իրենց այգերը կամ ամարանոցները :

Ձմեռն երկար ու սաստիկ ըլլալուն թէ' զօրքը եւ թէ մէջի քաղաքացիները կը ստիպուին իրենց բնակած տան մէկ կողմը քակել ու վառել : Երբ յաջորդ գարունը զօրքը մեկնելէ ետք քաղաքացիք կ'ուզեն վերադառնալ ու շինել կամ նորոգել տուները, խստիւ կ'արգիլուի կառավարութենէն որ այլ եւս չփոխադրուին ի հին քաղաք» :

Այսպէս ժողովուրդը կը ստիպուի լքել հին Մելիտինէն, որ հին դարերու անթիւ յիշատակներով լի էր, եւ իր վայրը աւելի առողջապահիկ էր, հօր եւ ծառերու խոնաւութենէն զատ :

Նոր քաղաքը, Ասպուզին, չունէր հինին առաւելութիւնները : Բայց այս

(1) 1839 պիտի ըլլայ այս թուականը:

(2) Հաֆըզ փաշա յաջորդած է Ռեշիտ փաշայի, որ 1820-ին այս կողմերուն ընդհանուր կուսակալ կարգուած էր, կարգ-կանոն հաստատելու եւ անզուսպ տարրերը զըսպելու համար:

մասին իրարու հետ շատ համաձայն չեն Մալաթիոյ վրայ խօսողները:

Ալպէր Կապրիէլ աւելի ճշգապատում է երբ քաղաքին տեղափոխութիւնը, եւ հիմնարկութեան թուականը 1839 կը նշանակէ (տես **Voyages Archéologiques dans la Turquie Orientale**, I, Paris, 1940, էջ 241), վասնզի իրապէս այդ թուականին է որ բնակչութեան մեծ մասը լքած է հին քաղաքը, հիմնելու համար նոր քաղաքը, 8 քիլոմեթր հարաւ, Ասպուզու գիւղաքաղաքին տեղը, որ կը ներկայացնէր մեծ յարմարութիւններ եւ առաւելութիւններ քաղաքի մը գոյութեան համար, իր ջրառատ հանգամանքով:

Բրոֆ. Օրբերեան այս ջուրի առատութիւնը, ինչպէս տեսնուեցաւ վերը, ներկայացուցած է մանրամասնօրէն:

Գերպ. Անդրէաս Վրդ. Ալեքսանդրեան կ'ըսէ թէ «Նոր քաղաքն որ Ասպուզի կամ Հասրուզի կ'անուանուի, կամ ինչպէս ոմանք կ'ուզեն Քարփուզ (ձմերուկ)[1] ասկէ կէս դար առաջ ունեցած տուները միջին պայման մը ունէին, մզկիթները լաւ դիրքի մէջ չէին. կառավարիչին պալատն ըստ բաւականի լաւ էր: Իսկ հիմա (1911-ին) բնականապէս նոր նոր շէնքեր կառուցուած են, մանաւանդ որ նոր քաղաքը կը բարգաւաճի եւ առաջ կ'երթայ» (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 398):

Արդի քաղաքը կորսուած է այն մրգաստաններուն մէջ, ուր փոխադրած են իրենց բնակութիւնը հին քաղաքին բնակիչները:

Քաղաքին տուները փայտէ են եւ անթուրծ աղիւսէ, կառուցուած՝ հաստատուն եւ վայելուչ մզկիթները անարուեստ շինութիւններ են, ամէնքն ալ հովանաւորուած բազմադարեան ծառերով, տալով այս դաշտային քաղաքին խիստ եղական երեւոյթ մը:

Փաշային կամ կուսակալին խոնախը կը բարձրանայ հրապարակի մը կեդրոնը: Բրոֆ. Օրբերեան կ'ըսէ թէ բուն քաղաքին մէջ կայ 5 ընդարձակ քարուկիր ու ջրառատ բաղնիք եւ զանազան տեղեր 16 ջաղացք (ԲԻՒՐԱԿՆ, 1900): Արհեստաւորները ունին իրենց որոշուած թաղը: Առանձին անուններով թաղերը կը կազմեն պարտէզներով միացած բնակարաններու խումբեր:

Թէեւ նոր քաղաք՝ սակայն շուտով կազմակերպուած է եւ քաղաքի մը ամէն ստորոգելիներ իր վրայ միացուցած է:

«Մալաթիոյ շուկան ունի 1191 խանութ, 6 ընդարձակ եւ փառաւոր պանդոկ:

Շուկային փողոցները լայն եւ շատ կանոնաւոր են: Արհեստին ոսկի ապարանջան Հայոց բազուկն է:

Գլխաւոր արհեստներն են դերձակութիւն, կօշկակարութիւն, մուճակաշինութիւն, դերխաշինութիւն, երկաթագործութիւն (մեծ մասը թուրք), մազմանութիւն, ոսկերչութիւն, ատաղձագործութիւն, որմաշինութիւն, զարգնութիւն, համետագործութիւն, թամբաշինութիւն (բոլորն ալ թուրք),

---

(1) Albert Gabriel իր գործին մէջ քաղաքի տեղը ընդհանուր կոչումով մը Harpouz կը կոչէ, առանց ոեւէ բացատրութեան:

*Հայագործութիւն (Թուրք), սափրիչութիւն, Թաղեչինութիւն, պասմաճիութիւն, եազմաճիութիւն, ներկարարութիւն, քարակոփութիւն։*

*Այս բոլոր արհեստներն ալ նախնական վիճակի մէջ են եւ բարեշրջում չեն ունեցած տարիներով։*

*Վաճառականութիւնը Թուրք տարրին ձեռքն է, ընդարձակ ու մեծ կըրպակներ չկան։*

*Առեւտուրը ոգեւոր է միայն բերքերու շրջանին։*

*Աֆիոնի օխան 400—600 եղած ատեն ապագայ զարգացման փառաւոր խոստումներ տուած է առեւտուրը։*

*Քաղաքին կեդրոնական շուկային այս խանութներէն զատ, քաղաքին Թաղերուն մէջ ցրուած կան նաեւ 200-ի մօտ նպարավաճառի խանութներ։*

*Կառավարական շէնքն ալ այս շրջանակին մէջ է, շքեղ եւ ընդարձակ, ուր ամփոփուած էին, վարչութիւն, դիւան, հաշուակալութիւն, նախագահ ատեան, տեֆթարութիւն, քաղաքապետական դիւան, Նուֆուսի տայրէ, էվգաֆի տայրէ, հեռագիր եւ Թղթատարութեան տայրէ, Ռէժիի վարչութեան ու ոստիկանական վարչութեան (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 85)։*

*Գարեգին Եպս. Սրուանձտեանց, որ 1879—1880-ին այցելած է Մալաթիա, կուսակալութեան պաշտօնատան վրայ կը խօսի դառնութեամբ։*

*«Կառավարութեան պալատն ընդարձակ շէնք մ'էր, բայց կառավարութիւնը շէն չէր։ Նոյնիսկ քաղաքին մէջ եւ շրջակայքը ամենայն չարիք եւ եղեռն համարձակ կը գործուէր. կատարեալ անիշխանութիւն էր, եւ անբարոյականութիւն, յափշտակութիւն, լրբութիւն ու սպանութիւնք՝ տիրական... դարձած էին։ (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, էջ 308—9)։*

*Իբր Թրքական շինարարութիւն Բրոֆ. Որբերեան (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 69) կը յիշէ 1899-ին քաղաքին մէջ շինուած հսկայ ամբարանոց մը, ուր ամէն ժամանակ վաճառելի ցորեն պիտի լեցուած ըլլար, որպէսզի* Մատրապազճերը *(շահադէտներ) չարաշահութիւններ չընէին։*

*Նոր Մալաթիան ըստ Պէնէեան Քհն.ի բաժնուած է հետեւեալ Թաղերու.—*

ՍԱՆՃԱԳՏԱՐ
ՈՒՃՊԱՂԼԱՐ
ԳԸՐՉՈՒԱԼ
ՊԷՕՅԻՒԿ ՀԻՒՍԷՅԻՆ ՊԷԿ
ՔԻՒՉԻՒՔ » »
ԳԱՐՆԱԿ
ԹԷՔ ՄԵՉԱՐ
ՖԵՀՐԱՏԻՅԷ
ՍԵՐԱՅ
ԽԱԼԻՖ-ԻՒՏՏԻՆ
ՍԱՐԸՃԸ ՕՂԼՈՒ

ԵՆԻ ՀԱՄԱՄ
ԳԱԼԵՄՔԵԱՐ
ՍՈՂ ՔԷՕՓՐԻԻ
ՉԸՔԸՄ
ԺԱՄԿՈՉ
ԽԱՐՍՈՂԱ
ՉԱԹԱԼ ՊԵՆՏ
ՄՆԱԻՈՐ
ԹԱՐԽԱՆ ՕՂԼՈՒ
ՍՈՆՏՐԼԵԱՐ
ՉԸԹԸԳ
ԳԸՁԸԼ ՔԷՇԻՇ
ԹԷՔ ՉԷՇՄԷ
ՃԸՐՂԸՐ ՔԷՕՇԷ
ՉԱՒՈՒՇ ՕՂԼՈՒ
ԿԷՕՔ ՍՈԳՈՒ
ՏԱՊԱՂԽԱՆԷ
ՆԻԱԼԻ
ԱՅՆԹԵՊԼԻ
ՆԵՐԱԹԻ
ԻՍԿԵՆՏԷՐ
ՆՈՒՐԻՁԱ
ԱՍԼԱՆ ՊԷԿ ՕՂԼՈՒ
ԻՁՁԵԹԻՅԷ
ՀԱՃԻ ԽԱԼԻԼ ՃԱՏԷ
ԻՇԵԱՂ
ՊԵՆՏ ՊԱՇԸ
ՉԱՐՄՈՒՂԸ
ՉՈՒԳՈՒՐ ՏԷՐԷ
ԳԱՓՏԱՆ ՃԱՏԻՅԷ
ՇԷՅԽ ՊԱՅՐԱՄ
ԱՊՏԻՒԼ-ՃԱՖԱ
ՉԻԼԵՍԻՃ
ՄՈՒՍԹԱՖԱ-ՓԱՇԱ
ՀԱՃԻ ԱՊՏԻ ՃԱՏԷ
ՇԻՖԱ
ՍԱՄԱՆԼԸ ՕՂԼՈՒ
ՇԱՔԻՐ ՓՈՂՈՅ եւայլն:

*«Ընդ ամէնը 53 թաղեր, որ չորս պողոտաներու եւ բազմաթիւ փողոցներու մէջ զետեղուած են:*

*Այս չորս պողոտաներէն մին կը պարունակէ բոլորովին Հայոց տուները, երկուքը Տաճկաց եւ մին ալ թէ՛ Հայոց եւ թէ տաճկաց, եւ այս տուները այնպիսի դրութեամբ մը շարուած են որ երեք ժամ երկայնութեամբ եւ մէկուկէս ժամ լայնութիւն ունեցող տարածութեան մը ամբողջ տեղը գրաւած է: Ըսել կ'ուզենք թէ՝ երբ սոյն շրջանակին մէջ հիմակուան շէնքերուն հարիւրապատիկն ալ շինուի, դարձեալ կը պարունակէր:*

*Որովհետեւ մէն մի տուն իրեն յարակից ունի ընդարձակ պարտէզ մ'ալ որ որմով կամ ցանկով կցուած են իրարու, որով փողոցներէ շատը անել է: Եթէ փողոցները բաց ըլլային եւ հաղորդակցութիւն ունենային իրարու հետ, յայնժամ հինգ վայրկեանէն երթալու տեղ մը 15—20 վայրկեանէն եւ ոլոր մոլոր ճամբաներով երթալու դժուարութիւնը չէր ունենար» (Պէննէեան, Հ., էջ 17—18):*

## Գ.

# «ԱՐԿԱԾՔ ԵՒ ՊԱՏԱՀԱՐՔ»

*Հովէլոյս Կարապետ Քհն. Պէննէեան այս խորագիրով գլուխ մը ունի ուր կը խօսի Մալաթիոյ քաղաքին հրդեհներուն, երկրաշարժներուն, սովերուն եւ համաճարակ հիւանդութիւններուն վրայ:*

*Իր ծննդավայրին պատմութեամբ զբաղող այս քահանան այս բաժինին մէջ տուած է տեղեկութիւններ, որոնք քաղաքին պատմութիւնը կը լրացնեն, իբր հարուածներ, որոնց ենթարկուած է քաղաքը:*

*Ինչպէս տեսնուեցաւ, Մելիտինէ քաղաքը իր աշխարհագրական դիրքին պատճառով դժբախտ քաղաք մը եղած է, վասնզի գրեթէ անընդհատ անխնա թատերավայր եղած է պատերազմներու: Եւ յայտնի է թէ պատերազմները ի՛նչպէս աղետաբեր հետեւանքներ ունեցած են պատերազմական գօտիներու մէջ գտնուած քաղաքներուն համար, ինչպէս էր Մալաթիա, որուն պատմութենէն, ինչպէս տեսնուեցաւ, գրեթէ խաղաղ օրեր չէ ունեցած եւ իրեն համար եւ շուրջը գրեթէ անընդհատ պատերազմներ մղուած են:*

*Հաստատուած իրողութիւն մըն է որ պատերազմները՝ արգելք են խաղաղ աշխատանքի. շատ անգամ թոյլ չտալով երկրագործութեան աշխատանքներու՝ աղէտներու պատճառ եղած են, ինչպէս նաեւ համաճարակներու ծընունդ տուած:*

*Բայց Մալաթիոյ դժբախտութիւնը միայն ասոնց մէջ չէ սահմանափակուած, այլ այս քաղաքը հարուածուած է նաեւ բնութենէն՝ աղէտալի երկրաշարժներով, որոնք ոչ նուազ վնասած են քաղաքին:*

*Հովէլոյս Պէննէեան պատուական քահանան, հետեւաբար իր գիրքին*

«Արկածք եւ պատահարք» խորագրած հատուածին մէջ այս դժբախտութիւնները, որքան որ կրցած է, հաւաքած եւ ներկայացուցած է, «Հրդեհ, Երկրաշարժ, Սով եւ Քոլերա» դասաւորութեամբ։

Հոս պիտի արտագրեմ Պէննէեան Քահանայի այս հատուածը, ինչ ինչ ծանօթագրութիւններով.—

«Մելիտինէի նիւթական անկման վրայ խօսելու առեն չենք կրնար զանց ընել այն պատահարներն ալ, որոնք մեծ բաժին ունին առ այդ եւ վերջին հարուածը սանոնք տուած են յաջորդաբար։ Որ է.

1.— ՀՐԴԵՀ.— 1889 Նոյեմբեր 8-ի չորեքշաբթի ցերեկին շուկայի Իքլիք Պազարը բռնուած տեղւոյն խանութներէ մէկուն բամպակը, անզգուշութեամբ նետուած սիկարայի մը ծայրէն կրակ առնելով՝ խկոյն կը բռնկի ու կը ճարակի յիշեալ շուկան, յարակից, ինչպէս նաեւ բոլոր շուկային, խանութներն որմափակ եւ տանիքներէն հողածածուկ ըլլալով, որչափ միւս շուկաները չեն բռնկիր ալ նէ, ընդհակառակը, այդ միջոցին փչող հիւսիսային հովը, ջրհան գործիք չգտնուիլը, ժողովուրդին հրդեհի ժամանակ ըլլալիք գործառնութենէ անգիտակ, ոմանք իրենց, եւ ոմանց ալ, առիթէն օգտուելով կողոպտելու համար, ուրիշներու ապրանքներն ազատելու հետեւելնուն, բոցը քանի մը բերաններէ տարածուելով՝ երկու ժամուան մէջ այրացուեր կ'ընէ 1800 խանութ, 3 ճամի, 2 բաղնիք, 5 պանդոկ, 10 սրճարան եւն.։

Հրդեհէն անմիջապէս յետոյ կառավարութիւնը երկրաչափ մը բերելով՝ առաջինէն աւելի շքեղ ու փառաւոր շուկայ մը կը վերաշինէ թէեւ, սակայն հազիւ տարին լրացած, 1890 Հոկտեմբեր 24-ին գիշերը կը վերայցելէ հրդեհը, իսկ այս անգամ Համիկ Օղլու պանդոկին մօտէն կրակ առնելով կը սկսի վառիլ։ Նոյն չարաղէտ արկածին լուրը քաղաքին մէջ տարածուելով՝ ժողովուրդը մինչեւ որ կը խուճապէ, շուկային երեք չորրորդ մասը (ճիշդ առաջուան այրած մասը) դարձեալ հրոյ ճարակ կ'ըլլայ անմիջապէս։ Որովհետեւ շուկան այս անգամ բոլորովին փայտաշէն ըլլալուն, բոցը օձանման կը սողոսկի եւ ապրանքներն իսկ ազատելու միջոց չի տար։

Մալաթիոյ այս արկածասկիզբ հրդեհներէն թէեւ անձի կորուստ չկայ, նիւթական վնասը կէս միլիոնի կը հասնի»։

2.— ԵՐԿՐԱՇԱՐԺ.— Հայաստանի, Փոքր Հայքի եւ Փոքր Ասիոյ մըշտակայ աղէտներէն մէկը եղած է երկրաշարժը, որ հնագոյն ժամանակներէ սկսեալ մինչեւ մեր օրերը պարբերաբար կը պատահի առաւել կամ նուազ սաստկութեամբ, պատճառելով շինութիւններու կործանում եւ մարդկային կորուստներ։

Մալաթիոյ եւ իր շուրջը անուրանալի է որ պատահած են երկրաշարժի զօրաւոր ցնցումներ, թերեւս նոյնիսկ շատ կանուխ, սակայն մեր պատմագիրները չեն յիշատակեր։ Սակայն յիշատակած են բազմաթիւ երկրաշարժեր Հայաստանի մէջ պատահած, որոնք Մալաթիան ալ ցնցած ըլլալը յիշատակուած չէ, իսկ 995 Օգոստոս 19-էն սկսեալ շարունակ եօթը ամիս անընդ-

*հատ տեւող երկրաշարժի մը յիշատակութիւնը կը բերէ մեզի պատմութիւնը:*

*Անիկա պատահած է Մալաթիոյ մերձակայ շրջանին մէջ գլխաւորապէս Դ. Հայք նահանգի Հաշտեանք, Խորձեան, Ծոփք, Բալու եւ Պաղնատուն գաւառներու մէջ, որոնք աւերակ եղած են, վասնզի* «բոլորովին փլան շինուածք ամենայն ի հիմանէ դղրդեալք» (*ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿ, էջ* 254 *կամ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա. հտ., էջ* 237):

*Մալաթիոյ աշխարհագրապէս այնքան մօտ եւ սահմանակից վայրերու մէջ այնքան սաստիկ եւ այնքան երկար տեւող երկրաշարժէ մը անկարելի է որ զերծ մնացած ըլլայ Մալաթիա, որուն անունը պատմագիրը մոռցած է ապահովաբար:*

*Նոյնպէս պատմագիրները չեն յիշած Մալաթիան՝* 1114 *թուականին Եփրատացիքը, Սամոսատը, Հիսնի Մանսուրը, Քեսունը, Ռապանը, Մարաշը եւ շրջակայքը ցնցող մեծ երկրաշարժի մը առթիւ, որ անհաւանական է որ ցնցած չըլլայ նաեւ Մալաթիան:*

*Տ. Կարապետ Քհն. Պէննէեան զգուշանալով ենթադրութենէ չէ ուզած յիշատակել այս շարժերը:*

*Ինքը կը յիշէ ԺԸ. եւ ԺԹ. դարերու երկրաշարժները: Ան կը գրէ թէ* «1742–*ին, աղիտալի երկրաշարժ մը եղած է հին քաղաքը*», *բայց աւելի համոզուելու համար հետեւեալ արձանագրութիւնը մէջ կը բերենք.*—

«ՌՄԲ թուին Հայոց Յունուար ամսոյ ԺԲ. եղեւ «շարժումն մեծ եւ ահագին յաւուրն ուրբաթի մինչեւ ԽԹ օր չի դադարեցաւ. եւ յետ դարձեալ աւուր ուրբաթի Գ. ժամու եղեւ շարժ մեծ սաստիկ յոյժ սաղ տուն մի չմնաց. բազում մարդիկ մեռան եւ յետոյ չադրով գերեզմանին առաջքը բնակեցան, եւ յետ այնորիկ մարտ ԺԱ.-ին էճ տարուան Ուլու Ճամին քակվեցաւ, մինարէներուն շէրէֆէներն պէտէստէնին Գ. կողմը փլաւ. Հայոց ոսկերչաց ԺԸ հոգի մեռան, Մարտ Ա.-ին Ասպըզէ կոչեցաք, որ եւ Տր Աստուած հեռի արասցէ այսպիսի շարժումէ»:

*ԺԳ. ԺԹ. դարուն մէջ,* 1893–*ի երկրաշարժ պատահած սահմանին մէջ սաստիկ գետնաշարժ մը տեղի ունենալով՝ հարիւրաւոր անձերու կորուստ եւ հազարաւոր բնակարաններու կործանում պատճառած ըլլալը կը նկարագրէ Զամչեան:*

*Պէննէեան Քհն. նոյնպէս կը նկարագրէ* 1893–*ի աղետալի երկրաշարժը, սապէս.* «Հրդեհներու պատճառած կրակը չի մարած եւ մինչ ամէն ոք գէթ մէյ մէկ պարզ խանութներ շինելու մտահոգութեան մէջ կը գտնուի, ահա մեծ եւ աղիտալի արկած մ'ալ, երկրաշարժն ալ վրայ կը հասնի անակնկալ:

Այս մեծ երկրաշարժը կը սկսի 1893 Փետրուար 19 հինգշաբթի ցերեկուան ժամը 3-ին: Առաջին ցնցումին, որ մինչեւ յաջորդ գիշերուան ժամը 7՝ տասն տասնհինգ անգամ տեղի ունեցաւ, բացի կարգ մը ծխնելոյզներ փըլցընել, երկու *մինարէ*ներու գագաթնաքարերն ձգել եւ *շէրիֆէ*ներն խախտեցընելէ որեւէ վնաս չպատճառեց: Բայց Փետրուար 19-ի Ուրբաթ լուսնալու

կէս գիշերին, մինչ ամէն մարդ հանգիստ կը ննջէր, սարսափահար կ'արթըն-նայ: Զի այս անգամ այնպիսի ուժգին, դատանուտ եւ երկարատեւ կը ցնցէ, որ կարծես թէ ամբողջ քաղաքը իր շրջականերով՝ իբրեւ մանուկ կ'օրօրուի, բնութեան որրանին մէջ: Ու դեռ շատերը չարթնցած՝ եւ արթնցածներուն ա-ռանց միջոց տալու պատերը կը ճեղքուտին, սիւները կը զատուին եւ տանիք-ները կը փլին, անշնչացնելով տակինները: Անոնք որ այդ վայրկեանին կը յա-ջողին ինքզինքնին դուրս նետելով ազատիլ, կը լսեն շէնքերու կործանման ճարճատիւնը. ծնողքներու աղեկեղեք լացը, մանուկներու ողորմելի ճիչն ու աղաղակը, փլատակաց տակէն օգնութեան կանչող խոհ եւ եղկելի ձայները, որոնց հետ խառնուած է թռչուններու ձայնն ու շուներու ոռնումն ու հաչիւ-նը: Գիշեր է սակայն, ո՞վ է օգնութեան կանչողը եւ օգնողը: Զի գիտցուիր ձայնին ուսկի՛ց եւ ո՛ր փլատակաց տակէն գալը, որո՞ւ տունն է փլեր եւ ո՞վ է մեռեր: Թէպէտեւ օգնութեան կը փութան, բայց շատ ուշ. մեռնողը արդէն մեռեր է:

Կը լուսնայ, ժողովուրդը հայնեպ կը փութայ այցելել իր պարագա-ներն: Այս շրջագայութեան ատեն է որ կը տեսնուին մէն մի քայլափոխի հո-ղակոյտերու վրայ մեռելակոյտեր ալ, որոնց մօտ կը հեւան վիրաւոր եւ կի-սամեռներն ալ, մինչ ոտքն ու թեւը ճզմուած, միւսին դէմքն ու գլուխը ա-րիւնլուայ: Սնդեայ մանուկը օրօրոցին մէջ տափակցած եւ ստնտու մայրը վրան անշնչացած: Ծնողքներ իրենց հոգեհատները ազատելու համար անոնց թեւէն չբռնած անկողնոյն վրայ մնացած: Նորապսակ ամոլներ մեղրալուսնի մահճին վրայ գիրկընդխառն մշտնջենապէս ննջած:

Ժամերգութիւն չի կատարուիր, իսկ զանգակներ տխուր կը հնչեն այդ օր: Դագաղներ անբաւական ըլլալով՝ երկու ձողի վրայ դիակ մը դրուած, պատգարակ-դագաղ եւ մեռելակառք կը հետեւին իրարու: 150-ի չափ մեռել-ներու առանձին փոս փորել անկարելի ըլլալով՝ իւրաքանչիւր տան մէյ մէկ փոս բանալով՝ իրենց լաթերովն ու անկողինովը կը դրուին հող: Կարելի չէ մեղմացնել յուղարկաւորներու ողբն ու կոծը: Որովհետեւ այս բազմաղէտ երկրաշարժը թէեւ քաղաքին ամբողջ թաղերը, աւելի Հայոց *Զորպաճր* թա-ղէն մինչեւ *Տապպղխանէ* թաղի տներն կործանելէ զատ՝ եղած է տուներ որ երկու, երեք, չորս եւ մինչեւ եօթը մեռեալ ունեցած, եւ եղած է տուն որ լա-ցող մը իսկ չէ մնացած:

Այդ օրէն սկսեալ ամբողջ տարի մը պարտէզներու մէջ՝ վրան (չատըր) եւ հիւղակներ հաստատելով կը բնակին եւ այդ տարին, թէեւ ոչ ուժգին, բայց անպակաս եղած է ցնցումներն: Այս ծանօթ երկրաշարժէն բաւական վը-նասուած են Մալաթիոյ միւս (Հիւսնի Մանսուր, Պեսնի, Աղճատաղ եւ Քեախ-թա) գաւառակներն ալ»:

*1894-ին Մալաթիոյ ազգային մարմիններու կողմէ պատրաստուած եւ Կ. Պոլսոյ Ազգ. պատրիարքարանը ղրկուած տեղեկագրի մը համաձայն ազգ. Հաստատութեանց վնասները ճշդուած են հետեւեալ կերպով.—*

| | |
|---|---|
| *Ս. Երրորդութեան եկեղեցին վնաս* | 32205 |
| *Ս. Փրկիչ վանքի տաճարի վնաս* | 22175 |
| *Ս. Լուսաւորիչ վանքի վնաս* | 11700 |
| *Ջրմղտի գիւղի Ս. Էջմիածին տաճարի վնաս* | 2377 |
| *Մայր վարժարանի* | 22250 |
| *Հին Մելիտինէի Ս. Ստեփանոս եկեղեցիի վնաս* | 8500 |
| *Ս. Յարութիւն եկեղեցիի վնաս* | 8000 |
| *Գումար՝* | 97207 |

*Առանց հաշուելու Մայր Եկեղեցիին վնասը, որ շատ մեծ էր, եկեղեցին այնքան վնասուած էր որ փակուած էր:*

*Ազգ. Պատրիարքարանը անմիջապէս հասցուցած է 10·000 դրուշ: Մնացեալ 90·000 դրուշի մօտ գումարին ի՛նչպէս հայթայթուած ըլլալը չէ յիշատակուած ոեւէ տեղ: Հաւանօրէն ժողովուրդը ինքն դոհաբերած է:*

3·— *ՍՈՎ ԿԱՄ ԹԱՆԿՈՒԹԻՒՆ.— Ժողովուրդը առանց որոշելու սովի եւ թանկութեան տարբերութիւնը՝ միշտ* սուղութիւն *կ՚ըսէ այն ժամանակներուն, յորում կ՚աւելնայ արմտիքի սովորական գինը:*

*Սղութիւն մը պատահած է 1840–ին, որուն «քանը մէկի տարին» կ՚ըսեն: Այս սղութիւնը հազիւ 7—8 ամիս կը տեւէ, ապա կ՚աժաննայ: Հին գրքի մը լուսանցքէն առնելով մէջ կը բերեմ այս առթիւ գրուած հետեւեալ արձանագրութիւնը.—*

«ՌՄՅԻ–ին (1840) եղեւ թանկութիւն ամառն եղեւ դարը 7 դրշ. 8 դրշ. ձմեռն եղեւ 13 դրշ. յետոյ եղեւ 3 դրշ. մինչեւ 44 դրշ. մինչեւ նորը Աստուած պահէ այսպիսի սաստիկ թանկութենէ նորըն Աստուած ողորմեցաւ աղֆատ ծառային 6 դրշ. դունտուրին 4 դրշ. աշուրան մինչի 3 դրշ. ֆարին 2 դրշ. կոբէկը 5 փարա··· գերեզմանոցն ալ այս բըլին յունիսի սկիզբն եղաւ պատճառ եղողին վարձք կատար եղիցի ամէն»(*):

*Սղութիւն եղած է 1882—83 տարիներուն մէջ. սղութենէ առաջ ցորենի գինը 3·5—4 դրուշ ըլլալով՝ բարձրացած է մինչեւ 18—20 դահեկանի. միւս արմտիքներն ալ այս համեմատութեամբ իջած ու ելած են:*

*Սղութիւն մը եւս տեղի ունեցած է սա վերջին տարիներս, այսինքն* 1907—1912, *մինչեւ եւ հիմա: Այս չորս տարուան ընթացքին մէջ միսի եւ իւղի ալ սղութիւն ըլլալով՝ ցորենի գինը 7 դրուշէն մինչեւ 24 դրուշի, միսը 2 դրուշէն (օխան) 6·5 դրուշի եւ իւղը 6–էն 15–ի բարձրացած է»:*

***

*Ինչպէս կը տեսնուի, Պէննէեան Բ.հն. իր խոհական ուղղութեամբ չէ ուզած հին շրջաններու սովերով զբաղիլ, փանդի Մալաթիոյ անունով յիշատակութիւն չկայ, թէեւ 915—922 տարիներուն կը յիշատակուի համատարած սոսկալի սով մը Հայաստանի մէջ:*

Բոլոր ժողովուրդը «իբրեւ զդիակունս», «զունատեալ» եւ «լճեալս դանդաչէին» եւ անհատներն ալ պարէնի սղութենէն «ի վերջին սնանկութիւն հասանէին» (ՅՈՎՀ. ԿԱԹՈՂԻԿՈՍ, էջ 327)։ Յետին նեղութեան մէջ «զվնասակար բանջարս» խոտ ուտելու ստիպուած «յապականութեան մահու հասանէին» եւ նոյնիսկ «զսիրելի որդեակս՝ ընդ սակաւիկ ինչ ռոճկաց՝ թշնամեաց» կը վաճառէին։ «Զընկերակիցս իւրեանց զաղտակծութեամբ··· ի սպանդ վարեալ» կամ թէ «զմանկանս իւրեանց» եփելով ուտելու կը հասնէին (ՅՈՎՀ. ԿԱԹՈՂԻԿՈՍ, էջ 329)։

Պահուած ուտելիքներ մէջտեղ հանելու նպատակով իրարու դէմ բռնութիւններ կը գործուէին (ՅՈՎՀ. ԿԱԹՈՂ., էջ 330)։ Սովին եւ թշնամիներու չարունակական կոտորածին հետեւանօք, դիակներ անթաղ կը դիզուէին, որոնք նեխուելով չարաչար ախտերու պատճառած կ՚ըլլային եւ դիակներու պատճառաւ գազաններ եւ գիշատիչ թռչուններ բնակութիւններու մէջ կը թափառէին. որով դեռ եւս կենդանի եղող կիսամեռներու վրայ կը յարձակէին (ՅՈՎՀ. ԿԱԹՈՂ., էջ 331)։

Դժբախտաբար Յովհաննէս Կաթողիկոս սովահար գաւառները չէ ճշդած եւ ընդհանուր երկիրը այս վիճակին մատնուած ցոյց տուած է։ Որով կարելի չէ ըսել թէ Մալաթիա ալ նոյն վիճակին մատնուած է, որչափ որ հաւանական ըլլայ։

Սակայն կան նաեւ ուրիշ յիշատակութիւններ, որոնք ուղղակի կը յիշատակեն Մալաթիան իբր սովահար։

Այսպէս, Մալաթիա սովահար եղած է 1078—1080-ի սելճուկ յարձակումէն ետք, երբ հայկական բոլոր իշխանութիւնները, մասնաւորապէս Փիլարտոսի իշխանապետութեան տակ գոյութիւն ունեցող համադաշնակցութիւնը աւրուած էին եւ Փոքր Ասիոյ մուտքին վրայ կազմուած իշխանութիւններուն հետ Մալաթիա գրաւուած էր հայ-հոռոմ Գաբրիէլ իշխանին ձեռքէն 1101-ին, Դանիշմենդի կողմէն։

Մալաթիա երբ անձնատուր եղաւ երկար պաշարումէ մը ետք, սովի մատնուած, Դանիշմենդ, ինչպէս տեսնուեցաւ(*), քաղաքին բնակչութեան սննդեղէններ տուած է, «հաց եւ անասուն» (տես. ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, 1871, էջ 406 եւ Michel le Syrien, Գ., էջ 188)։

Տեսնուեցաւ(*) որ Մալաթիա այս տեսակ դժբախտութեան մը անգամ մը եւս ենթարկուած է երբ Դանիշմենդ Էլ Ղազի եւ իր փեսան Իկոնիոյ Ռումի Սելճուկ Սուլթանը՝ Մասուտ միասին պաշարեցին Մալաթիան, 18 Յունիսէն մինչեւ 10 Դեկտեմբեր 1124, եւ ինչպէս տեսնուեցաւ, քաղաքը սովի մատնուեցաւ այս պաշարումի հետեւանքով։

Նոյնպէս սովահար եղած է Մալաթիա 1269-ի թաթար արշաւանքին ատեն, ինչպէս որոշ կը հաստատէ Աւետարանի մը յիշատակարանը, ուր կը կարդանք.

«Իսկ ի թուականիս եղեւ սով սաստիկ ի Մելիտինէ Հայոց մեծաց քա–

ղաքի, որ զմայրն զտղայն կուտէր, որ զխոտն եւ զամենայն ժժմունք իբրեւ զհաց կուտէին: Ճշմարտապէս պատմեցի թէ երեք ընկեր ի ճանապարհի՝ միով երթային, երկու ի մի խորհուրդ եղեն զընկերն իւրեանց կերին···»: (Տես Ձեռագրաց բաժին, 1269-ին գրուած ձեռագիր):

Գրեթէ հարիւր տարի ետք Ռուբինեան թագաւորութեան կործանման եւ Սիսի գրաւման տարին (1375) 1372-ի Մալաթիա գրուած Մաշթոցի մէջ կը կարդացուի սա յիշատակարանը. «Ի սոյն ամի եղեւ սով սաստիկ ընդ ամենայն աշխարհս եւ ելաւ չափ մի ցորենեայ Ճ. (100) տր [ամ] դահեկի»: Հայաստանի մէջ սովը շատ քիչ պատահած բան մը չըլլալով՝ շատ մեծ կարեւորութիւն չէ տրուած յաճախ եւ նոյնիսկ ուշադրութեան չէ առնուած իբր սովորական բան մը:

Այսպէս առանց վարանման կրնանք ըսել թէ Լէնկթիմուրի ատեն պատահած սովերէն զերծ չէ մնացած Մալաթիա, սակայն որոշ յիշատակութիւն մը չունինք: Գիտենք թէ ԽՕՋՊԷՔ Թաթարները այս արիւնռուշտ առաջնորդին արշաւանքներուն հետեւանքով անկարելի դարձած են երկրագործական աշխատանքները եւ այդ պատճառով սովեր պատահած են:

Այսպէս 1387-ին Լէնկթիմուրի առաջին արշաւանքէն ետք Թովմա Մեծոփեցի կը յիշէ որ մեծ սով տիրած է: «Այետ գնալոյ նորա յաշխարհէս մերմէ եկն սով սաստիկ յաշխարհ մեր եւ տարածեցաւ յամենայն տեղիս զի կերան զշունս եւ զկատուս, խորովէին զուստերս եւ զդստերս, այլ՝ զկինն եւ կին զայրըն սպանանէին զմիմեանս եւ ուտէին, եւ ոչ յառենային եւ յետոյ ինքեանք մեռած էին: Զի ոչ կարեմ պատմել զդառնութիւնս մեր զոր տեսաք աչօք եւ լուաք ականջօքն, զի հնչեցաւ մարդկութեանս, մանաւանդ հայկազեան գաւառիս» (ԹՈՎՄԱ ՄԵԾՈՓԵՑԻ, էջ 32):

Այս սովը շարունակուած է յաջորդ երկու տարիներուն (1388—1389), ընդհանուր խեղճութեան մատնելով երկիրը:

Նոյնպէս մեծ սով մը եղած է Լէնկթիմուրի երկրորդ արշաւանքին ժամանակ, այսինքն 1395-ին, երբ «Սով մեծ եղեւ ընդ ամենայն երկիր», մասրնգի դաշտերը կ'ուէրուէին ու քաղաքները կը կողոպտուէին (ԹՈՎՄԱ ՄԵԾՈՓԵՑԻ, էջ 46—47):

Լէնկթիմուրի մահէն ետք, տիրող խառնակութեան միջոցին (1431) դարձեալ «սով սաստիկ եղեւ յաշխարհս մեր հաւատացելոց եւ անհաւատից, զի կերան զշունն եւ զկատուս եւ զմեռելոտի, զձի եւ զջորի, զէշ եւ զուղտ եւ պարապեալ պակասեցաւ անասունն եւ դիմեցին ի յուստերս եւ ի տոտերս իւրեանց մինչ զի ի Թաւրէզ քաղաքն կերեալ էին 1000 ոգի գաղտնի եւ յայտնի եւ աւերեալ վերին եւ ներքին գերեզմանքն» (ԹՈՎՄԱ ՄԵԾՈՓԵՑԻ, էջ 94):

Եւ Մեծոփեցին այս համատարած սովը եօթը տարի տեւած ցոյց կու տայ:

Մալաթիան ո՞վ կրնայ ապահովել թէ զերծ էր այս աղէտէն:

Նաեւ պատմական մեծ սովի մը յիշատակութիւնը ունինք 1590—1610

թուականներուն համար, երբ հետեւանք ձեւաւլիններու տպտամբութեան, որ պատճառ եղած է երկրագործական աշխատութեանց դադրելու եւ դարհուրելի սովի մը (ԱՌԱՔԵԼ ԴԱՒՐԻԺԵՑԻ, էջ 88—92 եւ ԳՐԻԳՈՐ ԴԱՐԱՆԱՂՑԻ, էջ 35—7)։

Սովը այնքան սաստիկ էր որ ոչ միայն շուները եւ կատուները կերան, այլ մեռած մարդիկը եւ նոյնիսկ ողջերը։ (ԴԱՒՐԻԺԵՑԻ, էջ 88—9)։

4․— ՀԱՄԱՃԱՐԱԿՆԵՐ․— Ասոնք յաճախ անխուսափելի հետեւանքները եղած են պատերազմներու։

Պէննէեան Բ՟Հն․ բոլոր համաճարակները քոլերայի մէջ կը միացնէ մինչդեռ ԺԱՆՏԱԽՏը որ մեր նախնիք «մահ տարաժամ» ալ կը կոչէին ոչ նուազ կոտորած ըրած է հին դարերուն։ Հաւանական է որ ժանտախտը եւ հնդախտը (քոլերան) իրարու հետ շփոթուած են։

Ասողիկ, (էջ 113) օրինակի համար կը յիշատակէ 875–ի պատահած «մահ ահագին համաշխարհական» որ հաւանօրէն այս երկու հիւանդութիւններէն մէկուն համաճարակն էր։ (ԱՍՈՂԻԿ, էջ 113, նաեւ Ա․ Ալպոյաճեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, էջ 237)։

Այս համաճարակը որուն նաեւ Մալաթիա այցելած ըլլալը չէ նշանակուած մասնաւոր կերպով, հաւանական է որ Փոքր Հայքն ալ վարակած ըլլայ եթէ ոչ «մահ ահագին համաշխարհական» բացատրութիւնը պիտի չգործածէր պատմագիրը։

Պատմութիւնը արձանագրած է ժանտախտի համաճարակ մը, որ 915էն 922 տեւող եօթամեայ սովին յաջորդած է եւ լրացուցած է ինչ որ Արաբներու սուրը եւ սովը պակաս թողած էին (Ա․ Ալպոյաճեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա․, էջ 238)։

1395–ին ալ յիշատակարան մը կը խօսի համաճարակի մը վրայ որ կը կոտորէր մանուկները։ Յիշատակարանին գրիչը Մարտիրոս կ՚ըսէ թէ « Է մահ տարաժամ, որ անմեղ տղայքն թաւաչեն ի գիրկն մարցն եւ աւանդեն զմաքուր հոգին իւրեանց՝ ձեռս հրեշտակացն, հայրքն եւ մայրքն՝ անմխիթար ողբով կոծեն յայս բազմախաբ յաշխարհիս․․․» (Ն․ Լալայեան, ՑՈՒՑԱԿ ՀԱՅ ՁԵՌԱԳՐԱՑ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ, էջ 234)։

Ասոր պէս ուրիշ համաճարակներ ալ պատահած են անշուշտ որոնք թերեւս անյիշատակ մնացած են։

Մալաթիա ալ զուցէ վարակուած է այս համաճարակներէն որոնց վերջին ժամանակներու պատկանողները յիշատակուած են, Պէննէեան Բ՟Հն․ի ձեռագիրին մէջ, ուր կը գրէ․

«Աղէտներ կը հետապնդեն զիրար, բայց կանխաւ միաբանած՝ երթալ տանջել, չարչարել ժողովուրդ մը որ նիւթապէս ու կենսապէս թշուառացած եւ ինկած է։ Քաղաք կամ գաւառ մը, որ հազիւ մազապուր եղած հրդեհներէ, երկրաշարժներէ, թանկութենէ եւ ահա կ՚ենթարկուի քոլերայի գերանդւոյն։ Ինչպէս․

Առածի կարգ անցած է սա աւանդութիւնը թէ՝ Մալաթիոյ քոլերան Սեբաստիայէն, իսկ սովը Արաբկիրէն կու գայ։ Կը լսուի թէ քոլերա կայ Սեբաստիոյ մէջ, ուստի դողը կ՚առնեն Մալաթիացիք։ 1894 տարւոյ Յունիսի սկիզբները մուտ կը գտնէ քոլերան ու կը սկսի տարածուելով նախճիրներ գործել։ Թաղապետութիւնը վարակման դէմ ամէն կարելի միջոցները կ՚ընէ անմիջական։ Հասարակութիւնը հին ու նոր, գիրք ու լրագիր թղթատելով՝ քոլերայի վրայ գրուած դեղ ու դարման հրահանգ ու հնար փնտռել։ Հականեխել տուները, ճամբաները, ճէմիչները եւն.։ Ներսէն ու դուրսէն, չելլել տունէն դուրս. չերթալ ու մօտենալ վարակեալի ու մեռելի։ Սակայն քոլերայի չարաճճի միքրոպներու լեգէոնը առ ոչինչ գտնելով այս ամէնը, կը յանդըգնին ամէն ծակ ու ծուկէ, մանաւանդ փախկոտներու եւ աղտոտներու տուներն մտնել ու մահացնել ենթականեր։

Վտանգներու ժամանակ թունդ սկեպտիկն իսկ բարեպաշտ հաւատացեալ մը կ՚ըլլայ։ Ուստի ժողովուրդը կը փութայ ջերմեռանդ աղօթքներու հետ խունկեր ու մոմեր մատուցանել Աստուծոյ։ Ողորմութիւններ տալ ուր որ պէտք է։ Հօկումներ ընել եւ մատաղներ մորթել եւ այլն։

Մեռելներն սովորական արարողութեամբ չեն թաղուիր, իբր անզգուշութիւն, (այս քոլերայի ատեն), միայն մէկ քանի մարդով կը թաղեն։

Սոյն քոլերայի տեւողութիւնը եղած է ամբողջ չորս ամիս։ Իսկ տարած զոհերու թիւը քաղաքէն 7—8 հարիւր եւ շրջակայ տեղերէն 2000-ի չափ։

Մեռնողներու երեք քառորդը իգական սեռէն եղած է եւ որուն 80 %ը կիներ։ Գաղտնի՞քը. հարցուցէք բժիշկներուն ու բնագէտներուն։

«Արկածը մինակ չգար» ըսած են։ Սոյն քոլերային զուգընթաց հասած է առեւտրական դադարում եւ արմտեաց սղութիւնն ալ։ Եւ որովհետեւ այս գաւառին համար թերեւս, բնական է դարձած թանկութեան տեւողութիւնը 4—5, իսկ առատութիւնը մինակ 3 տարի տեւելը. քոլերայի ժամանակ քարանդինա լարուած ըլլալով՝ հակառակ որ եւ է տեղէ արմտիք եւն. չներմուծուելուն, Տերսիմէն, Կամախէն, Զարսանճաղէն եւ Զմշկածագի կողմերէն, միեւնոյն տարուան տիրող սովին պատճառաւ, շատ ցորեն կ՚արտահանեն։

ՆՈՐ ՇՐՋԱՆ.— Սա շատաշրջիկ այլ շուտասահ (ականջը խուլ ըլլայ) քոլերան վերջին տարիներս Ռուսաստան եւ Պոլսոյ ու Իզմիրի կողմերը պըտտիլ ու պրպտելէ յետոյ, 1891-ի ամառը՝ (յունիսի մէջ) նորէն երեւան կու գայ Մալաթիոյ մէջ ալ։ Բայց այս անգամ շնորհիւ առողջապահական գոմիսիոնին եւ կարող բժիշկներու, մանաւանդ Տօքթ. Միքայէլ Քէշիշեանի ձեռք առած նախազգուշութիւններուն եւ մաքառումին, այնքան չէ վարակած։

Քոլերան այս անգամ ալ 4 ամիս միայն կը մնայ հոս։ Մեռածներու թիւը հազիւ 500-ի կը հասնի։ Համեմատաբար, դարձեալ կորուստին երեք քառորդը իգական սեռէն է։ Հայերէն մեռածները 60—65 հոգի, իսկ մնացածը Իսլամներէն։

Այս վերջիններու կորուստին շատութիւնը արգելքներու հակառակ վա-

*բուխը եղած է։*

ՀԻՆ ՔՈՂԵՐԱՆԵՐԸ.— *Հին ընելով պէտք չէ դարեր հասկնալ, այլ* 80—90 *տարուան շրջան մը։* 19–*րդ դարուն մէջ՝ մին* 1834–*ին, մէկը* 1859–*ին եւ միւսը* 1867–*ին՝ երեք քոլերաներ ալ պատահած են։ Ժողովուրդը «քոլերա» բառը լսած չըլլալով, առաջինին* եանը գարա, *երկրորդին* վըրիկ *եւ երրորդին* Զարըգ չըգարթմազ *անունները տուած է։ Յիշեալ անուններէն կը հետեւցուի թէ քոլերայի ենթարկուող կամ մարդկութեան կ՚ունենայ փախուստը, փորհարութիւն, մարմնոյ թխութիւն (կապոյտնալ) եւ ոչ երկար տեւողութիւն մահուան ժամանումին։*

*Համաճարակի սոյն երրորդութեան հողեկան կորուստի քանակի մասին որոշ բան մը քաղելու չկարենալով՝ միայն Ա.ին* (Եանըգարա) *վրայ ժամանակակից հետեւեալ արձանագրութիւնը հոս կը վերագրենք։*

«Ի ՌՄՁԱ*ին* եղեալ անհամբոյր վիշտքն վիպասանական ոտանաւորօք».

Ի սոյն Հայոց թուականին,
Եղեն վիշտք մեծ անտանելի,
Տիրեաց ժանտախտ անբուժելի,
Յաւուրս հնձոցն ցորենի։

Վիրաւորեալք թաւալէին,
Ի մի ժամն վճարէին,
Քաղք եւ արիք մեռանէին։

Զօր աւուր սովն սաստկանայր,
Սաստիկ ձմեռն վաղ զօրանայր,
Յոյսն բազմաց նուաղանայր,
Աշխարհ բնաւ ի սուգ գնայր։

Յամաքեցեալ ակունք ջրոցն,
Սաղարթաթափ ծառք լինէին,
Սուրբ եւ անսուրբ չորքոտանիք,
Սովու մեռան բազմադիմի։

Ոչ ունելով տէրանց կարիք,
Տալ զկերն օրն միանգամիկ։
Յարդն ի սպառ նուազեցաւ,
Ունողին սիրտ յոյժ քարացաւ,
Թիւ երեսնից դահեկանաւ,
Մինոյ բեռին տալ ոչ տեսաւ։

Գոզցես եւ աչք իլաց էին,
Սուզ, տրտմութիւն զգեցեալ էին.
Զի մի բեռ փայտ թէ գնէին,
Զերիս աուրս սպառէին,
Եթէ դիւրաւ վաճառէին,
Հնզետասան էր գին նորին։

Ազգ ամենայն տուայտէին,
Աւաղելով յոյժ սգային,
Որ եւ մեծն է պատժականին,
Ահաւ առ մեզ յայսմ ամին։

Զցորենւոյն ապաքանեալ,
Անարգ յարդն թէ՛ յարգեցեալ,
Լալով զամք ձեզ պատասխան տալ։

Զայս դժնդակ օրս տեսեալ,
Մեր ոչ քնաւ էր սա եղեալ,
Զի սով, երաշտ շրջապատեալ,
Մահ տարաժամ ընդ մեզ քնակեալ։

Զայս ամենայն մեր մոռացեալ,
Վասն հարկին պահանջեցեալ։

*Որչափ որ այն ատեն համաճարակներու հանդէպ «քարանդինա» եւայլն չկայ եղեր, սակայն գիւղացիներ ի բնէ անոր վախնալով այս կարգի, ինչպէս նաեւ հասարակ հիւանդութիւններէ վախնալուն համար, ոչ քաղաք եկած են եւ ոչ ալ վաճառականութ, արմտիք եւն. բերած են։ Որով սանոր սովորական գիները բարձրացած է եռապատիկ, քառապատիկ եւ տասնապատիկ։*

Դ

# ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՀԱՅՈՑ ԹԻՒԸ

*Մալաթիոյ նահանգը աշխարհամաս մըն է, որ երբեք տեւականօրէն հաստատուն վիճակ մը չէ ունեցած եւ շարունակ փոփոխութիւններու ենթարկուած է։ Նահանգին թէ՛ քաղաքական վիճակը, թէ՛ բնակչութեան ցեղային բաղկացութիւնը, ինչպէս նաեւ կրօնքը եւ լեզուն շարունակ փոխուած են։*

*Հոն բնակած են կամ անկէ անցած են բազմաթիւ ազգեր եւ ցեղեր, զանազան կրօնքներով։*

Ամենահին ժամանակներու մէջ իսկ խառն բնակչութիւն մը ունեցած է, որ զանազան ժամանակամիջոցներու դէպքերու դասաւորութեան համաձայն աւելցած, պակսած եւ նոր տարրեր ընդունած կամ գաղթելով երբեմն պակսած է։

Մալաթիոյ արդի կուսակալութիւնը, որ կը համապատասխանէ 1920-էն առաջ գոյութիւն ունեցող Մամուրէթ իւլ Ազիզ կուսակալութեան, Մալաթիոյ կառավարչութեան պատմական որոշ բաժանումի մը չի համապատասխաներ, փանզի մէջտեղը կը գտնուի պատմական զանազան երկիրներու եւ այս պատճառով իսկ յաճախ կցուած է դրացի երկիրներէն մէկուն։

Հնագոյն այդ երկիրներուն, որոնց կցուած է այսօրուան Մալաթիան իր շրջակայքովը, Կապադովկիան է, որուն տասը նահանգներէն մէկը կը կազմէր երբեմն, առանց սակայն իր բնակչութիւնը կապադովկիացի ըլլալու, ինչպէս կը հաստատէ Ստրաբոն, որ կը հաւաստէ թէ Կապադովկիոյ բնակչութիւնը խառնուրդ մըն էր զանազան մանր ազգերու, եւ յատկապէս կը խօսի Կատաւոնացիներու վրայ, որոնք «Սկիզբէն ի վեր անջատ եւ Կապադովկիացիներէն տարբեր ժողովուրդ մը կը նկատուին, եւ ազգաց թուահամարին մէջ Կապադովկիայէն ետք կը հաշուէր Կատաւոնիա, յետոյ Եփրատ եւ անդին եղող ազգերը, այնպէս որ Մելիտինէն ալ Կատաւոնիոյ մաս կը համարուէր, որ վերջնոյն եւ Եփրատի միջեւ կ՚իյնայ եւ մինչեւ Կոմմագինէ կը հասնի» (ՍՏՐԱԲՈՆ, Գիրք ԺԲ., կամ ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 219)։

Հռոմէական տիրապետութեան տակ եւս այս երկիրը խառն բնակչութիւն մը ունեցած է եւ այս վիճակը մինչեւ մեր օրերը շարունակուած է, երկիրը յաջորդաբար Արար, Սելճուկ, Թաթար եւ այլ տիրապետութեանց ենթարկուելով, ինչպէս տեսնուեցաւ գաւառին պատմական անցեալին վրայ տրուած տեղեկութիւններուն մէջ։

Օսմանեան տիրապետութեան տակ ալ Մալաթիոյ բնակչութիւնը միշտ խառնուրդ մը եղած է, Թուրք, Հայ, Քիւրտ, Թիւրքմէն եւ Ասորի ցեղերու, որոնք Իսլամ եւ Քրիստոնեայ կրօնքներուն կը հետեւէին ստորաբաժանուած անոր հատուածներուն մէջ, այսպէս Իսլամներուն մէկ մասը Գզըլպաշ էր եւ քրիստոնեաներուն մէջ Հայ, Ասորի, կաթոլիկ, բողոքական եւ այլ դաւանութիւններու հետեւողներ կային։

Գաւառի բնակչութեան թիւին ԺԱ. դարուն յիշուած է որ Մալաթիա ունեցած է 40.000 բնակիչներ, մեծ մասամբ յաւ կռուողներ որոնք կը ջանային պաշտպանել քաղաքը, իսկ աւելի կանուխ եւ աւելի ուշ ժամանակներու համար որոշ տեղեկութիւններ գոյութիւն չունին։

Նոր ժամանակներու, այսինքն Օսմանեան տիրապետութեան շրջանին համար նշանակուած թիւերը, ինչպէս բոլոր Թուրքիոյ քաղաքներուն համար տրուած թիւերը, բնաւ վստահելի չեն մանաւանդ հին շրջաններու համար, քանի որ հինատեն մարդահամար չէին կատարեր իսկ վերջին ժամանակներու մէջ ալ Թուրքերը կը խարդախէին վիճակագրութիւնները քաղաքական նկա-

*տուներով ջանալով անցեալին մէջ Թուրքերու Թուական գերակշռութիւնը եւ հիմա ալ բնակչութեան թիւին աճումը ցոյց տալու համար :*

*Այս անճշդութեան մէջ, դեր ունին նաեւ քրիստոնեաները որոնք կ'աշխատէին չարձանագրուիլ զինուորական տուրքէ* (պէտէլի ասքէրիյէ) *խուսափելու համար :*

*Անցեալ դարու առաջին կէսին Մալաթիոյ բնակչութեան վրայ խօսուած է* Charles Texier *իր* **Asie Mineure** *հատորին մէջ որ* **Univers** *խորագրուած հատորներու շարքին հրատարակուած է* (1882) : *Շառլ Թեքսիէ որ կը թուի թէ 1850-ական թուականներուն այցելած է Մալաթիա, քաղաքին բնակչութեան համար կ'ըսէ թէ «Շատ դժուար է որոշել թիւը, այսքան ցիրուցան բնակչութեան մը, որ* Texier*-ի այցելութեան ատեն, աւելցած էր ծփուն բնակչութեամբ մը, բաղկացած կանոնաւոր* (նիզամ) *եւ թնդանօթաձիգ զինուորներու բազմաթիւ զօրագունդերով որոնց վրայ պէտք էր աւելցնել կիները եւ տղաքները եւ անհամար մակաբոյծները որոնք սովորաբար կ'ընկերանան Թուրք բանակներուն :*

Texier *կ'ըսէ թէ չի կարծեր որ կը չափազանցէ* 30.000 *հոգի հաշուելով :*

*Այն ատեն քրիստոնեաները կը կազմէին մօտաւորապէս մէկ երրորդը ընդհանուր բնակչութեան եւ ընդհանրապէս հայադաւան հասարակութեան կը պատկանէին : Անոնց թիւը ըստ Թեքսիէի* 1000 *կամ* 1200 *տուն էր :*

*Թեքսիէ չեմ գիտեր ուրկէ առնելով Հայերը Կեսարիոյ հայ եպիսկոպոսին ենթարկուած կը ներկայացնէ ինչ որ սխալ է : Քաղաքին բնակիչները բնութենէն նպաստաւորուած այս քաղաքին մէջ անհոգ եւ կերուխումի եւ շուայտութեան մէջ ընկղմած էին :*

*Սրուանձտեանց Եղիշ. իր ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐԻ մէջ* (Ա., *էջ* 309) *Մալաթիոյ մէջ կ'ըսէ թէ* «Այսուշներ եւ խենդեր ալ բազմաթիւ էին, որ զեղխ ու մոլի կենաց հետեւանքներ են : Գրեթէ ամէն օր սոյն դրախտազեղ ծառաստանեայց եւ ջինջ ու ստատահոս առուաց ու աւազանաց քով նստած ծալապատիկ կակուղ բազմոցներու վրայ, կը կլկլացնէ իւր նարկիլէն, կը կոնծէ օղին եւ գինին, կը լափէ խորովածն, գլորիկն (*քէւֆթէ*) ու բիլաւը, կը խնողէ բազմազան միրգն, ի կոկորդն եւ ի ծոցն, դարձեալ օղի, անշուշտ աֆիոնի հոտէն եւ օդոյն տապէն ալ ազդուելով եւ ահա կամ թմրեալ իր եղած տեղը կը մնայ կամ գրգռեալ կիրքերէն կը վարի աստ ու անդ զոհեր որոնելու» :

*Սրուանձտեանց ինչպէս տեսնուեցաւ արդէն շատ գէշ ներկայացուցած էր Մալաթիոյ առողջապահական վիճակը*(*)՝ «բոլոր քաղաքը հիւանդ է» *ըսելով վճռաբար :*

*Այս վիճակը որքան իրենց միջավայրին նոյնքան ալ իրենց գիւղերու ձեռք բերուած վաստակին արդիւնքն էր, վասնզի քիչ ճիգով իրենց ապրուստը կ'ապահովէին այդ լիութեան եւ առատութեան երկիրին մէջ: Հետեւաբար տեսակ մը մեղկութիւն կը տիրէ եւ ոգեւորեալ առեւտրական կեանք մը չի կար Մալաթիոյ մէջ :*

*Յոյները թիւով շատ քիչ էին եւ կը բնակէին ըստ* Texier*-ի մանաւորապէս* Hordenz*-ի գիւղաքաղաքին մէջ, որ քառորդ մղոն հեռու էր քաղաքէն:*

*Զարմանալի է որ ուրիշ ոչ ոք կը յիշատակէ Յոյն բնակչութիւնը, որ թերեւս հետզհետէ պակսելով անհետացած է:*

*Վիթալ Քիւինէ իր Ասիական Թուրքիոյ Աշխարհագրութեան նուիրուած իր ընդարձակ (վեց մեծածաւալ հատորներ) գործին մէջ, որ 1890ական թուականին հրատարակուած է եւ որ նպատակաւոր եւ յանձնարարութեան վրայ պատրաստուած գործ մըն է Մալաթիոյ եւ արուարձաններու բնակչութեան ընդհանուր թիւը նշանակուած է 44·906, իսկ սոսկ քաղաքին բնակչութիւնը՝ 30·000 հոգի, համաձայն Շառլ Թեքսիէի, մինչ Հ. Ղեւոնդ Ալիշան իր Աշխարհագրութեան մէջ (հրատարակեալ 1856-ին) քաղաքին բնակչութեան թիւը նշանակած է 15—17 հազար անձ, որ թերեւս աւելի հաւանական է, քանի որ Թեքսիէ 30·000 թիւին մէջ առած էր այն ցիրուն բնակչութիւնը որ միայն ժամանակաւոր բնակութիւն մը ունէր հոն, բանակին իբր պոչ կամ հետեւորդ մակարոյծ:*

*Ձեռքի տակ ունիմ նաեւ Շէմսետտին Սամիի ԳԱՄՈՒՍ-ԻՒԼ ԱԼԵԱՄի 1898-ի եւ 1900-ի երկրորդ գրութիւնները, որոնց մէջ կուսակալութեան եւ քաղաքին բնակչութեան մասին տրուած տեղեկութիւնները կասկածելի կը թուին:*

*Շեմսետտին Սամի, երբեմնի գաւառին որ այսօր կուսակալութեան վերածուած է, իբր բնակչութեան թիւ կու տայ 216·280 անձ, որոնցմէ 16·200ը հայ եւ մնացածը իսլամ:*

*Իսլամներէն 22·000ը Քիւրտ, եւ մնացեալը (այսինքն 178·200ը) Թուրք, բայց 66·000ը Գըզըլպաշ աղանդին հետեւող:*

*Այս վիճակագրութեան որքան ստոյգ եւ վաւերական ըլլալը կարելի չէ երաշխաւորել:*

*Հաւանական է որ այս թիւերը այլափոխուած են քաղաքական եւ այլ նկատումներով: Արդէն Գըզըլպաշներու Թուրք նկատուիլը կը հաստատէ թէ դիտումներ կան այս վիճակագրութեան մէջ, վասնզի անոնք ոչ կրօնքով հարազատ իսլամ էին եւ ոչ ցեղով Թուրք:*

*Այս սրբագրութեամբ Շեմսետտին Սամիի համաձայն Մալաթիոյ կուսակալութեան բնակչութիւնը կ՚առնէ սա վիճակը.—*

112·000 *Թուրք սիւննի իսլամ*
22·000 *Քիւրտ սիւննի իսլամ*
66·000 *Գըզըլպաշներ*
16·200 *Հայ*

---

216·200 *համագումար:*

*Նոյն բառարանին մէջ նոյն հեղինակը 1900-ին Մալաթիոյ Գազային (որ*

*արդի կուսակալութեան կը համապատասխանէ) բնակչութեան թիւը նշանակուած է* 44906 *անձ, որոնք կը բնակին Մալաթիոյ քաղաքին հետ շրջակայ* 130 *գիւղերու մէջ:*

*Այս թիւը ճիշդ նոյն թիւն է որ Վիթալ Քիւինէ տուած է:*

*Շեմսետտին Սամի միայն կը յայտնէ թէ այս* 44906 *անձերէն* 4890*–ը երեք յարանուանութիւններէ բաղկացած Հայերն են: Մնացեալը իսլամ են:*

*Գերպ. Անդրէաս Վրդ. Ալեքսանդրեան (տես* ***ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱԿԱՆԱՒՈՐ ՔԱՂԱՔԻՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ ԵՒ ՍԱՀՄԱՆԱՑ ՆՈՐԱ, ԿԱՄ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԵԱՆ ՆՈՐԻՆ***, 1911, *էջ* 398) *Մալաթիոյ բնակչութեան վրայ խօսելով կ'ըսէ թէ.*

*«Նոր Մալաթիոյ բնակչաց համար Թէպէտ... գրուած է* 30·000 *անձ, եւ երրորդ մասը քրիստոնեայ կամ հայ, համեմատութիւնը կրնայ ընդունելի ըլլալ, բայց ոչ թուոյն քանակը. յայտնի է տներու որքանութենէն, վասնզի* 3000 *կամ* 3600 *տան մէջ, որուն երրորդ մասը* 1000 *կամ* 1200 *տունը քրիստոնեայ էին, ինչպէս գրուած է, այն ատենուան համար* 15000—20000 *է, աւելի բնակիչ չէր կրնար ունենալ: Իսկ հիմակ կը համարիմ* 30·000*–էն աւելի, իբր* 5—6000 *տուն, որոնց* 1500—2000 *տունը քրիստոնեայ են, եւ ասոնց մեծագոյն մասը չեն միացուած*[1], *այլ ունի հայազգի եպիսկոպոս իրենց առաջնորդ, որ Սսոյ կաթողիկոսին իշխանութեան ներքեւ է»:*

*Տ. Կարապետ Քհն. Պէննէեան իր տպագրեալ համառօտ տեղագրութեան մէջ Մալաթիոյ կուսակալութեան հինգ գաւառակներուն համար կու տայ բնակչութեան հետեւեալ թիւերը.*

| | | | |
|---|---|---|---|
| *Ա. ՄԵԼԻՏԻՆԷ* | *գաւառակ ունի* | 83·500 | *բնակիչ* |
| *Բ. ՀԻՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ* | » » | 14·000 | » |
| *Գ. ՊԵՀԵՍՆԻ* | » » | 16·000 | » |
| *Դ. ՔԵԱԽԹԷ* | » » | 13·000 | » |
| *Ե. ԱՂՃԱՏԱՂ* | » » | 13·000 | » |
| | *Ընդամէնը* | 139·500 | *բնակիչ* |

*Այս թիւերը դժբախտաբար չեն ճշդուած եւ յայտնի չեն թէ ի՛նչ աղբիւրներէ եւ ի՛նչ տուեալներու վրայ հիմնուած են: Միայն գիտելի է որ շատ անհամաձայն է վերը նշանակուած հայ եւ օտար աղբիւրներու հետ:*

*Նոյնպէս Գէորգ Մելիտինեցի իր* ***ՆԱԽՃԻՐՆԵՐ****ուն մէջ (տպ.* 1929, *Պոստոն) խօսած է Մալաթիոյ բնակչութեան վրայ:*

*Անիկա կ'ըսէ թէ* «Մալաթիոյ Հայութիւնը 1914 թուին կը հաշուէր 2400—2500 ընտանիք, կլոր գումարով 20·000 բնակչութեամբ» [*Գէորգ Մելիտինեցի,* ***ՆԱԽՃԻՐՆԵՐ*** (1915—1918), 1921, *Պոստոն, էջ* 61]:

*Նոյն հեղինակը կ'ըսէ թէ՝*

---

(1) *Ոչ-կաթոլիկ ըսել կ'ուզէ:*

*«Մալաթիոյ ընդհանուր բնակչութեան թիւը ըստ 1910-ի կառավարական տոմարներու՝ 65·000—70·000-ի կը հասնէր:*

*Այստեղ պէտք է յիշել որ բառին իսկական նշանակութեամբ կառավարական մարդահամար բնաւ չէ եղած: Յետոյ բնակչութեան որոշ մասը միշտ ալ խոյս տուած է պաշտօնական արձանագրութիւններէ, զանազան տուրքերէ խուսափելու համար: Եւ ամենէն կարեւորը սա է թէ լեռնաբնակ Քիւրտերէն շատեր երբեք ունեցած չեն որեւէ արձանագրութիւն, որպէսզի կարելի ըլլար ճշդել մօտաւոր թիւ մը անոնց համար:*

*1914-ին Մալաթիոյ գիւղական բնակչութեան 97 %ը Թուրք-Քիւրտեր էին, բայց անհերքելի փաստեր կ'ապացուցանեն, որ 1800 թուականներուն եւ առաջ նոյն եւ մասնաւորապէս արուարձաններու բնակչութեան 50 %ը Հայեր եղած են, որոնք հերթական կոտորածներու սարսափներէն մասամբ բնաջինջ եւ մասամբ կրօնափոխ եղած են»:*

*Իսկ համաշխարհային երկրորդ պատերազմէն ետք, ունինք սա տեղեկութիւնները, որ առնուած են* ԹՈՒՐՔԻՈՅ ՏԱՐԵԳԻՐՔ (Թուրքիէ Եըլլըգը) *անուն կրող երկու ստուար հատորներէն* (1947—1948), *որոնք խմբագրուած են Թահսին Տեմիրայի կողմէն մասնագէտ աշխատակիցներով (տես ՅՈՒՍԱԲԵՐ*, 22 *Սեպտ.*, 1948, *ԼԴ. տարի, Թ.* 150):

*Ըստ այս Տարեգիրքին՝ Թուրքիա ունի* 63 *նահանգներ* (Իլ *կամ* Վիլայէթ), 463 *գաւառներ* (Իլչէ *կամ* Գազա), 910 *գաւառակներ* (Պուճագ *կամ* Նահիյէ), 34024 *գիւղեր:*

*Մալաթիոյ նահանգը ունի* 19068 *քառ. քիլոմեթր տարածութիւն եւ* 438,397 *բնակիչ:*

*Նահանգին կեդրոնը՝ Մալաթիա քաղաքը ունի* 41559 *հոգի բնակիչ. որով կուսակալութեան իւրաքանչիւր քիլոմեթրին վրայ* 23 *անձի խտութիւն ունի բնակչութիւնը:*

*Այս ՏԱՐԵԳԻՐՔԷՆ ետք, այժմ տպագրութեան մէջ եղող Թրքերէն «ԻՍԼԱՄ ՀԱՄԱՅՆԱԳԻՏԱՐԱՆ»ի մէջ, որ կը պատրաստուի օգտուելով նոյն անունով տպուած գերմաներէն եւ ֆրանսերէն հրատարակութիւններէն, կը կարդանք սա տողերը.*

«Մալաթիոյ բնակչութիւնը Ի. դարուն վերջերը 30000 չափ ըլլալ կ'ենթադրուի (3000-ի չափ Հայ) եւ առաջին Համաշխարհային Պատերազմի տարիներուն, այս թուահամարին 40·000-ի մօտեցած ըլլալը ընդունուած էր: Ասով հանդերձ պատերազմի տարիներու ծանր կացութիւնը, Անատոլուի ուրիշ շատ մը քաղաքներուն պէս, Մալաթիան ալ լաւ մը ցնցած է:

Անկէ ետքի մարդահամարներուն՝ նախապէս յամրօրէն, իսկ յետոյ հետըզհետէ աւելի արագ յաւելումներ արձանագրուած են: Այսպէս.

1935-ին 27·300 հոգի
1940-ին 36·300 հոգի
1945-ին 41·500 հոգի
1950-ին 49·100 հոգի բարձրացած եւ վերջին մարդահամարին

1955–ի համամայն 64·880–ի հասած է: Այս կերպով, մօտաւորապէս վերջին քառորդ դարու միջոցին բնակչութիւնը երեք անգամ աւելցած է: Հետեւաբար Մալաթիա Թուրքիոյ արագ աճած քաղաքներէն մէկը եղած է:

Այս աճման պատճառները տեղւոյն կարեւորութիւնը եւ երկաթուղիի շինութիւնն են»:

*Ուշադիր քննութիւն մը Թրքական աղբիւրներու այս թիւերուն յերիւրածոյ հանգամանքը շուտով երեւան կը հանէ, սակայն աւելորդ է զբաղիլ անոնցմով:*

*Գալով Մալաթիոյ հայ բնակչութեան թիւին, անոր մասին քիչ մը աւելի ճոխ աղբիւրներ ունինք:*

*Առաջինը անոնց Սիմէոն Դպիր Լեհացիի տեղեկութիւնն է: Այս դպիրը, որ 1613–ին անցած է Մալաթիայէն հոն երկու շաբաթ կանգ առնելով, կը հաստատէ թէ հոն կ'ապրէին 100 տուն Հայեր (ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆ, էջ 190) առանց բնաւ խօսք ընելու Թուրքերու թիւին վրայ: Հ. Ղեւոնդ Ալիշան իր Աշխարհագրութեան մէջ Հայերու թիւը կը նշանակէ 4000 ընդհանուր բնակչութեան մօտաւորապէս մէկ չորրորդը, քանի որ ամբողջ բնակչութեան թիւը* 15–17·000 *կ'ընդունի:*

1881–*ին Յակոբ Ալլկուժուսեանց իր ՄԱՍԻՍ օրաթերթին մէջ (Թ.* 2845), *ՄԵԼԻՏԻՆԷ խորագրով մէկ յօդուածին մէջ, կը գրէ թէ* «Մելիտինէ իր մէջ մօտաւորապէս 2000 հայ ընտանիք կը պարունակէ»:

*Այս հաշուով նուազագոյն* 10·000 *Հայեր կային ուրեմն Մալաթիոյ մէջ* 1880–*ական թուականներուն:*

1891–*ին* Vital Guinet *որ, ինչպէս բացատրուեցաւ, շատ վստահելի աղբիւր մը չէ իր թիւերուն համար, Հայոց համար կուտայ բաւական մանրամասնութիւններ, զորս կը ներկայացնեմ առանց ճշգութիւնը երաշխաւորելու:*

*Ան Մալաթիոյ գաւառին հայ բնակչութիւնը իր յարանուանական բաժանումներով կը ներկայացնէ·*

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| *Հայադաւաններ* | 7080 այր | + | 8000 կին | = | 15080 |
| *Հայ–Կաթոլիկներ* | 370 այր | + | 400 կին | = | 770 |
| *Հայ–Բողոքականներ* | 150 այր | + | 200 կին | = | 350 |

*Այս վիճակագրութեան կցուած է, անշուշտ այս կեղծուած թիւերը պարտկելու դիտումով, հետեւեալ կրթական վիճակագրութիւնը, որ բնաւ համապատասխան չէ իրականութեան:*

*Հայադաւաններ ունին 7 բարձրագոյն վարժարան,* 600 *մանչ եւ* 100 *աղջիկ աշակերտներով,* 10 *այր ուսուցիչներով եւ* 200 *օսմանեան ոսկի ծախքով:*

*Հայ–Բողոքականները ունին 1 բարձրագոյն վարժարան,* 20 *մանչ եւ* 5 *աղջիկ աշակերտով,* 1 *այր դասատուով:*

*Հայ–Կաթոլիկները ունին* 13 *նախնական վարժարան,* 100 *մանչ եւ* 30

աղջիկ աշակերտով, 2 այր դաստուով եւ 20 ոսկի ծախքով:

Գալով քաղաքին, Vital Guinet անոր հայ բնակիչներուն թիւը կը նշանակէ՝

2000 հայադաւան
770 հայ-կաթոլիկ
350 հայ-բողոքական

———

3120 համագումար: Ընդհանուր 30·000 բնակիչներուն մէջ:

Հոս կեղծիքը եւ խարդախութիւնը ակներեւ է, վասնզի նոյնիսկ Թուրքեր ընդհանուր բնակչութիւնը 30·000 նշանակած ատեն անոնց մէկ երրորդը, այսինքն 10·000-ին հայ ըլլալը հաստատած են անվարան:

Vital Guinet Մալաթիոյ գաւառին (արդի կուսակալութեան) բնակչութեան ընդհանուր թիւը կը նշանակէ 44·906 (որուն համաձայն է նաեւ Շեմսետտին Սամի), որմէ՝

3770-ը Հայ
770-ը Հայ-Կաթոլիկ
350-ը Հայ-Բողոքական[1]

———

4890 գումար:

Ասոնք բոլորը ցոյց կու տան թէ Թուրք կառավարութենէն վարձկան հեղինակը կազմած է նպատակաւոր վիճակագրութիւններ պետութեան շահերուն եւ նպատակներուն համաձայն:

Ս. Մ. Ծոցիկեան (տես ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ, 1947, էջ 378) կը գրէ թէ՝

«Հայոց թիւը Մալաթիոյ մէջ, մօտ 20·000 էր, տեղահանութենէն առաջ՝ ըստ կրադեկ Մալաթիացի ազգայնոց հաղորդած տեղեկութեանց, թէպէտ եւրոպական աղբիւրներ նոյնքան ցոյց չեն տար այդ քանակը:»

Եթէ 20·000-ը չափազանցուած իսկ ըլլայ, բնաւ կարելի չէ 10·000-էն պակաս հաշուել Հայոց թիւը:

Բրոֆ. Մկրտիչ Որբերեան, որ Մալաթիացի էր եւ ունէր բաւական ընդարձակ տեղեկագրական ակնարկ մը Մալաթիոյ վրայ, ԲԻԻՐԱԿՆ հանդէսի մէջ, կը գրէ 1900-ին (էջ 71) թէ «Մալաթիոյ քաղաքին մէջ կան 7·000 տուն կամ կլոր թիւով 35·000 բնակիչ, որուն 5200 տունը թուրք եւ 1800 տունն ալ Հայ են սա բաժանումներով·

———

(1) Ինչպէս կը տեսնուի, Հայ-Կաթոլիկներու եւ Հայ-Բողոքականներու թիւերը
կրկնութիւնն են քաղաքին բնակչութեան մէջ Հայ-Կաթոլիկներու եւ Հայ-Բողոքական-
ներու համար նշանակուած թիւերուն: Ուրեմն Մալաթիոյ գաւառին մէջ բացի Մա-
լաթիայէն ուրիշ տեղ կաթոլիկ եւ բողոքական Հայեր պիտի չգտնուէին, ինչ որ սխալ
է, վասնզի կային:

1635 տուն հայադաւան
65 տուն բողոքական
80 տուն կաթոլիկ
20 տուն լատին»:

*Ինչպէս կը տեսնուի տարբերութիւնը չափազանց մեծ է:*

*Ճիշդ նոյն թուականին* (1900) *հրատարակուած ԿԱՄՈՒՍ ԻՒԼ ԱԼԵԱՄի մէջ, ինչպէս տեսնուեցաւ, ամբողջ գաւառին Հայոց թիւը միայն* 4890 *նշանակուած էր երեք յարանուանութեան բաժնուած, եւ քաղաքին բնակչութեան վրայ չէր խօսուած, հաւանօրէն անհեթեթութենէ խուսափելու համար: Երկու տարի ետք,* 21 *Մարտ* 1902 *թուականով, Օրմանեան Պատրիարքի յանձնարարութեամբ Մալաթիոյ Առաջնորդական Տեղապահ Խաչատուր Վրդ. Տէր Ղազարեանի կողմէ պատրաստուած ընդարձակ տեղեկագիրի մը մէջ Մալաթիոյ մէջ Հայերու թիւը նշանակուած է* 1550 *տուն բացի* 125 *Հայ-Կաթողիկէներէն եւ* 55 *տուն Լատիններէն:*

*Այս կերպով՝ նուազագոյն*
7750 *Հայադաւան*
625 *Հայ-Կաթոլիկ*
275 *Լատիններ կային, ինչ որ կը նշանակէ թէ* 8650 *Հայեր կ՚ապրէին Մալաթիոյ մէջ: Նկատելով թէ* 1895*-ին* 1000 *Հայեր ջարդուած էին, ուրեմն* 10.000 *թիւը Հայոց համար վաւերական է:*

*Տեսնուեցաւ նոյնպէս թէ՝ Գերպ. Անդրէաս Վ. Ալեքսանդրեան (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ*, 1912, *էջ* 398), *յիշելէ ետք թէ երբեմն* 30.000 *ներկայացուած է ընդհանուր թիւը, եւ մէկ երրորդը Քրիստոնեայ կամ Հայ,* 1912*-ին սակայն* 30.000*-էն աւելի կը համարէ բնակչութիւնը՝ միշտ մէկ երրորդը հայ ըլլալու պայմանով. որով* 10.000*-էն աւելի կ՚ըլլայ Հայոց թիւը:*

1914*-ին Պատրիարքարան հաղորդուած տեղեկութեան մը համաձայն Մալաթիոյ մէջ* 2300 *տուն եւ* 15000 *անձ Հայեր կ՚ապրէին:*

1914—1918 *պատերազմի շրջանին հայկական տեղահանութեան եւ կոտորածէն ետք,* 1919*-ին, Կ. Պոլսոյ Պատրիարքարան հաղորդուած տեղեկութեանց համաձայն* 2000 *Հայեր փրկուած եւ Մալաթիա դարձած էին, այսինքն միայն* 500 *տուն եւ* 2000 *անձ մնացած էին Հայերը, միայն* 20 *տարեկանէն վեր* 135 *այր, մնացեալը ամբողջ կին եւ տղայ:* 1919*-ին անոնք ունէին* 400 *որբերով որբանոց մը:*

1919 *Սեպտեմբեր* 12*-ին Անգլիական Մաժէօր Դաւիթ* 10 *գինուորներով Մալաթիա կ՚երթայ եւ* 1914*-ի զօրաշարժէն առաջ ազգերու թիւին վրայ քննութիւն կը կատարէ:*

*Կարապետ Գըրճեան կու տայ հետեւեալ վիճակագիրը.*

Մալաթիա
Մուշովկա
Անսուր

| | |
|---|---|
| Հաքիմխան | ընդհանուր կերպով 22396 անձ |
| Վարի քաղաք | |
| Օրտուզի | |
| Չըրմըգտի | |
| Պեհեսնի | 7500 անձ |
| Հիւսնի Մանսուր | 9000 անձ |
| Քեախթէ | 5000 անձ |
| *Գումար* | 43896 անձ |

*Օսմանեան կառավարութիւնը շատ պակաս ցոյց կու տայ Հայոց թիւը: Անգլիացի հրամանատարը քննութեան կը ձեռնարկէ Օրտուզէն սկսելով: Կարապետ Գլըճեան հոն ցոյց տուած էր 15 տուն եւ 70 անձ: Երեւան կ՚ելլէ որ 21 տուն եւ 96 հոգի կար· որով կը հաստատուէր թէ Հայոց կողմէ թրքական վայրագութեանց համար չափազանցութիւններ չէին եղած եւ Մալաթիոյ եւ իր թեմերուն մէջ Հայերու համար թրքական վիճակագրութիւնները բոլորովին ճշմարտութեան համապատասխան չէին:*

*Մալաթիոյ մէջ այնքան դժբախտ պայմաններ ստեղծուած էին որ 1919-ին զինադադարէն ետք հոն մնացած 2000 Հայերը հետզհետէ պակսեցան: Իրենց թիւը իջաւ 300 ընտանիքի այսինքն 1500 հոգիի, որոնք թրքախօս դարձած էին:*

*Եկեղեցի եւ դպրոց չունէին, եւ նոր սերունդը ձուլուելու վտանգի մէջ էր: Դիմում կատարած են Պոլիս, որպէսզի քահանայ ղրկուի, սակայն կարելի չէ եղած:*

*Պատրիարքարանը տարին անգամ մը այցելու եկեղեցական մը միայն կը ղրկէ հիմա:*

*1947-ին Կեսարիոյ հովիւ Տ. Հայկազուն Քհն. Կարապետեանի Փոքր Ասիոյ Հայերուն համար կազմած մէկ տեղեկագրին համաձայն Մալաթիոյ մէջ 500 Հայեր կային դեռ (ՅՈՒՍԱԲԵՐ, 29 Յունուար, 1948, ԼԳ. տարի, Թ. 256): Տասը տարի յետոյ այս թիւը աւելի պակսած է կարծեմ, վասնզի բոլոր անոնք, որ միջոց կը գտնեն, կը հեռանան Մալաթիայէն:*

*
**

*Բնակչութեան թիւին վրայ այս տեղեկութիւնները տալէ ետք անոր ազգային եւ ցեղագրական բաժանումներու վրայ ալ գաղափար տալ պէտք է:*

*Մալաթիոյ մէջ ապրած ցեղերուն մեզի համար ամենէն կարեւորը եւ առաջինը Հայն է, որուն նուիրուած է այս հատորը: Մալաթիոյ Հայերուն մասին այնքան մանրամասնութիւններ տրուած են որ կը կարծեմ թէ աւելցնելիք բան մը չկայ:*

*Միայն պէտք է ըսեմ թէ Հայերը Մալաթիոյ մէջ չարունակ սպառած, հիւծած եւ իրենց ցեղային նկարագիրը կորուսած են:*

Հռոմ-բիւզանդական տիրապետութեան տակ, բիւզանդացի դառնալով Հայութեան համար մեռած են: Իսկ իսլամ յաջորդական տիրապետութեանց ներքեւ իսլամանալով Հայ ըլլալէ դադրած են եւ Արաբ, Քիւրտ եւ Թուրք դարձած են:

Մալաթիոյ, ինչպէս շրջակայից բնակչութեան մէջ, մեծամասնութիւնը իսլամ էր, բայց ոչ ցեղով Թուրք, այլ դուցէ մեծ մասը իսլամացած Հայերով, Ասորիներով, Յոյներով եւ այլ ազգերէ անձերով կազմուած:

Այս գիրքին մէջ Մալաթիոյ Թուրքերը տեսնուեցաւ որ ոչինչով ետ կը մնային՝ ունենալով Թուրքերու յատուկ բոլոր վայրագութիւնները եւ գազանութիւնները, եւ ինչպէս բոլոր Թուրքերը օժտուած էին ոճրագործային բընազդներով, եւ մոլեռանդութեամբ, մինչ Սիմոն Դպիր Լեհացի, որ 1613-ին Մալաթիա այցելած էր, Մալաթիոյ Թուրքերուն մասին կու տայ հետեւեալ նպաստաւոր եւ զարմանք պատճառող վկայութիւնը.—

Մալաթիոյ «Տաճիկք խիստ քաղցր եւ մարդասէրք են եւ բարի, ոչ նման այլ Տաճկաց, իժ եւ օձք, զի եւ կաւուր անգամ ոչ ասեն մեզ այլ էսայի եւ յիսակուլի, եւ յոյժ պատուէին եւ սիրէին զմեր ազգն»:

Ասիկա զարմանալի յայտնութիւն մըն է, որ մեկնութեան կը կարօտի, եւ ուրիշ կերպով չէ կարելի մեկնել այս քաղցրութիւնը եւ բարութիւնը եթէ ոչ անով որ տակաւին այդ թուականին Մալաթիոյ մէջ կը շարունակուէր Սելճուկ-Թուրքերու օրերէն ընտրուած սիրաշահող քաղաքականութիւնը, վասնզի տակաւին Օսմանեան Թուրքերը թիւի խնդիրը չէին լուծած եւ իրենք կը մնային աննշան փոքրամասնութեան մը մէջ: Սիմոն դպիր Լեհացիի Մալաթիա այցելած թուականէն հազիւ 20—50 տարի ետքը Tavernier (1605—1689) Ֆրանսացին, որ 1632-ին, 1638—1642-ին, 1643—1649-ին, 1652—1656-ին, 1657—1662-ին եւ վերջապէս 1663—1658-ին, վեց անգամ արեւելք ճամբորդած էր, կ՚ըսէր թէ «Թոգատէն մինչեւ Թաւրէզ երկիրը գրեթէ միմիայն քրիստոնեաներէն բնակուած է եւ ըստ որում այս ընդարձակ տարածութիւնը նախնեաց Հայաստանի նահանգ կոչածն է, պէտք չէ զարմանալ եթէ քաղաքներուն եւ գիւղերուն մէջ **ՄԷԿ ՄԱՀՄԵՏԱԿԱՆԻ ՓՈԽԱՐԷՆ ՅԻՍՈՒՆ ՀԱՅ ԿԸ ԳՏՆՈՒԻ** (**Les six voyages de Jean Tavernier en Turquie, en Perse et aux Indes**, Paris, 1713, I, p. 47—8):

Եթէ նոյնիսկ այս համեմատութեան մէջ չափազանցութիւն կայ, անուրանալի իրողութիւն մըն է որ Թուրքերը աննշան փոքրամասնութիւն մըն էին եւ թերեւս ասոր համար զգուշութեամբ կը վարուէին իրենց նուաճած ժողովուրդներուն հետ մինչեւ որ դժոխային ծրագիրներով թիւի կարեւոր հարցը լուծէին:

Ինչպէս կը տեսնուի, Թուրքերը ԺԷ. դարուն առաջին կէսին տակաւին չէին կրցած մեծամասնութիւն ըլլալ եւ պատկառանօք կը վարուէին Հայերու հետ, որոնք հազիւ 100 տուն էին ըստ Սիմէոն դպիր Լեհացիի: ԺԷ. դարէն ետքն է որ Թուրքերը բաւական ստուարացած էին բռնի իսլամացնելով Անատոլուի բնակչութիւնը, Ենիչէրիներու թիւը շատցնելու համար մանկաժողով-

ներով եւ այլ այս կարգի միջոցներով, ինչպէս նաեւ մոլեռանդական քարոզչութեամբ: Դեր մը կատարած ըլլալ կը թուին նաեւ իրենց անկեղծօրէն իսլամացած ըլլալը ցոյց տալու համար կրօնափոխ քրիստոնեաներուն մոլեռանդական արարքները, որոնց զոհերը եղած են իրենց կրօնքը պահող քրիստոնեաները:

Այնպէս որ Սելճուկ-Թուրքերու ցոյց տուած մեղմ եւ սիրաշահող ընթացքը փոխուեցաւ եւ սկսան հալածանքներ, հովանաւորութեամբը եւ քաջալերութեամբը օսմանեան պետութեան, որուն վարիչները իրենց պետութիւնը զօրացնելու եւ նուաճուած երկիրները իսլամացնելու համար գործադրած խժդժութիւնները տեսանք:

Այս վայրագութիւններէն զերծ չէ մնացած նաեւ Մալաթիա: Հետեւաբար հոն ալ ապահովաբար օսմանեան տիրապետութենէն ետք իսլամացողներ եղած են մեծ թիւով, որոնք հեզաբարոյ Իսլամներու նկարագիրը փոխած են, վասնզի դիտուած է որ սովորաբար այդպէս բռնի իսլամացողները յետոյ չափազանց մոլեռանդ եղած են իբր գինիէն դարձած քացախ:

Լենկթիմուրի առենէն սկսեալ հալածանքը տարածուած է Մելիտինէի ամբողջ դաշտին եւ շրջապատող անառիկ լեռնաշղթաներուն վրայ. Թուրքերը կործանած էին եկեղեցիները եւ կոտորած էին բնակչութեան մեծամասնութիւնը: Իսկ մնացածներն ալ դաւանափոխ եղած էին. այսօր Պէկտաղիի, Աղճա Տաղի, Քեախթէի եւ Իզօղլուի քիւրտ կամ թիւրք բնակչութեան շատ մը ընտանեկան անուններն ու մականունները հայկական են: Իրենց սովորութիւնները քրիստոնէական էին. հացի համար շաղուած խմոր եփելու երկար սաճը կը խաչանշէին, իրենց ձեռագործները — գորգ, կապերտ, շատ մը զարդերու եւ պատկերներու գլուխներն ու մէջտեղերը խաչի պատկերներով կը զարդարէին (Տոքթ. Մ. Քեչիշեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Ա. տարի, Թ. 4, էջ 7):

Ամէն պարագայի մէջ, ինչ ձեւով որ ալ եղած ըլլայ, եկած է առեն մը որ Թուրքերը յաջողած են մեծամասնութիւն կազմել թէ՛ քաղաքին եւ թէ գաւառին մէջ եւ ամենէն ստուարաթիւ տարրը դառնալ:

Անցեալ դարուն երկրորդ կէսին երբ այլեւս հայ եւ թուրք յարաբերութիւնները լարուած էին,, Մալաթիոյ Թուրքերն ալ այլեւս կատղած էին:

Սրուանձտեանց իր այցելութեան առեն (1879) Մալաթիա կը հասնի եւ քաղաք կը մտնէ իր տպաւորութիւնը շատ աննպաստ է Թուրքերուն նկատմամբ. «Ամէն տեղ տեսածդ Թուրքեր են, լամուկները յետին աստիճան լիրբն, սրիկաները եւ արբեալները կը վխտան: Դռներուն վրայ Շամայ մեծ գլուխներով եւ երկայն մօրուքներով Թուրքերը նստած կը ծխեն եւ ծանր ծանր կը խօսակցին, խոժոռ եւ խորհրդաւոր հայեացքներ ձգելով անց ու դարձ ընողին վրայ. հոս եկած էին Էրզրումէն գաղթական քանի մը տուն բարեպաշտ Միւսլիմաններ, չկրնալով հանդուրժել կեաւուր Ռուսի իշխանութեան տակ մնալ եւ իրենց խղճմտանքը հանդարտել» (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա., էջ 307):

Թերեւս այս եւ նման գաղթականներ, ինչպէս Կովկասէն Թուրքիա ա-

պաստանած Մուսլիմաններ ալ դէշ դեր կատարած են հակաքրիստոնեայ զգացումներ արծարծելու համար։

Եւ 1879-ին արդէն իսկ ստեղծուած էր անհանդուրժելի վիճակ մը, զոր Սրուանձտեանց եպս. հոն պտած է, ինչպէս պիտի տեսնուի Հայոց քաղաքական կեանքին վրայ խօսուած ատեն վարը։

Թուրքերը, իբր բաղկացուցիչ տարրերէն մէկը Մալաթիոյ բնակչութեան, հակառակ անոր որ պետութիւնը իրենց նեցուկ եւ քաջալերող էր, իրականութեան մէջ շատ խեղճ վիճակ մը ունէին եւ շատ ետ կը մնային Հայերէն։

Բրոֆ. Մկրտիչ Որբերեան, Մալաթիոյ Թուրքերու կրթական վիճակին վրայ խօսելով, սապէս կը ներկայացնէ զայն 1900-ին. «Թուրքերը ամէն փողոցի գլուխ իրենց թաղային ՄԷՏՐԷՍԷն ունին, որոնց աղմուկը խումբ մը տըղայոց խռնումը կը ծանուցանէ անցորդին։ Ասոնցմէ զատ վեց հատ բարձրագոյն ուսանողներու ՄԷՏՐԷՍԷներ կան, որոնց մէջ Ամեր Ահմէտ Օղլու հաստատութիւնը իր փառաւոր շէնքով, աղբիւրովն եւ կանոնաւորութեամբը առաջին դիրքը կը գրաւէ։ Մէքթէպը Րուշտիէն կրթական նոր ծրագիրը իրագործելու ձգտումին մէջ կը գտնուի» (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 85)։ Իրենց ունեցած վարժարաններն են մէկ Րուշտիէ (բարձր նախակրթարան), երկու Իբթիտայի (Նախակրթարան) եւ 40 սիպեանիյէ (ծաղկոց)։ Հայոց հետ բաղդատելով, ինչպէս կը տեսնուի, շատ ետ մնացած էին։

Կրօնական վիճակնին ալ շատ նախանձելի չէր։

Իւրաքանչիւր թաղի մէջ մէկմէկ անշուք աղօթավայր ունէին՝ մի քանին քարաշէն։ Ասոնցմէ զատ անոնք ունէին 6—7 մեծ ու քարաշէն մզկիթներ։ Փառաւոր շինութիւններ են շուկային կեդրոնը կառուցուած Ջինարը եւ Սերկիտը Ճամի մզկիթները, որոնցմէ մին 1893-ի երկրաշարժէն փլած է։

ԺԹ. դարուն վերջին տարիները Համիտիէ անունով փառաւոր եւ մեծածախս մզկիթի մը հիմնարկէքը կը կատարուի։ Շէնքը կը խոստանար ըլլալ ճարտարապետական գեղեցիկ կառուցում մը, պատկառելի։

1900-ին դեռ աւարտած չէր։

Թուրքերը ունէին նաեւ իրենց յատուկ ուխտատեղիներ, ինչպէս էին Գարա-Պապա, Ալի Պապա, Ահմէտ Տուրան, Մեր Խօմէր, Գոճա Վա'իզ, Սարըլըգ, Գըզլար, Ետի Գարտաշլար, Իւչ Գարտաշլար, Քէօլէլը Պապա, Հաճի Պայրամ, եւայլն։

Ասոնցմէ ոմանք հին քաղաքի ճամբուն վրայ, ոմանք հին քաղաքի մէջը եւ միւսներն ալ գաւառակին այլեւայլ կողմերը կը գտնուին։

Մալաթիոյ բնակչութեան մէջ թիւի առաւելութեան կարգով երրորդը Քիւրտերն են, որոնց մէկ կարեւոր մասը իսլամացած Հայեր էին, ինչպէս այլուր նոյնպէս նաեւ Մալաթիոյ նահանգին մէջ, որուն թէ' դաշտային եւ թէ լեռնային շրջաններուն մէջ քրտաբնակ գիւղեր կային։

«Քիւրտական շատ մը ցեղեր դեռ վերջերը սովորութիւն ունէին խմորը

շաղելէ ետք խաչանիշ մը դնել վրան, որպէսզի *Պէրէքուր* ըլլայ եւ անի:

Շատ մը գիւղերու մէջ դեռ մինչեւ վերջերը կանգուն կը մնային հայ եկեղեցիներու փլատակներ եւ հին գերեզմաննոցներ խաչանիշ քարերով, եւ այս բոլորը իրենց աղաղակող գոյութիւնը կը պահէին, հակառակ թուրք-մոնկոլական ցեղի ամէն յիշատակ քանդելու աւերելու բնածին բնազդին»: (*Գէորգ Մելիտինեցի*, ***ՆԱԽՃԻՐՆԵՐ***, [1915—1918], 1929, *Պոստոն*, *էջ* 60—1):

*Ինչպէս Խոսրով Եղիայեան* (ՊԱՊ ՈՒԽՏԻ, *Թ*. 30, *էջ* 15) *կ'ըսէ, ճշմարտութեան սիրոյն պէտք է զանազանել Քիւրտերը իրարմէ եւ ըսել թէ լեռնային շրջաններու Քիւրտերը աւելի վեհանձն էին, աւելի Հայոց մօտ եւ Հայ արհեստաւոր վարպետներու յարգը գիտէին քան դաշտայինները: Շատ հազուադէպ էր որ լեռնային շրջաններու քիւրտ աղաները փոխէին իրենց արհեստաւոր վարպետները* (*Նոյն*, *Թ*.30, *էջ* 15):

*Ապահովաբար Քիւրտերու այս մասը կը պատկանէր այն հատուածին, որ իր զէնքերը վար չդնելու համար ընդունած էր իսլամութիւնը:*

*Քիւրտերը Մալաթիա եկած են արեւելքէն եւ հարաւային Հայաստանէն գաղթած են:*

*Գարեգին եպս. Սրուանձտեանց իր* ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*ի մէջ բաւական կարեւոր տեղեկութիւններ տուած է Մալաթիոյ Քիւրտերուն վրայ, զորս կը ներկայացնեմ:*

*Անիկա կ'ըսէ թէ՝*

«Մալաթիոյ լերինք, տեղական անունով Աղ-Տաղ, Բէկ-Տաղ, քաղաքին հարաւը, որոնց բնակիչքն են արիւնկզակ Քիւրտեր, Մալիկանցիք, Ալիկանցիք, Քավի եւայլն... թէ՛ հասարակաց վնասակար եւ թէ՛ ցեղ ցեղի սաստիկ ոխերիմ: Այս լերանց միւս երեսն է, Պեհեսնի եւ Ադիեամանի: Աղջադաղ լեռն Մալաթիոյ արեւմուտքն է, որոյ բնակիչ Քրդեր 5—8 հազար տուն են, կիսով չափ Գըզըլ Պաշ, որք մեծ չարիք կը հասցնեն Արաբկիրի, Հեքիմ-խանի եւ Հալէպի ճանապարհաց ու անոնց մօտ եղած գեղերու եւ քաղաքաց, ոչ զօրք կուտան տէրութեան եւ ոչ տուրք» (*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, *Ա*., *էջ* 321):

*Աղջատաղը Սրուանձտեանց կը նոյնացնէ* ՍԵՒ ԼԵՌԻՆ *հետ, զոր* Սուրբ Լերինք *ալ կոչած են. հոն հաստատուած էին Ասորի եւ Յոյն միաբանաց վանքեր:*

*Աղջատաղի շրջանակի Քիւրտերը որոշ է որ իսլամացած Հայեր էին:*

1878*-ին տակաւին երկու գիւղեր կային այս շրջանին մէջ հայաբնակ եւ հայանուն* — Անսուր եւ Մուշեղովկայ:

*Սրուանձտեանց եպս. կը պատմէ թէ* «Մուշովկայի ծերունի Տէր Յակոբ քահանան տեսայ Մալաթիոյ մէջ, որ կը պատմէր թէ բոլոր Աղջատաղի ձորերն ու բլուրները աւերակներով լի են, խաչքարերու աւերակոյտեր, զորս կը յարգեն Գըզըլպաշներ եւ կ'ըսեն թէ՝ եկեղեցի են եղած այս տեղեր. խաչքարերու վրայ յաճախ յունարէն եւ ասորերէն գրեր կը տեսնուին, տուն ուրեք ալ հայերէն, բայց Հայոց խաչքարեր յայտնի են ըսաւ, վասնզի բեւեռ ունին

մէջ տեղը, թէ Թադէոս Առաքելոյ օծածներն են այս բեւեռները:

Պատմեց թէ *Ղուրչունլու Գալա* գեղի Գըզըլպաշները աւերակ մը փոքր էին, ուստի չորս խաչքար եղած էր, եւ եկեղեցւոյ կամարները կային, Տէր Յակոբը կանչեր էին Քրդերը, եւ սա գնալով խաչքարերը մէկ կողմ առած էր, եկեղեցւոյ շուրջ քարերով կիսացանկ բրած էր, եւ այն խաչքարերու բեւեռները հանելով իր քովն առած էր, որոնցմով հիւանդաց համար խաչհանգիստի ջուր կ'օրհնէր: Բեւեռի մէկն խնդրեցի եւ առի: Սա պատմեց թէ *Թորոսի Վանք* անունով շէնք մը կայ դեռ, եւ այլ կցկտուր եւ սրտակտուր բաներ կը պատմէր· ափսոս որ աղէկ ուշադրութիւն բրած չէր, թէպէտ բաւական աչքաբաց եւ լուրջ մէկն էր, բայց պատմութիւն գիտնալ պէտք էր: Սա ազատութիւն ունէր բոլոր Աղջատաղի Քրդաց մէջ արձակ եւ ապահով շրջելու, վասնզի իբրեւ աղօթելով եւ թուղթ գրելով բժշկութեան համբաւ հանած էր· ուստի բոլոր քիրդ հիւանդներ զայն կը յարգէին: Այս Քրդերը այն աւերակ եկեղեցեաց ուխտ եւ մատաղ ալ կ'ընեն եղեր:

Տէր Յակոբի հետ Մալաթիոյ ծերերն ալ կը հաստատէին թէ հին քաղաքին Մելիտինէի պարսպին մէկ դուռն՝ Թորոսի անուամբն էր, զոր *Թորոս Գաբուսու* կ'անուանեն եղեր Տաճիկները» (*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, Ա., էջ 322):

*Բայց, ինչպէս վերը ցոյց տուի, Մալաթիոյ իսլամ բնակչութիւնը զուտ հանգամանք չունի, եւ թէ՛ Թուրքերը, թէ Քիւրտերը ամբողջովին ՍՈՒՆՆԻ իսլամներ չեն:*

*Քիւրտերէն եւ Թիւրքերէն կարեւոր հատուածներ գաղտնի քրիստոնեաներ են, կամ իսլամացած Հայեր են, որ հակառակ դարեր անցած ըլլալուն՝ կը պահեն տակաւին իրենց քրիստոնէական աւանդութիւնները:*

*Ասոնք* Գըզըլպաշ *կը կոչուին եւ կը կազմեն իսլամ աղանդ մը, որ քրիստոնէական ծագում ունի եւ քրիստոնեայ մի քանի հին աղանդներու հետ մեծ նմանութիւններ...*

*Թրքական կառավարութիւնը Գըզըլպաշները կը ներկայացնէ Թուրք եւ կարգ մը հեղինակներ զանոնք կը ներկայացնեն Քիւրտ, սակայն իրականութեան մէջ անոնք ո՛չ Թիւրք են եւ ոչ ալ Քիւրտ, եւ շատ հաւանօրէն Հայ ծագում ունին:*

*Գըզըլպաշները ներքնապէս թրքատեաց են եւ իսլամներու պէս* Նամեհրամ *չեն պահեր* (*Խօսրով Եղիայեան*, *ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *թ.* 30, *էջ* 13):

*Հայ ազգէն յափշտակուած այս հատուածին վրայ երկարօրէն խօսելու պէտք չեմ տեսներ, վասնզի շատոնց ազգութենէն անջատուած են*[1]:

(1) *Գըզըլպաշներու վրայ հետաքրքրական ուսումնասիրութիւն մը ունի Տոքթ. Ն. Տաղաւարեան* «Քրիստոնէական բողոքականութեան եւ Գըզըլպաշներու աղանդին ծագումը» (*1914, Կ. Պոլիս*) *անունով:*

## Բ.

# ՄԱԼԱԹԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

*Մալաթիոյ Առաջնորդութեան ենթակայ վիճակները միշտ փոփոխական եղած են եւ առաջնորդութիւնը երբեմն ընդարձակուած է եւ երբեմն սեղմուած:*

*ԺԹ. դարուն վերջերը եւ Ի. դարուն սկիզբը պետական բաժանումներու պատշաճեցուցուած են Հայ Առաջնորդութիւնները եւ Մալաթիոյ առաջնորդութիւնն ալ Մամուրէթ իւլ Ազիզ կուսակալութեան ենթակայ Մալաթիոյ կառավարչութեան վրայ տարածուած է: Այդ կառավարչութիւնը Թուրք հանրապետութիւնը կուսակալութեան վերածած ըլլալով, զայն հիմ առնելով պիտի ներկայացնեմ Մալաթիոյ առաջնորդութեան հայաբնակ վայրերը, որոնց ամբողջութիւնը կը կազմէր Մալաթիոյ եպիսկոպոսութիւնը, ենթակայ Կիլիկիոյ կաթողիկոսութեան:*

*Մալաթիոյ կուսակալութիւնը քաղաքային բաժանումներու համաձայն բաժնուած ըլլալով գաւառակներու՝ հայաբնակ թեմերն պիտի դասաւորուին ըստ այդ բաժանումներու:*

*Արդ Մալաթիոյ կուսակալութեան վարչական բաժանումները, ինչպէս բացատրուած է, հինգ էին.*

1. Կեդրոնական գաւառը Մալաթիա
2. Ակրա
3. Պեհեսնի
4. Հիսնի Մանսուր կամ Ատըեաման
5. Քեահթէ

*Ասոնցմէ առաջին երկուքը Մալաթիա եւ Ակրա գաւառները հին եւ պատմական Մելիտինէի գաւառը կը ներկայացնեն եւ պատմական Փոքր Հայքի կը պատկանին:*

*Իսկ մնացեալները (Պեհեսնի, Հիսնի Մանսուր եւ Քեահթէ) տարբեր աշխարհագրական միութիւններու մաս կը կազմէին:*

*Սակայն նկատելով որ դարերու ընթացքին այնքան փոփոխուած եւ շփոթուած են այս գաւառներու սահմանները որ այսօր կարելի չէ ճշտական ըլլալ, նոյնպէս նկատելով որ Մալաթիոյ հայ առաջնորդութիւնը իր իրաւասութեան տակ ունէր կուսակալութեան միւս երեք գաւառները, որոնք Մալա-*

*Թլոյ հարաւային կողմը եւ Եփրատէն արեւմուտք կը գտնուէին, պէտք էր այդ գաւառներն ալ նկատի ունենալ, իբր կցեալ Մալաթիոյ, թէեւ չպատկանէին Փոքր Հայքի:*

*Մալաթիոյ հարաւային կողմը գտնուող այս գաւառները հին ատեն մաս կը կազմէին Կոմագինէի (*Կոմագ *կամ* Կոմագիա *ալ ըսուած) կամ Հայոց կողմէ յաճախ* Եփրատացիք *կոչուած աշխարհամասի մը, որ ինչպէս յայտնի է թագաւորութիւն մը կը կազմէր Քր.է առաջ Ա. դարուն:*

*Այդ թագաւորութիւնը Վեսպասիանոսի ատեն հռոմէական նահանգի վերածուեցաւ (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ* 405*): Եւ բիւզանդական կայսրութեան ատեն Լիւկանտոնի Հայ Նախարարութեան եւ զինուորական թեմին միացաւ (Նոյն):*

*ԺԱ. եւ ԺԲ. դարերու Հայերու թիւը շատ բազմացաւ այդ շրջանակին մէջ եւ ինչպէս տեսնուեցաւ այդ հողերը յաջորդաբար մաս կազմեցին Փիլարտոսի կազմած համադաշնակցութեան, Գող Վասիլի եւ անոր յաջորդ Տղայ Վասիլի իշխանութիւններուն:*

*Այդ շրջանին տիրեցին նաեւ խաչակիրք եւ անոնց կազմած Եդեսիոյ Լատին կոմսերը եւ անոնց ստորադաս Հայ իշխանները: Յետոյ երկիրը ենթարկուեցաւ իսլամներու տիրապետութեան: Տիրեցին Որտուքեանք, Սելճուկ Ռումի Սուլթանները, Մուսուլի եւ Հալէպի էմիրները, որոնք իրարու ձեռքէ խլեցին Եփրատացիքը, մինչեւ որ Թաթարները հասան Փոքր Ասիա:*

*Անոնց յաջորդեցին Եգիպտացիք որոնք երկար ատեն պահեցին այդ գաւառները, մինչեւ որ* 1516*-ին Օսմանցի Թուրքերը վերջապէս գրաւեցին պատմական Կոմագինէն կամ Եփրատացիքը, որմէ Պեհեսնի, Հիւսնի Մանսուր եւ Քեահթէ երեք գաւառները Մալաթիան կեդրոն ունեցող վարչական բաժանումի մը ենթարկուեցան, որ, ինչպէս բացատրուած է, երբեմն Տիարպեքիրի կուսակալութեան մաս կը կազմէր եւ երբեմն ալ Մամուրէթ իւլ Ազիզի, եւ այժմ կը կազմէ անջատ կուսակալութիւն մը:*

*Արդ այս երեք գաւառներուն (*գազա*) եւ անոնց հայ բնակչութեան եւ Հայաբնակ վայրերուն վրայ ալ պիտի խօսուի, որպէսզի Մալաթիոյ հայ առաջնորդութեան բոլոր հայաբնակ վայրերը ներկայացուցած ըլլան՝ քաղաքային-պետական վարչական բաժանումներուն համաձայն:*

*Այս վերջին երեք գաւառները միշտ առնչութիւն եւ կապ ունեցած են Մալաթիոյ հետ, որ իբր մեծ կեդրոն մը՝ ղեկավար դեր մը կատարած է այդ յարակից գաւառներուն նկատմամբ:*

*Ուրեմն պիտի խօսիմ նախ Մալաթիոյ կեդրոնական գաւառին եւ Աղճատաղի պատկանող հայաբնակ վայրերուն եւ ապա՝ Քեահթէի, Հիւսնի Մանսուրի եւ Պեհեսնիի գաւառներու հայաբնակ վայրերուն վրայ:*

## Ա. ՄԱԼԱԹԻԱ ԳԱՒԱՌ

*Ինչպէս վերը տեսնուեցաւ, Մալաթիոյ կուսակալութիւնը կը բաժնուէր հինգ գաւառներու, որոնց առաջինն էր կեդրոնական Մալաթիա գաւառը, որ, ինչպէս յիշեցի(*), բացի Մալաթիա քաղաքէն իր մէջ ուրիշ քաղաք չունէր եւ կը բաղկանար մօտաւորապէս 150 գիւղերէ, որոնք կը կազմէին չորս* (4) *գիւղախումբեր, որոնք էին.*

Ա. Մալաթիա

Բ. Պալեանի գեղախումբ

Գ. Ճուպասի գեղախումբ

Դ. Իզօղլու գեղախումբ

*Այս չորս գեղախումբերու մէջ էին այն 150-ի մօտ գիւղերը, որոնք այս գաւառակին կը պատկանէին։*

*Հողեբոյս Պէննէեան քհն. գանոնք մի առ մի կը յիշէ անոնց կեդրոնէն ունեցած հեռաւորութիւնները նշանակելով։*

*Ահա այս ցուցակը։*

### 1. — ՄԱԼԱԹԻՈՅ ՎԵՐԱԲԵՐՈՂ ԳԻՒՂԵՐԸ

Սամանֆէօյ, *հեռաւորութիւն կեդրոնէն 1 ժամ*, Շահնախան՝ 2, Քեսրիկ՝ 2, Բերբերիմ՝ 2.5, Տէվէնէլ օղլու Չիֆթլիկ՝ 2.5, Գուշտողան՝ 4, Քինդրպէկ՝ 3, Զըրմըգտը՝ 2, Վերի Գարակէօզ՝ 2, Վարի Գարակէօզ՝ 2, Զամուրլի՝ 1.5, Վերին Պանազի՝ 1, Օրտուզի՝ 1, Վարի հին ֆաղաֆ՝ 2, Դելեկ՝ 2, Հիլան՝ $2^1/_4$, Խաքուն Սույը՝ 2, Պոռան՝ 3, Գատը չայըրը՝ 3.5, Հասըրճըլար՝ 3.5, Պիլտիմ՝ 3, Ալիշար՝ 3, Մահմուտի՝ 4, Քիւլլի մաղարա՝ 4, Մանտերէ՝ 4, Միսիրի տէրէսի՝ 4, Չերմէկի՝ 5, Քէօմիւշխան՝ 5, Էյրիպիւֆ՝ 5, Թեճիրլի՝ 5, Տէտէ Գալզըն՝ 4.5։

*Վերջի 6 գիւղերը՝ Մելասի միւս կողմը գտնուելով մերթ* Կապանմատանի *եւ մերթ Մալաթիոյ վրայ կը փոխանցուէին։ Զըրմըգտի եւ Քինտիպէկ՝ իրենց բնակչութեան հետեւանօք մէյ մէկ աւան կը համարուէին։ Իրենց մէջ ունէին արհեստաւորներ, խանութներ եւ խաներ, ու ջրաղացներ։ Այս երկու գիւղերու պարտէզներն ու այգիները թէ՛ նշանաւոր են եւ թէ կը հաւասարին միւս այդէ գիւղերու բոլորին։*

### 2. ՊԱԼԻԱՆ ԳԻՒՂԱԽՈՒՄԲԻ ԳԻՒՂԵՐԸ

Գատիր ուշաղը՝ *հեռաւորութիւն* 4, Խաչովա՝ 6, Սէյտ ուշաղը՝ 4, Ճաֆան՝ 4, Գառլանղուճ՝ 5, Քիլիսէ՝ 5.5, Մամազար՝ 5.5, Պուտալա ուշաղը՝ 6, Չէյտան՝ 6.5, Կէօչեճէկ՝ 7, Մէլէտ Կէլիրի՝ 10, Հին գեղ՝ 10, Քէլ Խալիլ՝

11·5, Չրգլըգ՝ 12, Փորղա՝ Վերի գիւղ՝ 8·5, Փորղա՝ Վարի գիւղ՝ 8, Ջեռնի՝ 9, Պիւկէզի՝ 9, Քիւրէն՝ 10, Սու չըրըգի՝ 7, Րափա՝ 7. Գուբագլար՝ 10, Փէրիէմչիկ՝ 8, Գոզլուգ վերի գիւղ՝ 5, Գոզլուգ Վարի՝ 5:

## 3· ՃՈՒՊԱՍ ԳԻՒՂԱԽՈՒՄԲԻ ԳԻՒՂԵՐԸ

Աքապէկ՝ *հեռաւորութիւն* 4, Իմամող՝ 4·5, Քէլիտիկ՝ 4·5, Ռուսքէմ ուշաղը՝ 5, Գուլուշաղը վերին՝ 5, Գուլուշաղը վարի՝ 5, Գըլմուհամմէտլի՝ 6, Մամուքան՝ 6, Շիշման՝ 6·5, Գարաքէփէ՝ 3, Մէյտանճըգ՝ 6, Հազգվէր–տի՝ 3·5, Զոլագլը զատէ՝ 2·5, Եարմճախան՝ 2·5, Գարաքէօյ՝ 2, Ենի քէօյ՝ 3, Քէօփէքսիզ քէօյ՝ 5, Պէքիչուչ՝ 5, Տիշերճի պիսի՝ 4, Քէշօլար՝ 3, Հաճի խալիլ օղլու Չիփթլիկի՝ 3, Ֆուրճըր՝ 3, Սէվսէրէկ՝ 5, Զոլագլը՝ 4, Իսպեն–տէրէ՝ 4, Թալապին՝ 6, Քեամին՝ 6, Ալխանուշաղը՝ 6, Բոլ ուշաղը (Խալի–ֆան)՝ 8, Կիւլիւմ ուշաղը՝ 10, Սէօֆիւտ (Մամրաֆ)՝ 4, Ալմալը (Մամրաֆ)՝ 4, Եափրագլը Բունար (Մամրաֆ)՝ 4, Պալըգլը տէրէ (Մամգատր)՝4:

## 4· ԽԶՈՂԼՈՒ[1] ԳԻՒՂԱԽՈՒՄԲԻ ԳԻՒՂԵՐԸ

Նարտիպան՝ *հեռաւորութիւն* 8, Կեվենիս՝ 8, Պահրի՝ 8, Փիրոք՝ 8, Ճափրլար՝ 8·5, Ջեֆան՝ 9, Պուքան՝ 10, Գոզլուգ՝ 10, Պաֆիրան՝ 9, Հանա–տայ՝ 12, Պուրուսքան՝ 11·5, Արապ ուշաղը՝ 11, Աղայէ ապուշ՝ 9, Տերե–քէօյ՝ 8, Քեսերիկ՝ 10, Մահմուտան՝ 9, Մասթիկան վերին՝ 8, Մաստիկան վարի՝ 7·5, Պենտ՝ 8, Տաոընպան՝ 8 Տաշան՝ 8, Զանազեր՝ 8, Խըլընկօ՝ 10, Գալա՝ 10, Գրզլան՝ 8, Կեաւուրան՝ 8, Տուտան՝ 8:[2]

***

*Սոյն չորս գիւղախումբերէն մէկին կամ միւսին վերաբերող ուրիշ հա-մանուն գիւղեր ալ կան 30—40-ի չափ, զորս նշանակել չենք ուզեր՝ անոնցմէ զատուած ըլլալնուն համար:*

*Այս գիւղերէն կեդրոնին եւ Ճուպասին վերաբերողները բոլորովին դաշ-տաբնակ են, Պալխանինը՝ լեռնաբնակ, իսկ Իզօղլիններըը կէսը դաշտային եւ կէսը լեռնային: Գիւղաբնակութեանց բոլորն ալ մահմետական են, եւ գրեթէ բոլորն ալ* Սիւննի*, միայն Պալխանցիներն ու Խաղօմացիները, Աթապէկցիներն*

---

*(1) Աւիշան Իգդլու անունով քրտական փոքր քաղաք մը կը յիշատակէ Մա-լաթիոյ հիւսիս արեւելեան կողմը, Եփրատի մօտ, մանաւորապէս Պալաա Սու վտա-կին աւելի մօտ:*

*(2) Այս եւ ուրիշ նիւթերու վրայ պիտի խօսինք ՔԵԱԽԹԱ գաւառին վերջերը: (Տ. Կարապետ Քհնյ. Պէննէեանի Ծանօթ.):*

եւ Իզոլուի Գողլուղցիներն Գզըլպաշ են, եւ բոլորն ալ քրտախօս։ Ասոնց կենցաղն ու տարազներն ալ կը տարբերին իրարմէ։ Դաշտաբնակներն առհասարակ երկրագործ են եւ կը հագուին քաղաքացւոց պէս երկար էնթարի, մինակ գլուխնին փոխանակ ֆէսի, ճերմակ քէչէ (=կուճ) կը դնեն եւ ոտքերնին կ'անցընեն մոյկի եւ կօշիկի տեղ դեղնագոյն տրեխ (չարըգ)։ Իսկ լեռնաբնակներն աւելի անասնաբուծութեամբ պարապելնուն՝ գարունէն մինչեւ աշուն վրաններու տակ կը մնան։ Այս վերջիններու մեծ մասին (այրերու ըսել կ'ուզեմ) գլխածածքը շատ հետաքրքրական է։

Դիտելի է որ 150 գիւղերու մէջ շատ քիչ էին հայաբնակները վերջին տարիներուն, մինչ պէտք էր որ Մալաթիոյ, ինչպէս քաղաքին, նոյնպէս շրջակայքին մէջ, Tavernier-ի վկայութեան համաձայն շատ ստուար թիւով Հայեր կը գտնուէին, այսինքն մէկ իսլամի դէմ 50 Հայ համեմատութեամբ։ Հետեւաբար հաւանօրէն այդ գիւղերը մեծ մասամբ երբեմն հայաբնակ, թրքական խժդուժ վարչութեան տակ վերածուած էին իսլամ գիւղերու։ Այս վայրագ աւարէն փրկուած կամ խուսափած էին կոտորակուած բնակչութիւնները մի քանի գիւղերու, անմիջական մերձակայ Մալաթիա քաղաքին։

Ամբողջ առաջնորդութեան ենթակայ միւս քաղաքներն ալ տարբեր պատկեր չեն ներկայացներ։ Պատմական հայկական փառաւոր քաղաքներ իրենց հայ բնակչութենէն զրկուած եւ անչքացած էին 1915-ի հայաջինջ աղէտէն շատ տարիներ առաջ, եւ շատ մը տեղերու մէջ արդէն աննշան թուով Հայեր մնացած էին, երբ թուրք բարբարոսութիւնը դարերու ընթացքին գործադրեց անճիման իր յամր փորձերը՝ մէկ հարուածով գլուխ հանել որոշելով Հայերը ջնջել Օսմանեան Կայսրութեան մէջ։

Այդ չարաղէտ թուականէն առաջ թէեւ չափազանց անչքացած եւ նուազած էր հայ տարրը Մալաթիոյ մէջ եւ շուրջը, նորէն վերջապէս թիւ մը կը ներկայացնէր եւ հայ առաջնորդութիւնը կը բաղկանար մօտաւորապէս մի քանի աննշան քաղաքներէ եւ շատ մը գիւղերէ, որոնց գումարը մօտաւորապէս 50-ի կը հասնէր։

Մալաթիոյ առաջնորդութեան ենթակայ այդ հայաբնակ վայրերը, թեմագլուխ Մալաթիոյ քովէն սկսելով կը ներկայացնեմ կարգով, մօտաւորէն դէպի հեռաւորը։

Այս կէս մը արուարձանի հանգամանք ունեցող վայրերը կը բաժնուին երկուքի։

Առաջինները, թիւով եօթը կը գտնուէին Մալաթիոյ քաղաքին արեւմըտեան կողմը, եւ կը կոչուէին․

1· Ատափի
2· Վարի Պաճազի
3· Պարդըզի
4· Թեսճտէ
5· Քիլէյիկ

6. Չըրմըգտի

7. Քիւստիւպէկ (Քիւնտիպէկ), որոնք ըստ Պէննէեան քհն.ի՝ օղակաւորուած էին Մեսիհի ջուրի ակին մօտերը եւ արուարձանները կը կազմէին քաղաքին:

Այս եօթը գիւղերը՝ կ'անուանուէին Պաղճէօյլու (այգեգիւղ) եւ անոնց բնակիչները Պաղճէօյլու, վասնզի գրեթէ ամբողջութեամբ երկրագործ, այգեգործ եւ պարտիզպան էին եւ գիւղացիի կեանք ունէին թէեւ քաղաքացի կը նկատուէին:

Իրենք ապրուստի ուրիշ միջոցներ չունէին եւ իրենց պարտէզներու եւ այգիներու բերքերով կ'ապրէին, բացի մի քանիներէն, որ նաճար եւ կտաւագործ էին:

Թէ՛ քաղաքը եւ թէ՛ արուարձանները, ինչպէս նաեւ Չըրմըղտի եւ Քիւնտիպէկի գիւղերը, բոլորովին ծառերով ծածկուած էին, այնպէս որ երբ օտար մը հեռուէն այդ արուարձանները դիտէր, ընդարձակ անտառ մը կը կարծէր եւ մինչեւ որ քաղաքի մէջտեղ չմտնէր՝ որեւէ շէնք կամ բնակչութիւն ըլլալն ու չըլլալը չէր տեսներ ու հասկնար (Հ., էջ 79):

Այդ կարծեցեալ անտառները պարտէզներ էին, խճողեալ քաղցրապտուղ ծառերով, բարտիներու եւ ուռենիներու հիասքանչ շարքերով:

Այդ պարտէզները իրենց բերքովն ու արդիւնքով հազարաւոր ոսկիներ կը կորզէին շրջակայ բոլոր քաղաքներէն ու գիւղերէն:

Այս պարտէզները Մալաթիոյ տնտեսական հիմը կը կազմէին:

Այս եօթը գիւղերէն ամենէն նշանաւորը, Ջրմուխտի=Ջրմոխտի=Ջըրմըխտի, կրնար նկատուիլ գիւղաքաղաք մը, որ, ինչպէս կը գրէ, ծագումով նոյն տեղացի Ռ. Միրաքեան (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 1, էջ 22) «իր արժանի տեղն ունի Մալաթիոյ պատմութեան մէջ»:

Երբեմն Ջրմուխտի զուտ հայաբնակ գիւղաքաղաք մըն էր, ուրկէ սակայն ԺԹ. դարուն առաջին կէսէն սկսեալ Հայերը հետզհետէ հեռացած են, իսկ 1895-ի ջարդէն ետք գրեթէ բոլորովին պարպուած:

Այս անունը հայկական ծագում ունենալ կը թուի: Ռ. Միրաքեան կը կարծէ թէ իր նախնական անունը եղած է Ջուր ուխտի, ջուրուխտ, որ աղաւաղուելով եղած է Ջրմխտի:

Թուրքերն ալ կը հաստատէին Չրմխտիի հայաբնակ ըլլալը: Անոնք կ'ըսէին որ «Ալլահը կեաւուրները պատժեր է ծովի երկու բլուրները անոնց վրայ փլցնելով»:

Արդեօք բնական աղէտ մը (երկրաշարժ) չէ՞ այս զրոյցին հիմքը, եւ Թուրքերը զայն վերածած չե՞ն մոլեռանդական հաւատալիքի «կեաւուր»ի մեղքերուն վերագրելով անոր կործանումը (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ.1, էջ 22):

Խաչատուր Վրդ. Տէր Ղազարեան իր տեղեկագրին մէջ այս վայրին համար, զոր ոմանք տարբեր կերպով ՋՐՄԽՏԻ ուղղագրած են եւ ստուգաբանած Ջերմ-Ուխտ, կը գրէ թէ «Մալաթիոյ արուարձանն է, 2 ժամ հեռի՝ արեւմը-

տեան կողմը: 1895-ին հոս կային 25-ի չափ հայ տուներ, որոնք 4—5 ամիսի չափ խալամացեալ վիճակի մէջ ապրելէ ետք Մայրենի Եկեղեցւոյ գիրկը վերադարձան եւ ամբողջապէս Մալաթիա փոխադրուեցան: Այժմ հոն կը մնայ Ս. Էջմիածին անուն եկեղեցին՝ քայքայուն վիճակի մը մէջ, որուն հրովարտակը կորսուած է եւ հիմնարկութեան թուականն ալ մեզի անծանօթ կը մընայ, առ ի չգոյէ արձանագրութեան եւ ներկայ վիճակը ողբալի է» (այխնքն 1902):

Ռ. Միրաքեան իրը զուարճալի անեկտոտ մը կը պատմէ իր հօրմէն լըսած սա պատմութիւնը թէ 1870-ական թուականներուն շրջիկ պատուելիներ կամ միսիոնարներ կու գային Չըմըշկածագ՝ Հայոց բողոքականութիւն քարոզելու համար: Կիրակի օր մը, պատուելի մը կու գայ իր մեծ-հօրը տունը եւ հոն կը գտնէ հարիւրի չափ Չըմխածագի Հայեր, որոնք հաւաքուեր էին տօնախըմբութեան մը առիթով: Պատուելին, կը սկսի բողոքականութիւն քարոզել, ապա աչքերը փակելով կ՚աղօթէ, որպէսզի Ամենակալ Տէրը այս ի ծնէ քրիստոնեայ ժողովուրդը բողոքականութեան փարախը առաջնորդէ:

Քարոզի եւ աղօթքի ժամանակ ոմանք ինքզինքնին լուրջ կը պահեն, բայց ուրիշներ զսպուած կը խնդան: Աճարոն անունով երիտասարդ մը այնքան կը խնդայ որ աչքերը կ՚արցունքոտին: Պատուելին աղօթքը լրացնելով, երբ աչքերը կը բանայ, կը տեսնէ Աճարոնին արցունքները, կ՚ըսէ. «Որդի՛, յուզուած ես, կու լաս ուրեմն փրկուած ես. առ այս սուրբ գիրքը, քեզի նուէր թող ըլլայ, եւ այս մէճիտիէն ալ հօրդ տուր իր պէտքերուն համար»:

*
* *

Գալով գիւղերու երկրորդ խումբին, որ միայն երկու հայաբնակ վայրեր ունէր, կը գտնուէր Մալաթիոյ արեւելեան կողմը:

Այդ երկու վայրերն էին.—

## 1. ՕՐՏՈՒԶԻ ԿԱՄ ՀՈՐՏԷՕԶ

Այս գիւղը կը գտնուէր դէպի հին քաղաք տանող ճամբու վրայ Ասլան Թեփէի ստորոտը:

Սրուանձտեանց այս գեղին համար կ՚ըսէ թէ «բազմաբնակ է եւ դրախտի պէս զուարճալի՝ ծառերով եւ ջրերով: Բնակիչք թուրք են եւ քիչ մ՚ալ Հայք: Գրեթէ քաղաքի արուարձան կը սեպուի» (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, էջ 315):

Թէեւ Ժ.Թ. դարուն եւ թերեւս աւելի առաջ Օրտուզի, ինչպէս կ՚երեւի, յոյն բնակիչ չունէր բնաւ, սակայն հին ատեն այս վայրը Յոյներով բնակուած պէտք է ըլլայ, եւ եղած է հին բնակավայր մը կամ կայան մը, գուցէ Մելիտինէի չափ հին:

Ըստ Խաչատուր Վրդ. Տէր Ղազարեանի Օրտուզի «Մալաթիոյ արուար–

ճանճերէն է, որ քաղաքէս մէկ ժամ հեռի է դէպի հիւսիս-արեւելք։ Հոս կային 1895-ին 40-ի[1] չափ Հայ տուներ, որոնք Ս. Փրկչայ վանքից մէջ ունէին իրենց յատուկ մանչերու դպրոց մը։ Յիշեալ թուին Օրտուղի ազգայնոց շատերը մեռան[2] եւ տուներնին փակ մնաց, ոմանք ալ փոխադրուեցան քաղաք, ուր այժմ կան 4 հայ տուներ։

*Օրտուղի պատմական վայր մը եւ կարեւոր անցեալ ունեցող տեղ մը ըլլալ կը թուի։ Գերպ. Անդրէաս Վրդ. Աղեքսանդրեան իր ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ գործին մէջ (էջ 401) կու տայ հետեւեալ պատմական տեղեկութիւնները.—*

«ՕՐՏՈՒՂ կամ ՀՈՐՏԷՕՂ բարբարիկ անուն նշանակիչ մը ունի Ատաուաս անուան հետ, որ կը նշանակուի Անտոնինոս կայսեր ուղեգրին մէջ Մելիտինէի մօտերը։ Ատեն մը Հորտէօզ կամ Ատրասի կամ Օրտուղի մէջ կը բնակին եղեր ի մասնաւորի յոյն բնտանիքներ եւ կայ եղեր հոն եկեղեցի մը քառասուն Մանկանց, որ շատ պատուուած էր այն կողմերը, բայց վրան նշանակուած արձանագրութիւնը չի հաստատեր այս աւանդութիւնը։ Ս. Եւդոքս, որ Մելիտեան Լէգէոնին չի պատկանիր եւ իր նշխարքները գտնուեցան 966-ին Սողոմոն Մետրոպոլիտին ջանքերով (որ կը պակսի մեր ցուցակին մէջ, ուր 250 տարուան բաց մը կայ եւ կրնայ ըլլալ որ Սողոմոն նախորդն է Թէոդորոս Բ.-ի)։ Եւդոքս կը պատկանէր ուրիշ Լէգէոնի մը եւ մարտիրոս եղած է Մաքսիմիանոսի եւ Դեկոսի ժամանակ. իրեն հետ էր նաեւ կայսեր սենեկապանը Ռամուշ, զոր ինքն Եւդոքս դարձուց քրիստոնէութեան 6 Սեպտեմբեր 252-ի Մաքսիմիանոսի կայսրութեան ատեն»։

*Արդի քաղաքէն քառորդ մղոն միայն հեռու այս գիւղին մէջ կը գտնուէր եկեղեցի մը, որ շատ յարգուած էր, վասնզի ըստ աւանդութեան՝ հոն պահուած էին 40 նահատակներու աճիւնները։ Մինչ իրականութիւնը այն է որ այդ եկեղեցին կառուցուած չէր քառասուն նահատակներուն, այլ նահատակի մը անունով, որ հաւանական չէր որ այդ քառասունէն եղած ըլլար։*

*Այս աւանդութիւնը ծնունդ առած էր այն պատմութենէն, որուն համաձայն Մարկոս Աւրելիոս կայսեր (161—180) 174-ին, երբ պաշարուած էր Դանուբի վրայ, «Մելիտինէ կոչուած Լէգէոնը, որ բոլոր քրիստոնեաներէ կը բաղկանար, ստացաւ աստուածային շնորհ մը։*

*Այդ զինուորականներու աղօթքովը տեղացող փրկարար անձրեւի շնորհիւ իր թշնամիները ջախջախեց չանթերով ըստ քրիստոնեայ ջատագով Ապողինարիոսի* (Paul Allard, **La Persécution de Diocletien**, *էջ* 307, *Բ.* *ՋԱՏԱԳՈՎ, էջ 307. ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 245—6, Եւսեբիոս Ե. գիրք, Կայսր Տերտուղիանոս*)։ *Լէգէոնը ա–ռնոս, ՀՌՈՄԷԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, ԾԵ. 23, Տերտուղիանոս*)։

---

*(1) Ըստ Գերպ. Աղեքսանդրեանի՝ Օրտուղի Հայերը 50 տուն էին (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 401)։*

*(2) 1895-ի ջարդին սպաննուած են։ Տէր Ղազարեան վարդապետ զգուշացած է ջարդ բառը գործածել իր տեղեկագրին մէջ, վախնալով որ կրնայ վտանգուիլ։*

ռաւ Շանթաձիգ մակդիրը։

Այս գունդը, որ կը կոչուէր «Շանթահարաց» կամ «Շանթաձիգ» ԺԲ. Լեգէոն (թերեւս աւելի ճիշդը «Շանթահարեալ»), կեդրոն ունէր Մելիտինէն, եւ «զօրականներու մեծամասնութիւնը Փոքր Հայքէն էին» (ԴԻՈՆ ԴԱԻՈՍ, ԿԱ.)։

Դար մը ետք Դեկոսի ատեն, 258-ին կամ 259-ին, այս գունդէն ազնուական հայազգի հարիւրապետ մը՝ Ս. Պողիկտոս՝ նահատակուած է (ԲԱԶՄԱՎԷՊ, 1928, էջ 99—100, Ալիշան, ՅՈՒՇԻԿՔ, Թ. 239, Մկրտիչ եպս. Աղաւնունի, ՀԱՅԿ. ՀԻՆ ՎԱՆՔԵՐ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՆԵՐ, էջ 131—3, Թորգոմ Պատր. Գուշակեան, Corneille- -ի «ՊՕՂԻԿՏՈՍ ՀԱՅ ՎԿԱՅ» ողբերգութեան թարգմանութիւնը, Երուսաղէմ, 1935, «Նախաբան նօթ մը» ներածական հատուածը)։ Պօղիկտոս տեսած էր Մելիտինէի հռոմէական կուսակալ Փելիքսը եւ փոխանակ քրիստոնեաները հալածելու Դեկոս կայսեր հրամանը գործադրելու՝ ինքը քրիստոնէութիւնը ընդունեցաւ եւ այդ պատճառով նահատակուեցաւ (Ծոցիկեան, ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ, էջ 376)։

Այս լեգէոնէն իբր թէ 40 զինուորներ մարտիրոսացած էին եւ իբր թէ անոնց համար շինուած էր Օրտուզիի մէջ եկեղեցի մը, որուն տեղը իսկ յայտնի չէ հիմա։

Սակայն Charles Texier կը հաստատէ թէ տեսած է այդ յիշատակարանը, մատուռը եւ կարդացած էր անոր արձանագրութիւնը եկեղեցիին դրան վրայ։ Անիկա չէր հաստատեր աւանդութիւնը։

Հոն կը կարդացուէր.

«6475 տարւոյն առաջին ինդիկտիոնի (Քր. 966) Մայիսին, գտնուած են աճիւնները Ս. Եւդոքսի։ Իր եկեղեցին վերանորոգուած է Սողոմոն Միտրոպոլիտին խնամով»։

Ասկէ կը հասկցուի որ եկեղեցին նուիրած էր Ս. Եւդոքսիի, որ չէր պատկաներ այս հռչակաւոր Լեգէոնին։ Եւդոքսին նահատակուած է Ս. Հռոմուլոսի հետ, որ նոյնպէս Մալաթիոյ մէջ կատարուած հաւատոյ նահատակ մըն էր։

Եւդոքսին պետն էր Հռոմէական Լեգէոնին՝ Trajan Dace -ի կայսրութեան ատեն։ Ղրկուած էր Գաղղիա եւ բռնադատուած էր երկրպագելու կուռքերուն, ինչ որ մերժած էր իր բոլոր զինուորներուն հետ, որոնք իրեն պէս քրիստոնեայ էին։

Կը ղրկուի Մելիտինէ, ուր կը համոզէ Հռոմուլոսը, որ սենեկապետն էր կայսեր։

Մաքսիմիանոս կայսր հռչակուած ըլլալով, հրամայեց բոլոր դեր-հիւպատոսներուն՝ սպաննել Քրիստոնեաները, որոնք կը մերժէին պաշտել կուռքերը։

Եւդոքսի յամառելով հաւատարիմ մնալ իր հաւատքին, գլխատուեցաւ տանջանքներու ենթարկուելէն վերջ (6 Սեպտ. 252-ին)։

Միայն այս Եւդոքսի նահատակին նուիրուած եկեղեցիին արձանագրութիւնը եւ Եւդոքսիի նշխարաց գիւտը 966-ին ցոյց կու տայ թէ Օրտուզիի հռոմէական-բիւզանդական շրջանին օրթոտոքս կարեւոր կեդրոն մըն էր եւ թերեւս մեծ կրօնական կայան մը, տարբեր վերջին դարերու անշուք վիճակէն։

## 2· ՀԻՆ ՄԵԼԻՏԻՆԷ ԿԱՄ ԷՍԿԻ ՇԵՀԻՐ

Նոր Մալաթիայէն դէպի հիւսիս երկու ժամ հեռու՝ կը գտնուէր հին քաղաքին աւերակոյտը· պատմական Հին Մելիտինէ հոն էր։ Թուրքերը Էսկի Շեհիր կամ Էսկի Մալաթիա կը կոչէին այդ աւերակները, իսկ Մալաթիոյ Հայերը՝ Վարի քաղաք։

Այս աւերակները, որոնց նկարագրութիւնը վերը գրուած է, մնացորդներն են պատմական Մելիտինէ քաղաքին, որ մինչեւ 1838 գոյութիւն ունեցած է։

Անոր պատմութիւնը արդէն ծանօթ է ընթերցողին, հետեւաբար իր պատմութեան մասին աւելցնելիք բան մը չկայ։

Խաչատուր Վրդ· Տէր Ղազարեան իր տեղեկագիրին մէջ կը գրէ·

«ՀԻՆ ՄԵԼԻՏԻՆԷ·— Նոր քաղաքին արուարձանն է· կը գտնուի Մալաթիայէն 2 ժամ հեռու դէպի հիւսիս-արեւելք։ 1895-ին հոս կային 35-ի չափ հայ տուներ, նոյնպէս ալ Ս· Ստեփաննոս անուն եկեղեցի մը՝ 16-ի չափ երկյարկ սենեակներով եւ դպրոց մը։ 1895-էն ետք, Հին Մելիտինէի հայոց մեծ մասը մեռան[1]· մնանք Մալաթիա փոխադրուեցան եւ այժմ (1902) հոն կը գտնուին 5 հայ տուներ միայն։ Ս· Ստեփաննոս եկեղեցիին ալ միայն շէնքը կանգուն կը մնայ, որուն հիմնարկութիւնը կը կարծուի ըլլալ Քրիստոսի 800 թուին։

Այժմ հոս ժամերգութիւն չի կատարուիր եւ եթէ այս վիճակին մէջ թողուի, եկեղեցւոյ այդ շէնքն ալ ի մօտոյ կը քայքայուի, ինչ որ մեծ վնաս առաջ կը բերէ»։

Զարմանալի է որ Գերպ· Անդրէաս Վրդ· Աղեքսանդրեան՝ Պէննէեան քհն·ի գրած տեղագրութենէն դոնէ մօտ տասը տարի առաջ հրատարակած իր ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ գիրքին մէջ (էջ 402) կը հաւաստէ թէ Հին Մալաթիա կը բնակէին Հայեր եւ Թուրքեր խառն եւ Հայոց թիւը 200 տուն էր, ինչ որ չափազանց կասկածելի տեղեկութիւն մը կը թուի ըլլալ։

*
**

Հին Մալաթիայէն կէս ժամ դէպի հիւսիս է Ճարճաբիկ ըսուած տեղը (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 402) առանց ուէէ ծանօթութեան, սակայն

(1) Իմացիր՝ ջարդուեցան։

անունը Հայկական կը թուի, եւ թերեւս չարաթացեալ գիւղի մը տեղն է:

Հին Մելիտինէ մինչեւ Մելաս գետը (Թօղմա Սու) կը տարածուի դաշտավայր մը, որ կը կոչուի Եազըլը խան եւ ուրկէ կ'անցնի դէպի Սեբաստիատանող պողոտան՝ Գըրք Կէօզ կամուրջին ճամբով:

## Բ. ԱՂՃԱ ՏԱՂ ԳԱՒԱՌԸ

Մալաթիոյ կեդրոնական գաւառէն անցնելով դէպի կուսակալութեան միւս գաւառները, առաջին գաւառը կը ներկայանայ Աղճա Տաղը, որուն գըլխաւոր կեդրոնն է Արղա կամ Արկա ընդմէջ Տիվրիկի, Տարենտէի եւ Մալաթիոյ: Արկա Մալաթիայէն դէպի Մարաշ եւ մասամբ ալ Սեբաստիա երկարող Մալաթիոյ կուսակալութեան բաւական ընդարձակ մէկ գաւառն է: Գաւառը Թուրք պետութիւնը կը կոչէ Աղչէ–Տաղ կամ Աղճա–Տաղ:

Այս գաւառին վրայ Հողելոյս Տ. Կարապետ քհն. Պէննէեանը իր ընդարձակ ձեռագիրին մէջ ունի բաւական ընդարձակ եւ սպառիչ տեղեկութիւններ:

Իմ կարծիքովս անիկա շատ մօտէն ճանչցած է այս գաւառը եւ լաւ ուսումնասիրած: Հետեւաբար այս բաւական լիակատար տեղեկութիւնները կը ներկայացնեմ նոյնութեամբ.—

«Աս գաւառակին կեդրոնը Արղա (Արկա) աւանն է, որ Մալաթիայէն դէպի արեւմուտք 8 ժամ հեռաւորութեամբ[1] Տաւրոսէն՝ հարաւէն–հիւսիս ձըգուած համանուն շղթային՝ քաղաքին հանդիպակաց կողմի ստորոտը բլրակի մը վրայ շինուած է: Արղայի բնակչութիւնը կը բաղկանայ 200 տունի չափ Թուրքերէ[2]: Հոս շինուած է կառավարական պաշտօնատուն մը իր հեռագրատունով եւ բոլոր շրջանակներով: Ունի մէկ մեծ եւ 2—3 հատ մզկիթ, մէկերկու նախնական վարժարան եւ երկյարկ ու փառաւոր զօրանոց մը:

Արղա՝ հին եւ պատմական «Արքա» քաղաքն է[3], որ ներկայիս գետնէ հաւասար եղած է: Արղի Արկայի մէջը թէ շուրջը, ո՛ւր որ ալ փորես կամ պեղես, պիտի գտնես հին շէնքերու հիմքն ու մնացորդը, որոնց մէջէն հողամաններ, արձաններ, երկաթէ գործիքներ, ոսկրեղէնէ իրեր եւն. կը գտնուին: Ասկէց 15—16 տարի առաջ կեդրոնի շուկային զօրանոց տանող ճամբան շինելու ատեն մէկէն ծակ մը կը բացուի եւ հողը կ'իջնէ վար, կառավարութիւնը հողը դուրս հանել ու մաքրել կու տայ եւ ահա 15 մեթր լայն եւ 20 մեթրի

---

(1) Ըստ Գերպ. Անդրէաս Վրդ. Ալեքսանդրեանի (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 392) այս հեռաւորութիւնը 2 ժամ է:

(2) Միայն 15-20 տուն Հայեր կային 1910ին Արկայի մէջ (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 392):

(3) Ըստ Գերպ. Ալեքսանդրեանի (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 392) հին ատեն եպիսկոպոսական աթոռ էր Մելիտինէի Մետրոպոլտութեան ներքեւ:

չափ երկայնութեամբ հին եկեղեցւոյ մը գետինը կը պարզուի, որուն կամարի սիւները սահելով իրենց պատուանդանին վրայէն այս ու այն կողմ պառկած են իբրեւ մեռեալներ: Այս սիւներուն երկայնութիւնը 5·5—6 մեթր է, հաստութիւնը հազիւ մէկ ու կէս գիրկ: Շէնքին յատակը համակ գոյնզգոյն կրանիթէ մանրիկ կտորներով գեղանկարուած է սիրամարգի եւ այլ թռչուններու եւ ծաղիկներու պատկերներով: Մէջէն հանուած կարեւոր քարերն ու հնութիւնները կառավարութիւնը առած է»:

Գէորգ Արքեպ. Ասլանեան, երբեմնի առաջնորդ Մալաթիոյ, որ գրաղած է գաւառին վաղեմի յիշատակարաններով, Ակրայի հնութիւններով ալ հետաքրքրուած է. անիկա կը գրէ թէ.

«Արկատիոս յոյն կայսեր անունով Արկադի (այժմ Արղա) կը կոչուի սոյն քաղաքը: Արկադիոսի տիրապետութենէն կամ թագաւորութենէն առաջ ալ նշանաւոր եղած է դիրքով, տարածութեամբ, իշխանութեամբ. եւ արդէն իր հնութիւնները, արուեստի եւ ճարտարապետութեան գլուխ գործոցներով, գլխաւոր փաստերն են իր կարեւորութեանը եւ մեծութեանը:

Գերեզմանատեղիքը, որոնք 9 կարգ ու չարք այնչափ ուղիղ չարքերով եւ համաչափ կերտուածքով եւ ամէնը քար բլրակի մը վրայ թողուած, յայտարարուած են որ ինքնին դուրս կը բերեն արհեստագէտի գործ ըլլալը եւ ամէն մէկ դամբարան ունի փոքրիկ մէյմէկ դռնակ, ու դեռ կը մնան անաւեր ու վերյիշեցնող հին անցեալը իր մեծութիւններով:

Պալատը իշխանական — որուն աւերակները կան եւ ատով դուրս կու գայ թէ հոյակապ վեհափառութեան մը նշխարքն ու նշմարքն են, երբ այնքան տգիտաբար, յարգը երբեք չգիտցող ձեռներ քարեր ու սիւներ մարմար ու կրանիթ քանդեր են ու տարեր են ձիերու ախոռ շինելու...» (ԲԱԶՄԱՎԷՊ, 1936, էջ 40):

Արղան կամ Աղճա Տաղ գաւառակը գլխաւոր երկու, եւ վարչական 5 մասերու (գիւղախմբերու) կը բաժնուի: Գլխաւոր բաժանմանց կ'ըսուի «Քիւրտէ-Քիւրմենիւկ», իսկ վարչականը՝ Բոլատ, Քիւրեճիւկ, Լեւենդ, Կելենկէճ եւ Հաքիմ-խան, որոնք կը բաղկանան 150—160 գիւղերէ: Աս գաւառակի եւ ստորաբաժանմանց բնակչութիւնը բոլորովին Քիւրտ եւ Աշիրէթ կը համարուին: Քէօրեճիկցիները համակ Ալէվի, իսկ Քիւրնեցիները Շաֆիէի են:

Աղճատաղցիներն կանուխէն քաջ, բայց ապստամբ ճանչցուած էին: Այնպէս որ ԺԹ. դարուն սկիզբէն մինչեւ հիմա քանիցս կառավարութեան կողմէն զարնուած եւ նուաճուած են: Բայց հիմա (1912) հլու եւ հանդարտ իրենց գործերովը կը զբաղին, որուն հետ մէկտեղ իրենց անունն ու ազդեցութիւնը մեծ է շրջակայ ուրիշ ցեղերու վրայ: Շատ անգամ դաւանութեամբ տարբեր, այլ անուամբ եւ համբաւով նոյն Աղճատաղցին տարիներով կռուած եւ աւերներ գործած է երկրին եւ իրարու հետ:

Ապստամբութեան ժամանակ իրենց գլխաւոր ապաստանարանն է եղած Շուղուլ ըսուած այն նեղ եւ անառիկ վայրը, որ կը բաղկանայ 1000—1200

հատ քարափոր արհեստական վայրերէ եւ 10—15 տուներէ: Աս հնութեանց որոնցմէ՝ եւ ո՛ր դարուն գործ ըլլալը չէ գիտցուիր: Նոյնչափ եւ ալ աւելի ուշագրաւ եւ հետաքրքրական է Շուղուլի հարաւակողմը գտնուող այն բնական վայրը, որուն ամէն կողմը շուրջանակի կտրուկ եւ բարձունքը ցցուող ժայռերու բարձրութիւնը 100 մեթրէն աւելի եւ մէջն ալ 150—200 արտավար հարթ գետնի մը վրայէն բաւական առատութեամբ ջուր մը կ'ելլէ եւ կը թափի Մելու գետի մէջ:

Արղայի արեւմուտքը 10—12 վայրկեան հեռաւորութեամբ Գարաքաշի մէջ, հոս ու հոն, 10 հատի չափ մէկուկէս մեթր բարձրութեամբ, լայնութեամբ եւ երկայնութեամբ հաւասար քարափոր խցիկներ կան եւ ասոնց շուրջըն ալ սալէ կափարիչներով փակեալ 25—30 հին գերեզմաններ կը գտնուին:

Դարձեալ Արղայի արեւմուտքը անտառակներու մէջ Ռուբինեանց օրերէն մնացած քարափոր վանքի մը կամ եկեղեցւոյ մը կիսակործան շէնքը ոչխարներու գոմի վերածուած է, որ ծանօթ է «Խումար աղըղը» անուամբ, որուն տակէն կը բխի վճիտ ու սառնորակ ջուր մը:

Այսպիսի քարափոր խցիկներ ու այրեր շատ կը գտնուին գաւառակին ամէն կողմը եւ ամէն քայլափոխի, ինչպէս Աճսուրի, Սարաճըքի, Քեփեզի եւլն.ի մէջ:

Ինչպէս յայտնի է, Աղճատաղ գաւառակը քաղաք չունի: Մինակ գիւղախումբերու կեդրոն եղող գիւղերուն եւ գաւառակեդրոնին մէջ կը գտնուին խանութներ եւն.: Օրինակ Արղայի մէջ պաշտօնական հաստատութիւններէն դուրս կը գտնուին 40—50 խանութով պզտիկ շուկայ մը, 3 խան, 4 սրճարան եւ 40—50 երկյարկ եւ փառաւոր տուներ պաշտօնէութեանց յատուկ:

Հաքիմխանի մէջ կը գտնուին 500 տուն, 100 խանութ, 5 խան եւ մօտէն հոսող Գուրու չայ վտակին վրայ 10 ջաղաց, կառավարական պաշտօնատուն, 1 հեռագրատուն, 1 Բուշտիյէ եւ 3 նախակրթարան, եւ Թաշ-խան անունով ծանօթ 20—30 քարուկիր սենեակներով ընդարձակ պանդոկ մը եւ բաղնիք, 2 եկեղեցի եւն.: Հաքիմ խանէն 2 ժամ հեռաւորութեամբ Քեսիկ Քէօփրիւի մօտը քարուկիր խանի մը եւ «պետեսթէն»ի մը աւերակները տեսնուելուն պէս՝ Պուտագըը եւ Ճեգիւն կիւտ անուանեալ գիւղերու մէջ մէյմէկ աշտարակներու աւերակները կը կենան: Նոյնպէս մէկուկէս ժամ դուրս Շահ-Ասլանի հրամանատարներէն Գըլըճ Ասլանի[1] կողմէն շինուած քարուկիր պանդոկը եւ Կերմանէի մէջ ալ քարուկիր շէնքեր ու աշտարակներու աւերակներ, եւ որոնց մէջէն լատին գրերով արձանագրութիւններ կը տեսնուին:

Հաքիմխանէն մէկ ժամ[2] հեռու կը գտնուի Ճիւգիւճկիւտ, որ 8—9 թա-

---

(1) Պէտնէեան քնն. շփոթութեան մէջ է: Շահ-Ասլան մինչեւ Մալաթիա չէ արշաւած: Գըլըճ-Ասլան Սելճուկ Ռումի այն սուլթանն է, որ Մալաթիան գրաւած է, ինչպէս տեսնուեցաւ վերը:

(2) Ըստ Գերպ Ալեքսանդրեանի՝ ԵՐԿՈՒ ԺԱՄ (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 392): Լեռնադաշտ մը, օդն ու ջուրը լաւ եւ առատ ու տեղը շատ զուարճալի (նոյն):

*գերու բաժնուելով՝ այսօր ունի 500 տուն բնակիչ: Այս աւանը գեղեցիկ պարտէզներով եւ այգիներով օժտուած՝ ամէն կողմը ունի հոսուն եւ վճիտ ջուրեր: Այս տեղի աւերակներն ու հնութիւնները կ'ապացուցանեն թէ ի հնումն մեծ քաղաք մըն էր: Հիմա Հաքիմխանցիներու ամառանոց կը սեպուի:*

*Հաքիմխան, ինչպէս ըսինք, Աղճատաղի* Նահիէներէն *կարեւորագոյնն է եւ կը գտնուի Մալաթիայէն Սըվազ տանող ճամբուն երկրորդ իջեւանը եղող լեռնապատ ձորի մը մէջ: Հոս փակագիծի մէջ ըսեմ որ* Հաքիմխանի *մասին Հ. Ղուկաս Վրդ. Ինճիճեան (ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ ՉՈՐԵՑ ՄԱՍԱՆՑ ԱՇԽԱՐՀԻ, Ա., Ասիա, հտ. Ա., 1806, Վենետիկ, էջ 323) կը գրէ.* «Գիւղ ապստամբ որ անկանի ի հիւսիսակողմն Հասէն Փատրիգի[1]. բնակիչք նորա Քուրդք, Թուրքմանք եւ իբրեւ 30 տուն Հայոց շինեաց զսա Սուլթան Ալայետտին, այլ ապա Հեքիմ անուն ոմն նորոգելով, յանուն նորա կոչեցաւ Հեքիմ խան, որ բերէ դիւրութիւն մեծ ճանապարհորդաց. քանզի յայն կողմանս չիք ինչ գիւղ»: *Հոս կայ 50—60 տուն Հայ ալ, որոնք մեծաւ մասամբ արհեստաւորներ են: Եւ հոս գաղթած են աւելի 200—250 տարի առաջ Երզնկայէն, Մուշովկայէն, Անսուրէն եւ ուրիշ տեղերէ: Միեւնոյն ատեն մնայուն գիրք չունենալով՝ մէկ կողմէն կը գաղթեն Մալաթիա, Սըվազ, Կիւրին եւն.: Եկեղեցի մը ունին, որ շինած են 1870-ական թիւերուն, եւ է փայտաշէն ու կոկիկ: Եկեղեցւոյն մօտն են իրենց գերեզմանատուներն ու տուները: Հայոց տուները ամբողջ մէկ թաղի մէջ կը գտնուին, ունեցած են իրենց մէջէն քահանաներ: Ներկայիս (1912) մէկ քահանայ (Տ. Աւետիս) ունին:*

*Դպրոցը կը վարէր իրենց քահանան, ժամանակ մը «Միացեալ»ի կողմէն կը հոգացուէր դպրոցը: Ասոնք դպրոց ալ չեն կրնար պահել, որովհետեւ տարւոյն մինակ չորս ամիսը (ձմեռը) գիւղին մէջ գտնուելով՝ գարունը կը փոխադրուին Ճիւլինկիւր եւ Գարա Մաղարա ամառանոցները՝ ամէն մէկը մէյմէկ տեղ ցիր ու ցան:*

*1895-ի տագնապի օրերուն Հաքիմխանի Հայերը ամբողջութեամբ ընդունեցան իսլամութիւնը, եւ երբ* «Գօրգու Մուսլիմանի»*ներուն իրենց մայրենի կրօնքին վերադառնալու համիտեան իրաւէն ելաւ, Մալաթիոյ կաթոլիկ եկեղեցին երթալով իր պաշտպանութեան տակ առաւ ժամանակ մը, յետոյ հոն գտնուող կաթոլիկ քահանայէն գանգատելով՝ Հայ քահանայ մը գնաց եւ եկեղեցին առնելով կաթոլիկներու ձեռքէն դպրոց մըն ալ բացաւ ու սկսաւ քահանայագործել: Հիմա ժողովրդեան 2—3ը հայ եւ մնացածը կաթոլիկ են, եւ այս վերջիններու համար ալ հոն կը մնայ վարդապետ-քահանայ մը: Հոս աւելորդ չեմ համարիր Խաչատուր Ծ. Վրդ. Տէր Ղազարեանի 1902-ին կազմած տեղեկագիրէն Հաքիմխանի մասին տուած տեղեկութիւնները ներկայացնել.—*

*«ՀԱՔԻՄԽԱՆ.— Կը վերաբերի Ագչէտաղի գայմագամութեան[2], Մալա-*

---

(1) *Այն ատեն 70 տուն տեղեկագրած է:*

(2) *Մենատիրութեան մը կեդրոն:*

*Թիայէն* 14 *ժամ հեռու*[1]: *Հոս կան* 70 *տուն Հայեր եւ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուն քարաշէն եւ տատասպը սինով ծածկուած եկեղեցի մը, որ հիմնուած է* 1865—66-*ին ստացուած հրովարտակով, որ վերջերս կորսուած է: Սոյն գիւղացիք* 1895-*ին ունէին իրենց յատուկ վարժարանը եւ* 2 *քահանաներ, որոնց մին մեռած է* 1895-*ին եւ վերջինն ալ Տարենտէ փոխադրուած:*

*Գերպ. Անդրէաս Վրդ. Ալեքսանդրեան, որ տարիներ առաջ հրատարակած է իր ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ գիրքը, Հեքիմխանը կը ներկայացնէ մեծկակ գիւղ մը, ուր կը բնակէին* 70—80 *կամ թերեւս* 100 *տուն Հայեր, կէսէն քիչ պակաս՝ կաթոլիկ:*

*Երկու համայնքներն ալ ունէին իրենց եկեղեցիները (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ* 393): *Հայադաւաններուն եկեղեցին յանուն Ս. Աստուածածնի կառուցուած էր (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Բ., էջ* 319):

*Ի. դարուն սկիզբները Հեքիմխանի Հայ-Կաթոլիկները կը գրաւեն Հայոց եկեղեցին, որ Պատրիարքարանի բողոքներուն վրայ* 1908-*ի սկիզբները կը դարձուի Հայադաւաններուն եւ Հայ-Կաթոլիկներու թիւը* 50 *տունէն* 3—4 *տունի կ'իջնէ* (12 *Ապրիլ* 1908 *թուականով Պատրիարքարան յղուած նամակ*):

*Հեքիմ Նահիէյին մէջ էր նաեւ* Հասան Չէլէպի *գիւղը, որ* 3—4 *ժամ հեռու էր Նահիէին կեդրոնէն, եւ ունէր* 25—30 *տուն Հայ, որոնց մէկ-երրորդը կաթոլիկ (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ* 395):

*Այս գիւղէն քանի մը ժամ հեռու է* Հասան Պատրիկ խանն (*Մալաթիոյ հիւսիսը*), *որուն քովն է մեծ կամուրջը Մելասի վրայ, Գըրք Կէօզ կոչուած: Վասիլ կայսեր ատեն փոքր քաղաք մըն էր եւ կը կոչուէր* Սեբոր *կամ* Պատրիկէ, *իսկ յետոյ մնացած էր կիսաւեր խան մը եւ քովը փոքր գիւղ մը: Ինճիճեան (Նոյն, էջ* 322) *այս վայրը կը յիշէ* «առ ստորոտով լերին, յորմէ բղխէ Թուխմա գետակն, անցանելով յայս առուն, անկանի առ ի հիւսիսակողմն Մալաթիոյ յարեւմուտն Եփրատայ միով օթեւանաւ հեռի ի նմանէ ի մէջ երկոցունց է կապուած, ունի մզկիթ վայելչակերտ եւ իջեւան»: *Նահիէի բոլոր միւս գիւղերը մահմետական են (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ* 393 *եւ Ալիշան, ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ*):

*Ադճատաղ գաւառակի ստորաբաժանումներէն, Քիւրնէի մէջ ալ երկու գիւղեր կան, որ հայաբնակ են: Ա՛ս գիւղերն են* Մուշովկայ *եւ* Անսուր:

*Մուշովկայ*[2] Քիւրնէի Կելենկէն *նահիէին արեւելեան կողմը խորաձորի մը մէջ շինուած է եւ ունի* 50 *տունի չափ հայ բնակչութիւն: Այս տեղի Հայե–*

---

(1) *Ըստ Գերպ. Ալեքսանդրեանի 2 ժամ (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 392), լեռնադաշտ մը, օդն ու ջուրը լաւ եւ առատ, եւ տեղը շատ զուարճալի (Նոյն):*

(2) *Մուշովկայ հին քաղաքի մը մնացորդն ըլլալը յայտնի է, հնութիւններէն եւ աւերակներէն: Բնակիչները Մուշէն գաղթած ըլլալով՝ երբ հոն կու գան բազմութեամբ, բնիկները կը հարցնեն նորեկներուն, թէ «Մուշ ո՞վ կայ. ալ մարդ մնա՞ց»: Բայց ասոր աւելի կը յարմարի ըսել «Մուշովկայ», որովհետեւ այդ խորաձորը միշտ մշուշապատ է գրեթէ:*

րը հաստակազմ եւ առողջ են եւ կը պարապին երկրագործութեամբ։ Իրենց հին եկեղեցին որո՛ւն եւ ո՛ր դարու գործ ըլլալը չի գիտցուիր՝ աւերակ եւ անճանաչելի ըլլալուն համար։ Վերջին տարիներս Մալաթիացիներու օգնութեամբ պզտիկ եկեղեցի մը շինած են։ Ներկայիս ունին Տ. Յակոբ անուն քահանայ մը։ Տ. Յակոբի նախորդ երկու քահանաները նահատակուած են 95-ի դէպքին 20—30 ժողովուրդի հետ։ Այս դէպքի պարագային գիւղացիք կանուխէն ամբողջութեամբ ապաստանած են գիւղին վերեւ գտնուած քարայրին մէջ եւ մէկ քանի օր դիմադրած են շրջանակ քիւրտ խուժանին։ Սակայն դուրսը գտնուող մարդիկը սպաննուած են, եւ ստացուածքնին կողոպտուած ու թալլուած է բոլորովին։ Իսկ քարայրին մէջինները գիշերանց փախչելով ատկէց գնացած ու ապաստանած են Էնկիզէֆ գիւղը, որուն գիւղապետը՝ Ջագօ, օրերով պահած, կերակրած ու ազատած է զիրենք։

Մուշովկացիները հիմակ (1912) ալ դպրոց չունին։ Երբեմն ասոնք ալ դպրոցի պէս բան մը ունէին, որ կը վարուէր Մալաթիայէն ղրկուած մանկավարժուհիներու կողմէն։ Գարեգին եպս. Սրուանձտեանց իր 1878-ին Մալաթիա այցելութեան առթիւ (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա., էջ 321) կը յիշատակէ այս գիւղը Անսուրի հետ, որ տակաւին Աղճատաղի մէջ հայաբնակ եւ հայանուն կը մնային։

Իսկ Խաչատուր Ծ. Վրդ. Տէր Ղազարեան իր 1902-ի տեղեկագիրի մէջ ինքն ալ Մուշովկայի վրայ կը խօսի։ Կ'ըսէ թէ «[Մուշովկայ] Անսուր գիւղէն 4 ժամ հեռու է եւ կը վերաբերի Աղչէտաղի գայմագամութեան։ Մուշովկայի մէջ կը գտնուին 36 հայ տուներ[1], եւ Ս. Աստուածածին[2] անուն հնադարեան եկեղեցի մը, որ 1895-ին քանդուած ըլլալով[3]՝ այժմ (1902) չորս պատերը միմիայն կանգուն կը մնան։ Սոյն գիւղաբնակ Հայերը 1895-ին 2 քահանայ եւ մէկ դպրոց ունէին, իսկ այժմ չունին։

Մուշովկայի շրջակայքը եւս կը գտնուին 4—5 հատ աւերակ եկեղեցիներու եւ վանքերու հետքեր, որոնց նկատմամբ ծանօթութիւններ չկան (Խաչատուր Վրդ. Տէր Ղազարեան)։ Մուշովկա կամ Մուշեղի գիւղը կը թուի թէ գոնէ 1578 թուականին ունէր վանք մը, որ կարեւոր դիրք մը ունէր, ինչպէս կը հասկցուի նոյն թուականով գրուած Աւետարանի մը յիշատակարանէն (տես Ձեռագրաց բաժին)։

ՄԱՆԿԱՄԱԶԻԿ.— Մուշովկայի վերեւ գահաւանդի մը ծերպէն բաւական առատութեամբ վճիտ ջուր մը բխելով կը թափի ձորին մէջ։ Ջուրին երկու կողմը վերէն մինչեւ վար կը բուսնի մշտադալար եւ մազանման խոտ մը։ Գիւղացիք «Մանկամազիկ» անուանած են այս վայրը։ Կ'աւանդուի թէ հալածանաց ժամանակ քանի մը հրոսակներ յարձակելով գիւղին վրայ, կ'ուզեն

(1) ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ (էջ 401) 50 տուն կը նշանակէ։

(2) Սրուանձտեանց եկեղեցիին անունը Ս. Յովհաննէս նշանակած է (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա., էջ 319)։

(3) Աւելորդ է ըսել՝ թուրքերէն։

արեւանդել գետափ, այլ գեղեցիկ աղջիկ մը: Աղջիկը հալածիչներու ձեռքէն ազատելու եւ պատիւը փրկելու համար՝ կը փախչի եւ կ'ելլէ գահաւանդը՝ անկէ ինքզինք վար նետելու: Եւ ահա յանկարծ սարը ճեղքելով՝ աղջիկը մէջը կը մտնէ թէ ոչ, դարձեալ կը միանայ: Հրոսակներ գայս տեսնելով յապուշ կը կտրին եւ կը հիանան, կը լսեն ստորերկրեայ սաստիկ որոտումներ, որոնց կը յաջորդէ ուժգին պայթումներ եւ քարերու կտորներուն հետ իրենց գլխուն կը տեղայ սա ջուրն ալ ու կը մեռնին հոն: Եւ ի նշան սոյն հրաշքին եւ աղջկան մազերուն կը բուսնի նոյն խոտը: Մանկա-Մազիկ ուխտատեղի մըն է հիմա:

ԱՆՍՈՒՐ, ըստ Տէր Ղազարեան Ծ. Վրդ.ի ընդարձակ տեղեկագրին, հայաբնակ գիւղ մըն է, Մալաթիայէն 8 ժամ հեռի. կը վերաբերի ԱԳՃԱՏԱՂի գայմագամութեան: Հոս կան 21 տուն Հայեր եւ աղիւսաշէն եկեղեցի մը, որ հիմնուած է 1872-ին, եւ որ հրովարտակ չունի: Հոս կան նաեւ 2—3 աւերակ եւ քարաշէն եկեղեցիներու հետքեր, որոնց մասին որեւէ ծանօթութիւն չկայ: Անսուրցիք ներկայիս քահանայ եւ դպրոց չունին:

Գերպ. Ալեքսանդրեան (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 401) կ'ըսէ թէ Անսուր այժմ (այսինքն՝ 1910) փոքրիկ գիւղ մըն է, ուսկից շատեր քաղաք հաստատուած են: Բնակիչներէն 15—20 կամ ըստ ոմանց 30 տունը հայ են, բոլորն ալ կաթոլիկ (նոյն), իսկ Պէննէեան քահանայ կ'ըսէ.

«Անսուր Մելասի ձախ եզերքը Եագըլը խան դաշտի հիւսիս-արեւմտեան ծայրը Գարապելի Կեաւուր Տէրէսի (Հայոց ձոր) բերանը 70—80 տնուոր գիւղ մըն է, որուն 20 տունը հայ է: Գիւղին հիւսիսային կողմը Իպոճուգ ըսուած տեղւոյն զառիվերը կը տեսնենք հին ու դարաւոր եկեղեցւոյ մը պատերն ու խորանը: Եւ ինչպէս վերն ալ ըսինք, կան տասնէն աւելի ձեռափոր քարայրներ, որոնց հանդիպակաց սարահարթին վրայ, Էօրէն գիւղի շրջակայքը եւ Անսուրի ամէն կողմը աչքի կը զարնեն նուիրական հնութիւններ, եւ գերեզմանատուներ, որոնց մէջ կը գտնուին 1200 տարուան տապանաքարեր:

Անսուրցիներու հոգեւոր պէտքը կը հոգացուի Հաքիմխանի եւ Մուշովկայի քահանաներու կողմէն: Անսուրցիներն կանգուն եկեղեցի չունենալնուն համար՝ առիթէն օգտուելու նպատակաւ ասկէց 20—30 տարի առաջ Մալաթիոյ լատին կղերին կողմէ փայտաշէն եկեղեցի մը շինուելով (հիմա 1912 յարդանոց)՝ մարդորսութեան փորձը եղած է թէեւ, սակայն տարի մը չանցած՝ «ամենայն գիշերս աշխատ եղաք եւ կալաք եւ ոչինչ» եղած է:

Անսուրն ալ հին ատեններ բազմամարդ քաղաք ըլլալով հալածանքներէն բնակիչները ցիր ու ցան եղած եւ գաղթած են այլ եւ այլ տեղեր, ինչպէս Կիւրին, Սըվազ, Թոգաթ, Ամասիա եւ աւելի Մալաթիա: Մալաթիա գաղթողներու մէջ ծանօթ են հետեւեալ գերդաստանները՝ Անսուրեանք, Պաղտայեանք, Պըլդենք, Յուսիկեանք, Յովակիմեանք, Օտապաշենք եւ այլն:

Տ. Կարապետ քհն. Պէննէեան, որ, ինչպէս գիտել տուի, լայն ծանօթութիւններ ունի Ապճա-Տաղի գաւառին վրայ, իր շատ անխնամ Պէյրութ տպուած Մալաթիոյ նուիրած տեղագրական եւ ազգագրական աշխատասի-

*րութեան մէջ (էջ 244)՝ կը խօսի նաեւ Անտուրցիներու նկարագրին վրայ։ Ապահովաբար նահատակ քահանան այս մասը իր տրամադրութեանս տակ դրուած ընդարձակ աշխատութեան մէջ պիտի աւելցնէր, վասնզի բաց տեղ մը թողած է ձեռագիրին մէջ։ Կ'երեւի ժամանակ չէ ունեցած աւելցնելու։ Ես առնելով իր համառօտ գործէն հոս կը դնեմ։*

*Ահա թէ ի՛նչպէս կը ներկայացնէ Տ. Կարապետ քհն. Պէննէեան Անտուրի գեղացիները.—*

«Անտուրցիները խիստ պարզամիտ եւ նախապաշարեալ մարդիկ են։ Ասոնց վրայ պատմուած պատմութիւնները զուարճալի բաներ ըլլալու համար մէկ քանի հատը գրել ուզած ենք։ Գիւղին վերեւ ունին ուխտավայր մը Ս. Կանանոս անուամբ։ Իրենց երդում առաջարկելու եւ ճշմարտութիւնը իմանալու համար լաւ է յիշեալ սրբոյն վրայ երդուրնցնել, որովհետեւ Աստուծոյ կ'երդնուն, բայց Ս. Կանանոսի անուամբ չեն երդնուր։ Երբ պատճառը հարցուի, կ'ըսեն թէ «Աստուած բոլորին Աստուածն է, իսկ Կանանոս միայն մեր պաշտպանն ու մեր սուրբն է։

Դպրոց եւ կարդալ գրել բռուածն այս մարդոց համար երազ համարեալ է, այնպէս որ ա.ը տեսնելու ըլլան մօրուաց սանտր կը կարծեն եւ միայն գիտեն թէ գիրք կարդալու եւ թուղթն ու մելան գրելու առարկայք են»։

*Վերոյիշեալ երեք գիւղերէն Հաքիմխանցի Հայերուն լեզուն պարզ եւ մէկ քանի գաւառաբարբառներու խառնուրդ մըն է։ Մուշովկացիներունը նուրբ եւ հայեցի, բայց իրենք շատ արագախօս են։ Այնպէս որ չվարժուող մը հասկնալու համար խօսքը քանի մը անգամ կրկնել տալու պէտքը կը զգայ։ Երեք գիւղերու լեզուն ալ աւելի մօտ է Սեբաստիոյ գաւառաբարբառին։*

*
**

*Կելէնկէճ Նահրիէի Գուրշունլու գիւղի վերեւ հարաւակողմի պահուանդին վրայ* Գըզ գուլէսի *բռուած դիտարան-աշտարակին պէս՝ Լեւենտլէր*[1] *Նահրիէի* Քիւրտ Ապտալը *գիւղի դիմաց Մելասի եզերքը բարձր սարի մը գլուխը կիսակործան բերդ մը եւ դիմացն ալ ընդարձակ քարուկիր դղեակ մը կը տեսնուին։*

*Քէօրեճիւքի* Հարըն Ուշաղըէն Պաշեուրտ *տանող ճամբուն վրայ բարձր ժայռի մը հարթ երեսին վրայ գրուած կայ 40 տողի չափ կարմիր եւ խոշորագիր արձանագրութիւն մը, որուն երկու եզերքը նկարուած է բոլորակ նկար մը խաչաձեւ։ Բայց ժամանակի հոլովմունքն ու ձիւներու եւ տեղատարափներու բախումներն տեղ տեղ եղծանելով՝ անընթեռնլի եւ անօրինակելի վիճակի մը ենթարկուած են զայն։*

---

(1) *Ասկէց երեսուն տարի առաջ (1882) Աղճատաղի կառավարական կեդրոնը Լեւենտլէր գիւղն էր, որ յետոյ փոխադրուած էր Արըղա։*

*Աս գաւառակին ամէն կողմերէն ալ կը գտնուին Ռուբինեանց իշխանութեան արծաթ դրամներ :*

*Անկից* 25—30 *տարիի չափ առաջ (այսինքն* 80–*ական թուականներուն) Քիւրնէի գիւղացիներէն մէկը արտը հերկելու ատեն կը գտնէ ձուլածոյ արծաթ հորթ մը, բայց չգիտնալով անոր արժէքաւոր բան մը ըլլալը, կը խորտակէ եւ տանելով շրջակայ քաղաքները կը ծախէ մաս առ մաս :*

*
**

*Աղճատաղցիները, ամբողջութեամբ իրենց առուտուրը գլխաւորաբար Մալաթիոյ, Էլպիսթանի, Տերենտէի եւ Կիւրինի հետ կ՚ընեն : Գաւառակին մեծ մասը լեռնային ըլլալուն՝ երկրագործութիւնը յառաջ գացած է աւելի Բոլատցիներու եւ Արղացիներու մէջ՝ իրենց ընդարձակ եւ ջրարբի դաշտերուն պատճառաւ : Աղճատաղցիներու մեծ գործն ու հարստութիւնը անասնապահութիւնն է : Գաւառակին ամէն կողմը, մանաւանդ Քիւրճիկի եւ* Այվալըի *մէջ, գործուած գորգերը, կապերտները եւ* բէրտէններն *(վարագոյր) ու սփռոցներն առատ շահ կը բերէին :*

*Արդարեւ շատ հիասքանչ եւ հետաքրքրական են աս գաւառակին գործուածքներն ու հիւսկէնները : Ձի թողունք հասարակ այլ գեղեցիկ կապերտները, գորգերն ու քուրձերը, աչքերդ կը շլացնեն* Եափ Տաղ Ձիչէկի *անուանեալ երփներանգ կապերտը եւ հանգոյն ծիածանի եռաշերտ, հնգաշերտ եւ եօթնաշերտ* բէրտէններն *ու սփռոցները, որոնց վրայ քրդուհւոյն մատները բազմերանգ թելերով բնական ծաղիկներու ձեւն ու կերպարանքը բանեցուցած է : Այնպէս որ ոչ միայն Մամուրէթ իւլ Ազիզ նահանգի, այլեւ օսմանեան երկրին մէջ գտնուող եւ ոչ մէկ քիւրտ ցեղ կրնայ մրցիլ Աղճատաղցիին հետ այս մասին :*

*Այս գաւառակին մէջ երկրագործական բերքերն են ցորեն, գարի, ոսպ, սիսեռ, ծխախոտ, աֆիոն, բամպակ, եգիպտացորեն, կորեկ եւն. : Բանջարեղէն եւ այգի խիստ նուազ են : Իրենց ոչխարներուն տուած բուրդն ու իւղը շահագործելնուն պէս վայրի կենդանիներ որսալով անոնց մորթերէն ալ բաւական կը շահին :*

*Աղճատաղի արտադրութիւնը (արտածում) մէկ միլիոն, իսկ ներածումը՝ ութը հարիւր հազար ղրուշի կը հասնի վերի վերոյ հաշուով :*

*
**

*Աղճատաղ — Մալաթիոյ հետ միւս գաւառակներէն աւելի յարաբերող եւ ամենէն մօտը գտնուելուն համար — իր գիւղերն ալ կ՚ուզենք անուամբ նշանակել հոս, որոնք են .—*

ՔԻՒՐՃԻԿԻ ՄԷՋ .— Արղա, Գարաբերդի, Պեքսեմտէրէ, Թոփալ Հիւ–

սէին, Պալահանի, Հարուն Ուշաղը, Էօքսիզ Ուշաղը, Պեքիր Ուշաղը, Քերլի Ուշաղը, Ամուգլու, Գոզլուճա, Չինար, Բալանկա, Հագըգլը, Թանըգլը, Քեփէզ, Քէօր Սիւլէյմանլը, Քեհալար, Քելենլէր, Գատիր Ուշաղը, Իքինճիլէր, Պայրամ Ուշաղը, Խանչարլը, Քէլլէր, Տէվէլը, Գաժիկլը, Թումուգլը, Սարը Հանի, Չոպան Ուշաղը, Մեզերէ, Շեմշիկ, Թեմուրճիլէր, Գոլլու, Պիլէմ Ուշաղը, Թաթար Ուշաղը, Թափկրան, Գուպէթ Ուշաղը, Գասըմ Ուշաղը, Բենիքլը, Բոլատ:

ՔՈՒՐՆԷԻ ՄԷՋ.— Սաւզան Ուշաղը, Այրամ Ուշաղը, Էնկիզէկ, Ֆեթհանըգ, Քերիմլի, Հալավիք, Կէլինճիք, Գուրշունլու, Քիւրճան, Գըզըլ Եաթագ, Սէօկիւտ, Ջահմատին, Թախտալը, Իպոնուզ, Դլլէթ Ուշաղը, Ճէվիզլի, Գատիր Իպրահիմ, Եոզարը Քիւրտ Ապտալլը, Աշաղը Քիւրտ Ապտալլը, Ուզուն Հասան, Կէօքճէ, Ուզուն Ուշաղը, Բոլատ Ուշաղը, Շէյխ Ուշաղը, Պէօյիւք Քէօյ, Կիւչիւք Քիւրնէ, Լեւենտ, Անճար, Սազալը Ուզունլար, Պաղ, Էպելէր, Քէօսէլէր, Պէօյիւք Անճար, Եոզարը Էօրիւքճը, Գարա Մաղարա, Ալինճրի Ուշաղը, Շեմս Ուշաղը, Րասուլ Ուշաղը, Գիլիկ Ուշաղը, Թուիք Ուշաղը, Տողանլար, Մեհմանլը, Խարթուր, Բալաղ Ուշաղը, Գայոլար, Մուրատլը, Սարսաթ, Անսուր, Մուշովկա, Այվալը, Գըզըլ Մաղարա, Սելիմլը, Էլվար Ուշաղը, Պինիր, Սոփուլար, Գարլըգ, Պըյըգ Պողազը, Պաշը Ուզուն, Թերսէ խան, Կէօքէ Պաքան, Գարնճալըգ, Սուլթանլը, Նամըգլը, Ֆընճըլար, Գայնարճա, Հասան Չելեպի, Պաղչատամը, Արշ Մաղարա, Եշիլ Գալէ, Քէօթիւ Քէօյ:

ՀԱՔԻՄԽԱՆԻ ՄԷՋ.— Գալէ Մահալլէսի, Եճիճէ, Էրմենի, Գոչու Ուզուն, Ճիւզիւնկիւտ, Սարը Գըզ, Պըտրէն, Պասագ, Կենճ Ուշաղը, Էսելու, Տունը, Շերզը, Պոզուգլը, Ալիզ, Չանագ Բունար, Քերմանէ, Հանիլէր, Մուլլա Իպրահիմ, Սըչան Ուշաղը, Թաթգըգ, Սաման, Ուղուրճըգ, Գոզտէրէ, Գարա Կիւչիւկ:

ՉԻՖԹԼԻԿԻ ՄԷՋ.— Չիփթճի Պաշի, Հեքիւքէ, Գըրզան, Ջիյարէթ, Ջէյվէ, Շէյխլէր, Մուսթուրը, Բերթէկ, Աւշար, Ըլըճըգ, Աշաղը Էօտիւքճիւ, Էօրէն, Գորան Կէօլ, Տէրէ, Ալմալաթը, Էսենլը, Էկին, Մեհմանըլ, Պահրի, Եազմարլու, Գալենտէր, Կէօլ Բունար, Քէօր, Սլէյմանլը, Պապէր, Տեպէ, Գալը Գասէ, Գարա Բունար, Արմաշաթը, Քէօսէ Հաս, Միւզեվիր Քէօյը:

*Այս նահիէները՝ Քիւրնէ եւ Քիւրեճիկ, քրտաբնակ են, ոչ միեւնոյն կրօնքով: Քիւրնէի Քիւրտերը սիւնի իսլամ էին իսկ Քիւրեճիկի բնակիչները՝ Ալէվի:*

*Գերպ. Ալեքսանդրեան (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 392) կ՚ըսէ թէ այս Քիւրտերը «ունէին իրենց հրամանատար Պէյերը եւ գլուխները. իրենց թիւն էր ատեն մը 15—20 հազար: Ասոնք լեռնակողմերը կը բնակէին, եւ առաջ շատ նեղութիւն պատճառեցին վարչութեան՝ իրենց ասպատակութիւններովը: Վրդովեցին գեղերու խաղաղասէր բնակչաց անդորրութիւնը եւ ճանապարհորդաց հանգիստ երթեւեկը: Յանդգնեցան նաեւ արշաւելու մինչեւ Մալա—*

թիոյ դաշտերը, անգամ մը միայն 10—15 հոգիով, եւ երբեմն մեծ բազմութեամբ, եւ այն ատեն կու գային կը բնակէին քաղաքին մօտերը Շահնախան բռնած տեղը։ Ասանկ գլխաւոր դէպք մը հանդիպած է 1862–ին, զոր Իսմայիլ փաշա՝ Խարբերդի վալին՝ նուաճած է. ուրիշ անգամներ եւս եղած են նման դէպքեր։ Հիմակ տէրութիւնն ընկճած է անոնց ըմբոստութիւնները եւ դադրած է պաշտօնապէս ասպատակութիւնը, եւ իրենք ըստ բաւականի հանդարտ կը կենան գիւղերու մէջ եւ կը պարապին երկրագործութեամբ։ Նոյն կողմերը կայ նաեւ Տընիճանլը աշիրէթը։

## Գ. ՊԵՍՆԻ — ՊԵՀԵՍՏԻՆ

Այս գաւառը, որ Փոքր Հայքէն դուրս է եւ աւելի Եփրատացւոց կը պատկանի, սահման ունի «հիւսիսէն եւ հիւսիս–արեւելքէն Աղճա Տաղ եւ Մալաթիա, արեւելքէն եւ հարաւ–արեւելքէն Հիւսնի Մանսուր եւ Եփրատ, եւ հարաւէն ու արեւմտեան հարաւէն Հռոմկլայ եւ արեւմուտքէն եւ հիւսիս–արեւմուտքէն Բազարճըգ եւ Էլպիսթան, որ իր մէջ կը բովանդակէ 70 ժամուան ընդարձակ տարածութիւն մը, եւ այս շրջանակը բաժնուած է 5 գիւղախումբերու, որոնք են. Պելվերէն, Հաւէտի (կամ Հուէյտի), Սիւրկիւ, Քէյսուն, եւ Գըզըլին, որ ստորաբաժանուած են 150—160 գիւղերու (տես Պէնկէեան քհն., ԸՆԴԱՐՁԱԿ ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ, էջ 186—7)։

Պեհեսնի գաւառը կը գտնուի Մարաշ, Այնթապ, Ուրֆա եւ Մալաթիա քաղաքներուն ճիշդ կեդրոնական դիրքի մը վրայ եւ գրեթէ հաւասար հեռաւորութեամբ՝ մօտ 150 քիլոմեթր ճանապարհով մը բաժնուած է անոնցմէ։

Պեհեսնի գաւառակէն հոսող ջուրերէն մէկն է Սիւրկիւի վտակը, որ մօտակայ լեռներէն հաւաքուելով կը հոսի եւ Փաշա Քէօփրիւսիւի մօտերը կը խառնուի Կէօքսու գետակին։ Սիւրկիւի այս ջուրին մէջ կայ Ալա Պալըղը ըսուած մանր, այլ համեղ ձուկեր։ Թէ՛ Էօրէն–Արղա եւ թէ Էլեմենտիկի դաշտերը ոռոգելու համար՝ թէեւ այս ջուրը մասնաւոր գիծով մը իջեցնելու փորձը եղաւ Մալաթիոյ Չիֆթլիկի հիւմայինի կողմէն եւ բաւական յառաջ տարուեցաւ, բայց Օսմանեան Սահմանադրութիւնը (1908) հրատարակուելուն պէս Չիֆթլիկը Միլքիյէին փոխանցուելով՝ գործը երեսի վրայ մնաց։ Եթէ կառավարութիւնը լրացնէ այս ձեռնարկը, մանաւանդ Մալաթիոյ համար շատ օգտակար պիտի ըլլայ։

ԿԷՕՔՍՈՒ.— Պեհեսնի գաւառակին էն նշանաւոր ջուրն է ասիկա։ Ասոր մէկ մասը կը կազմէ յիշեալ Սիւրկիւ չայըն, իսկ միւս մասը Էլպիսթանի կողմերէն գալով՝ Ուզան գիւղի մէջ կը միանայ եւ միշտ դէպի հարաւ հոսելով կը խառնուի Եփրատի մէջ։

Ասոր վրայ ձգուած են երկու հսկայ կամուրջներ, մին՝ Երկենեկի եւ Բեսլիւրին մօտ «Փաշաքէօփրիւսի»ն, եւ միւսը՝ Գըզըլինի առջեւ։

Բիւզանդական կայսրութեան ամենէն փայլուն օրերուն կայսրութեան պատմութեան խառնուած է, վասնզի հոն կը գտնուէր պատմական Զապետ–

*րա կամ Սոզոպետրա քաղաքը, զոր Բիւզանդացիք 837ին կործանեցին Սամուսատի հետ: Զապետրան Մութասիմ խալիֆայի ծննդավայրն էր եւ Բիւզանդացիներուն զայն կործանելը սաստիկ վրդովեց խալիֆան:*

*Զապետրան կամ Սոզոպետրան ըլլալ կը կարծուի Պեհեսնիի* Սիւրկիւ*ցեղախումբին մէջ գտնուող հովիտի մը վրայ* Խարապ Շեհիր *անունով կոչուած քաղաքի մը աւերակը, որուն պարիսպները տեղ տեղ կանգուն էին տակաւին:*

*Հիմակ հոն հաստատուած էին ռուս եւ թուրք վերջին պատերազմի ատեն Կարնոյ կողմերէն եկող* 300 *տունի չափ մուհաճիրները:*

*Խարապ Շեհիրը կը յիշատակէ Հ. Ղուկաս Վրդ. Ինճիճեան (էջ* 325) *իբր* Օվա *դաշտ: Այս դաշտը մօտ էր Պեհեսնիի, ուր ամէն տարի կը հաւաքուէին Րիշվան Քիւրտերը իրենց տարեկան արքունի տուրքերը տալու համար:*

*Հիմա այս վայրը, ուր համաշխարհային առաջին պատերազմին* (1914—1918) *արեւելեան նահանգներէն թուրք նոր գաղթականներ եկած էին, կը կոչուի քեմալական հանրապետական կառավարութեան կողմէ* Տողան Շեհիր *(ծնող քաղաք):*

*Պեհեսնի գաւառը Կիլիկիոյ թագաւորութեան մաս կազմած է երբեմն:*

*Պեհեսնի գեղեցիկ լեռնաշխարհ մըն է, բնական առաւելութիւններով, առողջարար ջուրով եւ հաճելի կլիմայով: Ունի ընդարձակ անտառներ, բազմաթիւ գետեր, յորդահոս ջուրերով եւ հաճելի կլիմայով: Ունի նաեւ անսահման տարածութեամբ մշակելի հողեր, որոնք չեն մշակուիր, վասնզի Պեհեսնիի գաւառին բնակչութեան մեծ մասը վրանաբնակ եւ վաչկատուն է. որով երկրագործութիւնը ետ մնացած է: Նոյն արմտիքը ուրիշ տեղերէ կը ներմուծուի (Պէննէեան, էջ* 189)*: Ժողովուրդը ընդհանրապէս աղքատ եւ յետամնաց է:*

*Նշանաւոր են իր չամիչը եւ քաղցուն: Կ'արտածէ հում նիւթեր եւ չոր պտուղներ, ինչպէս կարագ-իւղ, պիստակ, բամպակ, ատաղձ, տախտակ, ածուխ, գլտոր, բրինձ, գարի, նուշ, ընկոյզ, թութ եւայլն:*

*Ըստ Պէննէեան քահանայի իր գլխաւոր արտադրութիւններն էին բասդեղ,* սուճուղ*, չամիչ, թուզ, պիստակ, մանած, կտաւ, գորգ, կապերտ, բուրդ եւ* բէկմազ *բառուած տեսակ մը օշարակը եւ ոգին:*

*Գաւառին կեդրոնական վայրը՝ ՊԵՍՆԻ կամ ՊԵՀԵՍՆԻ՝ Թուրքերը կը կոչեն ՊԵՀԵՍՆԻ-ՊԱՀՈՒԵՏՏԻՆ կամ ՊԵՀԱՏՏԻՆ եւ Ասորիները ՊէՅԹ ՀԱՍԱՆ (Ալեքսանդրեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ* 409—412)*: Փոքր քաղաք մըն էր հաստատուած քարոտ լերան մը կողին, ցրուեալ տուներով, ուր կը տեսնուի նաեւ հին բերդի մը մնացորդները (հմմտ. Ալիշան, ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ):*

*Պեհեսնի երկու օթեւան հեռի է Այնթապէն դէպի արեւմտեան հիւսիս (Հ. Ղուկաս Վրդ. Ինճիճեան, ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ ՉՈՐԵՑ ՄԱՍԱՆՑ ԱՇԽԱՐՀԻ, Ա. հտ., էջ* 324)*:*

*Պէհեսնի Տ. Կարապետ քհն. Պէննէեանի համաձայն* «Մալաթիայէն 22 ժամ հեռաւորութեամբ բոլորտիքը լեռներով շրջապատուած եւ խորաձորի մը վայրէջքը հաստատուած փոքրիկ քաղաք մ'է» (*Պէննէեան*, ընդարձակ, *էջ* 185):

«Պեհեսնի՝ Արեւելքէն ու արեւմուտքէն պարուրող երկու սարերու մէջ-տեղ՝ ձորամէջ շինուած աւան մըն է, 1880 տնուոր: Բոլոր տուները շինուած են ձորին արեւելեան դարվարին վրայ, որուն երկայնութեանը շինուած է նաեւ շուկան եւ անոր հիւսիսային ծայրն ալ կը գտնուի կառավարական շէն-քը: Առենօք աւանին մէջ կար աւելի քան 400 տուն Հայութիւն, երեք յարա-նուանութիւններէ, լուսաւորչական 300 տուն, բողոքական՝ 15 տուն, կաթո-լիկ՝ 40 տուն: Մնացած բոլոր բնակչութիւնը մահմետական էր, այսինքն թուրք» : (*Տէր Յակոբ Եփրեմեանի հաղորդած տեղեկութիւնները*, ***ՊԱՏՄՈՒ-ԹԻՒՆ ԱՅՆԹԷՊԻ ՀԱՅՈՑ***, *Ա. հտ.*, *էջ* 82):

*Քաղաքին քովէն կ'անցնի Սալրուն գետակը որ թէպէտ խորունկ չէ բայց լայն եւ սաստիկ սրընթաց է մանաւանդ ջուրերու անման շրջաններուն* (*Հմմտ. Ինճիճեան*, *նոյն*, *էջ* 325):

«Շուրջանակի ունի պարտէզս եւ այգիս, որոց խաղողն է սքանչելի, զի արտաքոյ կարգի իբրեւ հրէշ իմն է տեսանել ի տեսակս խաղողոյ սակս մե-ծութիւն, որոյ չամիչ գնայ մինչ ի յարքանիս: Գլխաւոր վանառ Պեհեսնայ է տախտակ եւ գերան, զի մօտ իւր ունի անտառս մեծամեծ, Ուռփայեցիք առ-դի զնեն ըստ մեծի մասին առաղձ ի պէտս շինուածոց իւրեանց» (*Ինճիճեան*, *նոյն*):

*Բնակիչները տաճիկ եւ Հայ էին (նոյն) Պէննէեան քհն. անոնց ընդհա-նուր թիւը 8—9 հազար կը նշանակէ, որոնց միայն 350-ը քրիստոնեայ:*

*Ըստ այլոց Պեհեսնի քաղաքը ունէր շուրջ 2000 տուն բնակիչ, որոնց դրեթէ քառորդը քրիստոնեայ (էջ 227): Ալիշան քաղաքին բնակիչները 2500 տուն թուրք եւ 150 կամ 250 տուն հայ ցոյց կու տայ:*

*Գերպ. Ալեքսանդրեան* (***ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ***, *էջ* 409) *բնակ-չութիւն կը նշանակէ* 2000 *տուն թուրք եւ* 250—300 *տուն Հայ*, 100–150 *տունը կաթոլիկ եւ շատ քիչ բողոքական:*

*Պեհեսնի հին քաղաք մը ըլլալ կը թուի, որ սակայն ծանօթ չէ իր հին անունով: Ոչ բիւզանդացւոց եւ ոչ Արաբներու տակէն չէ յիշուած: Կազմած է Լեկանդիոնի թեմին մաս եւ ԺԱ. դարուն Հայաստանէն տեղափոխուած Հայ Թաղաւորներու եւ իշխաններուն պատկանած է:*

*Անոր տիրած են Փիլարտոս. Գող Վասիլ եւ Տղայ Վասիլ:*

*Այս շրջանակին տիրած են նաեւ խաչակիրներէն Եդեսիոյ կոմսերը:*

1118-*ին անոր տիրեց Պաղդին*: (*Հմմտ.* ***ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ***, *էջ* 409):

*Այն ատեն Պեհեսնի հռչակաւոր դղեակ կամ ամրոց մըն էր, որ ժամա-նակակիցներ անառիկ կը կոչէն:*

*Պեհեսնի ԺԱ. եւ ԺԲ. դարուն նշանաւոր էր իր ամրութիններով, իր հարստութեամբն եւ բազմամարդութեամբ: Ըստ Տ. Կարապետ քհն. Պէննէ-*

ժանի պահ մը Կոստանդինի որդի Հեթում իշխան Թուրքերու ձեռքէն գրաւած է այս քաղաքը որ եօթը կրկին խոյմներէն գրաւուած է։

Մահմետականները երբ տիրեցին, քրիստոնեաները հեռացուցին, իրենք հոն հաստատուեցան։

Յաջորդաբար անոր տիրած են Սուրիոյ Աթաբէկներն, Ռումի Սելճուկ Սուլթանները եւ Եգիպտացիք եւ վերջապէս Օսմանեան Թուրքերը։

Հոն Օսմանեան գերիշխանութեան տակ երբեմն գոյութիւն ունեցած են ինքնագլուխ տոհմեր, ինչպէս Պէյատ Օղլուներ, որոնց անունը կը կրէ մինչեւ հիմա Պեհեսնիի մօտ Շահ-Պէյատի գիւղը։

Պեհեսնի ամրացած է նշանաւոր բերդով մը հիմնուած բնական ամրութիւններով հարուստ հսկայ լերան մը գագաթը։ Այս վիթխարի լեռը, իր բարձր դիրքով կ'իշխէ շրջակայ լեռնաշղթաներու վրայ որուն չորս բոլորտիքը կը գտնուի արդի Պէսնի քաղաքը։

Բերդ-լեռը, ամփոփ եւ ցից ունի ճիշդ ձուկի մը կերպարանքը, իր պոչով, գլուխով եւ թեւերով։ Լեռան գլխային մասերը, ըլլալով երեք կողմերով անդնդախոր՝ բնական գահավէժներով բաժնուած անմատչելի են, միմիայն հարաւային կողմէն կարելի է մուտ գործել լերան գագաթը՝ բերդի պարիսպներուն մէջ, քառորդ ժամ քալելով սարսափելի գահվէժի մը ապառաժոտ շաւիղներէն։

Լերան գագաթը, տափ եւ անդ սփռուած կը տեսնուին շատ մը հին շինութեանց աւերակներ եւ բազմաթիւ վիմափոր քարայրներու մնացորդներ, քիչ շատ տափարակ տարածութիւններու վրայ։

Ասոնք վաղընչական բնակարաններն եղած են բերդի երբեմնի քաջ պատերազմիկներուն։

Պեսնիի այս նշանաւոր բերդը դարերով անխնամ թողուած եւ շատ բաներ կորսնցուցած է իր հին փառքերէն։ Պատմական գեղեցկութիւններէն բան չհասկցող տգէտ տեղացիք չարունակ քանդած եւ ահագին աւերներ գործած են անոր վրայ։ Կողոպտած են անոր քարերը բնակարաններու շինութեան համար։ Իսկ լերան գագաթը, բերդի այս կամ այն կողմը, շատ մը պեղումներ կատարուած եւ արձանագիր հսկայ քարեր կտորուած են, թանկ դրամներ եւ իրեղէններ փնտռողներու կողմէ։ Անեղծ մնացած են միայն բերդի անխախտելի պարիսպները, գահավէժ ամրութիւնները եւ շատ մը բնակարանային շինութեանց ամրաշէն հիմերը։

Բերդի հին փառքերէն իբր յատկանշական մնացորդ յիշատակելի է լերան բարձունքը կանգուն մնացած կիսաքանդ հսկայ դիտարան աշտարակի մը, խոշոր քարերով ամրաշէն, երկնասլացիկ եւ հիանալի մէկ պատը՝ յայնանիտ, որուն հարաւակողմի սրբատաշ մակերեսը, տասապելական բարձրութեան վրայ քանդակուած մօտաւորապէս տասը կանգուն երկայնութեամբ եւ մէկ կանգուն լայնութեամբ, անվրէպ եւ հրաշալիօրէն համաչափ փակագծի մը խորքը, բարձրաքանդակ եւ խոշորագիր, այնպիսի մեծութեամբ որ

կարելի է բոլոր մօտակայ բլուրներէն տեսնել եւ կարդալ դիւրութեամբ, թէեւ լեզուն չէ ճշդուած:

Այս հսկայ լերան խորը ծածուկ ճամբայ մը կայ որ դառիվեր կ՚երկարի լերան պոչէն մինչեւ գլուխը: Այս ճամբան փապուղի մըն է որուն լայն եւ բարձր կամարներուն մէջէն կրնան խումբ մը ձիաւորներ կողք կողքի անցնիլ ազատօրէն: Այս գաղտնի ճամբուն վարի ծայրը կը յանգի անուշ ջուրի փոքրիկ վիմափոր աւազանի մը, որ կը բացուի Հայ Թաղերու մէջէն անցնող գետակին, ժայռերու մէջէն բացուած սարսափելի կիրճի մը ստորոտը եւ ամենուին աննշմարելի դիրք մը ունի: Այս ժայռամէջ աւազանին ակը իր մէջն է եւ կը բղխի գետնէն պղպջալով եւ սքանչելի ջուր մը ունի, զոր ցարդ մօտակայ Թաղերու բնակիչները կը գործածեն իբր խմելու ջուր:

Այս ճամբուն վերի ծայրը լերան գագաթին վրայ ունի իբր դուռ բրգաձեւ ղոյդ մը հսկայ պարսպապատեր, մէկ մէթր արահետով բաժնուած իրարմէ եւ ունին խոշոր եւ սրբատաշ քարերով հաստարեստ եւ լայնանիստ շինուածք մը, չափազանց ամրաշէն:

Այս պատերը կանգուն են շատ բարձր բնական դահավէժի վերեւ, ուր վար նայողին գլխու պտոյտ կը պատճառէ եւ վարի ձորամէջի Թաղերուն բնակիչները կը տեսնէ մրջիւններու նման փոքր:

Տեղացիք այս բերդը զանազան անուններով կը կոչեն, Թուրքերը կ՚ըսեն «ՔԻՒՖԱՐ ԳԱԼԱՍԸ», իսկ Հայերը կը կոչեն «ՀԱՅՈՑ ԳԱԼԱՍԸ» եւ ՋԿՆԱԲԵՐԴ, որ վաղեմի անուն մը ըլլալ կը թուի (Աւետիս Թէքեան, ՊԵՄՆԻՆ ԵՒ ՔԵՍՈՒՆ, ՍԻՈՆ, 1933, էջ 296—7):

Վերջին ժամանակները քաղաքի ամրութիւններն աւրուած էին: Մինչեւ վերջերը քաղաքէն դուրս պարտէզներու եւ այգեստաններու մէջ կը տեսնուէին տակաւին հին ամրոցին աւերակները ամէն կողմ (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 410):

Քաղաքը ունի զարմանալի կառուցուածք մը, «խիտ վտանգաւոր: Տուները խիտ առ խիտ եւ իրարու վրայ շինուած են: Այնպէս որ մէկուն տանիքը միւսին գաւիթ եւ հասարակութեան ճամբան է:

Կեդրոնին օդը շատ վատառողջ է: Ամառը սաստիկ ըլլալով բնակիլ անկարելի ըլլալուն, ժողովուրդը ամառը կ՚երթայ քաղաքին շուրջը գտնուած այգեստաններն ու հոն կ՚անցնէ: Այգեստանեայց մէջ որչափ որ պտղատու ծառեր ալ հասած են, բայց զանոնք ոռոգող ջուր չգտնուելուն համար անզօր կը մնան մինչեւ իսկ գետինը խոտ չբուսնիր: Այգիները սակայն խիստ պտղաւական են: Կ՚արտադրեն ազնիւ խաղողներ, համբաւաւոր է ԲԷՑՂԱՄՊԷՐ ԻՒՋԻՒՄԻ ըսուածը, որուն համեմատող խաղող եւ ոչ մէկ տեղ չի գտնուիր, մանաւանդ ասոր չամիչը որ իր խոշորութեամբ եւ փայլունութեամբ բնութեան մէկ առանձնաշնորհումն է այս գաւառակին:

Պեհեսնի ինչպէս վարչական, Հայ առաջնորդական բաժանմամբ ալ Մալաթիոյ կը վերաբերի: Այս թեմին մէջ ալ 25 տուն կաթոլիկ եւ 10—12

տուն բողոքականներ կան։ Ինչպէս Հայերը նոյնպէս միւսներն ունին մէյ մէկ եկեղեցի եւ յարակից վարժարան[1]։ Վարժարաններու մէջ սկիզբէն ի վեր կաթոլիկներունը քիչ շատ մխիթարական է։ Պեհեսնեցի հայոց գործածական լեզուն թուրքերէնն է, այնպէս որ հայերէն ամենապարզ բառն անգամ չեն հասկնար։ Տակաւին անտարբեր են դպրոցներուն պարկ տալ եւ իրենց մայրենի լեզուն սորվելու։

Հայերն ունին ներկայիս (1912) մէջ 2 քահանայ, Տ. Աբրահամ եւ Տ. Սուքիաս։ Առաջինը ծերացած է այլեւս, միւսն ալ թողլով Պեհեսնին՝ Խարբերդի ՀԻՒՍԷՅՆԻԿ գիւղին մէջ կը քահանայագործէ։

Պեհեսնիի մէջ կան մի քանի տուն հայեր, որոնք Ակնէն եւ Կիւրինէն փոխադրուելով բաւական կարեւոր դիրք գրաւած են. բնիկ Հայերը կը պարապին պայտարութեամբ, կօշկակարութեամբ, կահագործութեամբ, երկաթագործութեամբ, կլայեկագործութեամբ, ներկարարութեամբ և այլ հասարակ քանի մը արհեստներով։ Պեհեսնիի գաւառին մէջ համանուն քաղաքին շուրջ կային ուրիշ հայարնակ վայրեր։

Այսպէս, «Պեհեսնիէն երկու ժամ դէպի արեւելք կը գտնուի ՍՈՒՐՖԱՉ անուն 300 տնուոր գիւղ մը, որուն իրր 20 տունը Հայ էր, բայց չափազանց աղքատ։ Հայոց եկեղեցի մըն ալ կար, շատ գեղեցիկ շինուած եւ ընդարձակ։ Բուն գիւղին դիրքը տափարակ չէ, ոչ ալ բարձր լեռ ունի, այլ պատուանդաններով բլրակէր լայն հովիտ մըն է։ Գիւղը երեք մզկիթ ունէր մինարէներով, գեղամէջ երկուքը ամուր վիճակի մէջ, իսկ գիւղէն դուրս մէկը՝ պատերը փլած աւերակ։

Առաջ 1000 տնուոր աւան մըն է եղեր։ Գիւղին մէկ ժամ հարաւէն կ՚անցնի ՍՈՒՐՖԱՉ-ՉԱՅ անուն գեղեցիկ գետակ մը, որ շատ արգիւնաբերութիւն կը պատճառէ։

Սուրֆաղի հիւսիսային-արեւելեան կողմը գրեթէ հինգ ժամ հեռաւորութեամբ կայ ՇԱՄՊՕՅԱՐԸ անուն 500 տնուոր գիւղ մը, որ նաեւ տասը տուն Հայութիւն մը կը բնակէր։

Պեհեսնիէն դէպի հիւսիս ութ ժամ հեռաւորութեան վրայ կայ ԹՈՒԹ անուն 600 տնուոր գիւղ մը, եւ հոն ալ 16 տուն[2] Հայութիւն մը կը բնակէր։ Ոչ դպրոց եւ ոչ եկեղեցի ունէին։ Տարիներ առաջ, կաթոլիկները դպրոց մը բանալու խոստումը ըրած էին, բայց չէր իրագործուած (Պէննէեան քհն. ԸՆԴ., էջ 187) Թութի հայերը կոտաւագործ էին եւ բաւական քանակութեամբ կ՚արտածէին շրջակայ քաղաքները (Պէննէեան, ԸՆԴԱՐՁԱԿ, էջ 187)։

Պեհեսնիէն 10 մղոն դէպի արեւմուտք ալ կայ ՊԷԼՎԷՏԷՆ գիւղը 200 տուն բնակչութեամբ, որուն 15 տունը (3) Հայերէ կը բաղկանար։

---

(1) Հայոց եկեղեցին Ս. Փրկիչ եւ վարժարանը ՆԵՐՍԷՍԵԱՆ կը կոչուէր (Թորոս Աղբար Բ, էջ 319)։ Վարժարանին ուսանողաց թիւը 40 էր (նոյն)։

(2) Այս թիւը ոմանք մինչեւ 5 տունի կ՚իջեցնեն։

(3) Պէննէեան քահանայ՝ 20 տուն։

*Պէլվէրէնի Հայերը Թրքախօս էին Պեհեսնեցւոց պէս, իրենց հոգեւոր պէտքերը կը հոգացուի Պեհեսնիէն: Սահակ կաթողիկոս Խապայեան մէկ քանի տարիներ զրկեց անոնց նախնական դպրոցի մը պէտքերը սակայն վերջը դադրած էր (Պէննէեան, էջ 187):*

*Բել-էրէն կամ Պելվերէն կամ Պելվերան գիւղին մասին, Մոլթքէ ունի հետաքրքրական տեղեկութիւն մը:*

«Միակ յարկի մը տակ 200 տուներով խոշոր գիւղ մըն է· յարկ կամ պատշգամ՝ անջատուած միայն փոքր թուով փողոցներով, որոնց մէկէն միւսը կը ցատկես, նեղ խրամատէ ցատկելու պէս» (*Մոլթքէ*):

*Պեհեսնիի դաշտին մէջ էին նաեւ ՌԱՊԱՆ, Մարաշի եւ Քեսունի միջեւ դէպի արեւմտեան հարաւ: Թուրքերը այն կողմերը կ՚անուանեն ՌԱՊԱՆ Օ-ՎԱՍԸ (հովուաց դաշտ) ուր կը համախմբուէին Քիւրտ եւ Թիւրքմէն աշիրէթներն եւ կ՚արածէին իրենց խաշինքներու հօտերը:*

*Հիմա ալ Քուրդերը եւ Թուրքմէնները կը կազմեն բնակչութեան մեծամասնութիւնը:*

*Մինչեւ 1914 հոն քիչ թիւով Հայեր ալ կը գտնուէին:*

*Պեհեսնիի մօտերն յիշատակելի են իբր հայկական յիշատակ, ՄԱՏՐԱՄՈՒՆ եւ ՎԱՐԴԱՀԵՐ աւանները, որոնցմէ առաջինին մէջ կ՚իշխէր Գուրգէնի որդի Գողիկ, որուն քով բնակեցաւ ժամանակ մը Գրիգոր Վկայասէր կաթողիկոս:*

*Վարդահեր այն գիւղն է ուր վախճանեցաւ Վկայասէրի քեռորդին եւ յաջորդը Բարսեղ կաթողիկոս (1113):*

*Ահա ասոնք են բոլոր այն տեղերն, ուր քիչ թէ շատ հայ կը բնակէր, բայց 1895-ի կոտորածին Հայ գիւղացիներէն շատերը սպաննուեցան եւ մնացածներն ալ ցիրուցան եղան:*

*Պեհեսնի գաւառին մէջ 1915-էն առաջ տակաւին հայաբնակ վայրերէն դատ կային ուրիշ քաղաքներ եւ գիւղեր որոնք բաւական կանուխ դադրած էին հայաբնակ ըլլալէ սակայն իրենց պատմական անցեալով կապուած էին Հայ ազգին եւ անոր պատմութեան մէջ երեւելի դեր կատարած էին: Այսպէս Պեհեսնիի հարաւային կողմը չորս ժամ հեռու կը գտնուէր Քեսուն Հայ եւ Թուրքխառն բնակչութեամբ գիւղաքաղաքը որ 1916-էն առաջ ունէր 200 տուն մահմետական բնակիչ:*

*Քեսուն կը գտնուէր Միջին Եփրատի մեծ ոլեգին հիւսիս-արեւմտեան կողմը, անոր եւ Ամանոս ու Տաւրոս լեռներուն մէջտեղ տարածուող փոքրիկ այլ արգաւանդ երկիրին մէջ որ դասական շրջաններուն ԿՈՄՄԱԳԻՆԷ անունը կը կրէր: Հոն, Կոմմագինէի մէջ Մարաշի եւ Սամուսատի գրեթէ ճիշդ մէջտեղը՝ իւրաքանչիւրէն 75 մղոն հեռու եւ ԳԸԶԸԼՏԱՇ լեռնաշղթային հիւսիսային զառիթափին վրայ մեծ գիւղ մըն է ՔԵՍՈՒՆ որուն առջեւ կը տարածուի բաւական ընդարձակ դաշտ մը, որու մէջէն՝ հիւսիս-արեւմուտքէն դէպի հարաւ-արեւելք ուղղութեամբ կը հոսի Եփրատի մէկ կարեւոր օժանդա-*

կը, որ հիմա ԿԷՕՔՍՈՒ կը կոչուի: Հին անունով Շօշէ: Այս գետի Եփրատի միացած տեղէն քիչ մը վեր հին ատեն, կը գտնուէր քարաշէն մեծ կամուրջ մը, որուն վրայէն կ՚անցնէր Հռոմէական զինուորական գլխաւոր պողոտայ մը դէպի Սամոսատ:

Քեսուն սքանչելի լեռնադաշտի մը վրայ կառուցուած հինալի դիրք մը ունի: Դաշտը քսան ժամուան երկարութիւն ունի արեւմուտքէն արեւելք, իսկ լայնութիւնը երկու ժամուան ճամբայ է: Թէ հիւսիսային եւ թէ հարաւային կողմերը լեռնային եւ անտառապատ են (Յակոբ Եփրեմեանի ՏԵՂ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՅՆԹԷՊԻ ՀԱՅՈՑ, Ա. հտ., էջ 82):

Քեսունի դաշտը կ՚ոռոգուի Քեսուն գետին առատահոս ջուրերով եւ հողին եւ կլիմային նպաստաւորութեանը շնորհիւ տարին երկու անգամ բերք կը քաղուի: Ամառ եղանակին արմտիք, իսկ աշնան բամպակ, բրինձ, շուշմայ եւ խաշխաշ կը մշակուին այս հողերուն վրայ:

Քեսուն, Հայոց տեղահանութենէն առաջ արդէն գիւղի վերածուած, բոլորովին քրտաբնակ էր թէեւ անկէ շուրջ 120—140 տարի առաջ բնակութեան կարեւոր մէկ մասը կը բաղկանար հայերէն որոնք երկրագործութեամբ կը զբաղէին: Սակայն լեռնաբնակներու յարձակման մը ատեն ասոնք բնաջինջ եղած են եւ սակաւաթիւ վերապրողները մերկ ու բոպիկ փախած են Պեհեսնի, որ Քեսունէն 4 ժամ հեռու կը գտնուի դէպի հիւսիս (Եղիա Ս. Քասունի, ԱԿՕՍ, ԻԹ., էջ 101):

Քեսուն մայրաքաղաքն էր Գող Վասիլի (1082—1112 Հոկտ. 12) որ խաչակիրներու հետ սերտ յարաբերութիւններ ունեցած է: Ազնիւ ու ուղղամիտ մարդ մը եղած է, վեհանձն եւ ասպետական, — բարեպաշտ քրիստոնեայ մը, միանգամայն քաջ — յաջող պատերազմիկ եւ կարող վարչագէտ:

Անոր իշխանութիւնը իր մէջ կը պարփակէր, Քեսունէն զատ, Պեհեսնի, Մարաշ, Ռապան, Փարզման, Հռոմկլայ, Հիւսնի Մանսուր գաւառները (տես նոյն):

Հոն էր Կարմիր վանք, ուր թաղուեցաւ Գրիգոր Վկայասէր[1]:

Գող Վասիլի իշխանութեան ատեն Քեսուն փառաւոր քաղաք մըն էր, պարսպապատ եւ աշտարակաւոր, ամրաշէն դռներով (Բարհեբրէոս, Chronography, էջ 125—128—130):

Իսկ Գրիգոր Երէց Գող Վասիլի համար կ՚ըսէ թէ չինեց «զբարձրայարկ ապաստանսն.... եւ զայլ չէնսն բարձրագոյն»:

Քեսուն կը կոչուէր նաեւ «ԵՐԿԻՐ ԿԵՍՈՒՆԻ» իսկ քաղաքին պատմական զլեակին անունն էր ՀԻՍՆԻ կամ ՀԻՒՍՆԻԻ (գեղեցիկ-վայելուչ):

ԺԱ. դարուն վերջերը Քեսուն բնակավայրն էր Գող Վասիլ իշխանին որուն քով հաւաքուեցան Բագրատունի եւ Արծրունի թագաւորներու բանակին մնացորդները, Պահլաւունի իշխաններ եւ իշխանազուններ:

---

(1) Գող Վասիլի իշխանութեան վրայ խնամեալ ուսումնասիրութիւն մը ունի Վեր. Եղիա Ս. Քասունի (տես Ակօս, ԻԹ. եւ Լ., Զ. տարի, թիւ 1):

Քեսուն ամրոցին մէջ շինած էր Վասիլ, իր ապարանքը բարձրայարկ եւ մեծաշէն դուռներով:

Իր իշխանութեան տակ էին Ռապան, Բերտրուս, Պեհեսնի, Փարզման, Մասր Հարթան, եւայլն: 1112-ին Վասիլ մեռաւ եւ իրեն յաջորդեց Վասիլ Կամսարական մականուանեալն «Տղայ»: Քեսունի իշխաններուն նիզակակից կամ թերեւս ճորտ, Կարկառի, Արեւընթունի, Ծովք տղեկին, Պիրի իշխանները:

1118-ին Եդեսիոյ եւ Թլպաշարի Լատին կոմսը, Ճոսլին, հազիւ 20 տարի վերջը Եդեսիան Հայերէն դաւով խլելէն ետք, գրաւեց նաեւ Քեսունի հողերը:

Սեր Պաղտին իբր ճորտ Ճոսլինի կ'իշխէր Մարաշի եւ Քեսունի:

Ետքը առին Պեհեսնին, Ռապանը եւ Մարաշը, Մալաթիայէն մինչեւ Անտիոք գրաւեցին:

1140-ին Պաղտին հեռացաւ Քեսունէն հեծելազօրքին հետ: Իսկ բնակիչներուն մեծ մասը գնաց Պեհեսնի, ոմանք Ռապան, եւ մաս մը Հռոմկլայ: Քեսուն զրեթէ պարպուեցաւ: Հոն մնացին սակաւաթիւ ազատներ եւ քաղաքին դուքսը Վահրամ:

Ասոնք երբ լսեցին Խարբերդի տիրոջ Գարա Ասլանի Ռապանի վրայ գալը փախան, եւ 30 Թուրքեր կրցան կողոպտել եւ կրակի տալ այս ամայացած ականաւոր քաղաքը:

1143-ին Եդեսիան ալ գրաւեցին իսլամները: 1145-ին Ճոսլին վերագրաւեց քաղաքը Պաղտինի հետ, բայց Նուրետտին, փութաց Եդեսիա զոր գրաւեց բուռն յարձակմամբ: Պատերազմին մէջ մեռան Պաղտին եւ Ճոսլին: Հազիւ կրցաւ ապաստանիլ Թլպաշար:

Մազուտ Իկոնիոյ Սուլթանը պաշարեց Թլպաշարը 1145-ին բայց չկըրցաւ գրաւել: Կարկառի Հայ իշխանները՝ Վասիլ եւ Շահան, պաշարուողներուն պարէն տանելու ատեն ինկան Գարա-Ասլան Ֆախրետտինի ձեռքը:

Մազուտ 1150-ին դարձեալ յարձակեցաւ Եփրատացւոց վրայ: Քեսուն յանձնուեցաւ, ութ օրուան մէջ գրաւուեցաւ անմատոյց եւ անառիկ Պեհեսնի եւ չորս օր վերջը Ռապանը:

Յաջորդ տարին յանձնուեցաւ նաեւ Թլպաշար եւ մնաց միայն Հռոմկլայ, ուր ապաստան գտած էին Հայ կաթողիկոսները:

Քեսունի բնակիչները մեծ մասամբ ապաստանած են Պեսնիլի հիմակուան ամրաշէն տեղը, ժայռուտ լեռներու եւ ապառաժուտ ձորերու միջեւ:

Քեսուն քաղաքը եւ իր պատմական կարմիր վանքը, որ հռչակաւոր էր ԺԱ. եւ ԺԲ. դարերուն մէջ: Հոն ուսում առած է Գրիգորիս եւ Ներսէս Շնորհալի եղբայրները՝ Ստեփանոս Մանուկ եպիսկոպոսին ձեռքին տակ: Շնորհալի իր այս վանքը հիւրընկալուած ըլլալը կը գրէ ինքն իր տաղաչափեալ վիպասանութեան մէջ:

«Ի միջերկրեայս անդուստ փոխեալ,
Որ Եփրատաց մերձ տոկացեալ
Քաղաք Քեսունն իմն անուանեալ,
Յոր հուպ է վանք Կարմիր կոչեալ»
(*Աւետիս Թէքէեան*, *ՍԻՈՆ*, 1933, *էջ* 287—288)։

*Այսպէս, բուն իսկ Քեսունի մէջ կան երկու լքուած եկեղեցիներ՝ աւերակ վիճակի մէջ, մէկուն անունն է ՎԱՍԵԼԼՈՆ*[1]*, իսկ միւսին, որ ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ*[2] *անունը կը կրէ, լոկ քարայր մը մնացած է*[3]*։ Ու դարձեալ գիւղէն դէպի հարաւ, երկու ժամ հեռուն, լերան մէջ, կը գտնուի Սր. Յակոբ անուն եկեղեցիի մը աւերակը, որուն գմբէթն ու կամարները դեռ 30 տարի առաջ գոյութիւն ունէին, բայց ներկայ վիճակը չեմ գիտեր (Յակոբ Եփրեմեանի տեղեկութիւն)։*

1136*–ին Դանիշմենտ Մահմուտ այրեց Կարմիր վանքը, որ պատմական կարեւոր անցեալ ունեցող հռչակաւոր հայ վանքերէն եւ գրչագրական դպրոցի վայրերէն մին է, ինչ որ կ՚ապացուցուի Պեհեսնիի հայ եկեղեցիին դարակներուն եւ եկեղեցականաց մատենադարաններուն մէջ հազարաւոր օրինակ հին ձեռագիրներու գոյութեամբ, որոնք փճացան մեծ եղեռնին քաղաքին* 500 *ընտանիք հայ բնակչութեան հետ, որոնց մօտաւորապէս* 350 *ընտանիքը լուսաւորչական Հայեր էին (Աւետիս Թէքէեան, նոյն)։*

*Ըստ հնամենի սովորութեան, Պեհեսնիէն Հռոմկլայ, Ս. Ներսէսի վանքը ուխտի գացող մեր հայրենակիցները պարտաւոր էին իրենց ճամբուն վրայ իջեւանիլ Քեսունի Կարմիր Վանքի աւերակներուն մէջ, հոն ուխտ կատարելու, մատաղ կտրելու եւ պատարագ մատուցանել տալու համար (Նոյն)։*

*Խաչատուր Վրդ. Տէր Ղազարեանի տեղեկագրին մէջ Պեհեսնիի Հայոց մասին սա համառօտ տեղեկութիւնները կան.—*

*ՊԵՀԵՍՆԻ.— Գաւառակ է եւ ենթակայ Մալաթիոյ գաւառի կառավարչութեան։ Հոս կան* 240 *տուներ, որոնք ունին Ս. Փրկիչ անուն եկեղեցի մը, որ ունի Թրքական* 1266 *թուակիր հրովարտակ մը եւ մէկ նպաստընկալ վարժարան, հիմնուած նոյն եկեղեցւոյ թուականին, նաեւ* 2 *քահանայ,* 2 *ուսուցիչ եւ* 120 *ուսանող։*

*Պեհեսնիի չուրջ կը գտնուի Պէլվէրէն*[4] *անուն գիւղ մը, ուր կան* 10

---

(1) *Սրուանձտեանց ՎԱՍԻԼՈՍ-ը եկեղեցի է չ՚ըսեր, այլ կ՚ըսէ թէ ՔԵՍՈՒՆ կամ ՔԻՍՈՆ գետի առջեւ այս անունով քարակոյտ մը կայ, որ Գող Վասիլի ապարանքն է՝ կ՚ըսեն (Թորոս Աղբար, էջ* 323*)։*

(2) *Կարմիր Վանքը ՎԱՍԻԼԼՈՍէն կէս ժամ հեռու էր (Թորոս Աղբար, էջ* 323*)։*

(3) *Քարայրը կ՚անջատէ Սրուանձտեանց եւ զայն կը ներկայացնէ Շնորհալիին առանձին աղօթատեղին (Թորոս Աղբար, էջ* 323*)։*

(4) *Գերպ. Աւեքսանդրեան Բէլ-Էրէն կամ Պէլէրէ կ՚ուղղագրէ (Պատմութիւն Սեբաստիոյ, էջ* 412*)։ Մարաշէն* 20 *ժամ հեռու է գիւղը։ Ունի* 25 *տուն Թուրք եւ* 5 *տուն Հայ (Նոյն)։*

Հայեր, ունին մէկ վարժարան՝ հիմնուած 1880-ին, որ 1895-էն ի վեր փակ կը մնայ. արտօնագիր չունի: Պեհեսնիի չուրջը կայ Խոչկաշի անուն գիւղ մը, ուր կը բնակին այժմ 6 տուն Հայեր, որոնք եկեղեցի, վարժարան եւ այլն չունին:

Պեհեսնիի շրջակայքը կային նաեւ Սուրփագ[1], Քեսուն[2], Թուժ, Շամպայաա անուն չորս գիւղորայք, որոնց հայ բնակիչները 1895-էն ետք հետըզհետէ ցրուելով՝ այդ գիւղերը Թափուր մնացած են: Ասոնցմէ Քեսունի մէջ կան Կարմիր եւ Ս. Յակոբ անուն երկու կիսաւեր եւ հնադարեան վանքեր: Պեհեսնիի մէջ կան 45 տուն կաթոլիկ Հայեր, որոնք ունին մէկ եկեղեցի[3], մէկ վարժարան, մէկ վարդապետ, մէկ ուսուցիչ եւ 25 ուսանող: Կան նաեւ 7 տուներէ բաղկացեալ հայ բողոքականներ, որ ունին մէկ ժողովարան եւ մէկ փայտեայ վարժարան:

Պեհեսնէի մէջ կաթոլիկութիւնն ու բողոքականութիւնը մուտ գտած են 1875-էն ի վեր:

Դ.

# ՀԻՍՆԻ-ՄԱՆՍՈՒՐ ԿԱՄ ԱՏԻԵԱՄԱՆ

Այս գաւառը, որ դարձեալ Եփրատացւոց մէջ է, կեդրոն ունի Հիսնի-Մանսուր քաղաքը, որ Մալաթիայէ Կարկեմիշ երկարող, հին հռոմէական զինուորական ու կարաւանային ճամբաներուն վրայ, հանգոյց քաղաք մըն էր (Ծոփեցի, ՈՍԿԵԳԵՏԱԿ, Գ. հտ., էջ 439):

Հիսնի-Մանսուրը, զոր առհասարակ կը կոչեն Ադըեաման, իր շրջակայքով ունէր 10.000 բնակիչ, մեծ մասը ՀԱՅԿԱԿԱՆ ծագումով (տես **Encyclopédie de l'Islam**, հտ. Բ., էջ 348)[4]:

Այս քաղաքը հիներու ծանօթ էր Փիրրհէ (Pirrhé) անունով: G. le Strange (**The Land of the Eastern** Cambridge, **Caliphate,** 1905, p. 125) որ յատկապէս ուսումնասիրած է խալիֆայական երկիրները, կու տայ հետաքրքրական տեղեկութիւններ թէ՛ Հիսնի-Մանսուրի եւ թէ Պեհեսնիի մասին:

---

(1) Սոֆրագ ըստ Գերպ. Աղեքսանդրեանի:

(2) Երբեմն 5-6 տուն Թրքախօս Հայեր կային (Պէննէեան):

(3) Եկեղեցին կառուցուած էր «Յանուն Աւետման Ս. Կուսին»: Հայ կաթողիկները քաղաքին Ամառանոցին մէջ եւս ունէին ուխտատեղի մը, նուիրուած Պետրոս եւ Պօղոս Առաքեալներուն:

(4) Այս կարծիքը ունի նաեւ Սարգիս Տեմիրճեան, որ Հիսնի-Մանսուրի թուրքերը Հայերէ սերած կը կարծէ (տես Ադըեամանի Պատմութիւնը, Պայքար օրաթերթ, 30 Մարտ, 1950): Քաղաքին ամենամեծ թուրք գերդաստանը, որ Մոլլազատէ կը կոչուէր, Եաղուպեան մեծ գերդաստանէն բնիկ իսլամացող հայու մը սերունդն էր (Պայքար, 31 Օգոստոս, 1937):

*Ան կ'ըսէ թէ* «Հիւսնի-Մանսուր եւ Պեհեսնի — որ տակաւին գոյութիւն ունին — բերդերուն իւրաքանչիւրը կանգնած է իր սեպհական գետին վրան: Երկուքն ալ հարկատու են Եփրատի աջ ափին, եւ յաջորդաբար անոր կը միանան Սամոսատէն վար: Հիւսնի-Մանսուր, արդի ժամանակներուն աւելի յաճախ Ատիեաման կոչուած, Բիւզանդացիներու կողմէն Փիրրիէ կը կոչուէր: Իր (վերջին) անունը զինքը շինողէն առաւ՝ Քախս ցեղէն՝ Մանսուրէն, որ վերջին Ումմեան Մրուան Բ. խալիփայի իշխանութեան ժամանակ այս շրջանին հրամանատարն էր, եւ որ սպաննուեցաւ 141-ին (Հիճրէթի=758 Քր.ի): Հիւսնի-Մանսուր վերաշինուեցաւ Հարուն էլ Րաշիտի կողմէ իր հօր խալիփա Մահմուտի օրով, որ նկարագրուած է Հաւքալի կողմէն իբրեւ պզտիկ քաղաք մը ուրքաթօրեայ մզկիթով մը:

Իր արտերը լաւ ոռոգուած էին, բայց իպն Հաւքալի կը գրէ որ այս վայրին ճակատագիրը, միւս սահմանային բերդերուն նման, յարձակման ենթակայ էր ու պիտի կործանէր, Բիւզանդացիներուն եւ Միւսլիմաններուն կողմէն փոխն ի փոխ: Եագուպ կ'աւելցնէ թէ քաղաքը պարիսպ մը ունէր երեք դուռներով եւ ջուրի ամբարտակ մը (Ditch) դուրսէն: Քաղաքին կեդրոնը կը կանգնէր բերդը՝ կրկնակ պարիսպներով շրջապատուած: Ապ-ուլ Ֆետա կը գրէ թէ 8.րդ (14-րդ) դարուն Հիւսնի-Մանսուր աւերակ էր, թէեւ իր շուրջի դաշտերը տակաւին կը մշակուէին»:

*Սարգիս Բախտիկեան (այժմ Ներսէս աբեղայ) քաղաքին ծանօթ հնագոյն յորջորջումը Փիրրհէն կը համարէ եւ անունի ծագումը հաւանական կը գտնէ որ կապ ունենայ Մար լեզուին մեծ հայր, հզօր, Աստուած նշանակող Փիրէ-Փեր բառի հետ (տես ՈՍԿԵԳԵՏԱԿ, Գ. հտ., էջ 439—440):*

*Ապացուցանելու համար այս վարկածը մէջբերուած պատճառաբանութիւնները հեռու են վճռական ըլլալէ: Նոյնպէս կասկածելի են Սարգիս Տեմիրճեանի «ԱՏԻԵԱՄԱՆԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ» գործին մէջ քաղաքին անունը լուսաբանելու համար մէջբերուած տեսութիւնները. ուստի աւելորդ կը համարիմ անոնցմով զբաղիլ:*

*Հիւսնի-Մանսուր անունը արաբական շրջանին իր հիմնադիրին՝ աւելի ճիշդը, վերանորոգողին անունով կազմուած է եւ կը ծագի Իումմեան վերջին խալիֆային Մրուան Բ.ի ատեն 758-ին Աբբասեան էլ-Մանսուրի հրամանով սպաննուած Մանսուր Պին Ճուանա* (Mansour Bin Dja'wana) *անունէն* **(Encyclopétie de l'Islam,** *նոյն*):

*Տեղական աւանդութիւնն ալ կը հաստատէ թէ Ը. դարու կէսին Մրուան Բ.ի ատեն Մանսուր Պին Ճուանա էմիրը շինած է նոր քաղաք կամ բերդաքաղաքը, որ իր անունով կոչուած է Հոսն Մանսուր (բերդ Մանսուրի):*

*Յետոյ, Հարուն-էլ-Րաշիտ ամրացուց զղեակը եւ հոն դրաւ պահակազունդ մը* **(Encyclopédie de l'Islam,** *նոյն*):

*Այսպէս Հիւսնի-Մանսուր կամ Ատըեաման եղաւ ժառանգորդը* Pœre *կամ Պերա կամ Բերրա հին քաղաքին: Արեւմտեան կողմը ժամ մը հեռու հին*

քաղաքին աւերակները կը մնային մինչեւ վերջերը ջուրի ճամբաներով եւ ժայռափոր գերեզմաններով (նոյն)։

Ծանօթ հին անունը պաշտօնական արձանագրութեանց մէջ կը մնար եւ կը կոչուէր գաւառը ԲԻՒՐԷ ԳԱԶԱՍԸ, բայց ժողովուրդին մէջ գործածական չէ այդ վաղեմի անունը (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 406—8)։

Գերապ. Ալեքսանդրեան (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, նոյն) կ՚ըսէ թէ հին ատեն եպիսկոպոսական քաղաք էր եւ կանուանուէր Պերա կամ Բերրա, Եփրատացւոց Հերապոլիսի (Մեմպիճ) մետրոպոլտութեան ներքեւ։ ԺԱ. եւ ԺԲ. դարերու հայ հեղինակները կ՚անուանէին ազաւաղութեամբ Հասան Մաուր, ասկէն ըսուած է նաեւ իբր թէ հեղնութեամբ Ատիեաման (նոյն)։

Բախտիկեանի համոզումով Ատիեաման անունը կցորդ անուն մըն է, յառաջ եկած իր բնակչութեան արթնութենէն, աչքբացութենէն (ՈՍԿԵԳԵՏԱԿ, Գ., էջ 442)։

Թիւրքերը այս քաղաքը կը կոչեն Հասն Մանսր (Հասա Մաուր)։

ԺԲ. դարուն հազուագիւտ կերպով կը յիշուի այս քաղաքը, երբ Օրթոքեանց սեպհականութիւն եղած էր (**Encyclopédie de l'Islam,** Բ. հտ., էջ 348)։

Հ. Ղուկաս Վրդ. Ինճիճեան (ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ, Ա., էջ 324) ասոնց վարանումի կ՚ըսէ թէ «Հըսնի Մանսուր թարգմանի «բերդ Մանսուրայ», զի Հըսն առ Արաբացիս բերդ նշանակէ. իսկ ՄԱՆՍՈՒՐ ըստ Քեաթիպ Չէլէպիին է անուն վերակացուին շինութեան բերդին, բայց ի ռամկաց աղաւաղեալ Հասան Մանսուր ասի, որ Գեղեցիկ Մանսուր թարգմանի։ Քաղաք սորա կառուցեալ կայ առ Եփրատ յարեւմտից նորա, մերձ ի ՍԱՄՍԱԴ ի հիւսիսակողմն նորա եւ ի հարաւոյ արեւմտից Մալաթիոյ»։

ԺԱ. եւ ԺԲ. դարերուն Եդեսիոյ կոմսերը, Քեսունի իշխանները եւ ապա կրկին Եդեսիացիք առին քաղաքը եւ գաւառը (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, նոյն)։

Ռուբինեանց շրջանին յաճախ յիշուած է այս քաղաքը։ Ասոր մօտը կը կանգնէր ըստ Ալիշանի Օշին բերդը, որ հիմա կը կոչուի Աւշին։

ԺԹ. դարուն առաջին կէսին, 1836—1838-ին ատեն՝ Մոլթքէ հոս ալ այցելած է։ Իր նամակներուն մէջ կը գրէ թէ Ատիեաման ընդարձակ, բայց չափազանց աւերուած եւ կործանուած միջնաբերդով քաղաք մըն էր։ Մոլթքէի համաձայն «այս փոքրիկ քաղաքը Տաւրոսի հարաւային կողերուն ստորոտը դաշտին մէջ հաստատուած է գետակի մը հունին մօտ, շրջապատուած այգիներով եւ պտղատու պարտէզներով։ Ազուոր տեսք ունի։ Միջնաբերդի մը աւերակները եւ բազմաթիւ մինարէներ ենթադրել կու տան մեծ եւ բազմամարդ քաղաք մը, բայց ներսը կը տեսնես խլեակներու կոյտեր։ Երբ քառասմբակ ուղղուեցանք միւսեյլիմին բակը, չկրցայ խնդուքս զսպել չքախումբին վիճակը տեսնելով։ Հետեւորդ առեր էի թիավարներ եւ ապա չորս ծովային աստուածներ, որոնք Նեպտունի բոլոր ստորոգելիներով օժտուած էին,

Թեւերը ուսերնուն վրայ եւ ոտքերը կախուած ձիերուն երկու կողմերը: Քաղաքին հիւսիսային կողմէն բարձրացանք Տաւրոսի ամենէն սեպ կատարը. արեւուն խիտ կիզիչ ճառագայթները սլաք կ'արձակէին եւ մերկ ժայռերէն հուր կը ժայթքէր, որպէս հնոցներէ: Կեանքիս մէջ կատարած ամենէն ցաւագին չուն էր այս:

Վերջապէս նշմարեցինք խորութիւն մը մեր ոտքերուն տակ՝ հմայիչ հովիտ մը. կանանչ դաշտը ծածկուած էր արտերով եւ տուներով, կտրուած չորս վճիտ գետակներու ջուրերէն, շրջապատուած լեռներով, որ կը կորսուէին երկինքի կապոյտին մէջ: Մեր յոգնաբեկ գրաստներուն վերջին մէկ ճիգովը, տասնութը ժամուան արշաւանքէ մը ետք կը հասնինք գիւղ մը, որ ծածկուած է աչքէս խպառ հսկայական կաղամախիներուն տակ: Բայց ի՜նչ յուսախաբութիւն եւ ի՜նչ սրտնեղութեան ենթարկուեցանք, երբ բոլոր տուները պարապ եւ լքուած գտանք:

Քիւրտերը յաճախ կը հեռանան իրենց գիւղերէն ամառը եւ կիզիչ տաքերը կ'անցնեն իրենց տաւարին հետ, լերան զովութեան մէջ: Քանի ձիւնը կը հալի եւ կանանչ մարգեր կը բացուին, աւելի վեր կ'ելլեն, եւ ստիպուեցանք նոր վերելքներ ընել, հեռուէն ծուխի բարձրանալը տեսնել կարծելով: Մացառներէն դուրս կ'ելլենք եւ յանկարծ ինքզինքնիս կը գտնենք քիւրտ ճամբարին մէջ: Սեւ վրանները տնկուած են խոշոր շրջանակի ձեւով. կիները հօտերը խնամելով կը զբաղին, այր մարդիկ պառկած են գետինը գորգերու վրայ եւ կը ծխեն, մանուկներու խումբեր կը խաղան չուրջ բոլորը:

Մեր երեւիլը ընդհանուր յուզում պատճառեց, խորհելով այն վերաբերումին, զոր Թուրքերը տակնին ցոյց տուած էին այս խեղճերուն հանդէպ, անոնց գիւղերը այրելով, հունձքերը կոփկոտելով, բանի վերցնելով անոնց տղաքը զինուորական ծառայութեան համար. տանց կասկածի չէ որ կը դիտէի այս տեսարանը, իմ հետեւորդներուս խումբը չատ ահարկու չէր. չքախումբս տկար էր, բայց բոլոր մտահոգութիւններս ցրուեցան, տեսնելով ցոյց տրուած ընդունելութիւնը:

Ճամբարին հրամանատարը փութաց զիս ձիէն վար իջեցնելու. զիս իր սեպհական վրանը առաջնորդեց, նստեցայ յաւագոյն բարձերու վրայ, եւ իր կինը — ցեղախումբին էն տարիքոտ, բայց ոչ էն գեղեցիկ տիկինը — լաւ արեւելեան հիւրասիրութեան աւանդութիւններու երբեք խօսք մտիկ ընել չուզեց եւ չհրաժարեցաւ ոտքերս լուալէ: Ծխախոտը պակաս չէր, բայց սուրճը այս ճամբարին մէջէն բացակայ պերճանք մըն էր, փոխարէնը՝ խակոյն մատաղ այծ մը մորթեցին ընթրիքի համար: Զանազան ընտանիքներու ծերունիները մէջտեղ ելան եւ գետնին վրայ կծկուեցան, շնորհալիօրէն հրաւէր ստանալէ ետք եւ յաջորդաբար ինծի նուիրեցին իրենց ծխափողները:

Քիւրտ կիները քօղ չեն կրեր, բայց գեղեցկագոյնները չեն տեսնուիր: Քիթերնին ծակուած են օղով մը եւ ինչ որ ճակատը ունի՝ որպէս ստակ՝ կանայք կը կրեն իրենց մազերուն մէջ: Հիւրընկալիս աղջկան նուիրեցի տալրակ

մը դրամ, մէկնոց, երկուքնոց, երեքնոց եւ հինգնոց դահեկաններ, զորս կա-րելի էր հայթայթել մի քանի փլորինով: Ասոր վրայ աղջիկը նկատուեցաւ ցեղախումբի ամենէն հարուստ ժառանգուհին, եւ մօրն ալ մեծ ուրախութիւն պատճառեցի, իրեն թողլով սուրճի պաշարս»:

Երկիրին դիրքը լաւ է եւ բարեբեր է, արեւելքէն եւ հարաւէն շրջապա-տուած է Եփրատով:

Կ. Պոլսոյ ԱՐԵՒԵԼՔ օրագիրի մէջ (Թ. 1481, 9 Դեկտեմբեր, 1888) յօ-դուածագիր մը չեմ գիտեր ինչ բանի վրայ հիմնուելով կը գրէ թէ «Հիւսնի-Մանսուր Սամոսատի հիւսիսակողմը ՔԵՍՈՆէ (արդեօ՞ք Քեսուն) (երբեմն Գայլ Վահանի բնակավայրն, իսկ այժմ աւերակաց բեկորներ, վանքերու, մե-հեաններու հետքեր միայն վկայք են այդ քաղաքին անցեալ փառաց)(արե-ւելակողմը, իսկ Մալաթիոյ արեւմտեան հարաւակողմը գեղեցիկ դաշտավայ-րի մը վրայ անուշ եւ զով ջուրերով, գեղեցիկ առողջարար օդով եւ արդիւնա-ւոր հողով օժտեալ գիւղաքաղաք մ'է, այգիներով եւ պարտէզներով շրջապա-տեալ»: Կարելի է քաղաքին դիրքին եւ նկարագիրին վրայ առարկութիւն մը չունենալ: Բայց Սամուսատի հիւսիսակողմ Քեսունէ բնակող Գայլ Վահանին պատմականութիւնը տարակուսելի է դժբախտաբար:

Թերեւս պատմական ոեւէ հիմ չունին այն տողերը, որոնք գաւառին պատմութեան վրայ բան մը չեն աւելցներ: Արեւմտեան տարրական կարեւոր բնակավայր մըն է: Քաղաքին մեծագոյն մզկիթը Ասորւոց Մայր-եկեղեցին էր, զոր Թուրքերը գրաւած են:

Դեկտեմբեր 1893-ին պատահած մեծ երկրաշարժէ մը մեծապէս վնա-սուած է քաղաքը: Քաղաքին ինը մզկիթներէն ութին մինարէները փլած են ամբողջ չէնքերով միասին: Զանազան տեղերէ վարպետ արհեստաւորներ կը փութան վերաշինելու համար քաղաքը: Մեծ մզկիթին մէջ աշխատող երկու հայ վարպետի կու տան մէկ մէկ Թուրք օգնական: Երբ մէջի չորս սիւներուն հիմը կը փորէին, գտան կարեւոր քանակով ոսկեդրամներ, որոնք Է. դարու կը պատկանէին: Ուրեմն տարական այս եկեղեցին այդ դարուն շինուած էր: Հոն գտնուեցան նաեւ Ասորերէն արձանագրութիւններ, զորս Թուրքերը փճա-ցուցին, քրիստոնէական ամէն հետք ջնջելու համար (ՊԱՅՔԱՐ, 31 Օգոստոս, 1937):

Հիւսնի-Մանսուրի գաւառը ունէր երկու գաւառակներ.

1. Սամուսատ կամ Սամսատ

2. Պէօքէթ օղլու:

Տ. Կարապետ քհն. Պէննէեան եւ Գերպ. Անդրէաս Վրդ. Ալեքսանդրեան հաւաքարար յիշատակած են Հիւսնի-Մանսուր գաւառի գիւղերէն հետեւեալ-ները իրենց հայաբնակութեամբ.—

Այսպէս անոնց ծանօթ են.

1. Վարդանիա 15 տուն

2. Խրափի 3-4 տուն

3· Կէվրիկ 5 տուն, ըստ Ալեքսանդրեանի 32 տուն

4· Շնապի 4 տուն

5· Սամսատի 20 տուն, ըստ Ալեքսանդրեանի 10 տուն

6· Քիլիսանի 6 տուն

7· Տարտղան 5 տուն

8· Կոզանի 3 տուն

9· Մարմարա 4 տուն

10· Կանթարա 10 տուն, ըստ Ալեքսանդրեանի 5 տուն

11· Կէօլ Բունար 4 տուն

*Իսկ Գերպ· Ալեքսանդրեան կը յիշէ նաեւ՝*

12· Հայկ 2 տուն

13· Զուռնա–Զաւանա 2 տուն

14· Պըշրին 2 տուն

15· Թաւտիր 2 տուն

16· Ուրեմն 2 տուն

17· Զարկով 2 տուն

18· Իշըք 2 տուն

19· Թերբեթիլ 2 տուն

20· Պոզուկ 2 տուն

*Ասոնցմէ Վարդանա մէկ կամ կէս ժամ հեռու Հիսնի–Մանսուրէն լեռներու մէջ հայարնակ գիւղ մըն է:*

*Գիւղը իբր թէ իր անունը առած էր վերոյիշեալ Գայլ Վահանի նախարներէն Վարդանէն (տես* ԱՐԵՒԵԼՔ*, թ·* 1481, 9 *Դեկտեմբեր,* 1888):

1888–*ին* 40 *տուն Հայ կար, որոնք բոլորն ալ կաթոլիկ եղան:*

40 *տունը իջաւ* 22–*ի, յետոյ* 12–*ի եւ նոյնիսկ* 5–*ի, վասնզի բնակիչները Մալաթիա գաղթեցին:*

*Գերպ· Ալեքսանդրկան* (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ*, էջ* 407) *Վարդանան կը նոյնացնէ Կիլիկեան Հարթնին հետ, որ «կը թարգմանուի որմունք»:*

*Այս կողմերն էին, ըստ նոյն Գերապայծառին, Թուրեր եւ Ուրեմն (որ կը կարծուի ըլլալ Ուրիմա եպիսկոպոսանիստ քաղաքը):*

*Հիսնի Մանսուրի ենթակայ գաւառակին մէկը, այսօր անչքացած, Սամսատ կամ Շամշատ կամ Սեմսետն է, որուն կեդրոն քաղաքը Սամուսատ՝ երբեմն մեծահամբաւ Սամսատեան կամ Սամսասան է, որ կը գտնուէր Հիսնի–Մանսուրէն* 6—7 *ժամ հեռու: Երբեմն հռչակաւոր այս քաղաքն ծննդավայրն էր Պօղոս Սամոսատացիի:*

*Սամոսատ մայրաքաղաքն էր հին Կոմմագինէի թագաւորութեան եւ հոն կը նստէին Հռոմէն կարգուած թագաւորները, որոնք* 130 *տարի* (64 *Քր·է առաջ մինչեւ* 72 *յետ Քրիստոսի) իշխած են:*

*Սամոսատ շատ անգամ նուաճուած է Հայերէն: Հին քաղաքը շինուած*

է Քանտարա գետին եզերքը, ուր բազմաթիւ կռիւներ մղած են Հայերը եւ Բիւզանդացիք։

ԺԱ. դարուն Խաչակիրները տիրած են այս քաղաքին։ Յետոյ Բիւզանդացիք վերագրաւած են, մինչեւ որ Սելճուկ Թուրքերը տիրած եւ հուսկ ապա Օսմանցի Թուրքերը։

Սամոսատ եպիսկոպոսարան եղած է Դ. դարուն սկիզբը՝ Կերապոլսի մետրապոլտութեան ենթակայ։

Այս եպիսկոպոսներէն նշանաւոր հանդիսացած է Պեպերիոս, որ շատ կարեւոր գործեր կատարեց, Արիոսեաններու դէմ մաքառեցաւ, եւ Վաղէսէ հալածուեցաւ, սակայն անկէ ազատեցաւ եւ շարունակեց իր գործը եւ Արիոսեաններու ատելի եղաւ, ինչ որ պատճառ եղաւ իր մահուան։ Սամոսատի մօտերը կային քարայրուրներ, քարափոր եկեղեցիներ, տուներու եւ վանքերու աւերակներ, որոնց ամէնէն կարեւորը Թուրքերը կը կոչեն Իւչ Քիլիսէ։

Սամոսատ բիւզանդական շրջանին բանակատեղի էր, Եփրատի անցքը պաշտպանելու համար հաստատուած։

Սամոսատի գաւառին մէջ կային 400 տուն Քիւրտ եւ Թիւրքմէն, իսկ Հայերը շատ քիչ։

Սամոսատ հետզհետէ անշքանալով ինկաւ մինչեւ այն աստիճան որ վերջերը միւտիւր մը միայն կը նստէր հոն (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 408)։

Վանգի Սամոսատ դաշտի վերածուած էր, մերկացած իր անցեալ փառքերէն եւ շքեղութիւններէն որոնց վրայ Գէորգ Արքեպ. Ասլանեան հոն գտած է Սամոսատի հողերուն մէջ ճամբու մը եզրին մեծարժէք նշանաւոր սեւ կրանիթեայ արձանի մը միակտուր, միապաղաղ քանդակեալ կոթողը, որ այդպէս տապալած գետնի հողին վրայ պառկած է, հետաքրքրուող իսկ չկայ, մինչդեռ ան հնութեանց թանգարանի մը թանկարժէք հնութիւնը պիտի կազմէր (տես ԲԱԶՄԱՎԷՊ, 1936, էջ 39)։

Հիւսնի-Մանսուրի գաւառը մեծ մասամբ Քիւրտաբնակ է։ Ինճիճեան (էջ 324) կը գրէ որ Հիւսնի-Մանսուր գաւառին մէջ գտած է արքունի դիւանագիրն «զգիւղաքաղաքն Րիչվան քրտոց»։ Կեդրոնի շուրջը կը բնակի Խըտըրսոր աշիրէթը, Ալէվի կրօնքով, լեռնակողմերը Թերզ-Օղլու՝ Սիւննի, քովերը՝ Պէրէքէթ աշիրէթը՝ Սիւննի, նաեւ Սամոսատի աղաները։ Կան նաեւ Քեավի եւ Զրաւքէն աշիրէթները։ Քիւրտերէն ետք թիւի առաւելութիւն ունէին Հայերը ու Ասորիները, անցեալ դարուն սկիզբը (Ինճիճեան, ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ, էջ 324)։

Հ. Ղուկաս Վրդ. Ինճիճեան, անոնց լեզուին վրայ հետաքրքրական տեղեկութիւն մը ունի։ «Զարմանալի է՝ Հայք ի խօսելն զիւրեանց լեզու զհայոցն ի կեր առնուն զեղանակ»։

Հիւսնի-Մանսուրի հայոց վրայ Խաչատուր Վրդ. Տէր Ղազարեան իր 21

Մարտ 1902-ի տեղեկագրին մէջ նոյն թուականի Հայերու վիճակը ներկայացուցած է։

Ահա թէ ի՞նչ կ'ըսէ վարդապետը։

Ը. ՀԻՍՆԻ-ՄԱՆՍՈՒՐ.— Մալաթիոյ գաւառին մէկ գայմագամութիւնն է։ Հոս կան 350 տուներ որոնք ունին Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուն եկեղեցի մը՝ փլչելու վտանգին մօտեցած, երկսեռ վարժարան մը[1], 2 քահանաներ, 2 ուսուցիչ, 2 ուսուցչուհի, 120 աշակերտ եւ 100 աշակերտուհի։ Եկեղեցին 1871-ին այրած եւ նոյն թուին ստացուած կրկին հրամանագրով վերաշինուած է[2], բայց այս հրամանագիրն ալ կորսուած է 1895-ին։ Վարժարանը վերաբացուած է եկեղեցւոյ հիմնարկութենէն ի վեր եւ վերաշինուած է 1889-ին[3]. Հրովարտակ չունի։

Հիսնի-Մանսուրի մերձակայքը Կէվրուկ[4] անուն հայաբնակ գիւղ մը կան ,30 տունէ ,բաղկացեալ ,որոնց 10 տունը միայն Հայ են ,իսկ մնացեալները կաթոլիկ[5]։ Հիսնի-Մանսուրի շրջակայքը կան նաեւ Սամսատ, Գանթարու[6] եւ Կէվրուկ անուն 3 գիւղեր որոնց մէջ կան ընդամէնը 13 տուն Հայ կաթոլիկներ։ Վերոյիշեալ գիւղօրէից մէջ ոչ եկեղեցի կայ եւ ոչ ալ վարժարան։ Հիսնի-Մանսուրի մէջ կան 75 տուն Հայ կաթոլիկներ որոնք հոս հաստատուած են 1865-էն ի վեր. ունին մէկ եկեղեցի[7], մէկ վարժարան, մէկ վարժապետ, 2 ուսուցիչ եւ 50 ուսանող։

Կան նաեւ 90 տունէ բաղկացեալ Հայ-Բողոքականներ, որոնք գոյութիւն ունեցած են 1865-էն[8] ի վեր և ունին 1 ժողովարան, 1 վարժարան, 1

(1) Վարժարանին անունը ՌՈՒԲԻՆԵԱՆ նշանակած է Սրուանձտեանց (Թորոս Աղբար, էջ 326) եւ ինչպէս կը տեսնուի, այն ատեն 50 ուսանող ունէր դպրոցը։

(2) Ս. Աստուածածին եկեղեցին 1872-ին կառուցուած է Մալաթիոյ առաջնորդ Սրապիոն եպսկ.ի ջանքերով (տես «Արեւելք», 9 Մայիս. 1888, թ. 1481)։

(3) 1888-ին (տես «Արեւելք», նոյն) կ'ըսուի թէ գեղեցիկ վարժարան մը ունեցած էին երբեմն, բայց այդ թուականին չունէին, վաղուց քանդուած էր։ Ինչպէս կ'երեւի, 1889-ին վերաշինուած է։

(4) Ըստ Ալեքսանդրեանի Կէվրիկ որ 6–8 ժամ հեռու է Հիսնի-Մանսուրէն։

(5) Ըստ Ալեքսանդրեանի անոնց թիւը ետքը հասած էր 60–70-ի։ 1888-ին («Արեւելք, թ. 1481) կաթուղիկները կը ձեռնարկեն շինելու եկեղեցի մը այն գետին վրայ, ուր երբեմն Հիսնի-Մանսուրի Արամեան ընկերութիւնը իր աղքատութեան հակառակ երկու տարի նոյն գիւղին 40 տղաներուն կրթութեան համար դասատուք եւ դասատու տուած էր։ Քաղաքի Մեծ-Աղաները տապալած էին այս ընկերութիւնը եւ այդ պատճառաւ փակուած էր Կէվրուկի վարժարանը եւ աւերակ եղած։

Այս վարժարանին վրայ կաթուղիկ եկեղեցին 1886-ին բարձրացուած էր։ Մալաթիոյ առաջնորդ Իսահակ եպսկ. աշխատած է փրկել հողը, սակայն կաթուղիկներ յաջողած են շէնքը շինել։

(6) Գերպ. Ալեքսանդրեան կ'ըսէ թէ Գանթարա ատեն մը 25 տուն բնակիչ ունէր, բայց ետքերը միայն 8 տուն։

(7) Ս. Փրկիչ անունով։

(8) 1865 թուականը ճիշդ չի թուիր։ Աւելի կանուխ բողոքականութիւնը մտած է Ատիեաման (տես ԱԿՕՍ, ԺԴ. էջ 9

*պատուելի, 2 ուսուցիչ եւ 100 ուսանող։ Հիւսնի–Մանսուրի մէջ կան նաեւ* **45** *տուն Ասորիներ, որոնք ունին 1 եկեղեցի եւ երկու քահանայ միայն»։*

*1895—1896 Համիտեան ջարդերէն ետք Կ. Պոլսոյ Ազգ. Պատրիարքարանէն Հիւսնի–Մանսուր 50 ոսկի նպաստ մը ղրկուած է 6 Մայիս 1896–ին։*

*Ինչպէս կը տեսնուի Հիւսնի–Մանսուրի մէջ կաթոլիկ քարոզչութիւնը առաջ տարուած է բաւական Խորխոռունի եպիսկոպոսին եւ իր յաջորդին, ինչպէս նաեւ Զմմառեան միաբաններու ջանքերով։*

*Հիւսնի–Մանսուր եւ շրջակայ գիւղերուն մէջ գտնուող սակաւաթիւ Հայերը մեծ մասամբ կաթոլիկ էին եւ շուրջ 80 տունի կը հասնէին (****ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ****, էջ 407)։*

*
**

*Հիւսնի–Մանսուր գաւառին վրայ նաեւ խօսած է Պէննէեան քհն. իր յատուկ մեթոտով, ուր գաւառութեան խնամքը նուազ է, սակայն ունի առանձնայատուկ տեղեկութիւններ, որոնք քաղուած են հաւանօրէն տեղւոյն վրայ, եւ ականատեսի մը տպաւորութիւնները ըլլալու առաւելութիւնը ունին։*

*Հետեւաբար նոյնութեամբ պիտի ներկայացնեմ զանոնք՝ անոնց կցելով այլուստ քաղուած տեղեկութիւններ, իբր լրացուցիչներ։ Այսպէս, հոգելոյս քահանան կ'ըսէ թէ՝*

*Այսպէս, հոգելոյս քահանան կ'ըսէ.*

«Հիւսնի–Մանսուր (Հասանմսուր), որ կեդրոնն է համանուն գաւառակին, շինուած է Մալաթիոյ հարաւակողմը 18 ժամ[1] եւ Պեհեսնիի արեւելեան կողմը 8 ժամ հեռաւորութեամբ Տաւրոսի շղթաներէն Գարատաղի առջեւը գեղեցիկ ու լայնածաւալ դաշտի վրայ։

Աս քաղաքը կը բաժնուի գլխաւոր երկու թաղերու Հայոց եւ Տաճկաց. իսկ գաւառակը 5 գիւղախումբերու։ Քաղաքը կը բաղկանայ 1500 տուն Թուրքերէ եւ 600 տուն Հայերէ[2]։

---

*նար մը (Տիւնմըր) կը տեղեկագրէ թէ Ատիեաման մէջ կայ երկու հազար Հայութիւն, բայց քիչեր միայն կ'ուզէին Ս. Գիրք կարդալ (M. H., 1852, էջ 359)։ Նոյն տարին ուրիշ տեղեկագրութեան մը համաձայն 20 - 30 հոգիներ կը յիշուին, որոնք «աւետարանական ճշմարտութեան* (?) *... »*

*Այս որոշումներէն մէկը քահանայ մըն է, որ կարգալուծ կ'ըլլայ (M. H., 1853, էջ 45 - 6)։*

*Այս բոլորը կու գան հաստատելու թէ 1865-էն կանուխ բողոքականութիւնը մտած է Ատիեաման։*

(*1*) *Գերպ. Ալեքսանդրեան (Պատմութիւն Սեբաստիոյ, էջ 406) այս հեռաւորութիւնը կը նշանակէ երեք օր։*

(2) *«Պատմութիւն Սեբաստիոյ, (էջ 406) բնակչութիւնը կը հաշուէր 2000 տուն իսլամ եւ 600 տուն քրիստոնեայ, որոնց 450 տունը Հայ, 120 տունը՝ Կաթոլիկ եւ 50 տունը՝ Ասորի։ Ըստ ոմանց բնակչութիւնը 3000 տուն իսլամ եւ 1000 տուն քրիստոնեայ*

Քաղաքին ե՛րբ եւ որո՛ւ ձեռքով շինուած ըլլալուն ստոյգ տեղեկութիւնները կը պակսին[1]։ Հին պատմագիրներ կ'ըսեն թէ «Սա ալ հայկական քաղաք մ'էր՝ Փոքուն Հայոց մէջ։ Հայոց ԵՃԺԵ (515) թւին[2] «ԳՕՄԷՇՏԻԿԻՆ» անուն պարսիկ զօրավար մը քաղաքը զարնելով շատերը գերի կը վարէ։

Քաղաքին կեդրոնը կը կենայ բարձր հողակոյտ մը, որուն վրայ կը բընակին 200 տունի չափ Հայեր եւ Թուրքեր։

Այս հողակոյտին կուշտն է նաեւ Հայոց եկեղեցին եւ Բողոքականներու ժողովարանը։ Հողակոյտին տարբնական[3] ըլլալուն կասկած չկայ։ Պեղումներուատեն կը գտնուին արհեստական այլեւայլ հնութիւններ, երկաթի կըտորներ, տէզեր, գործիքներ եւն.։ 1893-ի երկրաշարժէն թէ՛ տուները եւ թէ եկեղեցին բաւական վնասուած էին, զորս յետոյ նորոգելով՝ հիմա յարակից ունին նորաշէն դպրոց մը եւ Առաջնորդարան։

Քաղաքին քրիստոնեաները կը վերաբերին 5 եկեղեցիներու, այն է 450 տուն Լուսաւորչական, 50 տուն Հայ-Կաթոլիկ, 40 տուն Ասորի, 10 տուն Ասորի-Կաթոլիկ եւ 30 տուն Բողոքական, որոնց իւրաքանչիւրը ունի իր ուրոյն եկեղեցին եւ դպրոցը։

Հիւսնի-Մանսուրցիներ կրթական խնդրոյն համար եռանդոտ են քան Մալաթիացիները։ Հայոց, կաթոլիկներու եւ բողոքականներու երկսեռ դըպրոցները նոր մեթոտով եւ կարող պաշտօնէութիւններով կը կառավարուին։ Հայեր ունին շուկայի կեդրոնը ազգապատկան պանդոկ մը, որուն վարձքը կը պահէ դպրոցները։ Պակասը թոշակներով կը լրանայ։

Հիւսնի-Մանսուրցի Հայը նիւթականով եւ փիզիքականապէս ալ առաւելութիւն մը ունի Մալաթիացիներէն։ Առեւտրականութեան մէջ ճարպիկ են. կան մէկ քանի տուներ, որոնք մեծ գործ ունին վաճառականութեան մէջ։ Հասարակ արհեստաւորներուն մէջ դարբին (չիլինկիր) չկայ միայն։

Հայերու լեզուն գրեթէ յար եւ նման է Մալաթիացիին. կը տարբերի միայն «ի»ին տեղ «ու» գործածելով՝ ինչ. կույնայ, չուգար (— կ'իյնայ, չիգար) եւն.[4]։

*Պէնճէեան քահանայ հօս իրեն ծանօթ հայարնակ գիւղերուն անունները մէջ կը բերէ(*), զորս աւելորդ կը համարիմ կրկնել։*

---

*էր, ինչ որ չափազանցուած կը թուի (նոյն)։ «Արեւելք» (Թ. 1481, 9 Մայիս 1888) կը յայտնէ թէ 2000 տուն բնակիչէն 500ը Հայ, 150ը Բողոքական Ասորի, Ասորի Կաթոլիկ եւ մնացեալը Քիւրտ են։*

*Հ. Ղեւոնդ վրդ. Ալիշան, իր ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԵԱՆ մէջ կը նշանակէ 800 տուն Թուրք եւ 300 տուն Հայ։*

(1) *Տեսնուեցաւ վերը թէ բաւական տեղեկութիւններ կային։*

(2) *Այսինքն Քր.ի 1066-ին։*

(3) *Արուեստական կամ ոչ-բնական ըսել կ'ուզէ։*

(4) *Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան, ինչպէս տեսնուեցաւ, տարբերէն շեշտ գտած է անոնց լեզուին մէջ։*

(*) *Տես տառ էջ   ։*

*Յետոյ Պէննէեան քհն. կը խօսի Հայերու Սամոսատ հաստատութեան վրայ*:

«Կ'ըսուի թէ Հիւսնի-Մանսուրցի Հայեր Սամուսատէն գաղթած են հոս[1]: Բայց կարծիք մ'է ասիկա: Որովհետեւ Սամուսատ, որ մելիտինէի հետ գլխաւոր քաղաք ճանչցուած էր «փոքուն Հայոց» մէջ, եւ որուն հիմնարկութեան մասին ալ (ե'րբ եւ որո'ւ կողմէն) ստոյգ ապացոյց չկան, կործանում եւ աւերումը Հիւսնի-Մանսուրին հետ եղած է, եւ բնակչութիւնն ալ անպակաս եղած է մէջէն: Թերեւս մէկ մասը անկից եկած են, բայց միւսները Մալաթիայէն եւ շրջակայ ուրիշ հայաբնակ վայրերէ գալով հաստատուած ըլլալու են:

Սամուսատ, որ Հիւսնի-Մանսուրի կարեւոր մէկ նահիէի կեդրոնն է, ներկայիս, իր մէջ ունի 5—600 տուն բնակիչ (ինչպէս ըսինք 20—30-ի չափ ալ Հայեր): Սամուսատի մէջ դեռ կիսակործան կ'երեւնայ համանուն բերդը՝ այցելուին հիացում պատճառելով եւ աչքի առջեւ բերելով անցեալի փառաւոր յիշատակները» (*Պէննէեան*, *ԸՆԴԱՐՁԱԿ*, *էջ* 191):

*Պատմական մեծ անցեալով հռչակուած Սամոսատի մասին ալ Մոլթքէի նամակներուն մէջ կը գտնենք կարգ մը տեղեկութիւններ, որոնք իբր արեւմուտքցիի մը դիտողութիւնները շահեկան են, արեւելեան նախնականութեան մէջ մնացած եւ բնաւ չառաջդիմած այս վայրին կեանքին մասին*:

*Անոնցմէ մէջբերումներ պիտի ընեմ պարզապէս օտար դիտողի կարծիքներ եւս ունենալու համար եւ միեւնոյն ատեն ցոյց տալու համար Սամոսատի միջավայրին յետամնացութիւնը*:

*Մոլթքէ, որ* 1836—1838 *շրջած է այս կողմերը, նշանակելի սա դիտողութիւնը ըրած է որ բաւական պերճախօս է՝ ցոյց տալու համար թէ ո'րքան աղտոտ էր քաղաքը*:

*Անիկա կը գրէ թէ՝* «Բովանդակ Ասիոյ մէջ չկայ վայր մը, ուր միջատները վխտան այնքան որքան Սամուսատի մէջ: Կէս գիշերին չդիմանալով այլեւս, հրաման տուի հետեւորդներուս, հեծնել եւ արշալոյսին հասանք Ատիեաման»:

*Քաղաքին անցեալ շքեղութեան վրայ ալ ակնարկ մը ունի գերման զօրավարը, որ կերկերէն Սամուսատ ճամբորդած է հետեւելով ընթացքին Եփրատին, զոր կը նմանցնէ Օտէր գետին Ֆրանքֆորթին մօտերը*:

*Ապա կ'ըսէ թէ՝*

«Ջրուղիներու (aqueducs) աղուոր ափնիներ կ'երեւին քաղաքէն հինգ փարսախ հեռու, իրենց լայն կամարները տարածելով շարան-շարան պզտիկ հովիտներու վրայ, եւ ջուր կը մատակարարեն քաղաքին:

Այսօր, թրքական Սամսատ քաղաքը հին Սամուսատ քաղաքին ընդար-

---

(1) *Սարգիս Տեմիրճեան իր ԱՏԻԵԱՄԱՆԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ գիրքին մէջ կը յիշատակէ թէ տեղացի Հայերը Սեւանի կողմերէն հոս բերուած են Արաբական արշաւանքներու ատեն*:

ճակութեան քանեբորդ մասն իսկ չ'ընդգրկեր եւ տարօրինակ երեւոյթ է հանդիպիլ դաշտերուն մէջտեղը հինաւուրց կամարներ եւ տուներ եւ սիւներ: Մարմարիոնէ զարդաքանդակ (frise) մը գտայ, որուն գեղեցկութիւնը վեր էր բոլոր տեսածներէս, տերեւներ, թռչուններ, ճողեր այնքան լաւ պահպանուած, կարծես թէ երէկ քանդակուած ըլլար:» (*Նամակ* **LII, Lettres du Maréchal de Moltké sur l'Orient,** p. 171):

*Երբեմնի հոյակապ քաղաքին անկեալ վիճակը ցոյց տալու համար սա յատկանշական տողերը ունի Մոլթքէ, որ շատ պայծառ են: Ան կ'ըսէ թէ* «բաւական էր ակնարկ մը նետել այս թշուառական Սամսատին վրայ, որ նախկին փառաւոր քաղաքին մէկ անկիւնը ծուարած էր եւ հազիւ կը գրաւէր այնքան տարածութիւն որքան Սամոսատի հռչակաւոր կրկէսը առեննօք»:

*Ուրեմն հին փառաւոր եւ մեծավայելուչ քաղաքին տեղ, որ կործանած էր, անոր աւերակներուն վրայ, անկիւն մը նոր չէն մը, աննշան ու նախնական գիւղ մը երեւան եկած էր որ միայն իբր պարծանք հոյակապ քաղաքին անունը ունէր իր վրայ, եւ կ'ապրէր գիւղական համայնքներու նախնական կենցաղով, բարքերով ու սովորութիւններով, որոնք տարօրինակ կը թուին Մարեշալ Մոլթքէի:*

*Այդ նահապետական բարքերը ոչ միայն Սամոսատի, այլ Թուրքիոյ շատ մասերուն մէջ գոյութիւն ունէին այն երջանիկ Թուականներուն:*

«Թուրքիոյ մէջ երբ լուր տրուի բարձրաստիճան անձի մը գալուստը, տեղւոյն երեւելիներէն քանի մը հոգի անոր ընդառաջ կ'երթան, կ'օգնեն անոր ձիէն վար իջնելուն, սանդուխներէն վեր ելած ատեն թեւերէն կը բռնեն, կօշիկները կը քաշեն, զինք կը պառկեցնեն կրակարանին աջ կողմը, բարձի մը վրայ, տանուտէրը իր յարկաբաժինը անոր կու տայ, հիւրին հրաւէրին վրայ միայն կը նստի դրան մօտ, գետնին վրայ, հիւրին թոյլտուութեամբ՝ եթէ իր սուրճը խմէ՝ գետնէն թէմէննահ կ'ընէ նախ: «Տունը քուկդ է»ն խօսելու սովորական ձեւ մը չէ միայն, որքան ատեն որ հիւր ես· մեկնած ատենը, ծանրագին նուէր ալ կ'ընեն հիւրին: Ամենէն մեծ փաշաները յաճախ յիսուն ծառայ կամ աղա ունին, անվճար· ասոնք միջնորդչէքերով կը վարձատրուին եւ ուր որ գիշերեն, նուէրներ կը ստանան տանուտէրէն: Ինծի քսակ մը բերաւ, Աղայիս ջորի մը ընծայեց, թուրք ծառային կէս քսակ, խիստ ամօթով մնաց երբ մերժեցի ստանալ իր նուէրը եւ վստահեցուց որ ամբողջ քաղաքին մէջ լաւագոյն կենդանի մը կարելի չէր գտնել, մերժումիս ուրիշ պատճառ չէր գտներ, եթէ ոչ արհամարհանք:

Աղային շփոթութիւնը մեծ էր գթութեան զգացումէ մը համակուելու համար, զի իր գրպանէն չէ որ միւսեյլիմը այս նուէրները կ'ընէ, բնակչութենէն եւ մասնաւորապէս քրիստոնեաներէն է որ կը քաշէ փոխարժէքը: Բայց այս նկատումները ընկերակցիս մտքէն իսկ չէին անցներ· ասոր փոխարէն կը վախնար որ զինք կը պարսաւեմ փաշային քովը: Ցաւագին պայքար մը ծայր տուաւ անոր հոգիին մէջ եւ ի վերջոյ մերժեցի նուէրը, բայց ըստ երեւոյթին

կենդանին գիշերը կապը փրցուցեր էր եւ մեզի հետեւեր էր բռնութեամբ, զի հետեւեալ օրը զայն կը գտնենք մեր գրաստներուն մէջ՝ փոխարէնը հարկադրրուեցայ հատուցում ընել Եազուպիս, որ ճշմարտապէս չէր ընդունած դրբամը: Երբ մեկնումի պահուս, մինչեւ իսկ բնակութեանս ծախսը վճարելու եւյալ, լիովին վարկաբեկուեցայ միւսելլիմին միտքին մէջ, որովհետեւ Թուրքիոյ մէջ պէտք է խիստ թշուառ ըլլալ վճարում ընելու համար: Բոլոր անոնք որ ունին միջոցը, ամէն ինչ կ'ընդունին առանց փոխարինութեան» (Մոլթքէ):

*
**

*Պէննէեան Տ. Կարապետ քհն. իր ընդարձակ տեղագրութեան մէջ* (էջ 191—196) *կու տայ Հիւսնի-Մանսուրի մասին նաեւ հետեւեալ ընդհանուր տեղեկութիւնները, որոնցմով կը փակէ այս գաւառին վրայ իր տուած տեղեկութիւնները.—*

«Ինչպէս բսուած է, Հիւսնի-Մանսուրի դաշտը ընդարձակ եւ հողը արգաւանդ է: Բացի հիւսիսային կողմէն (Գարտազէն) որեւէ լեռ չի նշմարուիր: Աչքերուդ զօրածին չափ նայէ դէպի հարաւ մանաւանդ. հորիզոնը դաշտով կը վերջանայ: Այս դաշտագետինը սքանչելի կը գտնէ մէկը, երբ Չէչէ[1] կամ «*Աղեոլ*»ի բարձունքէն կը դիտէ. իր աչքին առջեւ կը պարզուին քաղաքին գեղեցկաշար որդատունկերն ու այգիները, պարտէզներն եւ պարարտահող ակօսներէն բարձրացած լիահասակ եւ ոսկեգոյն ցանքերն ու երբներանգ ծաղիկները:

Այս դաշտը պակաս մ'ունի միայն, այն է՝ դաշտը ոռոգող ջուրի պակասութիւնը, թէեւ արեւելքէն *Փիրին* լճակը եւ արեւմուտքէն *Էկկիչայը* գետակը բաւական տեղ կը թրջեն, բայց այս վերջինին միայն գարունը ունենալ եւ ամառը ցամքելուն, եւ *Փիրինի* ալ դաշտին խոր մակերեսէն հոսելուն, հազիւ մէկ անցշան մասը կը ջրէ: Իցիւ թէ *Փիրին*, այս վճիտ ու ականակիտ ջուրը, քաղաքին հիւսիսէն հոսէր, որ թէ՛ արտերն ու այգիներն ոռոգելով՝ ամբողջ քաղաքին խմելու ջուր կը մատակարարէր եւ թէ՛, նման Մալաթիոյ Տէր Մեսիհին կը հեռացնէր այն ամէն աղտոտութիւնները ու փոշիի ամպերը, որոնք գլխաւոր պատճառներն են այն հասարակ աչքի ցաւերուն, որ տեղւոյն յատուկ է, եւ այս պատճառաւ է որ քաղաքը մկրտուած է «*Ատըեաման*» անունով:

Քաղաքի շուկան ունի (մէկ մասը այս տարի [1912] վառեցաւ) 600 խանութ, 4 խան, 10—15 սրճարան, եւ քաղաքին մէջ ու շուրջը կը գտնուին 3 բաղնիք, 50—60 ջաղաց, 3 գործարան, 3 թեկքէ, 1 կառավարապաշտօնատուն եւ զօրանոց իրենց շրջանակներով: 1 *Ուլու* Ճամի եւ 40—50 մզկիթ եւ հիւքրէնիր 7—8 *Մինարէ*,10 աղբիւր[2]:

---

(1) *Պէննէեան քահանայի համառօտ տպագրեալին մէջ կը կարդանք* ՉԷԿԵՕԼ:
(2) *Շուկային եւ ճամբաներէ մէկ քանիին, ինչպէս նա՛եւ քաղաքին այս ու այն*

Այս գաւառակն ալ ունի բնական թէ արհեստական եւ․ հնութիւններ ու վայրեր, որոնցմէ մէկ քանին նշանակենք հոս, ինչպէս․

Քաղաքին հիւսիսային կողմը Զէկի գիւղին[1] վերեւ ցցուած Թէլէննիկի վրայ քարայր մը կայ, ուսկից խորանդադ իջնելով՝ կու գայ գիւղին առջեւի վտակին եզրը եւ կը վերջանայ: Սոյն լերան (Գարատաղի) վրայ ուրիշ քարայր մըն ալ կայ, որուն մէջ քանդակուած է մարդու, անասունի, կարասիի (տաշտի, օրօրոցի) եւ ուրիշ առարկաներու պատկերներ, եւ տեղտեղ յունական գիրերով արձանագրութիւններ, բայց՝ անընթեռնելի:

Սամսատի բերդին մէջ ջուր բերելու համար 8 ժամ հեռուէն հոսող *Քեախթայ*ի գետէն սկսեալ ստորերկրեայ ջրուղիի մը եւ ժայռերու հանդիպած տեղերը ձգուած մեծամեծ կամուրջներու մեծ մասը դեռ անաղարտ կ'երեւնան տեղտեղ:

Սամսատի *Սելէք* գիւղէն գտնուած մեծ քարի մը վրայ քանդակուած է թագաւորի մը եւ թագուհւոյ մը պատկերները:

Քաղաքին հիւսիսային արեւելեան կողմը մէկ ժամ հեռաւորութեան վրայ կը տեսնուին հին քաղաքի մը աւերակները, որուն պարիսպէն ներս կը բնակին հիմա մի քանի Քիւրտեր: Սոյն աւերակի մօտէն հոսող ջրոյն առուն ցամքելու ատեն մէկ քանի տարի առաջ, սրբատաշ եւ մակերեսը քառակուսի մանր քարերով նկարուած մեծկակ քար մը գտնուած եւ փոխադրութիւնը դըժուար ըլլալուն համար իր տեղը թողուցած են:

Հիւսնի-Մանսուրէն Մալաթիա տանող ճամբուն վրայ *Ապտիւլ Խարապ* գիւղի եւ *Քէօսէյէր Կետիւկի* մէջտեղը լճակ մը կայ: Այս լճակը, որուն ջուրը թէեւ ամէն դիէն, աւելի արեւմտեան կողմի լերան ստորոտէն բխելով՝ վարը, *Շարապ Խան Ուշաղը*ի տակ նեղ կիրճէ մը կ'անցնի եւ Քեախթայի գետակին կը խառնուի: Ասկէց 20—22 տարի առաջ, սոյն լճակը ցամքեցնելով գետինը արտի վերածելու փորձը եղած է թէեւ, սակայն գործոյն մէջ դժուարութիւն եւ մեծաքանակ ծախսերու պէտքը տեսնուելով՝ ձգուած է: Լճակին ջուրը անոյշ, ձկներն համեղ եւ շուրջը ընդարձակ մարգագետին մըն է: Լճակին խորութիւնը տեղտեղ 1—100 մեթր է: Կեդրոնը, ջուրին վրայ ծառալից կղզեակ մը կայ, որ ջրամամուռով եւ հողով պնդացած շատ անգամ կը տատանի: Ջուրին մէջ կը գտնուին ձուկէն զատ ջրային շատ մը կենդանիներ: Կ'ըսուի թէ Մալաթիոյ եւ շրջանակներու մէջ տեղի ունեցող երկրաշարժներու կեդրոնն է այս լճակը:

Այս համանուն (Ապտիւլ Խարապ) լճակէն ժամ մը վարը *Քէօսէ Ուշաղը* լերան վերեւ հաստատուած է եկեղեցի մը (հիմա աւերակ), որուն քիչ մը վարը կը տեսնուի «*Իջմէ*» անուամբ դառնաջուր աղբիւր մը, ուր շրջակաքնակ գիւղացիք եւ քաղաքացիք կ'այցելեն իբրեւ ուխտավայր եւ ինչինչ հիւանդութեանց դարմանումին համար կը լոգնան այս ջուրին մէջ:

---

*Ծայրը կան մէկ քանի հատ հոսուն ջուրի աղբիւրներ, տուներու մէջ ալ՝ ջրհորներ:*

(1) *Զէկ գիւղ կը գտնուէր քաղաքէն դէպի հիւսիս մէկ ժամ հեռու:*

Հիւսնի–Մանսուրի գլխաւոր բերքերն ու արտադրութիւնքն են արմտիք, բանջարեղէնք, բամպակ, մանած, խոզակ, ափիոն, գխտոր (քիթրէ), ծխախոտ, չամիչ, նուռ, բուրդ եւ թաւամազ կենդանեաց մորթեր, ինչպէս նաեւ իւղ, պանիր, մեղր, գորգ, կապերտ եւն․, որոնցմէ տեղւոյն պէտքէն աւելին կ'արտածուի շրջակայ քաղաքները, ինչպէս որ անոնցմէ ալ կը ներմուծուի (բացի եւրոպականէն) զանազան ապրանքներ: Հոս հարկ կը համարեմ յիշել թէ հարիւր տարուան մէջ Հիւսնի–Մանսուրի բնական արտադրութիւնները եւ արհեստները, ինչպէս նաեւ տնտեսական կեանքը բաւական փոփոխութիւններու ենթարկուած են, վասնզի Հ․ Ղուկաս Վրդ․ Ինճիճեան իր ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԵԱՆ մէջ (էջ 324) տարբեր վիճակ մը կը ներկայացնէ: Ան կ'ըսէ թէ «Վարդ Հըսնի Մանսուրայ առատ յոյժ, յորմէ գործեն վարդանիշկ պատուական, որ անուանի է ի կողմանս յայսոսիկ: Նոյնպէս և Մամուտիէ սորա ազնիւ․ անուանի է եւ *բաթլիճան* սորա ըստ քաղցրութեան եւ ըստ մեծութեան, յորոց երկուք եւեթ բաւ են ի կերակուր բազմութեան»:

Ըստ քաղաքէն եւ ոչ մէկ կողմ ճամբայ շինուած չըլլալով՝ փոխադրութիւնք կը կատարուին ջորիով, էշով, ուղտով, տեղտեղ ալ եզներով:

Հիւսնի–Մանսուր քաղաքական եւ տնտեսական տեսակէտով ալ, ինչպէս նաեւ բնական պատահարներով ալ, վիճակակից եղած է Մալաթիոյ, որովհետեւ երբ Մալաթիոյ մէջ սղութիւն կ'ըլլայ, հոն արդէն ազդուած եւ կանխած իսկ կ'ըլլայ:

1893–ի մեծ երկրաշարժէն Հիւսնի–Մանսուրն ալ նիւթականապէս բաւական վնասներու ենթարկուելուն պէս, 95–ի դէպքին Մալաթիոյ չափ եւ ալ աւելի հոգեկան եւ նիւթական կորուստներ ունեցաւ:»

*
**

*1895–ի Համիտեան ջարդերու ատեն Ատիեաման այն վայրերէն մին եղած է, որ դիմադրութիւն ցոյց տուած է Կրպոյի եւ Ասլան Կեւոյի ղեկավարութեան տակ դիւցազնական քաջութեամբ:*

*Իսկ 1909–ին Կիլիկեան եղեռնին թէեւ Թուրքերը կը փորձէին Ատիեամանն ալ ջարդել, սակայն հերոսուհի* Ներմէ Ազնաւորեան *զմայլելի եռանդով ինքնապաշտպանութեան գործը կը կազմակերպէ եւ Թուրքերը չեն համարձակիր կոտորածի ձեռնարկելու:*

*Դժբախտաբար 1914–ին Ատիեամանցիք նոյն ոգին չեն կրցած ցոյց տալ, հակառակ անոր որ Հիւսնի–Մանսուրցի Հայերը միշտ քաջ եւ կռուազան, սարսափ ազդած էին տեղական Թուրք իշխանութեան (Սարգիս Տեմիրճեան, ԱՏԻԵԱՄԱՆԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ եւ Վ․ Սայրասուր, ՊԱՅՔԱՐ, 30 Մարտ, 1950):*

*Ատիեամանցի էր Միսաք Մանուշեան, զոր 1939—1945–ի պատերազմին գնդակահար ըրին Գերմանացիք, Ֆրանսայի մէջ անոր կատարած դիմադրական գործունէութեան համար:*

## Է.

## ՔԵԱԽԴԱ - ԴԱՂԹՈՅ - ՔԵԱԽԴԷ

*Մալաթիոյ կուսակալութեան գաւառներուն մէջ ամենէն ընդարձակը եւ ամենէն աւելի նշանակութեան արժանին Քեախթան է:*

*Այս գաւառը նաեւ մաս կը կազմէ* Եփրատացւոց:

*Գերպ. Աղեքսանդրեան կը կարծէ թէ Քեախթէ անունը կը յիշեցնէ հին Լիւկանտոսը, մանաւանդ որ քանի մը աշխարհագրական տախտակներ նոյն կողմերը կը յիշատակեն, ինչպէս յայտնի է Մելրիկ իշխանը շինած է Լիւկանտիա քաղաքը:*

*Հայ պատմութեան մէջ ալ կը յիշուի որ նոյն իշխանը կառուցած է նաեւ Աշոտի ամրոցը Լիւկանտիա գաւառին մէջ եւ այս եզքինին աւելի յարմար է եւ այսպէս տարբեր են վերը յիշուած քաղաքն եւ ամրոցը (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ* 403):

*Ամէն պարագայի մէջ Քեախթէ կը գտնուէր պատմական վայրի մը մէջ եւ ինչպէս այդ շրջանակի բոլոր քաղաքները, ինքն ալ կը կրէր մնացորդները յիշատակարաններու որ անցեալէն կը հասնէին:*

*Գէորգ Արքպ. Ասլանեան որ իբր Մալաթիոյ առաջնորդ ծանօթ է այդ շրջանին, Քեախթէի հնութիւններու վրայ խօսած է (ԲԱԶՄԱՎԷՊ*, 1936, *էջ* 38—40): *Եւ կու տայ սա խիստ հետաքրքրական տեղեկութիւնները:*

«Քեախպէի քաղքին մէջ այնչափ ակնառու են երկու հնութիւններ՝ նախնական եւ յետնեայ դարերու գործ, մին բաղնիք մըն է վեհապետական, որուն հսկայ կողերը եւ կոյտերը դեռ կը դիմադրեն, շէնքին մէկ չորրորդ մասը մէկ չորրորդ արտավար գրաւած է, եւ ցայսօր կը մնայ դարեր յիշեցընող շինուածքի մը դեռ անմեռ կենդանութիւնը, ի՛նչ շինուածք եւ ի՛նչ շաղախ, որ բնութեան ու մարդկային յարձակմանց ու աւերմանց դէմ դարերով տոկացած կը խրոխտայ ու կը յոխորտայ՝ անդամատուած վիճակին մէջ: Մընացեալ երբեք փառորդ մասերը տանեւհինգ խոշոր կտորներով ամբողջ ձոր մը լեցուցած են եւ աշխարի մը տեղ գրաւած են ժայրի պէս ցարդ անփշրելի: Բաղնիքի ջուրի ճամբան մեծ փապուղի մըն է, որուն մէջ միջին հասակով անձեր կրնան ժամերով շրջիլ: Երկրորդը բերդն է, քաղքի մէկ ժայրին գաւակի եզրէն վեր փարակարկառ վիթխարամարմին բարձրացած է տիտանի մը պէս գրկելով պինդ յաղթամարմին ժայրի կտոր մը եւ երկուքը մէկ մարմին կազմած են վեհափառ բոլորակապ գլուխ–գործոցը՝ մարդ միտքին, կենդանի մուրճին ծնունդ եղող ճարտարապետութեան ու այն օրերու գիտութեան այս զարմանալի շէնքը, որուն առջեւ կ'ապշիս, խոր կը մտածես ու յարգալից կը խոնարհիս: Սուլթան Սելայատտինի եւ Մելիք Սէյֆետտինի անունները կը կարդաս մուտքի մէկ դրան վերեւ:

Քանթարայի կամուրջը գրեթէ մէկ ժամ հեռու քաղքէն եւ կը մնայ բո–

լորովին անեղծ ու անվնաս, կարծես երէկ մեկնած լինէին շինող վարպետնե-րը: Կամուրջին երկարութիւնը 500-է աւելի ոտնաչափ է. կամարը մեծ գետի ջուրի մակերեսէն 50—60 կանգուն բարձր է. բոլորը կոփածոյ քարերէ եւ ա-մէն մէկը 1-էն մինչեւ 4 մեթր երկարութեամբ եւ մինչեւ 2-էն աւելի լայնու-թեամբ, մանաւանդ իբրեւ եզերապահ դրուած քարերը մեծազանգ՝ մտածել կու տան թէ ի՛նչպէս կրցած են տեղաւորել... իսկ կամուրջի գլխին 4 սիւնե-րը բոլորակի հսկայ բարձրութեամբ ու հաստութեամբ, միայն նոյն ատենէն մէկը դեռ չէ կանգնեցուցած, աւանդաբար կը պատմուի թէ այդ սիւները աղ-ջիկ մը բերած է եւ կանգնած. գուցէ վարպետն ալ ինքն եղած լինի. կը պատ-մէին այսպէս:

Գուխ Թեփէն.— Քաղքէն դէպի Սամուսատ տանող ճամբուն վրայ քա-ռած քար ոտներով նոյնպէս քար փետուր թեւերով ամբողջովին հսկայ քար թռչուն մը ամենանուրբ մանրամասնութեամբ որ իբրեւ արծուի կը հսկէ, կը տիրէ ու կ'իշխանապետէ բոլոր շրջակայից վերեւ»:

Քեախթա՝ իրեն վերաբերող բոլոր գիւղերովն կը գտնուի 70—80 *ժա-*մուան հեռաւորութիւն ունեցող շրջանակի մը մէջ: Որուն սահմանն է հիւսի-սէն եւ արեւմուտքէն Մալաթիա, հարաւ-արեւմուտքէն Հիւսնի-Մանսուր, իսկ արեւելքէն ու հարաւէն Եփրատ գետ:

Այս գաւառակին (բնական բաժանումով եւ դրութեամբ) երկուքի կը բաժնուի, այսինքն հիւսիսային կողմը բոլորովին լեռնային եւ հարաւային կողմը դաշտային է:

Կեդրոնը, ուր շինուած է կառավարութեան պաշտօնատուն եւ հեռա-գրատուն, մէկ *ճամի*, մէկ թուրք վարժարան, մէկ փուռ եւ մէկ քանի խա-նութ, տակաւին գիւղի մը հանգամանքն ունի եւ հազիւ 100—120 տուն բնակ-չութիւն կայ: Օդը խիստ տաք եւ նեղիչ, ջուրը տաք ըլլալուն համար շատ ան-գամ 15 վայրկեան դուրսէն կը բերեն տիկերով ու փարչերով: Տաքութեան եւ ճամբաներու դժուարութեան համար ամառ ատեն ճամբորդողի մը կ'ըսեն «բերանդ Քեախթացու բերան դարձա՞ւ:»

*Գաւառին կեդրոնը Քեախթա, — զոր Ասորիք* Կաքթի *կը կոչեն — գիւ-ղաքաղաք մըն է, Հիւսնի-Մանսուրի հիւսիսային կողմերը լեռներու մէջ, քա-նի մը բլուրներու վրայ շինուած, համանուն գետակին վրայ:*

«Կը գտնուի Մալաթիայէն 18, Հիւսնի-Մանսուրէն 8 եւ (Շերայի ճամ-բով) Խարբերդէն 30 ժամ հեռաւորութեամբ լերան մը անկիւնը: Քեախթէ ա-ւանին մէջ կը բնակէին կառավարական պաշտօնեաներէն զատ 10—15 տուն քուրդ եւ 5—6 տուն հայ բնակիչ:»

*Քեախթէ աւանը երկու օրուան հեռաւորութիւն ունի Մալաթիայէն, եւ կը գտնուի անոր արեւելեան հարաւային կողմը, Եփրատի եզերքը: Հ. Ղուկաս Վրդ. Ինճիճեան (ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ, Ա., էջ 323) կ'ըսէ թէ ունի* «եւ վր-տակ, եւ պարտէզս եւ այգեստանեայս»:

*Քեախթէի արեւելեան հարաւային կողմը, բարձր լերան մը կատարը կար քարաշէն բերդ մը։*

*Այս բերդը Հալէպէն հինգ իջեւան դէպի հիւսիս-արեւելք։ Հոկայաշէն բերդ մըն է՝ ամրութեամբ անառիկ։*

*Ունի այգեստաններ եւ գետ մը։*

*Թաթարական արշաւանքներու ատեն անոնց դիմացը մահմետականներու սահմանապահ վայրերէն մին էր Քեախթէ։ «Էթ Թաւրիֆ»ի մէջ կը յիշուի, թէ այս բերդ-քաղաքը օժտուած էր ընդարձակ վիճակով եւ կամաւորական հաւաքուած բանակով։*

*ԺԹ. դարուն սկիզբը Քեախթէի բնակիչներուն մեծ մասը Քիւրտ էր եւ մաս մըն ալ Ասորի։ Ասորիները ունէին երկու վանքեր Ս. Մարուգէի եւ Ս. Պարսումի նուիրուած։ Գերպ. Աղեքսանդրեան* (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, *էջ* 406) *կ'ըսէ Մալաթիայէն դէպի Ջերմուկ Եփրատի երկու կողմը կը բնակէին Իզօղլու աշիրէթը, եւ Քեախթայի մէջ կային Շերօ աշիրէթը, որոնք Ալեւի էին։*

*Եփրատի կողմը Քեախթէէ մինչեւ Հիւսնի-Մանսուր տարածուած էին Ճանպերդի աշիրէթը դէպի Մալաթիա յառաջացած։*

*ԺԹ. դարուն սկիզբը քիւրտ պէկ մը կը կառավարէր երկիրը անկախօրէն Բ. Դուռէն։*

*ԺԹ. դարուն վերջերը Քեախթէի գաւառին մէջ կը բնակէին* 400 *տուն Տաճիկներ եւ* 300 *տուն Հայեր, կամ ըստ Գերպ. Աղեքսանդրեանի* 3000 *տուն բնակիչ «անշուշտ չափազանցած էր» իրաւամբ* (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, *էջ* 404)*։*

*Հայերը երբեմն ունէին* Ս. Գէորգ *անունով եկեղեցի մը։ Ըստ Տ. Կարապետ քհն. Պէննէեանի Քեախթէի մէջ կար նաեւ* Ս. Թորոս *անունով փոքրիկ եկեղեցի մը, որ մինչեւ* 1912 *գրեթէ փակուած էր ժողովուրդ չգտնուելուն համար, սակայն* Իւլպիշի *Հայերէն Պագրճեաններ Ի. դարու առաջին տասնամեակին հոն փոխադրուելով՝ այս եկեղեցին նորոգեցին։ Երբ այցելու քահանայ մը հանդիպէր Քեախթէ, ժամերգութիւն կը կատարուէր։*

*Քեախթէ գաւառին մեծ մասը լեռնային ըլլալուն՝ երկրագործութիւնը այնքան զարգացած չէր։ Տեղտեղ միայն արգաւանդ հող գտնուելով բաւական մշակուած էր։*

*Քեախթէի գաւառէն կ'արտածուէին մանած, բամպակ, գլտոր, ծխախոտ, քիդրէ, Թաւամաղ կենդանիներու մորթ եւ իւղ։*

*Քեախթէ գաւառը ունէր չորս վարչական բաժանումներ (գաւառակներ), որոնք էին.—*

1.– Քեախթէ
2.— Կերկեր կամ Կարկառ
3.— Մրախա կամ Մերտէսի
4.— Ջրաւճան

5.— Ճերո[1]:

*Ասոնցմէ Բեախթէի մասին, որ հայկական շատ քիչ բան ունի, արդէն խօսեցանք: Հայկական տեսակէտով շահագրգռականը* Կերկեր *կամ* Կարկառ *գաւառն է:*

*Կը կարծուի որ* Կերկեր *կամ* Կարկառ *իր անունը առած է Վասպուրականի Կարկառ գաւառէն:*

*Բեախթէի արեւելեան կողմն էր* Կարկա *կամ* Կերկեր *բերդը, որ կը գտնուի Սիւրիոյ սահմանին վրայ Հալէպէն 5 օթեւան դէպի հիւսիս եւ Բեախթէէն գրեթէ օր մը անդին դէպի արեւմուտք:* Թագվիմ էլ Պիւլտանի *մէջ գրուած է թէ «Ողին մէջ բարձրացած ամուր բերդ մըն է: Անկէ առուակ մը պէս կ'երեւայ Եփրատ, որ անոր արեւելեան կողմէն կ'անցնի: Թաթար արշաւանքներու ատեն Կարկառ ամենէն մեծ սահմանապահ վայրերէն մին էր»:*

*Կարկառը արեւմտեան եզերքն է Եփրատին գրեթէ երկուք ու կէս օր հեռի Մալաթիայէն եւ Եդեսիայէն (Ինճիճեան, Ա., էջ323), առաջինին հարաւ-արեւելեան եւ երկրորդի հիւսիս-արեւմտեան կողմը:*

*Կարկառը Թուրքերը կը կոչեն* Կերկեր Գալասը *եւ Ասորիները՝* Կարկար:

*Մոլթքէ իր նամակներուն մէջ Կերկերի վրայ խօսելով կ'ըսէ թէ* «հին դղեակ մըն է, ցից քարաժայռի մը կատարը՝ Եփրատի ափին: Որքան ալ խըլ-խլած՝ բերդը անառիկ է, մէկ դիւրութիւն մը ունի միայն, այն՝ որ ոչ ոք զայն գրաւել պիտի ուզէ այս անանց անապատին մէջ: Բայց կարեւոր դեր կատարած ըլլալու է Քիւրտերու կռիւներուն մէջ: Կամուրջները, քէրվանսարայները, ճամբաները, գրեթէ բոլորն ալ կառուցուած էին Սուլթան Մուրատէն: Ասոր համար է որ Թուրքերը երախտագիտութենէ մղուած, անոր անունը տուած են Եփրատին: Կապան Մատէնի մէջ, ուր զայն տեսայ առաջին անգամ, այս գետը ամէն կերպով Մոզելի կը նմանի: Սեղմուած վայրի բարձր լեռներու միջեւ՝ ան կը սուրայ եզական բոլորակներով, տաս փարսախ ընթանալէ ետք լեռնէն դուրս կ'ելլէ եւ Մալաթիայէն ալ հեռու կը ստանայ Թոխմա Սուին, նախնեաց Մելասի կամ Քորէմսուի ջուրերը եւ շրջանը ընելէ ետք՝ բարձունքի մը, որուն գագաթը պսակուած է հին եկեղեցիի մը աւերակներովը, կ'ուղղուի արեւելք Իզօղլուի լայն դաշտագետինը, յետոյ կը կծկուի, կը սեղմուի բարձրաբերձ լեռներու նեղքի մը միջեւ, ժայռէ ժայռ կը գահավիժի. հոս, նաւարկելի չէ այլեւս եւ կը կազմէ՝ ինչ որ քարտէզները կ'անուանեն *ռխաշար* (Rucher) ջրվէժները: Երեսուն փարսախ աւելի վարը, Կերկերի մէջ գետը դուրս կ'ելլէ զինք սեղմող կրաքարային պատերէն, կը տարածուի եւ կ'ուղղուի լայն պտոյտներով դէպի Սամոսատ հռչակաւոր քաղաքը»: **Lettres du Maréchal de Moltké sur l'Orient,** 2éme Edition, Paris, p. 171 *որուն վրայ արդէն Մոլթքէի տուած տեղեկութիւնները տեսնուեցան*):

*Նոր Կարկառան, իր ժամանակին համեմատ ամուր բերդ մըն էր բարձր*

---

(1) *Այս գաւառը երբեմն Խարբերդի կցուած ըլլալով խնդրոյ առարկայ եղած է երկու Հայ առաջնորդութիւններու միջեւ.*

լերան մը վրայ շինուած Եփրատի աջակողմը, հիմա նոյն դետին մօտերը գիւղ մըն է:

Իր մօտն էր նաեւ Պիպու ամրոցը:

ԺԱ. դարուն վերջերը այս բերդերուն եւ շրջակայքին կ՚իշխէր Կոստանդին անուն Հայ իշխան մը: Անիկա, կ՚երեւայ նիզակակից էր Եդեսիոյ Թորոս իշխանին բայց ետքը Պաղդին կոմսին կողմնակից եղաւ ընդդէմ Թորոսի:

Ժամանակ մը բարեկամ մնացին լատին իշխանին, բայց ետքը թշնամացան, Կոստանդին որ պզտիկ իշխան մըն էր յաղթուեցաւ Եդեսիոյ Կոմսէն կորսնցուց իր բերդերը եւ բանտարկուեցաւ Սամոսատի բերդը ուր մեռաւ տանջանքով:

Պաղդին, որ ետքը Երուսաղէմի թագաւոր եղաւ, 1125-ին Ճնջրիկ գիւղի մօտը Սինճա դետին ձախակողմը Պալուկ ամիրային ձեռքը գերի ինկաւ եւ ինքն յանձնեց Կարկառ եւ Կեպու բերդերը եւ ինքը Խարբերդ տարուեցաւ իբր բանտարկեալ:

Երկու տարի վերջը, Միքայէլ՝ Կարկառի Կոստանդին իշխանին որդին տիրեց այդ երկու բերդերուն բայց Սելճուկները իր ձեռքը չձգեցին եւ դարձեալ գրաւեցին:

Յետոյ Կարկառը եւ Պեպուն լատինները դարձեալ գրաւեցին եւ տուին Ծովք գիւղակի Վասիլ Իշխանին, որ Շնորհալիին երէց եղբայրն էր եւ 15 տարի իշխանութիւն վարեց:

Ռումի Սելճուկ Սուլթան Մազուտ 1148-ին պաշարեց Թլպաշարը, որ Եդեսիոյ կոմսութեան վերջին պատուարը մնացեր էր, եւ շատ նեղութեան մէջ ինկած էր պաշարի պակասէն:

Վասիլ եւ Շահան երկու եղբայրներ 400 կտրիճ Հայերով արիաբար անցան թշնամիի շղթայէն եւ յաջողեցան պարէն հասցնել սովի մատնուած բերդաքաղաքին, սակայն վերադարձին ձերբակալուեցան Խարբերդի տէր Գարա-Ասլան Ֆախրետտինէն որ զանոնք ստիպեց որ բերդերը յանձնեն եւ մեկնին Սամոսատ, ուր հաւաքուեցան նաեւ իրենց զօրքերը, եւ գացին Հռոմկլայ:

Վասիլ միայն մնաց Գարա-Ասլանի մօտ, որ շատ լաւ վարուեցաւ հետը եւ անոր նոյնիսկ կալուած տուաւ:

Կերկեր քրտաբնակ, ամուր քաղաք մըն էր քարալերան մը վրայ, 7150 ոտք բարձր: Կը թուի ըլլալ ԲԱՐՁԱԼՈՒ կամ ՅՈՒԼԻՊՈԼԻՍ բերդ: Վերջը Կարկառ դարձաւ աննշան եւ աննշուք փոքր աւան մը, 200 տուն ընդհանուր բընակչութեամբ որոնց միայն 30-ը Հայ, մէկ եկեղեցիով:

Բերդը պատուած է մօտակայ քարաժայռերէն փայտէ կամուրջով: Գեղեցիկ է դուռը կամարակապ արաբական ոճով եւ արձանագրութեամբ: Կայ նաեւ յունական մնացորդներ եւ արձանագրութիւններ:

Կերկերի դաշտին վրայ կը բարձրանայ մեծ եւ կոնաձեւ լեռ մը՝ ԱՇՈՒՐ:

*Այս կողմի գիւղերը կը բնակին Քիւրտեր եւ քրտացած կամ քրտաբարոյ կորովի Հայեր եւ Ասորիներ:*

*Անցեալ դարուն կէսերը Մալաչի կուսակալութեան ենթակայ էին այդ գիւղերը, որոնց գլխաւորներն են.—*

Օլտիշ

Հատրայ

Մասրայ

Թոխսարիչ *եւայլն: (Ալիշան, ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ): Իսկ Գերպ. Աղեքսանդրեան Կերկերի շրջանակին մէջ կը յիշէ, 1912-ին.—*

Նօխուտլու

Վաֆուկ

Հատրօ

Տիվանճ *գիւղերը որոնք ունէին* 200 *կամ* 300 *տուն Հայ (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ ..........):*

1888*-ին Կ. Պոլսոյ ԱՐԵՒԵԼՔ օրաթերթին մէջ (թ.* 1481, 9 *Դեկտեմբեր* 1888) *հրատարակուած թղթակցութեան մը համաձայն Քեախթէ եւ Կերկեր գաւառակներուն մէջ* 200 *տուն Հայ կար, որոնք ունէին քահանայ մը որ կը վախճանի նոյն տարին եւ այլեւս ուրիշ քահանայ մը չեն ունենար:*

*Միացեալ ընկերութիւնը Կերկերի Հուսպիչ գիւղին մէջ վարժարան մը բացած էր:*

1884*-ին Մալաթիայէն Առաջնորդարանին եւ Կիւրպէնկեաններու (որոնք նոյն վարժարանին հսկողներն էին Միացեալ ընկերութեան կողմանէ) կողմէ վարժարանին քննութիւններու կ'երթայ ԱՐԵՒԵԼՔ-ի թղթակիցը:*

*Վարժարանի օրագիրէն կը յայտնուի որ երբեմն* 8 *երբեմն ալ* 15 *աշակերտ կը յաճախեն եղեր դպրոց:*

*Կաթոլիկ վարդապետներ Կերկերի եւ Քեախթէի հայերով կը զբաղին:*

*Քննիչը պէտք ցոյց կու տայ երկու քահանայի և երկու վարժարանի մին Պէօյրդ պաղի եւ միւսը Նարընճայի մէջ, վասնզի այս երկու գիւղերն ալ էին այդ երկու միճակներու կեդրոնները:*

*
**

*Քեախթէի հինգ բաժանումներէն Գ.ը* Մրախսի *կամ* Մերտենի, *գլխաւոր վայրն էր* Ուլպիշ *մեծ գիւղը, որ ունի իր շուրջը բաւական գիւղեր, որոնց մէջ հայ տուներու թիւը* 312 *էր:*

*Այս գաւառին մէջ էին* Նարինջ, Հաճալա *եւ այլ գիւղեր:*

*
**

*Իսկ Ե. գաւառակը* Շերօ, *Իզօղլուի Եփրատը անցնելէն ետք, Խարբերդի ճամբուն վրայ մինչեւ Կերկերի տարածուած հողերէն կը կազմուի:*

*Շերոյի հայ բնակիչներու թիւը կը հաշուէր* 1200 *տուն:*

1912–էն քիչ առաջ Քեախթէի գայմագամութիւնը երկուքի բաժնուելով Տերօ եւ Փետրիկէ միացեալ եւ նորակազմ գազա մը կ'աւելցուի Մամուրէթ իւլ Ազիզ կուսակալութեան վրայ:

Տերոյի նահիէն ալ իր ստորաբաժանմունքն ունի, որոնք են.

Ճանպէկ (Ճիհան Պէկ)

Բօսկրան

Հսֆա՛ն

Ալուեր

Ճանտա (Ճիհան տար)

Պապիկ

Նեփսը (կեդրոնական) Տերոյ եւ այլն:

Ասոնք ի բաց առեալ Ճանպէկցիներն եւ Բօսկրանցիները, մինչ Պոլիս կ'երթեւեկեն, զի չունենալով երկրագործական ընդարձակ միջոց՝ ապրուստի մեծ աղբիւրնին Պոլիսն է: Տերոյէն կ'արտադրուի պատուսկ, բամպակ, գլտոր, իւղ, մետաքս, ծխախոտ, նուշ եւայլն: Սոյն նահիէի Տիթններ ըսուած գիւղի տակը տղրուկի լճակ մը կը գտնուի, ուսկից կը ստանան Մալաթիոյ սափրիչները եւ շրջակայ բոլոր գիւղացիները իրենց պէտք եղած տըղրուկները:

1902–ին Մալաթիոյ Առաջնորդական Տեղապահ Խաչատուր Ծ. Վրդ. Տէր Ղազարեան Օրմանեան Պատրիարքին յանձնարարութեամբ կազմած տեղեկագրին մէջ, որքան խղճամիտ, նոյնքան զգուշաւոր բառերով խօսած է Քեախթէի վիճակին վրայ:

Նոյնութեամբ կը ներկայացնեմ իր տեղեկագրին այդ մասը որ բաւական որոշ գաղափար մը կու տայ այդ դժբախտ գաւառին Հայոց վրայ.—

«ՔԵԱՂԴԱ.— Գաւառակ ըլլալով, ենթակայ է Մալաթիոյ կառավարչութեան: Հոս կան 7 Հայ տուներ: Ունին հնադարեան եկեղեցի մը, որ 1895–էն ի վեր իր շուրջը գտնուած 4—5 սենեակներով մէկտեղ կործանած է եւ այժմ 3–ական կանգուն բարձրութեամբ չորս պատեր միայն կը մնան: Հրովարտակ չունի: Քեաղդայի մէջ 1901ին բացուեցաւ Նպաստնկեալ վարժարան մը, բայց տեղական կառավարութեան հրամանով փակուեցաւ եւ ցարդ գոց կը մնայ:

Քեաղդայի Հայերը զուրկ են քահանայէ: Ունին միայն մէկ ուսուցիչ, որ սակայն չի կրնար պաշտօնավարել, դպրոցին դէմ հանուած արգելքին պատճառաւ:

Եւ եթէ եկեղեցիին գոյութիւնը պահպանելու համար նոր տնօրինութիւն մը չըլլայ, Քեաղդայի այդ Ս. Գէորգ եկեղեցւոյ պատերն ալ քիչ ատենէն բոլորովին պիտի քայքայուին եւ անոր հետքն անգամ պիտի կորսուի:

Քեաղդայէ 4 ժամ հեռաւորութեան մէջ կը գտնուի Պէօյիւք Պաղ անուն գիւղը, ուր կը բնակին 15 տնուոր Հայեր: Հոս կար 1895–էն առաջ դպրոց մը, որ 1880–էն ի վեր գոյութիւն ունէր, բայց 1895–էն ի վեր փակ կը մնայ, նիւ–

թական անձկութեան պատճառաւ: Արտօնագիր չունէր: Եկեղեցի եւայլն չկայ: Բեադղայէ 3 ժամ հեռու կը գտնուի Պերվետոլ անուն հայաբնակ գիւղը, ուր կան 9 տուն Հայեր: Հոս եկեղեցի եւ դպրոց չկայ: Երեք ու կէս ժամ հեռու է Գոլուզ անուն գիւղը, ուր կը բնակին 9 տնուոր Հայեր: Եկեղեցի, դպրոց եւայլն չկայ: Երեք ժամ հեռու կը գտնուի Կարչորան գիւղը, ուր կան երկու հայ տուներ, իսկ չորս ժամ հեռու Հասունտիկլին անուն գիւղը, երեք տնուոր Հայերով:

Բեադղայէ հինգ ժամ հեռու կը գտնուի Տարտաղան գիւղը, երեք տուն Հայերով: Վեց ժամ հեռու է Կավըզլըու գիւղը, ուր մէկ տուն Հայ կայ միայն:

Չորս ժամ հեռու է Նառընճա գիւղը, 12 հայ տունով, նոյնպէս չորս ժամ հեռու Կապեր անուն գիւղը՝ 2 հայ տունով, հինգ ժամ հեռու Բեան գիւղը, 4 հայ տուներով: Նոյն չափ հեռու՝ Գօրըսկիլ գիւղը, երեք տուն Հայերով: Վեց ժամ հեռու՝ Փիրախ գիւղը, 2 հայ տունով: Ութը ժամ հեռու՝ Նենիճանուն գիւղը, ինը տուն Հայերով: Եօթը ժամ հեռու է Թիլ գիւղը, չորս տընուոր Հայով:

Բեախղայէն հինգ ժամ հեռու կը գտնուի Բերքօխ գիւղը, ուր մէկ տուն Հայ կայ: Հինգ ժամ հեռու է նաեւ Պարպանոս գիւղը, 2 Հայ տունով: Ութը ժամ հեռաւորութիւն ունի նոյնպէս Թոմակ անուն գիւղը, մէկ տուն Հայով: Հինգ ժամ հեռու է Կարպոյ գիւղը մէկ տուն Հայով: Վեց ժամ հեռու է Անտամ գիւղը 5 տնուոր Հայերով: Վեց ժամ հեռու է Բեֆերտիչ գիւղը, ուր կան հինգ տուն Հայեր: Վեցուկէս ժամ հեռու է Նունի անուն գիւղը, 8—9 տուն Հայերով:

Կերկեր գիւղը 7 ժամ հեռու Բեախղայէն. ունի 5 տուն Հայ: Վեց ժամ հեռու է Մզրաք անուն գիւղը 2 տնուոր Հայով, 7 ժամ հեռաւորութեամբ Տէրըսխայ գիւղը, 5 տուն Հայերով:

Իսպիչ Բեախղայէ 7 ժամ հեռու գիւղ մըն է, ուր կան 18 տուն Հայեր եւ 14 տուն Ասորիներ: Իսպիչի Հայերը 1879-էն ի վեր ունէին իրենց նախակրթական վարժարանը՝ Հայոց Միացեալ Ընկերութեան դրամով, որ յետ Միացեալի՝ Ազգ. Պատրիարքարանի նպաստովն կը կառավարուէր:

Գալով Իսպիչի այդպիսի ներկայ կացութեան, իբր այցելու հովիւ այս կողմերը դրկուած Արժ. Տ. Եղիշէ Քհնյ. Խաչատուրեանի տուած տողեկութեանց համաձայն, խիստ ցաւալի է. այնպէս որ եթէ կայսերական կառավարութեան շնորհիւ յիշեալ Օսման ապայի ազդեցութիւնը կամ անոր անձը չհեռացուի այդ գիւղերու շրջանակէն, ո՛չ Իսպիչի վարժարանը կրնայ բացուիլ եւ ոչ ալ այնտեղի Հայերը կրնան հանգստութիւն վայելել, ինչ որ հակառակ Բեախղայի՝ շրջակայքը գտնուող Հայաբնակ գիւղերէն մէկ քանիին մէջ 60—70 տունի չափ Ասորիներ ալ կան:

Մալաթիոյ գաւառին եւ իրեն յարակից գաւառներու եւ գիւղերու մէջ գտնուած ազգային հաստատութիւնները՝ այսինքն եկեղեցիներ, վար-

*ժառանգներ եւ վանքեր, գրեթէ ամէնքն ալ նորոգելի կամ վերաշինելի մասեր ունին:*

*Բայց առ ի չգոյէ արտօնութեանց եւ մանաւանդ առ ի չգոյէ դրամական կարողութեան, խարխուլ վիճակի մէջ կը մնան: Եւ քանի այս ներկայ կացութեան մատնուած են, հետզհետէ աւելի պիտի վնասուին ու քայքային:*

*Այս տեղեկագրին՝ Մալաթիոյ Առաջնորդութեան իրաւունքներուն նախանձախնդիր Տեղապահը Խաչատուր Ծ. Վրդ. Տէր Ղազարեան կը կցէ դիտողութիւն մը, որով կը փակէ իր տեղեկագիրը:*

*Անիկա դիտել կու տայ թէ՝*

*Շիրոյի կողմը Փեթիւրկէի գայմագամութեան վերաբերեալ Ագուան, Տամլի, Զահմանա, Պուրճ, Իսմրին, Ճամպէկ, Զարտաչ անուն 7 գիւղեր ալ կան, որոնց մէջ 50 տունի չափ Հայեր եւ 75 տունի չափ ալ Ասորիներ կը բնակին: Ասոնք Փեթիւրկէի գայմագամութեան հետ միասին վերջերս ուղղակի Մամուրէթ Իւլ Ազիզի Ազգային Առաջնորդարանին կողմանէ պատրաստուած տեղեկագրին մէջ յիշուած են իբրեւ իր վիճակը, մինչդեռ վերայիշեալ գիւղերը սկիզբէն ի վեր Մալաթիոյ Առաջնորդարանի վիճակին իրաւասութեան կը վերաբերին:*

*Խաչատուր Ծ. Վրդ. Տէր Ղազարեանի այս տեղեկագրին կը կցեմ Հոգ. Տ. Կարապետ Քհնյ. Պէննէեանի ընդարձակ Մալաթիոյ տեղագրութեան Քեախթէի մասը, որ հիմ ունի իրեն կառավարական վարչական բաժանումները եւ ըստ այնմ դասաւորուած են Քեախթէի վիճակին թեմերը:*

*Պէննէեան քահանայ առած է այս բաժանումները առանձին–առանձին, եւ անոնց գիւղերուն շատերուն մէջ ցանցնուած փշուր Հայերը, ինչպէս նաեւ Ասորիները, յիշատակուած են՝ իւրաքանչիւրին որակն ու քանակը նշանակելով:*

*Համաձայն Տ. Կարապետ Քհնյ. Պէննէեանի աշխատասիրած ընդարձակ տեղագրութեան, այդ վայրերն*[1] *էին.*

ՇԻՐՈՅԻ ՄԷՋ— Քէֆէրտիզի 1000 տուն Թուրքերուն մէջ կան 20 տուն Հայ եւ 15 տուն Ասորի: Ասորիները ունին անշուք եկեղեցի մը եւ քահանայ: Հայեր եկեղեցի չունին, բայց միանալով Ասորիներու հետ, բացած են դպրոց մը, ուր կը դասախօսեն Խարբերդէն կամ Մալաթիայէն կանչուած ուսուցիչներ: Սոյն գիւղի հարաւ–արեւմտեան կողմի մէկ կուշտը կը տեսնուին հին եկեղեցիի մը պատերը:

ԱՂՎԱՆԻ մէջ կայ 5 տուն Հայ, 10 տուն Ասորի: Հոս ալ թէ՛ քահանան

---

*(1) Շատ կը ցաւիմ որ Տ. Կարապետ Քհն. Պէննէեան եւ Խաչատուր Ծ. Վրդ. Տէր Ղազարեան քիչ անգամ համաձայն են իրարու գիւղերուն անուններուն եւ անոնց Հայ եւ Ասորի բնակիչներուն համար: Այս տողերը գրողը Եգիպտոսի մէջ իր քովը ունենալով ոչ մէկ Մալաթիացի բանգէտ անձ, շատ կը ցաւի որ չկրցաւ միակ ցուցակով մը ներկայացնել այս գիւղերը:*

եւ թէ եկեղեցին Ասորի են։ Երբեմն հոս Գապպարեան եղբայրները իրենց անձնական ծախքով դպրոց մը բացած էին Հայ եւ Ասորի տղոց համար։

ԻՒՄԻՒՐԵԱՆի մէջ (կեդրոն Փերթկէ գաւառակի) կան 20 տուն Հայ եւ 20 տուն Ասորի։ ՊԸԱՐի մէջ՝ 4 տուն Հայ։ ՏԱՄԼՈՒ՝ 5 տուն Հայ, 8 տուն Ասորի։ ՁԱՄԱՆՕ՝ 20 տուն Ասորի, որոնք ունին քահանայ եւ եկեղեցի։ ՄԱՄԱՇ՝ 3 տուն Հայ, 2 տուն Ասորի։ ՃԱՄՁՐԵԿ՝ 2 տուն Հայ, 2 տուն Ասորի։ ԱՐՂՈՒՁԱՅ՝ 3 տուն Հայ, 3 տուն Ասորի։ ԻՒՄԻՒՐԵԱՆի մէջ Հայերու Ասորիներ միացած դպրոց մը կը կառավարեն։ Երկու տարի առաջ (1910) ձեռնարկած էին եկեղեցի մըն ալ շինելու, բայց կառավարութեան հանած արգելքէն յետաձգուեցաւ կիսաշէն վիճակին մէջ։ Շերոյի Հայերու հոգեւոր պէտքերը Այվոսէն հայ քահանայ գալով կը տեսնէ։

### ԿԷՐԿԷՐ – ԿԱՐԿԱՌԻ[1] ՄԷՋ

ՆԷՖՍԻ ԿԷՐԿԷՐԻ մէջ կայ հին բերդ մը, որուն կատարը կը տեսնուին քարափոր աւազաններու սարնիճները։ Հոս կայ նոյնպէս հին եկեղեցի մը, եւ 10–12 տուն Հայ եւ Ասորի։ ԳՕՄԻԿ՝ 4 տուն Հայ, ԳԱՐԱՆ՝ 2 տուն Հայ, ՊԱՅԻԳԻ՝ 2 տուն Հայ, ԿԱՂՆՏԷՔ՝ 2 տուն Հայ, 2 տուն Ասորի։ ՊԸՄԸՂՕ՝ 2 տուն Հայ։ ԹԵԼԼՕ՝ 2 տուն Հայ, 2 տուն Ասորի։ ԹԵՐԲԻՐԵՆ (թոր քեափն)՝ 3 տուն Հայ։ ՄԷՁԷՐԷ՝ 2 տուն Հայ եւ մէկ տուն Ասորի։ ԲԵԹՐԿԷ՝ 7 տուն Հայ։ ԹԷՄՇԻԱՍ՝ 3 տուն Հայ։ ՎԱՆԿ 18 տուն Հայ։ Հոս կայ նաեւ հին եկեղեցի մը։

### ՄՐՏԵՍԻ ՄԷՋ

*ՊԷՕՅԻՒՔ ՊԱՂ ունի 15 տուն Հայ։ Ունին դպրոցի պէս բան մըն ալ։ ՀԱՍՈՒՆՏԻԿԻՆ՝ 3 տուն Հայ։ ԽՈՐԷՍ՝ 3–4 տուն Հայ։ ՀԵԼԻՄ՝ 8 տուն Հայ։ ԳԱՐԱ ԹԻՒԼՊԷ՝ 7 տուն Հայ, 5 տուն Ասորի։ ԹԸԼԹԸԼԱ՝ 2 տուն Հայ։ ՍԸՐԱԹՈՒՏ՝ 3 տուն Հայ։ ԻՒԼՊԻՇ՝ 20 տուն Հայ, 6 տուն Ասորի։ ՔԷՖԷՐՏԻՇ՝ 4 տուն Հայ։ ՀՈՍԹ՝ 3 տուն Հայ, 2 տուն Ասորի։ ՔՈՐԴԻՆ՝ 3 տուն Հայ։*

### ՁՐԱՒՔԱՆԻ ՄԷՋ

*ՊԷՐՎԷՏՕԼ ունի 5 տուն Հայ։ ԿԷՅԵՔԱՆ՝ 2 տուն Հայ։ ՔՕԼԻԿ՝ 5 տուն Հայ։ ԳԱՐԱՃՕՌ՝ 2 տուն Հայ։ ՀԱԻԱՆԿ՝ 8 տուն Հայ եւ 3 տուն Ասորի։ ՊԼԵԼԱ՝ 6 տուն Հայ։ ՄԸՇՐԱՂ՝ 4 տուն Հայ։ ԳԱՐԱԹՈՒՏ՝ 4 տուն Հայ։ ԿՈՒՏԻՇ՝ 3 տուն Հայ։ ՓԷՐՏԷՍՕ՝ 10 տուն Հայ եւ 6 տուն Ասորի։ ՍԷՅՏ ՄԱՀՄՈՒՏ՝ 12 տուն Հայ։*

*Բաց աստի ԿԷՐԿԷՐԻ ուրիշ քանի մը գիւղերուն, այսինքն ԽԵՁՏՈՒՐԻ (Խաչտուրի), ՇԱՖԳԱՆԻ, ՔՈՐՈԿԼԻ, ՁՐՄԸԳԱՆԻ, ՁԱՓԱՔԻ, ՓԻՐԱԽԻ,*

---

*(1) Կարկառ ամրաշէն եւ անառիկ բերդ մըն էր, ուր կ'իշխէր Վասիլ իշխան։ Պարսպին մէկ տեղը գրուած է յունական տառերով արձանագրութիւն մը։*

*ԶԱՊԱՌՈՒՆԻ, ԱՇՄԱԻ, ՀԱՇՈՒՐԻ եւն.ի մէջ կան 100–120 տուն Հայեր, որոնք ՍԵՒԵՐԵԿԻ, ԵԴԵՄԻՈՅ եւ ՋՆԳՈՒՇԻ կը վերաբերին։*

*Բոլոր այս տարտղնուած Հայերը արհեստաւորներ են եւ իրենց ապրուստը այդ «ոսկի ապարանջան»ին կը պարտին[1]։ Սակայն իրենց կրօնական թէ կրթական[2] կացութիւնը խիստ արգահատելի է։ Հաւատքնին կոյր, յոյսերնին հաստատուն, սէրերնին անկեղծ, որչափ որ զուրկ են քահանայէ եւ ուսուցչէ, սակայն իրենք իբրեւ կենդանի օրացոյցներ գիտեն եկեղեցական ամէն կարգ ու սարք, կիրակիներէն զատ կը պահեն ամէն տօնելի օրերը։ Օրական 3–4 անգամ առանձնական աղօթքի կը կենան։ Անկրօն է այն որ իրենց ներկայութեան պահքը կը լուծէ։ (Ականջը խօսի մեր Կրօնական ժողովներուն)։ Եթէ մէկ–երկու ամիսը անգամ մը քահանայի երես տեսնեն, ամէն արժանավայել պատիւներ կը շռայլեն, խեղդելով զինքը նիւթական նուէրներով։*

ՇԷՐՈՑ

1. 20 *տուն Հայ եւ* 15 *տուն Ասորի։*
2. 10–12 *Հայ եւ Ասորի։*
3. 20 *տուն Հայ եւ* 6 *տուն Ասորի։*
4. 4 *տուն Հայ։*

Շրջաբնակ քաղաքներու, մանաւանդ Խարբերդի եւ Մալաթիոյ Առաջնորդարանները ինչո՞ւ արդեօք խոր կը նային այս խեղճ ու կրակ Հայերուն։ «Ես գաւառը կը սիրեմ» ըսող Առաջնորդ հովիւները միայն քաղաքի առաջնորդարաններուն մէջ բազմելով եւ քիչ անգամ, գող եղածի պէս բեմերէն քարոզ խօսելով ժողովրդեան աչքերը շլացնելուն եւ փառաւորուելո՞ւն մէջ կը գտնեն իրենց պարտականութեանց կատարումը։ Ոչ, Գերապատիւ հայրեր, ոչ, հոդ չի կայանար պարտականութեանց սահմանը, գիւղերը ելլել եւ ամէն կերպով օգնութեան կարօտ ցանուցիր ժողովուրդը այցելել, օգնել եւ մխիթարելու պէտք կայ։

---

Վերոյիշեալ գիւղերէն ԻՒԼՊԻՇԻ մօտ կայ «Զաք» (Զաքարիա) անուանեալ եկեղեցի մը, որուն քիչ մը վարը 15–16 մեթր բարձրութեամբ աշտարակ մը կայ, Ս. Թէոդորոս անուամբ, որուն մէջ թէեւ չի տեսնուիր խորան ու սեղան, սակայն տեղ–տեղ քանդակուած են խաչեր ու պատկերներ եւ յոյն տառերով արձանագրութիւնք։

Քեախտա գաւառակին մէջ կան քանի մը ուխտատեղիներ, որոնցմէ մէկն է «ՄՕՌԱՖԱ»ն։ Ասիկա Եփրատի աջ եզերքը քարայր մ'է։ Մուտքը ջու–

---

(1) Պէննէեան իր տպագրեալ Հարբերդի տեղագրութեան մէջ կը հաստատէ թէ առուծախն ալ Հայոց ձեռքն էր (Հ. էջ 222)։

(2) Պէննէեան ըսն. կը հաստատէ թէ «Իւլպիշի մէջ ի շնորհս Հայոց Միացեալ Ընկերութեան՝ գործով ոչ իսկ սոսկ անուամբ վարժարան մը կը գտնուէր, զոր 10–15 տարի առաջ ըն կ. քահանայ մը Պոլիս երթալով բանալ յաջողած էր» (Հ. էջ 222)։

թէն բաւական վերն է, որուն վրայ բարձրացած են սեպաձեւ ժայռեր եւ հաստատուն կաղնիներ։ Վարէն արդէն անկարելի ըլլալով՝ մէջը իջնելու համար՝ մէջքէն չուան մը կապելու եւ կախուելու է մինչեւ մուտքին բերանը։ Քարայրը որ մտար՝ աչքիդ առջեւ կը պարզուի արհեստին բնութեան օգնութեամբ շինած սքանչելիքը։ Մուտքէն զատ լոյս առնելիք բնաւ ծակ մը չունի։ Ներքին կողմը խորունկ է, ընդարձակ շուրջանակի ունի խորշեր ու խցիկներ, որոնք մենակեացներու ճգնարաններ ըլլալու են ի հարկէ։

Տարւոյն ամէն եղանակին ալ ուխտաւորներ անպակաս են հոս։ Աւելի խենդացողներ կը բերուին հոս, որոնք շղթայակապ իջեցնելով՝ մէկ-երկու օր անսուաղ կը թողուն, որոնցմէ շատեր, այո, զգաստացած դուրս կ'ելլեն անկից։

Մօռափայի մօտերն է իր փոքրիկ եղբայրը «Մօրթմիթ»ը։ Ասիկա ալ նոյնպէս քարայր մ'է բնութենէ շինուած։ Հոս ալ իջնելու դիւրին միջոցը չունենով կապուիլն է։ Մարդ երբ իջնէ մէջը, կը լսէ ջրերու դղրդիւն մը, որ այրին արեւմտեան կողմէն փրփրալից կ'ելնէ Եփրատի մէջ։

Մորթմիթի մօտերը կան 20—30-ի չափ ուրիշ քարայրներ ալ, որոնք այր կամ ճգնարան եւ կամ ապաստանարան ըլլալու են հին ժամանակի մարդոց։

Քեախդայի կեդրոնին առջեւէն հոսող գետակին աջ եզերքը միակտուր ժայռի վրայ բարձրացած է համանուն բերդը, որուն քարերու խոշորութիւնն ու ժամանակին ճարտար ձեռքերն կը հիացնէին զմարդ։ Քարերը շատ շքեղ, առանց կիրի միացած են իրարու եւ դարերու ընթացքը որեւէ վնաս պատճառած չէ անոնց։ Շինող ձեռքը ժայռին բնական դիրքին հետեւելով՝ մինչեւ եօթն յարկեր բարձրացուցած է։ Բերդը՝ օսմանեան կառավարութեան ձեռքը անցնելուն պէս՝ նորոգելով՝ տեղ-տեղ տաճկերէն գրերով արձանագրութիւններ թողուցած է, սակայն անընթեռնելի։ Բարձունքը 10—20 հատ աւազան եւ սարնիճներ գտնուելէ զատ, գետակէն ջուր առնելու համար քարուկիր աստիճաններով եւ նեղ լուսամուտներով ջրուղի մ'ալ շինուած է։

ՃԱՆՏԷՐԷ ՔԷՕՓՐԻՒՍԻ.— Կեդրոնէն դէպի հարաւ, մէկ ժամ դուրսը «ՃԱՆՏԷՐԷ» գետակին վրայ հնութեանց կատարելագոյններէն համարուելու արժանի կամուրջ մը կայ։ Այս կամուրջը շինուած է, կ'ըսուի, Քրիստոսէն 200 տարի առաջ, Սելեւկոսի ժամանակ։ Կամուրջը մէկ աչք մ'է, բայց խիստ բարձր. դեռ մէկ քարը ինկած չէ, իր շինուած ատենի հաստատութիւնը եւ կատարելիութիւնը կը պահպանէ։ Կամուրջին մէկ գլուխը երկու եւ միւս գլուխը մէկ հատ 5 մեթր բարձրութեամբ եւ կէս մեթր շրջապատ ունեցող երեք սիւներ կանգնած են գազաթներուն վրայ հովանոցաձեւ քարերով։ Թէ՛ այս կոթողներուն եւ թէ կամարին ճակատները տեղ տեղ յունական տառերով արձանագրութիւններ կը տեսնուին։ Կամուրջին մէկ ծայրէն մինչեւ միւսը, երկու կողմն ալ, իւրաքանչիւրը 2 մեթր բարձրութեամբ եւ երկու-

քուկէս մեթր լայնութեամբ խոշոր քարերով շինուած պատերն ալ դեռ անարատ կը կենան :

ԳԱՐԱ-ԳՈՒՇ․— Սոյն կամուրջէն ալ մէկ ժամ դէպի հարաւ եւ կեդրոնէն երկու ժամ հեռաւորութեամբ, 300 մեթր բարձրութիւն ունեցող լերան մը վրայ հողէ եւ խիճերէ շինուած շատ մեծ կոնաձեւ բլուր մը կը գտնուի : Սոյն խնաշէն ահագին կոնին ալ կամուրջին շինութեան ժամանակակից ըլլալ կը կարծուի : Ասոր ալ շուրջը նոյնպէս 4—5 մեթր բարձրութեամբ եւ կէս մեթր հաստութեամբ քարէ սիւներ կանգնած են : Եւ այս սիւներէն մէկուն առջեւ պառաւ կնոջ մը արձանն ու դէպի հարաւ նայող արծիւի մը պատկերը կը կենան : Հարաւային կողմի սիւնին կատարը քարէ տախտակ մը կայ, որուն մէկ երեսը պալարաձեւ (գապարթմա) նկարուած է եւ իրարու ձեռք բռնած կնոջ մը եւ մարդու պատկերները : Կոնին հիւսիսային կողմը, իրարմէ երկու մեթր հեռու գտնուող կոթողներէ մէկուն վրայ ալ առիւծի արձան մը դրուած է : Առիւծի արձան մ'ալ կոնին պատուանդանը կը տեսնուի : Այս արձան-առիւծը կոնին վրայ կը գտնուի եղեր կանխաւ, բայց ինչպէս որ է, գլորելով հոս հանգչած է :

ՊԷԼԻՆ ԿԱՄ ՆԵՄՐՈՒԹ․— Քեախդայի արեւելքը 4 ժամ հեռաւորութեամբ «ՊԷԼԼԻ» լերան վրայ «Նեմրութ»[1] (Նեփրովթ) անուամբ բրգաձեւ կոն մ'ալ կայ, որ շատ հետաքրքրական եւ տեսնելու արժանի է : Այս բլուրը նոյնպէս կազմուած է կոտրտուած մանր խիճերէ, եւ վրան կը գտնուի կիներու եւ այրերու շատ մը արձաններն ու առիւծներու պատկերներ, որոնք իրենց հաստատուած տեղերէն խախտելով՝ գլորած են : Այստեղ ալ յունական տառերով արձանագրութիւններ կը տեսնուին :

Հոս ի մէջ այլոց, տեսնելու արժանի է կնոջ մը ահագին արձանը, որ կանգնելով բարձր տեղ մը, գլուխը դէպի ձախ հակած կը նայի հարաւակողմը : Գլխու ծածկոյթն ու մազերուն յարդարումը մանաւանդ կը զարմացնեն մարդկային ձեռքին այս աստիճան ճարտարութեան վրայ :

Գետինին վրայ պառկած կը տեսնես մարդոց հսկայ արձաններ, որոնց պեխ ու մօրուքներուն բնական ձեւ տուած է գեղարուեստը, մանաւանդ մակաղող ոչխարներուն, որոնց վերեւ սրինգ ի ձեռին կը հսկէ մարդակերպ հովիւը : ԳԱՊԱՐԹՄԱ կնոջ պատկերներու կանոնաւոր հագուստ կապուստներն եւ շատերու եւայական մերկութիւններն ալ ուշագրաւ են :

Անկէց 25—30 տարիներ առաջ կայսերական թանգարանի տնօրէն Վսեմ․ Համտի Պէկ հոս գալով՝ փոխադրութիւնը դժուար ըլլալուն համար, յիշեալ արձաններու եւ պատկերներու նկարներն առնելով գացած է» :

*Գէորգ Արք․ Ասլանեան, որ իր առաջնորդական պաշտօնավարութեան շրջանին, Մալաթիոյ մէջ հետաքրքրութիւններ ունեցած է հնութեանց մասին, Քեախդէի մօտակայ այս Նեմրութ լեռը անձամբ այցելած է, իր տպա—*

---

*(1) Կ'աւանդուի թէ սոյն լեռն Նեփրովթի ամառանոցն ըլլալով՝ իր անուամբը շինած է սոյն բլուրը։*

ւորութիւնները գիրի առած է տարիներ ետքը (տես ԲԱԶՄԱՎԷՊ, 1936, էջ 36–40), Նեմրութ լերան հնութիւններուն վրայ խօսած է եւ նկարագրած։

Անիկա կը գրէ. «Քեախտէի Նեմրութ (Ներրոդ) լեռը, որ ընդհանրապէս Բէլ կը յորջորջուի տեղացիներէն, քաղաքէն 3 ժամուան ճամբայ մըն է, միշտ վերելքով եւ այնքան տառապալից՝ ճամբորդը սոսկացնող։ Խորէն կը սկսի ժայռոտ վերելքը ամէն վայրկեան փորձանուտ եւ վտանգաւոր, նաեւ թունալից իժերու եւ կատաղի կենդանիներու որջներովն ու խոռոչներովը։

Բէլի կատարին վրայ ընդարձակ յարդարուած արտավայրերու տափարակին վրայ դէմ դիմաց վիթխարի հսկայ վեց արձաններն են, որոնց միայն պատուանդանները կը մնան այնպէս եւ մէկն ալ կիսով կործանած, կրանիթ քարերու վրայ կարծես մէկ մէկ ժէռոտ ամպածրար աշտարակներ են, մանաւանդ պատուանդանները, որոնք մեծադանգ քարէ շէրտեր են կտրուած, կոփուած, թուղթի պէս յղկուած, որոնց վրայ ասորա-քաղդէական հին ու հին բեւեռագրերով, նշանագրերով լիուլի ամբողջ պատգամագրուած են վեհապետին, տիրապետին հրամանները, օրէնքները։ Արձաններու վեհաշքութիւնը, քանդակուած՝ խնկութեամբն անձին, դէմքին, խորհրդանիշին՝ յապուշ կը կրթեն դիտողը, կը խոնարհեցնեն եւ կը հպատակեցնեն հետաքրքրուողը եւ կը մագնիսացնեն, այնպէս որ ժամերով չես կրնար բաժնուիլ։ Հոս ու հոն ինկած հողերուն ու քարերուն վրայ տապալած են եւ փռուած թոներ կշռող մարդկային (իշխանական) գլուխներ, մանաւանդ բոլորովին կործանած մեհենատաճարին գաւթին շուրջը բոլորած արձաններուն եւ առիւծագլուխներուն սոսկացնող ցցուն բաշերը եւ երախաբաց դէմքերը, եւ սուր ժանիքներովը դեռ սպառնագին, դարերով կը սպասեն որսի։

Իսկ մէկ վեցեակին միւս վեցեակներն երթալիք ճամբուն վրայ հարիւրաւոր մարդահասակ յեսանաքարեր, որոնք գրատախտակներու նման կտրուած, որպէս պահակներու շարքով կանգնեցուած են, թէեւ ժամանակի ընթացքին մեծ մասամբ գետին տապալած, անգէտ, յիմար, վանդալական ձեռքեր ոմանք կոտրտած են եւ ոմանք ալ կապար գնդակի հարուածներով վիրաւորած, վնասած են։ Ասոնց վրայ հրաշալի, եւ հիանալի նուրբ քանդակները կան, տեսարաններու, տէրերու, տիրուհիներու, արքաներու, թագուհիներու առաւել իրենց ճոխ հանդերձանքը, զարդարանքները, ամենանըրբին մանրամասնութեամբ, քնքուշ, փափուկ վրձնանկար, անեղծագործուած կուրծքն ամէնովը, մրցելով իսկ ասոնց հետ, եւ տալով խորհրդաւոր տպաւորութիւն մը, եւ հոգիներու հետ խօսելու լեզու մը հինաւուրց սա արուեստներու, աւերակներու մէջ ապրող իրենց ոգիներուն հետ... խօսողները վերացնող արբեցութեամբ մը թրթռուն, եւ խոկ ու խոհով կ՚ողջունեն եզական արուեստի մտքի ու մուրճի նուիրական վայրերն այս, ուր պէտք էր եւ պէտք է երկիւղածօրէն մօտենալ եւ պահել այս յիշատակարանները եւ յուշերը փառաւոր եւ անմոռանալիօրէն մեծ ու արժէքաւոր։ Գրեթէ այժմու նորոյթով հանդերձանք ու պերճանք, կանանցը մանաւանդ որ նաեւ հոլանի ու

*վարսերն այնքան քնքշութեամբ յարդարուած՝ ներկայի վարսայարդարներն իսկ զարմացնելու չափ:*

*Բէլլի ուլիդ դէմ յանդիման Կարկառի մեծ հսկայ ինքնածին ու քարածին Գայլ Վահանի իշխանափառ անուանի բերդն է, հոյակապ՝ արուեստի, ճարտարապետութեան գլուխ-գործոցներն են ներքնուղին՝ որ մինչեւ մեծ գետակին կը հասնի· երկրորդ՝ գանձարանը, որ քար իրանին ու որովայնին մեծ պատրաստուած, որուն ոչ ահեղ հրոսակները, եւ ոչ ալ օդային տորմիղները կրնան վնասել եւ ոչ բնութեան հնչեղ չանթ որոտները· իսկ գագաթի տափարակին վրայ կոփածոյ քարերով ջուրի աւազանները, չուրջի հովոցները եւ պարտէզները արքայական, որոնց մէջ դեռ Թզենին, նռնենին, Թթենին, եւ այլ անցեալ օրերու փառքը կը յիշեցնեն: Ամենանշանաւորը, խորհրդաւոր ու շատ արժէքաւորը բերդին միապաղաղ քարոքմին կողին վրայ, Բէլլի վեց արձաններու կնոջ արձանին նայող ճիշդ հսկայահասակ երիտասարդի մը քանդակուած արձանն է վիմափոր, արքայի Թէ իշխանի ու մեծ հրամանատարի մը բոլոր սպառազինութեամբը եւ պատգամներ արձակելու դիրքին մէջ դեռ կը նայի դարերով, ի՞նչ ըսել կ'ուզեն արդեօք իրաբու... այնքան խորհրդաւոր է նայուածք ու կերտուածք... կը հիանաս, կը պատկառիս, միեւնոյնատեն կը խոնարհիս»:*

Գաւառակի կեդրոնէն հարաւը 8 ժամ հեռաւորութեամբ «Խորէն» գիւղը կը գտնուի բերդի մը աւերակը, ուսկից մինչեւ Եփրատ ջրուղի մը շինուած է: Դարձեալ կեդրոնէն դէպի արեւելք 3 ժամ հեռաւորութեամբ «Բէլլիչ» գիւղին վրայ կը տեսնուի բերդակ մը: Հետաքրքրական է նաեւ ՇՈՒՄԱ լերան վրայի «Տըզըք» (Գողու ամրոց) ու ԱԼԻԴԱՄԸի առջեւ գտնուած «Գալէի ԿԱՋԸՔԱՆ» (Աղջկանց) բերդը:

Դարձեալ կեդրոնէն կէս ժամ դէպի հիւսիս խիստ ընդարձակ եւ բնական քարայր մը կայ, եւ Քեախդէի բերդին հանդիպակաց լերան վրայ, եւ ԱՍԿԷՐՈՒՆ, ՔԷՕՐԻԿՈՆ, ԹԵԼԼԷ, ԽԻԼՊԷՇ, ԵԷՆԻ ՇԷՀԻՐ գիւղերու, դարձեալ Շումա լերան մէջ հին ատեններ մարդոց բնակարան եւ ապաստանարան եղող շատ մը քարայրներ ու խցիկներ կը գտնուին:

Դարձեալ Կէրկէրի եւ Շերայ գիւղերէն, ինչպէս ԲԵՐԱՇԻ, ՊՈՒՐՃԻ, ՔՐԱՐԻ, ԹԻԹՐԷՆԻ, ԹԱՀՆԻՃԻ, ՊԻՊՕԼԻ, ԲԻԴՐԿԷԻ, ՍԻՆԱՆԻ եւ ուրիշ գիւղերու մէջ կը տեսնուին բերդերու, հին շէնքերու մնացորդներ եւն·:

ՀԱՆՔԵՐ·— Կէրկէրի ԳԱՐԱՆԿՕԼ եւ ԱՐՊԱՎՈՒՆ, ԹԷՓԷԽԱՆԻ, ԱԼԽԱՍ, ՔԷՕՐ ՄՍԹՕ գիւղերու մօտ կը գտնուին արծաթի, պղինձի, ոսկիի հանքեր:

ՏԶՐՈՒԿ·— Բէթրկէի մօտ 5000 մեթր երկայնութեամբ եւ 1200 մեթր լայնութեամբ մեծ լճակ մը եւ նոյնպէս ՄԱՄԱՇ գիւղի առջեւ պզտիկ լճակ մը կան, որոնց երկուքն ալ շատ տզրուկ կը պարունակեն իրենց մէջ, որ շրջակայ քաղաքները ու գիւղերը տանելով կը ծախուին:

*
**

Ինչպէս որ վերն ալ բսուած է, Քեախդա գաւառակին հիւսիսային մասը լեռնոտ եւ հարաւային մասը դաշտային է. դաշտերու հողը բերրի եւ արգաւանդ ըլլալով՝ երկրագործը չ'ամչնար հունձքի ժամանակ։ Լեռնաբնակ գիւղացիներն ալ իրենց ունեցած հողերը կը մշակէին։ Բայց այս վերջիններու մեծ մասը վաչկատուն ըլլալով՝ անասնաբուծութիւն է իրենց գլխաւոր զբաղումը, որ ամառը այս լեռներուն մէջ վրաններու տակ բնակելով՝ կ'արածեն իրենց ոչխարները ու արջառները, եւ որոնցմէ առած բուրդերով կը պատրաստեն կապերտներ ու զորգեր, խուրձեր ու զուլպաներ եւ կաթէն կը պատրաստեն իւղ, պանիր։

Աս գաւառակին ալ գլխաւոր բերքն ու արտադրութիւնն են արմտիք, բամպակ, մանած, իւղ, ծխախոտ, գլտոր, քիթրէ, մեղր, նուշ, նուռ, բուրդ եւն.։

*
**

Գաւառակին վերաբերող գիւղացւոց տարազին վրայ գրելու ատեն ըսինք, որ Քեախդա գաւառակին վրայ ըլլալիք տեսութեան ատեն կը գրենք։ Ուստի հոս կարգն է գրել թէ՛ անոնց եւ թէ Հիւսնի-Մանսուրի գիւղացւոց եւ բոլոր Քեախդայի վերաբերող գիւղացիներու զգեստին վրայ։

Առնենք, ընդհանուր առմամբ (բացառութիւնք կը գտնուին «Նէֆսը Շէբոյի» մէջ), այր մարդիկը ամառ-ձմեռ կը հագնին վարտիկ մը ու շապիկ մը եւ կոճակաւոր էնթարի մը ու *Թէկէլէ* ըսուած առանց թեւի թիկնոց, որ իրենց պատրաստածները պարզ եւ երկար կ'ըլլան, իսկ արհեստաւորներուն կարածներն բազմածախս բանուածքներով։ Ի հարկին ձեռք ու երեսներն սրբելու համար շապիկի թեզանիքը մինչեւ մեթր մը երկայնութեամբ կ'ըլլայ, որ գործի եւ ճամբորդութեան ժամանակ ծայրերը իրարու կապելով կռնակէն ուսերուն վրայ կը ձգէ, թեւերը մինչեւ արմունկները սոթտուելով բաց կը մնան։ Դաշտաբնակները ճերմակ խասայէ եւ միւսներն ալ կապոյտ (չիւիտ) կտաւէ մինչեւ ծունկերը ծածկող թեզանիքն ալ ազատ ձգուած ատեն մինչեւ ծունկերը հասնելու երկարութեամբ գպուններ ալ կը հագնին եւ մէջքերնին կը կապեն տեղական կամար գօտիներ։ Ոտքերնին կ'անցընեն ամառը շատ անգամ ՏԷԼԻՆՄԷՉ (անմաշելին, այսինքն բոկոտն) տեղական տրեխ ու ՆէՄԷՆԻ, իսկ ձմեռը եւ ցեխոտ ատեն ԽԱՄ ՉԱՐԸԽ ըսուածը։ Ձմեռնային ճամբորդութեան ատեն հետերնին կ'առնեն «Հետիկ» ըսուած մաղանման ոտնամանը, որ կապերով հիւսուած եւ ուղտի թաթուլին (ներբան) պէս տափարակ ըլլալուն, ձիւնին մէջ չի թաղուիր եւ երեսէն քալելու դիւրութիւն կու տայ։

Իսկ կիները կը հագնին առ հասարակ կտաւէ, կերպասէ եւն. պատրաստուած եռաքղանցք ՍԱԵԱՆ, առջեւն ալ կը կապուին մոմապատ գոգնոց մը։ Լեռնաբնակները հարսնութեան եւ մանկամարդութեան ատեն գը-

լուխնին կը դրուին հասարակ տեսակէն տասը մեծութեամբ եւ 50—60 սանթիմ երկարութեամբ, փէս մը՝ եզերքը կապելով սեւ կամ ոսկեթել ապարօշ, եւ վրան կը ձգուի ճերմակ քթան։ Թէ՛ ասոնք եւ թէ դաշտաբնակները առանց փէսի կը ձգուին․ քէթէնը եւ փաթաթը վրայէն կը կապեն։ Իսկ ոտքերնին կը հագնին կօշիկ եւ մուճակ։ Գլուխնին իբրեւ զարդ կը կախեն հին խոշոր արծաթ դրամներ, ուրիշ արծաթեղէններով։

Չմոռնանք քիւրտ այրերու գլխածածքը։ Երբ 2—3 տարեկան է, պարզ եւ լոկ փէս մը կը դրուի, վրան մէկ թեթեւ ՉԻԹ (կապ) մը կապելով։ Մինչեւ 10—15րդ տարին այդ չիթը կը կրկնապատկուի, բայց երբ առկէց կը յառաջանայ տարիքը, փէսին կը յաջորդէ երկար ու կոն թաղիք մը մէջը ճերմակ գդակով։ Մէկ անգամէն կը կապուի 10—20 հատ ՊԻՊԷՌԼԻ եւ ալմալի կարմիր չիթերն, պայմանաւ որ ամէն տարի մէկ—երկու հատ աւելցնէ անոնց վրայ։ Որ 40—50 տարեկան մէկուն գլուխը 70—80 մինչեւ 100 հատ չիթ փաթթուելով՝ թաղիքը կ'անհետանայ եւ պալարաւոր դդումի ահագին զանգուած մը կը դառնայ։ Եւ որովհետեւ հինը միշտ նորին տակը կը մնայ, մակաբոյծ կենդանիներ ապահով ճարակում մը կ'ունենան այդ չիթերու աշխարհին մէջ։





# Ե· ՄԱՍ

# ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԿԵԱՆՔ

## Ա.

## ԿՐՕՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### Ա — ԵԿԵՂԵՑԻՆԵՐ ԵՒ ԱՂՕԹԱՏԵՂԻՆԵՐ

Ընդունուած ճշմարտութիւն մըն է որ ուր որ Հայեր հաստատուած են, իրենց առաջին մտահոգութիւններէն մէկը եղած է ունենալ իրենց համար աղօթելու վայր մը, որ նոյն ատեն եղած է իրենց համար հաւաքավայր մը, ուր կը համախմբուէին եւ իրարու քով կու գային Աստուած փառաբանելու համար: Այդ աղօթավայրը որուն համար քաղաքի մը եւ կամ գիւղի մը մէջ ապրողը, Հայերը ամէնքն ալ հոգածու էին, կը դառնար իրենց հաւաքական կեանքին առաջին հիմը, վասնզի անոր հովանիին տակ կը պահէին հայ կրօնքը, հայ լեզուն եւ հայ աւանդութիւնները, որքան որ դժնդակ ըլլար այն պայմանները որոնց մէջ կ'ապրէին:

Մալաթիա, որ ամենահին ժամանակներէ սկսեալ հայ բնակիչներ ունեցող քաղաք մը եղած էր, անխուսափելի է որ պիտի ունենար հայ աղօթարան եւ հոգեւոր վարչութիւն, շատ կանուխ եթէ Օրթոդոքս Եկեղեցին՝ կոթնած Բիւզանդական պետութեան ոյժին տեսակ մը կրօնական բռնակալութեամբ եւ աններող խստասրտութեամբ հալածած չըլլար բոլոր Բիւզանդիոնի պատրիարքներու չհնազանդող քրիստոնեայ ազգերը եւ զանոնք զրեթէ բռնի օրթոտոքսացնելու նկրտած չըլլար: Հետեւաբար դժուար է մտածել թէ որչափ ատեն որ Մելիտինէ Բիւզանդական կայսրութեան տիրապետութեան տակ կը գտնուէր, Հայերը հոն համարձակած ըլլան եկեղեցական յատուկ համայնքային կազմակերպութիւն մը ունենալու, թէեւ բացարձակապէս ալ անկարելի չէր, քանի որ կը յիշատակուին վայրեր, որոնց մէջ, Հայեր ունեցած են իրենց յատուկ եկեղեցիները եւ իրենց Հայ հովիւները: Բայց ինչպէս կը տեսնուի Բիւզանդական եկեղեցին չէ հանդուրժած մինչ- Հայ Եկեղեցիին հետ համակեցութիւն մը ունենալու եւ Բիւզանդական պետութեան սահմաններուն մէջ Հայ առանձին համայնք եւ հոգեւոր վարչութիւն ստեղծելուն: Անշուշտ այս պատճառով Վասիլ Բ. (976—1025) սաստիկ հալածած է Հայերը, որոնք չէին հնազանդեր Կ. Պոլսոյ Յոյն Պատրիարքներուն: Այսպէս յատուկ կերպով կը յիշատակուի Մելիտինէն, Սեբաստիոյ հետ իբր քաղաքներ ուր Վասիլ Բ. գործադրած է սաստիկ հալածանք-

ներ, նահատակելով Հայ քահանաները եւ արգիլելով Հայ եկեղեցիներու կոչնակին ձայնը (Ստեփանոս Ասողիկ — տպ. 1859 էջ 188—9)։

Հետեւաբար Մելիտինէի մէջ Հայ եկեղեցի եւ Հայ եկեղեցական գոյութիւն եթէ ունեցած են, անոնք շատ քիչ են և հաւանական է որ ազատօրէն Հայ ծէսով պաշտամունք կատարելու ազատութիւնը ունեցած չեն։ Անոնք կամ գաղտնի գործած են կամ նպաստաւոր բացառիկ առիթէ մը օգտուած են — ինչպէս Արաբներու ժամանակաւոր դրաւումներու ատեն, հիմնելու համար Հայ եկեղեցի մը կամ ունենալու համար Հայ հովիւ մը իրենց գլուխը։

ԺԱ. դարուն երբ Սելջուկները Հայաստանը գրաւեցին եւ Փոքր Ասիա մտան, Վասիլ Բ. պարտաւորուեցաւ Հայերու դէմ հալածանքը դադրեցնել, որպէսզի Հայաստանի Հայերը Փոքր Ասիա տեղափոխէ, հոն դիւրաւ ձուլելու համար Բիւզանդականութեան մէջ։

Եւ ինչպէս տեսնուեցաւ, ան Հայաստանի արքայական տուները քաջալերեց տեղափոխուելու իրենց հետեւորդներով եւ մեծ թիւով ժողովուրդներով Փոքր Հայք եւ հոն կազմեց ծորտ Հայ թագաւորութիւններ, Մալաթիան այն քաղաքներէն մէկն էր որ այդ օրերուն պէտք է ընդունած ըլլայ ստուար թիւով հայ գաղթականներ, որոնք կրնանք ըսել թէ ինչպէս այլուր շինած էին աղօթարաններ, հոն ալ շինած պէտք է ըլլան իրենց յատուկ եկեղեցիներ։

Ասիկա կը հաստատուի պատմական անսուտ վաւերագիրներով, վասնզի կը տեսնուի յիշատակութիւնը նոյնիսկ ԺԱ. դարու Հայ կրօնական հիմնարկութիւններ, որոնց հաստատութեան ճշգուած թուականները դժբախտաբար չունինք։ Հետեւաբար առանց տարակոյսի կրնանք ըսել թէ ԺԱ. դարուն ունեցած են իրենց եկեղեցիները եւ անոնց շուրջը բոլորուող ծխական համայնքները։

Ասոնք մեր եկեղեցական վարչութեան մէջ ընդունուած վաղեմի կարգուսարքին համաձայն կը ներկայացնեն ինքնապահ միութիւններ, որոնց հաւաքականութիւնը կամ միացումը կը կազմէ եկեղեցական վիճակ մը կամ եպիսկոպոսական թեմ մը։

Ուստի առաջին ու նախնական կորիզը կրօնական կազմակերպութեան եկեղեցին է, իր նիւթական եւ բարոյական իմաստով, եւ առանց եկեղեցիներու գոյութեան կարելի չէ վիճակային կազմակերպութիւն մը երեւակայել։ Փոքր Ասիական գլխաւոր կեդրոններու Հայ գաղութները բոլորն ալ այս ձեւով կազմակերպուած եւ կազմած են եպիսկոպոսութիւններ, որոնց հիմը եղած է եկեղեցիները եւ անոնց կապուած ծխականները։

Մալաթիա ալ անշուշտ ընդհանուր այս երեւոյթին ենթարկուած է եւ հոն ալ առաջ շինուած են եկեղեցիներ եւ վանքեր, որոնք արդէն ԺԱ. դարէն սկսեալ կը յիշատակուին։

Իրենց նախնական շինութիւնները թերեւս աւելի կանուխ են, սակայն միայն ԺԱ. դարէն սկսեալ վաւերագիրներ ունինք եկեղեցիներու եւ վանքերու գոյութեան։

*Այսպէս, ձեռագիրի մը յիշատակարանը որոշ կերպով կը հաստատէ Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքը գոյութիւն ունէր երբ Հայ վանք* 1057 *թուականին եւ հոն գրչագրական աշխատութիւններ կը կատարուէին (տես վարը վանքերու բաժին, ինչպէս գրչագիրներու բաժինները)։*

*Դժբախտաբար վաւերագիրներու մէջ Մալաթիոյ վանքերու եւ եկեղեցիներու յիշատակութիւնը աւելի յաճախ կը դառնայ ԺԳ. եւ ԺԴ. դարէն սկսեալ, հակառակ անոր որ Մալաթիոյ գաւառը ինչպէս կ'երեւի, երբեմն շատ հարուստ եղած է եկեղեցիներով եւ վանքերով, որոնք կառուցուած են Հաւատացեալ ժողովուրդէն իբր կարկառուն փաստերը իր հաւատքին եւ իր սիրոյն՝ դէպի եկեղեցին։*

*Գէորգ Մելիտինեցի (Նախճիրներ* 1915–1918) *իր ծննդավայրին Հայ բնակչութեան եկեղեցասիրութեան վրայ խօսելով կ'ըսէ թէ* «դեռ նախապատերազմեան տարիներուն Մալաթիոյ Հայ ժողովուրդը ջերմեռանդօրէն կը հաւատար կրօնքին, եւ մեծ երկիւղածութեամբ կը գուրգուրար իր եկեղեցիներուն ու վանքերուն վրայ, իբրեւ սրբատեղիներ։ Եկեղեցին ու վանքը հաւատաւոր ժողովուրդին համար ապաշխարութեան, սփոփանքի եւ բժշկութեան վայրեր էին։ Առաւօտուան մթնշաղին, երբ կոչնակի հեռաւոր ու արձագանգող ղօղանջները տարածուէին հորիզոնէ հորիզոն, մութին մէջ տարածուող տուներու լուսամուտներէն նրագի աղօտ լոյսեր կը պլպլային, ապա դռներ ճռնչալէն կը բացուէին ու հաւատաւոր ժողովուրդը շարիշար կը դիմէր դէպի Աստուծոյ տունը, գիշերուան չարը խափանող աղօթքի մրմունջը շրթունքին։

Անբասիր մամիկը կմախացած, ծունկերուն վրայ չոքած Մայր Աստուածածնայ պատկերին առջեւ, սրբազան երկիւղածութեամբ կ'աղօթէր...։

Եկեղեցին ու վանքերը ժողովրդեան անմեղ հաւատքին մէջ բժշկութեան վայրեր են, տարիներ հիւանդութենէն տառապողներ վանք կ'երթային զանազան կենդանիներ ու թռչուններ ՄԱՏԱՂ ընելով աղքատներուն կը բաժնէին, ի գին իրենց բժշկութեան։

Լրումն եկեղեցւոյ, զանազան հաւատացեալներ իրենց մեղքերուն համար նուէր ընելով «Տէր Ողորմեա» կը խնդրէին, եւ ժողովուրդը «ի խորոց սրտի» կ'արտասանէր «Տէր Ողորմեան»։

Դեղնութիւն կոչուած հիւանդութենէն տառապողները Ս. Փրկչի եկեղեցին կ'երթային իրենց հետ տարած ամուր խաշուած հաւկիթներու ներմակը զատելով, հոն թաղուած սուրբի գերեզմանին հողին կը թաթխէին ու կ'ուտէին, իսկ դեղնուցը հոն կը թաղէին։

Ջերմէ տառապողներ Օրտուզիի Ջինարին մատաղ կ'ընծայէին, ու ջերմերնին կը կապէին այդ հսկայ ծառին...»։ (Նախճիրներ էջ 27–29)։

*Հետեւաբար եկեղեցիներու շէնքերը Հայ ժողովուրդին կեանքին մէջ տեղ մը գրաւած են, իբր թանձրացեալ խորհրդանշանները անոր հաւատքին։ Այդ եկեղեցիի շէնքերը նախ վրանով մը սկսան, յետոյ փայտաշէն մատուռ մը եւ վերջապէս քարուկիր հոյակապ կառուցուածքներու վերածուած, գրե-*

Թէ Հայաբնակ բոլոր վայրերու մէջ կը ներկայացուէին օրրանը այդ տեղերուն համայնքային կեանքին։

Եկեղեցին ուրեմն առաջին խարիսխն էր, որուն կը կապուէին տեղ մը հաստատուող Հայերը, իրենց համայնքային կեանքին սկիզբը։

Ուստի հարկ է իբր համայնքին կեանքին առաջին յիշատակները անոնց վրայ խօսիլ։

Ինչպէս յայտնի է Մալաթիա քաղաքը համեմատաբար նոր քաղաք մըն է, պարպաներուն բերմամբ հաստատուած, ԺԹ. դարուն առաջին կիսուն։ Քաղաքը նախ քան արդի Մալաթիայի, ուրիշ տեղ մը կը գտնուէր։

Հին Մելիտինէ համբաւաւոր քաղաքը հնագոյն դարերէ սկսեալ կը յիշուի (տես վերը էջ 402)։

Առաջին դարերու Մելիտինէի մէջ Հայ եկեղեցիներ գոյութիւն չէին կրնար ունենալ, քանի որ հեթանոսական շրջանին արդէն այդ քաղաքները լքուած էին։

Հիմա կան սակայն երկու վայրեր որոնք իրարու շարունակութիւնը կը կազմեն։ Առաջինը՝ ԱՇԱՂԸ կամ ԷՍԿԻ ՇԷՀԻՐ կոչուածն է եւ միւսը՝ ԱՐԴԻ ՄԱԼԱԹԻԱՆ։

Հայերը հաստատուած են հին քաղաքին մէջ, ինչպէս կը կարծուի ամենէն կանուխ է դարէն կամ աւելի հաւաստեօք Թ. եւ Ժ. դարերէն, բայց ազատօրէն միայն ԺԱ. դարէն սկսեալ պաշտամունքի ազատութիւն վայելած են. ուստի այդ դարուն է որ եկեղեցիներ հիմնած կրնան ըլլալ։

Կործանած այդ քաղաքի աւերակներուն մէջ կը յիշուէր իշարս ԱԼԱՃԱ ԴԱԲՈՒ, ԹՕՓ ԳԱԲՈՒ, ԻԿԻՏ ԳԱԼԷՍԻ եւ այլ պարիսպի մասերուն դուռ մը զոր տեղացիք ՋՈՐԴԸՐՍՈՒՍԻ[1] ԳԱԲՈՒՍՈՒ կը կոչեն։ Այս բառը ենթադրելով որ Ս. ԹՈՐՈՍի աղաւաղումն է, կը կարծուի թէ այս անունը տրուած է այդ դրան Ս. Թորոս անուն եկեղեցիի մը անունէն առնելով, սակայն բաւական թէական է, վասնզի եկեղեցիի հետքը չկայ եւ թէ աղաւաղումը բացատրելի չէ շատ։

Եթէ այդ անունով եկեղեցիի մը աւերակները կամ տեղը աւանդաբար ցոյց տրուած ըլլար, այն ատեն ալ հարց պիտի ծագէր թէ այդ Ս. Թորոսը յունական է՞ր, հայկական է՞ր թէ ասորական։

Հետեւաբար կարելի չէ զայն նկատել վստահութեամբ Հայկական եկեղեցի, մանաւանդ որ Մալաթիոյ եւ շրջակայքը գրուած բազմաթիւ ձեռագիրներուն յիշատակարաններուն մէջ յիշուած են կարգ մը վանքերու, եկեղեցիներու, մատուռներու եւ խորաններու անունները, որոնք դժբախտաբար բնաւ Ս. Թորոս չեն կոչուիր։ Միայն 1578ին Ագձա Տաղ Մուշեղկայ գիւղին մէջ գրուած ձեռագիրի մը յիշատակարանին մէջ կը յիշուի Ս. Թորոսի անունը ուրիշ հինգ Սուրբերու հետ, սա կերպով.

«Գրեցաւ Ս. Աւետարանս ձեռամբ Պօղոս եպիսկոպոսի յերկիրն Մելի–

(1) Գ. Մելիտինեցի կ'ուղղագրէ՝ Ջոր Տը Բօղ։

տնի ի գիւղն Մուշողկուն վանքն, ի դուռն Ս. Սարգսայ, և Սրբոյն Յակոբայ, եւ Ս. Թորոսու եւ Ս. Խաչատուրոյ եւ Ս. Կարապետի եւ Ս. Ստեփանոսի ի խնդրոյ բանի մղտեսի խօճայ Պակէ որդւոյն Կասպարին»:

*Նկատելով որ այս թուականէն երկու տարի առաջ* (1570) *նոյն գիւղին մէջ գրուած յիշատակարանին մէջ, գրիչը Գրիգոր եպիսկոպոս ձեռագիրը գրուած ցոյց կու տայ «Ի ԴՈՒՌՆ Ս. ՍԱՐԳՍԻ», պարզ է թէ եկեղեցին Ս. Սարգիս կը կոչուէր եւ միւս հինգ Սուրբերու անունով այդ եկեղեցիի շուրջ հինգ մատուռներ կամ Ներսը՝ հինգ խորաններ գոյութիւն ունէին, վասնզի անկարելի է մտածել թէ գիւղի մը մէջ վեց եկեղեցիներ շինուած ըլլային:*

*Ասկէ զատ յիշուած Ս. Թորոսը եթէ եկեղեցիի մը անունն էր, այդ եկեղեցին հին Մելիտինէի հետ չէր կրնար կապ ունենալ քանի որ Մուշեղկայ գիւղը հեռու էր հին Մելիտինէէն:*

*Հետեւաբար Մելիտինէի մէջ Ս. Թորոս անունով Հայ եկեղեցիի մը գոյութեանը վաւերական եւ անժխտելի փաստ մը չկայ եւ կասկածելի է, սակայն անժխտելի է որ հին քաղաքին մէջ գոյութիւն ունեցած էին Հայ եկեղեցիներ, որոնցմէ միայն մէկը կը մնար:*

*Անիկա էր Ս. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻՆ, որ ըստ Պէննէեան քհն.ի՝*

Կիսաքաղ կը գտնուի հին աւերակաց մէջ: 95էն առաջ հոս ալ 15—20 տուն հայ գտնուելով՝ ունէին իրենց յատուկ քահանան որ կանոնաւորապէս կը պաշտօնավարէր. եւ իր տունը եկեղեցւոյ շրջափակին մէջ էր: Շրջափակին մէջ կար 5—6 հատ սենեակներ ալ, ուր կը պատսպարուէին քաղաքէն գնացող ուխտաւորներ:

*Ս. Ստեփանոսի հիմնարկութեան մասին բան մը չենք գիտեր (Պէննէեան ձեռագիր էջ* 69):

*Հաւանօրէն այս եկեղեցին հնօրեայ շինութիւն մըն էր եւ թերեւս նոյնիսկ նախապէս յունական եկեղեցի մըն էր վասնզի* «ասդ անդ յունական գրեր կը նշմարուէին անընթեռնելի վիճակի մէջ»: (*Պէննէեան քհն. համառօտ էջ* 65): *Յ. Ն. Շէքէրճեան կը յայտնէ թէ ինքն կը յիշէ թէ գետնափոր այս եկեղեցիին աւերակը, որմէ ներս մուտք գտնելու համար, պէտք էր քարէ սանդուխներէ վար իջնել, ճրագներով մտնելու համար մութ շինուածքին մէջ: Այս եկեղեցին հին Մելիտինէի Հայոց կարեւոր մէկ սրբատեղին ըլլալ կը թուի վասնզի Պէննէեան քհն. իր ձեռագիրին մէջ կ'ըսէ թէ* «Տաճարին աջակողմեան պատին մէջ թաղուած կայ «Երանելի Կարապետ»ի գերեզմանը: Ասիկա 18րդ դարուն մէջ թուրքերու կողմէն խարոյկի վրայ նահատակուած է, ժամանակին եկեղեցպանն ըլլալով՝ Թուրքերու տաճարը քակել ուզելնուն դիմադրելուն համար: Որուն յիշատակութիւնը մինչեւ մօտ տարիներ ամանորի առտուն իբրեւ յայսմաւուրք կը կարդացուէր եկեղեցւոյ մէջ:

Գաւիթին մէջ ալ կը տեսնուին քանի մը վարդապետներու տապանաքարերն, որոնք նախընթաց դարու մէջ հովիւ կամ առաջնորդը եղած են այդ ժողովուրդին: Աս վերջիններէն մէկը. (Գէորգ վրդ.) կտակած է որ

զինքը հասարակաց գերեզմանատան մէջ թաղեն, մարգարէանալով կարծես, թէ՝ եկեղեցին շուտ կը քանդուի, բայց գերեզմանի քայքայումը ուշ տեղի կ'ունենայ :

Եկեղեցին հիմա զրկուած է արտաքին շէնքերէ եւ դուռը փակուած է քարերով : Իրեն սեպհական գետին մը ունի 2 արտավարի չափ : «Աւաղ փառանցս անցաւորի» :

*Հին քաղաքին կը մնար նաեւ հսկայական բարձր գմբէթով շէնք մը որ իբր մզկիթ կը ծառայէր իսլամներուն եւ կը կոչուէր* ԵՇԻԼ ՃԱՄԻ : *Մալաթիացիք համոզուած էին թէ այս բարձր գմբէթով շինութիւնը նախապէս Հայոց Մայր Եկեղեցին էր, սակայն փաստը կը պակսէր դժբախտաբար : Կրնայ ըլլալ որ Յունական կամ Ասորական եկեղեցի մը ըլլար ան :*

ԵՇԻԼ ՃԱՄԻԻ *գմբէթ կը կոչուէր* ՈՒՍՏԱ–ՇԱԿԻՐՏ ԳՈՒՊՊԷՍԻ (*վարպետ–աշկերտի գմբէթ*) : 1893*ին երկրաշարժին գագաթէն կը ճեղքուի եւ երկուքի կը բաժնուի եւ գլխաւորութեամբ Գէորգ Քէքէչեանի, հայ վարպետներու ձեռքով երկաթէ խոշոր ու ամուր օղակներու մէջ կ'առնուի, ճեղքերը կը փակուին, կը նորոգուի եւ այսպէս կը փրկուի շէնքը* (ՊԱՊ ՈՒԽՏԻ Ա. *տարի թիւ* 3, *էջ* 5) :

*Մելիտինեցի* (ՊԱՊ ՈՒԽՏԻ *թ.* 40 *էջ* 23) *կ'ըսէ թէ* «Ուլու Ճամին նախապէս եղած է յունական եկեղեցի եւ ապա Օսմանեան տիրապետութեան շրջանին վերածուած է մզկիթի : Պատեր զարդարուած են կանաչ, կարմիր, ու ներմակ, եռանկիւն ու քառանկիւն նուրբօրէն տաշուած քարերով, որոնք ցարդ անաղարտ կը պահեն իրենց գոյները» :

*Արդեօք* ԵՇԻԼ ՃԱՄԻՆ *եւ* ՈՒԼՈՒ ՃԱՄԻՆ *իրարու հետ շփոթուած չե՞ն :*

*
**

*Գալով Նոր քաղաքին որ ունի հազիւ* 120—130 *տարուան անցեալ մը, ունէր Հայադաւաններու յատուկ երեք եկեղեցիներ, որոնց մասին Պէննէեան քահանայ իր ընդարձակ տեղեկագրութեան մէջ կու տայ հետեւեալ տեղեկութիւնները, որոնք հոս մէջ կը բերեմ մի քանի փոքր ծանօթութիւններով :*

## 1 — Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ

*Այս եկեղեցին, որ Ս. Սարգիս անունով ալ յիշուած է, Մալաթիոյ առաջնորդանիստ Մայր Եկեղեցին էր : Հակառակ իր անունը փոխուած ըլլալուն, միշտ Ս. Սարգիս անունն ալ ժողովուրդին մէջ պահուած էր, այնպէս որ Սրուանձտեանց* (Թորոս Աղբար, Ա., էջ 319) *եւ Գէորգ Մելիտինեցի* (Նախնիքներ, էջ 85) 1878 *եւ* 1915—1920 *թուականներուն իր առաջին անունով կը յիշեն զայն :*

*Բրոֆ. Մկրտիչ Որբերեան այս երկանունութեան պարագան կը բացատրէ* (ԲԻՒՐԱԿՆ, 1900, *էջ* 87) *հաստատելով թէ Մայր Եկեղեցին կառուց-*

*ուած է* 1835*ին* «Նախկին Ս. ՍԱՐԳԻՍ անուամբ մատուռի մը տեղը»: *Կարապետ քահանայ Պէննէեան ալ առանց անոր անունը ճշդելու Ս. Աստուածածին եկեղեցիին տեղը մատուռ մը գոյութիւն ունենալը կը հաստատէ* (Ը., էջ 65), *ըսելով թէ* «Հին քաղաքը հոս չփոխադրուած, ներկայ տեղը փոքրիկ հողակոյտի մը վրայ կը գտնուէր պզտիկ մատուռ մը, բայց փոխադրութենէ անմիջապէս յետոյ, զայն քակել եւ բլրակը հարթելով միեւնոյն տեղը հիմնարկած են ներկայ եկեղեցին 1834ին[1] եւ սիւնազարդ եւ կամարածածկ: Տէր Մելքիսէդեկ անուն տեղացի քահանայ մը, իր անուան գրերը տողսկիզբ դնելով.
«Ի թուականիս յաքեթականի ի ԻԵ. յոբելեան հաշուի. Տուր ԼԴ.ն նախկին
«Վիճակի՝ կալեալ թիւն պարզել գտանի.
«Ը զլուխ տարից ակումբն գծողի գրոյս անուանն յիշի.
«Բոտել ըստ նոցա յաղթող կարգեալ սկզբանէ յամի.
«Մայր Ս. աթոռոյն կիլիկիոյ մեծի հայրապետութեան տեառն Միքայէլի.
«Եղեւ շինեալ եկեղեցին յանուն մօր տեառն Ս. Աստուածածնի,
«Լեալ Տեառնպաստ մի.ի արքիարեան մի.ի Գասպար ամիրայի.
«Քանզի երբեմն եղեւ ջատագով եւ Փիլիպեան Յովսէփ որ յարգի,
«Ի յեւդոկիա էր ի քաղաքէն եկեալ աստ զործովն արքունի.
«Սա արդեամբ, ծախիւք եւ ժողովրդոց կառուցեալ եղեւ ըստ ամենայնի,
«Եւ որոց վարձատրեսցէ տէր իւրաքանչիւրոց ըստ աշխատողի,
«Դատաւորն արդար ի գալ կրկնակի պահեսցէ հաստատ հիմն ի վիմի,
«Եղբարք սիրեցեալք սեւմ եղիցի, զի աղօթք բազմաց յետս ոչ դարձի,
«Կարես իմանալ այսր թուականի,
«Էր յունիս ամսոյն առաջին աւուրք,
«Հազար երկերիւր ութսուն եւ չորսի (1835)
«Շինումն դրան Սրբոյ տաճարին»:
ԽԱՉ օգնեա մեզ:

Ինչպէս որ արձանագրութենէն կը հասկցուի, եկեղեցիի շինութեան սատար հանդիսացած են Արփիարեան (Ակնցի) Գասպար եւ Եւդոկիացի Փիլիպեան Յովսէփ անուն մեծ անձնաւորութիւններ, որոնք կառավարական պաշտօնով հոս եկած էին, *Հաֆըզ կամ Րէշիտ փաշայի իբրեւ հետեւորդ*: Բրոֆ. Մկրտիչ Որբերեան ունի քանի մը մանրամասնութիւններ, զոր մէջ բերել աւելորդ չէ կը կարծեմ. «1820ին այն կողմերուն վրայ կարգուող առաջին ընդհանուր կուսակալ Րաշիտ փաշա իր հետեւորդներէն Ակնցի Թոփալ Գասպար ամիրայի հետ, երբ Մալաթիա գալով Հայոց եկեղեցին ալ այցելել ուզած է, Աղաները յայտնած են Ամիրային թէ տեսնելու արժանի եկեղեցի մը չունին, բայց Գասպար՝ ամիրաներու յատուկ հեռատեսութեամբ

(1 *Խաչատուր վրդ. Տէր Ղազարեան 21 Մարտ 1902-ին Օրմանեան Պատրիարքի ղրկած իր տեղեկագրին մէջ Բրոֆ Մկրտիչ Որբերեանի հետ 1835 կը նշանակէ շինութեան թուականը: Նոյնը կը հաստատեն նաեւ Գ. Մելիտինեցի* (Նախճիրներ, էջ 35) *եւ Քերովբէ Սուքիասեան, այսինքն երբ ՎԱՐԻ ԲԱՂԱՉԻ Հայերը տեղափոխուած են ՎԵՐԻ ԲԱՂԱՉ, որ մինչեւ այն ատեն կը նկատուէր ամառանոց:*

մը, օրին մէկը կ'առաջնորդէ փաշան դէպի մութ եւ անշուք մատուռը: Սա չախորժելով աղօթատեղիին խեղճ ու կրակ կերպարանքէն ու հասկնալով թէ ընկերական պայմանները զայն այդ վիճակին մէջ ձգած են, անմիջապէս հրաման կը հանէ քակել մատուռը եւ անոր տեղ փառաւոր ու աստուածավայել տաճար մը կանգնել (տես ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 87)։»

Ուրեմն Բրոֆ. Մկրտիչ Որբերեանն ալ կը հաստատէր նախապէս գոյութիւն ունենալը մատուռի մը, որ թերեւս երբեմն զինուորականութեան վայր եղող Նոր քաղաքին մէջ շինուած էր հոն ամառանոց գացողներուն համար:

Պ. Քերովբէ Թաշճեան, որ թոռնորդին է այս եկեղեցիին հիմնադիր Թաշճի Ահարոն վարպետին, այս եկեղեցիին շինութեան համար կու տայ մանրամասնութիւններ, զորս մէջ կը բերեմ առանց կարենալ հաստատելու անոնց ո՛ր աստիճան ստոյգ ըլլալը, քանի որ արձանագրութեան կը հակասեն մասամբ:

Ըստ Քերովբէ Թաշճեանի՝ իր նախնիքներէն իմացածին՝ հին Մելիտինէի ժողովուրդը հարկադրեալ, Նոր Մալաթիա փոխադրուելէն ետք, կը փափաքի որ Հին քաղաքին Ս. Ստեփանոս ծերունազարդ քահանան եւս փոխադրուի Նոր քաղաքը եւ իրենց հետ ըլլայ: Քահանան ժողովուրդին փափաքին գոհացում կու տայ եւ կու գայ Նոր Մալաթիա, եւ անմիջապէս կառավարութենէն հրաման կ'առնէ Շուկային թաղը եկեղեցի մը շինելու:

Այս եկեղեցիին հիմնադիրը կ'ըլլայ Թաշճի Ահարոն վարպետը: Քահանան կը փափաքի որ իր բնակարանը շատ մօտիկ ըլլայ եկեղեցիին, որպէսզի կարող ըլլայ ատենին գտնուելու իր պաշտամունքը կատարելու: Իր այս բաղձանքն ալ կը կատարէ ժողովուրդը, որ ջերմ փափաքով կառուցած էր իր եկեղեցին: Այնպէս ամէն ինչ կարգաւորուած ժողովուրդի հոգեւոր մխիթարութիւնը ապահովուած էր երբ Զարմուզի գտնուող գաղանային հրէշ մը յանկարծ լուր կը ղրկէ քահանային որ 24 ժամէն հեռանայ իր տունէն, որպէսզի տունին ետեւէն վազող ջուրը օգտագործելով, աղօրիք մը շինէ: Նոյնպէս այդ գաղանը հրաման կ'արձակէ Թաշճի Ահարոն վարպետին թէ տուն կանուխ իր ձեռքին տակը եղած թաշճիները հետն առնելով ջաղացքին համար քարեր բերել տայ աղօրիք մը կառուցանելու համար:

Ահարոն շատ մտահոգ կ'երթայ քահանային եւ զայն ալ կը գտնէ նոյնքան այլայլած եւ սրտնեղ, աղօթքի մէջ:

Ըստ Քերովբէ Թաշճեանի, հետեւեալ օրը արշալոյսին, Ահարոնեանի դուռը ափ առնելով՝ կը հաղորդեն թէ գիշերը գաղան Թուրքը յանկարծամահ եղած էր եւ իրենք ազատած էին:

Ահարոն վարպետ կը վազէ, կ'երթայ այս լուրը հաղորդելու ծերունի քահանային, որ գոհութիւն կու տայ Աստուծոյ այս պատուհասէն ազատելուն համար:

Ս. Սարգիս կամ Ս. Աստուածածին եկեղեցին այս կամ այն կերպ կը կառուցուի եւ անոր շուրջը կը կազմուին քաղաքին շուկան եւ Հայոց թաղին ծայրամասը:

*Քերովբէ Սուքիասեան կ'ըսէ թէ այս եկեղեցին հաստատուած էր ու-թը քարէ սիւներու վրայ, հարթ տանիքով՝ առանց գմբէթի։*

*Նոյնպէս զանգակատուն ալ չունէր, վասնզի մոլեռանդ Թուրքերը չէին թողուր «ՆԱՄԱԶ ՊՕԶՈՒԼՈՒՐ» ըսելով։*

*Ասոր համար փայտէ մուրճով մը (թոխմախ) առաւօտուն արշալոյսին ամէն Հայու դրան կը զարնէին այդ մուրճով, որպէսզի արթննան եւ երթան եկեղեցի։*

«Եկեղեցւոյն հիւսիսային պատի դուրսի կողմը կայ դամբարան մը, ուր ամփոփուած են միեւնոյն ժամուան մէջ վախճանեալ (1886 Յունուար 3) Առաջնորդ Սրապիոն Եպիսկոպոս Սապօնճեան կիլիկեցի եւ Տէր Յակոբ քահանայ Տ. Յակոբեանի մարմինները, եւ Մ. Յովհաննէս (Հաճի Փաշա) Կիւլպէնկեանի վաղամեռիկ դուստրը Օր. Իսկուհիիցայի (1887, Դեկտեմբեր 13ին)։

Մայր եկեղեցին ունի իրեն սեփական 40—50 խանութներ, որոնք շինուած են եկեղեցւոյն հարաւակողմեան պատին կից։ Այս եւ ուրիշ մի քանի խանութներու տարեկան վարձքը 200—220 ոսկիի կը հասնի։

Ներկայիս որմափակէն ներս ունի ներքնայարկ անշուք մէկ-երկու սենեակներ Առաջնորդին եւ քահանաներուն համար։

Եկեղեցւոյ արտաքին դուռը՝ «Վասն ահին...» շատ նեղ ու ցած շինուած էր կանխաւ։ Բայց Ոստոստոցի Առաքել վարդապետ Մազլըմեան (1860—72) իր առաջնորդութեան ատեն բարձր եւ փառաւոր դուռ մը շինել տալով՝ քակեց առաջինը։

1900ին Մայր եկեղեցին ունէր երեք քահանայ, որոնցմէ մէկն էր 1895ի ջարդերուն հերոսը, Տ. Եղիշէ քահանայ Խաչատուրեան, որ ամենէն զարգացած քահանան էր քաղաքին քահանայից դասուն» (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ, 87)։

## 2— Ս. ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻ

Ս. Երրորդութիւն եկեղեցին՝ շինուած է Հայոց կեդրոնին եղող Թէլ Չէշմէ կամ վարի թաղին մէջ։ Աջակողմեան մէկ մասուռով ունի խորան (երկու կողմինները երկյարկ) եւ է գմբեթաւոր եւ բարձրադիր։ 1893ի երկրաշարժէն գմբէթը ծանրապէս վնասուելով՝ քակուեցաւ ու պարզ ձեղունով մը ծածկուեցաւ մինչեւ 6—7 տարի։ Յետոյ 1905—7ին, Գէորգ վարդապետ Ասլանեան վերաշինել տուաւ գմբէթը ցրդին փայտէ։ Բայց եկեղեցւոյն մէջը դեռ ծեփուած եւ յատակը չէ տախտակամածուած։ Աւագ խորանին ու քովի խորաններու տակինները օժտուած են գեղակերտ եւ ոսկեզօծ խաչկալներով եւ սքանչելի բեմով մը։

Եկեղեցին հիմնարկուած է 1878ին[1] եւ լրացած 1893ին։ Ահա ասոր ալ արձանագրութիւնը.

(1) *Ըստ Բրոֆ. Մկրտիչ Որբերեանի եւ Գէորգ Մելիտինեցիի՝ շինուած է 1870-ին եւ տակաւին կիսատ էր 1900-ին (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 87)։ Խաչատուր Վարդապետ*

«Տաճար տէրունի եւ յարկ սրբութեան,
«Եւ տուն աղօթից փառաբանութեան,
«Կառուցեալ յանուն Ս. Երրորդութեան,
«Արդեամբ Մելիտինոյ ազգիս Արամեան,
«Ոն եկայք սիրով որդիք Հայկազնեան,
«Երգել աստ զփառս երբեակ Միութեան:»
1880ին — ՌՅԻԸին:

*Տոքթ. Մ. Քէչիչեան* (*Նոր ՄԱԼԱԹԻԱ*, *Բ. տարի Թ. 2, էջ 9*), *կ'ըսէ թէ* «սոյն եկեղեցւոյ հիմնարկութենէն մինչ գմբէթի բարձրացումը մեր ընդհանուր երկսեռ ժողովուրդը ինչ ֆիզիքական յոգնութեան եւ նիւթական զոհողութեան ենթակայ եղաւ, հիմունքը լեցունելու եւ ապահով ընելու համար պէտք եղած 3—4 մեթր երկայն եւ առնուազն 1—1,5 մեթր խոր թանձր քարեր քաղաքէն երեք քառորդ ժամ հեռու Զամազանկ կոչուած քարահանքէն, սայլերու վրայ դրած 25—50 հոգի չուաններով քաշելով կը բերէին, եւ ամբողջ հսկայ եկեղեցւոյ սոսկ տաշուած քարերը, կառուցումը մեր քարակոփ եւ բանուոր դասակարգի թափած հերոսական եւ անձնազոհ ջանքերու արդեամբ գլուխ ելաւ, կարծես մեր Հայութիւնը նախազգացումը ունեցած էր 96ի կոտորածի համար պատրաստելու իրեն եւ իրեններուն կեանքերը փրկելու համար անառիկ բերդ մը, անառիկ դիմադրելու թշնամի վայրագ եւ զինուած խուժանին եւ կառավարութեան թնդանօթներու ռումբերու դէմ, եւ իրապէս դեռ գմբէթը չաւարտած, գաւառներու մէջ ջարդը սկսած էր: Մելիտինէ անշուշտ բացառութիւն չէր կազմեր, բայց մեր աչալուրջ եւ խելահաս անձնաւորութեանց կարգադրութեամբ եւ որոշումով, եկեղեցին անմիջապէս բերդի մը երեւոյթը կը ստանար, զինուորական կարգապահութեամբ մի քանի ժամուան միջոցին, բոլոր թաղերու հայ բնակչութիւնը նախ ռազմամթերք, եւ յետոյ ուտեստեղէն առած, արդէն բոլորը ապաստան գտած էին եկեղեցւոյ մէջ, մօտ 12 հազար հոգի, այր եւ էգ, ծեր եւ երիտասարդ, մեր երիտասարդութիւնը իրնէ, ինծնէ քաջ, ու համարձակ եւ մանաւանդ մեծաւ մասամբ քաջավարժ նշանառութեան հերոսաբար դիրք բռնեցին եկեղեցւոյ գմբէթի շուրջ և պատուհաններու ետին, և քաջաբար կրակ բացին յառաջացող 20 հազարէ աւելի վայրագ քիւրտ եւ թիւրք խուժանի վրայ, գրնդակահարելով անոնց նշանաւորները, սարսափի մատնեցին բոլորը եւ կառավարութեան ուշադրութիւնը գրաւեցին:

Տէր Եղիշէն յանդուգն հերոս քահանան, առիւծի պէս մռնչալով հրամանն կը տեղար հայ երիտասարդութեան, կրա՛կ, մի՛շտ կրակ կը տեղային: Կառավարութեան կողմէ Հայոց մեծ գերեզմանատան բարձանց վրայ թընդանօթներ զետեղելով, եկեղեցիի մէջ՝ 12 հազար հայութիւնը բնաջինջ ընե-

---

*Տէր Ղազարեան ու Համաձայն Պէնճէեան քահանայի՝ եւ 1875-ին շինուած ցոյց կու տայ, իսկ Քերովբէ Սուքիասեան, չեմ գիտեր ինչո՛ւ, 1886-ին հիմնուած ցոյց կու տայ այս եկեղեցին:*

լու կրկնակի փորձերը անյաջող անցած էին։

Հայ հերոսները արդէն սպաննած եւ նախատած էին մի քանի տեղացի թիւրք եւ ստոր ղեկավարները։ Կառավարութիւնը զիջած ստորին կերպով, հաշտութեան համար Հայիմ Պէյ եւ Պեհեսնեցի Եաղուպ փաշան, ճերմակ դրօշ պարզած, Ս. Երրորդութեան եկեղեցի ղրկեց, ուր յիշեալները, իբր լիազօր կառավարութեան կողմէ, հաշտութիւն, խաղաղութիւն եւ ապահովութիւն խոստացան հայ հերոսներու եւ ժողովրդեան կեանքին, որով չորս օր գիշեր–ցերեկ մղուած հերոսական դիմադրութիւնը եւ պատերազմը ի վնաս խուժանին եւ ի մեծ վնաս կառավարութեան վերջացաւ»։

*Այս եղեռնին հետեւանօք եկեղեցիին լրացումը յապաղեցաւ։*

*Տակաւին 1912ին, Պէննէեան քահանայ կը գրէր թէ՝*

«Ս. Երրորդութեան եկեղեցւոյն շինութեան լրացումը, սակայն, դեռ տարիներու կը կարօտի, որեւէ կալուածք ու եկամուտ չունենալուն համար։ Իր շրջափակին մէջ ունի շատ անշուք յարկ մը, ուր կը պառկին քահանան ու ժամկոչը։ Այսու ամենայնիւ Մալաթիոյ արդի Հայը իր կեանքը սոյն եկեղեցւոյն կը պարտի։ Որովհետեւ 1895ի դէպքին 5–6000 հոգի հոս ապաստանելով, իբրեւ ամուր եւ անառիկ բերդ, դիմանալով այն անհամար խուժանին յարձակումներուն, փրկեց իր մէջինները, որուն համար «Նոյեան տապան» կ'անուանէին զինքը, իսկ Թուրքերը «ԹԱՇՔԻԼԻՍԷ» կը յորջորջէին։

*Եկեղեցւոյ շինութեան ճարտարապետը յոյն էր։*

*Ս. Երրորդութեան եկեղեցիին գմբէթին մէկ մասին միայն շինութիւնը կը կատարուէր 1912ին, վասնզի կործանած էր 1893ի երկրաշարժէն (Խաչատուր Վրդ. Տէր Ղազարեան) եւ 1895ի կոտորածին պատճառով շինութիւնը մնացած էր կիսաւարտ։ Տասը տարի ետքը, այսինքն 1905ին, ժողովուրդը դարձեալ ձեռնարկած է շինութեան եւ աւարտած՝ գմբէթ մը* (Նախճիրներ, *էջ* 36), *երեք խանութներու վերնայարկի եւ այլ ղարղարանքներու աշխատանքն հազիւ լրացած, վրայ հասաւ 1915ի մեծ եղեռնը։ Երրորդութեան եկեղեցին երկու քահանայ ունէր 1900ին* (*ԲԻԻՐԱԿՆ*, 1900, *էջ* 87)։ *Ասոնք ըստ Բրօֆ. Մկրտիչ Որբերեանի* «տրուելիք պաշտօնին մեծութիւնը չըմբռնող եպիսկոպոսներու ձեռնասուններն են» (*ԲԻԻՐԱԿՆ*, 1900, *էջ* 87)։

## 3 – Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ ԵԿԵՂԵՑԻ

ՉՈՒՔՈՒՐ ՏԷՐԷ կամ Տէրմէսիի ըսուած թաղին մէջ հաստատուած է գեղեցկադիր եւ գմբեթաւոր։ Հիմնարկութիւնը տեղի ունեցած է 1860[1]։ Որմափակին մէջ ունի երկու երեք հատ երկյարկանի սենեակներ, որոնց

---

(1) *Ըստ Գ. Մելիտինեցիի* (Նախճիրներ, *էջ* 36)՝ *մտաւորապէս 1840–1850 թուականներուն։*

ներքնայարկը յատկացուած է աղջկանց վարժարանին: Իսկ մանչերու համար առանձին միայարկ դպրոց մը շինուած է միեւնոյն շրջանակին մէջ:

Տաճարի դրան ձախակողմը թաղուած է ասկէց երեք տարի առաջ[1] Այնթապցի ողբացեալ Տոքթ. Գէորգ Գրաճեանը:

Տաճարի դրան վերեւ գրուած է.

«Կամօք Տեառն օժանդակեալ,
«Տաճարս այս եղեւ շինեալ,
«Ս. Յարութիւն վերաձայնեալ,
«Արդեամբ համայն ժողովրդեան»:

Այս եկեղեցիին դրան վրայ հնութիւն մը կար քարէ:

1860

*1900ին այս եկեղեցին ունէր միայն մէկ նորընծայ երիտասարդ քահանայ մը, Տ. Մեսրոպ, որ «թէեւ անպարզուն, բայց մտաւորական եւ կրօնական յառաջացումի բաղձացող է»* (*ԲԻՒՐԱԿՆ*, 1900, *էջ* 87):

*
**

*Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան* (*Ը.*, 53–54) *կը յիշէ նաեւ Մալաթիոյ մի քանի եկեղեցիները:*

*Այսպէս կը յիշէ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ժամը, քաղաքին վրայ համանուն դիրքին կեդրոնը տափարակ դիրքի վրայ կը մնար յարակից երկու եկեղեցիներու հիմունքը, որոնք հազիւ թէ երկու դար առաջ կործանուած են: Քաղաքին Ս. Յարութիւն եկեղեցիին շինութեան ատեն, ժողովուրդը հոս փոխադրած է անոնց պատերուն կարծր քարերը:*

*Նոյնպէս յիշեալ նահատակ քահանան իր տեղագրութեան մէջ* (նոյն, *էջ* 55) *Հայոց գերեզմանատան արեւելեան եզերքը կը յիշէ Ս. Օվանէս անուն եկեղեցի մը, որուն մնացորդները ցոյց կուտային:*

*Քիչ մը աւելի հեռաւոր վայր մը՝* Իզօղլուի Կեավուրան (*քրտ.* Հայք) *գիւղին մէջ կը տեսնուէր հին եկեղեցի մը եւ ընդարձակ գերեզմանատուն մը:*

*Մինչեւ ԺԶ. դարուն հայաբնակ էր: Յետոյ բնակիչները գաղթած են դէպի քաղաք: Անոնցմէ էին Մալաթիոյ Էմիրիկեանք եւ Ծերնիկեանք:* (*Պէննէեան Կարապետ քհ. նոյն Ը. էջ* 55):

*
**

*Մալաթիոյ մէջ* 1915*ի տեղահանութենէ առաջ գոյութիւն ունեցող երեք հայ եկեղեցիներն ալ հրովարտակ չունէին, վասնզի* 1895*ի ջարդին այրած կամ կործանուած էին ըստ Խաչատուր վարդապետ Տէր Ղազարեանի:*

---

(1) *Այսինքն՝* 1909*-ին:*

*
**

*Տ. Կարապետ քահանայ Պէննէեան այս եկեղեցիներէն պատ քաղաքէն դուրս ոեւէ եկեղեցի չկայ՝ կ՚ըսէ,* ՀԱՅ ԶԳՏՆՈՒԵԼՈՒՆ ՀԱՄԱՐ, *եւ բացառութիւն կը համարէ Օրտուզիի եւ հին քաղաքի* 8–10 *տուն Հայերը, որոնք եկեղեցի ունէին, ինչպէս ինքն իսկ կը հաստատէ, երբ կ՚ըսէ թէ Օրտուզիի* 10–12 *տուն Հայերը կ՚օգտագործէին իբր եկեղեցի Ս. Փրկիչ վանքը* (*Պէննէեան, քհն., Հ., էջ* 65) *եւ Զըրմըզտիի* 15–20 *տուն Հայերը ունէին Ս. Էջմիածին անուն* «ԿՈԿԻԿ ԵՒ ՍԻՒՆԱԾԱԾԿ ՓԱՅՏԱՇԷՆ ԵԿԵՂԵՑԻ ՄԸ», հիմնարկուած 1830ին, վերաշինուած 1870-ին, իսկ քանդուած 1895-ին։ Այս վերջի թուականին՝ երբ տեղւոյն այդ ափ մը Հայերը քաղաք փոխադրուեցան, Թուրքերը՝ գոնէ ատաղձէն օգտուելու համար քակեցին եւ գետնի հաւասար ըրին զայն, հիմա բաց գետին մը ըլլալով՝ մէջը գտնուած մէկ երկու տանձենիները վարձու կը տրուին ազգին կողմէ» (Պէննէեան քհն.,Ը.,էջ 69)։

1895-*էն առաջ հոն կ՚ապրէին* 15–20 *տուն Հայեր, որոնք լքեցին այդ գիւղը, եւ քաղաք ապաստանեցան, ապահով չհամարելով քաղաքէն դուրս այդ գիւղին մէջ բնակութիւնը։*

*
**

*Պէննէեան քահանայ թէեւ ըսած է թէ քաղաքին շուրջը Հայեր չեն բնակած, սակայն ինչպէս տեսնուեցաւ, Մալաթիոյ շուրջը կային հայաբնակ քաղաքներ եւ գիւղեր, որոնց վրայ խօսուած է վերը։*

*Սակայն կը կարծեմ թէ իմ թուածներս չեն միայն հայաբնակ վայրերը Մալաթիոյ։*

*Ինչպէս մեր օրերուն,* 1895–1896*ի դէպքերէ ետք, զանազան գիւղեր պարպուած են, աւելի առաջ խռովութիւններու եւ այլ տագնապներու, ինչպէս խժդժութիւններու, աւարառութիւններու եւ աւազակութիւններու հետեւանքով հայ գիւղեր պարպուած են եւ անոնց անունը իսկ մոռցուած է։*

*Անոնցմէ ոմանց անունը մնացած է ձեռագիրներու յիշատակարանին մէջ, ինչպէս հաւանօրէն* ԳԱՅԼԱԿԱՆՋ *գիւղը ԺԶ. դարու կէսերուն* (1560 *եւ* 1566 *թուականներով) կը յիշուի իր Ս.* ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏ *եկեղեցիին հետ։*

*Այս գիւղը, ինչպէս իր հայկական կոչումէն կրնայ մակաբերուիլ, զուտ հայ գիւղ մը եղած պիտի ըլլայ։*

*Նոյնպէս* ՍԱՐՈՒՃԱՆ, *որ* 1569*ին, եւ* ԵՂԵԳԱՅ ՁՈՐ, *որ* 1596*ին գրուած ձեռագիրներու մէջ կը յիշուին (վերջինը իր Ս.* ՍԱՐԳԻՍ *եկեղեցիով) եւ թերեւս ուրիշներ, որոնք նոյնպէս զուտ հայ գիւղեր ըլլալ կը թուին իրենց անունէն հետեւցնելով եւ որ այսօր բնաւ գոյութիւն չունին, հաւանօրէն ճէլալիներու ապստակութեանց օրերուն ամայացած ըլլալով, հետեւաբար կարելի չէ ըսել թէ Մալաթիա իր շուրջը հայ գիւղեր չէ ունեցած։*

***

*Հայադաւաններու եկեղեցիներու քով անցեալ դարու ընթացքին երեւան եկած են յարանուանութիւններու պատկանող աղօթարաններ*, «բաւական ընդարձակ գաւիթով եւ պարտէզով, եւ անոնց մէջ շինուած դպրոցներով եւ փառաւոր սենեակներով։

Կաթոլիկ Հայոց եկեղեցին կը գտնուի Հայոց Ս. Երրորդութեան եկեղեցւոյն վրայի կողմը, քարընկէց մը հեռուն, որուն հիմնադիրը եղած է[1] Ղեւոնդ եպս. Խոռխոռունի, բնիկ Սեբաստիոյ Բրգնիք գիւղէն։ Որ եւ թաղուած է իր շինած եկեղեցւոյն մէջ։ Սոյն եպիսկոպոսը իր կարգին ձեռնադրած է շատ մը վարդապետ – քահանաներ։ Որոնցմէ է արդի առաջնորդ Միքայէլ Եպիսկ. Խաչատուրեան, բնիկ Խարբերդի Մեզրայէն։ Ներկայիս (1912) մէջ կան երկու վարդապետներ ալ (Ղեւոնդ Խոռխոռունի եւ Յովսէփ Վրդ. Խաչատուրեան), որոնց երկուքն ալ բաւական հմուտ կրօնական եւ քաղաքական ուսմանց, գրեթէ իրենք կը վարեն իրենց դպրոցը։ Կաթոլիկներու եկեղեցին ալ 93ի շարժէն բաւական վնասուած ըլլալով՝ նորոգեցին, սակայն 95–ի դէպքին վառած առաջնորդարանի եւ այլ շէնքերու տեղ, ներկայիս աւելի փառաւորը շինելէ զատ, երկու տարի առաջ (1910–ին) կառուցին գեղեցիկ կուսաստան մըն ալ, ծախսելով 100.000 դրուշի մօտ դրամ։

***

Լատին Հայեր, որոնք արդէն աղքատութեան երեսէն գրեթէ յարած են այդ եկեղեցւոյն, հազիւ 10—20 տուն կան։ Եւ իրենք եկեղեցի եւայլն շինելու խպառ անկարող ըլլալուն, յայտնի է թէ Լատին միսիոնարը պէտք է շինէ։ Ուստի ասկէց իբր քառասուն տարի առաջ մուտ գտնելով հոս, անմիջապէս շինած են եկեղեցի եւ դպրոց։ Բայց 95–ի դէպքին բոլորովին այրած ըլլալով, նորը եւ ընդարձակը շինելու կարողացան, շնորհիւ եւրոպական կառավարութեանց եւ իրենց պատկանած ընկերութեան։ Ասոնց ալ եկեղեցին մօտն է Երրորդութեան եկեղեցւոյն։ Ներկայիս մէջ կայ մէկ փրանսացի քահանայ եւ մէկ սարկաւագ։

***

Բողոքականներն ալ կաթոլիկներու հետ միեւնոյն տարւոյն մէջ մուտ գտնելով հոս, ժամանակ մը այս ու այն թաղին մէջ տուն վարձելով՝ ազօթք եւ քարոզութիւն ընելէ յետոյ, ԽԱՐԱՉԱ ըսուած թաղին մէջ, օժանդակութեամբ Ամերիկեան միսիոնարութեան կանգնեցին բաւական փառաւոր,

*(1) Ըստ Գ. Մեւլիտինեցիի (ՆԱԽԾԻՐՆԵՐ, էջ 36) 1850 թուականներուն: Շաբաթապաշներ կային, որոնք մատուռ մը ունէին (սե՛ս Տոքթ. Միքայէլ Թեշիշեան, Պապ Ուխտի, թիւ 25, էջ 10)։*

այլ փայտաշէն ժողովարան մը եւ այլ շէնքեր: Որ ամբողջութեամբ այրեցաւ 95–ի դէպքին եւ կը մնայ մինչեւ հիմա (1912)։ Ներկայիս մէջ քանի մը ներկնայարկ ծածքեր կան, ուր կը լեցուին երկսեռ ուսանողները:

Բողոքականներուն 15—20 տարիներ երիցութիւն ըրած է Պատուելի Մարտիրոս Կիրակոսեան, որ 5—6 տարի առաջ ընտանեօք ԹԷՐՔԻ ԹԱՊԱ ընելով փոխադրուեցաւ Ամերիկա: Որուն յաջորդեց Պատուելի Տրդատ Թամզարճեան, որ սա ալ երկու–երեք տարի քարոզելէ յետոյ դադրեցաւ եւ հիմա Գերմանական որբանոցին հայրիկ եւ գործակալն է:

Տեղւոյս բողոքականներն 70—80 տունի չափ կան, որոնց մէջ մէկ երկու տուն Մկրտչական կենալու պէս, վերջերս 8—10 տուն «շաբաթականներ» ալ երեւան եկան, կրօնապէս արդէն շաբաթացած ժողովուրդը աղմկելու համար» (Պէնճէեան Ը․, էջ 69—72)։

## 4— ԱՆԾԱԾԿՈՅԹ ՍՐԲԱՎԱՅՐԵՐ

*Հայերը ունէին հին քաղաքին մէջ ընդարձակ գերեզմանատուն մը, շատ հնօրեայ, դուցէ հին քաղաքին չափ։*

*Իսկ* «Նոր քաղաքին մէջ կային Հայոց սեպհական երեք գերեզմանատուներ: Անոնցմէ մէկը «Ասպզըցոց գերեզման» բռուածն է, ուր այլեւս մեռել չթաղուելէ զատ, հսկողութիւն չկենալուն շուրջը գտնուած թուրք բնակիչներ բոլոր տապանաքարերն տանելով շինութեան գործածած եւ ճամբաներու ու կամուրջներու եզերքները շարած են, որով այսօր ոսկերոտիքը դուրս թափուած եւ վայրը աղբանոցի վերածուած է:

Սուլթան Մահմուտ կայսեր օրով, աքսոր դատապարտուած հռովմ․ Հայերէն, Սրմաքէշեանց տնէն երկու անձ հոս կը թաղուին: Անոնց տապանաքարերը Ղեւոնդ Եպիսկ․ Խոռխոռունի տանելով իրենց եկեղեցւոյ պատին մէջ կը դնէ:

Միւս երկու գերեզմանատուներէն մին ՔԻԼԼԻԿ եւ միւսը ԷՕՐԷՆ բռուած տեղը հաստատած են նոր քաղաք փոխադրուելնէն յետոյ: Աս երկուքէն ԷՕՐԷՆինը միայն ուր–տասը տուն հարուստներու վերաբերելուն՝ տեղացիք «Ազնուականներու Գերեզման» կ'անուանեն:

Յարանուանութեանց գերեզմանատուները ՔԻԼԼԻԿԻ գերեզմանատան կից ըլլալով՝ նեղ ճամբայով մը զատուած է իրարմէ:

Գերեզմանատանց եւ ոչ մէկը շրջապատ կամ ցանկ չունի: Ուստի զերծ չէ ամէն տեսակ աղտեղութենէ:

## Բ — ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆ

### 1. ԻՐ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ

*Մալաթիա շատ հին դարերէն սկսեալ հայաբնակ քաղաք մը եղած է, իսկ քրիստոնէութեան տարածուելէն ետք, քաղաքին հայ բնակչութիւնը այնքան մեծ եղած է որ ան հայկական երկիր նկատուած է:*

*Սակայն հայ հոգեւոր վարչութեան մը հաստատութիւնը յապաղած է, վասնզի Յոյները չէին հանդուրժեր որ իրենց քաղաքական վարչութեան տակ գտնուած տեղերու մէջ ոչ-յունադաւան եկեղեցականներ պաշտօրէն գործէին: Հակառակ ասոր Հայերը միշտ հետամուտ եղած են հոգեւոր կազմակերպութիւններ ունենալու* ( *Հմմտ. Ա. Ալպօյաճեան*, Պատմութիւն Հայ Գաղթականութեան, *Ա. հտ., էջ* 245—250, Պատմութիւն Հայ Կեսարիոյ, էջ 377—386 *եւ* 535—542, Պատմական Հայաստանի Սահմանները, էջ 43—44):

*Արդարեւ հաստատուն տուեալներ ունինք Սեբաստիոյ եւ Լարիսայի համար որ ունեցած են յատուկ Հայ եպիսկոպոսներ Ժ. դարուն* (Պատմութիւն Հայ Կեսարիոյ, էջ 905): *Հիմնուելով այս իրողութեան վրայ անհաւանական չէ որ նոյն պայմաններու մէջ գտնուող ուրիշ հայաշատ քաղաքներ ինչպէս էին Մալաթիա, Խարբերդ, Անտիոք, Տարսոն, Սուլընդա եւ այլ քաղաքներն ալ ունեցած ըլլան իրենց հայ եպիսկոպոսները* (*Հմմտ.* Պատմութիւն Հայ Կեսարիոյ, *էջ* 905): *Սակայն Մալաթիոյ հայ եպիսկոպոսներուն յիշատակութիւնը կը յապաղի մինչեւ ԺԲ. դարուն վերջին քառորդը՝ այսինքն* 1179, *ուր առաջին անգամ կը հանդիպինք վաւերագրեալ յիշատակութեանը Մալաթիոյ յատուկ հայ եպիսկոպոսի մը:*

*Սակայն ապահովաբար Մալաթիա աւելի կանուխ հայ կրօնական նուիրապետութեան պէտք է ենթարկուած ըլլայ եւ հայ եպիսկոպոս մը ունեցած ըլլայ, Սեբաստիոյ Ժ. դարուն եպիսկոպոսներուն ժամանակակից: Ասիկա կը հաստատէ կերպով մը Յովհաննէս Կաթողիկոս* (891—931) *իր պատմութեան մէջ, Ներսէս Պարթեւ Հայրապետին* (353—373) *գործունէութեան եւ Կ. Պոլսոյ տիեզերական ժողովին նուիրուած ԺԲ. գլուխին մէջ, ուր կը գրէ.* «Մերն թագաւոր Արշակ եւ նախարարութիւնք Հայոց համարձակութիւն առեալ կացուցին ի Պատրիարքութեան տանն Թորգոմայ զՄեծն Ներսէս փաստս իրաւախոհս ըստ արժանին ի մէջ առեալ զՍուրբ առաքեալսն զԲարթուղիմէոս եւ զԹադէոս, որք Ասքանազեանս ազին վիճակեցան ի Տեառնէ քարոզք եւ աւետարանիչք, եւ նշխարեալ ոսկերք նոցա կան ի միջի մերում զորոց եւ զաւառն իսկ ընկալ կենդանի մարտիրոսն Գրիգորիս: Եւ ապա խորհուրդն զգործն կատարեալ, եօթն միանգամայն բովանդակեալ գտանէր թիւ պատրիարքութեան, որ կայ եւ մնայ պահեալ մինչեւ յաւիտեանս ժամանակաց:

Եւ այսպէս ապա նահապետութեան խորհրդոյ եկեղեցւոյ ի մերում աշխարհի լրացաւ բովանդակաբար· ինն միանգամայն դասակարգութեամբ պատուեալ զգլխաւորս արք եպիսկոպոսացն Վրաց եւ Աղուանից արք եպիսկոպոս ընդ ձեռամբ նորա կարգեալ: Իսկ ի Սեբաստիա եւ ի ՄԵԼԻՏՆԷ եւ ի Մարտիրոսաց քաղաքին Մետրապոլիտս կացուցանէին: Իսկ եպիսկոպոսունս ապա ըստ որոշեալ վիճակացն իւրաքանչիւրոցն հաստատէին...» (*Պատմութիւն Յովհաննու կաթողիկոսի*, 1867, Երուսաղէմ, էջ 62—63):

*Այս տողերուն վրայ հիմնուած Հ. Վարդան Հացունի նոյնիսկ հայ մետրոպոլիտութիւն մը հաստատուած կը կարծէ Մեծն Ներսէսի օրերէ* (*տես* Կարեւոր խնդիրներ Հայ Եկեղեցւոյ պատմութենէն, 1927, *Վենետիկ, էջ* 172), *մինչ Հ. Սահակ Կոգեան* (*այժմ եպիսկոպոս*), *երեւակայութիւն կը կարծէ այս հաւաստումը*. «Կորիւնը լռութիւնը լաւագոյն եւ անհերքելի փաստըն» *նկատելով սա իրողութեան թէ*, «Մելիտինէ չունէր հայ եպիսկոպոս այն դարերուն» (Մելիտ, Մելիտինէ, Մալաթիա, *էջ* 15):

*Զմերժելով Սահակ Եպս. Կոգեանի այս փաստը, մանաւանդ նկատի ունենալով Յովհաննէս կաթողիկոսի եւ Ներսէս Պարթեւի ժամանակներուն միջեւ գոյութիւն ունեցող հինգ դարերու անջրպետը, կարելի է մտածել թէ Յովհաննէս կաթողիկոս այդ տողերը գրած էր իր ժամանակին Հայ Եկեղեցւոյ անկախութեան պնդումներուն ոյժ տալու դիտումով եւ հետեւաբար հաշիւ խառնուած էր այդ տողերուն:*

*Հետեւաբար կարելի է ժխտելի համարել Դ. դարուն հայ մետրապոլտութեան մը գոյութիւնը ի Մելիտինէ: Նոյնպէս մինչեւ Ե. դարուն կէսը, Քաղկեդոնի ժողովին ատեն* (451) *Հայերը չէին կրնար առանձին առաջնորդ ունենալ հոն, քանի որ Հայ Եկեղեցին քրիստոնեայ Տիեզերական Եկեղեցին մաս կը կազմէր եւ չունէր առանձին կազմակերպութիւն:*

*Մելիտինէ որչափ որ հայաբնակ էր վաղ ժամանակներէ սկսեալ եւ Ե. դարուն ալ հոն Հայեր կը բնակէին, սակայն եկեղեցին մէկ ըլլալով ստարանալու վրայ էր, կամ հետզհետէ Բիւզանդիոն փոխադրուելու եւ հոն Յունաց հետ ձուլուելու ենթակայ էին* (*Ն. Ադոնց*, Հայաստանն Յուստինիանոսի շրջանին, *էջ* 200 *եւ* 208):

*Այդ շրջանին կարելի է որ անխտրաբար, ինչպէս ուրիշ տեղերու համար պատահած է, հայ սերունդէ անձեր իբրեւ եպիսկոպոս Մելիտինէ հովուած ըլլան:*

*Ե. դարէն վերջը, ապահովաբար Թ. եւ Ժ. դարուն հայ եպիսկոպոս գոյութիւն պէտք է ունեցած ըլլայ Մելիտինէի մէջ, առանց որուն Յովհաննէս կաթողիկոսի տողերը անիմաստ եղած պիտի ըլլային:*

*Սեբաստիոյ եւ Լարիսայի հայ եպիսկոպոսներու գոյութիւնը այդ դարերուն գրաւական մըն է որ Մելիտինէ ալ ունեցած է իր հայ եպիսկոպոսները, որոնց անունները չեն պահուած դժբախտաբար մեր մատենագրութեան կամ յիշատակարաններուն մէջ:*

*Բիւզանդական պետութեան գործադրած հալածանքները, որոնք յի-*

ջատակուած են մեր պատմիչներէն, հաւանօրէն ինչպէս Սեբաստիոյ, նոյնպէս Մելիտինէի մէջ գործադրուած են եւ Մելիտինէ դատարկացած է Հայերէ, ինչպէս ինչ ինչ յիշատակութիւններէ կը հասկցուի:

Այս ժամանակամիջոցին գուցէ եպիսկոպոսներ այլեւս դոյութիւն ունեցած չըլլան:

Իսկ ԺԱ. դարէն սկսեալ երբ Հայաստան կը դատարկանար եւ Հայերը Եփրատի արեւմուտքը կը դիմէին, Մալաթիա վերստին հայաբնակ կը դառնայ, բայց հաւանական է որ անմիջապէս չէ ունեցած յատուկ հայ առաջնորդներ, քանի որ հայ գաղթականներուն հետ Ամենայն Հայոց Կաթողիկոսական աթոռն ալ գաղթական եղաւ եւ հաստատուեցաւ Մալաթիոյ մերձ վայրերու մէջ:

Այս պատճառով շատ հաւանօրէն Մալաթիա կերպով մը Տէրունի վիճակ կամ ուղղակի Ամենայն Հայոց Կաթողիկոսին հովուութեան ենթարկուած թեմ մը եղած պէտք է ըլլայ 1062–էն ետք երբ Ամենայն Հայոց Կաթողիկոսները հաստատուած են 1062–ին Թաւբլուր (Տարենտէի մօտ), 1065–ին Ծամնդաւ եւ Մուտառասուն եւ 1105–ին Քեսուն, ամէնքն ալ Մալաթիոյ մօտակայ վայրեր:

Գիտենք նաեւ որ Գրիգոր Վկայասէր (1065–1105) Ծամնդաւի մէջ կաթողիկոս օծուած է եւ իրեն աթոռանիստ ունեցած Պաղլահոյ վանքը (=Դրախտ Աստուծոյ), «ուր էին– ինչպէս կը գրէ ինքն– մեր սեփական պարգեւական եկեղեցիքն», որոնց շինութիւնը Գրիգոր Մագիստրոսի կ'ընծայուի: (Հ. Ներսէս Վրդ. Ակինեան, ՀԱ, 1952, էջ 482): Այս վանքը մէկն էր այն վանքերուն, որոնք մեծ մասով Հայերէ, Ասորիներէ եւ Յոյներէ բընակուած էին (Սիսուան, էջ 403–405 եւՀԱ, 1952, էջ 482) եւ եղած է ծաղկեալ դպրոց մը եւ մատուրական վառարան մը 1065–էն 1100 (ՀԱ, 1952, էջ 485): Վկայասէր մէկ տարի պաշտօնավարութենէ ետք երբ շրջագայութեան ելաւ Պոլիս, Եգիպտոս եւայլն, հոն նստաւ Գէորգ Լոռեցի (1067–1072) իբր աթոռակից եւ Գրիգոր Վկայասէր իր դարձին 1072–ին (Ազգապատում, էջ 1287) վանելով Լոռեցին ինքն դարձաւ միակ կաթողիկոս եւ բնակեցաւ այս անգամ Մուտառասուն (հիմա Մուտառասըն կամ Մէտէրէսին, մերձ Կէմէրէկի), ուրկէ անցաւ Սեւ լերան Արեգի վանքը եւ Քեսունի Կարմիր վանքը, ուր վախճանեցաւ 1105–ին եւ հոն իրեն յաջորդեց Գող Վասիլի իշխանութենէն հովանաւորուած Բարսեղ Անեցի (1081–ին ձեռնադրուած իբրեւ աթոռակից) եւ շարունակեց վարել Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը մինչեւ 1113 իր մահը:

Գրիգոր Վկայասէր 1072–էն 1105 գործնականապէս կաթողիկոսութիւն չէ վարած, վասնզի այդ շրջանին իրեն հետ կը յիշատակուին Ջահան դաւառի Հոնի քաղաքին մէջ (Մարաշի մօտ, այսինքն Եփրատացւոց մէջ) Նըստող Պետրոս Գետադարձի քեռորդին՝ Սարգիս Հոնեցի (1076–1077) եւ Թէոդորոս Ալախոսիկ (1077–1085) կաթողիկոսները Վկայասէրի իսկ հաւա–

նութեամբ օծուած եւ վերջապէս Մարաշի մօտ Պօղոս Վարագեցին (1085–1087), երեքն ալ Փիլարտոս իշխանապետին կամքով ընտրուած, իր իշխանութիւնը ամրապնդելու միտքով:

Բարսեղ Ա. Անեցի կաթողիկոսէն ետք ընտրուեցաւ Քեսունի Կարմիր վանքին մէջ Գրիգոր Գ. Պահլաւունի, որ Քեսունի լատին տիրապետութեան ենթարկուելէն վերջ փոխադրուեցաւ Ծովք գիւղակ, ուրկէ 1149-ին տեղափոխուեցաւ Հռոմկլայ, ո՛չ հեռու Եփրատացւոց շրջանակէն, ուր Հայք ջանացած էին տիրապետող դիրք գրաւել եւ երկրորդ հայրենիք մը կազմել:

Իբր հայրապետական աթոռավայր յիշատակուած այդ բոլոր վայրերը Մալաթիոյ այնքան մօտ էին —ինչպէս ըսի— որ հաւանօրէն ուղղակի կաթողիկոսին հոգեւոր իշխանութեան տակ կը գտնուէր Մալաթիա եւ իրմէ կը մատակարարուէին եկեղեցական գործերը: Ճիշդ ասոր համար է որ ապահովաբար Մալաթիա իր սեպհական առաջնորդները չէ ունեցած մինչեւ 1149, Հայոց կաթողիկոսական աթոռին փոխադրութիւնը ի Հռոմկլայ, որ բաւական հեռու էր Մալաթիայէն, եւ նկատելի է որ ճիշդ այդ շրջանին է որ կը յիշուի առաջին անգամ Մալաթիոյ յատուկ հայ եպիսկոպոս մը, որ 1179-ին կը մասնակցի Հռոմկլայի ժողովին: Ուրեմն շատ հաւանական է որ Գրիգոր Գ. Պահլաւունիի ատեն եւ աթոռին Հռոմկլայ տեղափոխութենէն անմիջապէս ետքը կազմուած է Մալաթիոյ յատուկ հայ հոգեւոր տեսչութիւն մը, այսինքն հայ առաջնորդութիւն մը:

Նախ քան ԺԲ. դար, Մալաթիա թէեւ կը հպատակէր նոյնիսկ հայ իշխաններու, ինչպէս Փիլարտոսի եւ Գաբրիէլ «Յոյն»ին, բայց շատ հաւանական չէ որ հայ եպիսկոպոս ունեցած ըլլայ, ո՛չ միայն անոր համար որ յունադաւանները թոյլ չէին տար, եւ Ամենայն Հայոց Կաթողիկոսի աթոռանիստ վայրը այնքան մօտ էր, այլեւ այդ շրջանին Ասորիները մեծամասնութիւն կը կազմէին քաղաքին մէջ եւ Մալաթիոյ Գաբրիէլ իշխանը եւ զայն նշանակողը այդ պաշտօնին՝ Փիլարտոս հայ իշխանապետը, երկուքն ալ յունադաւաններ էին եւ շատ հաշտ աչքով պիտի չդիտէին հայադաւան եպիսկոպոսի մը գոյութիւնը այս քաղաքին մէջ:

Բոլոր այս պարագաները նկատի ունենալով Մալաթիոյ հայ առաջնորդութեան հիմնարկութիւնը ԺԲ. դարէն առաջ կարելի չի թուիր, թէեւ նոյն շրջանակին մէջ արդէն ԺԱ. դարուն եկած հաստատուած էին Ամենայն Հայոց կաթողիկոսները, որոնք անշուշտ չէին կրնար անտարբեր մնացած ըլլալ Մալաթիոյ հայ բնակիչներուն հովուութեան, երբ այնքան մօտ էր իրենց նստոցը այս քաղաքին:

ԺԲ. դարուն Մալաթիոյ տիրող իշխանութիւնը ո՛չ հայկական էր, ո՛չ բիւզանդական եւ ո՛չ մահմետական, այլ լատինական:

Մալաթիա ենթարկուած էր Լատին Եդեսիոյ կոմսութեան, որ կը տարածուէր Մալաթիոյ, Սեվերեկի, Ուրֆայի, Մարաշի եւ Այնթապի շրջակայքը:

Եդեսիոյ Կոմսութիւնը Եփրատի ձախ կողմին վրայ կը պարունակէր

Մարտինի մօտիկ բոլոր գաւառը, Եդեսիոյ երկիրը, Թէլ – Կուրանի (Թլկուրան) եւ Թելայի (Tela) երկիրները, Տապաքթան (Ծղթան) նահանգը, որ կը տարածուէր Եդեսիոյ հարաւը, ինչպէս նաեւ Սրուճի բոլոր շրջակայքը, որ վաղեմի ժամանակներէ ի վեր նշանաւոր է իր պտղաբերութեամբ. (տես Բաբգէն Ա. Կաթողիկոս, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԿԻԼԻԿԻՈՅ, էջ 246, քաղուած E. Rey–ի **Les Colonies Franques de Syrie aux XIIme et XIIIme Siècles**, Paris, **1883** գիրքէն):

Գալով բնակչութեան՝ Եդեսիոյ կոմսութեան մէջ Լատինները սակաւաթիւ էին, իսկ տիրապետող տարրն էին Յակոբիկեան Ասորիք, որ հոգեւորապէս ենթակայ էին Անտիոքի Ասորի պատրիարքին, որ կը նստէր Կարկառի մօտակայ Ս. Պարսամի վանքը (հմմտ. Բաբգէն Կաթ., նոյն):

Երկրորդ տարրը Հայերն էին Եդեսիոյ կոմսութեան մէջ:

E. Rey-ի ուսումնասիրութեան համաձայն Եդեսիոյ կոմսութեան մէջ Լատինները հաստատած էին չորս լատին Արքեպիսկոպոսական աթոռներ. 1.— Եդեսիա, 2.— Տիւլիւք, 3.— Կիւրիս եւ 4.— Կերուպլը (Geruble):

Ասորի Յակոբիկեանք ունէին կոմսութեան սահմաններուն մէջ վեց եպիսկոպոսութիւններ, որոնք թերեւս կանուխ հաստատուած էին: Ասոնք էին. 1.— Եդեսիա, 2.— Մարէս (Մարաշ), 3.— ՄԱԼԱԹԻԱ, 4.— Սամոսատ եւ 6.— Սրուճ:

Ճիշդ այդ շրջանին Եդեսիոյ մէջ Հայերն ալ ունէին Արքեպիսկոպոսութիւն մը, որ ԺԲ. դարուն հաստատուած ըլլալ կը թուի, նոյնպէս Խաչակիրաց շրջանին, ԺԲ. դարուն:

E. Rey կը յիշէ թէ ԺԲ. եւ ԺԳ. դարերուն Եդեսիոյ Հայ Արքեպիսկոպոսը ունէր երեք օգնական (Suffragant) եպիսկոպոսութիւններ, որոնցմէ մէկն էր ՄԵԼԻՏԻՆԷ եւ միւս երկուքն էին Կապան եւ Կարկառ:

Ուրեմն կը հաստատուի օտար աղբիւրներով թէ Մալաթիոյ մէջ գէթ փոխ–առաջնորդութիւն մը հաստատուած էր ԺԲ. դարուն, ինչ որ կը հաստատեն հայ աղբիւրներ ալ, ԺԲ. դարուն, յիշելով Մելիտինէի հայ եպիսկոպոսները:

Եդեսիոյ Արքեպիսկոպոսին հանդէպ օգնականի կամ ստորադասի դիրքը հաւանօրէն պարագայական է եւ արդիւնք Եդեսիոյ լատին կոմսութեան կարգերուն:

Եդեսիոյ արքեպիսկոպոսը հաւանօրէն իր նստոցին կոմսութեան մայրաքաղաքը ըլլալու հանգամանքովը առած էր արքեպիսկոպոսական դիրք, հանդէպ կոմսութեան ենթարկուած հողերու մէջ հաստատուած հայ եպիսկոպոսութիւններուն, որոնցմէ Մալաթիոյ եպիսկոպոսութիւնը, ինչպէս վերը տեսնուեցաւ, առեղծուած էր հաւանօրէն այն ատեն, երբ Մալաթիոյ քաղաքային իշխանութիւնը Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան շրջանակէն դուրս մնացած էր:

Այսպէս, Մելիտինէի Հայերու յատուկ եպիսկոպոսութեան մը հաստա–

տութիւնը, բազմաթիւ պատճառներով, ԺԲ. դարէն կանուխ ժամանակի մը մէջ եղած ըլլալ չի թուիր:

## 2· ԻՐ ԴԻՐՔԸ ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՆՈՒԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ

*Ինչպէս տեսնուեցաւ Մալաթիա ԺԲ. դարուն իր առաջնորդութիւնը կ՚ունենար այնպիսի ատեն մը, որ Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը մէկ էր եւ նստոց ունէր Մալաթիոյ մօտակայ վայր մը:*

*Քաղաքին կարեւորութիւնը կը պահանջէր որ անիկա Արքեպիսկոպոսութիւն մը ըլլար, մանաւանդ որ Ասորիք հոն ունէին Մետրոպոլիտ մը, ինչպէս կը հաստատեն նոյնիսկ Ասորի ժամանակագիրներ, ինչպէս Բարհեբրէոս եւ Միքայէլ Ասորի:*

*Մալաթիոյ արքեպիսկոպոսները, որքան ատեն որ Ամենայն Հայոց Կաթողիկոսները բնակեցան Հռոմկլայ եւ Սիս, մնացին ենթակայ անոնց:*

1441*-ին երբ Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը կը վերահաստատուէր Էջմիածին, շատ հաւանօրէն Մալաթիա դարձեալ ենթակայ կը մնայ Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան:*

*Բայց երբ Կարապետ Եպս. Եւդոկիացի Սիսի աթոռը եկեղ. իշխանութեան ուժովը կը հաստատէ նոր կաթողիկոսութիւն մը՝ օգտուելով երկրին խառնակ վիճակէն եւ Էջմիածինի մէջ աթոռին շուրջը եղած պայքարներէն, անհաւանական չէ ենթադրել թէ Մալաթիա ալ հպատակած է Սիսի աթոռին,* 1447*-էն ետք, մանաւանդ որ Մալաթիա ալ նուաճուած էր եգիպտական սուլթանէն:*

*Կարապետ Եւդոկիացի՝ Մալաթիայէն զատ յաջողած էր իր իրաւասութեան ենթարկել նաեւ Կ. Պոլիսէն սկսեալ Փոքր Ասիոյ վիճակները, ինչպէս Սեբաստիոյ, Կեսարիոյ, Տիարպեքիրի եւ ամբողջ Կիլիկիոյ, Սուրիոյ, Պաղեստինի եւ Միջագետքի հայ եպիսկոպոսութիւնները:*

*Մերձաւորապէս* 40 *տարի ետք՝ երբ Ֆաթիհ Սուլթան Մէհմէտ Բ. Գարամանի տիրապետեց* (1482) *եւ Սուլթան Սելիմ Ա. Եաւուզ յաջողեցաւ եօթը տարուան* (1512-1519) *մէջ ամբողջ Կիլիկիան, Սուրիան եւ Միջագետքը, ինչպէս նաեւ Եգիպտոսը նուաճել, Կիլիկիոյ կաթողիկոսութիւնը իր գոյութիւնը պահեց, սակայն ժամանակի ընթացքին Թուրքիոյ Հայոց Ներկայացուցիչ Պատրիարքութեան ստորադաս համարուեցաւ, քաղաքային գործերու համար եւ Կիլիկիոյ բնական սահմաններէն դուրս՝ ակամայ Կիլիկիոյ միացած թեմերը վերստին Էջմիածնայ Աթոռին իրաւասութեան անցան, բացի Մալաթիայէն, Հալէպէն, Տիվրիկէն, Կիւրինէն, Տարենտէն եւ բոլորովին նոր հաստատուած Եօզկատի թեմէն:*

*Մալաթիա մնաց Սիսի աթոռին ենթակայ, եւ կը կազմէր ապահովաբար մին այն* 24 *եպիսկոպոսական վիճակներէն, որոնք ըստ ԺԶ. դարու Ունիթոռ Ժամանակագիրի մը եւ ԺԷ. դարուն սկիզբները Սիս այցելող եւ Ազարիա կաթողիկոսին* (1584−1601) *հետ տեսնուող Լէոնարդոյ Պալին Նուիրակ*

եպիսկոպոսին, գոյութիւն ունէին, թէեւ Մալաթիան յատուկ յիշուած չէր:

Զարմանալի է որ ԺԷ. դարուն սկիզբները, 1613 թուականին, Սիմէոն Լեհացի դպիր իր Ուղեգրութեան մէջ թէեւ կը խօսի Մալաթիոյ վրայ (տես Սիմէոն Լեհացի, էջ 189—195), բայց բնաւ չի յիշատակեր եպիսկոպոսի մը գոյութիւնը քաղաքին մէջ:

Կ'երեւի թէ Մալաթիա ճելալիներու ապստամբութեան հետեւանքով, բոլորովին աւերուած էր, վասնզի Սիմէոն դպիր Լեհացի կ'ըսէ թէ միայն «հարիւր տուն Հայ» կար քաղաքին մէջ եւ «30 տուն Հայ»՝ Ասպուզ գիւղն որ ամարանոցն էր Մալաթիացիներուն:

Հակառակ անոր որ Սիմէոն Դպիր կարաւան գտնելու համար պարտաւորուած է հոն մնալ երկու շաբաթ (տես նոյն, էջ 190), բնաւ անոնց եկեղեցական վարչութեան վրայ չի խօսիր:

Նոյնքան զարմանալի է որ աւելի ուշ, առնուազն ԺԷ. դարու կէսերուն, Ոսկան Երեւանցի եպիսկոպոսի 1614—1674 կազմած մէկ վիճակագրութեան մէջ Կիլիկիոյ կաթողիկոսութեան ենթակայ եպիսկոպոսներու մէջ չէ յիշուած Մալաթիոյ եպիսկոպոսութիւնը (տես. M. Benois, Dictionnaire de géographie sacrée et ecclesiastique, Paris, Migne, 1854, Ա. հտ. էջ 823, նաեւ Ալիշան ԱՅՐԱՐԱՏ, էջ 231 եւ Օրմանեան ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 2546—2549) հաւանօրէն մոռացմամբ, վասնզի 1633-ին Մալաթիա Արքեպիսկոպոս առաջնորդ մը ունէր:

Ամէն պարագայի մէջ հաստատուն փաստեր ունինք որ ԺԶ. եւ ԺԷ. դարերուն Մալաթիոյ հայ եպիսկոպոսները ենթակայ էին Կիլիկիոյ կաթողիկոսութեան, վասնզի այդ դարուն Մալաթիա գրուած ձեռագրաց յիշատակարաններուն մէջ գրիչները Կիլիկիոյ կաթողիկոսներուն անունները կը յիշեն առանց Ամենայն Հայոց Կաթողիկոսներուն յիշատակութեան: Այս կապը Կիլիկիոյ աթոռին հետ պահուած է մինչեւ 1916, Մալաթիոյ հայարնակութեան բնաջնջումը:

Հայ Նուիրապետութեան մէջ, ինչպէս Կիլիկիոյ Կաթողիկոսութեան աթոռին իրաւասութեան տակ գտնուող բոլոր թեմերը, կը կառավարուէին հոգեւոր պետով մը որ կը կոչուէր Առաջնորդ: Այս պետը կ'ընտրուէր Սահմանադրութեան սահմանած եղանակով Թուրքիոյ բոլոր Առաջնորդներուն պէս թեմին Գաւառական Ժողովէն: Հաստատութիւնը Կիլիկիոյ Կաթողիկոսին եւ վաւերացումը եւ Պերաթներու ստացումը Կ. Պոլսոյ Պատրիարքարանը կը կատարէր:

1841—1848 թուականներուն Մալաթիոյ Առաջնորդութիւնը իր յարակից գաւառներով՝ Եդեսիոյ Առաջնորդութեան կցուած է եւ այս կերպով Էջմիածինի Աթոռին իրաւասութեան ենթարկուած է, սակայն յետոյ կրկին Կիլիկիոյ աթոռին յանձնուած է Եդեսիայի թեմէն անջատուելով:

Մալաթիա, Կիլիկիոյ Կաթողիկոսութեան ենթակայ ամենէն գլխաւոր թեմերէն մէկը կը ներկայացնէր: Այսպէս, վիճակային նոր բաժանումներու եւ բարեկարգութիւններու առեն Մալաթիոյ Առաջնորդութիւնը պահած էր իր առաջնակարգ դիրքը:

1851ին *Սիսի վանքին համար կազմուած է կանոնագիր մը.* «Կանոնագրութիւն Սսոյ վանուց ի բարեկարգութիւն Ս. Աթոռոյն Կիլիկիոյ, տնօրինեալ ըստ խնդրոյ Աւագ Հոգաբարձուի (միւթէվէլլի) Քրիստոսասէր Կարապետ Ամիրայի Պալեան ճարտարապետի Օսմանեան Պետութեան», 1851)։ *Այս կանոնագիրին մէջ ըսուած է որ Կիլիկիոյ Կաթողիկոսութեան թեմերը 10–ի բաժնել «վայելուչ», «չահաւէտ» եւ «օգտակար» երեւալուն, այդպէս տնօրինուեցաւ։ Այդ տասնէն 7րդը Մալաթիան էր իրեն ենթակայ ունենալով Պեհեսնիի, Ատըեամանի եւ Պերէճիկի*[1] *թեմերը։*

*Սակայն յայտնի չէ այս կարգադրութիւնը գործադրուա՞ծ է թէ ոչ։ Ամէն պարագայի մէջ անիկա Կիլիկիոյ աթոռին կարեւորագոյն թեմերէն մին ըլլալէ չէ դադրած։*

## Գ — ԹԵՄԱԴՐՈՒԹԻՒՆ

*Մալաթիոյ առաջնորդութիւնը, ինչպէս տեսնուեցաւ, հաստատուած կրնար ըլլալ ամենէն կանուխ Ժ. եւ ամենէն ուշ ԺԲ. դարուն։*

*Դժբախտաբար իր ընդարձակութեան եւ տարածութեան վրայ որոշ տուեալներ չունինք հին ժամանակներէ եւ այս մասին լուսաբանութիւններ տուող վաւերագիրներ կը պակսին։ Ըստ Գերպ. Անդրէաս Վրդ. Աղեքսանդրեանի (տես* Պատմութիւն Ականաւոր քաղաքին Սեբաստիոյ եւ սահմանաց նորա կամ արքեպիսկոպոսութեան նորին, 1911, *էջ* 391—2)։

«Եկեղեցական հին բաժանումին հետեւելով, Մելիտինէ իր մետրոպոլտութեան ներքեւ ունէր Կոմանա, Կոկիսոն, Արիարաթիա եւ Կիթարիձոր, որոնք փոքր Հայոց մաս կը կազմէին, նաեւ Սոփենէ (Ծոփք) եւ Տիոսպոլիս, որոնք Չորրորդ Հայոց կը պատկանէին։

«Իսկ այժմեան[2] գաւառին եւ եպիսկոպոսութեան գալով՝ այդ երբ քաղաքներէն եւ ոչ մին կը վերաբերի արդի Մալաթիա գաւառին, ոչ եկեղեցականապէս եւ ոչ քաղաքականապէս, բայց այս կորսուած մասին փոխարէն իր գաւառէն մնացած մասին հարաւակողմ ստացած է բաւական տեղ Հին Կոմագէն (Կոմագինէ), որ եւ Եփրատացիք (Եփրատիսդան) անուանուեցաւ, եւ ասոր հիւսիսային արեւելեան մասն է որ միացած է Մելիտինէի եպիսկոպոսութեան եւ արդի Մալաթիա գաւառին հետ, որոնք ճշդիւ նոյն սահմանները կը պահեն։

Մելիտինէ պահած է հին քաղաքներէն կեդրոնն իր ամբողջ սահմաններովը եւ Առկա քաղաքն, իսկ Կոմագէն ստացած տեղերն են, Բերրաւ (Հասան Մանսուր), Սամոստիա (Սամսատ), Եւայլն, որոնք ժամանակին եպիսկոպո–

(1) Պերէճիկ Եփրատացւոց այս քաղաքը զարմանալի է որ Մալաթիոյ կցուած է։ Առաջ Նիկոպոլի. Էշնէշի եւ Հռոմկլայի հետ Այնթապի թեմերէն մին էր։ Վերջը կցուած էր Ուրֆայի Առաջնորդութեան։ Պիր կամ Պիրէճիկ հին Ապամիա կամ Արամէոս Զեւգման է, որ նաեւ Պէորթիա եւ Պիր կոչուած է։

(2) Իմա ԺԹ. դարուն։

տակաճ աքոռներ էին Եփրատացւոց աշխարհին մէջ :»

*Ըսուածներուն առաջին մասը, որ եկեղեցական հին բաժանումներու կը պատկանի, ըստ Գերպ. Ալեքսանդրեանի, Հայաստանեայց Եկեղեցիին թեմայրութեան հետ կապ չունին ուղղակի եւ կը պատկանին կարծեմ նոյնիսկ Հայ Առաջնորդութեան կազմութիւնը կանխող շրջանի մը:*

*Իսկ ԺԱ. դարուն նոյնիսկ կարելի է պնդել թէ Մալաթիա թեմայլուխ չէր, այլ ենթակայ ուղղակի Սեւ Լեռ, Թալըլուր, Ծամնդաւ, Մանտատասուն եւ Քեսուն նստող Կաթողիկոսներուն, որոնք հոն եպիսկոպոսական աթոռ մը կազմակերպելու պէտք չունէին եւ ուղղակի իրենք կրնային հովուել, ինչպէս բացատրուեցաւ վերը:*

*Մալաթիոյ Առաջնորդութիւնը ԺԲ. դարուն կազմուելէ ետք, պէտք չէ ենթադրել թէ ընդարձակ շրջանակ մը ունէր: Թերեւս քաղաքը եւ անոր շուրջը գտնուող մի քանի վայրեր կը կազմէին Մալաթիոյ Առաջնորդական թեմը, որ Կիլիկիոյ աշխարհագրական բնական սահմաններէն դուրս կը գտնուէր, եւ առանց տրամաբանական պատճառի մը կապուած մնացած էր Կիլիկիոյ Կաթողիկոսութեան, որուն ամենէն կարեւոր վիճակներէն մէկը կը կազմէր:*

*Մալաթիոյ Առաջնորդութիւնը վերջին երեք-չորս դարերու տեւողութեան զանազան փոփոխութեանց ենթարկուած է հաւանօրէն:*

*Նախ Մալաթիոյ շուրջը կը գտնուէին ուրիշ հայ Առաջնորդութիւններ, որոնք հետզհետէ Մալաթիոյ ենթարկուեցան եւ կազմեցին Առաջնորդութիւն մը, որ կ'ընդգրկէր Թուրքիոյ Հանրապետութեան արդի Մալաթիոյ կուսակալութիւնը, որ կը համապատասխանէ նախ քան Հանրապետութեան օսմանեան կայսրութեան շրջանին Մամուրէթ իւլ Ազիզ կուսակալութեան Մալաթիոյ սանճագին (միւթէսարրըֆութեան), բաժնուած հինգ գաւառներու (գայմագամութեանց), որոնք էին.*

1.— Մալաթիա
2.— Պեհեսնի
3.— Հիսնի Մանսուր կամ Ատըեաման
4.— Քեախթէ
5.— Հէքիմ խան

*Մալաթիոյ արդի կուսակալութեան այս հինգ ստորաբաժանումներուն կեդրոններէն մէկ քանին երբեմն եղած են անջատ առաջնորդութիւններ եւ ապա Մալաթիոյ առաջնորդութեան ենթարկուած են ժամանակի ընթացքին: Անոնք թերեւս աւելի հին են իբր առաջնորդութիւն քան Մալաթիա:*

*Արդ կ'արժէ ներկայացնել անոնց մասին մեր ունեցած տեղեկութիւնները:*

*Ա.— ՊԵՀԵՍՆԻ, որուն շուրջը համախմբուած հոգեւոր կեդրոնը ըլլալու փառքը առաջին անգամ ունեցած է Գող Վասիլի իշխանապետութեան մայրաքաղաքը՝ Քեսուն կամ Քեսոն քաղաքին մօտերը շինուած Կարմիր Վանքը:*

*Այս վանքը որ ԺԱ. դարուն մէջ յանկարծ փայլ առաւ եւ իր վանահայ–*

բերը իբր հովիւ ժողովրդեան կամ առաջնորդ, իրենց հոգեւոր իրաւասութեան ներքեւ ունէին Մարաշը, Քեսունը եւ շրջակայ այլ տեղերը, որոնք Կիլիկիոյ սահմաններուն մէջ կը գտնուէին եւ հոն հաստատուած հայ անկախ Թագաւորութեան մը առաջին օրօրանը կազմած էն:

Մալաթիա ԺԱ. դարուն իսկ իր քաղաքային եւ կրօնական վարչութեամբ հայաշատ շրջանակէն հեռու կը մնար եւ ասոր համար է որ երբ Քեսունի Կարմիր Վանքին թեմ չէ յիշուած Մարաշի հետ: Հետեւաբար տարակուսելի է Մալաթիոյ ուղղակի այս հոգեւոր կեդրոնին կապուած ըլլալուն պարագան:

Քեսուն եւ իր Կարմիր Վանքը, գտնուելով շատ մօտ ՊԵՀԵՄՆԻ կամ ՊԵՀԵՍՏԻՆԷԻ, Մալաթիոյ առաջնորդութեան ենթակայ այս քաղաքը որ Մարաշի հետ թեմ էր Քեսունի վանքին, աւելի Մարաշի հետ կապ ունեցած է, քան Մալաթիոյ: Մարաշ-Պեհեսնի կազմած են առանձին առաջնորդութիւն մը անջատ Մալաթիայէն:

Պեհեսնի յետոյ միջոց մըն ալ կը կարծուի թէ մաս կազմած է Եփրատացւոց թեմին (Պիր-Պիրեճիկ), Հռոմկլայ (Հռոմկլայ), եւայլն, որուն մասը կրնայ համարուիլ աշխարհագրական դիրքով ու մերձաւորութեամբ: 1841—1848, Պեհեսնի, Մալաթիոյ եւ Հիսնի Մանսուրի հետ կապուած է Եդեսիոյ առաջնորդութեան, որմէ անջատուելէ ետք ենթարկուած է Մալաթիոյ առաջնորդութեան:

Իսկ 1867-ին, Պեհեսնի, Հիսնի Մանսուրի (Ատըեաման) հետ Պատրիարքարանի կարգադրութեամբ Մանճըլըգի վանահօր իրաւասութեան ենթարկուած են, բայց այս կարգադրութիւնը տեւական չէ եղած:

1883-ին Մկրտիչ Կաթողիկոս Քեֆսիզեան, Պեհեսնին անջատ առաջնորդութեան մը վերածելու խորհուրդը յղացած է, սակայն այս կարգադրութիւնը միայն քանի մը տարի տեւած եւ Մալաթիոյ առաջնորդութեան միացուած է կրկին:

Բ.— ՀԻՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ կամ ԱՏԸԵԱՄԱՆ ալ երբեմն անջատ առաջնորդութիւն ունեցած է:

Ոմանք կը կարծեն թէ այս քաղաքին կը վերաբերի Հարդունի կամ Հարքանի եպիսկոպոսութիւնը, որ ոմանք Հարզան ալ կը կարդան:

Բանասէրներ համաձայն չեն այս նոյնացման, վասնզի Հարթանը ոմանք կը պնդեն, թէ հին Հաճընն է, ինչ որ աւելի հաւանական կը թուի:

Այս ենթադրութեան ոյժ կու տայ Հիսնի Մանսուրի աշխարհագրական դիրքը, որ Եփրատացւոց աւելի մօտ է եւ անոր կցուած կրնար ըլլալ:

Ինչպէս տեսանք Հիսնի-Մանսուր Պեհեսնիի հետ Մանճըլըգի վանահօր հոգեւոր խնամքին յանձնուած էր միջոց մը:

1887-ին Մկրտիչ Քէֆսիզեան կաթողիկոս պահ մը անջատ առաջնորդութեան մը վերածած է Հիսնի-Մանսուրը, բայց 1891—92ին, Պեհեսնիի պէս կցուած է Մալաթիոյ առաջնորդութեան, որուն վիճակային կազմակերպութիւնը դրեթէ առաջին անգամ տուաւ Սահակ Կաթողիկոս Խապայ-

ճան, պաշտօնի ձեռնարկել է (1902) քիչ ետքը միացնելով Մալաթիա, Պեհեսնի եւ Հիւսնի Մանսուր, երբեմն առանձին առանձին երեք անջատ առաջնորդներով կառավարուած վիճակները (Գերպ. Աղեքսանդրեան Անդրէաս, Պատմութիւն եպիսկոպոսական Աթոռոց, էջ 25):

«Կիլիկեցի» ստորագրութեամբ յօդուածի մը մէջ (տես Սուրհանդակ օրաթերթ Պոլսոյ, թիւ 1900) որ նուիրուած է Մալաթիոյ առաջնորդութեան, կը հաստատուի թէ Մալաթիոյ առաջնորդութիւնը «երբեմն բաժնուած էր նոյնիսկ փոքր եւ ուրոյն ուրոյն առաջնորդական վիճակներու, այսպէս Հիւսնի Մանսուր եւ Պեհեսնի բաւական ժամանակ իբր զատ զատ թեմեր կառավարուած են Առաջ. Փոխանորդ քահանաներով, առանց կանոնաւոր առաջնորդներ ունենալու, սակայն այսօր վերջնականապէս միացուած են»: Նոյն տողերը գրողը կը հաստատէ թէ «Մալաթիոյ գաւառն առաջ երեք մասի կամ առաջնորդութեան բաժնուած էր, Մալաթիա, Պեհեսնի, Հիւսնի Մանսուր, իսկ հիմա (այսինքն 1903) ամփոփուած է մէկ, Մալաթիա անունով»:

Այդ նոր կազմակերպուած Մալաթիոյ Առաջնորդութիւնը, ըստ «Կիլիկեցի»ին, «Եօզկատէն եւ Ատանայէն վերջ, կարեւորութեան տեսակէտով, Կիլիկիոյ կաթողիկոսութեան թեմերուն մէջ, երրորդ տեղը կը բռնէ, թէ իբր բազմաթիւ թեմականներ ունեցող եւ թէ իբր բաւական հին ժամանակէ ի վեր հաստատուած եպիսկոպոսական Աթոռի մը կեդրոն, ըստ որում, երբ տակաւին ընդհ. կաթողիկոսութեան Աթոռը՝ դեգերուն վիճակի մը մէջ՝ չէր հաստատուած Կիլիկիոյ ոեւէ կէտին մէջ, Մալաթիա եպիսկոպոսական Աթոռի մը կեդրոնը ըլլալու յարմար սեպուելով եղաւ ուրոյն եւ կարեւոր առաջնորդական թեմ մը: Գրիգոր Բ. Վկայասէր կաթողիկոս (1065–1105) երբ հովուական այցելութեամբ իր հայրապետական վիճակները կը շրջագայէր, եկաւ Սեւ Լերան Կարմիր Վանքը, եւ հոն մատենագրական խուզարկութիւններով և ուսումնասիրութիւններով զբաղած ժամանակ վախճանելով թաղուեցաւ հոն» (Սուրհանդակ, թ. 1900):

***

Այս տեղեկութիւնները տալէ վերջ Առաջնորդութեան պատմութեան համար, կ'ուզեմ հնարաւոր սահմանին մէջ խօսիլ նաեւ իր թեմերուն մասին, ցանուցրիւ գտնուած տեղեկութիւնները ներկայացնելով:

Ըսի թէ նախապէս Մալաթիա եւ իր անմիջական շրջակայքը կը կազմէին հաւանօրէն առանձին առաջնորդութիւն մը, յայտնի չէ ինչ սահմաններով:

Հնագոյն յիշատակութիւնը ԺԵ. դարը չի կանխեր: Անիկա ձեռագրի մը յիշատակարանն է որ ԺԶ. դարուն մէջ՝ 1544-ին, գրուած է:

Այդ յիշատակարանին մէջ, կը խօսուի Մալաթիոյ երկրին Ամաւսի կամ Ամօսի գիւղին վրայ, որ ունէր երեք եկեղեցի, Ս. Սարգիս, Ս. Աստուածածին եւ Ս. Փրկիչ անունով (տես Ծաղիկ, 1891 Մայիս 11, էջ 3. նաեւ գիրքիս

ձեռագիրներու բաժինը)։

Ուրիշ յիշատակարան մը 1560 Թուականով կը յիշէ նոյն վայրը Ցամոսի ձեւով եւ յիշուած երեք եկեղեցիներով (Հ. Յակոբոս Տաշեան, Մայր ցուցակ, էջ 313–314 եւ ձեռագիրներու բաժինը)։

1848-ին օսմ. կառավարութենէն Մալաթիոյ Հայոց առաջնորդին տըրուած պէրաթ-ը, անոր իրաւասութիւնը կը տարածէ Մալաթիոյ, Հիւսնի-Մանսուր եւ Պեհեսնի քաղաքներուն եւ անոնց շուրջը գտնուող գիւղերուն վրայ։ Ուրեմն այդ Թուականին արդէն իսկ երեք առաջնորդութիւնները իրարու միացած էին։

1864-ին Պոլսոյ պատրիարքարանին կողմէ հրատարակուած տետրակի մը մէջ որ է «Ընդհանուր ցուցակ Տաճկաստանի Հայաբնակ գաւառաց, քաղաքաց, գիւղաքաղաքաց եւ երեւելի գիւղօրէից», ընդամէնը 4 թեմ կը յիշուին Մալաթիոյ կապուած։ Ասոնք էին.

1. Մալաթիա, Սսոյ կաթողիկոսութեան ենթակայ թեմագլուխ.

2. Ատըեաման կամ Հիւսնի Մանսուր ենթակայ Մալաթիոյ առաջնորդութեան.

3. Պեհեսնի ենթակայ Մալաթիոյ առաջնորդութեան.

4. Հաքիմ կամ Հէքիմ խան[1] ենթակայ Մալաթիոյ առաջնորդութեան։

Այս չորս վայրերն ալ Խարբերդի կուսակալութեան մէջ էին։

1872–1879ին Ազգային Պատրիարքարանի կարգադրութեամբ Պեհեսնի կ'անջատուի Մալաթիոյ առաջնորդութենէն եւ անջատ թեմ մը կը կազմէ։ 1887-ին Պատրիարքարանը Մալաթիա եւ Ատըեամանը երկու անջատ թեմի վերածած է։

1896-ին Օրմանեան Պատրիարքի ընտրութենէն անմիջապէս ետք, Դեկտեմբերին Ազգային Կեդրոնական Վարչութիւնը կը կազմէ Առաջնորդական վիճակներու յանձնաժողով մը, որ 1897 Փետրուար 11-ին կը ներկայացնէ տեղեկագիր մը խառն ժողովին, որ 18 Փետրուարին կը հաստատէ անոր կարգադրութիւնները։ Հոն Մալաթիա կը ներկայացնէ մէկ թեմ, անշուշտ ներառեալ Հիւսնի Մանսուրը եւ Պեհեսնին, որով միացեալ վիճակ մը կը կազմուի, երեք առաջնորդութիւններէն։

Բայց նշանակելի է որ Մալաթիոյ առաջնորդութիւնը որ վերջին այս երեք կեդրոններու շուրջ գտնուած գիւղերը ունէր իր իրաւասութեան տակ, որոշ կ'երեւի թէ բնական սահմանագիծով մը կը բաժնուէր երեքի, եւ իրապէս ալ երբեմն երեք առաջնորդութիւններու բաժնուած էր, որոնք պետական կարգադրութեանց հետեւանօք միացած են։

Մալաթիոյ առաջնորդութիւնը նախապէս իր իրաւասութեան տակ ունեցած է, կառավարական վարչական բաժանումներէն Մալաթիոյ գաւառին (Սանճագ), Ա. Մալաթիա, Բ. Ագճէ տաղ կամ Արկա[2] (Արղա) գաւառակնե-

(1) Գերպ. Անդրէաս Աղեքսանդրեան Հէքիմ Խանի մօտ կը յիշէ նաեւ Հասան Չէլէպի անուն գիւղ մը։

(2) Զարմանալի է որ երկու անունները զատ-զատ յիշուած են սխալմամբ։

մը (գագա), որոնք կը պարունակէին ընդամէնը եօթը հայաբնակ վայր Ի. դարուն սկիզբը:

Այդ վայրերն էին Ա. Մալաթիոյ կեդրոն գաւառակին մէջ

1. Մալաթիա Թեմալլուխ կամ Առաջնորդանիստ քաղաքը
2. Օրտուզի
3. Հին Մելիտինէ
4. Ջրմխտի

եւ Բ. Ագնէ տաղ գաւառակին մէջ

5. Անսուր
6. Մուշովկայ
7. Հէքիմ խան

Բոլոր այս վայրերը Փոքր Հայքի մաս կը կազմէին եւ կ'անջատուէին աշխարհագրական եւ պատմական առանձին միութիւն մը կազմող Մալաթիոյ գաւառին հարաւային եւ արեւելեան կողմի Հիւսնի Մանսուր, Պեհեսնի եւ Քեաղտէ գաւառակներէն, որոնք կը պատկանէին Կոմմագինէի կամ Եփրատացւոց աշխարհին, ուր ԺԱ. դարուն Հայերը պատկառելի ոյժ մը եւ մեծ համախմբութիւն մը կը ներկայացնէին եւ կը համարուէին երկրին բնիկները, վանքի գիւղերը եւ քաղաքները գրաւած էին անխտիր եւ նոյնիսկ քաղաքական իշխանութեան տիրացած:

Այս երեք գաւառակներու մէջ ինչպէս կը տեսնուի դարերու հալածանքով կոտորակուած ըլլալով հանդերձ տակաւին ԺԹ. դարուն Հայերը շատ տարածուն բնակչութիւն մը ունէին եւ բազմաթիւ վայրերու մէջ հաստատուած էին, եւ տակաւին կը պահէին իրենց գոյութիւնը տեղ տեղ շատ սակաւաթիւ, երբեմն չէն ու բարգաւաճ վայրերու մէջ աւելի մեծ թիւով:

Ի. Դարուն սկիզբը, 30 Մարտ 1902 թուականով, Մալաթիոյ Առաջ. Տեղապահ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեանի կազմած վիճակագիր-Տեղեկագիրին համաձայն այդ երեք գաւառակներուն մէջ 50-ի չափ վայրեր կային ուր հաստատուած էին աւելի կամ նուազ թիւով Հայեր: Իսկ ուրիշ ուսումնասէրներ կամ ուղեգիր-վիճակագիրներ այդ յիշատակեալներէն դուրս կը յիշատակեն վայրեր, որոնք շատ սակաւ հայ բնակիչներ ունէին եւ Հայ Եկեղեցի եւ դպրոց չէին ունեցած եւ ատոր համար է որ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեանէ չեն յիշատակուած:

Արդարեւ Խաչատուր Ծ. վրդ. Տէր Ղազարեան կը յիշատակէ.

Ա. Հիւսնի Մանսուր կամ Ատիեաման գաւառակին մէջ.

1. Հիւսնի Մանսուր (= Ատիեաման) քաղաքը.
2. Կէվրուկ կամ Գավրակ (= Կէվրէկ) (60—70 տուն հայ).
3. Սամսատ կամ Սամոսատ (10—20 տուն հայ).
4. Գանթարա (8 տուն հայ).

մինչ Գերպ. Անդրէաս վրդ. Ալեքսանդրեան (Պատմութիւն Սեբաստիոյ, էջ 407) եւ Կարապետ Քհնյ. Պէննէեան (Տեղագրութիւն եւ Գաւառաբարբառ Մելիտինէի եւ համառօտ տեսութիւն իր չորս գաւառակներուն Աղնա Տաղի,

Հիւսնի Մանսուրի, Պեհեսնիի եւ Քեաղքայի 1902ին պատրաստուած ձեռագիր աշխատասիրութեան եւ Մալաթիոյ Կրթասիրաց ընկերութեան «Հարազատ հատուածի» կեդրոնական վարչութեան հրատարակած նոյն քահանային «Մալաթիոյ տեղագրական եւ ազգագրական աշխատասիրութիւն»ը պատրաստուած 1899–ին) ունին առնըմէ զատ ուրիշ անուններ, որոնք հայաբնակ եղած են:

Այսպէս, Գերպ. Աղեքսանդրեան վրդ. կը յիշէ[1].

1. Վարդանա[2] որ Կիլիկեան ժամանակաշրջանի Հարթանը կը կարծէ (12—20 տուն Հայ):
*2. Թուրեր՝ պատմութենէն ծանօթ
*3. Ուրիմն՝ պատմութենէն ծանօթ
*4. Հայկ (2 տուն հայ)
*5. Զուռնա (3 տուն հայ)
*6. Զորկայիր (1 տուն հայ)
*7. Եղրք (1 տուն հայ)
8. Կէօլ–բունար (4 տուն հայ)
9. Թէրփէթիլ (4 տուն հայ)
10. Պօղուկ (2 տուն հայ)
11. Պըզրին (2 տուն հայ)

Իսկ Պէննէեան քհնյ.ի երկու աշխատութիւններուն մէջ կը յիշուին յաւելուածաբար սա վայրերը.

12. Խրափի (3 տուն հայ)
13. Կաւրիկ (Հուպէկ) (4 տուն հայ)
14. Ծապի (3 տուն հայ)
15. Քիլիսունի (5 տուն հայ)
16. Տարաղան (4 տուն հայ)
17. Կողան (2 տուն հայ)
18. Մարմարա (3 տուն հայ)

Թէ՛ Աղեքսանդրեան վրդ.ի եւ թէ Պէննէեան քհնյ.ի յիշած այս վայրերուն մէկ մասը ԺԹ. դարուն վերջը հայաբնակ ըլլալէ դադրած էին կամ միայն 3—4 տունուոր հայ բնակիչ ունէին:

Բ. Պեհեսնի գաւառակին մէջ.

5. Պեհեսնի քաղաքը
6. Պէլվէրէն (Բել–էրէն) (5 տուն հայ)
7. Խուչկաշի
8. Սորփազ (5 տուն հայ) } 1902–ին դադրած էին
9. Քեսուն } հայ բնակիչ ունենալէ

(1) Աստղանիշ կրողները միայն Ի Րէ յիշուած են:
(2) Գարեգին եպս. Սրուանձտեանց (Թորոս Աղբար, Ա. 320) Վարդանայ գեղ անունով կը յիշէ:

10· *Թուլ կամ Թուտ*

11· *Շամպայատ կամ Շան Պէյտի*

*Սրուանձտեանց Գարեգին եպս. իր* Թորոս Աղբարին *մէջ (Ա. հտ. էջ* 320) *առանց որոշելու թէ ո՞ր գաւառակներուն կը պատկանին, կը յիշատակէ Պեհեսնիի եւ Հիսնի-Մանսուրի գաւառակներու մէջ իբր հայաբնակ վայրեր նաեւ հետեւեալ վայրերը, որ Տէր Ղազարեան վրդ., Գերպ. Աղեքսանդրեան վրդ. եւ Պէննէեան քհնյ. չունին.*

1· *Դարտըղան*

2· *Քարքուչէն*

3· *Գըզըլճէ-Բուղնար*

4· *Բարբատոյ*

5· *Քօլիկ*

6· *Հունի*

7· *Քավարտիչ*

8· *Ղարպիշ*

9· *Հէնիճ*

10· *Փէրտէսոյ*

11· *Թէմսիւս*

*որոնք շատ հաւանականաբար Սրուանձտեանցի Մալաթիա այցելած ատեն* (1878) *թերեւս տակաւին հայաբնակ էին եւ ապա դատարկացան իրենց հայ բնակիչներէն.*

Գ. Քեաղտէի *գաւառակին մէջ.*

*12· *Քեաղտէ*

*13· *Պէօյլիւք պաղ*

*14· *Պէտվէտօլ*

15· *Օրօչուգ*

16· *Կարղօրան*

*17· *Հասուն տիկին*

18· *Տարտաղան*

19· *Կավըղրուլ*

*20· *Նարընջա (Նարըճէ)*

21· *Կապեր*

22· *Քեան կամ Գան*

23· *Գօրըսկիլ*

24· *Փիրախ*

25· *Եէնի Ծանուն*

26· *Թիլ*

27· *Քիրքոխ*

28· *Պարպանա*

29· *Թոմակ*

30· Կոտպօ
31· Անդամ
*32· Քէփէրտիշ
33· Նունի
*34· Կէրկէր=Կարկառ
35· Մշրանք
36· Տերըսխոյ
*37· Իւլպիւշ կամ Ուլպէշ
*38· Աղուան
39· Տամլի
*40· Ջահմանա
41· Պուրճ
*42· Իւմրիւնիւն
*43· Ճամպէկ
44· Ջարտաղ

Այս եօթը գիւղերը Քեախդէի ներքակայ երբեմ գիւղախումբերէն Շիրոյի (1) կը պատկանէին: Օսմ. կառավարութիւնը ԺԹ. դարուն վերջին տարիներուն այս գիւղախումբը Մեմուրէթ եւ Ազիզի կուսակալութեան կցած ըլլալով, այս եօթը գիւղերն ալ անցան Խարբերդի հայ առաջնորդութեան իրաւասութեան:

Գերպ. Անդրէաս վրդ. Աղեքսանդրեան Քէախթէ գաւառի մէջ կը յիշատակէ հայաբնակ գիւղ մը եւս, Հաճալար անուն, որ Տէր Ղազարեան Խաչատուր վրդ. չէ յիշած, իսկ Պէննէեան քհնյ. կը յիշէ Քեախթայի գաւառին Ա. Կէրկէր Նահիյէի մէջ, հետեւեալ գիւղերը.

1· Քոմիք
2· Գարուն
3· Կաղնդէք
4· Պայիքի
5· Պըմբըրգօ
6· Թիբլօ
7· Թէրքիտին
8· Մէգէրէ
9· Քէթրկէ
10· Թէմշիաս
11· Վանք

Բ. Մրտէսի Նահիյէին մէջ.

12· Խորէս
13· Հէլիմ
14· Գարա Թիւլպէ

---

(1) Իզոլլուէն (ուսկից Եփրատը կ'անցնի Մեմուրէթ իւլ Ազիզ երթալու համար) մինչեւ Կէրկէր գտնուած միջոցը կը կազմէ Շիրոյ գիւղախումբը (Նահիէն)։ Ըստ Գերպ. Աղեքսանդրեան վրդ.ի (Պատմ. Սեբաստիոյ, էջ 404) հոն կը գտնուէին հինգ հայաբնակ գիւղեր, որոնցմէ միայն երկուքը — որոնք են Տէրէթէ եւ Կեաւուլ — անուններով կը յիշէ։ Խաչատուր Վրդ. Տէր Ղազարեան կը յիշէ եօթը գիւղ առանց յիշելու Տէրէթէ եւ Կեաւուլ, որոնցմով Շիրոյի գիւղերուն թիւը 9-ի կը բարձրանայ։

15· Թըլժըլա
16· Սըրաթուտ
17· Հութ
18· Քօրդիէ
19· Թուխարխին[1]

Գ· Ջրաւքան Նահիյէին մէջ·

20· Կեյիքան
21· Քօլիկ
22· Գարաջոր
23· Հաւանք
24· Պլիլա
25· Միլրաղ
26· Գարաթուր
27· Կուտիչ
28· Փէրտէսօ
29· Սէյտ Մահմուտ

Իսկ Ճիրօ Նահիյէի մէջ (որ յետոյ Խարբերդի կցուած է) նաեւ հետեւեալ գիւղերը·

30· Քրատ
31· Մամաշ
32· Ջամջիկ
33· Արդուղայ

Այս գիւղերուն մէջ իրապէս Հայոց թիւը աննշան եղած է 1–10–12 տուն միայն:

Բոլոր այս հին ու նոր յիշատակութիւնները միացնելով կը տեսնուի որ ԺԹ. դարու վախճանին Մալաթիոյ առաջնորդութեան տարածութիւնը կը համապատասխանէ կառավարութեան Մալաթիա Սանճաքին կամ ներկայի Մալաթիոյ կուսակալութեան:

Այդ տարածութիւնը բարգաւաճման ժամանակամիջոցներուն մէկ առաջնորդութիւն չէր, այլ ինչպէս բացատրուեցաւ կը պարունակէր երեք Առաջնորդութիւններ, որոնք էին·

ա· ՄԵԼԻՏԻՆԷի առաջնորդութիւնը·

բ· ՍԱՄՈՍԱՏի պատմական թեմը որ ետքը Հիսնի Մանսուր քաղաք փոխադրուած էր քաղաքական պայմաններու բերմամբ:

գ· ՔԵՍՈՒՆԻ կամ Կարմիր Վանքի աթոռը, որ ժամանակի ընթացքին Պեհեսնիի առաջնորդութեան վերածուած էր:

Ասոնցմէ դուրս գուցէ երբեմն հայաշատ եւ այնքան եռանդուն կեանք

---

(1) Այս գիւղը ես աւելցուցի տեսած ըլլալով Պատրիարքարանի ուղղուած 24 Փետր. 1896 թուականով նամակ մը, գրուած Եղիա վրդ. Գազանճեանէ, որ Մրտէս Նահիէի մէջ այցելու հովիւ էր եւ ջարդէն փրկուած էր շնորհիւ Մրտէսի Միւտիրին, որուն շնորհակալութեան նամակ մը գրել կը խնդրէ:

ունեցող Կոմագինէի կամ Եփրատացիներու շրջանին այն մասին մէջ, որ Մալաթիոյ սանճագին հարաւային մասին մէջ կը գտնուէին, կային նաեւ ուրիշ Հայ եպիսկոպոսական աթոռներ, որոնք կարճատեւ կեանք ունեցած են։

## Դ — ԻՐ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ԱԹՈՌՆԵՐՈՒ ՀԵՏ

*Մալաթիոյ առաջնորդութեան հաստատութեան թուականներուն կաթողիկոսական աթոռը մէկ էր եւ Մալաթիա անոր կապուած էր անտարակուսելի կերպով։*

*Երբ* 1040*-ական թուականներէն ետք Հայ Կաթողիկոսները թափառիկ եղան, առանց հաստատուն տեղ մը ունենալու եւ շրջեցան Սեբաստիա, Ծամընդաւ, Թաւբլուր, Սեւ լեռ, — վերջապէս Հռոմկլայ հաստատուելէ առաջ — Մալաթիա միշտ Ամենայն Հայոց Կաթողիկոսի վիճակն էր, քանի որ այնքան մօտ էր անոր նստոցին։*

*Իսկ երբ* 1203*-ին Յովհաննէս Մեծաբարոյ Կաթողիկոսին* (1203—1221) *ընտրութեան առթիւ պառակտում մը առաջ եկաւ եւ Սելջուկ Ռումի կայսրութեան քաջալերութեամբ Անանիա Սեբաստացի* (1203—1207) *կաթողիկոսութիւն մը հաստատեց Սեբաստիա, շատ հաւանական չէ որ այս հակաթոռ կաթողիկոսութեան ենթարկուած ըլլայ նաեւ Մալաթիա որ բաւական հեռու էր Սեբաստիայէն եւ քաղաքականապէս ալ սելջուկ տիրապետութեան ենթարկուած չըլլալով կ՚ենթադրեմ թէ կապուած մնացած է Հռոմկլայի աթոռին, մինչեւ անոր գահակալին Ստեփանոս Հռոմկլայեցի Կաթողիկոսին Եգիպտացիներէն գերի տարուիլը* 1293*-ին։*

*Այդ թուականէն ետք Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը Սիս էր եւ Մալաթիա անոր հնազանդ, եւ ինչպէս բացատրուեցաւ, Կարապետ Եւդոկիացիի ստեղծած պառակտումէն ալ ետք, մնաց Կիլիկիոյ կաթողիկոսութեան ենթակայ, առանց առարկայ ըլլալու այն պայքարին, որ Էջմիածին եւ Սիս իրարու դէմ մղեցին, իրարմէ յափշտակելու համար Օսմ. կայսրութեան սահմաններու մէջ գտնուող հայ առաջնորդութիւնները։*

*Միայն նշանակելի է որ ԺԹ. դարուն Մալաթիոյ առաջնորդութիւնը վարած են Կ. Պոլսոյ եւ Երուսաղէմի պատրիարքութեան ենթակայ եւ անոնց կապուած հայ եկեղեցականներ եւ ոչ թէ Կիլիկիոյ միաբաններ։*

## Ե — ԳԱՒԱԶԱՆ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐՈՒ

*Ինչպէս տեսնուեցաւ Մելիտինէի Առաջնորդութիւնը ԺԹ. դարուն իրարու միացած երեք առաջնորդութենէ կը բաղկանար, առանց հաշուելու նոյն շրջանակին մէջ ժամանակաւորապէս հաստատուած Կաթողիկոսական աթոռները։*

*Հետեւաբար պիտի ներկայացնենք իբրեւ հայ ազգային կեանքի խորհրդանշան եւ միեւնոյն ատեն իբրեւ ղեկավար,*

*Ա. ՄԵԼԻՏԻՆԷԻԻ,*

*Բ. ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐԻ (ի հնումն Սամոսատի)*

*Գ. ՊԵՀԵՍՆԻ (ի հնումն Քեսունի)*

*առաջնորդական գաւազանագիրը կամ Առաջնորդներու շարքը, որքան Թոյլ կու տան ձեռք բերուած յիշատակարանները։*

## 1 — ՄԱԼԱԹԻԱ

*Իբրեւ Մելիտինէի հայ եպիսկոպոսներ կը յիշուին հետեւեալ եկեղեցականները.*

*ԳՆԷԼ ԵՊՍ. ՄԵԼԻՏԻՆԻՈՅ* (353 *Թուականին*), *յիշատակուած է իբրեւ անդամներէն մէկը այս շքախումբին՝ որ Մեծն Ներսէս Հայրապետին կ'ընկերանար անոր Կեսարիա կաթողիկոսական աստիճան առնելու համար գացած ատեն* (*Հ. Աճառեան*, Անձնանուանց Բառարան, *Ա. հատոր, էջ* 477)։

*Սկզբնական աղբիւրը այս տեղեկութեան Մեսրոպ Երէցի* «Յաղագս զարմից սրբոյն Գրիգորի Լուսաւորչի եւ պատմութիւն սրբոյն Ներսէսի Հայոց Հայրապետի» *գործն է* (*տես էջ* 26) *որ իբր Թէ ծաղկաքաղ մըն էր* «ի Հայոց մնացորդաց յԱրեւելից գրոց» *անուն գործէ մը, որ ցարդ չէ գըտնուած։ Մեսրոպ Երէցի գործը Ժ. դարուն խմբագրուած է համաձայն իր յիշատակարանին* (Զարբ. Հայկ. Հին Դպրութեան պատմ. *Վենետիկ*, 1897, *էջ* 561)։

*Իր տուած տեղեկութիւնը Գնէլ եպս.ի մասին կասկածելի է ըստ Սահակ եպս. Կոզեանի* (*տես* Մելիդ, Մելիտինէ, Մալաթիա, *էջ* 15), *ըստ ամենայն հաւանականութեան, վասնզի այդ Թուականին բնաւ պատմական չէ Թուիր որ Հայերը սեփական եպիսկոպոս ունեցած ըլլան Մելիտինէի մէջ, քանի որ եկեղեցին տիեզերական էր եւ բաժանումներ գոյութիւն չունէին։*

*Հաւանօրէն կարկտան մըն է, յարմարցուած յետին դարերու մէջ։*

*ԿՈՍՏԱՆԴԻՆ ԵՊԻՍԿ. ՄԵԼԻՏԻՆԷԻ ՀԱՅՈՑ* (451), *ճիշդ Քաղքեդոնի ժողովին գումարման Թուականին կը յիշատակուի այս եպիսկոպոսը, նոյնիսկ այս ժողովին վերաբերեալ կասկածելի վաւերագիրներու մէջ։ Յայտնի չէ Թէ ի՞նչ աստիճանի վաւերականութիւն ունին այդ Թուղթերը եւ ո՞ր դարուն խմբագրուած են։*

*ԵԹէ ընդունինք անոնց վաւերականութիւնը, այն ատեն Քաղքեդոնի ժողովին մասնակցած են Մեծ Հայքէն հինգ եպիսկոպոսներ եւ Փոքր Հայքէն կարգ մը եպիսկոպոսներ։ Այս վերջիններուն մէջ է* «Կոստանդին ողորմութեամբն Աստուծոյ եպիսկոպոս Մելտինոյ Հայոց» (*տես Հ. Աճառեան*, Անձնանուանց Բառարան, Բ. 349)։

*Աղեքսանդր վրդ. Պալճեան որ կը յիշատակէ այս Կոստանդին եպս.ը* (*տես* Պատմ. Կաթողիկէ վարդապետութեան ի Հայս, 1878 *Վիեննա, էջ* 15), *օգտուելով Մանսիի հրատարակութենէն* (*հտ. Է.* 115) *կը ջանայ ապացուցանել Թէ Կոստանդին եպիսկոպոսն էր քաղաքին հայ ազգաբնակութեան եւ Մելիտինէ ունէր եպիսկոպոս մը եւս, որ Յոյները կը հովուէր եւ նոյնպէս մասնակցած էր Քաղքեդոնի ժողովին։ Այս յոյն եպիսկոպոսն էր Տրիխոս Մելիտինոյ։*

Եթէ վաւերական են Պալճեան վրդ․ի մէջ բերած վաւերագիրները, այն ատեն պէտք է ընդունիլ թէ Մալաթիա նոյնիսկ Ե․ դարուն ունէր իր սեփական հայածէս եպիսկոպոս առաջնորդը, անջատ քաղաքին յունածէս բնակիչներու եպիսկոպոսէն, ինչ որ շատ տարակուսելի է, քանի որ հաւանական չէր որ բիւզանդական կայսրութիւնը հանդուրժէր հայ անջատ եպիսկոպոսի մը գոյութեան իր տիրապետութեան տակ գտնուած (ինչպէս էր Մելիտինէ) քաղաքի մը մէջ, գէթ մինչեւ Թ․ եւ Ժ․ դար, ինչպէս բացատրուեցաւ։ Հայեր շատ հին ժամանակներու մէջ կ՚ապրէին Մելիտինէի մէջ։

Քրիստոնէական առաջին դարերուն որոշ էր (տես վերը) որ Հայ առաջին եպիսկոպոսները չէին կրնար գոյութիւն ունենալ։

Արաբական տիրապետութենէն, այսինքն Է․ դարէն ետք, դարձեալ հոն կ՚ապրէին Հայեր, եւ իրենց թիւը օրէ օր կ՚աճէր։ Հաւանական է որ արաբ տիրապետութեան տակ Թ․ եւ Ժ․ դարերուն, ունեցած ըլլան իրենց յատուկ եպիսկոպոսները, որոնք դժբախտաբար չեն յիշատակուած։

ԺԱ․ դարուն, հաւանական է որ Մելիտինէ իբրեւ տէրունի վիճակ ուղղակի կաթողիկոսներէ կառավարուած ըլլայ եւ առաջնորդ ունեցած չըլլայ, սակայն անժխտելի է որ հոգեւոր վարչութիւն մը գոյութիւն ունէր, քանի որ կար Հայ վանք եւ գրչագրական դպրոց։

Այսպէս 1057-ին Մելիտինէ գրուած Աւետարան մը կը յիշուի, որուն գրիչը Թովմաս անուն քահանայ մըն էր, որդի Մովսէս քհնյ․ի։ Ան «ընդ հովանեաւ Սրբոյն Գրիգորի» եւ «ի կաթողիկոսութեան տեառն Խաչկա, յորժամ ի Թաւբլուրի վանս էր․․․» գրած է այս ձեռագիրը։ Յիշատակարանին մէջ Մելիտինէի առաջնորդը չէ յիշուած, վասնզի հաւանօրէն դեռ հոն Հայոց սեփական հովուութիւն կամ եպիսկոպոսութիւն չէր հաստատուած։

Հետեւաբար հաւանական է որ ԺԱ․ դարուն Խաչիկ Բ․ Անեցի կաթողիկոսի (1054–1060) կողմէ հաստատուած գաղթական Հայերու եպիսկոպոսութիւններէն մէկն ալ Մալաթիոյ եպիսկոպոսութիւնն է (Marquart, **Die Entstehung Der Armenischer Bistumer Orientallis Christina. 1932. 27. 2. 153.** կամ Հայկական Թեմերուն սկզբնաւորութիւնը, ՀԱ․ 1934, էջ 112–124, հմմտ․ Գերպ․ Սահակ Կոգեան, նոյն, 15)։

Այս հաւանական կարծիքն ալ դժբախտաբար հաստատող վաւերագիր մը չունինք։

1092-ին Մելիտինէ թարգմանուած վկայաբանութեան մը յիշատակարանին մէջ քաղաքին եպիսկոպոսը չէ յիշուած, թէեւ ժամանակին կաթողիկոսին անունն ալ չկայ․ կրնայ ենթադրուիլ որ երկուքը միասին զանց առնուած է թարգմանիչէն։ (Տես այդ յիշատակարանը․ Հ․ Գարեգին վրդ․ Զարքանէլեան, Մատենադարան Հայկ․ թարգմանութեանց, էջ 722, Մայր ցուցակ Ձեռագրաց Երուսաղէմի․ Վենետիկ, 1948, էջ 3–50․ Գարեգին կաթողիկոս Յովսէփեան, Յիշատակարանք Ձեռագրաց, էջ 258 եւ գրքիս Ձեռագրաց բաժինը)։

Այդ օրերուն Մելիտինէի մէջ հայ եպիսկոպոս առաջնորդի մը գոյու-

*թիւն չունենալը զարմանալի դէպք մը չի թուիր, երբ նկատի առնենք որ Գրիգոր Վկայասէր* (1065–1105) *եւ իր յաջորդները շատ մօտերը հաստատուած էին Մելիտինէի եւ կրնային ուղղակի իրենք հովուել այս գաւառը:*

*ԺԲ. դարուն* (1125*-ին*) *նոյնն էր կացութիւնը եւ հաւանօրէն այս պատճառով Մալաթիա թարգմանուած վկայաբանութեան մը մէջ, որ կատարուած է Գրիգոր Գ. Պահլաւունի կաթողիկոսի* (1173–1186) *հրամանով, դարձեալ Ս. Գրիգորի հովանիին տակ, Գրիգոր կրօնաւորի ձեռքով, օրուան կաթողիկոսին հետ չէ յիշուած քաղաքին առաջնորդը, ինչ որ կարծել կու տայ թէ տակաւին առաջնորդութիւն չէր հաստատուած:* (*Գարեգին Կաթ.* Յիշատակարանք Ձեռագրաց. *էջ* 333–4, *նաեւ* 387–8, *տես գիրքիս Ձեռագրաց բաժինը*)*: Բայց կարելի չէ վճռական ըլլալ, վասնզի կրնայ ըլլալ որ քաղաքը իր Առաջնորդը ունէր, բայց յիշատակարաններ չկան հաստատող: Ամէն պարագային անհաւանական չնկատելով Մալաթիոյ Առաջնորդութեան հաստատութիւնը մինչեւ ԺԲ. դար յապաղած ըլլալը, առաջին յանուանէ յիշուած Առաջնորդը ԺԲ. դարուն վերջին քառորդին միայն կը գտնենք:*

*Անիկա է ՅԱԿՈԲ ԵՊՍ. ՄԵԼԻՏԻՆԻՈՅ* (1179), *որ մէկն էր այն Եպիսկոպոսներուն, որոնք մասնակցած են նոյն թուականին գումարուած Համկլայի ժողովին* (*տես Զամ. Գ.* 132. *Օրմանեան*, Ազգապատում, 1468. *Տաշեան*, Մայր ցուցակ 350. *Աճառեան* Անձնանունաց բառարան, *Գ.* 485, *Կիլիկեցի* Սուրհանդակ *օրաթերթ, Կոստանդնուպոլիս, թիւ* 1900):

. . . . . . . . . *ԵՊՍ.* (. . . . 1197–8)*: Անունը անծանօթ է: Բայց «Կիլիկեցի»* (Սուրհանդակ, *թ.* 1900 *կը հաւաստէ թէ* 1197*-ին պատահած Տռապատիկի վէճերուն խառնուած է Մելիտինէի Հայոց Եպիսկոպոսը, բայց անունը չէ տուած: Չէ ալ ըսած թէ իր այս տեղեկութիւնը ուրկէ՞ առած է:*

*Ժամանակակից Կաթողիկոսն էր Գրիգոր Զ. Ապիրատ* (1193–1203) *որ* 1197*-ին Տարսոնի մէջ ժողով մը գումարած է Յունաց պահանջները նկատի առնելու համար: Այս ժողովին մասնակցած ցոյց կը տրուի Մալաթիոյ այս անանուն եպիսկոպոսն ալ:*

*Լեւոնի թագադրութեան հանդէսին* (1198 *Յունիս* 14) *մասնակցող բազմաթիւ եպիսկոպոսներուն մէջ ալ յիշուած չէ Մելիտինէի Եպիսկոպոսը, իբր ներկայ* (*Տեսնել* Ազդարար, *Ա. տարի*, 1943, *թ.* 19, *Հ. Յ. վրդ. Թէքէեանի յօդուածը*):

*ՄԱՏԱԹԻԱ ԵՊՍ. ՄԵԼԻՏԻՆՈՅ.* (1214 *կամ* 1255)*. այս եպիսկոպոսին անունը յիշուած է* 1839*-ին, երբ թէ Ներսէս Շնորհալիի կնիքով դրոշմուած միւռոնի փոքր շիշին և մասունքներու տուփի մը հետ գտնուած վկայագրի մը մէջ* (*տես* Թորոս Աղբար, *Բ. հտ. էջ* 90–93 *եւ* 352–3), *որուն վաւերականութիւնը կասկածելի է: Ըստ Հ. Աճառեանի* (Բառարան Անձնանունաց, *Գ.* 218) *կեղծիք մըն է* (*Տես Տաշեան*, Մայր ցուցակ, *էջ* 1040):

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ (1297) «վերատեսուչ Մելիտինու եւ Խարբերդու մայրաքաղաքաց» կը յիշատակէ Մամեստիա գրուած Աւետարանի մը յիշատակարանը։ Այս Աւետարանը 1884-ին կը գտնուէր Խարբերդի Ս. Ստեփաննոս եկեղեցին (Թորոս Աղբար, Բ. հտ. էջ 347)։ Ուրեմն ատեն մը Մալաթիա եւ Խարբերդ միացեալ վիճակ մը կը կազմէին։

*
**

Կոստանդին Կաթողիկոսի ատեն գումարուած Ադանայի (1307) եւ Սիսի (1316) ժողովներուն մասնակցող եկեղեցականներուն մէջ չէ յիշուած Մալաթիոյ եպիսկոպոսը, ինչ որ շատ զարմանալի է, «Կիլիկեցի» (տես Սուրհանդակ օրաթերթ, Կ. Պոլիս Թ. 1900) թէեւ գրած է որ Սիսի ժողովին մասնակցած է Մալաթիոյ եպիսկոպոսը, սակայն չէ յիշած անունը։ Այս ժողովներուն մասնակցող եպիսկոպոսներուն մէջ յիշուած չըլլալով Մալաթիոյ եպիսկոպոսը սխալ կը թուի։ Անիկա կ'երեւի ենթադրութիւն մըն է. 1315–1316-ին Մալաթիա աւերումի եւ ջարդի ենթարկուած ըլլալով, հաւանական չէր որ իրենց եպիսկոպոսը, եթէ կար իսկ, մասնակցած ըլլար այդ ժողովներուն։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՐՔԵՊՍ. ՄԵԼՏԻՆՈՅ (1372)։ Այս եպիսկոպոսին անունը կը յիշուի 1372 թուականով յիշատակարանի մը մէջ։ Ուրիշ տեղեկութիւններ չկան իր մասին։ (Տես Կոնիբերի Ցուցակ ձեռագրաց Լոնտոնի բրիտանական թանգարանին, Թ. 42/19548 ձեռագիրը կամ գիրքիս ձեռագրաց բաժինը)։

1372 թուականէն մինչեւ 1439 Մալաթիոյ եպիսկոպոսներուն անունները չունինք։

ՍՏԵՓԱՆՈՍ ԵՊՍ. (1438)։ Կը յիշուի թէ Դեղձիկի վանքի առաջնորդ Ներսէս եպս.ի գրեթէ ժամանակակից իբր «Հայրապետ» եւ «խնամատար եւ վերակացու» Ս. Լուսաւորչի ուխտին (Թորոս Աղբար Բ. հտ. էջ 452–3 եւ Նոտարք, էջ 117, Բիւզանդիոն Թ. 2975), Ստեփանոս եպս. մը, որ որդին էր Կոստանդին Աւագերէցի (Աճառեան Անձնանունների բառարան Բ. 674)։

Ասոր վանահայրութեան ատեն 1439-ին Սիմէոն անուն եպիսկոպոս մը[1] նորոգած է Ս. Լուսաւորիչ վանքը կամ անոր գաւիթը (Թորոս Աղբար, Ա. 313, եւ Նոտարք էջ 118)։

ՍԻՄԷՈՆ ԱՐՔԵՊ. (1440–1455 ... ). 1440-ին Ս. Լուսաւորիչ վանքին իբր վանահայր «արքեպիսկոպոս այս ուխտիս» կը յիշուի Սիմէոն Արքեպիսկոպոս մը, որ հաւանօրէն 1439-ին վանքին գաւիթը շինող վերոյիշեալ եպիսկոպոսն է։

---

(1) 1433-ին Մալաթիոյ Ս. Թէոդորոսի կամ Դեղձիկի վանքին մէջ ծաղկող Սիմէոն կրօնաւոր մը կը յիշուի, ինչպէս նաեւ 1447 ին նոյն վանքին հայրապետ Սիմէոն եպս. մը եւ միաբան Սիմէոն աբեղայ մը։ Հաւանօրէն գրեթէ ժամանակակից այս երեք Սիմէոններէն անջատ է այս Սիմէոն եպս.ը, որ Ս. Լուսաւորիչ վանքին կը վանահայրէր։

Աւետարանի մը ծաղկողը կը հաւաստէ թէ Սիմէոն եպս. իր ուսուցիչն եղած է (Մայր ցուցակ Մխիթարեանց Վենետիկոյ, Ա. էջ 714)։

Այս Սիմէոն արքեպիսկոպոսը յաջորդած է հաւանօրէն Ստեփանոսի իբր վանահայր Ս. Լուսաւորիչի եւ իբր առաջնորդ Մալաթիոյ, վասնզի ըստ վաղեմի սովորութեան, վանքերու վանահայրերը կը վարէին նաեւ վիճակին առաջնորդութիւնը։

Թէեւ «Կիլիկեցի» (Սուրիանդակ, Թ. 1900) կը կարծէ թէ Յամասի Ս. Փրկիչ վանքին առաջնորդներն վարած են Մալաթիոյ առաջնորդութիւնը, սակայն աւելի հաւանական է որ այդ պաշտօնը եթէ վերջերը Ս. Փրկիչի վանքին առաջնորդներուն ալ վիճակած էր, հին ատեն ապահովաբար Մալաթիոյ հնագոյն Հայ վանքին՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչի վանահայրերուն տրուած էր։

Ասոր փաստ կը ծառայէ 1454–ին գրուած յիշատակարանը որ Սիմէոնը «Վերադիտող Մելիտինոյ» կը կոչէ։

Սիմէոն եպիսկոպոս այդ պաշտօնին վրայ էր 1455–ին, երբ կազմել տուաւ 1268–ին՝ Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսին համար գրուած Աւետարան մը (տես «Հնասէր»ի = Սահակ Կաթ. Խապայեանի «Բարձրբերդցի Կոստանդին Կաթողիկոսի երեք Աւետարանները». Բիւզանդիոն, Թ. 3438–9. Թորոս Աղբար Ա. էջ 327 եւ Նոտարք էջ 174)։ Այս Աւետարանը գրուած է համբաւաւոր Թորոս Ռոսլին, Հռոմկլայի մէջ։ Մելիտինոյ Վերատեսուչ Սիմէոն Արքեպիսկոպոսը Յովհաննու գլուխը այրած ըլլալուն ծանր աշխատութեամբ կը վերանորոգէ, ուստի կը խնդրէ յիշել զինքը եւ որդին Ուլուպէկը։ Սիմոն աշակերտն էր Արիստակէս Բարունապետին (տես Բիւզանդիոն, Թ. 3439)։

Սիմէոն եպս. սորված էր նաեւ կազմարարութեան արհեստը։ Այս եպիսկոպոսը 1454–ին եւ ոչ թէ 1254–ին, ինչպէս Սրուանձտեանց (Թորոս Աղբար Ա. 327–8) նշանակած է, իբր առաջնորդ յիշուած ըլլայ։ Հ. Վարդան վրդ. Հացունի կը հաստատէ թէ անոր յիշատակութեան հանդիպած է Վենետիկի վանքին մէջ գտնուող «Հաւաքմունք յիշատակարանաց» ձեռագիրին մէջ։ Հաւանօրէն այդ յիշատակարանը արտագրած պիտի ըլլայ Թորոս Աղբար–է։ Նոյն յիշատակարանը ունի նաեւ Գարեգին Կաթողիկոս Յովսէփեանց (տես Նիւթեր և ուսումնասիրութիւններ, Բ. 40) որ ըստ Աճառեանի (Անձնանուանց Բառարան, Դ. 450) սխալ հակադրութեամբ մը 1254–ի նորոգութիւնը նոյն ձեռագիրի 1454–ին Մահտեսի Կիրակոսի ըրած նորոգութեան հետ շփոթած է (տես Թորոս Աղբար, Ա. 331)։

Սիմէոն Արքեպիսկոպոսէն ետք մօտաւորապէս հարիւր տարուան ընդհատումէ մը ետք, ԺԶ. դարուն կիսուն կը յիշուին.

Տ. ԱՐԻՍՏԱԿԷՍ ԵՒ Տ. ՄԿՐՏԻՉ (1544 Նոյեմբ. 6), միաժամանակ երկու եպիսկոպոսներ, Սիմէոն Կաթողիկոսի եւ Սուլթան Սիւլէյմանի թագաւորութեան ժամանակ Ամասի գիւղին մէջ գրուած Յայսմաւուրքի մը մէջ (տես Ծաղիկ, 1891 Մայիս 11)։

*Սուլթան Սիւլէյման իշխած է* 1520–1566, *ուստի ձեռագիրը գրուած է* 1544-*ին եւ ոչ թէ* 1344-*ին, ինչպէս կարծուած է սխալմամբ։*

1544-*ին գրուած ըլլալուն փաստ է ժամանակակից Կաթողիկոսին անունը, Սիմոն որ Կիլիկիոյ նոյն անուն Զէյթունցի Կաթողիկոսն է, որ* 1539-*էն* 1545 *պաշտօնավարած է։*

*Շատ յստակ չէ թէ այս երկու եպիսկոպոսները առաջնորդ էի՞ն Մալաթիոյ։ Կասկածելի է վասնզի անոնք գործած են Ս. Փրկիչ վանքին մէջ, որուն վանահայրերը այն ատեն դեռ առաջնորդ ալ չէին։*

*ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ԱԲԵՂԱՅ* (1578), *Մուշողկուն վանքին մէջ գրուած ձեռագիրի գրիչը Պօղոս եպս. իր յիշատակարանին մէջ կը յիշէ վանքին առաջնորդը Աստուածատուր Աբեղան եւ Համշերակ Տ. Գրիգոր եւ Ծերուն եպիսկոպոսները եւ իր աշակերտները։*

*Կը թուի թէ վանքին մէջ գրչագրական փայլուն դպրոց մը գոյութիւն ունէր եւ եպիսկոպոսներ իսկ ձեռագիրներ կը գրէին։ Միայն Աբեղայի մը վանքին առաջնորդ ըլլալը զարմանալի կ'երեւի։*

*Ինչպէս Գրիգոր եպս.ի, նոյնպէս Աստուածատուր Աբեղայի նաեւ քաղաքին առաջնորդ ըլլալը որոշ չէ։ (Տես ակնարկեալ յիշատակարանը, Գերպ. Անդրէաս վրդ. Աղեքսանդրեանի* Պատմութիւն Ականաւոր քաղաքին Սեբաստիոյ, *էջ* 402, *եւ վերքիս ձեռագրաց բաժինը)։*

*ՄԱՐՏԻՐՈՍ ԵՊՍ.* (1598) *յիշատակուած է իբր վերակացու Ս. Լուսաւորիչ վանքին եւ հետեւաբար նաեւ առաջնորդ Մալաթիոյ, Էջմիածին պահուած Շնորհալիի Մեկնութիւն Մատթէի ձեռագիրին յիշատակարանին մէջ (Գէորգեան ցուցակ, թ.* 1288, *ձեռագիր)։*

*ՅՈՎԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ* (1633) *կը յիշուի նոյն թուականին գրուած Շարակնոցի մը յիշատակարանին մէջ (Տաշեան,* Մայր ցուցակ *էջ* 308) *եւ ձեռագրաց բաժին)։*

*ՍԱՀԱԿ ԵՊՍ. ՄԵԼԻՏԻՈՅ* (1723–1724) *կը յիշատակուի Կոնիբերի բրիտանական Թանգարանի Ձեռագրաց ցուցակին մէջ գրչագիրներէն մէկուն (թ.* 68–6988) *յիշատակարանին մէջ։*

*ԱԲՐԱՀԱՄ ԵՊՍ.* (1744), *«Վերատեսուչ Մելտինու քաղաքին», որդի Մկրտիչ քհնյ.ի։ Կոստանդին Կաթողիկոս Բարձրբերդցիի երեք Աւետարաններէն* 1268-*ին գրուածին մէջ կը յիշուի*1744 *թուականով յիշատակարանի մը մէջ, ուր կ'ըսուի թէ Մելիտինոյ վերատեսուչ Աբրահամ եպիսկոպոս կը տեսնէ Աւետարանը եւ Ղուկասի եւ Յովհաննու գլուխներուն գիրերը կը գտնէ այնքան եղծուած «գրոց նշմարանք ո՛չ կայր» եւ կը նորոգէ Մայիս ամսոյ* 17-*ին (*Բիւզանդիոն, *թ.* 3439)։

*Աբրահամ եպս.էն վերջ դարձեալ մօտաւորապէս հարիւր տարիներու ընդհատում մը կայ։ Անծանօթ կը մնան Մելիտինէի առաջնորդները այդ շրջանին։ Միայն* 1841–1848 *շրջանին պատրիարքարանի կարգադրութեամբ Մալաթիոյ առաջնորդութեան գործերը յանձնուած են Եդեսիոյ առաջնորդին։*

Երբ այս վիճակին առաջնորդն էր ՅԱՐՈՒԹԻՒՆ ԵՊՍ. ԳԱՊԳԸՆՃԵԱՆ՝ Եդեսիացի (1841–1848), որ ԺԹ. դարուն առաջին կէսի մէջ ապրող ամենէն գործօն եւ կարող եկեղեցականներէն մէկն էր: Ծնած է 1785-ին: Միաբան Երուսաղէմի եւ աշակերտ Իզմիրի առաջնորդ Մարկոս եպս.ի: 1821–1825ին Երուսաղէմի Կ. Պոլսոյ փոխանորդ, 1825-ին Իզմիրի առաջնորդ կ'ըլլայ եւ երբ կ'որոշուի Երուսաղէմի Գաբրիէլ Պատրիարքը Իզմիրի առաջնորդ ընել, 1829-ին Կարապետ Պատրիարք զայն կը յանձնարարէ Պրուսացիներուն, որոնց հաւանութեամբ 1830-ին Պրուսա կ'երթայ իբրեւ առաջնորդ եւ չորս տարուան (1830–1834) արդիւնաւոր պաշտօնավարութիւն մը կ'ունենայ: 1834–1839 Մուշի եւ Կարնոյ միացեալ վիճակին առաջնորդութիւնը կը վարէ: 1840-ին Եդեսիոյ առաջնորդ կ'ընտրուի: Երկու տարուան պաշտօնավարութենէ մը ետքը 1842-ին կրկին Պրուսայի առաջնորդ կ'ընտրուի եւ երկու տարի պաշտօն վարելէ ետք 1844-ին կրկին Եդեսիոյ առաջնորդութիւնը կը վերստանձնէ եւ չորս տարի (1844–1848) պաշտօն կը վարէ, Եդեսիոյ հետ վարելով նաեւ Մալաթիոյ, Պեհեսնիի եւ Հիսնի Մանսուրի առաջնորդութիւնները: Մեռած է 1848-ին ի Հալէպ:

Ունի մատենագրական աշխատութիւններ ալ:

Իր մահէն յետոյ երբ Յակոբ եպս. Գապաննեան 1848-ին Եդեսիոյ առաջնորդ կ'ընտրուի, Մալաթիա, Հիսնի Մանսուր եւ Պեհեսնի կ'անջատուին Եդեսիայէն, ինչպէս կը տեսնուի Յակոբ եպս.ի Առաջնորդական Պէրաթէն:

ՄԱՏԹԷՈՍ ՎՐԴ. (1848).– Առաջնորդական Տեղապահ: Պատրիարքարանի արձանագրութեանց համաձայն Պէրաթով Մալաթիա ղրկուած է:

Հաւանօրէն նոյնն է Մատթէոս վրդ. Խասգիւղցին (Կ. Պոլսոյ) հետ որ 1820-ին Կ. Պոլիսէն Սիս գացած է Կիլիկիոյ Կիրակոս Կաթողիկոսի (1796–1822 Սեպտ. 10) հետ եւ Սիսի մէջ վարդապետ ձեռնադրուած է հովուական պաշտօնով 1810-ին:

1848-ին Մալաթիա ղրկուած է, բայց շատ քիչ ժամանակ մը մնալէ վերջ պատրիարքական փոխանորդ ղրկուած է Կեսարիա, տեղւոյն կուսակցական վէճերը խաղաղեցնելու համար: 1849-ին Գաղատիոյ առաջնորդ կ'ընտրուի եւ 1854–1857 Եօզկատը եւս իրեն կը յանձնուի. 1858-ին կը հրաժարի Գաղատիայէն եւ կը պահէ Եօզկատի առաջնորդութիւնը: Գաղատիացիք զինքը կը կոչէին Տէլի Մատթէոս:

1859-ին կիւրին կը կցուի Եօզկատի եւ այնպէս կը մնայ մինչեւ 1862, Մատթէոս վրդ.ի մահը (Դեկտ. 1862) Եօզկատի մէջ:

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊՍ. (1858): Առաջնորդական Տեղապահ:

Մատթէոս վրդ.էն ետք յայտնի չէ թէ որոնք վարած են Մալաթիոյ առաջնորդութիւնը: Պատրիարքարանի արձանագրութիւններու մէջ հանդիպած եմ միայն արձանագրութեան մը, որուն համաձայն 1853-ին Մալաթիա ղրկուած է իբր Առաջնորդական Տեղապահ Պէրաթով Յովհաննէս եպս. մը, որուն ո՛չ նախընթացին, ո՛չ Մալաթիոյ մէջ պաշտօնավարութեան եւ թէ հետագայ կեանքին վրայ տեղեկութիւն ունիմ:

*ՍՐԱՊԻՈՆ ԵՊՍ. ՍԱՊՈՒՆՃԵԱՆ, Պեհեսնեցի*[1] *Բէօսէ Բէյլիչեան ընտանիքէն*: (1859—1861—1863):

*Պատրիարքարանի արձանագրութիւններուն մէջ հանդիպած եմ* 1859 *թուականով Սրապիոն եպս.ի անունին, իբր Մալաթիոյ*[2]: *Իր մասին ունինք նաեւ լրագրական յիշատակութիւն մը* (Մանզումէ, *Թ.* 281) *եւ* 1863*-ին պատրիարքարանի արձանագրութիւններու մէջ կը գտնենք զինքը Առաջնորդ Մալաթիոյ: Թէեւ Թրքախօս, բարեկաւած է կրթական գործը:*

*Փարիզի Նուպարեան Մատենադարանին մէջ կը գտնուի իր մէկ նամակը* 1861 *Փետր.* 3 *թուականով, ուղղուած Պոլսոյ պատրիարքարան: Նորընտիր առաջնորդը Մալաթիա հասնելու առիթով, կը գրէ իր առաջին տեղեկագիրը՝ Ազգային Ժողովին նոր կազմին, ինչպէս նաեւ կաթոլիկութեան դէմ տարած իր աշխատանքներուն մասին:*

*Անիկա իր տեղեկագրին մէջ կը խօսի իր այն ջանքերուն մասին, զորս ըրած է կաթոլիկութեան յարած Հայերը Հայ եկեղեցի վերադարձնելու համար:*

*Զբաղած է Ս. Լուսաւորիչի վանքին կալուածներուն խնդրով եւ համայնքին մէջ ծագած երկպառակութիւններով եւ խռովութիւններով:*

*Իրմէ նոյն տեղը պահուած կը մնայ* 8 *Դեկտ.* 1861 *թուականով գրութիւն մը, որ կը կրէ Առաջնորդին եւ քաղաքին* 17 *երեւելիներուն ստորագրութիւնը, ուղղուած պատրիարքարանի* «կրօնից որոմնացան եւ ազգատեաց, խռովարար Յակոբ Պըլխեանի եւ խռովասէր ու գինեմոլ Տոքթ. Գրիգորի» *մասին, որով կը բողոքեն եւ կը զգուշացնեն թէ դաւադրութեամբ՝ առնք կ'ուզեն Պըլխեանի համար Բ. Դուռէն հրամանագիր մը հանել, որպէս Մալաթիոյ ազգապետ:*

*Ինչպէս կը թուի Սրապիոն եպս. ջանքեր ըրած է Սահմանադրութեան տրամադրութեանց համաձայն ժողովներ կազմելու, վասնզի Նուպարեան մատենադարանը կը պահուի* 3 *Մայիս* 1864 *թուականով հայատառ Թրքերէն նամակ մը, որով Սրապիոն եպս. կը յայտնէ Կ. Պոլսոյ Պատրիարքարանին, թէ արդէն կազմած է Օգնական եւ Քաղաքական ժողովներ:*

*Սրապիոն եպս.* 1865*-ին Պոլիս էր եւ նոյն տարին Բերա, Բանկալթիի Հայոց գերեզմանատան մէջ մէկ գիշերուան մէջ կառուցուած փայտաշէն Ս. Լուսաւորիչ եկեղեցիին շինութեան մէջ կարեւոր դեր կատարած է եւ հոն ժամանակ մը քարոզիչ եղած է* (*տես* Մանզումէի էֆքիար, 45*րդ. տարի, Թ.* 281, 16—29 *Մարտ* 1902): *Հիմա բռնագրաւուած է այս եկեղեցին Թուրք կառավարութենէն եւ անոր շինութեան նպատակը վրիպած է:*

*Սրապիոն եպս.* 1867 *Հոկտ.* 11*-ին Վանայ Առաջնորդ կ'ընտրուի, բայց կը հրաժարի եւ* 18 *Դեկտեմբերին Մանճըլըգի առաջնորդ կը կարգուի,*

---

(1) *Ոմանք Սեբցի կը կարծեն:*

(2) *Օսմ. պետութեան Սալնամէին մէջ* 1859—60 *կը յիշուի այս եպիսկոպոսը իբրեւ Պեհեսնիի Հայոց առաջնորդ:*

*այս վիճակը Կիւրինէն և Տարենտէէն անջատելով (Պատ. Արձան.), սակայն այս կարգադրութիւնը հազիւ տարի մը կը տեւէ, վասնզի 1869–ին Մանճըլըգ, Պեհեսնի եւ Ատիեաման կը միանան Մալաթիոյ առաջնորդութեան: Կիւրին, Տարէնտէ եւ Աչոտի կը պահուին իբր անջատ առաջնորդութիւններ:*

ԱՌԱՔԵԼ ՎՐԴ. (1865–1868):

*Նախընթացը անծանօթ:*

1860–*ական թուականներուն*[1] *Սիսէն կը դրկուի Մալաթիա իբր առաջնորդ խիզախ նկարագիրով այս վարդապետը: Թրքական բարբարոսութեան այդ շրջանին յանդուգն քայլեր կ'առնէ, թէ ազգային իրաւանց պաշտպանութեան եւ թէ դպրոցներու հիմնարկութեան եւ կրթական գործին զարգացման համար:*

*Մալաթիոյ թուրք էշրաֆէն կը շահի բարեկամութիւնը Հաճի Ապտի Օղլուի եւ անոր միջոցաւ շատ գործ կը տեսնէ: Իր մասին Գ. Մելիտինեցի* (Պապ Ուխտի, *թ.*26 *էջ* 1–2) *կը գրէ.* «Այս հայրենապաշտ, քաղաքագէտ ու յանդուգն Առաջնորդի օրով Մալաթիոյ մէջ բացուեր է առաջին Հայ դպրոցը, որուն վարժապետները (այն ատենուան որակումով) եղած են երեք լուսաւոր դէմքեր — Պետրոս Վարժապետ Կիւրեղեան, հայագէտ, Աստուր Վարժապետ Բահանեան, հայագէտ եւ թրքագէտ եւ Պէլլիկ Վարժապետ Քէչէճեան, հայագէտ: Իր աքանչելի յանդգնութեամբ, *Տէլի Մուրախաս, ապա՝ Երուսաղէմի մէջ* Եօթը փորձանք *տիտղոսները շահող Առաքել վարդապետ, իր կեանքը վտանգելով թուրք խուժանի եւ կառավարական պաշտօնեաներու կողմէ գործուած բարբարոսութեանց դէմ, ստիպողաբար հող կը պատրաստէ ներքին գործունէութեան համար, մինչ այս երեք լուսաւոր դէմքերը կը ջանային նոր սերունդին մայրենի լեզու սորվեցնելու փրկարար աշխատանքին*»:

*Իր առաջին գործը կ'ըլլայ Մալաթիոյ Մայր Եկեղեցիին ցած ու պզտիկ դուռը խոշոր ու բարձր դուռով մը փոխարինել* (*Ստեփան Մանուկեան*, Նոր Մալաթիա, ԺԵ. *տարի, թ.* 3–4, *էջ* 45): *Յետոյ կարմիր Փէսի եւ կօշիկի գործածութեան արգելքը քրիստոնէից համար ջնջել կու տայ եւ խորականութիւնը կը յաջողի վերցնել* (*Յակոբ Մուրատեան*, Նոր Մալաթիա, *թիւ* 1, *էջ* 20 *եւ Ստեփան Մանուկեան, նոյնը ԺԵ. տարի, թ.* 3–4, *էջ* 45): *Կը թեյադրէ որ հայ ժողովուրդն ալ հագնի գոյնզգոյն հագուստներ եւ կարմիր Փէսեր դնէ, ինչ որ մինչեւ այն ատեն իսլամներուն մենաշնորհն էր: Ստափախութիւն ցոյց տուողները եւ վարանողները կ'անիծէր* (*Ստեփան Մանուկեան*, նոյն): *Մեռեալներու համար քրիստոնեաները անարգող թաղման արտօնագիրներու խլամ կրօնապետներու կողմէ տալու սովորութիւնը ջնջել տուաւ եւ ինք տալ սկսաւ արտօնագիրները:*

*Մինչեւ այն ատեն Մալաթիոյ Հայ Եկեղեցիները զանգակ չունէին: Առաքել վրդ. կը յաջողի այս արտօնութիւնն ալ ստանալ, զանազան հնարամտութիւններով:*

---

(1) *Ստեփան Մանուկեան* (Նոր-Մալաթիա, *ԺԵ. տարի, թ.* 3–4, *էջ* 45) *այս թուականը կը ճշդէ եւ 1860 կը նշանակէ, որ ճիշդ չէ, վասնզի մինչեւ 1865, Սրապիոն եպս. էր Մալաթիոյ առաջնորդը:*

1864–ին ներքին գաւառները քննիչ յանձնաժողով կը ղրկուի 8 բարձրաստիճան Թուրք պաշտօնատարներով, որոնք Մալաթիա ալ կու գան։

Առաքել վրդ. արիաբար իր հօտին իրաւունքները կը պաշտպանէ (տես Նոր Մալաթիա, Բ. տարի, Թ. 2, էջ 16)։

Իր պաշտօնավարութեան շրջանին կառուցուած է Ս. Յարութիւն եւ հիմնարկուած Մալաթիոյ Ս. Երրորդութիւն եկեղեցիները (Յակոբ Մուրատեան, Նոր Մալաթիա, Գ. տարի, Թ. 4, էջ 14)։

1866–ին Էմր – Ալի շնորհուած եւ իր առաջնորդական հանգամանքը ճանչցուած է (Պատ. Արձան.)։

Առաքել վրդ.ի պաշտօնավարութեան շրջանին Մալաթիոյ Առաջնորդութեան մէջ Սահմանադրական վարչութիւն կազմելու կամ Սահմանադրութիւնը գործադրելու հրահանգ կը տրուի (նոյն, էջ 49) վասնզի դեռ չէր գործադրուած։

Նոյնպէս իր պաշտօնավարութեան առեն երաշտութեան հետեւանօք սով մը կը պատահի Մալաթիոյ մէջ։ Անկէ օգտուելով, բողոքական միսիոնարներ Խարբերդէն կը փութան Մալաթիա եւ Հայ ընտանիքներու անձկութիւնը կը շահագործեն եւ նպաստը եւ ողորմութիւնը միջոց կը ծառայեցնեն հաւատորսութեան, եւ կը յաջողին 250–300ի չափ հայադաւան ընտանիքներ բողոքական դարձնել (Յակոբ Մուրատեան, Նոր Մալաթիա, Բ. տարի, Թ. 4, էջ 13–15)։

Բողոքական դարձող հայերու դէմ խիստ հալածանք գործադրած եւ ապաշխարհանքի տարօրինակ ձեւեր կիրարկած է (տես նոյն, մանրամասն բացատրութիւններ)։

«1860 թուականներէն վերջ, Առաքել վարդապետ իր անկախ բնաւորութեամբ եւ յանդուգն պահանջներով կը բարձրացնէ առաքելական եկեղեցւոյ վարկը յաջս կառավարութեան եւ իր շինարար գործունէութեամբ օգտակար կը հանդիսանայ իր հօտի ծով ցաւերուն։»

«Թուրք ժողովուրդն ու ժամանակուան տեղական կառավարութիւնը ապշած այս հայ եկեղեցականին թէպէտ համեստ պահանջներէն, զայն որակած էին «Տէլի Մուրախաս» (խենթ առաջնորդ, վարդապետ) մակդիրով…։ Ան հեռագիրներ կը տեղացնէր թէ՛ Պապը Ալի եւ թէ՛ Պատրիարքարան, խընդրելով որ հոգեհան «հարկերը քիչ մը նուազեցուին», «անմեղ բանտարկեալները ներում ստանան» եւ «մարդասպանները սանձուին»։ (Գէորգ Մելիտինեցի, Նախնիրներ, էջ 41)։

Այսպէս նշանակելի պաշտօնավարութենէ մը ետք, Առաքել վրդ. կը թողու իր պաշտօնը եւ իրեն կը յաջորդէ ուրիշ մը նոյնանուն։

Առաջին Առաքել վրդ.ի ինչ եղած ըլլալը չեմ գիտեր, միայն Յակոբ Մուրատեան (Նոր Մալաթիա, Բ. տարի, Թ. 4, էջ 13–15) կը յիշէ որ 1887–1888 թուականներուն Մալաթիա այցելած է անգամ մը եւ երկու ամիս մնացած է հոն հիւրաբար։

ԱՌԱՔԵԼ ՎՐԴ. ՄԱՁԼԸՄԵԱՆ ԹԷՔԻՐՏԱՂՑԻ (1867–1869)[1]։

(1) Առաջին Առաքել վրդ.ի եւ Մաձլըմեան Առաքել վրդ.ի յաջորդական պաշ-

*Ծնած է 29 Յունուար 1829ին․ կրօնաւորած է Երուսաղէմի մէջ իբր Մր․ Ս․ Յակոբի։*

1856–*ին Եգիպտոսի մէջ ընդօրինակած է քարոզգիրք մը, որ Կիպրոս պահուած էր․* (**Revue de l'Orient Chretien, 1922–1923,** *էջ* **187):**

1862–1863 *Ռումանիա–Պուլկարիա կը շրջի իբր այցելու հովիւ եւ* 1863 *Օգոստոսին Կ․ Պոլիս կու գայ։*

1864 *Մայիս* 1–*ին Մարաշի Առաջնորդ կ'ընտրուի եւ* 1867 *Հոկտեմբերին Առաջնորդական փոխանորդ Մալաթիոյ։*

1868*ին մասնաւոր պաշտօնով Վան կը ղրկուի եւ իր տեղը Մալաթիոյ առաջնորդ կ'ընտրուի* 1868 *Մայիս* 8–*ին Կղեմէս վրդ․։*

*ԿՂԵՄԷՍ ՎՐԴ․* (8 *Մայիս* 1868–7 *Մարտ* 1869)։

*Անծանօթ է իր անունը այլուստ։*

*Ինչպէս կը տեսնուի շատ կարճ պաշտօնավարութիւն մը ունեցած է եւ Կ․ Պոլսոյ կեդր․ վարչութիւնը կրկին Մապրմեան Առաքել․ վրդ․ը դարձուցած է Մալաթիա, Կղեմէս վրդ․ի տեղ։*

1868 *Թուականով Գաւառ․ ժողովի* 4 *անդամներուն ստորագրութեամբ Պոլսոյ Պատրիարքին ղանգատ կը յանձնուի Մէճլիսի անդամ Հաճի Օսման աղային դէմ եւ կը խնդրեն որ պաշտօնէն արձակելու հրաման մը ձեռք բերուի Բ․ Դուռէն որպէս* «անօրէն եւ պիղծ» *մարդ մը։ Նոյնպէս դառնապէս կը գանգատին գրնուորական* «պէտէլ»*ի տուրքին ծանրութեան եւ կաթոլիկներու վարդապետին դէմ։ (Պաշտօնագիր պահուած Փարիզ, Նուպարեան Մատենադարան)։*

*ԱՌԱՔԵԼ ՎՐԴ․ ՄԱՊՂՈՒՄԵԱՆ ԹԷՔԻՐՏԱՂՑԻ (Բ․ անգամ,* 1869 *Մարտ* 7 – 1873)։

*Իր հանգամանքն էր Առաջնորդական փոխանորդ։*

*Այս իր վրայ շատ խօսեցնող վարդապետը խառն ժողովին* 7 *Մարտ* 1869 *Թուականին որոշման համաձայն* պէրաթ*ով պաշտօնին կը ձեռնարկէ* (Թորոս Աղբար, *Ա․ էջ* 312–3)։ *Այս անգամ իրաւասութիւնը կ'ընդարձակուի եւ Մանճըլըգ, Պեհեսնի եւ Ադըեաման կը կցուին Մալաթիոյ առաջնորդութեան, իսկ Կիւրին, Տարենտէ եւ Աշոտի կը կազմեն առանձին առաջնորդութիւն մը՝ Զաքարիա եպս․ի տեսչութեամբ։*

*Ներքին դժգոհութիւններ կը ստեղծուին ժողովուրդին մէջ եւ Կ․ Պոլսոյ Կեդր․ Կրօն․ ժողովը* 1872 *Սեպտ․* 21*ին կ'որոշէ* թագրիր*ով մը խնդրել Բ․ Դուռէն, որ Առաքել վրդ․ Պոլիս բերուի* (Համարատուութիւն Ազգ․ Կեդր․ Վարչութեան, 1872–1873 *ամի, էջ* 79)։

*Մապրմեան Առաքել վրդ․ խուսափելու համար մաս մը ժողովրդեան հետ կաթոլիկութեան կը յարի 1873ի առաջին ամիսներուն* (Նոյն, *էջ* 81)։ *Կ․ Պոլսոյ կեդրոնական վարչութիւնը՝ այս կրօնափոխութեան պատճառով Մա–*

---

*տօնավարութեանց համար կը կասկածիմ որ երկուքին ալ նոյն անունը ունենալնուն համար գուցէ շփոթութիւններ տեղի ունեցած եւ մէկուն գործը միւսին վերագրուած ըլլան։*

*լաթիոյ Առաջ. Տեղապահ կը նշանակէ 1873–ին Սրապիոն եպիսկոպոսը կըրկին։* (Նոյն, էջ 53)։

*Այս Առաքել վրդ.ի համար Յ. Գօճապաշեան (տես* Պալուխտի, *Թ.* 30, *էջ* 12), *կ'ըսէ թէ Սահակ եպս.էն յետոյ պաշտօնավարած է, ինչ որ ճիշդ չէ, եւ կը յարէ թէ* «այս առաջնորդը իր գործերը կը վարէ ի նպաստ թուրք կառավարութեան։ Փոխանակ Մայր եկեղեցւոյ առաջնորդարանին մէջ մնալու, Ս. Յարութիւն եկեղեցին կը վերածէ Առաջնորդարանի։ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան Մալաթիոյ մասնաճիւղը օր առաջ այս վարդապետէն ազատելու համար կ'որոշէ ահաբեկել զայն։ Ահաբեկման խիստ ծանրակշիռ գործը կը յանձնուի իր անվախութեամբ ծանօթ Սարգիս Սուքիասեանի, որ գիշեր մը մտնելով վարդապետին ննջասենեակը, կը տանի անոր բոլոր հագուստները։ Կառավարութեան փնտռտուքները գողը գտնելու համար կ'անցնին ապարդիւն։ Անհիմն կասկածի վրայ կը ձերբակալուին նոյն փողոցին մէջ բնակող Թորոս ամու Սապունճեանը, իր զաւակը եւ Օխուրեանը։ Հակառակ թափուած բոլոր ջանքերուն, երեք անմեղ անձերը կը դատապարտուին երեքական տարուայ բանտարկութեան։ Այս դէպքէն անմիջապէս յետոյ, վարդապետը գուցէ նախազգալով որ իրեն վտանգ կը սպառնայ, կը հեռանայ Մալաթիայէն։ Թորոս ամուն կը մեռնի բանտին մէջ բնական մահով, իր զաւակը եւ Օխուրեանը նոյն բանտին մէջ կը սպաննուին թուրքերու կողմէ 95–ի կոտորածին»։

*Այս պատմութիւնը ապահովաբար սրբագրութեան կը կարօտի։*

*Նախ ըսենք թէ այս ծիծաղելի եւ գձուձ ահաբեկումի ձեւը չափազանց անվայելուչ եւ դատապարտելի գործ մըն էր որեւէ յեղափոխական կազմակերպութեան համար որ ահաբեկութիւնը ողորմելի գողութեամբ մը կ'արտայայտէր։*

*Յետոյ կայ այս պատմութեան մէջ ժամանակագրական աղաղակող անհամաձայնութիւններ։*

*Եթէ իրապէս այդ երեք անձերը երեքական տարուան բանտարկութեան դատապարտուած էին եւ եթէ 1895ի ջարդի օրը իրենց վերջին օրը իսկ եղած ըլլար, 1892ին կատարուած կ'ըլլար ահաբեկումը, ինչ որ անկարելի էր քանի որ Առաքել վրդ. շատոնց հեռացած էր Մալաթիայէն եւ նոյնիսկ մեռած։*

*Նոյնպէս Ս. Դ. Հնչակեան կուսակցութիւնը 1873–ին տակաւին գոյութիւն չունէր, հետեւաբար այս պատմութիւնը այս ձեւին մէջ անմարսելի դեղահատ մըն է։*

*Ամէն պարագայի մէջ արարքը եթէ իրաւ էր, շատ գռեհիկ արարք մըն էր։ Առաքել վրդ. Մալըմեան իր պաշտօնէն հրաժարած է եւ դարձեալ Մայր Եկեղեցւոյն ծոցը դառնալով Մանճըլըգի Ս. Թորոս վանքին վանահայր եղած է ուր կը գտնուէր մինչեւ 1882—1884 թուականներուն, ուրկէ կը դառնայ Երուսաղէմ* (*Ադաւնունի.* Միաբանք եւ Այցելուք, *էջ* 27)։

*Երուսաղէմէն պահ մը Անալիա կ'երթայ իբր քարոզիչ եւ 1890–ին կըրկին կը դառնայ Երուսաղէմ, ուր կը վախճանի 9 Յունուար 1891–ին, մթերա–*

նոց մը Թողլով Ս. Յակովբեանց վանքին յիշատակ (նոյն)։ Թաղուած է Երուսաղէմի Ս. Փրկիչ վանքին կից Սիոնի գերեզմանատունը (տես Տիգրան Հ. Թ. Սաւալանեանց, Պատմութիւն Երուսաղէմի, էջ 1285)։

ՍՐԱՊԻՈՆ ԵՊՍ. ՍԱՊՕՆՃԵԱՆ ՊԵՀԵՄՆԵՑԻ (1873–1883)[1]։ (Բ. անգամ)։

Առաքել վրդ. Մաղլըմեանի կրօնափոխութենէն յետոյ, Սրապիոն եպս. Բ. անգամ Առաջ. Տեղապահ կը նշանակուի 22 Փետր. 1873-ին, (Համար. խառն ժողովի 1872–73 ամի, էջ 52–53 եւ 82, ·եւԹորոս Աղբար, էջ 307), Կ. Պոլսոյ խառն ժողովի 19 Յունուար 1873ի նիստին որոշումով (նոյն. էջ 78 եւ 85)։ Այդ հանգամանքով կը պաշտօնավարէ մինչեւ 1876, երբ Առաջնորդ կ'ընտրուի Մալաթիոյ, Պեհեսնիի եւ Հիւսնի Մանսուրի միացեալ վիճակին։

Սրապիոն Արքեպս. ըստ Քերովբէ Թաշճեանի (տես Պապ Ուխտի, Թ. 64, էջ 17) «Ծերունի... հայրենասէր եկեղեցական» մըն էր որ «պաշտօնավարած էր մօտաւորապէս 17 տարի»։ Անիկա ճիշդ չի թուիր վասնզի Քերովբէ Թաշճեան կը հաւաստէ թէ 1886-ին մեռած է եւ եթէ իրապէս 17 տարի պաշտօնավարած էր, իր առաջնորդութիւնը պէտք է սկսած ըլլայ 1869-ին, մինչդեռ 1869–1873ին Մալաթիոյ առաջնորդն էր Առաքել Մաղլումեան։ Ուրով իր պաշտօնավարութեան սկիզբը պէտք է դնել 1873։ Եւ որովհետեւ 1883–85ին Մաղաքիա վրդ. Տէրունեան Առաջնորդական Տեղապահ ընտրուած եւ երկու տարի պաշտօնավարած է, հետեւաբար ընաւ 17 տարի կարելի չէ որ պաշտօնավարած ըլլայ։

Ըստ Յակոբ Մուրատեանի (Նոր Մալաթիա, Գ. տարի Թ. 2 էջ 14), այս «հեզահամբոյր, սրբակրօն եւ շինարար» եպիսկոպոսին առաջին գործը կ'ըլլայ Օրտուզիի Ս. Փրկիչ վանքին մէջ 10–12 սենեակներ շինել տալ, եւ ուխտաւորներուն հանգստութեան համար դիւրութիւններ տալ կահաւորելով սենեակները։

Յետոյ շինել կու տայ Մայր Եկեղեցիին առաջնորդարանը եւ անոր կից Առաքել վրդ.ի կառուցած ներքնայարկ դպրոցին վրայ վարժարան մը երկու դասարաններով, եւ զարկ կու տայ կրթական գործին։

Միեւնոյն ատեն եկեղեցւոյ վերնատան սանդուխներուն տակ պզտիկ դուռէն անդին տարածուող պարտէզին մէջտեղէն ճամբայ մը բանալով երկու կողմը 50-ի մօտ խանութներ շինել կու տայ եւ պղնձագործները, որոնք բոլորն ալ հայ էին, հոն կը հաւաքէ եւ խանութները անոնց կը վարձէ։ Այդ վայրը կը կոչուի Գազանճըլար Չարշըսը կամ Կալաճինոց շուկայ (նոյն)։

Առաքել վրդ.ի օրով ձեռնարկուած Ս. Երրորդութեան եկեղեցւոյ շինութիւնը առաջ տարաւ, ժողովրդային հանգանակութեամբ (նոյն)։

1880-ին կրթական զարթման նախօրեակը սկսաւ Մալաթիոյ մէջ, Պերլինի դաշնագրին հետեւանօք երբ Սուլթան Համիտ աչք չլացնելու համար

(1) Յակոբ Մուրատեան (Նոր-Մալաթիա, Գ. տարի, Բ. 2, էջ 14) Սրապիոն եպս. 1876–77-ին առաջնորդ եկած ցոյց կու տայ։ Պաշտօնագիրներ կը հաստատեն թէ 1873էն կը սկսի իր պաշտօնավարութիւնը։

Հայերէն ալ ոստիկաններ եւ ոստիկան զինուորներ առաւ: Այսպէս, 1879ին Մալաթիոյ մէջ 15–16 հայ ոստիկան եւ 20–25 ոստիկան-զինուորներ առանուեցան:

Իր օրով 1882ին բողոքական աղջկան մը հայու մը հետ ամուսնութեան պատճառով, երկու համայնքներուն մէջ վէճ մը ծագեցաւ եւ ըսի-ըսաւներ պատահեցան (Նոր Մալաթիա, Գ. տարի, Թ. 2, էջ 16):

Հակառակ Յակոբ Մուրատեանի, Սրապիոն եպիս.ի նկատմամբ ցոյց տուած չատ բարեացակամ գնահատութեան եւ գովեստներուն, իր պաշտօնավարութեան արդիւնքներուն վրայ տեղեկութիւններ չկան, միայն 21 Յունուար 1875ին իր գրած մէկ նամակէն կը հասկցուի որ Ս. Լուսաւորիչ վանքին կալուածներուն խնդիրներով զբաղած է:

Սրուանձտեանց Գարեգին եպս. որ 1879ին Մալաթիա այցելած է, Սրապիոն եպս.ի վրայ խօսելով կ'ըսէ թէ «Ս. Առաջնորդն իւր ձիէն զատ բան մը չէր յիշեր, ամէն օր իւր հոգն ու խօսքը իւր ձին էր, իւր ծախած ձին, իւր առած ձին...: Աւաղ խոր ցաւեցաւ հոգիս:» (Թորոս Աղբար, Ա. 311):

Սրապիոն եպս.ի պաշտօնավարութեան շրջանին Կ. Պոլսոյ Ազգ. Կեդրոնական Վարչութիւնը կեդրոնէն Մալաթիա տեսուչ մը ղրկելու հարցով կը զբաղի (տես Համարատուութիւն Կեդր. Վարչութեան, 1872–1873 ամի. էջ 78 եւ 81), վասնզի անկարգ վիճակ ունէին թեմին գործերը: Հետեւաբար Ազգ. Կեդր. Վարչութեան որոշումով Ուրֆայի առաջնորդ Խորէն եպս. Մըխիթարեանը կը ղրկուի Մալաթիա, իբր Սահմանադրութեան գործադիր:

Խորէն եպս. առաջին անգամ ըլլալով ժողովրդական քուէարկութեամբ ժողովներ կը կազմէ: 20 Նոյեմբ. 1883ին Մալաթիոյ Գաւառական ժողովը իր անդրանիկ նիստը կը գումարէ, նոր Առաջնորդական Տեղապահի նախագահութեամբ: Իսկ Սրապիոն եպս. Առաջնորդարանի վարչական գործերէն ձեռնթափ կը քաշուի Օրդուզիի Ս. Փրկիչ վանքը, իր շինած սենեակներէն մէկը, եւ կը ստանձնէ Ս. Գր. Լուսաւորիչ եւ Ս. Փրկիչ վանքերուն վանահայրութիւնը եւ այսպէս Առաջնորդութիւնը եւ վանահայրութիւնը կը բաժնուին:

Սրապիոն եպս. վանքապատկան կալուածները չահագործելով շինաբարութիւնը առաջ կը տանի ըստ Յակոբ Մուրատեանի (Նոյն):

Ս. Փրկիչ վանքին մէջ եւս շինել կու տայ 7–8 սենեակներ, եւ վանքին հողերու ջուրի ճամբաները կը շինէ եւ այգիներ տնկել կու տայ:

1884ին երեք Թուրքեր Ս. Փրկիչ վանքին պատը ծակելով, եկեղեցիին ոսկեղէն եւ արծաթեղէն անօթները, թանկագին շուրջառները եւայլ, ինչ որ կը գտնեն կը գողնան: Կառավարութիւնը ոչինչ կ'ընէ գողերու դէմ, սակայն, Սրապիոն եպս. իր հետապնդումներով կը յաջողի գողօնը ետ ստանալ քիչ մը անհաւատալի եւ հրաշապատում պատմութեան մը համաձայն (Յակոբ Մուրատեան, Նոր-Մալաթիա, Գ. տարի, Թ. 2, էջ 16–17):

ՄԱՂԱՔԻԱ ՎՐԴ. ՏԷՐՈՒՆԵԱՆ ՏԻԱՐԴԷՔԻՐՑԻ (1883–1885): Առաջնորդական Տեղապահ ընտրուած է Պատրիարքարանի կողմէ լոկ Մալաթիոյ վիճակին, վասնզի Պեհեսնի անջատուած էր:

1884-ին Պեհեանի նաեւ յանձնուեցաւ իր հովուութեան եւ միացեալ մնաց 1885ին, երբ Մաղաքիա վրդ. Տէրունեան ընտրուած ըլլալով իր ծննդավայրին՝ Տիարպէքիրի առաջնորդ, մեկնեցաւ իր նոր պաշտօնատեղին:

Մաղաքիա վրդ. Տէրունեան ծնած է 1846ին, եւ 1866ին Երուսաղէմ երթալով աշակերտած է Ժառանգաւորաց վարժարանին:

1871ին ձեռնադրուած է կուսակրօն քահանայ, իբրեւ միաբան Ս. Յակոբեանց վանքին: Զանազան վայրերու մէջ պաշտօնավարած է իբրեւ տեսուչ, Առաջ. Տեղապահ եւ Առաջնորդ: Այսպէս եղած է, 1873—1874ին տեսուչ, Կիպրոսի, 1874—1880ին Առաջ. Պաղտատի, 1883—1885ին Առաջ. Տեղապահ Մալաթիոյ, 1885—1887ին Առաջ. Տիարպեքիրի, 1887—89ին Առաջ. Հալէպի, 1894—1897ին Հոգեւոր Հովիւ Ամերիկահայոց, 1898ին Խրիմեան Կաթողիկոսէն եպիսկոպոս ձեռնադրուելով Առաջնորդ կը կարգուի Պարսկա-Հնդկաստանի:

1901էն 1903ին Էջմիածին կը մնայ եւ կը թարգմանէ Թուրքերէնէ հայերէնի Ադրիանուպոլսեցի Պօղոս Պատրիարքի Զանազանութիւն Հինգ դարուց գործին երեք հատորները, որ կը տպուի Էջմիածին:

1903—8ին հիւրաբար Երուսաղէմ կը մնայ եւ 1909ին կ'երթայ Պոլիս, ուր կը վարէ քարոզչական պաշտօններ: Ազգ. Երեսփոխան եւ Կրօն. Ժողովի եւ այլ ժողովներու անդամ եղած է:

1922ին վախճանած է Կ. Պոլիս:

Իր Մալաթիոյ պաշտօնավարութենէն յիշատակ մը չէ մնացած:

ՍՐԱՊԻՈՆ ԵՊՍ. ՊԵՀԵՄՆԵՑԻ (1885—1886) (Գ. անգամ):

Մաղաքիա վրդ.ի մեկնելէն վերջ, Սրապիոն եպս. 80—85ամեայ ծերունին ժողովուրդին թախանձանացը վրայ դարձեալ ինքն վարել սկսաւ Մալաթիոյ առաջնորդարանին գործերը, ժողովրդային ճնշումին տակ, մինչ Պոլսոյ Պատրիարքարանը Մալաթիոյ Առաջնորդական Տեղապահ նշանակած էր ՍՏԵՓԱՆ ՔՀՆՅ. ՂԸԶԸԼՔԷՇԻՇԵԱՆԸ: Ժողովուրդի պահանջին վրայ Սրապիոն եպս.ի վերընտրութիւնը հաստատուեցաւ:

Քերովբէ Թաշճեան (Պապ-Ուլստի Թ. 64 էջ 17), կը վկայէ թէ իր հոգեշունչ քարոզներով ժողովուրդին միտքը կը լուսաւորէր եւ կ'արթնցնէր զայն իր դարաւոր քունէն, մինչ Սրուանձտեանց, ինչպէս տեսնուեցաւ շատ նպաստաւոր գաղափար մը չէ կազմած իր մասին: Հազիւ հինգ-վեց ամիս կրցաւ պաշտօնավարել եւ կարճատեւ հիւանդութենէ մը ետք, 18 Յունուար 1886-ին վախճանեցաւ եւ թաղուեցաւ Մայր Եկեղեցիին բակին մէջ:

Իր փափաքին համաձայն իր քովը կը թաղուի նոյն օրը վախճանած Տ. Յակոբ քհնյ. Տէր Յակոբեան (տես նոյն, նաեւ Յակոբ Մուրատեան, Նոր Մալաթիա Գ. տարի, Թ. 2, էջ 17):

Երկուքին ալ յուղարկաւորութիւնը կը կատարուի նոյն օրը մեծահանդէս, աւելի քան 4000 յուղարկաւորներու ներկայութեան:

ԻՍԱՀԱԿ ԿԱՄ ՍԱՀԱԿ ԵՊՍ. Տ. ՍԱՀԱԿԵԱՆ[1], Երզնկացի (1887—1897):

(1) Մկրտիչեան՝ կը կոչէ Միսաք Քէլէշեան Սիս-Մատեանի մէջ:

*Սրապիոն եպս․ի մահէն մէկ ու կէս տարի ետք, Քէֆսիզեան Կաթողիկոս Մալաթիա կը ղրկէ Սահակ եպս․ը, իբրեւ Առաջնորդական Տեղապահ* (Համ․ Քաղ․ Ժողովի, 1885–1887 *ամփ․ էջ* 79, *եւ* Բիւզանդիոն, *Թ․* 1960), *սակայն չուտով,* 1887 *Նոյեմ․* 17-*ին առաջնորդ կ՚ընտրուի, ինչպէս կը տեսնուի Պատրիարքարան ուղղուած նամակէ մը։*

*Պատրիարքարանը իր* պերաթն *ալ տուած է։*

*Իր պաշտօնավարութեան շրջանին* 1889-*ին, Մալաթիա բոլորովին անջատուած է իր Թեմերէն եւ առանձին առաջնորդութեան վերածուած է, սակայն յետոյ կրկին Մալաթիոյ Առաջնորդութեան կցուած է Հիսնի-Մանսուր կամ Ատըեաման։*

*Իսահակ Եպս․ աղմկալից կեանք մը ունեցած է։*

*Ծնած է* 1837-*ին եւ* 1866*ին Մկրտիչ անունով ձեռնադրուած է աբեղայ Երուսաղէմի մէջ իբր միաբան Հայոց վանքին ուր* 1869*ին վարած է դպրոցներու տեսչութեան պաշտօն։*

1872–75 *տեսուչ է Ս․ Յարութեան եւ* 1876*ին անդամ Տնօրէն Ժողովի։*

1882*ին Թարգման կը նշանակուի։*

1883*ին կը հրաժարի Երուսաղէմի միաբանութենէն եւ կ՚երթայ Կարին, ապա Պոլիս, ուր* 1882 *Յունիս* 23*ին բողոքագիր մը կը մատուցանէ Երուսաղէմի Պարտուց բարձման Յանձնաժողովին որ յետ քննութեան կը մերժէ զայն։*

*Մկրտիչ վրդ․ Պոլսէն Սիս կ՚երթայ եւ միաբան կը դառնայ Կիլիկիոյ կաթողիկոսութեան «հաւանաբար հոն բարձրանալու դիւրագին առիթներ նշմարելով», ինչպէս կ՚ըսէ Արտաւազդ Արքեպս․ Սիւրմէեան․* (Պատմութիւն Հալէպի Հայոց, 1950 *էջ* 867)։

1883*ին Հալէպի Առաջնորդական Տեղապահ կ՚ըլլայ եւ երկու տարի ետքը՝* 1885*ին ի վարձ երկու տարուան իր բարւոք պաշտօնավարութեան Հալէպի մէջ կը ստանայ Ծայրագոյն վարդապետութեան աստիճան։*

*Նոյն տարին կը ստանձնէ նաեւ Հալէպի ազգ․ վարժարանին տնօրէնութիւնը, տեղւոյն վրայ ճարուած ուսուցչական կազմով մը (Արտաւազդ Արքեպիսկոպոս,* Հալէպի հայերը, *էջ* 867)։

1886*ին Մկրտիչ վրդ․ Տէր Սահակեան Հալէպի կուսակալ Ճէմիլ փաշայի հրամանով եւ քաղաքական ամբաստանութեամբ կ՚աքսորուի Սիս (Արտաւազդ եպս․, նոյն,* 867), *ուր միւռոնօրհնութեան ժամանակ կը ձեռնադրուի Եպիսկոպոս Իսահակ անունով եւ* 1887*ին սկիզբները կը ղրկուի Մալաթիա իբրեւ Առաջնորդական Տեղապահ։* 14 *Մայիս* 1887*ին Կ․ Պոլսոյ Պատրիարքարան ուղղուած նամակով մը, գանգատ կը յայտնէ Պատրիարքարանի կաթոլիկութեան յարած Առաքել վրդ․ Մազլըմեանի դէմ, ինչպէս նաեւ Հիսնի Մանսուրի Տեղապահ Եղիշէ վրդ․ի դէմ, որ մեկնած է Պոլիս։ Իսկ* 5 *Յուլիս* 1887*ին կը պահանջէ հեռացնել Ատըեամանէն կաթոլիկ Միքայէլ*

վրդ·ը[1] իր զբպարտութեանց համար:

Ըստ Քերովբէ Թաշճեանի (Պապ-Ուխտի Թ· 64, էջ 17), «բարի, Աստուածավախ եւ հայրենասէր եկեղեցական մըն էր»:

Մ· Տէր Մելքիսեդեկեան (Նոր Մալաթիա, Ա· տարի Թ· 3, էջ 14) ամբասիր, անկեղծ, գործունեայ եկեղեցական մըն էր, որ մեծ ջանքեր ըրած էր եկեղեցւոյ պայծառութեան եւ դպրոցի յառաջդիմութեան համար, նիւթական եւ բարոյական աջակցութեամբ Գրիգոր աղա Ասլանեանի, Եաղըճեաններու եւ այլ ազդեցիկ մարդոց:

Իր օրով պատահեցաւ 1893ի մեծ երկրաշարժը, որուն զոհ եղած են 300 հայեր:

Մեծ Աղաներու ատելութեան զոհ եղած է: Երկու ջոջ աղաներ դըժգոհ մնալով որ Առաջնորդը իրենց ցոյց չի տար պէտք եղած յարգանքն ու պատիւը, հանրագրութեամբ մը կը դիմեն Կիլիկիոյ Կաթողիկոսին, պահանջելով անոր հեռացումը:

Քէֆսիզեան Կաթողիկոսէն հրահանգ կու գայ Սահակ եպս·ի հեռանալ: Եպիսկոպոսը որ շատ կը սիրէր իր միտքը առակներով բացատրել, իր ցաւը, դժգոհութիւնը եւ զայրոյթը առակաւոր խօսքերով յայտնելով, եկեղեցւոյ բեմէն հրաժեշտի քարոզով մը, հետեւեալ օրը կը մեկնի Մալաթիայէն (Ք· Թաշճեան, Պապ Ուխտի, Թ· 64, էջ 17):

Գրող մը կ'ըսէ թէ «Քէֆսիզեան Կաթողիկոս իր կաթողիկոսութեան առաջին տարիներէն իսկ (սխալ է) անիմաստ եւ անհասկնալի հակակրութիւն մը ունեցած է այդ իմացական կերպով խիստ միջակ կարողութիւն ունեցող եկեղեցականին հանդէպ, զոր միշտ ատած է: Այդ եկեղեցականը շարունակ հալածուած, յանդիմանուած, պաշտօնադադար եղած եւ երբեմն ալ նոյնիսկ հոգեւոր պարտականութիւն կատարելէ արգիլուած է»: Յայտնի չէ թէ ինչ պատճառներ եւ պարագաներ մղած են այդ զօրեղ կամքի տէր կաթողիկոսը, որ այդ խեղճ եկեղեցականը ստիպէր որ իր կեանքի վերջին օրերը նիւթական եւ բարոյական աննախանձելի կացութեան մը մէջ անցընէր՝ քաշուած Աչոտիի··· փլփլած Ս· Յակոբ վանքին մէջ, ուր յաւէտ ողբալի մահ մը ունեցաւ:

Ամէն պարագայի մէջ յայտնի է թէ հալածանք մը գործադրուած է այս եկեղեցականին դէմ, որ որոշ չէ թէ Քէֆսիզեան կաթողիկոսի անձնական ատելութեան զոհն է՞ր թէ իր անխոհեմ եւ ըմբոստական արարքներուն:

Միսաք Քէլէշեան իր «Սիս-Մատեան»ի մէջ (Պէյրութ 1949 էջ 231), Քէֆսիզեան Կաթողիկոսի հակառակութիւնը սա կերպով բացատրած է: Իբր թէ Մկրտիչ Կաթողիկոս Սահակ եպիս·ը Մալաթիա ղրկելէ ետք «կը գրէ իրեն որ իր նախորդին, Սրապիոն եպիս·ի դրամն ու գոյքերը նկատուին վանքի սեփականութիւն եւ ըստ այնմ ղրկուին կաթողիկոսարան: Սահակ եպիս· նկատի առնելով ժառանգորդներու պնդումը եւ կաթողիկոսին հակաօրինական պահանջքը, չ'ուզեր կամ չի կրնար վերջնոյն հրամանին գոհացում տալ:

(1) Միքայէլ վրդ. Հաւանօրէն Խաչատուրեանը, որ Հետագային եղաւ առաջնորդ Մալաթիայի Կաթոլիկ Հայոց:

Եւ հակառակութիւնը ծայր կու տայ երկուքին միջեւ: Կաթողիկոսը Սիս կը կանչէ Սահակ եպիսկոպոսը, օր մը, այս վերջնոյն եկեղեցական ժամերգութեան իրմէ վերջ ներկայութիւնը առիթ բռնելով, 2 ամսուան փիլոնազրկութեան կը դատապարտէ, եպիսկոպոսը վրիժառութեան կը դիմէ եւ Կաթողիկոսը կ'ամբաստանէ կառավարութեան իբրեւ Օսմ. հպատակ մը, որ գաղտնի յարաբերութիւններ կը մշակէ օտարներու հետ, (Քէնթրպըրի արք.ին խնդրին ակնարկելով) եւ կը բողոքէ նոյն Արքեպիսկոպոսին դրկուած խնդրագրին տակ իր ալ ստորագրութեան դրուիլը կաթողիկոսին կողմէ՝ առանց գիտակցութեան: Մկրտիչ Կաթ. հազիւ ինքզինքը կ'արդարացնէ եւ հակառակութիւնը կը սաստկանայ անոնց միջեւ: Ի լրումն չարեաց կաթողիկոսը Սահակ եպիս.ի սպիտակ զուգնիկն ալ իւրացնելով զինք կը դրկէ Աշոտի, իբրեւ առաջնորդ կամ աքսորական, ուր 1895ի ջարդերուն կը սպաննուի ան շատերուն հետ»:

*Իրապէս նշանակելի է որ լսուած է թէ անուղղակի ինքնապաշտպանութեան յորդոր կը կարդար: Ըստ Յ. Գոճապաշեանի* (Պապ Ուխտի, *թ.* 30, *էջ* 12), *Ս. Դ. Հնչակեան կուսակցութեան կազմութիւնը Մալաթիոյ մէջ եղած է Սահակ եպս.ի եւ գործիչ Շմաւոնի ջանքերով, սակայն այս տեղեկութիւնը կասկածելի է, վասնզի Շմաւոն Մալաթիա այցելած չէ, որչափ գիտենք: Բայց այս թերի տեղեկութիւններն իսկ բաւական են Սահակ եպս.ի յեղափոխական գործունէութեան վրայ գաղափար մը տալու, գուցէ ինչպէս սովոր են Հայերը, ցուցարարութեամբ:*

*Գ. Մելիտինեցի* (Նախնիքներ, *էջ* 48) *սխալ տեղեկութեամբ մը գրած է թէ* «Սահակ եպս. 1894ին ննջամիտ ու եսապաշտ անհատներու սադրանքին զոհ դառնալով կ'աքսորուի Սսոյ վանքը»:

*Պատրիարքարանի արձանագրութեանց համաձայն,* 10 *Մայիս* 1891 *Թուականով ծանր ամբաստանութիւններ կը ներկայացուի Իսահակ եպիս.ի դէմ եւ կը խնդրուի որ Գրիգոր աղա Աւլանեան Ազգ. գործերու չմիջամտէ:*

*Մկրտիչ Կաթողիկոս, որուն ուշադրութեան ներկայացուած էր այս բողոքը, կը հաղորդէ թէ իր կողմէն ՊԵՏՐՈՍ ՎՐԴ. ՆԵՐԿԱՐԱՐԵԱՆԸ*[1] *(որ այս Թուականին ընդհանուր այցելու նշանակուած էր Կիլիկիոյ) դրկած է եւ կը խնդրէ հեռացնել Իսահակ եպս.ը:* (Բիւզանդիոն, *Թ.* 1960): *Իսահակ եպիսկոպոսի կողմնակիցները, գլխաւորութեամբ Գէորգ աղա Աւլանեանի, Քննիչ վարդապետը կը կողոպտեն, դրամը եւ գոյքերը գողնալով, այնպէս որ Պետրոս վրդ. շուտով կը մեկնի:*

*Պետրոս վրդ. Ներկարարեանի քննութեան իբր հետեւանք թէ՞ Կաթողիկոսին անձնական քմահաճոյքով, կը հաղորդուի Պատրիարքարան* 9 *Օգոստոս* 1892 *Թուականով պաշտօնագիրով մը թէ Իսահակ եպիսկոպոս ո՛չ միայն պաշտօնանկ, այլ նաեւ կարգալոյծ եղած է եւ իր տեղ տեղապահ ե-*

*(1) Պետրոս Ծ. վրդ. Ներկարարեան Ատաբազարցի (ծն. 16 Մայիս 1843 26 Փետր. 1903+) բեղմնաւոր գործունէութեամբ եկեղեցական մը եղած է. (տես իր կենսագրութիւնը,* Բիւզանդիոն, *Թ. 1960, 1/14 Մարտ, 1903):*

գած է Մալաթիոյ՝ ԿԱՐԱՊԵՏ ՎՐԴ. ՌՇՏՈՒՆԻՆ (1892–1893), որ Մալաթիոյ վիճակը կը վարէ մինչեւ 1893, ժողովրդական յուզմանց մէջ, վասնզի ժողովուրդը երկու մասի բաժնուած էր, Իսահակ եպս.ի թեր ու դէմ:

Այս վէճը կը շարունակուի մինչեւ 1893, երկու տարի:

1893 Մարտի սկիզբը երբ Կարապետ վրդ. Ռշտունի Կիւրին կը փոխադրուի Կիլիկիոյ կաթողիկոսին հրամանով, առաջնորդական պաշտօնով, Իսահակ եպս.ի կողմնակիցները անոր վերահաստատութիւնը կը խնդրեն Պոլսոյ Պատրիարքարանէն, իսկ ուրիշներ 1893 Ապրիլ 22 Թուականով նամակով մը, կ՚ուզեն որ Մաղաքիա վրդ. Տէրունեանը կամ ուրիշ մէկը Մալաթիա ղրկուի եւ կարեւորութիւն չընծայուի Մալաթիոյ Քաղ. Ժողովին Սահակ եպս.ը դարձնելու խնդրանքին:

Պոլսոյ Պատրիարքարանը զարմանալի է որ կը հաւանի Իսահակ եպս.ի վերահաստատութեան ինչ որ անշուշտ կը գայրացնէ Քէֆսիզեան Կաթողիկոսը, որ կը դիմէ Օսմ. Դատական Նախարարութեան (Ատլիէի) եւ կը պահանջէ որ Իսահակ եպիսկոպոս (որ պաշտօնի ձեռնարկած էր) պաշտօնավարելէ արգիլուի:

17 Դեկտ. 1893ին Կաթողիկոսին եւ Ատլիյէի կրկնակ հրամաններով, Իսահակ եպս. պաշտօնանկ կ՚ըլլայ եւ ապաշխարութեան կը ղրկուի Աչտիի Ս. Յակոբ վանքը ուր կը նահատակուի 1895ի ջարդին, գործնականապէս կատարելով ինչ որ քարոզած էր, վասնզի ինքնապաշտպանութեան կռուի միջոցին ղէն ի ձեռին կ՚իյնայ:

Կիլիկեցի (տես Սուրհանդակ Թ. 1900) Մալաթիոյ առաջնորդարանին անհանդարտ եւ խռովայոյզ վիճակին անդրադառնալով կը գրէ թէ «Անցեալ դարուն վերջին քառորդին (1875–1900) շատ ցաւալի անցքեր տեղի ունեցած են Մալաթիոյ Առաջնորդական աթոռին շուրջ: Մարդ ցաւով միայն կրնայ յիշել եւ մտածել այն իրողութիւններուն վրայ, որոնք տեղի ունեցան՝ թէմին նախորդ եւ հանգ. առաջնորդ Տ. Սահակ եպս. Սահակեանի պաշտօնավարութեան շուրջ»:

Այս վիճակը դժբախտաբար շարունակուած է նաեւ Սահակ եպս.ի աքսորէն վերջն ալ:

ՍՏԵՓԱՆ ՔՀՆՑ. ՂԸԶԸԼՔԷՇԻՇԵԱՆ կամ ՔԷՇԻՇԵԱՆ, Առաջ. Տեղապահ (1893–1900)[1]:

Մալաթիացիք գայն կը կոչէին «Ապա Տէրտէր»: 1897ին Իսահակ եպս.ի քմահաճ պաշտօնանկութենէն եաք, 16 Յուլիս 1898ին Առաջ. Տեղապահ կամ փոխանորդ կ՚ընտրուի այս ծերունի քահանան որ նոր ընտրուած Քաղաքական Ժողովի մը հետ Առաջնորդարանի գործերը վարել կը սկսի (Պատ. Արձանագր.) եւ եօթը տարի կը պաշտօնավարէ:

Այս քահանային Տեղապահութեան շրջանին Պատրիարքարանի հրամանով Մալաթիա քննիչ ղրկուած է 1898ին Արաբկիրի առաջնորդ Մուշեղ վրդ.

(1) Գ. Մելիտինեցի (Նախճիրներ, էջ 48) միայն 1894–1897 պաշտօնավարած ցոյց կու տայ:

Սերոբեան, որ 25 Ապրիլին հոն ժամանած եւ իր քննութիւնը աւարտելէ վերջ մեկնած է անկէ:

Իր պաշտօնավարութեան վերջին տարին, 1899 Մարտին, Մալաթիա կ'այցելէ նաեւ Թաթուլ վրդ. Դուրեան: Ժողովուրդը կը փափաքի զինքը վար դնել: Թաթուլ վրդ. Զատիկը հոն կ'ընէ եւ Մայիս 5-ին կը դառնայ Կ. Պոլիս:

Այնպէս կը թուի որ այս քահանան չէ կրցած գոհացնել ժողովուրդը, եթէ ճիշդ են 1900-ին Թղթակիցի մը գրածները այս քահանային մասին թէ «յարաբերական գործերը (իմա պետութեան հետ յարաբերութիւնները) անհրապոյր հանգամանք կը կրեն: Տ. Ստեփան երբեք պաշտօնին մէջ չէ, ոչ մտային ուժը, ո՛չ բարոյական կորովը եւ ո՛չ ալ ֆիզիքական կազմուածքը կ'երաշխաւորեն պաշտօնին բարւոք մատակարութեան»:

**ԽԱՉԱՏՈՒՐ ՎՐԴ. Տ. ՂԱԶԱՐԵԱՆ Մարաշցի (1900—1903):**

1900ին Կիլիկիոյ Կաթ. Տեղապահ Կիրակոս եպս. Բէքմէզեանի կարգադրութեամբ Մալաթիոյ Առաջնորդական Տեղապահութեան կը կոչուի Խաչատուր վրդ. Տ. Ղազարեան: «Հակառակ իր միջակ եւ սահմանափակ կարողութեան կրցաւ լաւ բաւականին հող տանիլ վիճակին վարչական, եկեղեցական եւ կրթական գործոց բարւոք մատակարարութեան» («Կիլիկեցի», Սուրհանդակ օրաթերթ, Կ. Պոլիս, թ. 1900):

Այս վարդապետը Օրմանեան Պատրիարքի 5 Յունուար 1902 շրջաբերական-հրահանգին համաձայն կազմած է վիճակացոյց-տեղեկագիր մը Մալաթիոյ վիճակին համար, որ խնամեալ եւ խղճամիտ աշխատութիւն մըն է, որմէ ես ալ օգտուած եմ:

Խաչատուր վրդ. Տ. Ղազարեան իր վիճակայիններուն սատար ըլլալ Օսմ. հպատակութիւնը լքելով Ամերիկա գաղթին տխուր հետեւանքներուն ականատես ըլլալով, 5 Յունիս 1902ին Ամերիկա գաղթող Մալաթիացիներուն դարձին համար դիւրութիւններ խնդրել պահանջած է Պատրիարքարանէն (Պատր. Արձան.) ինչ որ հետեւանք չէ ունեցած վասնզի Համիտեան կառավարութիւնը բնաւ չէ հաւանած:

Խաչատուր վրդ. ծնած է 1848ին եւ ուսուցիչ եղած է նախ Մարաշի մէջ: 1868ին ձեռնադրուած է Սիսի մէջ իբրեւ միաբան: 1868—75 եօթը տարի քննիչ-պատուիրակ եղած է Եօզղատի եւ Մանճըլըգի վիճակներուն: Նորոգած է Զորումի եկեղեցին եւ զայն օժտած է աղբիւրով մը:

1892—1900 Առաջ. Փոխանորդ Ատանայի: 1900ին կը բանտարկուի քաղաքական պատճառով Սելեւկիոյ մէջ:

1900—1904 Մալաթիոյ Առաջնորդական Տեղապահութենէն վերջ նոյն պաշտօնը կը վարէ Կիւրին (1905—1908), Տիվրիկ (1909—1912) եւ Չէյթուն (1914) եւ Մարաշ (1915—1920):

1925—1927 Երուսաղէմի վանքը մնացած է: Վախճանած է 10 Ապրիլ 1929ին ի Հալէպ: (Տես Ազգանունի, Մկրտիչ եպս. Միաբանք եւ այցելուք Երուսաղէմի, էջ 175 եւ Գր. Գալուստեան, Մարաշ, էջ 597—600):

*ԳԷՈՐԳ ՎՐԴ. ԱՐՍԼԱՆԵԱՆ ԲԵՆԿԵԱՆՑԻ* (1903–1907)։

*Նոյեմ.* 1903*ին երբ Առաջնորդական Տեղապահ Մալաթիա կը ղրկուի, Գէորգ վրդ. Արսլանեան*։

1905*ին կ'ընտրուի Առաջնորդ*։

*Յուլիս* 1906*ին հրաժարիլ կ'ուզէ* (Պատր. Արձան.) *բայց կը յորդորուի շարունակել իր պաշտօնը*։

*Սահակ Կաթողիկոս Խապայեան* 1906*ին անոր կը շնորհէ լանջախաչ*։ 1907*ին կու տայ Ծայրագոյնութեան աստիճան*։

*Նոյն թուականին Մալաթիոյ Գաւառական Երեսփ. Ժողովը անոր կու տայ եպիսկոպոսական վկայական, սակայն առանց եպիսկոպոս ձեռնադրուելու կը հրաժարի եւ կը մեկնի* 1908*ին* (*Թ. Ազատեան*, Գէորգ Արքեպս. Արսլանեան, 1867–1951, *էջ* 10)։

*Իր պաշտօնավարութեան շրջանին երբ Սահակ Կաթ. Խարբերդ իր ծննդավայրը այցելելու գնաց Հիսնի Մանսուրի եւ Պեհեսնիի ճամբով, իր հետ ունէր Գէորգ վրդ. Արսլանեանը*։

1907*ին ալ Սահակ Կաթողիկոսի կարգադրութեամբ Այնթապ եւ Հալէպ կ'ուղեւորի քննիչական պաշտօնով* (*Նոյն*)։

*Իր պաշտօնավարութիւնը օգտակար եղած է Մալաթիոյ վիճակին համար*։

*Բարեփոխած է ժողովուրդին տարազը, որ յարեւնման էր Քիւրտերու հագուստին* (*Ազատեան, Նոյն*)։

«*Կիլիկեցի*» *կը գրէ*. «Մալաթիայի առաջնորդութեան վարչական մեքենան լաւ եւ բարեկարգ կերպով կարգադրուած է։ Գաւառ. ժողովը, վարչական մարմինները՝ Կրօնակ. եւ Քաղաքական ժողովները եւ Տեսուչ խորհուրդները ընտրուած, նոյնպէս ներկայ առաջնորդն ալ Գէորգ վրդ. Արսլանեան պաշտօնի կոչուած է, ... թեմականաց ստուար մէկ մասին քուէովն ու փափաքովը» (*Սուրհանդակ*, թ. 1900)։

«Գէորգ վրդ.ի պաշտօնավարութիւնը սատարեց եւ զօրավիգ մը եղաւ վիճակին եկեղեցական եւ կրթական գործերուն նոր զարկ մը ստանալուն, եւ բարւոք եւ նախանձելի կացութեան մը մէջ դրուելուն» (*Նոյն*)։

*Մինչեւ* 1900 *թուականը*, «Մալաթիոյ թեմին գիւղերէն շատերը զուրկ կը գտնուին եկեղեցիներէ, քահանայէ եւ դպրոցէ, որ ցաւալի է։ Սակայն քաղաքը շնորհիւ հասարակութեան(միջավայրին ներած չափով) այդ մասին ունեցած է եւ ունի ըստ բաւականի կանոնաւոր եւ բարեկարգ վարժարաններ» (*Սուրհանդակ*, թ. 1900)։

*Գէորգ վրդ. Արսլանեան երեք նոր վարժարաններ կը բանայ, եւ մասնաւոր դասընթացքներ կը հաստատէ, կը կառուցանէ Մայր Եկեղեցին ի հիմանէ։ Քեախթէի մէջ դպրոց մը կը բանայ։ Գիւղերու մէջ մատուռներ կը հիմնէ* (*Թ. Ազատեան, Նոյն*)։

*Անիկա գնահատելի էր եւ պատուաբեր Գէորգ վրդ. Արսլանեանի համար, որ իրապէս վարչական կարողութիւններ եւ ջանասիրութիւն ունեցող*

եկեղեցական մը եղած է եւ արժանիքներ ցոյց տուած է իր բոլոր պաշտօններուն մէջ: Իր միակ թերութիւնը, որ ծանր կշռած է ամէնուրեք, իր չափազանց դրամապաշտութիւնը եղած է, որ դժբախտաբար Մալաթիոյ մէջ ալ խնդրոյ առարկայ եղած է, թէեւ անիրական վերագրումով մը կամ զրպարտութեամբ: Այսպէս, Կ. Պոլսոյ Պատրիարքարանին մէջ պահուած է 26 Յունուար 1908 թուականով նամակ մը, որով Մալաթիոյ Մայր Եկեղեցիին Թաղ. Խորհուրդէն կ'ամբաստանուի Գէորգ վրդ. Արսլանեան իբր 1000 ոսկի խլացնող... շահամոլ, եւայլն, եւայլն:

Գէորգ վրդ. Արսլանեան իբր Մալաթիոյ առաջնորդ օգտակար եղած է վիճակին, վանքի Մալաթիոյ վերադարձումին նպաստած է: Ս. Գր. Լուսաւորիչ վանքն պտղատու ծառերով եւ ծաղիկներով զարդարած, Ազգ. գրադարանը կազմակերպած, երեք եկեղեցիներու դպրոցները սարքաւորած է բարձրագոյն ծրագիրով մը: Ինքն է որ դպրոցներու իբր Ընդհանուր Տեսուչ բերած է Մեսրոպ Ժամկոչեանը (Եփրատ Գոլէճէն):

Տղայոց բարձր կարգերը Մայր Վարժարան կը յաճախէին, իսկ աղջիկները Ս. Երրորդութեան վարժարանը:

Լսարանական դրութիւն կը հաստատուի: Ամէն կիրակի աղջկանց վարժարանին մէջ թէ վիճաբանական ժողովներ եւ թէ ատենախօսութիւններ կ'ըլլային կարող անձերէ եւ ներկայացումներ կը տրուէին (Ստեփան Մանուչեան, Նոր Մալաթիա, ԺԵ. տարի, թ. 3—4, էջ 45):

Գէորգ վրդ. Արսլանեան նախանձախնդիր եղած է ազգային պատուոյն եւ իրաւանց պաշտպանութեան, ինչպէս նաեւ ժողովուրդին հոգեւոր հոգածութեան:

Այսպէս 1905-ին, Քախթէի արեւելքը Նարինճայ գիւղին 120 տուն բնակչութեան միայն 15 տունը հայ էին եւ դպրոցէ զուրկ: Արսլանեան վրդ. հոն դպրոց մը բացած է եւ քահանայ մըն ալ նշանակած է որպէսզի հովուէ այդ գիւղը (Սուրհանդակ, թ. 1993, 15 Սեպտ. 1905):

1907ին իր յարատեւ հետապնդումներով Հեքիմ Խանի Հայ եկեղեցին որ յատակները բռնագրաւուած էին, կառավարութեան միջոցաւ Հայոց վերադարձուած է: Նոյնպէս, նոյն տարին բողոքած է Հայ կաթոլիկ Հ. Միքայէլ վրդ. Խաչատուրեանի դէմ եկեղեցական կանոններու հակառակ վարուելուն համար Հայ ժողովուրդին հետ:

20 Սեպտ. 1906ին Պոլսոյ կեդրոնական վարչութիւնը իր պաշտօնավարութենէն գոհ զինքը Սեբաստիոյ առաջնորդ Պետրոս եպս. Թահմիզճեանին օգնական կ'ընտրէ, նկատի առնելով Պետրոս եպս.ի ծերութիւնը եւ Գէորգ վրդ. Արսլանեանի իբր իր ձեռնասուն ունեցած յարմարութիւնները այս պաշտօնին համար: Սակայն մինչեւ իր Սեբաստիա փոխադրութիւնը Պետրոս Արքեպս. կը վախճանի, իսկ Արսլանեան վրդ. կը մեկնի Պոլիս:

Իբրեւ Պոլսոյ Պատրիարքական Տեղապահ, իր երկու երկարատեւ պաշտօնավարութիւններով ծանօթ այս եկեղեցականին կեանքն ու գործը յայտնի ըլլալով, աւելորդ կը համարեմ ուրիշ կենսագրական տեղեկութիւններ տալ:

*ԵՂԻԱ ՔՀՆՅ․ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ* (1908–1911 *Յուլիս*) *որ* 1908 *Յունուար* 11*ին Առաջ․ փոխանորդ ընտրուած էր, Գէորգ վրդ․ Արսլանեանի մեկնումէն ետք վարեց Առաջնորդարանի գործերը*։

*Կեդրոնը Մալաթիոյ վիճակը անգլուխ չձգելու համար, Առաջ․ Տեղապահ կ'ընտրէ* 12 *Սեպտ․* 1908*ին* *ՀՐԱՆՏ ՎՐԴ․ ՅՈՎԱՍԱՓԵԱՆը որ երկար ատեն կը յամենայ Կ․ Պոլիս* պէրաթին *ծախքերը հայթայթուած չըլլալուն համար։ Այս պատրուակով Մալաթիա չի մեկնիր*։

1909 *Մարտ* 13*ին Մալաթիացիք հանրագրութեամբ մը փափաք կը յայտնեն որ Տ․ Եղիա քհնյ․ Տէր Կարապետեան իբրեւ Տեղապահ պաշտօնավարէ* (Պատր․ Արձանագր․)։

*Իր պաշտօնավարութեան շրջանին* 1910 *Հոկտ․* 25*ին*, *Առաջնորդական ընտրութիւն կատարուելով, Առաջնորդ կ'ընտրուի Եւդոկիոյ Առաջ․ Տեղապահ Շաւարշ Ծ․ վրդ․ Սահակեան, որ սակայն կը հրաժարի* (Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց, *էջ* 698)։

*ՀՄԱՅԵԱԿ ՎՐԴ․ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ* (1911–1912)։

*Պատրիարքարանը* 1911 *Մայիս* 11*ին*, *Մալաթիոյ Առաջ․ Տեղապահ կը նշանակէ Արմաշական այս վարդապետը, որ Օգոստոսին կը հասնի Մալաթիա* (Պատր․ Արձան․, *եւ Սեներքերիմ Ափալաքեան*, Պաղ Ուխտի, *Թ․* 26, *էջ* 5) *եւ երդմամբ Երեսփ․ Ժողովին մէջ խոստումներ կը շռայլէ։ Կը գնահատէ իր նախորդին կատարած բարենորոգումները եւ կը յայտնէ թէ եթէ բոլոր ժողովականները գործակցին իրեն, ինք սիրով յանձն կ'առնէ իրեն վիճակուած պաշտօնը, այլապէս կը մեկնի*։

*Այսպէս, գեղեցիկ նախաքայլեր առնուեցան եւ* «աղա-էֆէնտիներ պարտուած դաւել սկսան եւ Կիլիկիոյ Կաթողիկոսին գրած իրենց գիրերը անլսելի մնացին երկու տարի» (*Նոյն*)։

«Հմայեակ վրդ․ Պաղտասարեան իր եռանդուն գործունէութեամբ եւ կառավարութեան մէջ իր շահած դիրքով, կարողացաւ համակրութիւն ըստեղծել իր շուրջը: Բայց աւա՜ղ որ ան ունեցաւ նկարագրի շեղում: Երեսփոխանական ժողովը ընկ․ Սեդրակ Մումճեանը դրկեց զայն զգուշացնելու, կարգի հրաւիրելու համար, բայց ի զուր: Ազգ․ մարմինները զայթակղութեան առջեւը առնելու եւ որեւէ պատահար կանխելու համար, հրաժարեցուցին զայն եւ ճամբու դրին 1912–ին» (*Պաղ Ուխտի*, թ․ 26, էջ 6)։

*ՄԵՍՐՈՊ ՎՐԴ․ ԱՄԱՏՈՒՆԻ* (1912–1913)։

*Սահակ կաթողիկոս Խապայեան իբրեւ կաթողիկոսական փոխանորդ Մալաթիա կը ղրկէ Մեսրոպ Վրդ․ Ամատունին* 1912 *Նոյեմբերին*։

*Այս վարդապետը, աշխարհական անունով Համբարձում Երէցեան, ծնած էր* 1850*ին*[1], *Կ․ Պոլիս եւ ուսուցչական պաշտօն վարած էր իր ծննդավայրին զանազան թաղերուն մէջ եւ տնօրէնութիւն՝ Սիվրիհիսարի մէջ*։

1888*ին Ժընեւի համար կազմուած Ռուբինեան ընկերութեան կողմէ*

(1) *1857-ին (ըստ Թէլչեա՛ն)*։

*կը ղրկուի Ֆէնէսէ եւ հոն չորս տարի* (1888—1892) *արդիւնաւոր պաշտօնավարութիւն կ'ունենայ (տես* Պատմ. Հայ Կեսարիոյ, *էջ* 1170—1) *եւ կրթական յեղաշրջումի մը նախակարապետ կը հանդիսանայ:*

1892*ին իբր յեղափոխական կը ձերբակալուի եւ Էնկիւրիւի մէջ կը դատուի եւ բանտարկութեան կը դատապարտուի:* 1893*ին ներումով կ'արձակուի եւ կը դառնայ Ֆէնէսէ ուր հազիւ մէկ տարի կրնայ պաշտօնավարել: Պոլիս դառնալով* 1894*էն* 1901 *կը պաշտօնավարէ Եէտի-Գուլէի ազգ. որբանոցին մէջ իբր ուսուցիչ: Տնօրէն եղած է նաեւ Ատանա՝ Արդարեան վարժարանին:*

1901*ին Սիսի մէջ շուշտակ վարդապետ կը ձեռնադրուի:* 1908*ին Օսմ. Սահմանադրութեան հռչակումէն ետք կրկին Ֆէնէսէ կ'երթայ եւ կրկին մէկ տարի կը պաշտօնավարէ իբրեւ տնօրէն բայց անհանդուրժելի նկատուելով մէկ տարիէն կը հրաժարեցուի եւ* 1909*էն* 1912 *հոն բժշկութեամբ կը զբաղի* (Հայ Կեսարիա, *էջ* 1282—3 *եւ* 1175):

*Սահակ կաթողիկոս Մալաթիա ղրկելով կ'ուզէր վարչական պաշտօնի մը մէջ գործածել սակայն Մալաթիացիք յայտնի չէ թէ ինչո՞ւ կը մերժեն զինքը ընդունիլ եւ զայն կը զրկեցնեն պաշտօնէ եւ Առաջ. Տեղապահ կը նշանակեն* ԵՂԻՇԷ Ք. ՀՆՑ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ*ը*, (1913—1914), *որ Գաւառական ժողովի* 17 *Յուլիս* 1913*ի նիստին մէջ այդ պաշտօնին մէջ կը հաստատուի եւ պաշտօնի կը ձեռնարկէ:*

16 *Մայիս* 1913 *թուականով նամակ մը ուղղուած Պատրիարքարանի, այս քահանան կը գովէ քաղաքին կառավարիչը՝ Պետր Խան Զատէ Միհդատ պէկը:*

*Ժողովուրդը գոհ էր այս քահանայէն սակայն Սահակ կաթողիկոս կը յամառի զայն չճանչնալ եւ կ'ուզէ Ամատունի վարդապետը պաշտօնի վրայ պահել:*

*Մեսրոպ վրդ. Ամատունի ասկէ քաջալերուած,* «իր համախոհներուն հետ ծանօթանալէ յետոյ, սկսաւ դաւել նոր կարգերու դէմ, վերահաստատելու համար հին փտած սովորութիւնները թէ եկեղեցւոյ եւ թէ դպրոցներուն մէջ: Ի տես այս տխուր իրականութեան, Երեսփ. Ժողովը մասնաւոր նիստ գումարեց, մանրամասնօրէն նկատի ունեցաւ կացութիւնը, ապա միաձայնութեամբ յանձնախումբ մը ընտրեց Միհրան Էֆէնտի Թիւթէլեանի առաջնորդութեամբ, Երէցեան[1] վարդապետէն բացատրութիւններ պահանջելու համար, ապա ազդարարելու որ իր անպատասխանատու քայլերով ժողովուրդին մէջ որոգայթներ չլարէ, կիրքեր չհրահրէ եւ գայթակղութեանց տեղի չտայ: Երէցեան վարդապետ պաշտօնական մարմինը արհամարհելու դիտաւորութեամբ չ'ընդունիր այս յանձնախումբը Առաջնորդարան:

Երկու շաբաթ վերջ Երեսփ. Ժողովը նոր նիստ գումարեց եւ միաձայնութեամբ հրաժարեցուց Առաջ. Տեղապահը իր պաշտօնէն: Այդ որո-

(1) *Ամատունի վրդ. այս մականունն ալ գործածած է:*

շումը հաղորդուեցաւ Կիլիկիոյ Կաթողիկոսարանին, բայց ի զուր, լուր չե֊կաւ ժողովուրդին ձայնը: Ասոր իբր հետեւանք, Երեսփոխանական Ժողովը Պոլսոյ հայ թերթերուն դրկեց հետեւեալ բանաձեւ ծանուցումը.

«Ի գիտութիւն Կիլիկիոյ Վեհափառ Սահակ Կաթողիկոսին, կը յայ֊տարարենք թէ Մեսրոպ վրդ. Երէցեան միաձայնութեամբ հրաժարեցուած է Մալաթիոյ Առաջնորդական Տեղապահի պաշտօնէն: Իսկ իբր կաթողիկո֊սական փոխանորդ անոր կը տրամադրենք վանքի սենեակներէն մին, իր ու֊զածին չափ մնալու համար: Յետ այսու Մալաթիոյ Առաջնորդական Տեղա֊պահն է Տէր Եղիշէ քահանայ Խաչատուրեան»:

(Ստորագրութիւն) Մալաթիոյ Երեսփ. Ժողով

Այս պաշտօնական յայտարարութիւնը Կիլիկիոյ Կաթողիկոսին հանե֊լի չըլլալուն համար, ան դիմեց զսպողական միջոցներու: Բայց ասոնք ալ ի զուր անցան»: (*Սենեքերիմ Ափալաքեան. Պապ Ուխտի, Թ. 26, էջ 6*): *Ա֊սոր վրայ է որ Գաւառ. Ժողովը 5 Ապրիլ 1913ին կը բողոքէ Կաթողիկոսին որ կառավարութեան կը դիմէ եւ չի ճանչնար Տ. Եղիշէ քհնյ.ի հանգա֊մանքը:*

*Սահակ Կաթողիկոս կ'առաջարկէ Արշարունի Պատրիարքին քննիչ մը ղրկել Մալաթիա: Գաւառական Ժողովն ալ նոյն բողոքները յայտնած ըլլա֊լով Խարբերդի առաջնորդ Պսակ վրդ. Տէր Խորէնեան կը նշանակուի քննիչ 1913 Սեպտեմբերին, բայց հազիւ 6 Նոյեմ. 1913ին Մալաթիա կու գայ:*

*Եղիշէ քհնյ. Խաչատուրեան 1912 Նոյեմբերէն մինչեւ Պսակ վրդ. Տէր Խորէնեանի Մալաթիա ժամանումը 1913 Նոյեմբեր մէկ տարի կը վարէ*



**Խաչատուր Վրդ. Տ. Ղազարեան**
**Առաջն. Տեղապահ Մալաթիոյ**
**(1900 1903)**



**Եղիշէ Քհնյ. Խաչատուրեան**
**Առաջն. Տեղապահ Մալաթիոյ**
**(1913 -1914)**

Առաջնորդարանին գործերը, դոհ թողլով ժողովուրդը:
Այս քահանան արդէն ժողովուրդին երախտագիտութեան արժանա-
ցած էր հարիւրաւոր անձեր ազատելով 1895ի եղերեայ կոտորածին ատեն հե-
րոսական ինքնապաշտպանութեան պետը հանդիսանալով, կաթոլիկ եկեղե-
ցիին շէնքը ընելով իրեն կայան (Նոր Մալաթիա, ԺԸ. տարի, Թ. 4, էջ 13):
Պսակ վրդ. Տէր Խորէնեան 6 Նոյեմ. 1913ին Մալաթիա ժամանելով
ամբողջ ութը օր կը լսէ երկու կողմերը, կը ծանօթանայ իրականութեան եւ
ապա Պոլսոյ Պատրիարքարանին միջոցաւ կը հեռագրէ Կիլիկիոյ Կաթողի-
կոսութեան թէ «իմ ութը օրուան քննութեանց իբր արդիւնք եկայ այն եզ-
բակացութեան թէ օգտակար է որ Մեսրոպ վրդ. Երէցեան մեկնի Մալաթիա-
յէն. մանրամասնութիւններ առանձին նամակով»: (Սեննեքերիմ Ափալաքեան.
Գալ Ուխտի Թ. 26, էջ 6):
Այս տեղեկոթիւններուն ճշդութիւնը ի վիճակի չեմ հաստատելու:
Պոլսոյ Պատրիարքարանի արձանագրութիւնները Պսակ վրդ.ի քննութեանց
մասին կու տայ սա տեղեկութիւնները: Անոնք կ՚ըսեն թէ անիկա հաշտու-
թիւն կը գոյացնէ եւ որպէսզի երկու մաքառող մասերէն որեւէ մէկուն նը-
կատմամբ կողմնակալութիւն մը եղած չըլլայ, կը լուծէ երկու կողմին ժո-
ղովները, եւ Եղիշէ քհնյ. Խաչատուրեանի Տեղապահական պաշտօնին վերջ
կու տայ եւ Առաջնորդական Փոխանորդ կը նշանակէ 28 Նոյեմ. 1913ին
ՄՈՒՇԵՂ[1] ՔՀՆՅ. ՏԷՐ ՄՈՒՇԵՂԵԱՆԸ որ մինչեւ Փետր. 1914 կը պաշտօ-
նավարէ հազիւ չորս ամիս, ինչպէս կը հասկցուի իր թղթակցութիւններէն:
Պսակ վրդ. կը վերակազմէ նաեւ Գաւառական ժողովը, եւ անոր ընտրել կու
տայ Նոր Քաղաք. Ժողով մը որ կ՚ընտրէ իր կարգին նոր ուսումնական եւ
տնտեսական խորհուրդները: (Պատրիարքարանի Արձանագրութիւնք):
Մեսրոպ վրդ. Ամատունի այսպէս անպաշտօն կը մնայ եւ 1916ին իր-
բեւ տարագիր կը թափառի Արաբական անապատները, մինչեւ Հաւրան:
Զինադադարին պահ մը կը մնայ Հալէպ, ուրկէ կու գայ Պոլիս ուր
քարոզչական պաշտօններ կը վարէ: 1923ին Պուլկարիա կ՚անցնի եւ Այտոսի
քարոզիչ կ՚ըլլայ: Կը վախճանի անդ 1939ին:
Մալաթիոյ թեմն ալ թափուր կը մնայ, Սահակ Կաթողիկոսի դէմ իր
ըմբոստութեան ի պատիժ:
Պատերազմին անգլուխ էր հոգեւորապէս Մալաթիա որ պատերազմի
շրջանին (1914—1918) մահու ճանապարհի դժոխային կայաններէն մէկը կը
հանդիսանայ եւ զարհուրելի նախճիրի մը՝ հանդիսավայր:
Ազգային կեանքը կը դադրի եւ ամէն ինչ քարուքանդ կ՚ըլլայ:
ԳԻՒՏ ԵՊՍ. ՄԽԻԹԱՐԵԱՆ, Կ. Պոլսեցի (1920—1923):
Պատերազմի եւ Տեղահանութեան շրջանէն վերջ, Մալաթիոյ մէջ ի-
րենց գոյութիւնը պահող 2000 հայերը 1919 Յուլիս 26-ին հանրագրութեամբ

(1) Գ. Մելիտինեցի Տ. Նազարէթ քհնյ. Մուշեղեան գրած է՝ հաւանօրէն յիշո-
ղութեան վրէպով:

Առաջնորդի մը կամ հոգեւոր հովիւի մը առաքումը կը պահանջէն Պատրիարքարանէն: Պատրիարքարանը Մալաթիոյ հոգեւոր հովուութիւնը կը յանձնէ Գիւտ եպս. Մխիթարեանի, որ Խարբերդի Առաջնորդական տեղապահ նշանակուած էր Պատրիարքարանէն[1]: Իրեն յանձնուեցաւ նաեւ տեսչութիւնը Մալաթիոյ վիճակին, ուր իբր անպաշտօն ներկայացուցիչ, զինադադարէն ետքը Կարապետ Գըլըճեան անուն ազգային մը միշտ թղթակցած է պատրիարքարանի հետ, ինչպէս կը տեսնուի թղթածրարներէն:

Գիւտ եպս. Մխիթարեան, Մալաթիոյ մէջ կը կազմէ Թաղ. Խորհուրդ մը եւ հոն կը ղրկէ իր կողմէ ձեռնադրուած Տ. Ստեփանոս քհնյ. Ղազարեանը, որ 1920 Հոկտեմբերին կը հասնի Մալաթիա:

Գիւտ եպս.ի կազմած մարմինը կը ձեռնարկէ շինութեանը ազգապատկան 45 խանութներու, որոնք կ՚աւարտին 83293 ղրշ. ծախսով մը, որուն 43200 ղրշ.ը առնուած է տէլլալ Հանաֆի Խէլիլ աղայէն, 32025 ղրշ. գանձական ալբիւմներէ գոյացած եւ մնացեալ 9068 ղրշ.ի բացն ալ ժողովրդային հանգանակութիւնով փակել որոշուած էր: (Գիւտ եպս.ի 13 Դեկտ. 1920 թուականով առ Յովհաննէս Պ. Սրապործեանի ուղղած քաջալերական նամակէն քաղուած են այս տեղեկութիւնները):

Ինչպէս կը տեսնուի զինադադարէն ետք Մալաթիոյ Հայերը իրենց ազգային-եկեղեցական կեանքը վերակազմել ջանացած են: Վերոգրեալ նամակէն կը հասկցուի թէ Թաղ. Խորհուրդը ցաւ յայտնած է թէ եկեղեցապատկան խանութներու վարձագինը, որոնցմով ասկէ առաջ կը մատակարարուէին Մալաթիոյ դպրոցները, տարուան մը համար զոհել ստիպուած էին վերաշինութեան գործին համար:

Գիւտ եպս. ընդունելով հանդերձ թէ հայ դպրոցի մը գոյութիւն չունենալը կարեւոր պակաս մըն է, այդ վիճակը դարմանուած կը համարէ, «քանի որ յարանուանական դպրոցներ պակաս չեն եւ հայ մանուկը բոլորովին զուրկ չէ բարոյական եւ կրթական մխիթարութենէ». եւ յառաջիկային կը թողու այդ պակասը լրացնել:

Բայց թուրքը միշտ թուրք, եւ չհանդուրժող հայերու գոյութեան, քանդեց այդ վերակազմական աշխատանքներն որ Յովհաննէս Պ. Սրապործեան (Ատենապետը Թաղ. Խորհուրդին) իր կողքին ունենալով Գէորգ աղա Չէքէմեան եւ Գէորգ Ժամագործեանը կը կատարէ, քահանայ մը ձեռնադրել տալէ եւ Մայր Եկեղեցին բանալ տալէ ետք, Մայր Եկեղեցիին դրացի ղազանճի պազարի 45 ազգապատկան խանութներու նորոգութիւնը կատարել կու տայ: Այս երեք անձերը կը ստեղծեն նաեւ Ազգային Խորհուրդ մը:

Քէմալական կառավարութիւնը այս բոլորը անէացուց իր գործադրած

(1) Գիւտ եպս. Մխիթարեան ծնած է 1873-ին: Երուսաղէմ ուսում առած է: 1903-ին Սահակ Խապայեան կաթողիկոսին ընկերացած է իբր քարտուղար-վարդապետ եւ 1913-ին եպիսկոպոս ձեռնադրուած է: 1915-ին Սահակ կաթողիկոսի հետ Երուսաղէմ գացած է: 1920-ին Պոլիս կ՚երթայ եւ անկէ Խարբերդ: 1923-ին Հարաւային Ամերիկա կ՚երթայ եւ կարգաթող կ՚ըլլայ:

նոր տարագրութիւններով եւ հալածանքներով, որով Մալաթիոյ հայերը մնացին բոլորովին զուրկ ազգային ամէն կազմակերպութենէ:

## Զ — ՅԱՐԱԿԻՑ ԹԵՄԵՐ

Ինչպէս տեսնուեցաւ, Մալաթիա միշտ ըլլալով հայկական մեծ կեդրոն մը, իր սեփական հայ հոգեւոր հովուութիւնը ունեցած է, իսկ իր շուրջը գտնուող հայաբնակ վայրերէն ոմանք ալ առաւել կամ նուազ տեւականութեամբ ունեցած են հոգեւոր հովուութիւններ կամ առաջնորդութիւններ, որոնք ԺԹ. դարուն մի քանի անգամ միանալէ եւ բաժնուելէ վերջ, վերջնապէս Մալաթիոյ առաջնորդութեան ենթարկուած են:

Այդ աթոռները պատմական անցքերու ուղղակի հետեւանք՝ ծնունդ առած են այնպիսի դէպքերէ, որոնք մեր ազգին դժբախտ ճակատագրին հետ կապ ունին:

Պատմական անժխտելի իրողութիւն մըն է թէ մանաւորապէս ԺԱ. դարուն Հայաստանի համար բացուած է դժբախտութեանց շրջան մը, ասիական ժողովուրդներու դէպի արեւմուտք գաղթաշարժերուն հետեւանօք:

Այս գաղթաշարժերը՝ որոնց կ'ընկերանային զինուորական արշաւանքներ, Հայերը քշեցին դէպի արեւմուտք, Եփրատէն անդին մինչեւ Տաւրոսի լեռներու կատարները կամ անոնց հարաւային ստորոտը, Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուող հողեր՝ հոն ապաստան գտնելու յոյսով:

Այդ հայ գաղթականները, որոնք իրենց հետ ունէին նաեւ իրենց իշխանները կամ թագաւորները, Եփրատի արեւմտեան կողմը, Փոքր Ասիոյ Արեւելեան ծայրը կազմեցին բիւզանդական հովանաւորութեան տակ ծորա թագաւորութիւններ, որոնք ինչպէս տեսնուեցաւ հազիւ 50—60 տարի կեանք ունեցան, վասնզի բարբարոսները անցան Եփրատը եւ մտան Փոքր Ասիոյ արգաւանդ դաշտերը, աւելով Հայ այդ անհաստատ եւ տկար իշխանութիւնները:

Միայն այն հայ իշխանները, որոնք Տաւրոսի, Ամանոսի եւ Սեւ Լեռանց բարձունքներուն վրայ կանգ առած էին, իրենց հետեւորդներով, ոչ միայն տոկացին բարբարոսներու գրոհին, այլ իջան դէպի հարաւ, Տաւրոսի ստորոտը եւ հոն կազմեցին հայ թագաւորութիւն մը եւ շնորհիւ Տաւրոսի պատուարին եւ այլ նպաստաւոր պարագաներու, կրցան ամրապնդուիլ ու բաւական երկար կեանք ունենալ:

Հայ ժողովուրդին դէպի արեւմուտք այս զանգուածային տեղափոխութեան իբր հետեւանք, ինչպէս որ իր քաղաքական իշխանութեան կեդրոնը արեւմուտք փոխադրուած է, նոյնպէս նաեւ իր եկեղեցական իշխանութեան կեդրոնը արեւմուտք տեղափոխուած է, վասնզի մինչեւ այն ատեն հայ կաթողիկոսները միշտ հայ թագաւորներու քով եւ անկէ անբաժան մնացած էին:

Եւ ինչպէս ծանօթ է Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը Հայաստանի զանազան վայրերը փոխադրուելէ ետք, Հայաստանէն դուրս նաեւ այլեւայլ

վայրեր հաստատուած է: Այսպէս, յաջորդաբար Ամենայն Հայոց Կաթողիկոսին նստոց եղած են[1] Փոքր Ասիոյ բերանը՝

ՍԵԲԱՍՏԻԱ (1023—6 եւ 1052—8) եւ ապա Տաւրոսի, Ամանոսի եւ Սեւ Լերան շուրջ:

ԹԱՒԲԼՈՒՐ Տարենտէ քաղաքին մօտը Կոկիսոն գաւառին մէջ(1062–5):

ԾԱՄՆԴԱՒ (1065—1072):

ՄՈՒՏԱՌԱՍՈՒՆ (1072—1075):

ՀՈՆԻ (1076—1085):

ՄԱՐԱՇ (1085—1087):

ՔԵՍՈՒՆ (1103—1105—1116):

ԾՈՎՔ կամ ՏԼՈՒՔ (1116—1149):

ՀՌՈՄԿԼԱՅ (1149—1292):

Ուրկէ փոխադրուած է Կիլիկիոյ Հայ Թագաւորներու մայրաքաղաքը՝ ՍԻՍ (1292—1441): Այս կաթողիկոսարան եղած տեղերէն մի քանին կը գտնուէին Մալաթիոյ շրջանակին կամ պատմական Երրորդ Հայքի մէջ, ուր ԺԱ. դարէն սկսեալ շատ ստուարաթիւ հայեր կ՚ապրէին երբեմն նոյնիսկ աւելի կամ պակաս անկախ իրենց սեփական քաղաքական իշխանութիւններովը, որոնց հաստատութիւնը եթէ կանխած չէին հոգեւոր հովուութիւնները, անխուսափելի էր որ գոնէ յաջորդէին ինչպէս բացատրուեցաւ Մելիտինէի առաջնորդութեան հիմնարկութեան վրայ խօսուած ատեն: Նաեւ տեսնուեցաւ որ Մելիտինէի առաջնորդութեան հաստատութենէն առաջ Ամանոսեան լեռներու եւ Եփրատացւոց կամ Կոմմագինէի մէջ նոյնիսկ կաթողիկոսարաններ հաստատուած էին:

Այս աթոռանիստ վայրերը յաճախ աւանդաբար շարունակուած են ունենալ իրենց հոգեւոր տեսուչները, այսինքն եպիսկոպոսները, եւ այսպէս այս շրջանին մէջ կազմուած են թեմեր, որոնք առաւել կամ նուազ տեւականութիւն ունեցած են, պարագաներուն բերմամբ՝ հայ բնակչութեան աճման կամ նուազման պատճառով:

Նկատելի է որ այդ հոգեւոր հովուութիւնները իվերջոյ Մալաթիոյ առաջնորդներուն իրաւասութեան ենթարկուած են ուղղակի կամ իրենց առանձին առաջնորդութեան հանգամանքը պահելով իբր յարակից վիճակ:

Հոս հարկ է դիտել տալ թէ այսօրուան Մալաթիոյ կուսակալութեան սահմաններէն դուրս գտնուած շրջանակ մը կայ, որ քաղաքական վարչութեամբ անկէ դուրս մնացած է- յետոյ եւ Սեբաստիոյ կուսակալութեան ենթարկուած, սակայն հայ հոգեւոր վարչութեամբ աւելի Մալաթիոյ առաջնորդութեան հետ կապեր ունեցած է իբր դրացի եւ մօտակայ անոր եւ անոր պէս ենթակայ Կիլիկիոյ կաթողիկոսութեան:

(1) Ամենայն Հայոց կաթողիկոսութեան աթոռին տեղափոխութիւններուն մասին՝ տեսնել Հասկ Հայագիտական Տարեգիրք, Ա. տարի, 1948, էջ 29—30):

*Այդ առաջնորդութիւններն էին.*

1.– ՏԱՐԵՆՏԷ

2.– ԿԻՒՐԻԻՆ

3.– *ՄԱՆՃԸԼԸԳ*։

*Երեքն ալ պատմական Կոկիսոնի կամ Ջահանի շրջանակին մէջ, Հայաստանէն դուրս Սեբաստիայէն ետք երկրորդ տեղը, ուր հաստատուած էր Հայոց կաթողիկոսութիւնը*, 1062–*ին*։

*Բայց այս վայրերը դուրս գտնուելով Մալաթիոյ թէ՛ քաղաքական եւ թէ եկեղեցական վիճակային բաժանումէն պիտի չզբաղինք անոնցմով եւ պիտի զբաղինք Մալաթիոյ անմիջական ենթակայ հայ առաջնորդութիւններով, որոնք էին.*

ա. ՊԵՀԵՍՆԻ *որ շարունակութիւնն էր Եփրատացւոց կամ Կոմմագէնի շրջանակին հաստատուած կաթողիկոսական աթոռներէն Քիսունի*։

*Քիսուն կը գտնուէր Պեհեսնի քաղաքին հարաւային կողմը՝ չորս ժամ հեռաւորութեամբ եւ հայախառն գիւղաքաղաք մըն էր* 1914*էն առաջ*։

*Պեհեսնի գաւառը որ Մարաշի, Այնթապի, Ուրֆայի եւ Մալաթիոյ միջեւ կեդրոնական դիրք մը ունի, անոնցմէ հաւասարապէս հեռու է*։

*Քեսուն եղած էր Գող Վասիլի մայրաքաղաքը, ինչպէս տեսանք*։

*Գող Վասիլ շինած է* 1105–*ին Քեսունի մօտ, Կարմիր Վանքը, որ կը փայլէր ԺԱ. դարուն, երբ Բարսեղ Անեցի կաթողիկոս* (+1113) 1106*ին հոն կ'առանձնանայ*։

*Գրիգոր Վկայասէր ալ պահ մը հոն ապրած եւ հոն վախճանած է ինչպէս յիշատակագիր մը կը վկայէ գրելով*, «Վահրամ Գրիգորեան... կոչուեցաւ Վկայասէր ու վախճանեցաւ ի Սեաւ Լեռն, յերկիրն Ռաբնայ[1]Շ. եւ Ծ. (=1101) թւին յամն Վասիլ իշխանին Ռաբնայ (Տաշեան *Մ. Ցուցակ* էջ 92)։

*Հոս եղած է Գող Վասիլ իշխանապետին եւ անոր յաջորդ Վասիլ Տղայի տիրապետութեան շրջանին Հայոց կաթողիկոսութիւնը, որ այս իշխանութեան կործանումէն յետոյ փոխադրուած է Ծովք – Տլուք, Պահլաւունի Հայ իշխանի մը կալուածը*։

*Եւ ինչ որ պատահած էր Թաւ–Բլուրի, Հոնիի եւ Մարաշի համար, հոս ալ պատահեցաւ, հոն հաւաքուած Հայերը շարունակեցին ունենալ հոգեւոր հովիւ մը, որուն նստոցը եղաւ նախ Կապան (Ռապան) եւ ապա Պեհեսնի ամուր քաղաքը, որ Սելջուկ սուլթանը՝ Մագսուտ գրաւեց* 1151–*ին*։

*Նախապէս Քեսունէն մինչեւ Ֆոնուզ տարածուող այդ լեռնային կապաններով լեցուն շրջանը կոչուած էր Կապան կամ Ռապան, եւ ան ունէր իր յատուկ եպիսկոպոսութիւնը, որուն կեդրոնը հաւանօրէն Արեգնի վանքը*[2]

---

(1) *Ուշադրաւ իրողութիւն մըն է որ Ռապանը իբրեւ քաղաք չէ յիշուած, այլ իբրեւ երկիր, ուր էր Սեւ լեռը։ Ինչպէս տեսանք, Վկայասէրի համար ըսուած է թէ* «փախճանեցաւ ի Սեաւ լեառն յերկիրն Ռապանայ» (*Տաշեան* Մայր Ցուցակ, *էջ* 92, *նաեւ* 25 *եւ* 751)։

(2) Հ. *Համառ* *ապվըդ. Ոսկեան Արեգին կամ Արեգնի կամ Արեգի վանքին վը-*

*եղած է, Զէյթունի մօտ կամ Ֆռնուզի մէջ, որուն Ս. Կարապետի վանքն կը յիշուի* 1179 *թուականէն սկսեալ (տես Տաշեան* Մ. Ցուցակ, *էջ* 265—266, *եւ* 806):

*Ուրեմն նախ այդ լեռնագաւառին մէջ կազմուած է Ռապանի կամ Կապանի առաջնորդութիւնը, որ հոծ հայ բնակչութեամբ վայրեր ունէր իր իրաւասութեան տակ, Զէյթուն, Ֆռնուզէն մինչեւ Քեսուն, իսկապէս կապաններով լեցուն շրջանակը կամ իրական կապաններու երկիրը:*

*Այս շրջանակի մէջ էին.*

1. ՄԱՐԱՇ
2. ՔԵՍՈՒՆ–ՊԵՀԵՍՆԻ
3. ԱՐԵԳԻ–ՖՌՆՈՒԶ–ԿԱՊԱՆ:

*Ասոնցմէ ՄԱՐԱՇ իր կարգին Քեսունէն առաջ* 1085—1087 *եղած է կաթողիկոսական աթոռ եւ թերեւս իբր այն գրեթէ անմիջապէս յետոյ այդ աթոռին դադրելէն, ունեցած է իր յատուկ եպիսկոպոսները, իսկ Կապան–Ֆռնուզի վանքը կեդրոն ունենալով, դրացի Զէյթունի բացառիկ կերպով նպաստաւոր դիրք ունեցող կապանավայրին հետ միութիւն մը կազմած էր ԺԱ. դարէն սկսեալ, երբեմն Կապանի եւ երբեմն Ֆռնուզի անունով:*

*Հետեւաբար այս շրջանակը* ԿԱՊԱՆ *կամ* ՌԱՊԱՆ *անունով թեմ մը կազմած էր որ մինչեւ մեր օրերը շարունակած է ԺԶ. դարէն ետքն ալ թեմին կեդրոն ունենալով Ֆռնուզի Ս. Կարապետ վանքը:*

*Աշխարհագրական նոյն շրջանակին մէջ էր Քեսունը, երբեմն կաթողիկոսանիստ վայրը, որուն յատուկ եպիսկոպոսները չեն յիշուիր յաջորդ դարերուն, սակայն ԺԹ. դարուն իր մօտը գտնուող գաւառագլուխ քաղաքին, Պեհեսնիի մէջ հաստատուած կը տեսնենք Առաջնորդութիւն մը:*

*Առաջին յիշատակեալ Պեհեսնիի առաջնորդը որ ինծի ծանօթ է եղած* 1859—1860 *թուականներէն սկսեալ* ՍՐԱՊԻՈՆ ԵՊԻՍԿ. ՊԵՀԵՍՆԵՑԻ, *որ ամբողջ Մալաթիոյ շրջանին եւ գաւառին մէջ ծանօթ դէմք մըն էր եւ Պեհեսնիէն զատ վարած ամբողջ Մալաթիոյ եւ շրջակայից առաջնորդութիւնը, իբր Առաջնորդական Տեղապահ* 1873*ին Մալաթիա տեղափոխուելէ ետք (տես վերը, էջ* 568):

*Այսպէս,* 1870*ական թուականներէն սկսեալ, այս Սրապիոն եպիսկ.ի անձին վրայ Պեհեսնիի եւ Հիսնի–Մանսուրի (Ատըեաման) առաջնորդութիւններն ալ միացած են (նոյն):*

*Այս թուականներէն ետք, Պեհեսնի–Քեսուն, դարձած է յարակից վիճակ մը Մալաթիոյ առաջնորդութեան, մինչեւ* 1915*–ի դժբախտ թուականը:*

---

*րայ* (ՀԱ. 1955. 387—8) *խօսած ատեն կը հաստատէ թէ այս վանքը եւս կարճ ժամանակ մը եղած է Գրիգոր Վկայասէրի կաթողիկոսական կայանը (հմմտ.* Մատթէոս Ուռհայեցի, *էջ* 355 *եւ Հ. Ներսէս վրդ. Ակինեան,* Մատենագր. Հետազօտութիւններ Ե., 236): *Հ. Ներսէս Ակինեան վարանումով կը նոյնացնէ Արեգի վանքը Քեսունի Կարմիր վանքին հետ, որ շատ անհաւանական չէ:*

բ. ՍԱՄՈՍԱՏ-ԿԵՐԿԵՐ-ՀԻՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ. — (Հարգան?). Պեհեսնիէն զատ Մալաթիոյ առաջնորդութեան յարակից եւ երբեմն անոր ենթակայ եւ երբեմն անկէ անջատ գոյութիւն ունէր Հիսնի Մանսուրի առաջնորդութիւնը որ վաղեմի եպիսկոպոսական աթոռի մը շարունակութիւնն էր։

Կոմմագենէ կամ Եփրատացւոց երկիրը մեր պատմութեան մէջ ԺԱ. դարէն սկսեալ չափազանց կարեւոր դեր մը կատարած է հանդիսանալով տեղակ մը խարիսխ եւ տեղի ապաւէնի, մանաւանդ երբ Արեւելեան Հայաստանը ողողուեցաւ սախական բարբարոսներով եւ Հայերը զանգուածային կերպով դէպի արեւմուտք դիմեցին, առաջին վայրը ուր համախմբուեցան առաւելագոյն չափով, եղաւ Փիլարտոս հայ իշխանապետին հողերը, որոնց մեծ մասը կը գտնուէր Եփրատացւոց մէջ։

Հոն հիմը կը դրուէր Կիլիկիոյ Թագաւորութեան, որուն հիմնադիրը Ռուբէն՝ Փիլարտոսի մեծ ու հոյակապ ծրագրին գործաւորներէն մէկն էր, որ բախտ ունեցաւ նպաստաւորուելու պարագաներէն եւ Փիլարտոսէն իրեն շնորհուած իշխանութիւնը տեւականացնելու, մինչ ուրիշներ՝ ինչպէս Մալաթիոյ Գաբրիէլ «յոյն»ը, Եդեսիոյ՝ Թորոսը, Քեսունի՝ Գող Վասիլը, եւ այլ իշխաններ աննպաստ պարագաներու բերմամբ կորսուին իրենց իշխանութիւնը որքան մահմետական հրոսներուն յարձակումներէն, նոյնքան եւ աւելի թերեւս, խաչակիր լատին իշխաններու դաւաճանութիւններուն հետեւանքով։

Այնպէս որ հոն հայ իշխաններու տիրակալութեան շրջանին համախմբուած հայերը անցան Տաւրոսի ստորոտը եւ Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը պարգացուցին եւ զօրացուցին։ Իսկ մնացող Հայերը, որչափ ատեն որ Լատին խաչակիրներու կազմած Քրիստոնեայ իշխանութիւններուն մէջ կը մնային, շարունակեցին ապրիլ հոն իրենց հոգեւոր անջատ կազմակերպութեամբ, մինչեւ որ իսլամ տիրապետութեան ենթարկուեցան։

Կոմմագէնի կամ Եփրատացւոց երկիրը ինչպէս տեսնուեցաւ, շրջանակ մըն էր, ուր մեծ թիւով Հայեր կային, եւ անոր ամէն քաղաքները ստուար հայ գաղութներ կը պարունակէին։

Այդ քաղաքներէն մէկն էր ՍԱՄՈՍԱՏ, երբեմնի մայրաքաղաքը Կոմմագէնէի, որ հին ատեն եղած էր տեղերական եկեղեցւոյ եպիսկոպոսական կարեւոր աթոռներէն մէկը։ Ան կը գտնուէր Եփրատ գետին եզերքը, արդի Մալաթիոյ կուսակալութեան Հիսնի Մանսուր կամ Ատըեաման գաւառին մէջ։

Սամուսատիա կամ Սամոսատ (ըստ Արաբներու Շամշատ) Խաչակիրներու տիրապետութեան ենթարկուելէ ետք ԺԱ. դարուն, երբ արդէն Հայերը լեցուած էին Եփրատացւոց երկիրը, ունեցաւ հայ եպիսկոպոսութիւն մը, իբր հետեւանք տեղւոյն կարեւորութեան եւ Հայերու բազմութեան։

Այսպէս կը յիշուին 1166—79 ԹՈՐՈՍ ԵՊՍ. ՍԱՄՈՍԱՏԻ (Հ. Աճ. Անձ. Բառ. 348 Զամ. Գ. 86—87)։ 1179 ԳՐԻԳՈՐ ԵՊՍ. ՍԱՄՈՍԱՏԻ (Հ. Աճառեան Ա. 560 Զամ. Գ. 86—87)։ Խաչակիրներու դրաւումէն վերջ երբ անչքացաւ

այս շրջանակին մէջ ծաղկած կը թուի Հիւսնի Մանսուր բա-
այս քաղաքը, որուն հին անունը ոմանք կը կարծեն թէ Հարգան է։ Դժբախտաբար
գաքը, որուն հին անունը ոմանք կը կարծեն թէ Հարգան է։ Դժբախտաբար
բանասէրները համաձայն չեն այս նոյնացման, վասզի Հարգանը ոմանք կը
պնդեն թէ Հաճընն է, ինչ որ վճռականապէս փաստող ապացոյցներ չկան
(տես. Բրոֆ. Յ. Պօղոսեանի Հաճընի ընդհանուր պատմութիւնը եւ շրջակայ
Գօզանտաղի հայ գիւղերը. Լոս Անճելըս 1942 էջ 116–130, 132–136), ընդ-
հակառակը Բրոֆ. Յ. Պօղոսեանի այս մասին կատարած պրպտումներուն մէջ
կարելի է գտնել փաստեր Հարգան=Հիւսնի Մանսուր նոյնացման համար,
որոնք թերեւս Հայկազեան բառագիրքի հեղինակները մղած են գրելու թէ ան
է «Դղեակ մերձ Հիւսնի Մանսուր»։ Ամենէն գլխաւոր արգելքը այս նոյնացման
այն է որ Հարգան անունը կը գործածուի 1307–1311 թուականներուն, երբ
տակաւին Հաճընի մէջ հայերը հաստատուած չէին։ Հաճըն հայաբնակ եղած
կամ աւելի ճիշդը Հայերէն հիմնուած է 1425–էն կամ առնուազն 1375էն (Ռու-
բինեանց կործանումէն) ետքը։

Հետեւաբար Հարգան=Հիւսնի Մանսուր նոյնացումը կը ներկայացնէ
հաւանականութիւններ, վասնզի 1179էն յետոյ, երբ այլեւս Սամոսատի ե-
պիսկոպոսները չեն յիշուիր, Հարգանի եպիսկոպոսական աթոռը երեւան
կու գայ եւ այդ աթոռին վրայ կը յիշուին 1307–ին՝ Անտրէաս եւ 1311–ին
Ստեփանոս եպիսկոպոսները։

Հարգանն ալ կը դադրի եւ նոյն շրջանակին մէջ ԺԶ. դարուն մէջ երե-
ւան կու գայ Կէրկէրի եպիսկոպոսութիւնը, որ կրնանք նկատել մերձաւոր
Սամուսատի արքեպիսկոպոսութեան շարունակութիւնը։ ԿԷՐԿԷՐ կամ ԿԱՐ-
ԿԱՌ, որ Եփրատի արեւմտեան ափին վրայ Մալաթիոյ արեւելեան եւ Եդեսիոյ
արեւմտեան հիւսիսային կողմը, Մալաթիոյ կուսակալութեան Քեախթէ գա-
ւառին մէջ գիւղ մըն էր վերջերը, բայց երբեմն Ասորւոց եւ Հայոց համար
մշակութային կեդրոն մը եղած էր։

Այս վայրը, ինչպէս յիշուեցաւ (վերը) ԺԲ. եւ ԺԳ. դարերուն աթոռ
էր օգնական–եպիսկոպոսութեան մը, ինչպէս Մելիտինէ եւ Կապան էին, ե-
բեքը միասին Եդեսիոյ արքեպիսկոպոսութեան կապուած ըլլալով, վասնզի
Եդեսիոյ եպիսկոպոսները նախապատիւ դիրք ունէին Եդեսիոյ լատին կոմ-
սութեան մէջ իբր մայրաքաղաքի եպիսկոպոս եւ Մելիտինէ, Կապան եւ
Կարկառ գաւառական քաղաքներ էին նոյն կոմսերուն իշխանութեան տակ։

Հետեւաբար Կարկառ եղած է եպիսկոպոսական աթոռ իբր շարունա-
կութիւնը Սամոսատի եւ Հարգանի եպիսկոպոսութիւններուն։ Կարկառի հայ
եպիսկոպոսներուն նստոցն էր Ս. Տիմոթէոսի վանքը։

Դժբախտաբար այս աթոռին պետերէն միայն ծանօթ են հետեւեալ-
ները.

ՊԵՏՐՈՍ ԱՐՔ. ԿԱՐԿԱՌԵՑԻ. (1586–1601).– Ծնած է 1552ին։ Իր
ժամանակին գլխաւոր վարդապետներէն մէկն էր։ Իր ուսումը առած է Կար-
կառի Ս. Տիմոթէոսի դպրեվանքին մէջ եւ յետոյ գացած է Ամիթ, Յովհան-

նէ. Շիրակ վրդ.ի քով: Իրեն աշակերտակից են համբաւաւոր Ղուկաս Կեղեցի (+1601) եւ Սրապիոն Ուռհայեցի վարդապետները:

Յետոյ կ'ընտրուի Առաջնորդ Կարկառի, եւ կը նստի Ս. Տիմոթէոսի վանքը, ուր կը հասցնէ բազմաթիւ աշակերտներ:

1601ին Ջուղայեցի վաճառականներու ճնշումին տակ Հալէպի մէջ կաթողիկոս օծուած է եւ մինչեւ իր մահը (1608 Փետրուար 24 կամ Մարտ 22) Հալէպի մէջ նստած է իբր կաթողիկոս, Գրիգոր Կեսարացի պատրիարքէ դոյացուցած հաշտութեան համաձայն: (Տես Պատմութիւն Կաթող. Կիլիկիոյ էջ 245–298, Դարանաղցի 321–331 եւ 351–352, Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք, էջ 412. Արտաւազդ Արքեպ. Պատմ. Հալէպի Հայոց 1950, Փարիզ էջ 116–145):

ՊԵՏՐՈՍ ԵՊԻՍԿ. ՀԱԼԷՊՑԻ. ԳԻԾԱԿ (1700–1708) (յետոյ կաթողիկոս Կիլիկիոյ): 1680ին հաւանօրէն Սբ. Երուսաղէմի (Աղաւնունի, նոյն, 435), 1700–ին Կարկառի Առաջնորդ է, 1708–1710 համաթոռ կաթողիկոս, որ յետոյ Հալէպ նստած է: Իր սեփական ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ խորագրով ձեռագրին մէջ գրուած յիշատակարանէն (տես ձեռագրաց բաժինը) կը հասկցուի թէ իր Կարկառի առաջնորդութեան առեն Հիւսնի Մանսուրի մէջ առացած է այդ ձեռագիրը: Ուրեմն հաւանօրէն Ատըեաման շրջանակը կը պատկանէր Կարկառի առաջնորդութեան:

Յովհաննէս Ե. Հաճընցի կաթողիկոսին իբր աթոռակից կաթողիկոս եղած է Սիսի մէջ, սակայն միասին չեն կրցած ապրիլ համերաշխ եւ Պետրոս Հալէպցի մեկնած է Հալէպ, ուրկէ աքսորուած է 1710ին Ադրիա, հաւանօրէն իր լատինամիտ հակումներուն համար:

1717–ին Ադրիայի վանքն էր ըստ Երուսաղէմի վանքը պահուած ձեռագիր հաւաքածոյի մը (Թ. 1462), ուր կը կարդանք «ի վայելումն Բերիացի, որ է Հալէպցի Պետրոս կաթողիկոս ի ՌՃԿԱ (1712ին), ի վանքն Աղբատու»:

1726–ին զինքն կը գտնենք Բաբերդ քաղաքը (տես Թ. 1162 ձեռագիր Երուսաղէմի) վանքի 1726ին գրուած Գր. Նարեկացիի Մեկնութիւն Երգոց Երգոյն յիշատակարանի մէջ «էր թվականն Հայոց ՌՃՀԵ. (=1726) եկն առ մեզ Բաբերդ քաղաքիս Պետրոս հոգեւոր տէրն Սըսոյ կաթողիկոսն, ունելով զայս տետրիկս ընդ իւրն...» Բաբերդէն յետոյ հաւանօրէն գացած է Երուսաղէմ ուր վախճանած է 1728–ին եւ թաղուած է Ս. Փրկիչ վանքը, ուր տապանաքարով.

«Այս է տապան Պետրոս կաթողիկոսին Կիլիկիոյ, որ փոխեցաւ առ Տէր ի թվ. ՌՃՀԷ. (= 1728) ամեն: Յիշեցէք ի Քրիստոս» (տես Բարգէն կաթ., Պատմ. Կաթողիկոսաց Կիլիկիոյ էջ 456–466):

Կարկառ այնքան անշքացած է որ հաւանօրէն Սամոսատի հետ, ըստ քաղաքային վարչութեան նոր բաժանումներուն կցուած է Հիւսնի Մանսուրի հոգեւոր տեսչութեան, եւ այս պատճառով ԺԸ. դարուն այլեւս ոչ Սամոսատի, ոչ Հարպանի եւ ոչ Կէրկէրի կամ Կարկառի եպիսկոպոսներու յիշատակութեան չենք հանդիպիր: Այդ շրջանակին մէջ իբր կառավարական դաւա-

ռագլուխ քաղաք կարեւորութիւն ստացած էր Հիւսնի Մանսուր, ուր կ՚երեւի թէ Հայերը համախմբուած են, եւ հոն թեմական կազմակերպութիւն մը ունեցած են իբրեւ շարունակութիւնը Սամոսատի եւ Կէրկէրի աթոռներուն:

Սամոսատ այնքան կորսուած էր իր կարեւորութիւնը եւ նշանակութիւնը, որ աշխարհագրական մերձաւորութեամբ մերձակայ Հռոմկլայի, Նիզիպի, Էհնէշի եւ Պիրի հետ Եդեսիոյ առաջնորդներուն խնամքին յանձնուած էր: Կէրկէր բոլորովին մոռցուած էր եւ անկարեւոր վայրի մը վերածուած, հաւանօրէն երկիրին խառնուած վիճակին հետեւանքով:

Կառավարական վարչական կեդրոն մը դարձած Հիւսնի Մանսուր, որչափ որ երկրորդական քաղաք մը, հաւանօրէն պետական օրինակի վրայ նաեւ եկեղեցական կեդրոն մը դարձած էր ԺԹ. դարուն եւ առաջնորդութիւն մը կազմուած էր, որոշ չենք գիտեր ո՞ր թուականին:

Ինծի ծանօթ Հիւսնի Մանսուրի առաջին եպիսկոպոսն էր 1880ական թուականներու Գրիգոր եպիսկոպոս Ռուբինեանը որ 1878ին վախճանած է:

Հիւսնի Մանսուրի Հայերը հանրագրութեամբ մը պատրիարքարան կը դիմեն, որպէսզի Գրիգոր վրդ. Աբարթեան Չէյթունցին, որ մէկուկէս տարիէ ի վեր Հիւսնի Մանսուր կը գտնուէր իբր քարոզիչ, առաջնորդ նշանակուի (Պատ. Արձանագրութիւն), սակայն հետեւանք չէ տրուած այս խնդրանքին և Հիւսնի-Մանսուրի առաջնորդութիւնը Մալաթիա-Պեհեսնի միացեալ առաջնորդութեան կցուած է այդ թուականէն սկսեալ, մինչև 1886—7. երբ անջատուած է, առանձին առաջնորդութիւն կազմած է, բայց առաջնորդ մը գտնել անկարելի դարձած է մինչեւ 1890ական թուականներու սկիզբները, ուստի 1892ին Ատըեամանը կրկին ենթարկուած է Մալաթիոյ առաջնորդին իրաւասութեան, իր յատուկ առաջնորդական փոխանորդներով որոնց վերջինը եղաւ Կարապետ քհնյ. Ժամկոչեան, որ ընտրուած էր 24 Յունիս 1913ին (Պատ. Արձանագրութիւն):



## Է— ՀԱՅ ՎԱՆՔԵՐ

Աղօթավայրերը, այսինքն եկեղեցիները ժողովուրդին համար անհրաժեշտ շինութիւններ էին, որոնք Հայերը միշտ իրենց նոր հաստատուած վայրերուն մէջ գրեթէ հազիւ կանգ առած, կառուցած են:

Իսկ վանքերը, որոնք հին ատենները երբեմն ճգնարաններ էին կամաց-կամաց տարադիր բազմութիւններու համար մշակութային կեդրոններու վերածուած էին եւ իբր ուսումնավայր, մտաւորական կեանքը կ'ապահովէր, քանի որ գիրը եւ դպրութիւնը սոսկ կրօնաւորներու վերապահուած էին:

Ինչ որ ուրիշ տեղեր պատահած էր անկարելի է որ Սեւ Լերան, Կոմմագինէի կամ Եփրատացւոց դրացի Մալաթիոյ մէջ չպատահէր, երբ ԺԱ. դարուն Հայերու նոր ստուար բազմութիւններ այդ կողմերը կ'ապաստանէին, այն յոյսով որ այդ շրջանակին մէջ պիտի կարենային ստեղծել օրրանը նոր կեանքի մը եւ կերտել անկախ հայ պետութիւն մը:

Եւ իրաւ ալ գոնէ ժամանակաւոր կերպով յաջողեցան այդ վայրերուն մէջ եւ շուրջը հաստատելու Հայ անկախ իշխանութիւններ, մեծ մասամբ Հայ բնակիչներով լեցուն: Այդ իշխանութիւններուն մէջ անխուսափելի էր որ պիտի ստեղծուէին եկեղեցիներ, վանքեր, աստուածպաշտութեան եւ ուսման վայրեր:

Արդարեւ ԺԱ. դարուն իսկ կը հանդիպինք Մելիտինէի մէջ[1] յիշատակութեանը Ս. Գրիգոր անուն հայ վանքի մը, շատ մը ուրիշ վանքերու հետ, որոնք նոյն դարուն Փոքր Ասիոյ այդ պարանոցին եւ Կիլիկիոյ հողամասին վրայ գտնուող եւ հայաբնակ դարձած բազմաթիւ ուրիշ քաղաքներու մէջ գոյութիւն ունեցած են:

Մասնաւորապէս վանքերը այս շրջանակին մէջ շատցած են Վասպուրականի Սենեքերիմ Թագաւորին գլխաւորած հոծ հայութեան գաղթէն, այսինքն ԺԱ. դարու առաջին քառորդէն ետքը, եւ յատկանշական է որ անոնք մեծ մասամբ կոչուած էին Վասպուրականի վանքերուն անուններով եւ կը պահէին Արծրունի արքայազուններուն յիշատակները (Գէորգ Արք. Արսլանեան, ԲԱԶՄԱՎԷՊ 1934, էջ 13):

ԺԱ. դարէն ետքը կառուցուած այս վանքերու մէջ էին նաեւ Մալաթիոյ եւ Կոմմագինէի կամ Եփրատացւոց շրջանակին մէջ կառուցուած վանքերը, որոնք մեծ մասամբ գոյութիւն առած են ԺԱ. դարուն կամ անոր յաջորդող 2-3 դարերու ընթացքին Հայաստանէն դէպի Արեւմուտք դիմող հայ գաղթականներէն, ինչ որ շատ բնական էր:

Այսպէս, Մալաթիոյ եւ շրջակայից մէջ երեւան կու գան կարգ մը հայ

---

(1) 1057-ին Մելիտինէի մէջ կը յիշուի Ս. Գրիգոր Լուսաւորիչի վանքը, որուն վանահայրն էր Պօղոս (տես ՇՈՂԱԿԱԹ, էջ 193):

*վանքեր, որոնցմէ շատ քիչերը իրենց գոյութիւնը պահած էին մինչեւ 1915ի հայաջինջ ուրուականը:*

*Այս վանքերը թիւով 14 էին սակայն 1915ին անոնց միայն 2ը կը պահէին իրենց գոյութիւնը*[1]:

*Այս վանքերը, ինչպէս ուրիշ տեղեր, այս շրջանակին մէջ ալ հաւանական է որ գոնէ մասամբ ուսումնավայրեր եղած ըլլան, դպրանոց կամ դպրավանքեր դառնալով, ինչ որ կը մակաբերուի առձեռն վաւերագիրներէ, գլխաւորաբար ձեռագիրներու յիշատակարաններէ:*

*Մալաթիոյ գլխաւոր տեղագրողը Պէննէեան Տ. Կարապետ քհնյ. իր գործին մէջ ունի գլուխ մը «ԿԱՆԳՈՒՆ ՎԱՆՔԵՐ» խորագրուած, ուր կը խօսուի միայն երեք վանքերու վրայ, որոնք միայն իրեն ծանօթ էին իր գործին պատրաստութեան թուականին, այսինքն 1912ին:*

*Այդ երեք վանքերն էին 1. Ս. ՓՐԿԻՉ, 2. ԱՆԱՐԾԱԹ ԲԺԻՇԿ եւ 3. Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ* «որոնք կը գտնուին քաղաքին արեւելքը մէկ ժամ, միեւնոյն հեռաւորութեամբ եւ իրարմէ երկերկու մղոն հեռու մէկ գծի վրայ շարուած» (*Ձեռագիր էջ* 56):

*Խորհելով որ Պէննէեան քահանայի տեղեկութիւնները եւ նկարագրութիւնները տրուած են անձի մը կողմէ, որ բնիկ է տեղւոյն, կը նախընտրեմ իր երեք վանքերու մասին գրուածները նոյնութեամբ ներկայացնել եւ ապա տալ ուրիշ ծանօթութիւններ անոնց մասին (իրեն անծանօթ) և ապա խօսիլ այն վանքերու մասին, որոնք գոյութենէ դադրած էին 1915էն շատ առաջ:*

*Պէննէեան քհնյ.ի այդ տեղեկութիւններուն մէջ ինչպէս ընթերցողները պիտի տեսնեն դժբախտաբար աւանդութիւններ եւ անհիմն զրոյցներ լայն տեղ գրաւած են, բայց նոյնութեամբ զանոնք կը ներկայացնեմ ոչ առանց քննութեան ենթարկելու: Ընթերցողները իմ աւելցուցած տողերուն մէջ պիտի տեսնեն այդ քննութեան չտակայող պատմութիւնները, որոնք Պէննէեան Կարապետ քհնյ. իբր հաւատալի եւ ճշմարիտ ներկայացուցած է:*

*Ուրեմն նախ պարտաւորուած եմ խօսիլ երեք վանքերուն վրայ, Պէննէեան քհնյ.ի դասաւորութեան համաձայն, եւ իր գրածները անփոփոխ՝ ամբողջութեամբ առնելով:*

ա. — ՍՈՒՐԲ ՓՐԿԻՉ. — Որ հիմնարկուած է մեր ի Քս. հաւատացեալ նախավկայ եւ անդրանիկ թագաւոր Ս. Աբգարիոսէն եւ օծուած Ս. Թադէոս առաքեալի ձեռքով:

Կ'աւանդուի թէ՝ համաձայն մեր փրկչին խոստման, նախկին Լուսաւորիչ Ս. Թադէոս, գալով Եդեսիա, կը բժշկէ զԱրքայն Աբգար: Եւ ուսկից կ'երթայ ուրիշ տեղեր քարոզելու: Աբգար՝ յետ ապաքինման Մալաթիան ամարանոց ընտրելով՝ կու գայ եւ Օրտզիի արեւելեան բարձունքը շէնքի մը հիմնարկութեան կը ձեռնարկէ: Մինչ այս, մինչ այն Ս. Թադէոս առաքեալն

*(1) Ոմանք կանգուն երեք վանք հաշուած են, երրորդին տեղը յայտնի եւ քանի մը պատեր մնացած ըլլալուն համար:*

տալ հոս գալով երբ կը լսէ թագաւորին հող գտնուիլը, զԱյն այցելելու համար՝ մինչ շինութեան վայրը կը հասնի ծպտուն, յանկարծ սկուտեղ մը կը յարձակի վրան. Թադէոս բռնելով կը զարնէ ոտքերն ու կը սատկեցնէ զայն: Աբգար տեսնելով իր սկուտեղին (պզտիկ շուն) սատկիլը եւ իբրեւ օտարական թանտարկել կու տայ զայն սպանողը:

Այդ օրեր Աբգարու որդին Անանէ ծանր հիւանդութեան մը բռնուելով կը տառապի եւ բժիշկներու ամէն ճիգ ու զօրութիւն բնաւ չեն կրնար բժշկել, գիշեր մը երբ Աբգար իր հոգեհատորին ցաւէն տրտում կը քնանայ, կ'ազդուի իրեն թէ՝ «մինչեւ բանտարկեալ օտարականը չարձակես եւ իր ձեռքը Անանէի վրայ չդնէ, չ'առողջանար»: Աբգար ընդոստ կ'ելլէ անկողինէն եւ բերել կու տայ Առաքեալը, անկէց խնդրելով նախ ներողութիւն եւ երկրորդ Անանէի բժշկութիւնը:

Անանէ կը բժշկուի: Իսկ Աբգար ի վարձ այդ բժշկութեան կ'ուզէ որ Թադէոսը հարստացնէ ոսկիով եւ արծաթով: Սակայն Թադէոս մերժելով բոլոր արծաթն ու ոսկին, կ'առաջարկէ որ ամարանոց ապարանքին մօտ կառուցուի նաեւ Երկնաւոր թագաւորին համար ալ եկեղեցի մը: Թադէոսի սոյն առաջարկին հաւանելով՝ անմիջապէս կը հաստատուի եկեղեցին որ եւ Ս. Առաքեալը կ'օծէ զայն իր ձեռքով:

Այս սքանչան վայրը որ բազմադարեան հնութեամբ իր նմանեաց մէջ ամենէն առաջիններէն համարուելու արժանիքն ունի, գրաւած է 12–13000 քառակուսի կանգուն տարածութեամբ տեղ մը: Ներկայիս մէջ կանգուն կը կենան երկու փոքրիկ մատուռներ միայն, որովհետեւ դարերու հոլովումը եւ կործանիչ ձեռքեր բոլորովին քար ու քանդ եւ այրեցուցեր ըրած են այն ընդարձակ շրջանակին մէջ գտնուած բոլոր շէնքերը[1] որոնց փառաւորութեան և չքնաղութեան ապացոյցներն են այն սրբատաշ և մարմարինէ խաչերն ու մինչեւ 3 մեթր երկայն ու մէկ ու կէս մեթր բարձրութեամբ ահագին քարերըն ու կրանիթեայ խոշոր սիւներն ու պատուանդաններն: Կ'ըսուի թէ վանքը հինգ յարկերու վրայ շինուած էր եւ ունէր 40 խորան ու 366 կամարներ: Ներկայիս մէջ արարողութիւն կատարուած տեղը երրորդ կամ չորրորդ յարկի մը մնացորդներէն ըլլալու է[2]: Որովհետեւ դեռ մինչեւ 1893 տարւոյ երկրաշարժը, ներկայ պատին հարաւային կողմը իբրեւ աշտարակ ցցուած կը կենար վերնայարկին պատերէն մաս մը: Եւ հիմակուան գաւիթին տակն ալ տեղ տեղ պարապ եւ տեղ տեղ լցուած փլատակներէն: Իր շրջանակին մէջ յու-

---

*(1) Պէնինէեան քհն. իր Համառօտ գործին մէջ կ'ըսէ թէ Լէնկթիմուր այնպէս քարուքանդ ըրած է այս վանքը որ քարերու պիտանագոյնները ձեռքէ ձեռք Եփրատի մէջ թափած ու մնացեալը հարթ հաւասար ըրած է գետնի:*

*(2) Պէնինէեան քհն.ի տպագրեալ Համառօտ գիրքին մէջ (էջ 57) այնպէս ցոյց կը տրուի թէ կանգուն կը մնային երրորդ յարկի պատերէն ու աշտարակներէն մաս մը, երկրորդ յարկէն երեք կամարներով մատուռ մը եւ Ս. Սոփիա ըսուած այլ մատուռ մը: 1893-ի երկրաշարժէն կործանած են թէ՛ Ս. Սոփիան, թէ՛ միւս մատուռը իր կամարներով եւ թէ 10-ի չափ սենեակներ:*

ճարէն եւ ստորերէն գրերով արձանագրուած քարերու բեկորներ կը գտնուին :

1895էն առաջ ձեռնարկուած էր եկեղեցին շինելու եւ պատերը բաւական բարձրացած էին : Սակայն այդ տարուան դէպքը, այդ նոր պատերն ալ քակելու յանդգնելուն հետ, 20ի չափ երկյարկ սենեակներն ալ գետնի հաւասար բրած էր : Մինչեւ այսօր 8–10 հատ նոր սենեակներ շինուած են, ուր կը պատսպարուին ուխտագնացութենէ աւելի օդափոխութեան գացողները : Այս վանքի տեղւոյն օդը շատ թեթեւ ու առողջարար է, բայց խմելու ջուրը բոլորովին ոչինչ : Բացի վանքի շուրջը գտնուած մէկ քանի արտավար հողէն կալուածք եւ եկամուտ չունի :

Վանքէն քիչ մը վարէն կը հոսի ԲՈՒՆԱՐՊԱՇԸ վտակը եւ որուն եզերքը քառակուսի վճիտ աղբիւրի մը քովիկն է այն հիանալի Չինարը, ուր վանքի ուխտաւորները իջնելով կը բոլորեն աղբիւրը եւ ուրախութեան պակասը կը լրացնեն : Չինարը՝ որուն հաստութեանը համեմատող ծառ չեմ կարծեր որ այս գաւառին մէջ հատ մըն ալ գտնուի, դարեր առաջ կայծակնահար ըլլալով՝ այրած է բունը եւ սեւերես խոռոչ մը շինած է :

Այս խոռոչին տրամագիծն է 12 ոտք, եւ բունին արտաքին շրջապատը 40—45 ոտքի չափ : Բունին վրայ հազարաւոր գամեր գամուած են : Իսկ ճիւղերուն ծայրերէն գոյնզգոյն քուրջեր կապուած են քրիստոնեաներէ եւ թուրքերէ, հիւանդութեանց վանումին համար : Մնացորդ հին հաւատքի հաւատալիքներէն :

*Այս վանքին վրայ Տրդատ եպիսկոպոս Պալեան* (Բիւզանդիոն, *Թ.* 2975, 19 *Յուլիս* 1906) *ունի հետեւեալ տողերը աւելի մօտ ճշմարտութեան եւ աւելի համեստ եւ չափաւոր, առանց աւելորդ առասպելաբանութեանց : Ահա իր բառերը :*

*«Մալաթիայէն մէկ ժամու չափ հեռու, Օրտուզի անուն գիւղի մօտե–*
*«րը, բլուրի մը վրայ կառուցուած է «Ս. ՓՐԿԻՉ Վանքը» որուն կ'ըսուի նաեւ*
*«գիւղին անունով «Օրտուզի Վանք» : Կ'ըսեն թէ ժամանակին վանքին մէջ*
*«ՔԱՌԱՍՈՒՆ խորաններ կային, բոլորն ալ Թադէոս Առաքեալին ձեռքովն*
*«օծուած : Այժմ յունական ճարտարապետութեան ձեւով շինուած, քարաշէն*
*«եկեղեցի մ'ունի, բայց խախխուտ ու նորոգութեան կարօտ : Մալաթիոյ*
*«Առաջնորդ նախորդ Տեղ. Տ. Խաչատուր վրդ., օժանդակութեամբ Յարու–*
*«թիւն էֆ. Ոսկերիչեանի[1] ասկէց առաջ ձեռնարկած էր թէ՛ եկեղեցին եւ թէ՛*
*«վանքը նորոգելու... :*

*«Ս. Փրկիչ այս վանքը գլխաւոր ուխտատեղին էր Մալաթիացիներուն :*

---

*(1) Արդարեւ՝ 1895-ի կոտորածէն եւ աւերումէն առաջ, այս անձնաւորութիւնը, որ եկեղեցւոյն կամ հոգաբարձու նշանակուած էր այս վանքին, իր 1895ի ջարդէն եւ իրեն դէմ թուրքերու գրպարտութենէն ազատած ըլլալուն համար ուխտ ունէր, յաջողած է շինել պզտիկ մատուռ մը, ուր կը կատարուէին արարողութիւնները, եւ 10 քարաշէն սենեակներ:*

*Դժբախտաբար Ոսկերիչեան 1915-ին նահատակուած է քաղաքին ծանօթ դէմքերուն հետ:*

«Վանքին մէջ կային 20—25 սենեակներ, բաւականին գեղեցիկ ու ճաշակաւոր
«շինուած: Միաբան վարդապետներ չունէր, բայց Առաջնորդները միշտ կ'այ-
«ցելէին վանքը: Այս վանքին մէջ կային, կ'ըսուի, բաւակա՛ն թուով գրչագիր
«հին մատեաններ, որք սոոր անոր անցնելով, առ այժմ մնացած են միայն՝
«Աւետարան, Յայսմաւուրք, Շարական և Ժամագիրք մը, չորս կտոր գրչագիր
«գրեանք»: (Տրդատ եպիսկ. Պալեան Բիւզանդիոն 2975):

Իսկ աւելի կանուխ 1878-ին Գարեգին եպիսկ. Սրուանձտեանց իր ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ-ին (Ա. 314—5) մէջ ունի սա տողերը, որոնք աւելի լուրջ են եւ աւելի զգուշաւոր:

«Անարծաթէն անցանք Օրթուզի գիւղը, Ս. ՓՐԿԻՉ վանքը, որ բաւա-
«կան շէն է սենեակներով, պարտէզներով, եւայլն. ուր անպակաս են ուխ-
«տաւորք եւ երթեւեկք, հող մը ունի բակին մէջ, յորմէ դեղնութիւն ունե-
«ցողներ կ'ուտեն ու կ'անցնի: Ուխտաւորաց մեծ մասն տաճիկ կանայք են,
«վանքի դիրքն հովասուն, ջրաւէտ եւ ապահով լինելուն՝ օդափոխութեան եւ
«զուարճանալու համար եկողներ ալ շատ կան, ուր տեղի կ'ունենան խաղ,
«զափ, պար եւայլն: Ս. Փրկչի տաճարը խիստ ընդարձակ եւ հոյակապ շէնք
«մը եղած կ'երեւի իւր աւերակէն, արդի տաճարը՝ աւերածոյն մէկ մասն է,
«որ ծածկեր են, մութ եւ խաւար է, ուր պատարագ կը մատուցանեն կիրա-
«կի օրերը քաղաքի քահանայք հերթով, փոքրիկ մատուռ մ'ալ կայ տաճարին
«աջ կողմն՝ նոյնպէս մութ: Դրսէն հիւսիսային պատին վրայ դրան մը տեղ
«կայ գոցուած, եւ անոր ճակտի վրայ յունարէն գրով արձանագիր մը: Ըստ
«աւանդութեան, Լէնկթիմուրի աւերակն է եղեր այս մեծաշէն տաճարն, եւ
«սոոր հողերն ու կալուածները տիրեր են Թուրքեր»:

Այս անցքացման շրջանին Մալաթիոյ առաջնորդներէն Սրապիոն եպսկ. (1876—1878) ջանք մը ըրած է աւերուած եւ փլատակ դառնալու մօտ վանքը շէնցնելու, վասնզի 10—12 սենեակներ շինած է եւ ուխտաւորներու հանգըստութեան համար ամէն սենեակի մէջ մասնաւոր անկողին, վերմակ եւ կարպետ պատրաստել տուած է, ինչպէս նաեւ կերակուր եփելու մեծ ու պըղնձէ կաթսաներ, ամաններ եւ գդալներ հայթայթած է (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ Գ. տարի Թ. 2 էջ 14):

Դժբախտաբար 1895ի ջարդին բոլոր սոնք անէացած էին կամ կողոպտուելով կամ քանդուելով: Այս տեղեկութիւններու վրայ կ'աւելցնեմ Բրոֆ. Մկրտիչ Որբերեանի հետեւեալ տողերը (ԲԻԻՐԱԿՆ 1900, էջ 147), առնոնցմէ զեղչելով այն մասերը, որոնք կրկնութիւններ են նախապէս գրուածներուն:

«Ս. ՓՐԿՉԻ վանքը բլրակի մը վրայ հիմնուած է: Առջեւը Օրտուզի կոչուած պարտիզալից գիւղը կայ, ուր մինչեւ մօտ տարիներ, 15 տան չափ Հայեր ալ կը գտնուէին: Աւանդաբար կ'ըսուի թէ Թադէոս եւ Բարթուղիմէոս առաքեալներու օծած եկեղեցին է: Անկէ կէս դար առաջ (1850ական թուականներուն) ամայի եւ աւեր սոսկ տաճարին մէկ մասը կը գտնուի եղեր: Ուխտագնացութեան միջոցին, Օրտուզուցի Հայեր պէտք եղած սպասները տանելով, հոն քաղաքէն գացող քահանան պաշտամունք կը կատարէ, մատա—

ղը կ'օրհնէ, կ'ուխտեն, կ'ուտեն եւ կրկին քաղաք կամ գիւղ կը դառնան։ Բայց այդ ատեններս ժողովուրդին կրօնասիրութեան, անհատական ձեռներէցութիւններուն... շնորհիւ, կիսաւեր տաճարը կը շրջափակուի ընդարձակ պարիսպով մը եւ կը շինուին հովասուն ու գեղեցիկ սենեակներ։ Երբ մենք հասանք, ամէն շաբաթ եւ կիրակի օրեր բարեպաշտ, ինչպէս նաեւ քէֆապաշտ մարդիկ խումբ խումբ կ'երթային և Ս. Փրկիչ կա՛մ կ'ուրախացնէր և կա՛մ կը տրտմեցնէր։

Եկեղեցիին պահարանին մէջ կը գտնուէին բաւական թուով ձեռագիր, եկեղեցական գիրքեր, որոնց մէջ է՛ն հինը մինչեւ ԺԲ. դար կ'երթար, ոմանց կողքերուն քով դրուած թերթերը մագաղաթեայ Աւետարանի թերթեր էին, կը յիշեմ նաեւ որոշ թերթ մը, որ կրկնագիր գրչութիւն մըն էր, հին գիրերուն հետքերը զգալի էր։

Եկեղեցիներու[1] այս մնացորդ բրածոն յունական է, վասնզի թէ՛ խաչերը եւ թէ՛ հատակտոր գիրերն ու արձանագրութիւնները յունարէն են»։

Այնպէս կը թուի թէ այս կրօնաբոյր բլուրը կեդրոն եղած է բոլոր հայ վարդապետներու, յոյն մեդրոպոլիտներու եւ Ասորի մարֆիններու, որոնք պատմութեան էջերուն մէջ Ե. դարէն սկսեալ կը յիշուին։ ... Եկամուտի աղբիւրներ շատ քիչ ունի։ Օդը Լուսաւորիչի վանքին օդէն աւելի մեղմ ու հաճելի է»։

*Մալաթիոյ երբեմնի առաջնորդը՝ Գէորգ Ծ. վրդ. Ասլանեան (յետոյ Արքեպիսկոպոս եւ Տեղապահ Պոլսոյ Պատրիարքարանի) եւս խօսած է ԲԱԶՄԱՎԷՊի մէջ իր հրատարակած շարաթացեալ վանքերու շարքին նաեւ Օրտուզի Ս. Փրկիչ վանքին վրայ։ Անիկա շատ գեղեցիկ նկարագրած է ճամբան որ կը տանի քաղաքէն այս վանքը, ինչպէս նաեւ խղճմտութեամբ նկարագրած՝ վանքին վիճակը՝ անշուշտ իր պաշտօնավարութեան օրերը աչքի առջեւ ունենալով։*

*Հոս նոյնութեամբ կը ներկայացնեմ այդ տողերը, իբր կատարեալ պատկերացումը այս վանքին։*

«Ս. Փրկիչը մէկ ու կէս ժամ հեռաւորութիւն ունի Մելիտինէէն, դրըկիցն է Օրտուզի գիւղին որ շատ տարիներ առաջ մի քանի հարիւր հայ բընակչութիւն ունեցած է. վերջերս հազիւ երեսունի չափ, է մերձ նաեւ Ասլան Թէփէի մեծ հնութիւնը նախաքրիստոնէական, այժմ իր գագաթին վրայ՝ որ քանի մը արտավար է Հայոց եւ հարեւանց գերեզմանատեղիքն են։

Գեղեցիկ խնուղի մը Մելիտինէէն կ'երկարի մինչեւ գիւղ եւ վանք ու հնութիւն, դրախտազարդ պարտէզներու, ծառուղիներու մէջէն կը սահին կառքերու անիւները եւ տափ ու դափոտուք նժոյգներու, գեղազարդ խնուղին լի է բազմութեամբ որ վեր վար կը նեմին ու կը նեպին։ Եզական ջուրը Տէր Մեսիհին ու վարերը Պապ ուխտիին (միւռոնաթափ) ջուրերուն սլու ըլլալը սրափալը նուկ ու մուկ, հող ու հողծակտի բղբղցնելու եւ ծարաւներու յա–

(1) *Թէ՛ աւանդութիւնը եւ թէ շրջակայ աւերակները կը յայտարարեն թէ շատ մը եկեղեցիներ շինուած են նոյն բլուրին վրայ։*

գուրդ տալով կը գնայ անդադար. հապա երբ մտնես խիտ ծառներու գրկին, որոնք մէյ մը երկինք կատար ու կտուր են բրած, իսկ երկրին հող տներ ու խոռոչներ են կազմեր, օձալեզու բարտիք, հաստաբուն կալեր լեցնող ընկուզենիք, ուռենիք, թթենիք հարուստ հարուստ գլխու պտոյտ կու տան: Երբ գիւղին ու վանքին կը մօտենաս՝ Արեւէն ալ կը զրկուիս եւ բոցեղ ճառագայթներէն ալ:

Արեւն իսկ խափանող դրախտաստանէն երբ պրծած ես, ահա Ս. Փրկչի վանքը, որ լայնանիստ վայրի մը վրայ տեղ է գրաւեր. երկու պատավարէն աւելի ընդարձակութեան մը վրայ պարսպապատ շէնք մըն է դրսի երեւոյթով, երբ մեծ դռնէն ներս կը մտնես ընդարձակ գաւիթներու շարք մըն է, ու գաւիթներուն մէջերը հսկայ մարմար սիւներու խոշոր կտորներու փռուածքը կը համբես, իսկ հաստաբուն խոյակները նրբին քանդակումներով ապշութիւն պատճառող զարմանքի կ'ենթարկեն: Պարսպի պատերուն ներսի կողմերուն կողերուն միայարկ սենեակներ շինուած են վերջին հրդեհներէն, աւերներէն վերջ, ու դեռ աւերակոյտերը դէզ դէզ հոս ու հոն բակտեղեաց մէջ կան: Սենեակներու եւ պարիսպներու շինութեան համար գործածած են մարմարի անթիւ կտորուանք ու սիւներու մարմար կոճղեր:

*Վանքի տաճարէն երբ ներս մտնես, սարսուռ մըն է որ կը պատէ, երբ հոյակապ համակ մարմարիոնէ շինուած տաճարին փլատակը, գետնէն 3–4 մեթր բարձրութեամբ դեռ մարմարաշէն պատերը գրեթէ անաղարտ կը դիտես, հապա սեղանը համակ մարմարաշէն, կիսակործան, ու տաճարին սիւներուն մի քանին երկու երեք կտորի բաժնուած գրկաչափ հաստութեամբ սիւներ, ու խոյակները այնչափ նրբին քանդակ ծաղիկներով, որ կ'ապշիս, կը հիանաս, մեծ անցեալը աչքիդ պատկերացնելով: Մեծ խորանին երկու կողմի փոքր պահարանները Ս. Սկիհի, եւ բաժակի ու սպասի դեռ անաղարտ կը մնան գեղակերտիկ, տաճարը ունի 30 մեթր երկայնք եւ 20ի մօտ լայնք մարմար սիւներ, խոյակներ, քանդակք ու շինութեան ճարտարապետութեան կերտուածքը ճիշտ ու ճիշտ նմանութեամբ Արկատեան մեծ ու հոյակապ տաճարին հնութիւնը տասնեակ դարերէ աւելի եւ հին ժամանակին կը պատկանի եղեր Յունաց, եւ երբ Արկատեան Արզան կը ջնջանի իր փառքէն ու տիրապետութենէն, ահա Ս. Փրկիչը կ'անցնի հայութեան ու դարերով փառաւոր շրջան մը կը բոլորէ: Բակին մէջ հող մը ունի ուրկից ուտողներ գեղնութեան հիւանդութենէն կը բուժին, ուխտաւորներու մեծ թիւը թուրք կիներ են, որոնք երբեք բժշկի կարեւորութիւն չեն տար: Դրսէն հիւսիսային պատին վըրայ տեղ մը կայ գոցուած որ դրան տեղ է, որուն ճակտին վրայ յունարէն գրով արձանագիր մը կայ: Այս մեծաշէն տաճարին աւերումով, կ'աւերին վանքին ամբողջ շինուածքը եւ այս աւերքը Լէնկթիմուրի ձեռքով է եղած կ'ըսուի: Վանքին ընդարձակ հողերը ամբողջ գրաւուած ու իւրացուած է գիւղացիներուն կողմանէ: Ամէն շաբաթ Ս. Պատարագ կը մատուցուէր, ամէն օր, շաբաթ ու ամիս ուխտաւորներով լի կ'ըլլային, այս վանքն ալ ամարանոցի կը ծառայէր»:* (Բազմավէպ, 1938, էջ 109–110):

*Մալաթիոյ Առաջնորդական Տեղապահ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեան 21 Մարտ 1902 թուականով Օրմանեան պատրիարքի հրահանգով անոր ուղղած Մալաթիոյ թեմին մէկ ընդարձակ տեղեկագրութեան մէջ խօսած է այս վանքին վրայ, որ* «Կը գտնուի ... Օրտուզիի արուարձանին մէջ, բլուրի մը վրայ: Ս. Փրկիչ վանքին թէ՛ տաճարը եւ թէ՛ իր շուրջը գտնուած 70ի չափ երկյարկ սենեակները եւ այլ շէնքերը 1895ին հիմնայատակ կործանեցան եւ վերջերս միայն 5 հատ ներքնայարկ սենեակներ շինուեցան եւ տաճարը կը մընայ տակաւին աւեր վիճակի մէջ: Սոյն վանքին հիմնարկութեան մասին աւանդաբար կ'ըսուի թէ Քրիստոսէ բաւական տարիներ առաջ, իբրեւ կռատուն շինուած եւ Թադէոս Բարթուղիմէոս առաքելոց ձեռքով օծուելով եկեղեցիի վերածուած է: Սոյն շէնքը ի նախնումն յոյժ հոյակապ ըլլալով, աշխարհաւեր Լէնկթիմուրի միջոցաւ քանդուած եւ քարերն ալ յիշեալի զօրաց ձեռօք երեք ժամ հեռի Եփրատ գետը թափուած են: Սոյն վանքը հրովարտակ մը ունի եղեր, բայց կորսուած է»:

*Այս տեղեկագիրէն զատ 11 Մայիս 1911 թուականով եւ Թ. 35 համարով Մալաթիոյ Առաջնորդական Փոխանորդ Եղիա քհնյ. ունի վանքերու մասին նոր տեղեկագիր մը, Պատրիարքարան ուղղուած, ուրկէ կը հասկցուի թէ Մալաթիոյ երկու կանգուն վանքերը չունէին միաբանութիւն եւ Առաջնորդարանի վարչական ժողովներու կողմէ կը կառավարուէին:*

*Ս. Փրկիչ վանքը միջին հաշուով 20 ոսկի եկամուտ մը ունէր, գոյացած ուխտաւորութենէ եւ կալուածական վարձքերէ:*

*Այս վանքը ունէր 3 կտոր արտ 8 արտավար* (տէօնիւմ) *տարածութեամբ:*

*Այս վանքն ալ թալանուած է ամբողջովին 1895ին, ինչպէս նաեւ բռնագրաւուած, բայց ետքը դարձուած: Սակայն վանքին սեփականութեան վաւերագիրները կորսուած էին:*

1914—1918 *աշխարհաւեր պատերազմի միջոցին Մալաթիոյ մէջ պատահած թրքական հայաջինջ խժդժութեանց եւ վայրագութեանց ականատես եւ ենթակայ Գէորգ Մելիտինեցի իր* ՆԱԽՃԻՐՆԵՐ (1915—1918) *գիրքին մէջ (էջ* 32) *այս վանքին մասին խօսած է, ինքն հաստատելով թէ «շինութեան մասին ստոյգ տեղեկութիւններ կը պակսին, բայց ըստ ժողովրդական աւանդութեան քիչ տարբերութեամբ ժամանակակից կը թուի ԱՆԱՐԾԱԹ ԲԺԻՇԿԻՆ*[1]*, որուն քանդումէն վերջ ստացած է աւելի կարեւորութիւն, իբրեւ ուխտատեղի. Թրքական տիրապետութեան շրջանին յաճախ կողոպտուած ու որոշ մասերը քանդուած են, բայց հաւանաբար ժողովուրդը ծով քրտինքով ու յաճախ իր գոյութեան գնով դարձեալ նորոգած է զայն*[2]*: Օրտուզիի եկեղեցին ունի պատմական չինարի ծառ մը, որուն անուան հետ ժողովուրդը կապած է*

---

(1) Հետեւաբար 1250—1350 թուականներուն կ'ենթադրէ Գ. Մելիտինեցի, վասնզի Անարծաթին նոյն թուականը նշանակած է:

(2) Շարունակական նորոգութեանց ընթացքին, աստիճանաբար նուազած է անոր շքեղութիւնը (ծանօթ. Մելիտինեցիի):

*չափ մը առասպելական բժշկութիւններ: Օրինակ, ջերմ ունեցողներ մատաղ զոհաբերելով ու իրենց վրայէն կտոր մը զգեստ կտրելով, անոր ճիւղին կը կապեն ջերմերնին»: (Գէորգ Մելիտինեցի ՆԱԽՃԻՐՆԵՐ*, 1915—1918, *էջ* 32):

*Իբրեւ վերջին վկայութիւն կը փափաքէի իբր գրական վայելք մը ընթերցողներուն ներկայացնել նաեւ Ա. Ք. ստորագրուած յօդուածը՝* «Սրբ. Փրկիչ վանքին մէջ» *խորագիրով՝ հրատարակուած ՊԱՊ ՈՒԽՏԻ մէջ (Գ. տարի Թ. 4 1937 Սեպտ.): Բայց որովհետեւ անոր մէկ մասը Թէեւ գեղեցիկ, սակայն սոսկ անձնական տպաւորութիւններ է, քաղուածօրէն պիտի ներկայացնեմ զայն, օգտուելով անոր տեղեկատուական մասերէն:*

*Ըստ Ա. Ք.ի այս վանքը* «հաստատուած Սբ. Արփէնայ (Ահարոն) լեռնաբլուրներու վերջնոյն լայնատարած, բարձրադիր կատարին, ան տիրականօրէն կ'իշխէր Մալաթիոյ՝ Մելիտինէի եւ իր շրջակայքի վրայ, շրջապատուած բնական սքանչելի տեսարաններով, որոնք հիացում ու պատկառանք կ'ազդէին դիտողին վրայ:

Աջ կողմը Օրտուզին՝ իր կանաչազարդ պարտէզներով ու այգիներով հարուստ, ձախը՝ Անարծաթ Բժիշկը (վանք՝ ութնեակ եկեղեցիներով եւ քառասուն խորաններով), եւ մի քիչ հեռուն Սբ. Գրիգոր Լուսաւորիչ վանքը. դիմացը վանքապատկան ընդարձակ պարտէզը իր պատմական ՉԻՆԱՐ ծառով, իսկ իր թիկունքը տուած էր Ասլան Թէփէի հեռակայ սարերուն, որոնք զմայլելի տեսքով դիտողին ուշը կը գրաւէին:

Սբ. Փրկիչը հրաշագործի համբաւն ալ կը վայելէր հինուց ի վեր, եւ զուր չէր որ ուխտաւորներ միշտ բազմութեամբ կը լեցուէին հոն՝ վշտի, տառապանքի ծանրութեանց տակ կքած, ու կը վերադառնային իրենց տեղերը, թեթեւցած զիրենք ճնշող նեղութիւններէն...:

Տեղւոյն վրայ կատարուած հրաշագործութիւններուն եւ վանքի անցեալ գործունէութեանց մասին կան բազմաթիւ աւանդութիւններ...: Յիշենք մէկ հատ միայն... Սբ. Փրկչի հիմնարկութեան մասին է այդ, որ ըստ աւանդութեան՝ Հայաստան այցելող Առաքեալներու ժամանակներուն կը հասցուի: Որպէս թէ Առաքեալներէն մէկը եկած, քարոզած է վանքի հիմնական բլուրի վրայ, հրաշագործութիւններ կատարած եւ ատոնց ի յիշատակ ան ի յաւերժացումն շինած վանքը՝ որպէս վկայ կատարուած գործերու եւ դարձած՝ ուխտավայր: Կ'ըսուի նոյնպէս թէ Ս. Գրիգոր Լուսաւորիչ ալ այս վանքն է այցելած եւ մեկնելու ատեն հալածանքի ենթարկուած ու ժայռի մը մէջ պահուըտելով ազատած է: Այդ ժայռը կը գտնուէր ԻՆՏԱՐԱՅԻ «Մազէ կամուրջ»ին հանդիպակաց կողմի թթաստանի մուտքին կից եւ անոր մէջ մարդու լման հասակով որոշ քանդակ մը կար, որ Լուսաւորչին է եղած կ'ըսուէր, եւ հրաշքով քանդակուած:

Այդ ժայռը ծանօթ էր Լուսաւորչաց քալըփած (պահուըտած) Քարը անունով:

Սբ. Փրկչի հիմնարկութեան թուականը ճշդել անկարելի է, քանի որ այդ մասին տուեալներ կը պակսին: Ճիշդ է, որ բազմաթիւ յիշատակարան–

ներ եւ տուեալներ կան անոր հնութիւնը հաստատող, բայց բոլորն ալ անմատչելի են: ... Թէ հողին մէջ գտնուող եւ թէ դուրսը եղող հնութիւնները կարելի չէր իրենց տեղէն շարժել՝ առանց արտօնութեան:

1880ական եւ 1900ական թուականներուն վանքի պատերուն վրայ գտնուած են յունարէն արձանագրութիւններով երկու քարեր, որոնք շատ հին թուականներ են կրած իրենց վրայ:

Այս քարերու մասին կարգադրութիւններ ընելու համար, Կ. Պոլսէն արտօնութիւն է (Պատրիարքարանէն) խնդրուած եւ հոնկէ հրահանգուած՝ որ քարերու յունարէն արձանագրութիւնները սրբուին ու անոնց տեղ հայերէն արձանագրութիւններ դրուին:

Այս պարագաները օրինակ բերելով, ոմանք կ'ըսեն թէ Ս. Փրկիչը նախապէս յունական վանք է եղած ու ապա Հայերու ձեռքն անցած: Իսկ ուրիշներ կը պնդեն թէ՝ վանքը հայ տառերու գիւտէն առաջ հիմնուած ըլլալուն՝ այդ արձանագրութիւնները յունարէնով կատարուած են. ինքնին փաստ մը Սբ. Փրկչի հնագոյն գոյութեան:

Այս մասին եզրակացութիւնը ընթերցողին թողելով, կը փափաքինք յիշել Սբ. Փրկչայ վանքի բլուրի կողքին գտնուող ամենահին գերեզմանոցը, որու խոշոր տապանաքարերը մամռացած եւ կիսով չափ հողին մէջ խրուած էին: Այդ տապանաքարերու վրայէն գրութիւններ եւ թուականներ գտնելու համար՝ այլ պատանի ընկերներու հետ այս տողերը գրողն ալ փորձած է զմելիի ծայրերով կամ սուր քարի ու երկաթի միջոցով, եւ յաջողած ալ է, թէեւ այն ատենները տառերով գրուած թուականներէ եւ պատուով (սղագիր) գրութիւններէ բան հասկնալ ալ շատ դժուար էր մեզ համար: Մեծերը կը յայտնէին թէ՝ հազար տարուան գերեզմանոց է եղած վանքինը:

Լէնկթիմուրեան արշաւանքի ժամանակ Սբ. Փրկչի կողմէ ցոյց տըրուած դիմադրութեան (ինքնապաշտպանողական) հետեւանքով վանքի պարըսպանման արտաքին պատերու քարերը Եփրատ գետը թափուելու (հորդաներէն) պարագան անժխտելի է, որովհետեւ այդ մասին արդէն պահուած արձանագրութիւններ կային:

Իդէպ է յիշել նաեւ Ս. Փրկչի իրաւունքներու եւ հնութեանց պաշտպանման համար զոհուած զոյգ մը գերյարգելի հայրերու պարագան, որոնք ժողովրդական մեծագոյն պատիւներով թաղուած են վանքին մատրան կից փլատակ եկեղեցիին մէջ, որ յետոյ գաւիթի վերածուած էր, եւ անոնց տապանաքարերը իրենց վրայի գրութիւններով կը մնային մինչեւ մեր օրերը...:

Հին ատենները վանքը ունեցած է լայնածաւալ գործունէութիւն, շնորհիւ իր ընդարձակ կալուածներուն եւ մանաւանդ իր նուիրուած վանականներուն, եւ անոնց առաջնորդներուն... որոնք ծառայած են ժողովուրդին՝ վանքին մէջ ուսումնարան հիմնելով, թանկագին հնութիւններ պահպանելով եւ վանքին իրաւունքներուն պաշտպան կանգնելով: Մեր օրերուն ո՛չ կալուած մնացած էր, ո՛չ ալ վանական: Եկամուտի մնայուն աղբիւր ալ չկար, բացի այն՝ որ կու գար ուխտաւորներու առատաձեռն ու սրտաբուխ նուէր-

ները, որոնք կը յատկացուէին վանքի անհրաժեշտ պէտքերուն, եւ անոր պահապան ընտանիքի անդամներու ծախքերուն:

Մարդկայինէն զատ՝ Սբ. Փրկիչը ենթարկուած է բնական աղէտներու, բազմաթիւ անգամներ: Շարունակական երկրաշարժեր քանիցս կիսակործանած եւ փլուցած են իր եկեղեցիները, ուխտաւորներու սենեակները եւ բոլորովին աւերած իր զանազան մասերը: Սակայն... միշտ ինինն վրայ նորն է բարձրացած, փլածը վերանորոգուած ու վերահաստատուած է»:

*Այս զանազան անձերու եւ պրպտողներու տեղեկութիւններուն ծանօթանալէ ետք հետաքրքրական էր գիտնալ, թէ այս վանքը մեր տարեգրութիւններու մէջ ե՞րբ յիշուած է եւ ի՞նչ առիթներով: Դժբախտաբար շատ քիչ բան կայ ուշադրութեան արժանի: Առաջին մատենագրական յիշատակութեան կը հանդիպինք 1295ին գրուած Աւետարանի մը յիշատակարանին մէջ, ուր կ'արձանագրուի թէ 1295ի Աւետարանը կազմուած է,* «Ի յերկիրն ի Մելտինի, ի գիւղն ի Ցամոսի, ի դուռն Սուրբ Փրկչին եւ Սուրբ Աստուածածնի եւ Սուրբ Սարգսի»:

*Յիշատակարանի այս տողերէն կը հասկցուի թէ վանքը ԺԳ. դարու վերջերը արդէն Հայոց կը պատկանէր եւ եթէ ոչ երեք տաճար գոնէ երեք խորան ունէր Ս. Փրկչի, Ս. Աստուածածնի եւ Ս. Սարգիսի նուիրուած:*

*Այդ թուականէն վերջ աւելի քան երկու հարիւր տարի այս վանքին յիշատակութեան չենք հանդիպած: 1500էն 1566 Գրիգոր անուն երէց մը (կամ երկու Գրիգորներ) հոն գրած են չորս Աւետարաններ եւ Յայսմաւուրք մը, որոնք եթէ ոչ ուսումնավայրի մը, գոնէ գրչագրական դպրոցի մը հետ կապ ունենալ չեն թուիր: Արդէն բնաւ իբր ուսումնավայր յիշուած չէ: Ոչ միաբանութիւն, ոչ բաբունապետ եւ ոչ ալ դասախօսներ յիշուած են:*

*Մեր ունեցած սակաւ վաւերագիրներով գրեթէ ոչինչ կարելի է աւելցնել վանքին պատմութեան վրայ: Վանքին յունական (թէեւ ոմանք ասորական կը կարծեն) ծագումը անկասկած է, ինչ որ կը հաստատուի Խորէն Առաքելեանի տուած տեղեկութիւններով եւս:*

*Խորէն Առաքելեան 1938ին Ամերիկեան լրագիրի մը մէջ կարդալով որ Փէնսիլվանիոյ Թանգարանէն հնախոյզներ պիտի երթան Անատոլու պեղումներ կատարելու, կը փութայ տեսնուելու անոնց հետ, եւ կը գտնէ այդ խումբէն անձ մը, որ քանի մը ամիս առաջ Մալաթիայէն եկած էր, բաւական ժամանակ մնալէ ետքը հոն:*

*Անոր հետ իր տեսակցութեան միջոցին ի մէջ այլոց կը հարցնէ թէ Օրտուղի Ս. Փրկիչ վանքի շինութեան ժամանակին համար ի՞նչ կը խորհի:*

*Ամերիկացին կը յայտնէ թէ այդ վանքը շինուած է Իգնատիոս անուն յոյն վարդապետի մը կողմէ եւ ատոր համար վանքը կոչուած է Իգնատիոսի վանք:*

*Խորէն Առաքելեան կ'աւելցնէ թէ 1905ին Մերսին գտնուած ատեն յոյն վարդապետի մը հանդիպած է որ իրեն ըսած է թէ Ս. Փրկիչ վանքին եկեղեցիին դրան վրայ գրուած է շինութեան արձանագրութիւնը: Այդ քարը որ*

10 ոտք երկարութիւն եւ 4 ոտք լայնք ունէր, մինչեւ 1902 հոն կը մնար, ինչպէս կը յիշէ Խորէն Առաքելեան, որ չի գիտեր թէ ի՞նչ եղած է ետքը, միայն կը յիշէ թէ գիրերը սրբուած էին:

Այդ յոյն վարդապետը նաեւ հաւաստած է որ Ս. Փրկիչ վանքին մէջ կար ուրիշ յունարէն արձանագրութեամբ քար մը որ Յոյները թաղած էին:

Այս վերջին քարն ալ Խորէն Առաքելեան կը յիշէ տեսած ըլլալ 1900ի ատենները, վասնզի վանքին նորոգութեան եւ շրջապատին շինութեան ատեն գտնուած էր, եւ ինքն առիթ ունեցած էր զայն տեսնելու: Կիրակի օր մը ընկերակցութեամբ իր մօրեղբօրը՝ Կարապետ Դ. Կանանեանի, որ վանքին հոգաբարձուն էր, հոն գացած եւ ներկայ եղած էր Տ. Եղիշէ քհն.ի պատարագին:

Եկեղեցին աւարտելէ վերջ, յոյն Զագըր Ուստան (որ նշանաւոր Թրքական մզկիթին ճարտարապետն էր) Տ. Եղիշէ քհնյ. կ՚առաջնորդէ այն սենեակը ուր այս քարը պահուած էր եւ կը հարցնէ թէ կրնա՞յ կարդալ:

Զագըր Ուստան երկար վարանելէ ետք կը յայտարարէ թէ հին յունարէն գրուած ըլլալով ինքն անկարող է կարդալ եւ կ՚առաջարկէ յաջորդ կիրակին զայն կարդալու եւ թարգմանելու կարող մէկը բերել:

Նոյն այդ կէսօրէն ետքը, Կարապետ Դ. Կանանեան, Տ. Եղիշէ քհնյ. եւ ժամկոչը վանքին սենեակներէն մէկուն մէջ 6 ոտքէ աւելի մեծ տեղ մը կը փորեն և այդ քարը կը թաղեն, իրեն խստիւ պատուիրելով որ մէկու մը բան մը չըսէ:

Յաջորդ կիրակին, ինքն դարձեալ հոն էր:

Զագըր Ուստա, երկու Յոյներու ընկերակցութեամբ եկած էր, քարը տեսնելու համար, բայց կ՚երեւի Տ. Եղիշէ քհնյ. եւ Կարապետ Կանանեան խոհեմութիւն չեն նկատած զայն ցոյց տալ եւ ըսած են թէ կառավարութեան կողմէ քարը պահանջուած եւ առնուած էր, իբր հնութիւն:

Խորէն Առաքելեան կ՚ըսէ թէ ատկէ վերջը մոռցուած է, բայց Ամերիկացի հնախոյզին այս անցքը եւ քարին թաղուած տեղը ըսած էր: Ամերիկացին ըսած է թէ ինքն այցելած է վանքին տեղը որ հիմա Թուրքի սեփականութիւնն է եւ բանջարանոցի վերածուած է, եւ չէ տեսած այդ քարը, միայն ըսած է թէ վանքէն քիչ հեռու յունական գերեզմանի մը մօտերը Գ. դարուն շինուած մատուռի մը հիմերը գտած են յունական արձանագրութիւններով:

Խորէն Առաքելեանի այս պատմութիւնը ընդունելով թէ իրական է, եւ վերը մէջ բերուած բոլորը խտացնելով եւ ճշմարտութեան ընծայելով մեր տուրքը եւ յարգանքը, կրնանք հասնիլ սա որոշ եզրակացութեան թէ աբգարաչէն հիմնադրութիւնը այս վանքին բացարձակ առասպել մըն է եւ վանքը ունի յունական ծագում եւ հաւլիւ ԺԳ. եւ ԺԴ. դարուն փոխանցուած է Հայերուն, թերեւս Սելջուկ կամ Թաթար վեհապետներու բարեացակամութեամբ:

Մնացեալ մանրամասնութիւնները պատշաճեցնելով պատմական ստոյգ իրողութիւններու արդէն մաքրագործուած կ՚ըլլան բոլոր աւելադրութիւննե-

*րը եւ առասպելաբանութիւնները, որոնք շինուած են երբեմն դիտումով եւ երբեմն միամտութեամբ, ժողովուրդին բարեպաշտութիւնը շահագործողներու կողմէ:*

## Բ– Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՎԱՆՔ

*Այս վանքին վրայ, որ հնագոյնը ըլլալ կը թուի Մալաթիոյ հայ վանքերուն, Պէննէեան Տ. Կարապետ քհնյ. կը գրէ.* «Այս վանքը հաստատուած է Պէկ տաղիի արեւելեան գոգը ժայռերու[1] վրայ գեղեցկադիր: Ունի 8–10 հատ ներքնայարկ քար ու կիր սենեակներ, եւ նոյն չափ ալ վերնայարկներ: Մատուռը կառուցուած է վանքի շրջապատին կեդրոնը կամարածածկ եւ անշուք: Մատրան դրան առջեւ շարուած կան քանի մը միաբաններու գերեզմաններ[2]: Վանքի օդը ամենապատուական: Զեփիւռը միշտ հոյաթեւ կը փչէ: Ջուրը ցուրտ ու վճիտ, որ ԳՕՉԼՈՒԳ բուսած վայրէն բղխելով՝ կարկաչասահ կ'իջնէ վանքին մէջ փողրակներուն միջոցով: Հոգ. Իսահակ եպս. Սահակեան՝ իր հոս առաջնորդութեան ատեն (1889–91) գեղեցիկ աղբիւր մը շինել տալով՝ ջուրը ծորակներէ վար թափեց աղտեղութիւններէ զերծ մնալու համար: Եւ երթեւեկութեան դիւրութեան համար հին ճամբան ձգելով՝ կառուղի մը շինել տուաւ, որով այսօր երիվարով թէ կառքով հանգիստ մը կ'երթեւեկեն:

Նոյնպէս, Գեր. Գէորգ վրդ. Արսլանեան, իր առաջնորդութեան օրով շինեց վերնայարկ մէկ քանի սենեակներ եւ փառաւոր առաջնորդարանը իր պատշգամովը: «Յիշատակն արդարաց օրհնութեամբ եղիցի»:

Ուխտաւորներ անպակաս են հոս: Բնիկ թէ պանդուխտ, իրենց ընտանեօք շաբաթներով կը մնան հոս: Բայց դարձեալ օդափոխութեան եւ զըւարճութեան համար քան թէ ուխտի եւ երկրպագութեան:

Այս վանքը ունի իրեն սեպհական ընդարձակ գետին մը, երկու ժամուան սահմանագիծ շրջանակի մը մէջ: Եւ որուն մէջ կայ 4–500 արտավար բերրի հող՝ եւ մնացեալ տեղերն ընդարձակ անտառ եւ հազարաւոր որթատունկեր հասցնելու:

Մալաթիացի հայը շատ անտարբեր եւ անհոգ է այս հողերէն օգտուելու[3], ապագային ժառանգաւորաց վարժարան մը կամ այլ կրթական ու բա–

---

(1) *Այս քարաժայրը, որուն վրայ շինուած էր վանքը, կը կոչուէր ԿՈՒԼՈՒՃԲԱՐ:*

(2) *Դժբախտաբար Պէննէեան քհն. իր պատմագրական խեղճուկ ըմբռնումով արհամարհանք ունի իբր անկարեւոր բաներ այդ գերեզմաններուն հանդէպ, վասնզի անոնց կարեւորութիւնը չէր կրցած ըմբռնել: Եթէ անոնց տապանաքարերը ընդօրինակելու նախատեսութիւնը ունեցած ըլլար, շատ մը պատմական լուսաբանութիւններ տուած պիտի ըլլայինք անոնցմէ, որոնք այսօր անդարձ կորսուած են* (Ծան. Ա. Ա.)

(3) *Պ. Ա.* (ՊԱՊ ՈՒԽՏԻ *թ.* 50, *էջ* 9–13) *այս վանքը կը ներկայացնէ ինքնապահ իւրապատկան անշարժ կալուածներով, մօտաւոր 400 կոտ ցանելի հողերով եւ հոն այցելող բազմահոծ հաւատացեալներու նուէրներով: Դժբախտաբար իրականութեան համապատասխան չի թուիր այս հաւաստումը, որ ուրիշ ոչ ոք հաստատած է:*

ընզործական հաստատութիւն մը ունենալու համար հոս: Պէտք է բանիրուն եկեղեցականներէ եւ աշխարհականներէ բաղկացեալ մնայուն վանական խորհրդի տրամադրութեան յանձնել ի գործադրութիւն:

Սոյն վանքին հիմնարկութեան մասին չկայ ճշգրիտ ապացոյց: Աւանդութեամբ կ'ըսուի թէ՝ Լուսաւորիչն մեր Ս. Գրիգոր՝ Հռովմէն վերադարձին (եթէ ճիշդ է թէ՝ Հռովմ գացած է նա) հոս հանդիպելով Մալաթիա՝ կ'այցելէ քաղաքի իշխանին որ իր տաղաւարը հաստատած էր ԳՕՃԼՈՒԳի վերեւ: Իշխանը իր հոգեւոր հիւրը ընդունելու ատեն, Ս. Հայրապետը (ցոյց տալով այստեղը) կ'ըսէ թէ՝ «Այս վայրը լաւ յարմարութիւն ունի եկեղեցի շինուելու»: Իշխանը իր միտքը կը պահէ այս խօսքը եւ իր հիւրին մեկնելէն յետոյ, երբ կը լսէ անոր վախճանիլը, կը կառուցանէ սոյն վանքը՝ Ս. Հայրապետին անուամբ «Լուսաւորիչ»:[1]

Բայց մատրան դրան վրայի արձանագրութենէն կ'իմանանք որ 15րդ դարուն մէջ անգամ մը նորոգուեր է քաղաքին այն ատենուան Առաջնորդ Սիմէոնվն եպսկ. ի ձեռքով: Ահա հետեւեալն է այդ արձանագրութիւնը:

«ՇԻՆՈՒԵՑԱՒ ԴՈՒՌՍ ՍԲ. ԳՐԻԳՈՐԻ.
«ՁԵՌԱՄԲ ՍԻՄԷՈՎՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ:
«Ի ԹՎԻՆ Հ8: ՊՁԸ (=1439) ՄԱՐՏԻ[2]
«ՅԻՇԱՏԱԿԻՆ ՁԵԻ[3] ԾՆՈՂԻ:»

---

խաչքարի մը (հիմա վէմքար) վրան գրուած է.

«ԹՎԻՍ ՉԹ. (1260) ԿԱՆԳՆԵՑԱՒ ՍԲ. ՆՇԱՆՍ Ի ԲԱՐԵԽԱՒՍԹԻՒՆ ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ԱՅԼՈՑՆ ԱՄԵՆ»:

(Պէննէեանի ձեռագիր էջ 59–61):

*Տրդատ եպիսկոպոս Պալեան* (Բիւզանդիոն *Թ.* 2975) *այս վանքին համար կը գրէ.* «Մալաթիայէն երկու եւ Ս. Փրկիչ վանքէն կէս ժամու չափ հեռու, Պէյտաղի ըսուած ապառաժուտ բլուրի մը վրայ կառուցուած է այս վանքը, որուն հիմնարկութեան թուականը յայտնի չէ, բայց տեղացիք, ա–

---

*(1) Կ. Գ. Նաճարեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Ա. տարի, Թ. 3, էջ 10) տարբեր հին աւանդել մը կը յիշէ վանքին հիմնադրութեան համար: Իբր թէ Ս. Գ. Լուսաւորիչ ուղղակի ինքը եղած է հիմնադիրը այս վանքին եւ կը յարէ թէ ոմանք այնչափ առաջ կ'երթան իրենց յայտարարութեանց մէջ, որ ականատեսի յաւակնութեամբ՝ ցոյց կու տան հսկայ ոտքերու հետքերը ապառաժներու վրայ դրոշմուած, որպէս թէ, Ս. Գ. Լուսաւորիչ վանքի հիմնաքարերը իր ուսերուն վրայ փոխադրած պահուն, ահագին ծանրութեան տակ ճնշուած՝ իր ոտքերը կ'ընկղմին եղեր ապառաժներու մէջ, ձգելով իրենց հետքը:*

*(2) Տրդատ եպիսկոպոս Պալեան «Մարտ Գ.» կը կարդայ, բայց ըստ իս աւելի հաւանական է «Մարտ Ի (=20)» ընթերցումը:*

*(3) Այս երեք գիրերուն ինչ բառ նշանակելը չհասկցանք ըսած է Պէննէեան քհն.: Գարեգին եպս. Սրուանձտեանց, որուն ընթերցումը ընդունած է նաեւ Տրդատ եպս. Պալեան, կարդացած է այդ տողը «յիշատակ ինձ եւ ծնողի», ինչ որ շատ բանաւոր է: Պէննէեան քհնյ. իր համառօտ տպուած գործին մէջ կը կարդայ «յիշատակին զեւր ծնողի»:*

ւանդաբար Դ. դար կը հանեն: Կ'ըսեն թէ ժամանակակից է Ս. Լուսաւորիչին :»

*Տրդատ եպիսկոպոս Պալեան դիտել կու տայ թէ միակ յիշատակարանը դրան շինութեան մասին Պէննէեան Կարապետ քահանայի գիրն առած արձանագրութիւնն է:*

*Տրդատ եպիսկոպոս Պալեան շարունակելով իր գրութիւնը կ'ըսէ.* «Վանքին անունն հռչակաւոր է, դիրքը բարձրահայեաց, տեսարանը հրապուրիչ եւ ակնապարար, օդը մաքուր եւ առողջարար, աղբիւր մը ունի ներսը բակին մէջ, ականակիտ, զով եւ բարեհամ ջրով: Այս աղբիւրը շինել տուած է Ս. Երուսաղէմի նախկին միաբան եւ ապա Մալաթիոյ Առաջնորդ հոգշ. Սահակ Եպիսկ. (Մկրտիչ վրդ.) ի յիշատակ իր ընտանեաց: Վանքին տաճարը փոքր եւ անշուք է, քիչ մըն ալ նորոգութեան կարօտ: Ունի բաւականին լաւ կահաւորուած Առաջնորդարան մը, միաբանից եւ ուխտաւորաց յատուկ, պարզ շինուած 30 հատի չափ սենեակներ:

Մալաթիոյ Առաջնորդք ամռան այս վանքին մէջ կը մնան, ինչպէս նաեւ Մալաթիոյ տեղացի երեւելիք եւ ժողովուրդն ալ ստէպ հոն կ'անցընեն ամառնային երեք ամիսներն իբրեւ օդափոխութիւն: Վանքն ունի իրեն սեփականութիւն շատ մը արօտատեղիներ եւ բաւական մշակելի հողեր եւ արտորայք, որոնք մասնաւոր անձերու վարձու կը տրուին եւ կը մշակուին: Վանքէն դուրս Գուզլուգ բուսած ջրի առուակին վայրը շատ գեղեցիկ է եւ զբօսատեղի, ուռենիներով պաշարուած եւ շուրջն ալ անտառակ մը՝ ընկուզենիներով լեցուն: Մալաթիայէն դէպի վանք, ճանապարհին վրայ կը գտնուի ԻՆՏԷՐԷՍԻ կոչուած ձորը, ուր այր մը կայ եւ անոր մէջ աղբիւր մը: Այրին վրայ եղած կամուրջը տեղացիք կ'անուանեն ՄԱՁԷ ԿԱՄՈՒՐՋ: Քիչ մը վարը կ'երեւի ուրիշ այր մըն ալ, որուն մէկ պատին վրայ քանդակուած է կ'ըսուի Ս. Գրիգոր Լուսաւորչի զգեստաւորեալ մէկ պատկերը: Ըստ աւանդութեան տեղացի ժողովրդեան, իբր թէ Լուսաւորիչն հոս պահուած է եղեր: Այս վանքի մասին մեր ձեռքը կը գտնուի միայն սա յիշատակարանը, ԳԱՆՁԱՐԱՆԻ մը մէջ. «*Գրեցաւ Գանձարանս ի Վանս Սուրբ Գրիգորի Մելիտինոյ... ի թուին* ՊՁԷ (=887 + 551 = 1438). *յիշեցէք զիս զԴաւիթ արեղայս եւ զհայրն իմ զԻսահակ քահանայն... եւ զԿոստանդին աւագերէցն եւ զԱստուածատուր զաւակն իւր զԹորոս քահանայն եւ զՍտեփանոս Հայրապետն, այժմ խնամատար եւ վերակացու են Սուրբ Ուխտին...*»

*Տրդատ եպիսկոպոս Պալեան որ անձամբ չէ այցելած այս վանքը իբր թէ Ս. Գրիգոր Լուսաւորիչի պատկերը նկարուած քանդակի համար «կ'ըսուի թէ» բացատրութիւնը կը գործածէ թերահաւատելով անոր գոյութեան, սակայն Բրոֆ. Մկրտիչ Որբերեան* (Բիւրակն, 1900, էջ 117) *որ Մալաթիացի է եւ հոն իբր ուսուցիչ պաշտօնավարած եւ յետոյ ալ հոն քննական այցելութեան մը գացած է, Մալաթիոյ Հայ վանքերուն նուիրուած իր տողերուն մէջ կը հաստատէ այդ պատկերին իրական գոյութիւնը առանց անշուշտ ան-*

*պատճառ զայն Լուսաւորիչին պատկերը նկատելու, քանի որ հաւաստի փաստ մը չկայ։*

*Իր այդ շատ հետաքրքրական տողերը հոս կը ներկայացնեմ նոյնութեամբ.*

«Երկու վանքերն[1] ալ ակնապիշ կը հային իրարու։

Անհետաքրքրական չէ նաեւ յիշել Լուսաւորիչի պահուած ու ծածկուած տեղը, որ քաղաքին կռնակը Պէյ-Տաղի ձորերէն ԻՆՏԱՌԱ կոչուածին մէջն է։

Երկու յիշատակելի տեղեր կան։ Երեւակայեցէք մեծ եպիսկոպոս մը իր պատարագուց բոլոր զգեստները հագած, շաքալ թագը դրած եւ ձեռները վեր բռնած, զայն երկու կանգուն թանձրութեամբ կակուղ ձեան վրայ պառկեցընէիք՝ երեսները դէպի վեր եւ յետոյ կամաց մը վերցնէիք։ Ձեան վրայ ինչ հետք որ մնացած է, այդ հետքը առանց աւելու կրնա՞ք զագաթնահայեաց կանգնիլ, ահա այն առեն պիտի ունենաք Լուսաւորչայ պահուած տեղը միայն ահագին ժայռի մը վրայ փորուած։ Ջորի յատակէն զրեթէ հաբիւր ոտք բարձրութեամբ քարայր մը կայ, ուր երթալու համար ժայռերու վրայ մագլցելէ վերջը վարը անդունդ՝ վերը սեպ ապառաժի մը կուրծքէն քսուելով անցնիլ հարկ է. այս անցքը ՄԱԶԷ ԿԱՄՈՒՐՋ կը կոչուի։

Մազէ կամուրջէն անցնելէ առաջ հարթկեկ տեղ մը կայ ուր կը ցուցընեն Լուսաւորիչի ձիուն մսուրը, պայտերուն տեղերը եւայլն։ Ձին հոս քալած ըլլալու համար թռչունի թեւեր ունեցած ըլլալու է, ինչպէս ժողովուրդը կը հաւատայ»։ (*Բիւրակն* 1900 *էջ* 118)։

*Գարեգին Եպիսկոպոս Սրուանձտեանց իր այցելութեան առթիւ ինքն ալ խօսած է այս վանքին վրայ, շատ իրապաշտ ոճով մը, որ կ'արժէ ներկայացնել։*

*Անիկա կ'ըսէ թէ* «Լուսաւորչի վանքը՝ բարձր եւ հովասուն դիրք մը ունի, փոքրիկ տաճարով մը եւ քանի մը քարուկիր սենեակներով, բոլոր դռները բաց, ամայի, ապականութեանց մէջ, մարդու նշան չտեսանք, այլ իբրեւ արջ կը բնակին եղեր հոն գիշերները աւազակները եւ սրիկաներ... օդն ու ջուրը սքանչելի, ընտիր արտեր ունի։ Այս է այն վանքը որոյ կրօնաւորները շատ ձեռագիր եկեղեցական մատեաններ գրած են, ինչպէս տեղ տեղ յիշատակարանաց մէջ ընթերցայ։ Բայց այսօր այս աւաղելի վիճակին իյնալուն պատմութիւնը լսելու արժանի է։

Այս վանքին մէջ Տէր Սահակ անուն քահանայ մը իր ընտանեօք կը բնակի եղեր, ինչպէս որ իւր հայրն ալ բնակեր է, ազգին հանութեամբ իբրեւ վանահայր եւ իբրեւ մշակ. այս տարի խնդիր ծագելով՝ Տէր Սահակն ելեր է սեպհականելու վանքի բոլոր արտերն իւր անձին, բարեբախտաբար ԹԱՓՈՒՆ անոր անուան վրայ չեն ըրած։ Ազգային Քաղաքական Ժողովով կը բռնեն զինքն եւ իւր տունը վանքէն կը հանեն։ Նա կը դիմէ կառավարու-

---

(1) *Այսինքն Ս. Փրկիչ եւ Ս. Լուսաւորիչ։*




**Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքը**

թեան ատեանները, կը դիմեն մինչեւ Տիգրանակերտի վիլայէթ, երկուստէք ծախքեր տեղի կ'ունենան, մինչեւ կը հեռագրուի Ս. Պատրիարքին, եւ Ս. Պատրիարք կը կանչէ Տէր Սահակը Կ. Պոլիս: Նա կարճ ճանապարհը կ'ընտրէ, կը դիմէ Մալաթիոյ կաթոլիկաց Ղեւոնդ Գերապայծառին, անոր հաւատքն ու խնամքը կ'ընդունի, յուսալով թէ այնու պիտի կարող լինէր տիրելու վանքին հողերուն կամ վանքն կաթոլիկաց ձեռք անցունել, Լուսաւո-



**Տեսարան մը Մալաթիայէն**

 բիչն՝ պապական դարձնել: Մի՛ զարմանար ասոնց խելքին: Գերապայծառն, որոյ միայն արտաքինն է պայծառ, ինքնին պատմեց ինձ թէ՝ ինչպէ՞ս կանխապէս մարդ մը եւ մատ մը տեղ չեն ունեցած հոս»: (*տես* ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ Ա. հտ. 331—2):

*Սրուանձտեանց իր այցելութեան ատեն շրջած է վանքին արտերը, զորս հնձել կու տային Քուրդերու (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ Ա. էջ 313):*

*Սրուանձտեանց նաեւ կը հաւաստէ թէ հոն տեսած է տաճարին դուռնէն դուրս գերեզմանի մը հետեւեալ արձանագրութիւնը.*

«Կանգնեցաւ շիրիմս Փրկչի... Նահատակ Ստեփան վարդապետին թվին ՌՄԻԶին (=1777)» (*տես ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա., էջ* 313): *Ինչ որ ցոյց կու տայ թէ այս վանքը որքան փորձանաւոր կեանք մը ունեցած է Թրքական դժխեմ տիրապետութեան տակ:*

*Բրօֆ. Մկրտիչ Որբերեան, Թրքական խիստ գրաքննութեան տակ, ինք ալ արտայայտուած այս վանքին մասին կարճ տողերով գրելով որ* «Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ վանքը կառուցուած է քաղաքէն երեք մղոն դէպի արեւելահարաւ Պէյ-Տաղի կուրծքին վրայ: Մատուռին դրանը վրայ գրուած է թէ «888ին + 551 = 1439) նորոգեցաւ»:

Հիմնադրութեանը նկատմամբ որեւէ որոշ աւանդութիւն մը չկայ: 20էն աւելի սենեակներ, բաւական մշակելի հողեր եւ խաղողի այգիներ ունի:

Պատրիարքարանը հոս բացած է Օրմանեանի ատեն որբանոց մը:

Ջուրը՝ մաքուր, օդը՝ սքանչելի, տեսարանը՝ թիւդիչ: Այս վանքին գործերը Առաջնորդարանի հսկողութեան տակ մասնաւոր վանապահ մը կը վարէ» (*ԲԻՒՐԱԿՆ* 1900 *էջ* 117):

*Նոյնպէս ամփոփ տեսութիւն մըն ալ ունի Գերպ. Անդրէաս վրդ. Ա–լեքսանդրեան* (Պատմութիւն Սեբաստիոյ *էջ* 400–1), *որ վանքին դիրքը ներ–կայացնելէ եւ օդն եւ ջուրը գովելէ ետք կ'ըսէ թէ.*

«Վանքին ճիշդ կեդրոնը շինուած է տաճարը ԺԳ. դարուն՝ Սիմոն եպիսկոպոսի օրով, որ քաղաքին առաջնորդն էր:

«Կան նորոգութիւններու արձանագրութիւններ. տաճարին հիւսիսային արեւելեան կողմը շինուած է 10–12 սենեակ եւ վրան նոյնչափ փայտաշէն, հարաւային կողմը կը գտնուին բնակարաններ երկրագործներու համար, ա–խոռներ եւ խաղախորդարանը:

Արեւմտեան կողմը հաստատուած է որբանոցը 10–12 ծածքէ բաղ–կացեալ, 50 որբ կը բնակին, որոնք ուսման հետ կը սորվին կօշկակարու–թիւն և խաղախորդութիւն, ծախքերնին կը հոգացուի պատրիարքարանէն ե–կած տարեկան նպաստով (15 ոսկի) եւ վանքին եկամուտովը»:

*Իսկ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեան վերոյիշեալ* 21 *Մարտ* 1902 *Թուականով խնամեալ տեղակագրին մէջ ունի սա տողերը.*

«Ս. Լուսաւորչայ վանքը որ կը գտնուի Մալաթիայէն մէկ ու կէս ժամ հեռի դէպի հարաւ–արեւելք, Պէկ–Տաղիի ստորոտը, բարձր բլուրի մը վրայ, որուն հիմնարկութեան մասին աւանդաբար կը պատմուի թէ Քրիս–տոսի 1205 թուին կառուցուած է: Ունի փոքրածաւալ տաճար մը եւ իր շուր–ջը 30ի չափ երկյարկ սենեակներ եւ անոնց յարակից Ազգ. Որբանոցի շէնքը եւ շրջակայքը 2–3 հազար կրաթ ցորեն ցանուելու չափ արտեր որոնց մէկ մասը անմշակ կը մնայ»:

*Իսկ* 1911 *Մայիս* 11 *Թուականով ուրիշ տեղեկագրէ մը որ Առաջնոր–դական փոխանորդ Տ. Եղիա քհնյ. ուղղած է Պոլսոյ պատրիարքարանին, կ'իմանանք որ Մալաթիոյ երկու վանքերէն այս վանքը եւս չունէր միաբա–նութիւն եւ վարչական ժողովները կը կառավարէին զայն:*

*Վանքին եկամուտն էր* 60 *ոսկի, որ կը ծախսուի իր վրայ. վանքի վանքը Թալանուած է հայկական* 1895*ի ջարդին:*

*Այս համայնքը կը գոյանար ուխտաւորութենէ եւ կալուածական հա–սոյթներէ:*

*Ս. Լուսաւորիչ վանքը ունէր* 350 *արտավար հող, անտառակ մը եւ* 3 *ժամ շրջապատով անմշակ, անջրդի արտեր եւ լեռներ:*

*Վանքին սեփականութիւններու վաւերագիրները* 1895*ին Թալանուած են, ամբողջ վանքին գոյքերուն հետ:*

*Նոյնիսկ վանքը գրաւուած բայց ետքը դարձուած է, միայն այս վան–քին ջուրը յափշտակուած է Հաճի Ապտալլահ անուն Թուրք էշրաֆի մը կողմէ:*

*Իսկ Գէորգ Արքեպիսկոպոս Ասլանեան, գրեթէ երեք տասնեակ տա–*

*ընէր յետոյ իր Մալաթիայէն հեռանալէն, ինչպէս Ս. Փրկիչ նոյնպէս Ս. Լուսաւորիչ վանքին մասին իբր անցեալի յիշատակ, ունի նկարագրական տողեր, որ կը ներկայացնեմ որքան կարելի է կրկնութիւնները յապաւելով։*

*Ահա այդ տողերը.*

«Նոր Մելիտինէէն մէկ ժամու հեռաւորութեամբ Պէկ-Տաղիի եւ Բեյլի շղթայակուռ կորիւններուն մէկին քամակ տուած, բարձր եւ հոյատեսիլ դիրքի մը վրայ արծուիբունած է։ Ձախէն բազուկ է երկարած Կարմիր վանքին, եւ ձեռք տուած ու սեղմած, աջէն դաստակը կորացուցած Անարծաթ վանքին քամակին եւ սլացած, իսկ ոտքերը խրած է Գառնակերի չոր ու ջրոտ մեծ աւազանին։ Աչքերն ու հովանին Ս. Օհանի վանքին հասցնելու մեծ ճիգով. իսկ սրունքները ի գուն եւ ի խոնարհ Ս. Փրկիչ վանքին՝ Օրտուզի։

Լուսաւորչի լոյս եւ յոյս կեցուածքը իբրեւ դէպի արեւելք աջովը բաւական հեռուներովը Տուժիկի ահեղաբերձ ու առիւծաբաշ ձիւնազարդ գագաթները ու սառնարանները, մռնչող կորիւններովը ալեփառ ու արեւափառ ու մշտնջենական վեհափառին, եւ ձախովը Աղնա տաղի անհատնում փառազարդ, ձիւնազարդ գագաթներուն, իրենց քովի պահնորդներովը Գուրուշունլուն եւ Մաշարան, որոնց համայնապատկերը իրենց ազդած նիւթեղէն ազդեցութենէն եւ զգայութենէն աւելի բաներ մը կը բերեն եւ կը ծրարեն սրտի եւ հոգիի խոր աչքերուն մէջ, ինչպէս աչքերու մէջ փառքերու տեսութիւններու յագուրդը։

Ս. Լուսաւորիչը շրջբոլորած լեռներն ու որդիք եւ թոռունք ամէն եղանակի համար մասնաւոր գեղ ու սքանչացում կը հագնին բնագեղ ու երկնագեղ անկարանի շուշանազգեստ հանդերձանքներով։ Երբ մանաւանդ գարնան բիւրաւոր ծիծեռնակներու եւ հազար թռչնիկներու գարնանուազ դայլայլին եւ զմրուխտ կանաչի հարուստ շերտեր ու շարոցներ սփռուածքներով կու գան կը պագտուին ու կը թրթռան եւ կը թրվռան արեւաշողին լուսընկայ շաղին տակ հիւրընկալ այս հոյաշէն, երկնաշէն լեռնազոգերուն, հողածոցերուն ու սրբացեալ այս շաբաթացեալներու ջերմին ու սրբաշունչ գրկին մէջ։

Շաբաթացեալը քանի մը դարերու հնութեամբ՝ Մաթուսաղայի քովիկը կենալու իրաւունքը շահելու վրայ է։ Տաճարին շէնքը այնչափ հնաբոյր, մթնոլորտովը խնկաբոյր, ցեղին ճարտարագործ շինուածքովն ու գրծուածքովը կը բուրէ նախնիքներու հաւատքովն անմեռ եւ անմար Լուսաւորչի կանթեղովն ու օծումովը պլպլուն։

Տաճարի հաստ կողերը բերդի հանգոյն, դռնակն ամրափակ ու անփուտ հայեցի ու հացի փայտովը խոշորակ սեպերովը պողպատած, պատուհանները նեղկուլիկ շերտերով լուսատու։ Փոքր խաչկալ մը հնաբոյր եւ սեւաբոյր օծուած մոմիկներու ու կանթեղներու մուր ծուխերովը, պատկերը Տիրամօր որքան համեստունակ ու սրբունակ, իսկ Մանուկը նոյն Յաւիտենականը՝ աչուկներէն Արեւ ու Լուսին փայլելով ու օծելով ամէնը, որ իր փափուկ, կենսունակ ոտքերուն ի գուն եւ ի խոնարհ են։ Դարերը ներքին

չքեղանք ու զարդարանքէ մերկացուցեր են տաճարը: Տաճարի շուրջը սպառըսպած են միայարկ խաստակող ու կամարակապ շէնքեր, միաբանից եւ ուխտաւորաց, շատ վերջերը նմանապէս անշուք յարկ ու շէնքեր սոնից մէկ մասին վրայ: Գաւթին մէջ կը շաչէ զուլալ անապակ, սառնորակ լոյս աղբիւրի ջուրն մեղրունակ ու անմահունակ Մելիտինէի եզական հարստութենէն: Տէր Մեսիհեան տէզովն յորդուն ու միշտ հոսուն:

Այս վանքը ուրիշ վանքերու պէս շքեղութիւն չունէր եւ արտաքին ու ներքին փայլուն փառաւորութիւնը նմանապէս, բայց տաճարի սրբարոյր բուրքը ամէն հաւատացեալի սրտին էր վառած ու սատղազարդած, եւ բոլորն զգլխած, երբ արան շարան ամէն շաբաթ, ամիս ու տարիներ, հապա տօներու որչափ ուխտաւորներու մոմն ու խունկը եւ սրտի վառքն ու վազքը կ'ընդունէր: Ս· Լուսաւորիչը 1906—7ին իր անշուք յարկերուն վրայ ունեցաւ երկյարկանի շէնք մը մէկ քառակուսիին վրայ, այնչափ շքեղ ու փառահեղ, ճոխ ու հարուստ, ուր ուխտաւորաց հետ քաղքին աւագանին ու կառավարական մեծ պաշտօնեաներ կու գային զայնս վայելելու: Վանքին բոլոր շուրջը բերրի հողեր ու անդեր, ծառ ու ծառաստաններ բայց գրեթէ անմշակ, անխնամ թողուելու հետեւանքով ծերացած ու զօսացած: Կրկին 1906—7 թուականներուն նոր պարտէզներ ու այգիներ հասցուեցան ու նոխացան շուրջիններ ամէն: Վանքը էր նաեւ ամարանոց իր ընտիր օդին եւ գերընտիր դիրքին պատճառաւ: Ամէն շաբթու Ս· Պատարագ պիտի մատուցուէր եւ միշտ ալ մատաղօրհնութիւններ կը կատարուէին: Վանքին վանահայրն էր թեմակալուն՝ Մելիտինէի առաջնորդը, երբ վանքը այլեւս միաբանութենէ զրկուած էր:

Վանքին հնութիւններէն բան չէր մնացած քանի մը ձեռագիրներէն զատ, միայն մագաղաթեայ Ս· Աւետարան մը մեծարժէք[1]:

Այս շարաթացեալներէն որչափ արժէքաւոր ձեռագիրներ եւ այլ արժէք ներկայացնող ինչեր ու ինչեր փճացուած են որոնք զանձեր էին մեր նախնեաց մտքին, գրչին ու տքնաջան աշխատութեանց յորդումէն ու հոսումէն: Շատ ուշ էր որ անդրադարձանք այս կարգի թանկ արժէքներուն···»: (*ԲԱԶՄԱՎԷՊ* 1938 *էջ* 108—9):

*Գ· Մելիտինեցի, ՆԱԽՃԻՐՆԵՐում մէջ* (*էջ* 32—35) *ինքն ալ խօսած է այս վանքին վրայ տալով այլապէս չահեկան տեղեկութիւններ տարբեր նախընթացներէն:*

*Նախ չահեկան է արձանագրել թէ* «ժողովուրդը կարճ ձեւով ՎԱՆՔ

---

*(1) Այս թանկարժէք մագաղաթեան 1895-ի օրերուն կապուտ կողոպուտ կ'ըլլայ ու այլազգիի ձեռքով Ատանա կը տարուի. վաճառուելու ժամանակ Առաջնորդարանէն կ'առնուի: Մենք Ատանայի Առաջնորդարանէն կը վերադարձնենք եւ ահա 1915-ին կրկին կը գերուի, յետոյ կառավարութեան միջոցով կը վերադարձուի եւ կը դրուի Խարբերդու Օսմանեան դրամատունը, ուրկէց այլ թանկարժէք մագաղաթներու եւ սուրբ սպասներու հետ Պոլիս բերել կու տանք. ուր կը յանձնուի եւ կը դրուի ապահովութեան մէջ:*

կ'անուանէր այս հաստատութիւնը: Ըստ պատմական աւանդութեանց, կառուցուած է 1675էն 1700 թուականներուն[1], Ինտէրէի արեւելեան կողմը երկարող լեռնագօտիի ստորին գագաթը: Հին փառքի օրերուն իբրեւ խորհրդանիշ կանգուն մնացած է մատուռ մը, որուն յարակից՝ ժողովրդեան կողմէ շինուած երկյարկանի շէնք մը՝ ընդունելութեան համար: Հակառակ իր դիրքի բարձրութեան, վանքը ունէր սեփական ջուր եւ հարուստ էր կալուածներով: Տէր Եղիշէ քահանայ խաչատուրեանի անխոնջ ջանքերով յարդարուած էր լեռնային ճամբան, եւ օժտուած այգիներով, որթատունկի, թթենիի, ծիրանի եւ նուշի ծառերով:

Երբ ձմեռուան ձիւները հալէին եւ կանաչի սաւանը ծածկէր սար ու ձոր, երբ հայրենի արագիլներ վերադարձի երջանիկ կղկղոցներով գարնանամուտը աւետէին, ջերմեռանդ ու հաւատաւոր ուխտաւորներու կարաւանը կ'ուղղուէր դէպի վանք, իր զոհը մատուցանելու հոն ապաստանող Ս. Գրիգոր Լուսաւորչին, եւ բժշկութիւն, իղձ եւ մուրատ հայցելու համար: Ուխտաւորներ մատաղ կը բերէին խոյեր եւ ոչխարներ, միջին դասու պատկանողներ գառնուկ եւ ուլիկներ, իսկ աղքատներ աքաղաղներ ու աղաւնիներ: Եւ վանքը կենդանութեամբ կը լեցուէր, մատուռին մէջ դարերու մեծ խորհուրդը մարմնացնող խորանին առջեւ քահանան բազմատարած պատարագ կը մատուցանէր, դուրսը բակին մէջ զոհերը կը մորթուէին, ապա կը սկսէին ուխտակատարման ուրախութիւնները:

Քաղաքի ճնշող, ստրկացնող մթնոլորտէն շղթայազերծ բազմութիւնը պահ մը ինքզինքը ազատ զգալով ոստիկանութեան մահաշունչ ներկայութենէն, հայրենի լեռներուն պէս մերկ ու տաքաստ իր սիրտը կը բանար մայր բնութեան առջեւ, եւ ցաւի ու ուրախութեան կանչերը կը լեցնէին սար ու ձոր: Հայ երիտասարդը թէկուզ կարճ ժամանակուան համար՝ զինք կաշկանդող կապանքները փշրելով, գինիէն, երգէն ու սրինգէն հարբած, կը պարէր ազատ, կը պարէր անկուշտ ու անյագ, հրաւէր կարդալով իր սիրած աղջըկան: Հայ աղջիկը հայրենի լեռներու եղնիկներուն պէս անմեղ ու ամչկոտ, տակաւ առ տակաւ մէկդի կը նետէր քաղաքի իր սեւ քողերը, խենթացնող գեղեցկութիւնը ցուցնելով իր սիրած տղային: Բայց վանքը լերան կատարը կառուցուած դարերու այդ մենաստանը իր հողով ու ջուրով, իր ծառ ու ծաղիկներով, կը դառնար կենդանի դրախտավայր մը, երբ սար ու ձոր արձագանգող մեր զոռ երգերով Սահակեան վարժարանի երեք հարիւր (300) աշակերտներ լեցուէին իր մէջ:

Երեք հարիւր չար ու խենթ տղաներ, հակառակ ուսուցիչներու խրատին, կ'ուզէին վանքի լեռն իվեր մագլցիլ հասնելու համար արծիւներու բոյները. կ'ուզէին ազատ խայտալ, ազատ բնութեան ծոցին մէջ, ինչ փոյթ, թէ բիրտ ժայռերէն կ'արիւնոտէին մեր ոտքերն ու ձեռքերը, կամ ինչ փոյթ, թէ ձիգ բարձունքէն պզտիկ սայթաքում մը համահաւասար էր անխուսափելի մահուան: Խաղի, պտոյտի ու վերելքի ընդմէջէն օրը կ'անցնէր վայրկեանի

(1) Հիմնական սխալ, ինչպէս կը տեսնուի ստորեւ:

մը պէս կարճ, ուսուցիչներ ուշը մնացած հովիւներու պէս, իզուր ետ առաջ կը վազէին կարգի բերելու հօտը, ու մենք անկուշտ, ազատ ապրումի խենթ տղաներ, բեկուած սրտով եւ արցունքոտ աչքերով կը բաժնուէինք վանքի հողէն ու ջուրէն, ծառէն ու ծաղիկէն...:

...Վանքը ժամադրավայրն էր Հ. Յ. Դաշնակցութեան երիտասարդական խումբերու, որոնք ազատ համարձակ զինավարժական փորձեր կը կատարէին»:

***

*Բոլոր այս վանքին վրայ գրողները ինչպէս տեսնուեցաւ, վանքին աշխարհագրական դիրքին, անոր շէնքերու եւ կլիմային եւ ջուրին վրայ խօսեցան, սակայն չեն խօսած, վանքին շուրջը՝ որոշ շրջանակի մը մէջ գտնուած բուժական աղբիւրներու վրայ: Այս պակասը կը լրացնէ Պ. Ա. «ՄԵՐ ՎԱՆՔԸ» խորագիրով յօդուածի մը մէջ (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 50 էջ 9–11), որ կը խօսի վանքին անմիջական շրջանակէն դուրս գտնուող լայն սաղարթներով մասամբ ծածկուած ջինջ ու պաղ ջուրի մը վրայ, որ կը բխէր խոշոր քարի մը տակէն:* «Անիկա կը կոչուէր ԼՈՒՍԱՒՈՐՉԱՅ ՋՈՒՐ, որուն մէջ կը լողացնէին դող եւ փայծաղ ունեցողները, որոնցմէ շատեր՝ յաճախ կը գտնէին բժշկութիւն եւ հանգիստ:

Անկէ քիչ մը վեր, պարտէզին աջ կողմը, վանքէն դէպի սարն իվեր կար ՎԱՐԻ ԿՕԼԸ, որ ծանի մը արտասուաթոր ուռիներու հովանու տակ կը պսպղար: Ասոր մէջ ալ կը լոգնային երիտասարդներ՝ իրենց վարտիքներով, բայց ջուրէն դուրս գալէ եւ հագուստներնին հագնելէ ետք՝ իրենց թաց վարտիքները կը փռէին սա շուրջի քարերուն վրայ՝ չորնալու համար:

ՎԱՐԻ ԿՕԼԷՆ քիչ մը վեր եւ քիչ մը քովնտի կը գտնուէր ՔԵԼԷԿ ԲՈՒՆԱՐԻՆ որ բազմած էր դալարիքներու մէջ, ուռենիներու շուքին տակ եւ մշտադալար երեւոյթ մը ունէր: Քիչ մը աւելի վեր, վանքէն դէպի հարաւ կայ ՎԵՐԻ ԿՕԼՆ: Աւազանին տակ խիճերով լեցուն ըլլալուն, շատ քիչ անգամ հոս լոգցողներ կ'ըլլային եւ շատ քիչ անգամ այցելուներ կու գային հոս:

Անկէ քիչ մը եւս վեր զառիվեր քալելով կը հասնուի ԿՕՉԼՈՒԿ որ ծանի մը ընկուզենիներ շուրջպար բռնած՝ կը սպասէին ամէն մէկ անցնող հովին՝ օրօրուելով անոր երգերով:

Անոնցմէ ծանի մը քայլ անդին վեհափառօրէն կը սնքար մի առանձին ընկուզենի եւ անոր մօտէն կը բղխէր պաղ ջուր մը:

Ահա այս ընկուզենու տակ, այս ջուրի քով կը սիրէին նստիլ մեր նահատակուած զարմիկները, զովացնել ըմպելիները այս ջուրի մէջ եւ կոնծել մեր պապերու յիշատակին, որ այսպէս գեղեցիկ վայր մը ընտրեր էին մեր վանքին համար որպէս Մալաթիոյ ժողովուրդին համար մի եզակի ուխտավայր եւ օդափոխութեան հանգստատուն: *Կօչլուգի* այս ջուրը կ'երթայ ՎԵՐԻ եւ յետոյ ՎԱՐԻ ԿՕԼԵՐԸ, անկէ ալ՝ ոռոգելու վանքին արտերը, որոնք երբ մշակուէին կրնային մեծ արդիւնք բերել»:

Այս վանքը, որ ինչպէս ըսի, ենթարկուած էր շատ փորձութիւններու Մալաթիոյ ջարդին բռնագրաւուած էր Թուրքերէն եւ թէքքէի վերածուած՝ ինն ամիս։

Անատոլուի ընդհանուր քննիչի հանգամանքով շրջող Սուլթան Համիտի ջարդարար գործակալը Շաքիր Փաշա, Խարբերդի անգլիական հիւպատոսի պահանջին առջեւ տեղի տալով վանքը կը վերադարձնէ Հայերու, կողոպտեալ եւ քայքայեալ վիճակի մէջ։ Այս ակամայ հատուցումի մէջ դեր կատարած էր նաեւ Խարբերդի ամերիկացի միսիոնար Մըսթըր Կէյթս եւ միս Փուլք եւ միջազգային Կարմիր Խաչի ներկայացուցիչները որոնք Մալաթիա կը գտնուէին այդ պահուն նպաստաբաշխութեան համար։ (ՊԱՊ ՈՒԽՏԻ)

Այս հարուստ անցեալի մը պատկառելի յիշատակարանը հանդիսացող վանքը հիմա վերջնապէս բռնագրաւուած է 1918ի զինադադարէն ետք մի քանի անգամ իր պատերուն տակ տեսնելէ ետք համախմբուիլը անապատէն դարձած Մալաթիոյ հայ բեկորներուն որոնք թերեւս դեղեցիկ երազներ ունէին զայն վերստին շէնցնելու։ Սակայն շատ կարճ տեւեցին այդ յոյսի օրերը։

Քէմալական իշխանութիւնը զանոնք բոլորովին հողմացրիւ ըրաւ, եւ որբացուց այս վանքը որ արդէն մերկացած, կողոպտուած եւ կիսաքանդ էր, անպատսպար, վանքի մերձակայ Ջամուրլիի գիւղացիք հաներ տարեր էին իր դուռները եւ պատուհանները։

Ոչ պահապան ունէր, ոչ խնամակալ, եւ կը մնար այնպէս կիսաքանդ, աւեր ու անտիրական, կարծես սեւ քօղը երեսին այրիացած հարս մը ըլլար (ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 50 էջ 9—13)։

Թուրք կառավարութիւնը անոր յիշատակն ալ ջնջելու համար, իրեն պատկանող կալուածներով միասին կը ծախէ չորս քիւրտերու, որոնք վանքը կը վերածեն գոմի, եկեղեցին ալ՝ յարդանոցի։

Բարբարոս Թուրքը իր քանդումի գործը,— ինչ որ միայն կրնար ըլլալ— լրացուցած էր։

*
**

Հարուստ աւանդութիւններով եւ յիշատակներով այս վանքը որ Մալաթիոյ հայ վանքերու ամենէն կարեւորագոյն եւ թերեւս ամենէն հնագոյնն էր, հայկական տարեգրութիւններու մէջ շատ յիշուած չէր Ս. Փրկիչ վանքին պէս, բայց կան իր մասին բաւական յիշատակութիւններ որոնք եթէ աւելի ճոխ ըլլային կարելի կրնար ըլլալ վանքին վաւերագրեալ պատմութիւնը կազմելու, բայց դժբախտաբար շատ աղքատ են, բայց բոլորովին ալ լուռ չեն։

Առձեռն վաւերագիրներէն օգտուելով կարելի է ըսել թէ ամենէն կանուխ ԺԱ. դարուն, ամենէն ուշը ԺԴ. դարուն հայկական հաստատութեան մը վերածուած կրնայ ըլլալ այս վանքը, եթէ անկէ առաջ գոյութիւն ունեցած ըլլայ իսկ։

Եթէ այս վանքին եւ ՄԱԶԷ ԿԱՄՈՒՐՋԻ վերի պատին վրայ քանդակեալ Լուսաւորչայ պատկերին միջեւ առընչութիւն մը կայ, իմ խոնարհ կարծիքովս վանքին ծագումը պէտք է ընդունիլ թէ լատինական է եւ ոչ յունական։

Ուստի կը խորհիմ թէ լատին խաչակիրները պէտք է կառուցած ըլլան ԺԱ. եւ ԺԲ. դարերուն վասնզի Բրոֆ. Մկրտիչ Որբերեանի նկարագրութենէն կ՚երեւայ թէ այս պատկերը քանդակուած էր եպիսկոպոսական տարազով եւ չաթալ-թագով (tière կամ mitre=խոյր), ինչ որ ցոյց կու տայ թէ վանքը յունական չէր, քանի որ յոյն եպիսկոպոսները ցարդ ոչ մէկ ատեն լատինական խոյր չեն գործածած, իսկ հայ եկեղեցիէն ներս անոր մուտքը ԺԲ. եւ ԺԳ. դարէն առաջ չէ եղած։

Հետեւաբար այդ պատկերը եւ նաեւ վանքին կառուցումը ուշ ժամանակներու գործ են կամ խաչակրաց շրջանին՝ լատին ծագումով։

Մալաթիոյ հայ վանքերուն հաւանօրէն այս հնագոյնը, մինչեւ ԺԴ. դարուն մատուռական օրօրան մը չէ եղած, կամ հակառակը հաստատող փաստ մը չկայ։

ԺԴ. դարուն, 1361 թուականին այս վանքին մէջ գրուած Աւետարանի մը դրիչը կը յայտնէ թէ վանքին առաջնորդն էր «անյաղթ փիլիսոփայ» Տէր Սիմէոն, եւ հոն կ՚ապրէին Տէր Մատթէոս (հաւանօրէն նոյնպէս եպիսկոպոս) եւ «զայլ միեղին եղբարքս որ աստ կան հաւաքեալ ի սէր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի...»

Այս յիշատակարանը որ «անյաղթ փիլիսոփայ» մը կը ներկայացնէ վանքին, եւ բազմանդամ միաբանութիւն մը կը մատնանշէ, ինքնին կարծես կը մղէ մեզի մակաբերելու թէ հոն դպրոցական կեանք ու ուսում կար։

Ուրիշ փաստ մը թէ հոն ուսում կը տրուէր ԺԴ. դարուն վերջերը եւ ԺԵ. դարուն սկիզբները, 1454-ին գրուած յիշատակարանի մը այն տողերն են որոնցմէ կը հասկցուի թէ Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքին վանահայր եւ Սիմէոն արքեպիսկոպոսը, Ուլու բէկին որդին, «Վարժեալ» էր «ձեռամբ վարդապետին Արիստակէս»ի որուն բարունապետ տիտղոսը մեզի կը մատնանշէ ուսուցիչ մը որ կ՚երեւի թէ նոյն վանքին մէջ գործած է։

Բոլոր ասոնք իրաւունք չեն տար մեզի հաւատալու այն առասպելին թէ 200ի չափ միաբաններ ունեցած է ան երբեմն եւ երկու տարուան յարատեւ աշխատանքով Աւետարաններ գրուած էին հոն (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ ԺԵ. տարի Թ. 3–4 էջ 11)։

Ըստ երեւոյթին եթէ հոն մատուռական-ուսումնական շրջան մըն ալ ունեցած է այս վանքը, անիկա շատ քիչ տեւած պէտք է ըլլայ, վասնզի 1590-ին, ինչպէս կը տեսնուի, դադրած է ուսումնավայր ըլլալէ, վասնզի «Անապատ Ս. Գրիգորի Լուսաւորչի» բացատրութիւնը կը գործածուի այդ թուականին գրուած ձեռագրի մը յիշատակարանին մէջ, որ ուղիղ չի համեմատիր դպրանոցի մը։

«Անապատ»ը ինչպէս յայտնի է աշխարհէ հրաժարողներու սահմանուած վայր մըն է։

*Աւելկա կը նշանակէ թէ Ս. Լուսաւորիչ անչքացած էր եւ այլեւս ուսում չէր տրուեր հոն։*

---

## գ. ԱՆԱՐԾԱԹ ԲԺԻՇԿԻ ՎԱՆՔ

*Պէննէեան Տ. Կարապետ քհնյ. այս վանքին համար կը գրէ.*

«Այս վանքը, ինչպէս վերը ըսինք, Ս. Փրկիչ եւ Լուսաւորիչ վանքերուն կեդրոնը, ԲՈՒՆԱՐՊԱՇԸ-ի գլուխը շինուած է։ Ոչ ոք չի գիտեր որ դարու մէջ հիմնարկուիլը։ Մինչեւ 1895ին ջարդը՝ կամարներն ու պատերը գոնէ կանգուն էր։ Բայց նոյն տարին զայն ալ քակելով՝ խեղճ «Անարծաթ Բըժիշկ»ը անտուն եւ անպատսպար թողուցին։ Ըստ աւանդութեան, որ փլատակաց տեղւոյն քարակոյտներն ալ կ'ապացուցանեն, ի հնումն շատ մեծ մենաստան եւ ուրիշ յարկերով փառաւոր հաստատութիւն մըն է եղեր։ Կ'երեւի թէ աս ալ Ս. Փրկչին հետ աւերիչ ժանիքներու է հանդիպած, որուն կենդանի վկայ կը հանդիսանան հետեւեալ տողերն, որ Աւագ անուն մէկը շարադրած է։

«Ամենակալն Աստուած Արգար առաքեց.
«Աստուծոյ վիճակին թագաւոր կարգեց.
«Իր ողորմութեամբը Մելտին աւազեց[1],
«Զօրեղ Լուսաւորիչ, մեծդ Սուրբ Փրկիչ,
«Հիւանդաց օգնական Անարծաթ Բժիշկ։

«Մելիտինու քաղքին ԽԱԶՆԱ փարատեց,
«Աստուածային անուան Ս. Փրկիչ շինեց.
«Քառասուն խորնի վրայ սեղան հաստատեց,
«Զօրեղ Լուսաւորիչ, մեծդ Ս. Փրկիչ,
«Հիւանդաց օգնական Անարծաթ Բժիշկ։

«Թադէոս առաքեալ հայեց[2] թէմէլէն,
«Երեք հարուր վաթսունը վեց կամարին.
«Քառասուն խորան եւ քառասուն տանարին.
«Զօրեղ Լուսաւորիչ...

«Թադէոս առաքեալ ձեռօքը օծեց,
«Հաւատացեալ ժողովուրդը մկրտեց,
«Ի սուրբ մարմին եւ արիւնէն հաղորդեց.
«Զօրեղ Լուսաւորիչ...

---

(1) *Շէնցուց, ընդարձակեց։*
(2) *Փոխանակ ըսելու Հայեցաւ։*

«Արգար թագաւորն ալ ՄՈՒՐԱՏԻՆ հասաւ,
«Աղինայ դրախտը ծաղիկ մի բուսաւ,
«Աստուածային լուսով լուսաւորեցաւ.
«Զօրեղ Լուսաւորիչ...

«Ի Մելտինու կ'ելլայ ԵԱՅԱՆ, ձիաւոր,
«Գոհանամին[1] տակէն կ'երեւայ ուխտաւոր,
«Դուն ամմենուս[2] հասնիս Փրկիչ զօրաւոր
«Զօրեղ Լուսաւորիչ...

«ԲՈՒՆԱՐ ՊԱՇՈՒ ջուրը ակէն օրհնած է.
«Անարծաթ Բժիշկն ալ վրան շինուած է.
«Մելիտնու քաղաքը ջրին էհտան է:
«Զօրեղ Լուսաւորիչ...

«Մենք զարմանք կը մնաք Զինարին ծառին,
«Երանութիւն կու տաք Արգար արքային,
«*Ճէմալ*ին կարօտիք Սուրբ Սոփիային[3]
«Զօրեղ Լուսաւորիչ...

«Զօրեղ Լուսաւորիչ, վանքերուդ հայեց,
«Փրկիչն ու Բժիշկը ԼԷՆԿԹԻՄՈՒՐ քակեց,
«Քարերը ձեռքէ ձեռք Մուրատը թափեց:
«Զօրեղ Լուսաւորիչ...

«Զօրեղ Լուսաւորչայ աղօթքը հասաւ,
«Անգութ ԼԷՆԿԹԻՄՈՒՐԸ շուտ ոչնչացաւ,
«Քրիստոնեայ ազգը շատ պայծառացաւ:
«Զօրեղ Լուսաւորիչ...

«Սուրբ Փրկիչայ դուռդան լարեցաք ՄԷՃԼԻՍ,
«Մեղաւոր, անարժան կապեցաք ԹԷՃՆԻՍ,
«Մեզ էտի ճաշակնուս ՄԱՀՐՈՒՄ չի հանես:
«Զօրեղ Լուսաւորիչ...»:

---

*Տրդատ եպիսկոպոս Պալեան, Մալաթիոյ վանքերու վրայ խօսած ա-
տեն* (Բիւզանդիոն. *Թ.* 2975) *աննշան տարբերութեամբ մը այս վանքին տե-*

---

(1) *Օրտուզլիի տակ բլրակ մը:*
(2) *Ամենուս, բոլորիս:*
(3) *Ս. Փրկիչ վանքի կանգուն երկու մատուռներէն արեւելեանին անունն է:*

*ղը կը ներկայացնէ Մալաթիայէն երկու ժամի չափ հեռու Ս. Փրկչի եւ Ս. Լուսաւորչի վանքերուն միջեւ, ԲՈՒՆԱՐ ՊԱՇԻ ըսուած տեղւոյն եղերքը[1] շինուած:*

*Իսկ իբր տեղեկութիւն միայն սա քանի մը տողերը ունի.* «Անարծաթ բժշկաց» սոյն վանքը, որուն ի հարկէ կ'ըսուէր նաեւ «Ս. Կոզմոսի եւ Դամիանոսի վանք»: Վանքս ի վաղուց անցած է ի շարս շաքաթացեալ վանօրէից, թէեւ այժմ կ'երեւին հողակոյտերը, եւ երբեմն տեղեր ալ հիմանց պատերը եւ փլփլած սենեակներ: (*Տրդատ եպիսկոպոս Պալեան* Բիւզանդիոն *Թ.* 2975):

*Իսկ Գարեգին եպիսկոպոս Սրուանձտեանց* (Թորոս Աղբար Ա. 313—4) *ունի հետեւեալ տողերը, մասամբ նոր տեղեկութիւններով որոնք չահեկան են: Անիկա ուղեգրական նկարագրութեամբ մը կ'ըսէ թէ,*

«Ս. Գրիգոր կամ Լուսաւորիչի վանքէն իջանք ԱՆԱՐԾԱԹ ԲԺԻՇԿ, որ դաշտավայրի մէջ փոքր ծառի մը տակ աւերակ մատուռ մի է, միայն երկու կամարը ողջ. իւր շուրջը աւերակաց կոյտեր ունի, չէն վանք է եղած. Մատրանս առջեւէն կը բղխի մեծ ջուր մը, որ կ'ըսուի ԲՈՒՆՂԱՐ ՊԱՇԻ, աւազան է բազում ականց, որոյ պարզ եւ պաղորակ ծոցոյն մէջ ծփծփալով կը լողային ձկունք, եւ մշտադալար սեղան իւր կանանչազեղ զորգերով կը զարդարէր աւազանին շրջանակը. տեղի խիստ զուարճալի, որոյ հողերը թըրքաց ձեռքն էին, իսկ մատուռը՝ քանի մը տարի առաջ կաթոլիկներ գաղտնի ջանացեր են կառավարութեան ձեռքով տիրել եւ վանք մը կառուցանել, հազիւ արթնցեր են Հայք, եւ թէպէտ յաջողեր են խափանել կաթոլիկաց շինելը, այլ իրենք զէթ մատուռը նորոգած չեն:»

*Իսկ Գէորգ Արքեպ. Արսլանեան այս չարաթացեալ վանքին մասին հետեւեալ հակիրճ տողերը ունի ԲԱԶՄԱՎԷՊԻ մէջ* (1938 էջ 101):

«Սա հին ու նոր քաղաքներուն, եւ Ս. Լուսաւորչի եւ Օրտուզիի Ս. Փրկչի վանուց մէջտեղը, գեղանի դաշտավայրի մը մէջ փոքր դարի մը տակ աւերակ մատուռ մըն է այժմ, ընդարձակ շէնքերու բեկորներէն միայն երկու կամար կայ կանգուն բոլորովին աւերակոյտներու մէջ, որոնք այնքան յայտնի ցոյց կու տան եւ դեռ այսօր խօսուն եւ կենդանի վկան են թէ նոյն ու շէն վանք մը եղած է: Աւերակոյտներու շուրջը ամբողջ կափ կանանչ փըռուածք մը ունի սանտրուած ու կարծես ծամ հիւս եղած ամէն բնազեղով: Մատրան առջեւէն կը բղխի մեծ ջուր մը՝ որ ԲՈՒՆԱՐ ՊԱՇԸ կը կոչուի, այս ջուրը շատ մը ձկունքներու աւազանն է, ինչ ալ աղուոր ձկներ վեր ու վար աընդհատ յուղ կու տան: Հին օրերուն ալ ուխտաւորներու շարքեր այս զուլալ ջրովը քանի անգամ լուացուած են բուժում գտնելու համար: Աւազանին շուրջը թաւշափափուկ զորգեր աննման կան մեննուած, որ անգամ մը դիտողին աչքերը կը հմայեն, սիրտը կը բաբախեցնեն, իսկ հոգեակը կը ծած-

---

(1) *Պէննէեան քհնյ. ԳԱԳԱԹԸ շինուած ցոյց կու տայ:*

կեն կոյտերու դէզերովը, երբ անցեալին հուրն ու փառքը շաքաթացեալ էին»։ (ԲԱԶՄԱՎԷՊ 1938 էջ 101)։

*Խաչատուր վրդ. Տէր Ղազարեան իր 21 Մարտ 1902 Թուականով տեղեկագրին մէջ ԱՆԱՐԾԱԹ ԲԺԻՇԿԻՆ մասին կը գրէ թէ ան ուխտատեղի մըն է* «որ կը գտնուի Մալաթիայէն մէկ ժամ հեռի դէպի Արեւելք՝ վերոյիշեալ երկու վանքերու կեդրոնատեղին: Այս ուխտատեղիին համար կը պատմուին թէ յոյժ հոյակապ վանք մը ըլլալով, իր շրջակայքը գտնուած խիստ ընդարձակածաւալ արտերն ալ իրեն կը պատկանին եղեր եւ թէ անծանօթ թուականներու մէջ վանքին շէնքերը քայքայուած եւ արտերն ալ այլոց կողմանէ յափշտակուած են: Այժմ Անարծաթ Բժիշկ անուն վանքին միայն տաճարին չորս պատերը կը մնան խարխլած»:

*Այս բոլոր իրարու նմանող տեղեկութիւններէն դուրս եւ բոլորովին տարբեր ծանօթութիւններ կու տայ ՆԱԽՃԻՐՆԵՐու հեղինակը Գէորգ Մելիտինեցի (էջ 32) որ չեմ գիտեր ինչ աղբիւրներէն քաղելով կը ներկայացնէ մտածածին պատմութիւն մը, զայն ներկայացնելով* «ծանօթ եկեղեցիներու մէջ ամենէն հինն... 1250էն 1350 թուականները եղած են իր փառքի ու հաբստութեան շրջանը. Օսմանեան ու թաթարական առաջին արշաւանքներուն կողոպտած են իր բոլոր գանձերը, ապա Թիմուրլէնկի բարբարոս եւ մահաշունչ ներկայութիւնը աւերակի վերածած է զայն, եւ այժմ հազիւ իր գոյութիւնը յիշեցնող նշաններ մնացած են»:

*Այս վանքին մասին ամենէն մանրամասն գրողը Ա. Բ. ունի* «Քառասուն խորաններ, քառասուն լուսաստղերու պէս» *խորագիրով յօդուած մը, հրատարակուած ՊԱԳ ՈՒԽՏԻ (Թիւ 28, էջ 5—7) մէջ երկու մասէն բաղկացեալ: Առաջին մասին մէջ անիկա կը խօսի վանքին անցեալին վրայ, եւ կու տայ աւելի կամ պակաս վաւերական եւ հաստատուն տեղեկութիւններ: Իսկ երկրորդ մասը որ ապագային համար տեսիլք մըն է, եւ ոչ իրողութիւններ այլ երեւակայութիւններ, մէկ կողմ կը թողում եւ կ'արտագրեմ առաջին մասը, որ իբր ամէնէն աւելի ընդարձակը* «Անարծաթ Բժիշկ» *վանքին մասին գրուածներուն:*

«Մալաթիոյ Ս. Աստուածածինն կամ Մայր Եկեղեցիէն ուղիղ գիծով դէպի արեւելք երկարաձգուող մէկուկէս ժամուայ հեռաւոր ճանապարհ մը մեզ պիտի հասցընէր մեր հայրենական խրախճանավայր-զբօսավայրերու թագուհիին՝ ԲՈՒՂԱՐ ՊԱՇՈՒ աղբիւրը, որուն ալ ետեւէն՝ դէպի վեր՝ Ս. Արփենիա բլուրները բարձրանալով՝ պիտի հանդիպէինք շարք մը անընդհատ բլրակներու, որոնք բլրաշարի խորերուն կայսած ուսերու կը նմանին, իրարմէ բոլորովին անզանազանելի, անճանաչելի դիրքի մը մէջ:

Առանձին աւերակոյտերն են Մալաթիոյ ծանօթ երբեմնի շէն ու բարգաւաճ Սբ. Անարծաթ Բժիշկ վանքին ու իր փարթամ հաստատութիւններուն:

Այս հին ու անուանի սրբավայրին տեղն ու հողակոյտերը անծանօթ պիտի մնային ու այցելուի տեսութենէն պիտի վրիպէին եթէ հոս ու կիսակործան պատ մը, քարակերտ, երկու երեք կանգուն երկարութեամբ եւ

ցոյցքան բարձր, որուն վրայ հայերէն տառեր ու փշրուած խաչքար մը իրենց տեղերը չպահէին:

Եւ մի քիչ անդին հսկայ, մեծազանգուած ժայռ մը, որուն յատակը խոռոչացած քարայրի մուտքի մը պէս խոշոր բացուածքով է, ուր մի քանի հոգի դիւրաւ կրնային մտնել, եւ ուրկէ սառ ու հողահամ ջուր կը հոսէր՝ բուժական յատկութիւններով:

Վանքը՝ իր «Անարծաթ Բժիշկ» անունը այս ժայռէն ու ջուրէն էր առած, որովհետեւ դիմողէն եւ դարմանո՛ւողէն վարձ չէր պահանջեր[1]:

Ու այս ծանօթ ժայռն ու պատը, որպէս զոյգ կոթողներ հաստատ ու կանգուն կը մնային հոն՝ ինչպէս արթուն պահակներ դիրք բռնած, ըսելու այցելուին ու անցորդին թէ՝ «Ահա, հոս է, քու պապենական փառքի մէկ նուիրական յիշատակարանը, զոր մենք կը պահենք խնամով, եւ պիտի պահենք ու անթարթ աչքերով հսկենք անոր վրայ, մինչեւ որ գաս ու վերականգնես զայն իր հին փառքին մէջ»:

Տասէն տասներկու եւ թերեւս մի քիչ աւելի դարերու հնութիւն ունի Սբ. Անարծաթը, կ'ըսուին, հիմնուած Մելիտինեցի իշխաններու կամ մեծատուններու կողմէ, առաւելապէս իր գեղեցիկ դիրքին ու ընձեռած զբօսական յատկութիւններուն համար:

ԲՈՒՂԱՐ ՊԱՇԻՆ՝ իր լողական ու ձկնորսական յարմարութիւններով, բլուրները որսորդական, եւ վանքի առջեւի ընդարձակ ձորը՝ պարտէզներու, ծառաստաններու եւ այգիներու հեռարձակ գեղեցկութիւններով անուանի են:

Հին ատենները ինչպէս նոր ժամանակներուն, այս վայրերը եղած են առաւելապէս կտրիճներու, յանդուգներու եւ արհամարհանց զբօսասէրներու ու արկածախնդիրներու յատուկ ժամադրավայրը, որոնք գիտցած էին ու գիտէին կեանքը վայելել ազատորդիներու պէս ու իրենց զէնքով ու քաջութիւնով կը պահէին այս իրաւունքը:

Անարծաթ Բժիշկի բուն հիմնադրութեան թուականի պարագան, ու դարերու ընթացքին իր կատարած դերն ու գործերը աւանդութեանց փոշիներու տակ թաղուած՝ մեզ անծանօթ կը մնան: Մեր հայրերէն ու պապերէն լսածը այնքան մըն է միայն, որ այս վանքը ունեցած է ութը կամ աւելի եկեղեցիներ, մայր տաճարով մը, քառասուն խորաններ զանազան կրօնական ու ազգային սուրբերու տօներու նուիրուած, ուր յատուկ օրեր միայն կրօնական արարողութիւն կամ սպասարկութիւններ կը կատարուէին՝ իւրաքանչիւր եկեղեցւոյ կամ մատրան մէջ: Ատենին ունեցած է նկատելի թիւով անձնուրաց վանականներ՝ իրենց «Հայր»ով, ուխտազնաց անթիւ բազմութիւններ անպակաս են եղած, բազմաթիւ անդեղ բժշկութիւններու համբաւ է ունեցած եւ վանքին նիւթական մատակարարութիւններուն մեծապէս հոգ տա—

(1) Այս կարծիքը որ Ա. Բ. կը յայտնէ, սխալ է վանքի տօնացոյցներ կը յիշատակեն ԿՈԶՄԱ եւ ԴԱՄԻԱՆՈՍ «Անարծաթ Բժիշկ» կոչումով սուրբեր, որոնց անունով կառուցուած է այս վանքը, ինչպէս կը տեսնուի: Այս անունով ուրիշ վանքեր ալ ունեցած ենք զանազան գաւառներու մէջ:

բած են Մելիտինեցի եւ ապա Մալաթիացի մեծատուններ։ Մեծապէս շքեղ իր շինութիւններով եւ հարուստ, նիւթապէս բարգաւաճ է եղած Անարծաթը իր կալուածներուն եւ ընծեռուած նուիրատուութիւններուն շնորհիւ մինչեւ Թիմուրլէնկեան պատուհասող արշաւանքը, որուն բարբարոսութեանց մեծ մասամբ զոհ գացած ու աւերակուած, ալ անկէ վերջ իր վայրէջքի շրջանն է ապրած, մինչեւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքի հիմնարկութիւնը, շուրջ 18րդ դարուն[1]։

Սբ. Անարծաթ Բժիշկի մայր տաճարը ու մի քանի խորաններ, մինչեւ 1893ի մեծ երկրաշարժը գործածելի վիճակի մէջ են եղած, շէնքերու հսկիչ ու մատակարար է ունեցած ու պարբերաբար կրօնական արարողութիւններ ալ կատարած են հոն։ Սակայն, մեծ շարժը ի սպառ վերջ տուած է անոր գոյութեան, հիմնայատակ կործանելով, եւ հող ու քարակոյտի մը վերածելով այդ դարերու գեղեցիկ ու երախտաւոր հաստատութիւնը։

Դեռ մեր օրերուն իսկ անոր աւերակներուն այցելուներ չէին պակսեր։ Անոնք կու գային առաւելապէս Անարծաթի բուժարար ջուրէն լուացուելու եւ կամ շիշերով իրենց հետ տանելու անկարողներուն, որոնք իրենց տեղերէն չէին կրնար ժայռին մօտ մագլցիլ։

Այդ ջրի հրաշագործութեան մասին չափազանցեալ պատմութիւններ շատ են լսուած՝ որպէս ամենաքոյժ դարմանը ամէն տեսակ ցաւի, բայց շատեր կը վստահեցնեն թէ առաւելապէս անվինելի դարման է եղած յօդացաւի, որ՝ մասերը լուալով եւ կամ թէ ջուրէն խմելով, ցաւը ընդ միշտ «մնաս բարով» կ'ըսէ եղեր հիւանդին։

Մեր հայրենական վանքերէն այս յիշատակելի սրբավայրի մասին տուինք մեր գիտցածն ու լսածը միայն...» (ՊԱՊ ՈՒԽՏԻ թ. 28 էջ 5—6)։

*Այս վանքը, ըստ Գէորգ Վրդ. Արսլանեանի* (Արեւելեան մամուլ. 1907 էջ 512) *մինչեւ* 1850 *տակաւին կանգուն եւ չէն էր ու պատարագ կը մատուցուէր*։

*Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան կ'ըսէ թէ* «հնութենէն Մալաթիոյ շրջանին մէջ այս անունով ՎԱՆՔԻ մը յիշատակութիւն ծանօթ չէ մեզի» (*ՊԱՊ ՈՒԽՏԻ թ.* 56 *էջ* 7) *միայն դիտել կու տայ որ* 1590*ին* «եկեղեցի կամ մատուռ մը «Անարծաթ Բժշկացն Կոզմայի եւ Դամիանոսի» *անունով կը յիշուի Ս. Լուսաւորիչ վանքին մէջ*։

*Ո՞ր աստիճանի ճշմարտութեան համապատասխան է այս հաւաստումը չեմ կրնար ո՛չ հաստատել եւ ո՛չ ալ ժխտել, գրաւոր ապացոյցով մը կամ վաւերագիրով մը, բայց անկարելի է կասկած ունենալ այս վանքին գոյութեան մասին, հետեւաբար կարելի չէ ըսել թէ Ս. Լուսաւորիչ վանքին մէջ* «եկեղեցի կամ մատուռ մըն» *էր Անարծաթ վանքը, որուն տեղը եւ շինու-*

---

*(1) Եթէ 18 տպագրական սխալ չէ եւ 13-ի տեղ 18 չէ տպուած, Ա. Բ. անհերքելի սխալ մը կը գործէ։ Ս. Լուսաւորիչը 18-րդ դարուն հաստատուած չէ, այլ հաւանօրէն ԺԱ. եւ հաստատօրէն ԺԴ. դարէն սկսեալ Մալաթիա ունէր այդ անունով վանք մը, որ 1489-ին նորոգուած է, ինչպէս վերը տեսնուեցաւ։*

Թիւններու մնացորդները կը մնային, ինչպէս նաեւ քարեր, որոնք հայերէն գիրեր ունէին իրենց վրայ:

Ճշմարիտ է որ Անարծաթ վանքին վրայ դժբախտաբար ոեւէ յիշատակարան չունինք եւ անոր անունին չենք հանդիպած բացի 1590ին գրուած ձեռագիրի մը յիշատակարանին մէջ գտնուած անունի յիշատակութենէն, որ Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեանն ալ նկատի ունեցած է եւ շփոթութեան մատնուած:

1590 թուականով այդ ձեռագիր յիշատակարանին մէջ գրիչը կ'ըսէ թէ գրած է «յանապատ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ընդ հովանեաւ սրբոյն Յովանէսի եւ ՍՐԲՈՑ ԱՆԱՐԾԱԹ ԲԺՇԿԱՑՆ ԿՈԶՄԱՅԻ ԵՒ ԴԱՄԻԱՆՈՍԻ, եւ սրբոյն Ստեփաննոսի Նախավկային եւ սրբոյն Սոփիայի...»:

Արդ Ս. Գրիգոր Լուսաւորիչի Անապատը Մալաթիոյ ծանօթ վանքն է, իսկ մնացեալ Սուրբեր որոնք կը յիշուին իբր հովանաւորներ՝ են Ս. Յովհաննէս, Ս. Անարծաթ Բժիշկներ, Կոզմա և Դամիանոս, Սուր Ստեփանոս եւ Ս. Սոփիա:

Ընկալեալ սովորութեան համաձայն ասոնք կա՛մ պէտք է եկեղեցիներ կա՛մ վանքեր ըլլային կամ սեղանները (խորան) տաճարի մը:

Արդ, նկատելով որ Ս. Ստեփանոս անուն եկեղեցի մը կար Մալաթիոյ մէջ եւ կար նաեւ Անարծաթ Բժիշկներ անունով վանք մը, ամենամեծ հաւանականութիւն կայ որ Ս. Յովհաննէսն եւ Ս. Սոփիան ալ վանքին մէջ չէին այլ անջատ եկեղեցիներ էին:

Ասոնցմէ Ս. Յովհաննէսը Օհան ձեւին տակ յիշուած է իբր վանք, ինչպէս պիտի տեսնուի, նոյնպէս Ս. Սոփիան յիշուած է: Ուստի իրաւունք ունինք ենթադրելու թէ ասոնք վանքեր եւ եկեղեցիներ էին Անարծաթ Բժիշկներու վանքին պէս, որուն տեղը ծանօթ էր:

Ուրեմն ասիկա միակ գրաւոր վաւերագիրն է որ կը հաստատէ թէ Մալաթիա 1590ին ունէր այս անունով եկեղեցի մը կամ վանք մը, որ ուրիշ ոչ մէկ տեղ յիշուած է:

Անարծաթ Բժիշկներու Կոզմա եւ Դամիանոսի անունով վանք մը կար նաեւ Թօքատի մէջ, որ Մալաթիոյ համանուն վանքին պէս ԺԶ. դարուն շէն էր: 1562ին անոր վանահայրը, որ հաւանօրէն նաեւ Եւդոկիոյ առաջնորդն էր «Քրիստափոր Արքեպիսկոպոս ի վանից Սրբոյ Աննայի[1] եւ սրբոյն Կոզմայի եւ Դամիանոսի[2]» որ Միքայէլ Սեբաստացի կաթողիկոսի նախաձեռնութեամբ Եւդոկիացի Աբգար Դպիրի արքայազուն ըլլալը հաստատող վաւերագիրը ստորագրած էր (տես Հ. Ա. 1906 էջ 323, Օրմանեան, ԱԶԳԱՊԱՏՈՒՄ 2250, Վ. Զարդարեան ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ էջ 25–6, Ա. Ալպօյաճեան ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒԴՈԿԻՈՅ էջ 638): Այս վանքը ԺԷ. դարուն սկիզբը քանդուած էր:

---

(1) Աննայի վանքը Թոքատի յայտնի Յովակիմ-Աննայի վանքն է (տես Ա. Ալպօյաճեան, ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 730-758):

(2) Անարծաթի վանք կամ Բէմէր կոչուած վանքը Թօքատի (տես Ա. Ալպօյաճեան, ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 773–774):

*Մալաթիոյ վանքը նոյնպէս կ'երեւի թէ քանդուած է Թուրքերէն, թէեւ ոչ մէկ արձանագրութիւն կայ այս մասին:*

*Հետեւաբար այս վանքին մասին գրեթէ ստոյգ բան մը չենք գիտեր դժբախտաբար:*

*
* *

*Պէննէեան Կարապետ քհնյ.ի «Հանդուն» որակած (թէեւ անոնցմէ մին Անարծաթը բնաւ կանդուն չէր կրնար նկատուիլ) երեք վանքերուն մասին վերոգրեալ տեղեկութիւնները ներկայացնելէ ետք, պէտք էր որ խօսէր նաեւ հին ժամանակներու մէջ յիշատակուած ուրիշ վանքերու վրայ եւս, ինչպէս բրած են ուրիշ բանասէրներ եւ հետաքրքիրներ, սակայն անիկա զանց առած է, հակառակ անոր որ իրմէն առաջ գրուած էր եւ կրնար օգտագործել այդ տեղեկութիւնները, որ ես կ'ուզեմ ներկայացնել ամբողջական ըլլալու համար Մալաթիոյ եւ շրջակայից վանքերուն վրայ տրուած ծանօթութիւնները:*

## Դ. ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ (Ս. ԿԱՐԱՊԵ՞Տ)

*Տրդատ եպիսկոպոս Պալեան կը գրէ թէ,* «Մալաթիայէն մէկ ժամու չափ հեռու դէպի հարաւ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՊՕՂԱԶ ըսուած օդաւէտ եւ սքանչելի, հիանալի տեսարան մը ունեցող ձորի մը մէջ շինուած էր վանքն, որուն բուն անունն անծանօթ կը մնայ, յիշեալ ձորին ամբողջ հողը կարմիր ըլլալուն համար, զուցէ վանքին ալ «Կարմիր վանք» ըսուած է: Ի վաղուց անցած է ի շարս շաքարացեալ վանօրէից, այժմ միայն կ'երեւին վանքի տաճարին աւերակները, որոնց քով աղբիւր մըն ալ կայ, սառնահամ, առողջարար եւ անոյշ ջրով: Իբրեւ ուխտատեղի, բարեպաշտ հաւատացեալները մերթ ընդ մերթ ուխտի կ'երթան իրենց մոմը վառելու եւ աղօթք ու խնդրուածքնին կատարելու համար:» (Բիւզանդիոն *Թ.* 2975):

*Գէորգ եպիսկոպոս Արսլանեան կը թուի չհաւատալ այս վանքին գոյութեան, վասնզի կ'ըսէ թէ* «յիշուած է նաեւ Մալաթիոյ վանքերուն իշարս Կարմի'ր վանք մը եւս, իբրեւ է թէ հոն Ս. Կարապետի անուամբ ուխտատեղի մը կայ եւ քովերն ու հեռուներն ալ կարմրագոյն հողով արտեր, սակայն վանք ըսելու ու կոչուելու արժանի մի շէնք, բեկոր, աւանդութիւն, ուխտագնացութիւն, պատմութիւն չեն հաստատեր Կարմիր անունով վանքի մը գոյութիւնը: Հոս եւս մի շփոթութիւն մուտ է գտեր Ջմրշկածագի Կարմիր վանքէն առնելով, ձեռագիրներու մէջ այս մասին եւս մի գրութիւն չգտանք»: (Արեւելեան Մամուլ 1907 *էջ* 518):

*Հետեւաբար հրաւէր կ'ընէ Տրդատ եպիսկոպոս Պալեանի, որ որոշ տեղեկութիւններ տայ այս մասին:*

*Պալեան եպիսկոպոս ըստ Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեանի ոեւէ բացատրութիւն չէ տուած, բայց նշանակելի է որ ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻ մէջ* (1900 *տա–*

րի Թիւ 1127), ունի Հայաստանի մէջ յիշատակուած բոլոր Կարմիր վանքերը թուող գրութիւն մը, ուր առանձին առանձին յիշատակած է Մալաթիոյ եւ Ձմշկածագի Կարմիր վանքերը, որով շփոթութեան հարց չի կրնար ըլլալ։

Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան կը խորհրդածէ որ «Քանի որ «Կարմիր վանքի» ձորերը Ս. Կարապետի անունով ուխտատեղի մ'է՝ կարելի չէ՞ ենթադրել որ նախապէս Ս. ԿԱՐԱՊԵՏ անունով վանք մը եղած ըլլայ հոդ» (ՊԱՊ ՈՒԽՏԻ թ. 54 էջ 8)։

Իմ կողմէ բան մը աւելցնելու ի վիճակի չեմ, վասնզի ոչինչ գիտեմ այս մասին։

## Ե. ԱՀԱՐՈՆԻ ՎԱՆՔ

Այս ալ վաղուց շարաթացեալ վանք մըն էր, որ Մալաթիայէն ութ ժամու չափ հեռու լեռան մը բարձրութեան վրայ շինուած էր։

Երթեւեկութիւնը շատ դժուար էր, իր ծանրատաղտուկ վերելքին համար։

1915էն առաջ կ'երեւէին միայն վանքին տաճարին աւերակներն ու տեղւոյն հողակոյտերը, օդը շատ մաքուր է եւ առողջարար, ստորոտէն կ'անցնի Եփրատ գետը մեծադղորդ ու ահարկու կերպով։ Շէնքին քով կ'երեւի աղբիւր մը որ ունի շատ զով եւ անուշ ջուր մը։ Այս ուխտատեղին կը տարուէին ժամանակին ընդհանրապէս յիմարները, զորս կը փակէին վանքին տաճարին մէջ բժշկուելու համար։ Նաեւ յղի կանայք կ'երթային հոն, բարեպաշտական ոգիով, իրենց ձեռքերը կը խոթէին հոն գտնուած այրի մը մէջ, հանելու համար անկէց մատաղ ընելու համար տարուած գառնուկներու ոսկորներէն, զորս կը նետէին այդ այրին մէջ։ Եթէ ծուծով ոսկոր ելնէր՝ ծնելիքը աղջիկ, իսկ եթէ անծուծ ոսկոր մը ելնէր «տղայ պիտի ըլլայ»ի համոզում կ'ունենային, մինչեւ տեղահանութիւն կը կատարուէին այս աւելորդապաշտութիւնները։ Ուրիշ տեղեկութիւն չունինք։ Կը հաւաստուի թէ 1900ական թուականներուն առաջին տարիներուն տակաւին այդ վանքը ուխտատեղի էր (Տրդատ եպիսկոպոս Պալեան ԲԻՒԶԱՆԴԻՈՆ, թ. 2975 եւ թ. 1158, ինչպէս նաեւ ՊԱՊ ՈՒԽՏԻ թ. 56 էջ 7)։ Ես դժբախտաբար չեմ հանդիպած այս վանքին յիշատակութեան ուրիշ ոեւէ տեղ։

## Զ. ԹԷՈԴՈՐՈՍԻ ԿԱՄ Ս. ԹՈՐՈՍԻ ՎԱՆՔ ԴԵՐՋԿԻ

Այս վանքը յիշած է Տրդատ եպիսկոպոս Պալեան, Մալաթիոյ վանքերու շարքին։ Ահա իր տողերը.

«Մալաթիայէն 12 ժամու չափ հեռու, Մուշովկայ անուն գիւղին մօտերը, օդասուն եւ լեռնային դիրքի մը վրայ շինուած էր Ս. Թորոսի վանքը եւ ի վաղուց անցած է այս վանքն ալ իշարս շաքաթացեալ վանօրէից եւ եղած է ոչխարաց արօտավայր, բայց միանգամայն ուխտատեղի է յիշեալ գիւղա-

ցիններուն, որ տարին մի քանի անգամներ ունտի կ'երթան: Վանքին աւերակներու առջեւ աղբիւր մըն ալ կայ «Ս. ԹՈՐՈՍԻ ԱՂԲԻՒՐ» անունով, որ ունի շատ զովասուն եւ մաքուր ջուր մը»: (ԲԻՒԶԱՆԴԻՈՆ թ. 2975):

*Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան, որ այս տողերը նոյնութեամբ արտատպած է, չունի իր կողմէն ուրիշ յաւելուածական տեղեկութիւն, իսկ Գէորգ Արքեպիսկոպոս Արսլանեան, իր* ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ԼՈՒՍԱՒՈՐ ՇԱԲԱԹԱՑԵԱԼ ՎԱՆՔԻՆ *չարքին մէջ, որոնք* ԲԱԶՄԱՎԷՊԻ *մէջ հրատարակուած են, կը խօսի Անտուր Մուշովկայի մէջ գտնուող այս Ս. Թորոսի վանքին վրայ, տալով տեղեկութիւնները աւելի անոր վայրին եւ մերձակայ Մուշովկայի վրայ, քան բուն վանքին, բայց եւ այնպէս կը ներկայացնենք նաեւ զայն նոյնութեամբ:*

«Մելիտինէէն Արդա եւ Արդայէն Անտուր-Մուշովկայ գրեթէ երկու օրուան ճամբայ է: Անտուր Մուշովկան մէկուկէս դար առաջ մեծ աւան մը եղած է, ուրկից ժողովուրդը գաղթած է Ամասիա, Մարզուան, քիչ մըն ալ Սեբաստիա ու այլ փոքր քաղաքներ: Զորս կողմերովը շրջապատուած է անազնածրար լեռ ու լեռ ձազերով. լայն ու երկար հովտի մը մէջ մէկ ժամուան տեւողութեամբ քաղաքին տարածութիւնն է իր թաղերովն ու թաղամասերովը ու դէպի Հայ լերան Անտուր Մուշովկայի գիւղերուն կողերուն տակ քար լեռնորդիի մը կուշտին միապաղաղ շուկան է որ երկարաձիգ շուքով մը կոփուած փորուածքով զատ զատ բաժանումներով կրպակներ են անքակտելի ու անխոցելի, ու առջեւը զերեզմանոցը, ուր հարիւրաւոր շիրիմներ ու դամբարաններ կան միշտ կծոյ ու կափածոյ, իւրաքանչիւր շիրմին վրայ հանգուցեալին ինչ արուեստաւոր ու գործաւոր ըլլալը յայտնանշող, ինչպէս եւ եկեղեցականացը իրենց աստիճանացուցմունքովը:

*«Անտուր Մուշովկայի աւերակներուն ու գիւղին՝ որ Հայ լերան մէկ կողին վրայ է՝ կը գտնուի Ս. Թորոս վանքին շէնքը, կէս կանգուն բոլորովին աւերակներու ծոցին, փլփլած որմեր, կոչկոռ հիմնադրելիք, աւերակներու բուրգեր ու մէջերը բուսականութեան նշմարք ու կենդանութեան ոչխարք, ողով անցեալ ճոխութեան մը գոյութիւնը կը յայտնաբերեն. ջուրերու սլուլաքը օձաձուկերու փախփխուքովը կը մտնեն հող գուղձերու մէջ. գոսացած կոճղարբուներ ալ մաթուսաղայացած են. ամէն կողմերէ անխտիր ուխտաւորներ կը խուժան սուրբին՝ վանքին՝ ամէն տեսակ հիւանդներով: Գիւղն է որ կը հսկէ վանքին՝ չատոնց չարաթացեալին»:*

*Հակառակ այն ժլատ տեղեկութիւններուն, որոնք Տրդատ եպիսկոպոս Պալեան եւ Գէորգ Արքեպիսկոպոս Արսլանեան տուած են, կ'երեւի թէ այս վանքը բաւական հին ու նշանաւոր վանք մը եղած է Մալաթիոյ շրջանակին մէջ եւ հնկայ տարեգրութիւններու մէջ մի քանի անգամ յիշուած:*

*Այս վանքը յիշատակարաններու մէջ կը յիշուի նաեւ* ԴԵՐՁԿԻ ՎԱՆՔ *անունով եւս, եւ ինչպէս կը տեսնուի չէն եւ կարեւոր վանք մըն էր, ուր գրչագիրներ ալ գրուած են:*

*Առաջին յիշատակութիւնը* 1433–1435*ին եղած է: Այդ թուականին կը յիշուի թէ հոն Յովսէփ անուն աբեղայ մը գրած է* ՏԱՐԵԳԻՐՔ *մը* «ԸՆԴ ՀՈ–

ՎԱՆԵՍԻ Մելիտինէի Սբ· Թէոդորոս Զինուորի, որ այժմ կոչի Դերձկի վանք» *եւ ծաղկուած է* «թվին ՊՁԴ (=1435), յառաջնորդութեան սուրբ ուխտին Տէր Ներսէս եպիսկոպոսին» *վարպետ ծաղկող Սիմէոն կրօնաւորի ձեռամբ: Ստացողն է Գրիգոր աբեղայ, որ կը նուիրէ զայն ի յիշատակ իր եւ ծնողաց* «յանառիկ դդեակս ի գեաւղս Կուռասիս, ի դուռն Ս· Վասիլ եկեղեցւոյն»: *Վերջապէս կ՚անցնի ուրիշ մը ձեռքը, որ զայն կը նուիրէ Այնթապի Ս· Աստուածածին եկեղեցիին* (*տես* Պատմ· Այնթապի Հայոց, *էջ* 341–342):

*Այս ձեռագիրը հիմա կը գտնուի Երուսաղէմի վանքին Թանգարանը* (*Թ*· 3153):

*Ուրեմն 1435ին վանքը ունէր Ներսէս անուն եպիսկոպոս առաջնորդ մը եւ կային հոն գրչագրողներ* (*ինչպէս Յովսէփ աբեղան*) *եւ ծաղկողներ* (*ինչպէս Սիմէոն կրօնաւոր*):

1447*ին այդ վանքին մէջ գրուած է նաեւ Ճաշոց մը* «ձեռամբ Մկրտիչ Սարկաւագին»:

*Վանքին հայրապետը* (*=Վանահայրն*) *էր Սիմէոն* «որ ետ գրել զգիրքս» :*Այս յիշատակարանին մէջ կ՚ըսուի*· «Յիշեցէք զվանիցս միաբանքն զՍիմէոն աբեղայն եւ զսարկաւագներն եւ զգործաւորն Սարգիս պապն...» (Նօտարք 156–157, *Լ· Ս· Խաչիկեան*, ԺԵ· դարի հայերէն Ձեռագրերի յիշատակարաններ մասն Ա· 1401–1450 էջ 615):

*Ուրեմն Ներսէս եպիսկոպոս վանահայրը մեռած է 1435էն 1447 շրջանին մէջ եւ Սիմէոն յաջորդած է իբրեւ վանահայր:*

*Սիմէոն եպիսկոպոս թերեւս 1435ին յիշուած Յովսէփ աբեղայի տարեգիրքին ծաղկող կրօնաւորն է, բայց փաստ մը չունինք անժխտելի: Աւոր օրով է որ Մկրտիչ սարկաւագէն զատ Սիմէոն կրօնաւոր, այդ վանքին միաբաններէն ընդօրինակած է Ներսէս Շնորհալիի* ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆԸ *եւ ուրիշ ձեռագիրներ նոյն վանքին մէջ* (Կարնոյ ձեռագիրներու ցուցակը· *էջ* 34 *եւ* Նօտարք, *էջ* 184· *Աճառեան* Անձնանունների բառարան, Դ·, էջ 51):

*Թէեւ չկայ ուեւէ նշան վանքին մէջ դպրանոցի մը գոյութեան, բայց կարելի է ենթադրել թէ գրչագրողներու խումբ մը ունեցած է:*

## Է· ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ ՎԱՆՔ

*Տրդատ եպիսկոպոս Պալեան այս վանքը կը յիշատակէ երկու անգամ իր վանքերու նուիրուած յօդուածներուն մէջ* (ԲԻՒԶԱՆԴԻՈՆ· *Թ*· 1019 *եւ* 2975): *Իր տուած տեղեկութիւններուն համաձայն՝ այս վանքը* «վերոյիշեալ Մուշովկայ անուն գիւղէն կէս ժամու չափ հեռու լեռան մը ստորոտը ձորի մը մէջ շինուած էր: Ս· ՍԱՐԳԻՍի վանքն ալ ի շարս շաքաթացեալ վանօրէից է եւ տեղն ալ թէեւ արտի վերածուած է գիւղացւոց կողմէ, բայց նորէն միշտ ուխտատեղի մնացած այն կողմի ծոմապահ բարեպաշտ հաւատացեալներուն: Տեղւոյն օդը շատ առողջարար եւ ախորժելի է, եւ ուխտի

դիմող գիւղացիք, շատ անգամ ամառ ատեն, քանի մը գիշերներ կ'անցընեն հոն»։

Գերպ. Անդրէաս վրդ. Աղեքսանդրեան (Պատմութիւն Ականաւոր քաղաքին Սեբաստիոյ եւ Սահմանաց նորա եւայլն, 1911, Վենետիկ, էջ 402) գիրքին յաւելուածին մէջ, ուր կը խօսի Մալաթիոյ վրայ, կ'ըսէ թէ զանց չի կրնար ընել յիշատակարան մը Մուշողկուն վանքին մէջ գտնուած, որ 300 տարի առաջ նշանաւոր հաստատութիւն մը եղած ըլլալ կը թուի։

Այս յիշատակարանը 1578 թուականով (տես Ձեռագրաց բաժինը) ցոյց կու տայ թէ ԺԶ. դարուն երկրորդ կէսին «Մուշողկուն» վանքը փայլուն վիճակ մը ունէր։

1578ին գրուած այս Աւետարանին գրիչն էր Պօղոս եպիսկոպոս, որ նոյն վանքին մէջ իրեն համշիրակ ունէր ուրիշ երկու եպիսկոպոսներ՝ Գրիգոր եւ Ծերուն անունով։

Հոն էին նաեւ իբրեւ միաբան Պօղոս եպիսկոպոսի երկու աշակերտները՝ Տ. Յովհաննէս, Տէր Յակոբ եւ Տէր Գէորգ արեղաները եւ անունները չյիշատակուած միաբաններ, որոնք կ'երեւի թէ բացառիկ կարողութեամբ Աստուածատուր անուն Աբեղայի մը իշխանութեան ենթարկուած էին։

Այս բազմութիւնը, դատելով այս յիշատակարանի խօսքերէն ձեռնածալ պորտաբուծութեամբ չէն զբաղած ապահովաբար եւ քանի որ կը յիշեն իրենց աշակերտներէն ոմանց անունները, ուրեմն հասցուցած էին աշակերտներ, անոնց դասախօսելով։ Հետեւաբար վանքին մէջ ուսումական գործունէութիւն մը կար։

Հաւանօրէն դարձեալ հոն, երկու տարի առաջ գրուած է ՍԱՂՄՈՍԱՐԱՆ մը (տես Մայր Ցուցակ հայերէն Ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ Ա. հատոր էջ 191—2), «ի գիւղն Մուշուղկուն, ի դուռն Ս. Սարգսի ձեռամբ Գրիգոր եպիսկոպոսի» որ 1578ին գրուած Աւետարանին մէջ յիշուած երեք եպիսկոպոսներէն մին է։

Միակ խնդիրը որ անլուծելի կը մնայ, սա է որ այն վանքը ուր այդ եպիսկոպոսներ մտաւորական աշխատանքին լծուած էին եւ որ Աւետարանի յիշատակարանին մէջ կը ճշդուի թէ «յերկիրն Մելտինի ի գիւղն Մուշողկուն ՎԱՆՔ» էր, Ս. Թորոսի կամ Դերձկի՞ վանքն էր թէ Ս. Սարգսի։ Նկատելով Ս. Սարգսի նախապատուութիւն տրուած է, ես անոր կցեցի։

## Ը. ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ ՎԱՆՔ

Մալաթիայէն 12 ժամ հեռու Մուշովկայի մէջ կը յիշուի այս անունով վանք մը (ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 50 էջ 8—9. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ 1907 էջ 518)։ Կիսականգուն չարաթացեալ կը կոչէ Գէորգ վրդ. Արսլանեան։

## Թ. Ս. ՄԱՐՏԻՐՈՍ ՎԱՆՔ

Նոյնպէս Մուշովկայի մէջ կը յիշուի Ս. Մարտիրոսի նուիրուած վանք մը (ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 50 էջ 8—9. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ 1907 էջ 518)։ Նախորդին պէս կիսովին աւերակ։

## Ժ. Ս. ԿՈՆՈՆՈՍ ՎԱՆՔ

*Գէորգ վրդ. Արսլանեան Մալաթիայէն 8 ժամ հեռու Անսուրի Իպոճղի մէջ, այս անունով վանք մը կը յիշէ:* (*ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ*, 1907 էջ 518. *ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ.* 56 էջ 8):

*Պէննէեան Կարապետ քհնյ.* (*Համառօտ* էջ 233) *այս վանքը կը յիշէ սոսկ իբր ուխտավայր, եւ կը յարէ թէ գիւղացիք* «իրենց երդում առաջարկելու եւ ճշմարտութիւնը իմանալու համար յաւ է յիշեալ սրբոյն վրայ երդուընցնել, որովհետեւ Աստծոյ վրայ կ'երդնուն Ս. Կոնոնոսի (*Պէննէեան քհն. ԿԱՆԱՆՈՍ կ'ուղղագրէ*) անուամբ չեն երդնուր»:

*Եթէ պատճառն հարցուի կ'ըսեն թէ* «Աստուած բոլորին Աստուածն է, իսկ Ս. Կանանոս միայն մեր պաշտպանն ու մեր սուրբն է»:

## ԺԱ. ՍՈՒՐԲ ՕՀԱՆ

*Այս վանքին վրայ խօսած է Գէորգ Աքեպիսկոպոս Արսլանեան Բազմավէպի իր ծանօթ յօդուածաշարքին մէջ:*

«Սա Թոխմայի, Եփրատի եւ այլ ծով ջուրերու կղզեակ մըն է բարձրագագաթ լեռնով մը, բաւական լայնագիր գէր իրանով ու կողերով տիրող մըն է մինչեւ Սամահոս Կէտէկը. միւս կողմովը Պէկ տաղին այլ կողմով Աղճատաղի քարակարկառ բերդկող անխորտակելի լեռնաշղթաները, ուրիշ կողմով մը Հայ լերանց շղթան, եւ տափաստանները Հասան Պատրիկի, եւ Հեքիմխանի Ջուրպահանը (Ս. Օհան) իր վիթխարի աղբարիկը, զանգուածային կուռ շղթաներովը, սակայն ոչ ցամաքակղզեակ մը: Ս. Օհանը Մելիտինէէն 7—8 ժամուան հեռաւորութիւն ունի, ճամբան որչափ դիւրագնաց է եւ սակայն լերան մօտերը անանցանելի ջրերովը բաւական դժուար է եւ անհանգըստութիւն կը պատճառէ ուխտաւորին, եւ նաեւ այլ փորձանքներ ու վըտանգներ լերան ստորոտներուն ու կողերուն. վանքը (լեռը) քառուղիի մը կեդրոնն է:

Շաբաթացեալը մեծ անուն ու հռչակ հանած է ոչ միայն քրիստոնէից մէջ, այլ եւ բոլոր ցեղերուն մէջ, որոնք շրջապատած են Ս.ը: Ուխտաւորներ բազմաթիւ են, իսկ աւելի թիւը կը կազմեն ջլախտաւորներ, ապուշցածներ ու բոլորովին յիմարացածներ: Լեռը բարձրանալ բաւական տանջալից ու յոգնեցուցիչ է ու մինչեւ լերան գագաթը այդպէս, ուր ընդարձակ տարածութեան մը վրայ կառուցուած է վանքը իր ընդարձակ շէնքերովը, ճիշդ բարձրակատարին վրայ. հիանալի համայնապատկեր մը, որ կը լեցնէ ու կ'ուռեցնէ ուխտաւորին ու ամենուն լանջքն ու հոգեակը՝ երբ Ս. Օհանի հռչակին հետ օդն ալ մեծ գրաւականն է թէ շաղումն այդ իր մէջ ունի բուժման բոլոր յատկութիւնները: Երկու դարեր առաջ մեծ վանք մը եղած է վանականներով, այսօր մանր մունր շէնքեր ուխտամատուռով մը հին որմերով բաւական ընդարձակ, հաստ հիմեր իրենց դարեւորութիւնը ցոյց կու տան

բաժանումներով ալ որոշ։ Լերան ճամբուն կիսուն կայ տարածութիւն մը քիչ մը զառիթափ աւերակներով ու բակ տեղիքով, ոնք ցոյց կու տան թէ հոս ուխտաւորներու հանգստանալու տեղերն են՝ և՛ւ մինչեւ իսկ գիշերելու վայր՝ երբ աւելի ձեռնտու է կայքի մեղմ օդովն եւ ջուրերովը։ Շատ են պատմութիւնները Սուրբին հրաշագործութեան, եւ մանաւանդ յիմարացածներու բուժումը որ ամէն ազգէ, ցեղէ ու սեռէ ուխտաւորներ անհամար փութացած են խունկով եւ մոմով եւ զոհերով։ Ունեցած է «ի հնումն եզնաւորներու թիւեր, վանականներ, ու այժմ Ս. Օհանը մնացած է իր լեռներովը միմակուկ, եւ քիչ անգամներ ուխտաւորներով խզուած է իր լռութիւնը ու մենաւորութիւնը» (*ԲԱԶՄԱՎԷՊ*, 1938, էջ 277)։ *Ուրիշ աղբիւրէ ոչ մէկ տեղեկութիւն ունիմ*։

## ԺԲ. Ս. ՕՀԱՆ ՀԵՔԻՄԽԱՆԻ

*Ժողովուրդը աղաւաղելով Սուրբ Օհանը կ'ըսէր Զուրպահան։ Այս վանքը կը գտնուէր Մելիտինէի առաջնորդութեան մէջ, Մելիտինէէն 2 օրուան հեռաւորութիւն ունեցող Հեքիմ Խանի մէջ։*

*Արսլանեան Գէորգ Արքեպիսկոպոս իր ծանօթ յօդուածաշարքին մէջ կը խօսի այս վանքին վրայ։ Մինչ ուրիշներ դրեթէ ոչինչ գիտեն անոր մասին։*

*Իբրեւ ականատես իր վկայութիւնը կարեւորութիւն ունենալով զայն եւս կ'առնեմ նոյնութեամբ.*

«Լեռը իր շուրջը խաղ ու պար բոլորող ամենէն բարձր ու փիթխարի խսկաներուն վրայ իշխող գերիսկայ մըն է, որուն գագաթէն Տիգրանակերտը իր առջեւ պաստառի մը պէս փռուած է, որ 7 օրուան ճամբով հեռի է ու աւելի ալ։ Երբ այս Ս. Օհանը կը բարձրանաս եւ կէս ճամբէն քիչ մը աւելի կը կտրես, արդէն հիանալի լերան մը բարձր սարերն ու ձորերը կ'ողջունեն եւ շրջբոլորած լեռնաշղթաները իր քամակէն վար կը մնան։

Այս լեռը բարձրանալ միայնակ չէ կարելի եւ պէտք է բազմութեամբ եւ պահակներով գնալ, որովհետեւ կը գտնուին կատաղի գազաններ, գիշատիչ թեւաւորներ, ահաւոր իժեր, սոսկալի թունաւորներ, իժերու եղջիւրաւորները Անտուր Մուշովկայի հայ լեռը կը գտնուին, կան ահարկու արջեր թռոժուտներով, իսկ երամակներ եղնիջներու ու գօշերու բազմաթիւ։ Գագաթէ քիչ մը վար, որ ունի կէս սարահարթ մը ընդարձակ աւերակներու կոյտերով, կէս նշմարելի շէնքերու ցցուածքներ կան տեղ տեղ գետնին հաւասարած բաժանումներով, հոս ու հոն ալ թաքստոցներ եւ որջեր։ Ուխտաւորներ հոս է որ վերջին զարունքէն ցվերջ աշնան կը բարձրանան ջահերով, խունկ մոմերով եւ որ յատուկ է Ս. Աստուածածնին, վասնզի այդ օրը վանքին տօնի օրն է, եւ կը փութան ամէն սեռէ ու ցեղէ. ինչ որ Մելիտինէի Ս. Օհանին ուխտաւորները ջլախտաւորներու, ապուշներու եւ յիմարներու հիւանդներովն է որ կը փութան ամէն տարի հոս նմանապէս, ու միշտ ալ զօրաւոր եղած է

Սուրբը առանց բժշկութեան մէջ: Ուխտաւորները 2—3 օրով կը մնան այս անձրման սրբավայրը եւ հմայող կ՚ազդուրող մեծ վայրը, օդը առաւելապէս, ջուրն ըսես ԱՆՊԱՍԻԼ, անմիջապ մեղրածորան կաթնաթոյր վազքովը ի՜նչ բուժումներ ունի, ի՜նչ ախտեր է որ կը բուժէ· նոյն ջուրն ըմպողը ոչ Քոխին պէտք ունի եւ ոչ ոխին:

Քիւրտ, թուրք եւ Հայք Ղուրպահան մանաւանդ կը կոչեն անյիշատակ ժամանակներէ ասդին, այս անուանակոչումէն եւ աւանդութենէն զատ դժբախտաբար պատմական թղթի կտորի մը չհանդիպեցանք, բայց աւերակոյտերը, տարիներով իր օրին անպատճառ ու այլ օրերու շարունակ ուխտի զոհերով ու այլ ընծաներով, երրորդ անպատճառ ջլախտաւորը, ջղայնութեամբ տառապողները, ու յիմարները Ս. Օհանին ոտքին տանելով բժշկութիւն գտնելնին արդեօք զօրաւոր ապացոյց եւ փաստեր չե՞ն թէ Ս. Օհանը դարեր առաջ մեծ վանք մը եղած է նզնաւորներով եւ վանականներով լեցուն, ու չորրորդ՝ այս վանատեղիէն քիչ մը վարօք ու քովնտի խորունկ Ինի լեռնազիւղը որ վանքինն եղած է եւ գիւղին տակը լերան կողին ընդարձակ այր մը թէ՝ յատկապէս փորուած ուր կը կապուին ու կը պահուին եղեր կատաղի եւ գէշ ջլախտաւորներ մինչեւ իրենց բուժումը» (*ԲԱԶՄԱՎԷՊ* 1938, *էջ* 277):

## *ԺԱ.* Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ ՀԵՔԻՄ ԽԱՆԻ

«Կիւշիւնկիւտի–Զմրուխտ լեռնադաշտակին մէջ» *է Հեքիմ Խանի երկրորդ վանքը՝ Ս. Աստուածածին, ըստ Գէորգ Արքեպիսկոպոս Արսլանեանի, որ իր յատուկ ոճովը կը նկարէ եւ կը նկարագրէ անոր վայրը«* իբրեւ բոլորովին աննման չքնաղագիւտ ու հազուագիւտ դաշտակ···, բոյսերով զանազան մրգաշատ ծառերով ծիծաղկոտ ու քմայքոտ սա գոչերուն ու գիրկերուն մէջ Ալաքիլիսէի (գեղեցիկ եկեղեցիի) աւերակոյտը հիմերովն ու բոլորովը դեռ զանազան, ու առջեւը կայ պուրակ մըն ալ սաղարթախիտ, քովնտիքը նունուփարով ու շահոգրամով նաշխուած, առջեւն ալ կը հոսի ջուր մը կաթնահոս զովուկ ու սառուկ ինքնածին ու գեղեցկահոս ու սուս ծառազարդէ մը երկեզր: Զերմի կ՚անցնինք· այս գիւղին մէջն է Ս. Աստուածածնի վանքը· վանքին յատակէն բուն տաճարին ծոցէն է որ կը շռայ ու կը պժայ· ինը ծորակ ներէ կը շառաչէ· հոսուն ու պոռթկուն ջուրը անմահական եդեմական եւ այս ինը ծորակները մեծ լինը կը կազմեն Տաճարի ներքնայատակը, ամբողջ յատակը խոշոր ժառ քարերով աւազան մը կերտուած է 80 կանգունի չափ շրջանակով եւ երկու մէթր խորութեամբ մը քիչ մըն ալ աւելի: Ամէն տարի Ապրիլի 15ին կը սկսի բխիլ ու հոսիլ եւ Սեպտեմբեր 15ին ցամքիլ բոլորովին:

Ս. Աստուածածնի տօնին ամէն սեռէ ու ցեղէ ուխտաւորներ կը փութան զոհերով ու խունկ մոմերով, իսկ Սեպտ. 15ի ցամաքումէն վերջ Վարագայ տօնին կրկին կը փութան ինչ հաւատքով ու ուխտով եւ մի քանի օրերու խրախճանքով ալ: Վանքի ընդարձակ պարիսպներուն հիմերը դեռ կը մը–

նան, որոնք վանքին ընդարձակութեան եւ կարեւորութեանը հաստատուն կարկառներն են: Վանքին շէնքերուն մեծ մասը 70—80 տարի առաջ դեռ կանգուն է եղած:

Պարսպին մէջ քիչ մը գագաթին՝ միակտուր խաչքար մը կանգուն կեցած է հովին ու բուքին, ձիւնին ու արեւու կիզիչին, սակայն լանջքը ալ ծերութեան նշաններ ցոյց կու տայ, խաչին պատուանդանը ինք կարգ յիշատակարան մը ունի, ուր բոլորովին աւրուած են եւ անընթեռնելի են գիրերը. հազիւ մի քանի գիրերը որոշ են, խաչը հայկական քանդակով է, սոսր նմանը Անտուր Մուշովկայի աւերակներու հատած ծայրին վերը լերան ժայռ կուրծքին կերտուած բոլորովին ժայռափոր հրաշալի Տաճարի դրան առջեւը բարձրացուցած են գրեթէ երկու մարդահասակ: Միւս մըն ալ Մազէ Կամուրջին տակ փորուած թէ ինքնակերտ ժեռուտ այրի մը առջեւ կանգնեցուցուած կայ հրաշալի քանդակուած եւ այնչափ ալ նրբին:

Տաճարալեռին քովն իվեր դուրսը կնգուղաքարերն են, առաջին առթիւ կը խաբուիս թէ որչափ վեղարաւորներ հաւաքուեր են...: Այս ջրի լճին մէջ ոչ ոք լոգանք կ'առնէ եւ չի թոյլատրուիր որ մէկն ալ լոգանք առնելու համարձակութիւնը ունենայ: Երբ ծերերուն կողմէ աւանդական ԱՆԷԹԹՈՏՆԵՐ կը խօսին լողացողներուն ու կնգուղաքարերու մասին, ինչպէս Սուրբերէ ու սրբավայրերէն ալ պատմուածքներ: Վերը յիշուած խաչքարը այլազգիներ տեղէն խախտած, վար առած են՝ տանելու համար կամ վնասելու, բայց ան նորէն իր տեղը բարձրացած է: Վանքը ընդարձակ հողի տէր է եղած, եւ այդ հողերուն վրայ նոր տուներ շինելու ելած են եկուորներ, ուրիշ գիւղերէ հոս եկողներ, բայց ամէն ընտանիք ալ ամլութիւնով պատժուած, այնպէս որ կրկին իրենց տեղերը վերադարձած են, վանքին ամբողջ շրջանակին վրայ միշտ լոյսեր տեսած են եւ այս երեւումը գիրենք այդչափ ահաբեկած է: Վանքին ամբողջ շրջանակը վայրի ծառերով շրջապատուած է:

Շաբաթացեալը Պայեր Աշխիի ստորոտն է: Տաճարի դրսի երկու կողմերը կան գեղեցիկ դամբարաններ վարդապետի ու եպիսկոպոսի յայտնի նըշանակներով, դեռ ոմանք աւրուած ու գիրերն ալ քարաքոս կապած ամբողջովին յատուկ ազուգաներ կան թաղամասի մը մէջ, որոնցմէ է որ կը ստանայ վանքը իր կաթնեղէնը, լեռնադաշտակի բլրակի ստորատեղիէն, ուր հօտերը կը գիշերէին:

Քիչ բլուրն ալ դէմը ամբարտակ կեցած էր. Վանքին լինը Զմրուխտին հոգին է եղած եւ աղբիւրը հարստութիւն, ու Ս. Աստուածածնի վանքն ալ հաւատաւորին ու ուխտաւորին հոգին: Հարուստ, մաքուր անտառակներ ալ կան, սոնց մէջ երկրորդ եկեղեցին ԽՈՒՄ ՔԻԼԻՍԷՍԻՆ՝ սս եւս աւերակոյտ մը:

Երրորդ մըն ալ ՓՈԼԱՏԼՆ ունի նոյնանման ու սոնց քովնտիքը ու հեռուներ խաչեր ու խաչքարեր, եւ գերեզմաններ եկեղեցականաց»: (ԲԱԶՄԱՎԷՊ 1938 էջ 277):

## ԺԴ. ԿԱՐԿԱՌԻ Ս. ՏԻՄՈԹԷՈՍԻ ՎԱՆՔԸ

Կարկառ արաբերէն ԿԵՐԿԷՐ Եփրատացիք կամ Կոմմագենէ գաւառին մէջ բերդաքաղաք մըն էր, Եփրատի արեւմտեան ափին վրայ, Սամոսատի եւ Հիսնի Հէյատի կամ Խարբերդի միջեւ (Արտաւազդ եպիսկոպոս ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱԼԷՊԻ ՀԱՅՈՑ էջ 105): Նախապէս կը պատկանէր Կոստանդին անուն Հայ իշխանի մը (նոյն). Կարկառի պատմութիւնը սերտօրէն կապուած է Եդեսիոյ կամ Ուռհայի կոմսութեան հետ, Կարկառը խլեցին Խաչակիրները Կոստանդինէն որ Սամոսատի բանտին մէջ մեռաւ 1124ին, եւ Կարկառը գըրաւուեցաւ Պալակ ամիրայէն:

Կոստանդինի որդին Միքայէլ նոյն տարին փրկեց Կարկառը իսլամ տիրապետութենէ (նոյն էջ 107):

Այս պատճառով Կարկառի շուրջ կռիւներ տեղի կ'ունենան (տես նոյն էջ 107–109) եւ վերջապէս Կարկառ կ'ենթարկուի Փիլարտոսի իշխանութեան: 1126ին Սուլթան Նուրէտտին ետ առաւ Կարկառը:

1138ին Կարկառը Միքայէլ իշխան տուաւ Ջոսլին Բ. Ֆրանկ իշխանին:

Կարկառի բերդին մօտ էր Ս. Պարսամի վանքը ուր կը նստէր Ասորիներու պատրիարքը:

Կարկառի մէջ այդ դարուն կը նստէր նաեւ Հայ եպիսկոպոս մը եւ հաւանօրէն այդ դարերուն պէտք է կառուցուած ըլլայ Ս. Տիմոթէոսի վանքը: Իսկ Կարկառի եւ իր դղեակին տեղը կը գտնուէր ՔԷՐՔԷՐ կոչուած այժմու նոր աւանին մէջ, անմատչելի Թուող լերան մը գագաթին վրայ կառուցուած (նոյն էջ 110): Ըստ Քառլ Րիտտէրի, այս լերան ծովէն բարձրութիւնն էր 742 մեթր:

Աւերակոյտերուն միջեւ կը բարձրանան, բոլորն ալ քիւրտերէ բնակուած երեսունի չափ տուներ:

Արդի վարչական բաժանումներու համաձայն, Կարկառ կը գտնուի Մալաթիոյ կուսակալութեան Քեախդէ գաւառին մէջ. Հնութիւններով հարուստ վայր մըն է: «ԼԱՅՆ ՇՐՋԱՆԱԿՈՎ ՄԸ ԸՆԴ ՄԷՋ Խարբերդի, Մելիտինէի, Շիրոյի, Սեւերեկի, Բերդակի երկարած բազուկներովը յայնկոյս Եփրատի փռուած է, գոգին ունենալով Պէլ Տաղին, Բէլի լեռը, հպարտ, որ կը տիրէ, կ'իշխէ ու կը սոնքայ՝ այլ լեռներ ու քաղաքներ իր պատուանդանը ընելով: Դէպի Հարաւ-Արեւմուտք բազուկ երկարած է բերրի դաշտի մը քովն իվեր, ու հոն այդ դաշտակին մէջ նշանաւոր Կարկառը, որ մասամբ լեռնոտ դաստակներով հարուստ Բէլի կողքին ու ոտքերուն դէպի հիւսիս արեւելք կուրծք տուած է եւ համանուն բերդին կողերուն ալ կռնակ տուած: Աւերակներու վերածուած գաւիթներով եւ քարակոյտ բակերով եւ ընդարձակ փըռուածքով, կարծես լուռ կ'ունկնդրէ Բէլի քնարակոծ երգերուն, աւելի քան երեսուն դարերու այդ վեհաշուք ու անծածկ տաճարներուն ու քնարը այդ Մամիկոնեան տան հայաշէն ժայռակերտ բերդի գրկէն ու հպարտ գլխէն կարծես կը թրթռայ ցարդ անցորդն ու ճամբորդը, լեցնելով հիացումով ու

ապշումով: Սակայն վարը, խորը, բոլորովին դադրած են երբեմնի ճոխ ու շէն բազմամարդ Կարկառ քաղաքին երգն ու բանդիռները, ու վանքին ալելուները ու սաղմոսերգները վեր երկնքին ու այժմ այս բակ տեղերուն ու աւերակներուն մէջ վուվուները են բուերուն: Հնաւուրց անցեալ փառքերէն, շէնշող փառքերէն հազիւ կէս երկոտասնեակ մը բնակչութեան աւերակոյտերու գլխին ու այժմու տուները Կարկառին, որ պարպուած փեթակի մը պէս կը տզտզայ եւ կը բզզայ: Երկինք ցցուած Բէլ հսկան, չորս ծագերու ճայող ահեղ կեցուածքով, առաւել իր ահեղ վիթխարի արձաններով, գլխու պտոյտ տուող ահազնութիւնով, կրանիթ լանջերուն քարի ու մուրճի հարուածներովը ու սուր տէգերու խոցուածներովը, հին, շատ հին տարբերու մեծութիւնը, արուեստը ու այդ գիտութիւնը , որ ներկան կը զարմացնէ ու պիտի շարունակէ զարմացնել, բոլորն ալ տիրապետողներու գոռոզ յաղթանակները ու հրամանները են, որոնք չորս ծագերուն կը պատգամեն ամպածրար գլխովնին:

Բելէն 9—10 ժամու հեռաւորութեամբ մը, իսկ Մելիտինէն 12—16 ժամով մինչ Քեախդէ ու Քեախդէէն 5—6 ժամով Կարկառի քաղաքատեղին, վանքը ու բերդը: Իսկ վեց ժամ հեռու է Գայլ Վահան Մամիկոնեանի բերդը: Այս վեց ժամուան շրջանակին մէջ կան շատ մը գեղեր՝ որոնց մէջ կը բնակին Հայեր, Ասորիներ ու Քիւրտեր, որոնք երեք լեզուները ալ մայրենի լեզուի պէս կը խօսին:

Մինչեւ Կարկառ երկարող ճամբուն կիսուն ոչինչ կայ: Պարտէզի մուտքին չորացած աղբիւրի մը կիսակործան շինուածքն բոլորտիքը ճախճախուտով: Քաղաքին ու վանքին աւերակները մէկ ժամէն աւելի շրջելով դէպի վեր, մինչեւ բերդին կողին կորած Կարկառ գիւղը կ'ելլենք: Վեց տնուոր հայութիւն մը միայարկ տուներու մէջ, իբր պահապաններ հարուստ աւերակոյտերուն ու բեդին, օրերնին կը քաշկռտեն:

Միակ բարեկեցիկ տունը Պետրոս էմիին էր... միայն մնացած յիշատակ մը նշանաւոր Կարկառ քաղաքէն ու բերդէն՝ աւերակներ, եւ սակայն միշտ կանգուն՝ Հայ մտքէն ու արուեստէն, ու ճարտարապետութենէն եւ անմեռ հաւատքէն գլուխ գործոցներ» (*Գէորգ Արքեպիսկոպոս Արսլանեան*, ***ԼՈՒՍԱԾԻՐ ՇԱՐԱԹԱՑԵԱԼ ՎԱՆՔԵՐԷՆ, ԲԱԶՄԱՎԷՊ*** 1939 *էջ* 228 *կամ* ***ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱԼԷՊԻ ՀԱՅՈՑ*** *էջ* 111—116 *եւ* ***ՊԱՊ ՈՒԽՏԻ*** *Թ*. 22 *էջ* 4—7):

*Կարկառի Ս. Տիմոթէոսի վանքը միակ վանքն է Եփրատացւոց երկիրին կամ Կոմմագէնի շրջանակին որ ուսումնավայր մը եղած է դէթ ԺԶ. դարուն վերջին կէսին մէջ, մանաւորապէս Պետրոս Կարկառեցիի* (1552—1608) *ընորհիւ, որ քառասուն տարի հոն ապրած է նախ իբր աշակերտ եւ ապա ուսուցիչ եւ հաւաքուած է աշակերտներու խումբ մը:*

*Կարկառեցին իր նախակրթական ուսումը առած էր հաւանաբար Կարկառի Ս. Տիմոթէոսի դպրեվանքին մէջ, եւ յետոյ գացած էր Ամիթ (Տիարպէքիր) Յովհաննէս Շիրակ վարդապետին քով, իրեն դասընկեր ունենալով Ղուկաս Կեղեցին* (+1601) *եւ Սրապիոն Ուռհայեցի* (+1606) *վարդապետ-*

*ները, որոնք նշանաւոր եղած են մեր պատմութեան մէջ, իրենց ուսուցչական գործունէութեամբ:*

*Պետրոս Կարկառեցի անոնց պէս ինքն ալ ուսուցչական գործունէութիւն ունեցած է Կարկառի մէջ, որուն վանահայրութեան համար էր Ամիթի դպրոցին մէջ իր ուսումը առնելէն վերջ:*

*Պետրոս վարդապետ հմուտ էր Ս. Գրոց եւ արտաքին ուսմանց, ժիր վարժապետ եւ դասախօս մը եղաւ:*

*Ան կը սիրէր մնալ միշտ Կարկառի վանքը եւ չէր ուզեր դուրս ելլել: Երբեմն Ամիթի Հայերը բռնի կը տանէին զինքը քաղաք, դաս տալու, բայց ժամանակ մը յետոյ կը դառնար իր վանքը:*

*Իր համբաւը շուտով տարածուեցաւ եւ շատ մը անձեր գացին իր քով աշակերտելու:*

*Անոնցմէ յիշուած են Կարապետ Թուլկուրանցի (յետոյ առաջնորդ Երզնկայի), Ղազար Երզնկացին որ եօթը տարի աշակերտած էր Պետրոսին, Քոթ կոչուած Թիլաւանցի Կարապետ վարդապետը, Ղազար Տարենտեցի, Թումա Կարկառեցի, Զաքարիա Վանեցի (յետոյ պատրիարք Կ. Պոլսոյ), Կիրակոս Տրապիզոնցի վարդապետներն, ամէնքն ալ ուսուցիչ, գործիչ, վարիչ, առաջնորդ:*

*Կը յիշուին նաեւ Մելքիսեթ, Խաչատուր եւ Աստուածատուր, Մարտիրոս Զնքուշի, Աստուածատուր (յետոյ պատրիարք Երուսաղէմի) եւ Յովնան Զնքուշցի վարդապետները եւ Յովսէփ Մոնղոն (միայնակեաց):*

*Պետրոս Կարկառեցին իր աշակերտներուն դասախօսած է Աստուածաշունչի հին ու նոր կտակարաններու բոլոր գիրքերը:*

*Կիւրեղի Պարապմունքը եւ Գրիգոր Աստուածաբանի «Առ որս»ը, Բարսեղի ՎԵՑՕՐԷՔը, Դաւիթ Անյաղթի գործերը, Հոմերոսը, Հարանց վարքը, Եւսեբիոսը, Խորենացին, Օձնեցին, Անձրեւիկը, Սարկաւագ վարդապետը եւայլն:*

*Ժամանակին ուսման լրումն էր ինչ որ կը դասախօսէր Կարկառեցի Ս. Տիմոթէոսի դպրեվանքին մէջ, որ Մալաթիոյ շրջանակին մէջ գոյութիւն ունեցող վանքերուն մէջ հաստատուած միակ վանական վարժարանն էր, որ լուսաւոր հետք մը եւ արդիւնաւոր կեանք մը ունեցած է, աւա՜ղ կարճատեւ, հազիւ 20—25 տարի (հմմտ. Բաբգէն կաթողիկոս ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԿԻԼԻԿԻՈՅ, էջ 250—255 եւ Արտաւազդ Արքեպիսկոպոս Սիւրմէեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱԼԷՊԻ ՀԱՅՈՑ, Գ. հտ., էջ 116 եւ շար.):*

*Ասորիներուն Ս. Պարսամայ մեծ վանքը որ երկարաձիգ հսկայ քարէ ամբարտակի մը ոտքերուն եւ Եփրատի ճիշդ ափունքին, Սեւերէկի դէմ, դարերով կանգած է, անցեալին մէջ ունենալով մեծ համբաւ ու հռչակ ամենով ակնրախ:*

«Դժբախտաբար քիչերն են որ կրցած են հոն երթալ ցամաքի ճամբով, այդ հռչակաւոր ուխտավայրը, երբ ոչ իսկ քարայծի ճամբայ կայ, այլ պէտք է ունենալ ընկերներ եւ որ աւելին է՝ յանդգնութիւն որպէսզի պա-

-րաններով վար կախեն ուխտաւորը, որպէսզի վանք իջնէ եւ քիչ ալ չէ եղած վտանգը...:

Երբ Կարկառ կը մտնենք առաջին անգամ՝ երկու ցած բլրակներու մէջ-տեղէն, ուր ժամանակաւ հսկայ դռներ դրուած կան եղեր, ինչպէս նոյնը՝ երկու բլուրներուն ոտքերուն եւ այնքան իրարու մօտ որ դուռները բռնող եր-կաթէ ձողիկներու կտորներ հողին մէջ մխուած են եւ սեմի հետքերը դեռ կը տեսնուի: Դէպի աջ անմիջապէս Հայաղբիւրն է որ կը հոսի զուլալ, վը-ճիտ եւ սառնորակ ու ճամբուն տակն ու վրան՝ ընդարձակ բակտեղի մը, քարակոյտերն ու տուներու հիմերը դեռ բոլորակով յայտնի ու այս աւերակ տեղերը ունին կէս ժամու չափ շարք ու տարածութիւն: Իսկ բոլոր-վին ձախին եւ ամենավերջին եզրին է ընդարձակ գերեզմանատեղին, ոմանք կոտրած ու կոտրտած, բազմաթիւ տապանաքարերով հողին մէջ կիսաթաղ, ոմանք անաղարտ, իսկ շատ շատերը քոս ու քարաքոս կապած, հազիւ կա-րելի է գտնել բոլորովին անաղարտ մնացած տապանաքարեր:

Շատերու վրայ իւրաքանչիւր արհեստաւորի գործիքները եւայլն խա-չեր, ու խաչքարեր բաւական թիւով, որոնցմէ ոմանք եկեղեցականներու յա-տուկ:

Գերեզմանատան գրեթէ մօտ շաքաթացեալ վանքը բոլորովին յայտնի շրջագիծի մը մէջ եւ անտարակոյս շատ աւելի աւերուն ու քայքայուն շրջա-գիծին մէկ անկիւնը դեռ կանգուն կը մնայ միայն մատուռը՝ իր հնամենի շինուածքով, լայն կողերով, նեղ ու երկայն շերտ պատուհաններով, կոփա-ծոյ կամարակապ քարերով, դուռը իր տեղը, բաց, փոքր ու հաստակող ու երկաթեայ թափուածի մը հանգոյն խոշոր գամերով եւ կռնակի վրայ բաց՝ ուրկէ թէեւ քրքրած հինգ-վեց աստիճաններով վար մուտք կը գործուի ե-կեղեցւոյ մէջ, ուր չորս պատերէն զատ բան մը չէ մնացած եւ սեղանին մա-սերն ալ յատակին հաւասարած է, զնգճուած պատերուն մէջ թռչուններու բազմաթիւ բոյներ:

Դրան ներսի մուտքին քովիկն է վայրէջքը, անաղարտ մնացած աստի-ճաններով, ամբողջովին լեցուած ոսկորներով եւ շիրմաքարերու կոտրուածք-ներով, հոս ու հոն կոտրտած խաչեր ու խաչքարեր:

Մատրան ճիշդ կողքին ու սեղանին ետեւօք, գերեզմանաքարեր կուշտ կուշտի, նոյն աւերուն վիճակով, եւ հազիւ մէկ քանիներու վրայ կրցանք նշմարել նշաններ, վարդապետի մը տապանագիր մը քոսացած անընթեռնելի գիրերու քանի մը շարք:» (*Գէորգ Արքեպ. Արսլանեան*):

*Կարկառի վանքը Պետրոս Կարկառեցիի մահէն* (1608 +) *ետքն ալ պա-հած է իր գոյութիւնը տակաւին հարիւր տարիի չափ, վասնզի* 1687*ին գրը-ուած ՄԵԿՆՈՒԹԻՒՆ Ս. ՊԱՏԱՐԱԳԻ մը էջերուն վրայ, գրուած փոքր յիշատակարաններու մէջ, կը յիշուի Պետրոս Բերիացի բանասէր մը, որ իր Կարկառի առաջնորդութեան շրջանին այս գիրքը ստացած է* 1700 *Թուա-կանին:*

*Հաւանօրէն նոյնինքն Պետրոս Բերիացի, ինչպէս յիշատակարանը կը*

յիշատակէ 1708ին եղած է Կաթողիկոս Սիսի մէջ եւ 1710ին եկած է Հալէպ, ուր «ԲԱԶՈՒՄ ԱՆՑՔ ԱՆՑԻՆ» իր գլխէն։

## ԺԷ. ՔԵՍՈՒՆԻ ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔԸ

Մալաթիոյ առաջնորդութեան ենթակայ Պեհեսնիի յարակից թեմին մէջ, այժմ աւերակ Քեսունի մօտ, կը գտնուէր ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔԸ կամ ՇՂՈՒՐԻ ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔԸ, որ կրնանք նկատել մին այն վանքերուն, որոնք ԺԱ. դարուն գոյութիւն առին Սեւ Լեռան եւ Տաւրոսեան լեռներուն կողերուն վրայ։ Ինչպէս գիտենք, ԺԱ. դարուն երբ Հայերը խտացան եւ կեդրոնացան ստուար զանգուածներով Իսոսի ծոցին բոլորտիքը եւ Ամանոսի եւ Արեւելեան Տաւրոսի երկու զառիթափները, հոդ հայութեամբ լեցուեցան, հայ վանքեր հիմնուեցան «Սեւ լերինք» կոչուած շրջանին մէջ, ուր էր նաեւ Քեսուն։

Այդ վանքերը հիմնուեցան եւ զարգացան Վկայասէրի ջանքերով եւ Փիլարտոսի պաշտպանութեամբ եւ ինչպէս յայտնի է պատմութենէն կրթական գործունէութեան մեծ կեդրոններ դարձան։

Նոյն ատեն Ասորիներն ալ հոն ունէին ծաղկեալ դպրեվանքներ ու մենաստաններ եւ նոյնիսկ իրենց պատրիարքական աթոռը այդ շրջանակին մէջ հաստատուած էր։

Քեսունի Կարմիր վանքը, որ Գող Վասիլի (1103—1112) ձեռակերտն էր, իր պաշտպանութեան տակ ուսումնավայր մը եղած ըլլալ կը թուի, երբ իշխանական հաստատութիւն հիմնուած քովը իր նստոցին։

Այս վանքը Կիլիկիոյ սահմաններէն դուրս կը գտնուէր, միշտ յիշուած է «մօտ ի Քեսուն» այսինքն՝ Պեհեսնիի մօտ։ Կամ «ի մէջ լերանց Շուղր անուանեալ»։

Գող Վասիլ որուն իշխանութիւնը կը տարածուէր մինչեւ Հռոմկլայ եւ կը հովանաւորէր Ամանոսի եւ Տաւրոսի լեռնաշղթաներուն խառնման կողմերը, Սեւ լեռ կոչուած բարձունքներու եւ ձորամէջերուն մէջ համախմբուած վանքերը, կը տեսնուի որ նախանձախնդիր էր իր տիկնոջ հետ ուսումնական զարգացման վայր դարձնելու իր ձեռակերտ Քեսունի վանքը, ուր կը կազմուէր նոր վարդապետանոց մը Հայաստանէն գաղթող վարդապետներու գըլխաւորութեամբ եւ յատուկ դպրոց մը ԺԲ. դարուն մէջ, ուրկէ շատ նշանաւոր անձեր ալ ծաղկեցան։

Աչոտի–Ալպիստան ճամբուն վրայ գտնուող Արսլան Թաշէն դէպի հարաւ լեռներու մէջ կը գտնուի չորս–հինգ տուներէ բաղկացած քրդական փոքրիկ գիւղ մը, ընդարձակ՝ աւերակի վերածուած շէնքերու հողակոյտերուն վրայ, որ կը կոչուի մինչեւ այսօր Շուղր անունով։[1]

(1) Ըստ Տոքթ. Տէր Ղազարեանի Շուղր ասորերէն Սաղր բառին արաբական ձեւն է, որ յոդնակիի մէջ ՇՈՒՂՈՒՐ եղած է։ Սաղր=Շաղր կը նշանակէ անցք, կիրճ կամ երկրի մը սահմաններուն մօտ գտնուող անպաշտպան հողամաս (տես ՀԱՍԿ տարեգիրք, Ա. տարի, էջ 107)։ Տոքթ. Տէր Ղազարեան կը յիշէ նոյն անունով ուրիշ երեք

Այս Շուղր գիւղը կը գտնուէր Արսլան Թաշէն դէպի հարաւ, Քեսուն երկարող կիրճի մը մէջ եւ Քեսունէն ոչ շատ հեռու:

Այս վանքը կը կոչուէր ՇՈՒՂՐԻ ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ (տարբեր Մարաշի մօտ գտնուող ՇՈՒՂՐ ԱՆԱՊԱՏԷՆ) ուր Գրիգոր Վկայասէր եւ Անեցի Բարսեղ կաթողիկոս (1081–1113) ապրած են ժամանակ մը:

Վանքին ծագման մասին Հ. Ներսէս վրդ. Ակինեան կրցած է կարեւոր տեղեկութիւններ գտնել Միքայէլ Ասորի պատրիարքի պատմութեան ասորերէն բնագիրին մէջ, որուն համաձայն «Գող Վասիլի կինը առաւ Ասորիներէն Քեսունի մօտ գտնուող Կարմիր վանքը, որ կը պատկանէր սերունդէ սերունդ մեր[1] ժողովուրդին: Ան դուրս հանեց Ասորի վանականները եւ տուաւ Գրիգորիս կաթողիկոսին եւ հայ վանականներուն, նոյնպէս Զարարի վանքերը, որոնք Բեթ–Քենայէ կը կոչուէին, եւ են թուով հինգ վայրեր, ուր կային շատ վանականներ» (Michel le Syrien, Chronique, Թրգ. Chabot, հտ. Գ. Paris, 1905, page 199):

Ըստ Ակինեան վարդապետի, որովհետեւ Գող Վասիլ ԺԱ. դարու երրորդ քառորդին սկսաւ իր նուաճումները, հետեւաբար Գրիգոր Վկայասէր, որ ճամբորդութեան մէջ էր այն ատեն, չէր կրնար ներկայ եղած ըլլալ վանքին Ասորիներէ գրաւուած ատեն:

Գող Վասիլ եւ իր Տիկինը Կարմիր Վանքը տրամադրած կրնան ըլլալ Վկայասէրի 1103էն ետքը, ամենէն կանուխը:

«Նոցա զհովիւ իւրեանց բերեալ
որպէս զհայր սուրբ յանձանձեալ
Զոր սփոփանք ծերատածեալ
յաշխատութեանցըն հանգուցեալ

ինչպէս կ'ըսէ Շնորհալի (տես Տեառն Ներսէսի Շնորհալւոյ Հայոց կաթողիկոսի բանք Չափաւ, Վենետիկ, 1830 էջ 549):

Բարսեղ Անեցի 1103ին երբ Անիէն մեկնելով հովուական այցելութեան ելաւ, հանդիպեցաւ Քեսուն եւ այցելեց Գրիգոր Վկայասէրի, որ արդէն Սեւ Լեռը ձգեր եւ դացեր էր Քեսուն, ինչպէս կ'ըսէ Ներսէս Շնորհալի (տես Բանք Չափաւ, էջ 549):

---

վայրեր եւս. 1.– Չէյթունի կանտարի կամուրջին տակի կիրճը. 2.– Ցունուլէն Մէյ-
րիմ շիւ – «Ճանճիկի աերդ» տանող ճամբուն վրայ գտնուող կիրճը. 3.– Անտէրունի
լեռնոդաշտին մէջ, Մարաշէն Սիս տանող ճամբուն վրայ, Ենիճէ Գալէ գիւղին
մօտ, հայ եւ թուրք բնակչութեամբ խառն ու աւերակներով հարուստ փոքրիկ գիւղակը:
Այս գիւղին մօտերը կը գտնուէին Ցէնկ (=վանք) եւ ԱՆԱՊԱՏ անուն երկու
թրքաբնակ գիւղեր եւս, որոնք հաւանօրէն երբեմն հայաբնակ էին իրենց անուններէն դա-
տելով (Տոքթ. Յ. Տէր Ղազարեան, Շուղրի Անապատը եւ Կարմիր Վանքը, ՀԱՍԿ Հա-
յագիտական Տարեգիրք, Ա. տարի, էջ 107–109):
Շուղր գիւղին միջնաբերդին վրայ շինուած էր Շուղրի հռչակաւոր վանքը
(Նոյն), որուն պատմական անցեալին եւ փլատակներուն վրայ, իբրեւ ականատես, Տոքթ.
Տէր Ղազարեան տուած է տեղեկութիւններ (տես Հասկ տարեգիրք. Ա. տարի, էջ 107–
108): Շուղրի Անապատը եւ Քեսունի Կարմիր Վանքը հաւանօրէն կիրճերու անցքը
պաշտպանող բերդերու տեղը կամ անոնց մօտը շինուած վանքեր են (Նոյն, էջ 109):

(1) Այսինքն՝ Ասորի:

«Ի մեր՝ կրեայ անդուստ փախեալ
Որ Եփրատայ մերձ առկացեալ
Քաղաք Քեսունն իմն անուանեալ,
յոր հուպ է վանք Կարմիր կոչեալ:

Հոս վախճանած եւ թաղուած է Վկայասէր 1105ին (ՀԱ. 1952, էջ 485) վասնզի գիտենք թէ ան խոր ծերութեան մէջ էր, երբ Գող Վասիլէն հրաւիրուեցաւ Քեսունի վանքը գալու: Վկայասէր, իր քեռորդւոյն Ապիրատ իշխանին երկու անչափահաս զաւակները՝ Գրիգոր Ապիրատը եւ Ներսէսը (ապագայ Շնորհալին) հետը առած գնաց Քեսուն Կարմիր Վանքը եւ անոր վանահօր «Մանուկ» կոչուած Ստեփանոս վարդապետին խնամքին յանձնեց, որպէսզի կրթէ զանոնք:

Վկայասէրի մահէն (+1105 Յունիս 3) ետք Բարսեղ կաթողիկոս ալ Կարմիր վանք մնաց, ինքն ալ հոն մեռաւ եւ թաղուեցաւ (Ուռհայեցի, էջ 329):

Բարսեղ կաթողիկոս իրեն աթոռանիստ ըրած էր Ծուղրը:

Այս պատճառով այդ դարուն կաթողիկոսներու նստոցներու շարքին Վարդան Պատմիչ (էջ 127—128) կը յիշէ Ծուղրը իբր «Աթոռն Հայոց»:

Շնորհիւ վանահայր Ստեփանոս Մանուկի, Ծուղրի Կարմիր Վանքը կը դառնայ դպրանոց եւ ուսումնարան: Հոն ուսում կ'առնեն Գրիգոր Պահլաւունի եւ Ներսէս Կլայեցի կաթողիկոսները, ինչպէս նաեւ Իգնատիոս, Սարգիս եւ Բարսեղ անուն, ամէնն ալ Ներսէս Կլայեցիին պէս «Շնորհալի» մականուանեալ մատենագիրները (Ազգապատում էջ 1336):

Քեսունի եւ շրջակայից որքան ատեն որ իշխեցին Գող Վասիլ (Լատիներէն Covasilius կամ Convassilius կոչուած) եւ Տղայ Վասիլ (1112—1118), այս վանքը իր փայլը պահեց: Նոյնիսկ կարելի է ենթադրել թէ չէն էր Քեսունի Վահրամ դուքսին (1138—1140) եւ Պաղտինի (1142—1145) իշխանութեան ատեն, սակայն 1150ական թուականներէն ետքը երբ երկիրը Թուրքերուն ձեռքը անցաւ, հետզհետէ անշքացաւ:

1215ին Քեսունի մէջ գրուած է ճառընտիր մը, ինչպէս նաեւ Եփրեմ Խուրիի ճառերը որոնք թարգմանուած են Գէորգ անուն անձէ մը որ մասամբ բնագիրին հետ գրուած է (Կարինեան ցուցակ, էջ 76, Էջմիածնայ ձեռագիր Թ. 899) ինչ որ ցոյց կու տայ թէ, դեռ ԺԳ. դարուն սկիզբը մտաւորական շարժում գոյութիւն ունէր եւ Վկայասէրի օրերուն աւանդութիւնը կը պահուէր թարգմանութիւններու մղում տրուելով:

Այս պատմական վանքին աւերակներուն մէջ կ'իջեւանէին աւանդաբար Պեհեսնէէն Հռոմկլայ, Ս. Ներսէսի վանքը ուխտի գացող Հայերը եւ հոն ուխտ կը կատարէին, ոչխարներ զենելով եւ պատարագ մատուցանել տալով (Աւետիս Գ. Թէքէեան Սիոն 1933 էջ 287):

***

Մալաթիոյ հայ վանքերուն վրայ տրուած այս տեղեկութիւնները պատճառներ ունիմ ենթադրելու թէ կատարեալ չեն: Անհաւանական չէ որ իմ յիշած վանքերէս զատ ուրիշ վանքեր ալ գտնուած ըլլան, անյիշատակ մնացող այս շրջանակին մէջ:

*Ինչպէս տեսնուեցաւ, Մալաթիոյ վանքերուն վրայ ամբողջական տեղեկութիւններ տալ ջանացած են Տրդատ եպիսկոպոս*[1] *եւ Գէորգ եպիսկոպոս Արսլանեան*[2]*։*

*Առաջինը իր տեղեկութիւնները հեռուէն ստացած է վասնզի Մալաթիա այցելած չէ անձամբ, տեղւոյն վրայ ստանալու համար իր տեղեկութիւնը, իսկ երկրորդը որ Մալաթիոյ մէջ առաջնորդական պաշտօն վարած է, անձամբ տեղւոյն վրայ քաղած է իր տեղեկութիւնները։ Հետեւաբար միշտ նախապատուութիւն տուի Արսլանեանի տեղեկութիւններուն, եւ հետեւաբար ջնջեցի Մալաթիոյ Հայ Վանքերու շարքէն Տրդատ եպիսկոպոս Պալեանի յիշած հետեւեալ վանքերը․*

1․— Վանքի գիւղի անունը անծանօթ վանքը․

2․— Ս․ Մամասայ վանքը Աղըն գիւղի․

3․— Խաչավանքը՝ Շեփիկ գիւղի։

*Վասնզի Գէորգ եպիսկոպոս Արսլանեան իրաւամբ դիտել կու տայ թէ Առաջինը, որ երբեմն վանք*[3] *եւ յետոյ ուխտատեղի մը եղած էր՝ կ'ըսէ Պալեան եպիսկոպոս, Մալաթիոյ վիճակէն դուրս Ակնայ առաջնորդութեան սահմանին մէջ գտնուող ՎԱՆՔ Հայ-Հոռոմ գիւղին մօտ պէտք է ըլլայ (տես ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ 1907 էջ 518), երկրորդը՝ որ շատոնց շարաթացեալ վանքերէն մէկն էր, կը գտնուէր Արաբկիրի Աղըն կամ Վաղուէր*[4] *գիւղին մօտ, եւ կը պատկանէր Արաբկիրի առաջնորդութեան (Նոյն) եւ երրորդը՝ նոյնպէս վաղուց աւերուած, կը գտնուէր Շեփիկ գիւղին*[5] *մօտ, որ կը պատկանէր դարձեալ Արաբկիրի առաջնորդութեան։ Իսկ աւելցուցի Գէորգ Արքեպ․ Արսլանեանէ յիշուած 1․— Ս․ Գէորգ եւ Ս․ Մարտիրոս․ 2․— Ս․ Կանոնոս․ 3․— Ս․ Օհան եւ 4․— Հեքիմխանի Ս․ Օհան եւ Ս․ Աստուածածին վանքերը, որոնք բոլորովին չեն յիշուած Պալեան եպիսկոպոսէ։ Իսկ երկու եպիսկոպոսները հաւասարապէս բնաւ չեն խօսած երկու նշանաւոր վանքերու, Կարկառի Ս․ Տիմոթէոս եւ Քեսունի Կարմիր վանքին վրայ, որոնք ներելի չէ անտեսել, քանի որ Մալաթիոյ շրջանակին մէջ կը գտնուէին եւ այնքան կարեւոր դեր կատարած էին անցեալին։*

---

(1) Պալեան եպիսկոպոս ՀԱՅ ՎԱՆՈՐԱՅՔի շարքին ՄԱԼԱԹԻՈՅ ՎԱՆՔԵՐԸ (տես ԲԻՒԶԱՆԴԻՈՆ թ. 2975, Յունիս 18 - Յուլիս 2 1906։

(2) ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ, 1907, էջ 517, ինչպէս նաեւ ԲԱԶՄԱՎԷՊ, 1933—1939 տարիներու մէջ հրատարակուած ՊԱՏԱՌԻԿՆԵՐ ԼՈՒՍԱԾԻՐ ՇԱՐԱԹԱՑԵԱԼ ՎԱՆՔԵՐԷՆ շարքը։

(3) Իբր թէ եկեղեցիին քարերը քակելով գիւղին մէջ ժողովարան մը շինած են եղեր գիւղացիք (Բիւզանդիոն, թ. 2975)։

(4) Սրուանձտեանց, ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա. 283, Էփրիկեան, ԲՆԱՇԽԱՐՀԻԿ ԲԱՌԱՐԱՆ, էջ 96 եւ 269, Պոտուրեան, ՀԱՅ ՀԱՆՐԱԳԻՏԱԿ, էջ 104, երեքն ալ հաստատապէս Աղընը Արաբկիրի առաջնորդութեան ենթակայ ցոյց կու տան, իսկ Արսլանեան եպիսկոպոս Ակնայ, որ սխալ է։ Աղըն կը գտնուի Արաբկիրի հարաւակողմը եւ հեռու է Ակնէն։

(5) Շեփիկ նոյնպէս Արաբկիրի կը պատկանէր (ԲՆԱՇԽԱՐՀԻԿ, էջ 269)։

Բ.

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷՆԵՐԸ

*Կաթոլիկութիւնը* 1850–*ական թուականներուն մտած է Մալաթիա, սակայն որոշ թուական մը չունինք: Պէննէեան քհնյ.* (Ը. 71) «Բողոքականները ալ կաթոլիկներու հետ, միեւնոյն տարւոյն մէջ մուտ գտած» *ցոյց կու տայ, բայց չէ ըսած թէ կաթոլիկութիւնը որ տարին մուտք գտած է որպէսզի կարելի ըլլար երկուքին ալ հաստատութեան թուականը ճշդել:*

*Բոլորովին անհաւանական չէ որ* 1828–*էն առաջ Մալաթիոյ մէջ կաթոլիկութեան յարող Հայեր գտնուած ըլլան* (*տես Գերապայծառ Անդրէաս Վրդ. Աղեքսանդրեան* Պատմ. Սեբաստիոյ 398) *որսացուած կաթոլիկ քարոզիչներէ, սակայն* 1828–*ի հալածանքներու ատեն ոմանք հրաժարած եւ ոմանք ալ գաղթած ըլլան մօտաւոր տեղեր եւ կաթոլիկութիւնը անհետացած քաղաքէն մինչեւ անցեալ դարուն կէսը, երբ վերստին քարոզուեցաւ կաթոլիկութիւնը:*

*Առաջին քարոզիչը եղած է Ղեւոնդ Վրդ. Խորխոռունի Բրդնիկցին, Զմմառի աշակերտներէն, որ Եւդոկիոյ մէջ կը գործէր եւ* 1856–*ին եղած էր Թոքատի ընծայարանի մեծաւոր* (Պատմ. Սեբաստիոյ, *էջ* 335): *Այս վար–*



**ՂԵՒՈՆԴ ԱՐՔԵՊՍ. ԽՈՐԽՈՌՈՒՆԻ**
**հիմնադիր եւ առաջին Եպիսկոպոս հայ կաթողիկէ համայնքին ի Մալաթիա:**

դպրեւոր Պօղոս Վրդ. Եագուպեանի հետ, Եղոկիոյ մէջ Քօճաճուգ ըսուած տեղը գեղեցիկ եռայարկ վանք մը կը շինէ ընդարձակ պարտէզի մէջ, ամենալաւ դիրքի մը վրայ: Իբրև ձեռներէց անձ 1859-ին կը ղրկուի[1] Մալաթիա առաքելութեան պաշտօնով, եւ հոն յաջողութիւններ ձեռք կը բերէ (Պատմ. Երկոտասան Կաթողիկոսաց. էջ 49 եւ Պատմութիւն Սեբաստիոյ էջ 335) վասնզի 1859-ին իր ժամանումէն ետք, մաս մը հայեր դարձեալ կը յարին կաթոլիկութեան (Պատմութիւն Սեբաստիոյ 398): Ղեւոնդ Վրդ. Խորխոռունիի այս յաջողութիւնը կը մղէ Հայ Կաթոլիկ նուիրապետութիւնը զինքը նշանակել ղեկավար այս կրօնածաւալ աշխատանքին:

Ղեւոնդ Վրդ. Խորխոռունի կը յաջողի իրեն վստահուած գործը կարելի եղածին չափ առաջ տանիլ, իրեն օգնական ունենալով Զմմառի վանքին միաբաններէն ոմանք եւ մեծ ջանքեր կ'ընէ տարածելու համար կաթոլիկութիւնը, սակայն 1859-էն մինչեւ 1915, 55 տարուան ընթացքին Մալաթիոյ Հայ կաթոլիկ համայնքը շատ մեծ թիւ մը չէ ունեցած:

Մալաթիոյ Հայ կաթոլիկները երբեմն աճած եւ երբեմն պակսած են (Պատմ. Սեբաստիոյ էջ 398) այնպէս որ հաստատուն թիւ մը չեն ունեցած:

Ըստ V. Guinet-ի 1891-ին քաղաքին մէջ 770 էր անոնց թիւը (370 այր եւ 400 կին): 1900-ին անոնք 80 տուն էին (Մ. Օրբերեան Բիւրակն. 1900 էջ 86):

1915-ին Հայ կաթոլիկներու թիւը քաղաքին մէջ 200 տունի չափ էր, ինչ որ բաւական նշանակելի աճում մը ցոյց կու տայ:

## ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐԸ

Ղեւոնդ վարդապետ Խորխոռունիի ջանքերով Մալաթիոյ մէջ թէեւ սակաւաթիւ համայք մը կազմուած էր, երբ Հայ-Կաթողիկէ կաթողիկոսը՝ Գրիգոր Պետրոս Ը. Տէր Աստուածատուրեան (1843—1866) տեսնելով առաքելութեան յառաջդիմութիւնը, հրամայեց եպիսկոպոս մը ընտրել:

Ղեւոնդ Եպս. Խորխոռունի (1861—1897), որ Հայ-Կաթողիկէ համայնքին հիմնադիրը եղած էր, առաջին եպիսկոպոսը եղաւ այս նոր եպիսկոպոսական աթոռին 7 Ապրիլ 1861-ին ձեռնադրուելով իբր եպիսկոպոս Մելիտի-

---

(1) Ա. Եագուպեան (տես Նոր Մալաթիա, Գ. տարի, թիւ 2, էջ 11), կը հաստատէ թէ Ղեւոնդ վրդ. Խորխոռունի Կ. Պոլսէն Մալաթիա հրաւիրուած է ափիոնի վաճառական Բինտիւպէկեան Հաճի Պօղոս աղայի կողմէ. Բինտիւպէկեան Փիլիպպոս աղաւ լաւին կ'երբ բերած է իբր թէ, եւ կը յարէ թէ Բինտիւպէկեան երեք եղբայրները շաւաւիղներն էին Մալաթիոյ հնագոյն հարուստներէն, բազմանդամ տուներով եւ ազգականներով, ժամանակի ընթացքին շատցած են, բայց 80 ընտանիք կը հաշուուէին ամբողջ կաթոլիկները, որոնք նոր հետեւողներ չեն կրցած ունենալ «որովհետեւ Ղեւոնդ Խորխոռունի եպիսկոպոսը խոժոռ եւ լաւ. ծոյլ մ'էր եւ ապա կաթոլիկ»: Այս տեղեկութիւնները ուրիշներէն չեն յիշուած, ուստի կը վարանինք իբրեւ վաւերական ներկայացնել:

նչի Թեմին որ Հայ-Կաթոլիկ նուիրապետութեան մէջ տեղ կը գրաւէր (Պատ. Սեբաստիոյ էջ 318. Պատմ. Եպիսկոպոսական Աթոռոց էջ 24–25 եւ Ազգապատում էջ 3974):

Ղեւոնդ Եպս. Խորխոռունի եպիսկոպոսական այս նոր թեմը կազմակերպեց եւ զայն օժտեց եկեղեցիով, դպրոցով, առաջնորդարանով եւայլն:

Գարեգին Եպս. Սրուանձտեանց 1878-ին իր Մալաթիա այցելութեան առթիւ կը գրէ թէ «Գերապայծառն, որոյ միայն արտաքինն է պայծառ ինքն պատմեց ինձ թէ՝ ինչպէս կանխապէս մարդ մը եւ մատ մը տեղ չեն ունեցած հոս, թէ ինչպէ՞ս ժողովրդական հակառակութեանց երեսէն այսօր բաւական թուով կաթոլիկ, մեծ եկեղեցի մը, վարժարան, առաջնորդարան եւ այլ կալուածներ ունին, թէ՝ իրենց շահուն մեծ մասն Մազլըմեան Առաքել Վարդապետին պարտական են, որ երբեմն Առաջնորդ էր քաղաքիս, եւ միջոց մը ինքն իսկ ժողովրդեան մասին մը հետ կաթոլիկ եղած եւայլն եւայլն: Ասոնք տեղի ունեցած էին ոչ թէ Գերապայծառին հանճարեղութեանց ու զօրաւորութեանց, այլ Մազլըմեանի չարաբարութեանց, ուրիշ Առաջնորդաց անպիտանութեանց՝ եւ ժողովրդեան տգիտութեանց: Զարմացիր ուրեմն թէ ինչպէ՞ս մնացեալներն հայ մնացած են ցարդ. (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ Ա. էջ 312–313):

Արդարեւ Մազլըմեան Առաքել Վրդ. որ 1866–1868 եւ 1869–1873 վարած է Մալաթիոյ առաջնորդութիւնը, մեծ ազդում հանած է իր շուրջը եւ 1873-ին նոյնիսկ կաթոլիկութեան յարած է իրեն հետ տանելով մաս մը ժողովուրդ:

Սակայն հակառակ Սրուանձտեանցի կարծիքին անուրանալի է նաեւ Ղեւոնդ Եպս.ի կարողութիւններն ալ որոնք կարելի չէ ուրանալ:

Խորխոռունի Եպս. կը թուի թէ մոլեռանդ[1] կաթոլիկ մը, բայց նոյն ատեն ալ լաւ հայ մը եւ ազգային իրաւանց պաշտպան մը եղած է եւ հակառակորդ՝ պապական աթոռին սորուկ եւ ապազգային Անտոն Հասունի կաթողիկոսական ընտրութեան:

Այս պատճառով 1866 Սեպտ. 2-ին գումարուած ընտրողական ժողովին նախագահող Յովսէփ Վալերկա Երուսաղէմի Լատին Պատրիարքին կարգադրութեամբ զրկուած է ընտրելիութենէ եւ Հռոմի բարձրագոյն կամքովը Հասունի ընտրութիւնը գրեթէ բռնի կատարուած է 1866 Սեպտ. 13-ին: (Ազգապատում էջ 4180):

Հակառակ այս յայտնի ընդդիմութեան որ Խորխոռունի Եպս. ցոյց տուած էր իր ընտրութեան դէմ, Հասուն զինքն պաշտօնէ չէ դադրեցուցած, այլ նոյնիսկ 1870-ին անոր յանձնած է նաեւ Սեբաստիոյ առաջնորդութեան կաթողիկոսական փոխանորդութիւնը:

Ղեւոնդ Եպիսկոպոս երբեմն Մալաթիա, երբեմն Եւդոկիա եւ Սեբաս–

---

(1) Իր մոլեռանդութեան իբրեւ փաստ կ'արժէ յիշել իր մէկ նամակը 9 Ապրիլ 1896 թուականով ուղղուած Կ. Պոլսոյ Հայոց Պատրիարքարան, ուր իբրեւ մեծ դայթակղութիւն կ'իմացնէ թէ Հայերը եւ Բողոքականները միասին կրօնական պաշտամունք կը կատարեն:

տէր մնալով, կառավարեց այս առաջնորդութիւնները մինչեւ 1876, երբ հրաժարեցաւ Սեբաստիա Թոգատի փոխանորդութենէն (Պատ. Սեբաստիոյ. 338), եւ նուիրուեցաւ բոլորովին իր ստեղծած Մալաթիոյ հօտին կազմակերպութեան եւ բարգաւաճման:

Անիկա շինեց ընդարձակ Առաջնորդարան մը եւ ուրիշ կարեւոր շէնքեր:

Շինեց Վերափոխման Ս. Աստուածածնի Եկեղեցին եւ մանչերու ու աղջիկներու դպրոցներ:

Անժխտելի իրողութիւն մըն է որ այս Եպիսկոպոսը բոլորանուէր աշխատած է, իր բոլոր ուժերը ի սպաս դնելով, վասնզի «Խորխոռունի եպիսկոպոս հիմնադիր եւ չարքաշ գործաւոր եղած է Փարաշէն եկեղեցւոյ, որուն շինութեան ընթացքին վնասուած է ծանր փարեր կրելուն հետեւանքով»: (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 48:)

Ղեւոնդ Եպս. Մալաթիա քաղաքէն դուրս գաւառին մէջ կրօնածաւալ գործունէութեամբ կաթոլիկներու թիւը բաւական աւելցուցած է:

Ինքն է որ մասնաւորապէս Պեհեսնիի եւ Հիսնի Մանսուրի եւ անոնց շրջակայից մէջ հաստատեց առաքելութիւններ:

Ղեւոնդ Եպիսկոպոս Խորխոռունի վախճանեցաւ 1897-ին ալեհեր վիճակի մէջ արդիւնաւոր պաշտօնավարութենէ մը ետք: Թաղուեցաւ իր հիմնած եկեղեցւոյ մէջ (Պէննէեան քհնյ. Ը. 70):

Իրեն յաջորդած է ՄԻՔԱՅԵԼ ՎՐԴ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ (1899−1915), Մէզրեցի (Խարբերդ): Ծնած է 19 Փետր. 1846-ին եւ իր նախնական ուսումը առած է տեղւոյն ծխական վարժարանին մէջ: Ապա իր ծնողաց հետ կը փոխադրուի Մալաթիա, ուր կը շարունակէ իր ուսումը եւ ապա կը ղրկուի Զմմառի վանքը, ուր կը ձեռնադրուի քահանայ եւ կը դառնայ Մալաթիա այս անգամ առաքելական պաշտօնով մը: Ղեւոնդ Եպիսկոպոս Խորխոռունիի հետ երկար ատեն կը գործակցի: Տարիներ վերջ Պոլիս կը կոչուի եւ Խորխոռունիի մահէն ետք կ՚ընտրուի Մալաթիոյ Եպիսկոպոս եւ կը ձեռնադրուի 6 Փետրուար 1899-ին:

«Գործունեայ եւ փութաջան անձ» մը եղած է եւ հայ-կաթոլիկ նուիրապետութեան մէջ ուշագրաւ դէմք մը, այնպէս որ 1909-ին պատրիարքական ընտրութեան ատեն 33 քուէ շահած է: Հետեւանք իր դատիարակութեան, կը թուի թէ մոլեռանդութիւն ցոյց տուած է, ինչպէս կը հասկցուի 1907 Փետրուար 24 թուականով Մալաթիոյ Հայոց Առաջնորդարանէն Պոլսոյ Պատրիարքարան գրուած նամակէ մը:

1915-ին Գերապայծառ Խաչատուրեան հերոսական մահ մը ունեցած է տանելով քաջաբար այն անլուր չարչարանքները զորս իրենց տուած են բարբարոս Թուրքերը, այնպէս որ առաջին դարերու մարտիրոս սուրբերու պսակին արժանացած է:

Խաչատուրեան Գերապայծառի մահը ականատես մը այսպէս պատմած է (տես ՀԱ, 1920, էջ 39−40):

1915 «Յունիս ամսոյն կիրակի օր մը երեկոյեան ժամը 5-ին երկու

վայրենաղէմ զինուորներ առաջնորդարանը կը մտնեն եւ առանց որեւէ պատճառի զեպիսկոպոսը քաշքշելով կը տանին ոստիկանատունը, հոն ժամ մը տախտակի վրայ պառկեցնելէ յետոյ Մութեսարըֆ Ֆուատ պէյի առջեւ կը հանեն: Այս հրէշը իրմէ կը պահանջէ եկեղեցւոյն, առաջնորդարանին եւ դպրոցին յանձնումը, եւ երբ Գեր. Խաչատուրեան կը մերժէ, այն ատեն խուկոյն կը հրամայէ Միւթեսարըֆը իր շուրջը բոլորող մարդակեր գազաններուն որ զինքը ամենաասոսկալի տանջանքներով չարչարեն: 1. — Մօրուքը կը փետտեն, 2. — Վիզը չուան կը ձգեն եւ ձեռքերը կը կապեն ետեւը, 3. — Հրեղով կը տանին գետեզերքը եւ կը ձգեն ջուրը, 4. — Ակռաները քաշել կ'ուզեն. խսկոյն ինքը կը հանէ կեղծ ակռաները, յուսալով որ տանջանքէ մը պիտի ազատէր, սակայն անոնց վայրագութիւնը չէր յագեցած, վասնզի աքցանով անոր բերնին լինտերը կը հանեն. 5. — Կը մերկացնեն զինքը եւ կ'առնուն վզին ոսկի խաչը եւ եպիսկոպոսական մատանին ու կը պառկեցնեն գետնի վրայ եւ 300 զինուորի կոխկռտել կու տան. 6. — Կուրծքին վրայ կրակ կը վառեն ու սուրն կ'եփեն եւ ապա ականջները կը կտրեն եւ այսպէս հազարումէկ լլկանք տալէն յետոյ կը մեռցնեն եւ շուղամբարձ կառքի մը վրայ դրած կը տանին կը նետեն աղբանոցը»:



ՄԻՔԱՅԷԼ ԵՊՍ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

*Գէորգ Մելիտինեցի* (Նախճիրներ, էջ 48), *կ'ըսէ թէ Խորխոռունի եւ Խաչատուրեան եպիսկոպոսները իրենց պաշտօնավարութեան շրջանին կրօնական եւ կրթական գործերու համար իբրեւ օգնական ունեցած են.*

1. — Հ. Ղեւոնդ Խորխոռունի

2. — Հ. Թադէոս Թովմաճան,

3. — Հ. Յովսէփ Խաչատուրեան *վարդապետները:*

*Այս երեք վարդապետներէն Հ. Թադէոս Վրդ. Թովմաճան, Խարբերդցի,* (*ծն.* 1864 *Յունուար* 6, *ձեռնադրուած* 1887 *Ապրիլ* 10) *Վենետիկի Միս-*

*բանութենէն*, «մեծ օգտակարութիւն ունեցած է կրթական մարզին մէջ, գերազանցելով իր բոլոր պաշտօնակիցները» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 48)։

*Խորխոռունի մեռած ատեն Մալաթիա կը գտնուէին երեք կաթոլիկ վարդապետներ որոնք կը քահանայագործէին եւ երեք Անարատ Յղութեան Մայրապետներ*։

*Ըստ Մկրտիչ Որբերեանի* (Բիւրակն, 1900 էջ 87–88), «Փայլուն դիրք ունէր կաթոլիկ Առաջնորդարանը Գերապայծառ ԻՏԱՐԷ ժողովոյ մէջ ունեցած դիրքով ու կարգ մը կաթոլիկ պաշտօնեաներով շատ լաւ կը տնօրինէ անհատական, եկեղեցական եւ ազգային գործերը»։

*Այս դիրքը, աւելորդ է ըսել, թէ ան կը պարտէր առաւելապէս կաթոլիկ պետութիւններու եւ պապական պաշտպանութեան եւ ոչ թէ իր մեծ կարողութիւններուն*։

1914–1918*ի համաշխարհային պատերազմին ատեն Թուրք ջարդարարները, զօրացած Տեւտոն քաջալերութեամբ այլեւս ոչ մէկ վերապահութիւն դրին եւ ջարդեցին Հայազգաւանը, կաթոլիկը եւ բողոքականը անխտիր*։

*Այս սպանդին, ինչպէս հայ կաթոլիկ առաջնորդը նոյնպէս նաեւ զոհ գացած են հետեւեալ հայ կաթողիկէ կղերականները* (*տես ՀԱ*, 1920, *էջ* 46)։

1․— *Ստեփան վարդապետ Կոստանեան, ծնած* 1853 *Մալաթիա, ուր առած է իր ուսումը եւ ձեռնադրուած՝* 1894–*ին*։

2․— *Ղեւոնդ վարդապետ Խորխոռունի, ծնած* 1881–*ին Մալաթիա, ուսած Զմմառ, ձեռնադրուած* 1906–*ին, նահատակուած Միքայէլ Խաչատուրեան Գերապայծառին հետ*։

3․— *Յովհ․ վարդապետ Կտոյեան, ծնած* 1884 *Կ․ Պոլիս, ուսած Զըմմառ, ձեռնադրուած* 1910 *Մալաթիա, նահատակուած նոյնպէս Գերապայծառին հետ*։

4․— *Կղեմէս վարդապետ Սիսկերեան, ծնած* 1861–*ին Զէյթուն, ուսած Մալաթիա, ձեռնադրուած* 1885–*ին, նահատակուած* 1915–*ին ի Պեհեսնի*։

5․— *Իգնատիոս վարդապետ Շահինեան, ծնած* 1867–*ին Հիսնի Մանսուր, ուսած Մալաթիա, ձեռնադրուած* 1891–*ին, նահատակուած* 1915–*ին ի Կէվրիք*։

6․— *Տ․ Կարապետ Քհնյ․ Ասլանեան, ծնած* 1869–*ին Հիսնի Մանսուր, ուսած Մալաթիա, ձեռնադրուած* 1901–*ին, նահատակուած* 1915–*ին Հիսնի Մանսուր*։

7․— *Տ․ Մեսրոպ Քհնյ․ Ազատիկեան, ծնած* 1871–*ին Մալաթիա, ուսած Մալաթիա, ձեռնադրուած* 1905–*ին, նահատակուած* 1915–*ին Հէքիմ Խան*։

*Իսկ Անարատ Յղութեան միաբանութեան քոյրերէն, Շուշան Ազարեան որ մեծաւորուհին էր Մալաթիոյ իրենց տան, հոն նահատակուած է*։



Մալաթիոյ Հայ-Կաթողիկներու եկեղեցին

## ՀԱՅ-ԿԱԹՈԼԻԿ ԵԿԵՂԵՑԻՆ ԵՒ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԸ

*Հայ-Կաթոլիկները ունէին քարաշէն բաւական ընդարձակ եկեղեցի մը* (Բիւրակն, 1900, էջ 87) *յանուն Վերափոխման Ս. Աստուածածինի, շինուած Ղեւոնդ Արքեպիսկոպոս Խորխոռունիի ջանքերով։*

*Եկեղեցին կը գտնուէր Հայոց Ս. Երրորդութեան Եկեղեցիէն քարընկէց մը հեռու։*

*Այս եկեղեցին* 1893*-ի երկրաշարժէն բաւական վնասուած է եւ Ղեւոնդ Արքեպիսկոպոս Խորխոռունի նորոգած է զայն։*

*Եկեղեցիին մօտը կառուցուած էին Եպիսկոպոսարանը կամ Առաջնորդարանը* (Բիւրակն, նոյն) *եւ դպրոցները, որոնք* 1895*-ի դէպքին կրակի տրուեցան Թուրքերուն կողմէ* (*Պէննէեան, Քհնյ. Ը.* 71)։

*Անոնց տեղ կառուցուեցան աւելի փառաւոր ու ներկայանալի շէնքեր։*

1910*-ին կառուցուած է նաեւ գեղեցիկ կուսաստան մը Անարատ Յղութեան քոյրերուն համար, ոսկեդրամ մօտաւորապէս* 1500 *օսմանեան ոսկի ծախքով* (*Պէննէեան, Ը.* 71)։

## ՀԱՅ-ԿԱԹՈԼԻԿ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ

*Հայ կաթոլիկներու կրթական գործունէութիւնը իրենց հոն հաստատուելէն անմիջապէս ետք կը սկսի։*

*Ունէին թէ՛ մանչերու եւ թէ՛ աղջիկներու վարժարան։* 1900*-ին ման-*

*չերու դպրոցը ունէր* 110 *աշակերտ միակ վարժապետով մը, որուն կ'օգնէին վարդապետներ* (Բիւրակն, *նոյն* 85)։ *Իսկ աղջիկներու դպրոցը* 1900–*ին ունէր* 200 *աշակերտներ, որոնց կը դասախօսէին երեք մայրապետներ* (*Նոյն*)։

1891–*ին* V. Guinet *կ'ըսէ թէ Հայ-Կաթոլիկները ունէին* 2 *նախնական վարժարան* 100 *մանչ եւ* 30 *աղջիկ աշակերտներով, եւ* 2 *այր դասատուով*։ *Ծախքն էր* 20 *ոսկի միայն*։

*Տղայոց վարժարանին ուսուցիչը կը ստանար* 1900*ին տարեկան* 720 *դահեկան, իսկ մայրապետները թոշակաւոր չէին* (*Նոյն*, 88)։

*Մկրտիչ Որբերեան իր Մալաթիոյ այցելութեան տպաւորութիւններուն մէջ գրած է թէ* «կաթոլիկներու իգական դպրոցին ձեռագործական ճիւղը որքան գնահատելի, նոյնքան արգահատելի է ուսումնական մասը (*Բիւրակն*, 1900, *էջ* 86)։



Մալաթիոյ Հայ-Կաթոլիկ Մայրապետները

*Տասներկու տարի վերջ, Պէննէեան Կարապետ Քհնյ.* (*Ը*. 73), *որ երեք յարանուանութեանց դպրոցները հաւասար մակարդակի վրայ կը դնէ աւանդուած ուսմանց տեսակէտով*, «ձեռագործի մասին Հայոց դպրոցը մի քիչ ետ կը մնայ կրնանք ըսել» *կ'ըսէ, ինչ որ անժխտելի չէ, քանի որ Անարատ Յղութեան Մայրապետները Կ. Պոլսոյ մէջ նրբահիւս ձեռագործներու պատրաստութեան ընտելացած էին*։ *Եւ աղջիկներու դպրոցը վստահուած ըլլալով Անարատ Յղութեան Հայ Մայրապետներուն բնական է որ հոն աւելի ուժ տրուած պիտի ըլլար ձեռագործի*։

*Գալով տղոց դպրոցին, անոր համար ալ Մ. Որբերեան կ'ըսէ թէ* «խեղճութեան վերջին բազրոտին վրայ կը գտնուի» (*Նոյն*)։ *Այս վիճակէն ազ–*

դուած, փրոֆ. Մ. Որբերեան ցաւ կը յայտնէ ըսելով թէ. «Ձեմ գիտեր, կ՚ըսէ, Միքայէլ Գերապայծառ ի՞նչպէս կրնայ տանիլ այս անկումին»: Եւ դիտել կու տայ իրաւամբ թէ Գերապայծառը «եթէ ուզէ, իրեն համար նիւթական ոյժ չի պակսիր զայն բարձրացնելու»: «Երբոր փառաւոր շէնքերու, աղբիւրներու եւ պարտէզներու համար հարիւրաւոր լիրաներ կը գտնուին, արդեօք չէ՞ որ փոխան տարին 750 դահեկանի, 7500 դահեկան ալ կրթական կենսական գործին տրամադրելի ըլլայ: Այս պարագային տակ, մարդ կը փորձուի խորհիլ թէ մասնաւոր ատելութի՞ւն մը կայ կրթութեան դէմ եւ բնաւ չունի՞ը հասած չէ՞ Վենետիկի եւ Վիեննայի միաբանութեանց» (Բիւրակն, նոյն, 86):

Մալաթիոյ կրթական գործին յետամնաց վիճակը ուշադրութիւն պէտք է գրաւած ըլլայ Պոլսոյ Հայ կաթոլիկ կեդրոնին մէջ, վասնզի հոն, 1892 Մարտին կազմուած Հայ կաթոլիկ «Հայ Երիտասարդաց Ակումբը» անշուշտ իրեն եղած խնդրանքի մը վրայ, յանձն առած է Մալաթիոյ ուսանողներուն նպաստ մը ընել (տես Մէնմուայը աղբար, Թ. 2340. ՀԱ. 1952, էջ 429):

Միայն կասկածելի է որ երկար տեւած ըլլայ այս նպաստը, վասնզի 1896–էն յետոյ բնաւ չէ յիշուած:

## ԹԵՄՕՐԱՅՔ

Ինչպէս տեսնուեցաւ, Ղեւոնդ Եպս. Խորխոռունիի ջանքերով Մալաթիոյ մէջ Կաթոլիկութիւնը մուտք գործելէն ետք, շրջակայ վայրերուն մէջ կաթոլիկ հայերու պզտիկ խումբեր գտնուած են, որոնք ենթակայ էին Մալաթիոյ Հայ–Կաթոլիկ Գերապայծառին իրաւասութեան:

Այսպէս ԱՆՍՈՒՐ փոքրիկ գիւղը Մալաթիա քաղաքին մօտ, որ ամբողջովին կաթոլիկ էր, բնակչութիւն 15–20 տուն, (ըստ ոմանց 30):

ՀԻՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ ունէր 120 տուն Հայ–Կաթոլիկներ, որոնք կաթոլիկութեան յարած են Խորխոռունի եւ Խաչատուրեան Եպիսկոպոսներու եւ Զմմառեան միաբանութեան ջանքերով:

Ունէին Եկեղեցի մը Յիսուս Փրկիչ անունով (Գեր. Անդրէաս Աղէքսանդրեան, Պատմութիւն Սեբաստիոյ, էջ 406–7): Քաղաքին շուրջը եղած գիւղերուն սակաւաթիւ հայերն ալ հասարակ կաթողիկեայ են իբր 80 տուն ըստ Գեր. Աղեքսանդրեանի, (նոյն):

ՍԱՄՈՍԱՏ որ Հիւսնի Մանսուրէն 6–8 ժամ հեռու կը գտնուի, ունէր սակաւաթիւ Հայ–Կաթոլիկներ, որոնց քանակը փոփոխական էր: 5–էն 10–15–20 կ՚ըլլային: Ունէին փոքրիկ եկեղեցի մը (նոյն, 468):

ԿԵՎՐԻԿ կամ ԿԻՒՐԻԻԿ որ նոյնպէս կը պատկանի Հիւսնի–Մանսուրի գաւառին համայնքային վէճերու հետեւանքով պառակտուած է: Կ. Պոլսոյ Հայոց Պատրիարքարանը 1884–ին Եղեսիոյ առաջնորդ Խորէն Եպս. Մխիթարեանը հոն ղրկած է իբր խաղաղարար, բայց կ՚երեւի թէ կարելի չէ եղած

կերքերը հանդարտեցնել, վասնզի 1885 Մայիս 26 Թուականով Պատրիարքարան ուղղուած նամակէ մը կը հասկցուի որ հոն 20–30 տուն հայեր կաթոլիկութեան գիմած են։

Այս 20—30 տունը վերջը վերածուած էր 60—70 տունի (Պատմ. Սեբաստիոյ 408)։

ՊԵՀԵՄՆԻ նոյն եպիսկոպոսներուն եւ իրենց օգնականներուն ջանքերով 100—150 տուն Հայ Կաթոլիկներ ունեցած է։ Եկեղեցին նուիրուած էր Աւետման Ս. Կուսին։

Հոս Հայ-Կաթոլիկները ունէին նաեւ դպրոց մը (նոյն 410) զոր հիմնած էր Սահակ վրդ. Պէննայեան (տես Մէնմուայը Ազբար Թ. 2340 ՀԱ. 1952. 429)։

1892 Մարտին Կ. Պոլսոյ մէջ կազմուած Հայ Երիտասարդաց Ակումբը (տես վերը) նաեւ այս աղքատիկ վարժարանին 100 ղրշ. նպաստ մը յատկացուցած է։

ԱՄԱՐՈՒՍՏԱՆԻ մէջ Հայ-Կաթոլիկները ունէին ուխտատեղի մը Պօղոս Պետրոս անունով (Պատ. Սեբ. նոյն)։

ՀԷՔԻՄ ԽԱՆԻ մէջ ալ 70 տունի չափ Հայ-Կաթոլիկներ կային։ Ասոնք 1895—96ի սարսափի օրերուն իսլամութեան կը յարին իրենց կեանքը փրկելու համար։

Երբ կրօնափոխ եղողներուն ազատութիւն կը տրուի իսլամութիւնը ձգելու 19 Դեկտ. 1896-ին, կաթոլիկութեան կը յարին յուսալով պաշտպանութեան։ Ասոնք կը դառնեն Հայոց եկեղեցին որ Ազգ. Պատրիարքարանի ջանքերով 1908 Ապրիլ 12-ին ետ կ'առնուի։ Այն ատեն 50 տունէն 3—4 տունի կ'իջնէ կաթոլիկներու թիւը։

V. Guinet Մալաթիոյ շրջակայքը գտնուող վայրերու մէջ 770 կաթոլիկ հայեր կան կ'ըսէ։

Մալաթիոյ Հայ-Կաթոլիկ Առաջնորդութեան սահմանին մէջ գտնուած քանի մը վայրերու մասնաւորապէս Հիւսնի Մանսուրի կողմերը կաթոլիկ Ասորիները որոնք շատ աննշան թիւ մը կը ներկայացնէին, Հայ կաթոլիկ առաջնորդներու իրաւասութեան ենթարկուած էին։ (Տես Գերպ. Աղեքսանդրեան. Համառօտ պատմութիւն եպիսկոպոսական աթոռոց Վենետիկ 1906 էջ 24)։

# ԼԱՏԻՆՆԵՐ

Մալաթիոյ մէջ այս երեք յարանուանութիւններէն անջատ կար նաեւ պզտիկ հատուած մը, մեծ մասամբ Հայերէ բաղկացեալ, որ հայ անունը վրայէն նետած եւ լատին կը կոչուէր։

Այս հատուածը կազմուած էր ջանքերովը՝ Քարուչիններան կրօնաւորներու, որոնք Մարտին քաղաքը կեդրոն ընելով, 1641-ին առաքելութիւններ կամ առաջնորդութիւններ հաստատած են Տիարպէքիր (1665), Եդեսիա (1841), Մէզրէ (1867) եւ Մալաթիա (1867)։

*Աստնք հազիւ կրցած են շատ քիչ թիւով հետեւորդներ ունենալ*: 1900–*ին հազիւ 20 տուն էին* (Բիւրակն, 1900 *էջ* 86):

1912–*ին Պէննէեան քհնյ*. (Ը. 71) *կը գրէ որ* «Լատին Հայեր՝ որոնք արդէն աղքատութեան երեսէն գրեթէ յարած են այդ եկեղեցւոյն հազիւ 10–20 տուն կան»: *Ուրեմն 12 տարուան մէջ աւելի յետադիմած են քան թէ յառաջդիմած*:

*Մկրտիչ Ս. Որբերեան այս փոքրիկ հօտին համար 1900–ին կը գրէ թէ* «ունին իրենց առաջնորդ՝ Փիէր Չէլիպիթին, որ այս կողմերը գտնուող այլունաներու էն ազատամիտներէն կ՚երեւի, անուշ ու քաղաքավար յարաբերութիւնը սիրելի կը հանդիսէ զինքը:

Առժամանակեայ եկեղեցինին շինուած է յանուն Հռովմայեցիի մը, որ Բ. դարուն Մալաթիոյ մէջ մարտիրոսացած է:

Այս մատուռին մէջ հաւաքուած խմբակը առհասարակ կարօտ եւ տգէտ դասակարգէն է: Ուրիշին բանին գործին չխառնուող, ընկերը եւ դրացիները անհանգիստ չընող համեստ ժողովուրդ մըն է:



Լատիններու հովիւը Փէր Պանո

Դպրոցներու, որբանոցի, եւ առաջնորդի յատուկ շքեղ շէնքեր, ընդարձակ, զուարճալի պարտէզներ ունին» (Բիւրակն. 1900 էջ 88):

*Մկրտիչ Որբերեան հաւանօրէն Համիտեան գրաքննութեան պատճառով չէ կրցած ուրիշ մանրամասնութիւններ տալ: Պէննէեան քհնյ. իր գործին մէջ* (Ը. 71) *աւելի մանրամասնութիւններ ունի: Ան կ՚ըսէ Լատին Հայեր* «իրենց եկեղեցի եւայլն շինելու ի սպառ անկարող ըլլալուն, յայտնի է թէ լատին միսիոնարը պէտք էր շինէր: Ուստի ասկէց իբր քառասուն տարի[1] առաջ մուտ

(1) *1912-էն 40 տարի առաջ 1872 կ՚ընէ, մինչ ինչպէս տեսնուեցաւ, Քաբուչին առաքելութիւնը հաստատուած է 1867-ին, հինգ տարի աւելի կանուխ*:

պտնելով հոս, անմիջապէս շինած են եկեղեցի եւ դպրոց։ Բայց 1895-ի դէպքին բոլորովին այրեցաւ ըլլալով, նորը եւ ընդարձակը շինելու կարողացան շնորհիւ Եւրոպական կառավարութեանց եւ իրենց պատկանած միաբանութեան։ Ասոնց ալ եկեղեցին մօտն է Երրորդութեան եկեղեցւոյն։»

*1912-ին եկեղեցին ունէր Ֆրանսացի քահանայ մը եւ սարկաւագ մը։ Իրենց արական եւ իգական առանձին դպրոցները այդ Թուականին* (1900) *ունէին* 2 *ուսուցիչ եւ* 3 *վարժուհի։ Ուսանողներու թիւն էր* 130 *տղայ եւ* 140 *աղջիկ, իսկ* 5 *ուսուցիչներու տարեկան թոշակն էր* 7800 *ղրուշ։*

*Մալաթիոյ ամէնէն լաւ վճարուած ուսուցիչները այս դպրոցի մէջ էին* (Բիւրակն 1900 *էջ* 85–86)։

## Գ.

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ-ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆՆԵՐԸ

*Աւետարանականութիւնը կամ բողոքականութիւնը, որ հազիւ հարիւր տարիէն քիչ մը աւելի անցեալ մը ունի Հայոց մէջ, իր եռին, Մալաթիոյ Հայերուն մէջ ալ գոյութիւն ունեցած է Հայերու մէջ տարածուիլ սկսելէն բաւական ետքը եւ շատ մեծ կենսունակութիւն ցոյց չէ տուած, այնպէս որ Մալաթիոյ Հայ բողոքական համայնքը շատ կարեւոր տեղ մը չէր գրաւած։*

*Փոքր Ասիոյ մէջ բողոքականութեան տարածման պատմութիւնը հոս կրկնելու պէտք չկայ, վասնզի կարելի մանրամասնութիւններով անիկա ծանօթ է։*[1]

---

*(1) Հայ Աւետարանականութեան հարիւրամեակին առթիւ հրատարակուած են երկու կարեւոր հատորներ։*

*Առաջինը* Լուսաշաւիղ-պատմութիւն Հայ աւետարանական շարժման *1846–1946, Վեր. Եղիա Ս. Քասունիէ (Պէյրութ, Լիբանան, 1947) եւ երկրորդը՝* Յուշարձան Հայ-Աւետարանականաց եւ Աւետարանական եկեղեցւոյ *(Ծննդական ծանօթութիւններով) Վեր. Կ. Պ. Առանալեանէ (Ֆրեզնոյ, 1952)։ Իսկ տարիներ առաջ հրատարակուած է* Ծագումն եւ ընթացք Աւետարանականութեան ի Հայս *Ստեփան Իւթիւճեանէ, Պոլիս, 1914։ Այս հիմնական գործերէն զատ կան բազմաթիւ գիրքեր եւ թերթեր որոնք կը խօսին բողոքականութեան վրայ, որոնք աւելորդ կը գտնեմ թուել։ Իսկ զանազան գաւառներու մէջ Հայ-Աւետարանականութեան պատմութիւնը այլեւայլ առիթներով գրուած է շատերու կողմէ։ Ասոնց մէջ իբր լաւ վաւերագրեալ գործ կը յիշատակեմ մասնաւոր կերպով Ս. Բախտիկեանի յօդուածաշարքը* Ակօսի *մէջ (1945, գիրք Է.–ԺԴ)՝* Բողոքականութեան մուտքը Ծոփաց Աշխարհ *խորագրով։ Ընթերցողները Կեսարիոյ եւ Եւդոկիոյ Հայոց մէջ բողոքականութեան վրայ մեր* Պատմութիւն Հայ-կեսարիոյ *(1937) եւ* Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց *(1952) գիրքերուն մէջ կրնան գտնել բաւական տեղեկութիւններ ընդհանուր կերպով Հայ Բողոքականութեան եւ մասնաւորապէս անոր Փոքր Ասիոյ մէջ կատարած նուաճումներուն մասին։ Նոյնպէս Գ. Գալուստեանի* Մարաշ*-ին մէջ, եւ Գ. Սարաֆեանի* Այնթապ*-ին մէջ շատ կարեւոր տեղեկութիւններ կան այս քաղաքներուն բողոքականութեան մասին։*



Մալաթիոյ Հայ-Բողոքականներու Ժողովարանը

Հետեւաբար միայն Մալաթիոյ մէջ, բողոքականութեան քարոզութեան եւ Հայ-բողոքական համայնքին կազմութեան մասին խօսելով պիտի բաւականանամ:

Ամերիկացի միսիոնարները իրենց սկզբնական աշխատանքներէն վերջ 1834-ին արդէն Փոքր Ասիոյ ղուռներուն վրայ (Կ. Պոլիս, Զմիւռնիա, Պրուսա եւ Տրապիզոն) կայաններ հաստատած էին (Ս. Բախտիկեան, Ակօս, Ժ. 83-4) բայց սակայն գոհացում չէր տար իրենց: Անոնք կը փափաքէին թափանցել դէպի ներքնաշխարհ եւ մասնաւորապէս Եփրատի հովիտը (նոյն 85-86) որուն Մալաթիա քաղաքը իրենց համար կը թուի թէ անկոխ դետին մըն էր, վասնզի բնաւ չէր ընդունած ոեւէ միսիոնարի կամ քարոզիչի այցելութիւն, մինչ շատ մը ուրիշ քաղաքներ այցելած էին Ամերիկացիք քարոզչութեան եւ ուսումնասիրութեան նպատակով: (Տես Պատմ. Եւդոկիոյ Հայոց. էջ 846 եւ 848-50):

Տրապիզոնի կայանին բաժին կը հանուի Եփրատի հովիտը ուսումնա-

սփռելու գործը։ Տրապիզոն հաստատուած առաջին միսիոնարը Մր. Ճօնսթօն, 1836-ին դէպի ներքին գաւառները թափանցելու առաջին փորձը կը կատարէ, այցելելով Եւդոկիա, Սեբաստիա, Երզնկա, Դերջան եւ շրջակայքը (Ակօս Ժ. 85 եւ Պատմ. Եւդոկիոյ. 845) բայց ինչպէս կ'երեւի մինչեւ Մալաթիա չէ առաջացած։

Չորս տարի յետոյ, 1840-ին, Տրապիզոնէն ճամբայ կ'ելլէ Պ. Հօմէս՝ Եփրատի հովիտը ուսումնասիրելու համար (Ս. Բախտիկեան. նոյն 86)։ Ան կ'այցելէ Բաբերդ, Երզնկա, Քեմախ, Ակն, Արաբկիր, Կիմիւշ Մատէն եւ Խարբերդ (նոյն), բայց չի յիշուիր Մալաթիան որուն վրայ կ'երեւի թէ ուշադրութիւն չէ դարձուցած։

1841-ին երբ միսիոնարները Կարնոյ մէջ ալ կայան մը կ'ունենան, միեւնոյն միսիոնարութեամբ Պ. Ճէքսընի, առաջին անգամ Եփրատի հովիտը ամբողջովին ուսումնասիրել կը փորձեն։

Պ. Ճէքսըն կը գրէ. «Եփրատի վրայ (ցածը) բազմաթիւ մեծ ու բազմամարդ գիւղեր կան, անոնցմէ ոմանք մինչեւ հազար հայ տուն կը պարունակեն։ Ժամանակը չի ներեր խօսելու Ակնայ, Արաբկիրի, ՄԱԼԱԹԻՈՅ մասին. բոլոր այս վայրերը, կարելի եղածին չափ շուտով, պէտք է գրաւուին բնիկ օգնականներու կողմէ, որոնք իրենց ուղղութիւնը պիտի առնեն Կարինէն եւ Վանի նորեկ հաստատուած կայանէն։ Այն չափազանց կարեւորութիւնը, անմիջապէս յառաջ բերելու բնիկ օգնականներու գործակցութիւն մը ա՛յս գործին համար, համոզուած ենք, որ մինչեւ հիմա պէտք եղածին չափ գնահատուած չէ, եւ պէտք է այժմ մենք մեծ չափով աշխատինք, վերաշահելու համար այն ժամանակը, որ կորսնցուցինք» (**Missionary Herald** 26 Մայիս 1841, էջ 484—5)։

Պ. Ճէքսըն մասնաւոր կերպով չէ խօսած իր քարոզչական գործունէութեան վրայ, բայց շատ հաւանական է որ ունեցած է ան, ինչպէս այլուր, նաեւ Մալաթիոյ մէջ, ուր պէտք է ունեցած ըլլայ գէթ աննշան թուով հետեւորդներ։

Մասնաւորապէս ինչպէս ուրիշ շատ մը վայրերու, նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ պէտք է տարածուած ըլլան Միսիոնարական հրատարակութիւններ, Պոլիսէն եւ Իզմիրէն իրենց սովորական դերը կատարած տարակոյսներ ստեղծելու եւ նոր միտքեր տարածելու համար։

Այս շարժման Պոլսոյ մէջ տարածման եւ զարգացման հետեւանօք երբ Բարեպաշտական միաբանութիւնը կազմուեցաւ հոն, իր անդամները իրենց գաղափարները ուրիշ կողմեր ալ տարածելու համար Նիկոմիդիացի Եզնակ Տէր Վրթանէս Գրիգորեան կամ Զըլթըլեան քահանան (տես Պատմ. Հայ Կեսարիոյ 1048—50, Պատմ. Եւդոկիոյ 850) իբր շրջուն քարոզիչ Փոքր Ասիա ղրկած են (Ստեփան Իւթիւճեան, Ծագումն, 126) ընկերակցութեամբ Մհ. Յովհ. Սրապիոնեանի որ իր անձնական ծախքով կը ճամբորդէր։

Ասոնք 1843 Փետրուարէն մինչեւ 1843 Հոկտեմբեր կը շրջին Փոքր Ասիա, բայց չենք գիտեր թէ Մալաթիա ալ այցելա՞ծ են։

*Եթէ անոնք ալ չեն այցելած, 1848-ին ստոյգ է որ Տոքթ. Սմիթ այցելած է Մալաթիա, ուր ըստ իր տեղեկագրութեան կային* «երեքէն հինգ հազար հայ բնակչութիւն մը»։ *Ան կ՚ըսէ թէ* «մենք ինը օր մնացինք այս քաղաքին մէջ. եթէ երկու երեք անձեր նկատի չառնենք, մենք մշտական շփման մէջ էինք այդ մեծ համայնքին հետ։ Բացառութիւն համարուած անհատները ալ բողոքականի իրենց դաւանանքը ժամանակին ունեցած են, սակայն հիմա վարդապետին կողմէ առանձնակի թելադրուած են մեզ հետ չտեսնուիլ» (Ակօս, *ԺԲ. էջ* 99)։

*Այս տողերը ցոյց կու տան թէ 1848-ին, արդէն սակաւաթիւ անձեր որսացուած էին, քանի որ ինչպէս Տոքթ. Սմիթ կը պատմէ, հակառակ վարդապետին արգելքին՝ որ «լուսաւորուած»ները եւ ժողովուրդը, Տոքթ. Սմիթին եւ իր ընկերոջ հետ չտեսնուին, տեղեկագիրը կ՚ըսէ* «հաւանաբար մեր այս այցելութեան ընթացքին աւելի քան երկու երեք հայերու հետ կրօնական նիւթերու շուրջ խօսակցութիւն ունեցանք եւ անոնց շատերուն մէջ խոր հետաքրքրութիւն արթնցաւ իրենց բոլոր լսածներուն շուրջ», (M. H. 1849, *էջ* 422–3)։

*Արդարեւ, 1849-ին, Մալաթիոյ մէջ բողոքական կորիզ մը ծնունդ առած էր, վասնզի Այնթապի միսիոնար Շնայտըր կը հաստատէ թէ* 20–30 *Հայեր* «Ճշմարտութեան ետեւէ են» *եւ ուսուցիչը Նոր Կտակարան ուզած է* (Ակօս, ԺԲ. *էջ* 98)։

*Ուրեմն, 1848–49ին իսկ բողոքականութիւնը մտած կրնանք համարել Մալաթիա։ Միսիոնարները այդ թուականներուն ոգեւորութեամբ կը գործէին բոլոր Փոքր Ասիոյ մէջ եւ կը կազմակերպէին իրենց գործունէութիւնը, որ հետզհետէ աւելի կ՚ընդարձակուէր։*

1852-*ին Զմիւռնիոյ մէջ գումարուած Թուրքիոյ կամ Փոքր Ասիոյ միսիոնարներու տարեկան ժողովը կ՚որոշէ որ ամենակարճ ժամանակի մէջ խումբ մը միսիոնարներ կայաններ հաստատեն Սեբաստիա, Արաբկիր, Թոքատ, եւայլն* (M. H. 1852, *էջ* 193. Ակօս. 97)։

*Այս նոր ոգեւորութեան հետ կապ ունենալ կը թուի դէպի Մալաթիա առաքումը «եղբօր» մը Այնթապէն, ինչպէս կ՚իմացուի նոյն քաղաքին միսիոնարներէն Շնայտըրի* (Schneider) *մէկ տեղեկագիր–նամակէն*։

*Ան կը գրէ.* «Մալաթիա ղրկուած եղբայրը, առաջին առթիւ նուազ քաջալերութիւն ունեցաւ, բայց վերջերս ղրկած նամակները աւելի քաջալերական են։ Բաւական լաւ շարժում մը հայոց մէջտեղ եկած է, որը կը ծաւալի, պահանջելով որ Սուրբ Գիրքը Եկեղեցիին մէջ արդի հայերէնով կարդացուի։ Ոմանք կը պաշտպանեն այս տեսակէտը, ուրիշներ կը հակառակին։ Ընթերցումը գործնականապէս սկսաւ, բայց թշնամի կողմը անակնկալ կերպով վերջ տուաւ։ Ոչ մէկ խօսք բարձրացաւ այս ուղղութեամբ. այսուամենայնիւ պատճառ կայ յուսալու, որ երկնային ճշմարտութեան հունտը արմատ ձգած է»։ (M. H. 1852, *էջ* 200. Ակօս, ԺԴ. *էջ* 97)։

*Նոյն տարին, դարձեալ Կարնոյ Միսիոնարական կայանէն, Տէր եւ Տի–*

կին Տիւնմըր, Եփրատի հովիտը կ'այցելեն Տիարպէքիր–Կարին իրենց ճամբուն վրայ հանդիպելով Խարբերդ (Ակօս ԺԴ. էջ 97), ուր կը գտնեն Արաբկիրցի երիտասարդ մը որ «լոյս կը տարածէր» հոն։ Տիւնմըրի տեղեկագիրէն որոշ կ'երեւի թէ Խարբերդի, Արաբկիրի եւ Ակնայ եւ անոնց շրջակայ գիւղերուն մէջ բողոքականութիւնը հաստատուած էր (M. H. 1852, էջ 358, Ակօս ԺԴ. 99)։

Ան այցելած է նաեւ Մալաթիա, ուր «5000 հայեր կային, որոնցմէ 30ը Սբ. Գիրք կը կարդար, իսկ Ատըեամանի մէջ կար 2000 հայութիւն, ուր քիչեր միայն կ'ուզէին Սբ. Գիրք կարդալ» (M. H. 1852, էջ 359 եւ Ակօս ԺԴ. 99)։

Հոս երեւան կու գայ թէ Մալաթիոյ շուրջ գտնուող քաղաքներն ալ Խարբերդի դաշտին գիւղերուն պէս ուշադրութեան առարկայ եղած են միսիոնարներուն կողմէ, առանց մեծ յաջողութեան մը։

Այնթապէն ամերիկեան Պորտին կը գրուի 1853–ին թէ «Մեր եկեղեցիի անդամներէն մէկը որ վերջերս Ատըեամանէն դարձաւ, ուր գացեր էր գործի բերումով, իր հետ կը բերէ շատ նպաստաւոր տեղեկութիւններ։ 2000 հայ բնակչութեան մէջ, 20 կամ 30 հոգիներ կան, որոնք առաւել կամ նուազ չափով լուսաւորուած են։ Գրեթէ ամէն իրիկուն, անոնք ի մի կու գան կարդալու եւ բացատրելու Սբ. Գիրքը։ Այսպէս կը շարունակեն մինչեւ կէս գիշեր։ Իրենց մէջ ղեկավար մարդիկն են քահանայ մը եւ ուսուցիչ մը, երկուքն ալ, ինչպէս կ'երեւի, նկատելի յառաջդիմութիւն ըրեր են իրենց հարցապնդումին մէջ» (Ակօս, ԺԴ. 100)։

1852–3, Թուականներու, ինչպէս Բախտիկեան կը գրէ, (Ակօս ԺԴ. էջ 101) «Արաբկիր, Խարբերդ, Ակն, Կապան Մէտէն, Մալաթիա, Ատըեաման Եփրատեան այս քաղաքներուն վրայ միսիոնարական ճնշումը կը շատնայ, բայց դեռ կ'ուշանայ այն երանելի օրը, երբ անոնցմէ իւրաքանչիւրին մէջ, մէկէ աւելի միսիոնարներ, իրենց բոյնը հաստատած «լոյս հաւատքը» պիտի տարածեն իրենց շուրջ, լուսաւորելու «ճշմարտութեան» ճամբան, ինչպէս փարոսը կ'առաջնորդէ խաւարին ու ալեկոծութեան մէջէն փարոսին մօտեցող նաւը»։

Այդ Թուականներուն բողոքականութեան յարողները Նորահաւատներու յատուկ մոլեռանդութեամբ ուրիշներն ալ լուսաւորելու ձեռնարկներ կ'ընէին։ Բողոքականներու ազատութեան կառավարական հրովարտակը (1850) կ'ոգեւորէր շարժումը։

Պետրոս վարդապետ Ճիմճեան[1] Այնթապի մէջ մեծ դեր կը կատարէր եւ այդ քաղաքէն դուրս ալ շատ մը վայրերու մէջ իր քարոզութիւնները արձագանգ կը գտնէին։

1852ին, բազմաթիւ քաղաքներէ (ի մէջ այլոց Մալաթիայէն ալ) Թախանձագին կը խնդրէին քարոզիչներ Պոլիսէն, որ անկարող էր գոհացնելու

(1) Նախապէս Արաբկիրի առաջնորդ եղած։ Բողոքականութեան յարելով կարգաթող եղած եւ Այնթապ գացած է։

այս բոլոր խնդրանքները, ուստի կը ղրկէր այցելու քարոզիչներ։ Այսպէս, Կոստանդնուպոլսոյ հովիւը՝ պատուելի Սիմոն Իւթիւճեան ամառ մը կ՚անցընէր Այնթապ, եւ Յովհաննէս Տէր Սահակեանը եւ Սիմէոն Դաւիթեանը կ՚երթային 1852–ին ութ ամիսներ Ասիական Թուրքիոյ մէջ կը շրջէին եւ ամէն կողմ հետեւողներ կը գտնէին (Լուսաշաւիղ· էջ 74–75)։

Ասոնք կը տեղեկագրեն թէ «ոչ ոք կարող է առանց ականատես ըլլալու ըստ բաւականի տեղեկութիւն ունենալ այս զարմանալի արթնութեան մասին զոր կը տեսնենք մեր սիրելի ազգայնոց մէջ այս կողմերը» (Նոյն 75)։

Անոնք կ՚ըսէին նաեւ թէ «Հայոց գտնուած եւ այցելած տեղերէն ոչ մէկը գիտեմ որ չըլլայ կա՛մ իրական արթնութիւն մը եւ կա՛մ մտքի պատրաստութիւն մը ճշմարտութեան ընդունելութեան համար»։

Ինչ ինչ մանր տեղեկութիւններէն որոշ կ՚երեւի թէ արդէն Մալաթիոյ եւ Ատըեամանի մէջ սկսած էր բողոքական քարոզչութիւնը իր արդիւնքը ցոյց տալ։

M. H.ի մէջ (1853 էջ 272) հրատարակուած տեղեկագիր մը կը հաստատէ այս պարագան երբ կը գրէ թէ «Մալաթիոյ եւ Ատըեամանի մէջ, հարցասիրութի ոգի մը գոյութիւն ունի եւ բարեկարգութիւն մը սկսած է մանաւորաբար վերջինին մէջ։ Սակայն երկու վայրերուն մէջ ալ աւելի նուազ յառաջդիմութիւն եղած է քան պէտք էր որ ըլլար, իսկ այս բանը կարելի էր, եթէ հոն բնիկ եղբայր մը հաստատուէր» (Ակօս ԺԴ· էջ 102)։

Սակայն նկատելի է որ Միսիոնարներէն շատերը այս տեսակէտին համաձայն չէին։ Անոնք պաշտօնէութեան մէջ բնիկ տարրին թիւին բազմանալուն համամիտ չէին ինչպէս նաեւ չէին ուզեր որ բնիկները ինքնապահ դառնային եւ իրենց եկեղեցիները իրենք վարէին իրենց հասկցած եղանակով։ Եթէ գտնուած են քանի մը ազատամիտ եւ անշահախնդիր միսիոնարներ, որոնք այս շարժումը քաջալերած են, անոնք Պորտէն հալածուած եւ իրենց պաշտօնէն հանուած են, ինչպէս Ճրէնք Փարսընս, որ Ամերիկեան Պորտ ընկերութեան կողմէ մասնաւոր առաքելութեամբ ղրկուած էր 1853–ին Փոքր Ասիա, տեղեկագիր մը պատրաստելու համար։

Ան կը մնայ Սեբաստիա, Արաբկիր, Մալաթիա, Խարբերդ, Տիարպէքիր, եւ զանազան քաղաքներ, կը շահագրգռուի հայ ժողովուրդով եւ զայն կը ներկայացնէ բոլորովին տարբեր նախորդ միսիոնարներու նկարագրածէն։

Անիկա 54 տարիներ յետոյ իր այս այցելութենէն, 1912–ին կը համարձակի ի Սիէթըլ, Ուաշինկթըն, խօսիլ համարձակ եւ քննադատել Պորտի ուղղութիւնը, հայ ունկնդիրներու առջեւ։

«Այցելեցի ձեր պատմական վանքերը, տեսայ ձեր հինաւուրց գմբէթաւոր եկեղեցիները, անոնցմէ շատեր դարեր առաջ շինուած, տեսայ ձեր հին ձեռագիր Աւետարանները, անոնցմէ ոմանք գեղարուեստի նմոյշներ· գերազմայլ հրճուանքով դիտեցի խուռն բազմութիւններ հաւատացեալներու, որ ամէն Կիրակի եկեղեցի պաշտամունքի եւ աղօթքի կ՚երթային· տեսայ, ինչ որ չէի երեւակայեր, ձեր ամենօրեայ եկեղեցւոյ արարողութիւնները եւ այն եր–

կիւղածութիւնը, որով կը վերաբերէիք ձեր բոլոր արարողութեանց պահուն, տեսայ ձեր բազմանդամ ընտանիքները եւ անոնց զօրաւոր կապը ձեր եկեղեցիին հետ, ձեր դաշտերը եւ հոն աշխատող գիւղացիները: Սկսայ հայ լեզուն սորվիլ, քանի որ ձեր մէջ պիտի գործէի: Իմ տեղեկագիրս պատրաստեցի աւելի քան երկու տարիներու քննութեան արդիւնքը, տուի ձեր ժողովուրդին կեանքի պատկերը, այնպէս ինչպէս որ գտայ եւ ըսի Պորտ ընկերութեան թէ այս ժողովուրդի բնատուր կարողութիւնները մշակելու ենք: Անկլօ–Սաքսոն ուղղութեամբ կրթական ծրագիր մը հրաշք պիտի գործէ անոր վերազարթնութեան համար, հրաշալի պատեհութիւն մը պիտի ըլլայ ամերիկեան միսիոնարական գործին, այսպիսի կրթական ծրագրով մը ձեր ժողովուրդը տանելու ձեր փառաւոր անցեալին, աւետարանելէ առաջ պարտինք դպրոցներ բանալ, եւ արեւմտեան նոր մեթոտով դաստիարակենք հայերը, անոնք պիտի աւետարանեն նոր ոգիով շատ աւելի արագ եւ յաջող, քան մեր միսիոնարները կրնան ընել: Այսպէս առանց բաժանում պատճառելու իրենց եկեղեցիին մէջ, թոյլ պիտի տանք որ իրենց իտէալները իրենք բնականոն կերպով յառաջ տանին: Քաղաքակրթական մեծ գործ մը ունի այս կերպով կատարելու Պորտ ընկերութիւնը: Այս էր ամփոփումը տեղեկագիրիս: Պորտի վարչութիւնը անտրամաքանական գտաւ իմ տեղեկագիրս եւ անյարմար իրենց որդեգրած ծրագրին, ինձ կը մնար հրաժարիլ եւ հրաժարեցուցին եւ ես այն օրերէն մեկնեցայ Արեւմուտք: 1858ի ճամբորդութիւնս եւ աւելի քան երկու տարուան ուսումնալից աշխատութիւնս արդիւնք չունեցաւ»: (*Տես* Յուշարձան Հայ Աւետարանականաց եւ Աւետարանական Եկեղեցւոյ. *Վեր. Կ. Պ. Ատանալեան էջ* 98. *քաղած է* Պայքար *օրաթերթի* 1939 *Յունիս 28ի թիւէն*):

*Այս անկեղծ խօսքերը զորս Ֆրէնք Փարսըն արտայայտած է, անվիճելիօրէն ցոյց կու տան թէ Աւետարանական քարոզութիւնները չարաչահութեան եւ մանաւանդ շահագործութեան առարկայ եղած են կարգ մը Ամերիկացիներու կողմէ, որոնք անկեղծօրէն հայերու իսկական լուսաւորութեան չեն ցանկացած, այլ նիւթական հաշիւներով վարուած են: Միսիոնարները, շատ քիչ բացառութեամբ, հայ ազգին աւետարանելը միջոց գործածած են իրենց ապրուստ ապահովելու, ճիշդ մեր «ընկեր Փանջունիներուն» պէս, որոնք կուսակցութիւնը արհեստի վերածած են:*

*Հակառակ անոր 1840–էն սկսեալ միսիոնարները փորձեր կատարած էին Մալաթիա, բայց չէին կրցած յաջողութիւն մը ունենալ:*

*Ասոր համար էր թերեւս որ մինչեւ 1860 Փարսընի այն կողմերը երեւալը, Մալաթիա չունեցաւ միսիոնար մը թէեւ Աւետարանականութիւնը արդէն ծիլեր արձակած ըլլար տեղացի Հայերու մէջ, վասնզի պզտիկ խումբեր կազմուած էին Մալաթիոյ եւ Ատըեամանի մէջ, եւ կազմակերպուած եկեղեցիներ ունէին Խարբերդի եկեղեցիէն առաջ (Քասունի.* Լուսաշաւիղ 134): *Նոյնիսկ ժողովարան ալ ունէին բողոքականները, որոնք թէեւ թիւով քիչուոր, իրենց մէջ եռանդը մեծ էր, այնպէս որ 1864–ին օգնած են Քիւրտիստանի աւետարանական գործին* (Յուշարձան 383): *Այս կրօնական զարթնու–*

*մի շարժումը Հայաստանեայց Մայր Եկեղեցիի վրայ ալ իր ազդեցութիւնը ունեցաւ եւ տեսնուեցաւ շարժում մը, առանց մայրենի եկեղեցիէն բաժնուելու զայն բարեկարգելու: Այս նպատակով* 1860*ական Թուականներուն սկիզբները Խարբերդի հայերը կազմած էին* Բարեկարգութեան Միութիւն *մը* (Յուշարձան *էջ* 373), *որ գլխաւորապէս* լսարանով *մը կ'առաջնորդէր ժողովուրդը:*

*Անոր օրինակին վրայ*, «Մալաթիա եւս Խարբերդի նման լսարան մը հաստատեցին: Երբ եկեղեցական իշխանութիւնը զանոնք արգիլելու կը ջանար, անոնք քաջաբար յայտարարեցին, «Այստեղ մեր հայրերուն քրտինքով շինուած է. եթէ դուք հոս հրաման չէք տար, մենք ալ ստիպուած բողոքականաց ժողովարանը կ'երթանք ու անոնց պաշտպանութեան տակ կը քարոզենք»: Հարիւրներով արթնցած յառաջդիմասէրներ ժանտարմներով հաւաքուելէ կ'արգիլուէին:

1866–ին յառաջդիմականները այնքան եռանդով էին որ կը պոռային եկեղեցական իշխաններուն. «Այս եկեղեցին մերն է, անոր պատուանդանին վրայ մենք պիտի մարտիրոսանանք եթէ պէտք ըլլայ, Աւետարան քարոզելու մեր իրաւունքը պաշտպանելու» (Յուշարձան *Ատանալեան*, 373 *եւ* M. H. 1866, 169–171. *եւայլն*):

*Այս տողերը որոնք գաղափարական վսեմ պատկեր մը կը գծեն մեր առջեւ, բաւական թէական կը դառնան երբ բողոքականութեան Մալաթիա մուտքը կը կապուի պզտիկ հաշիւներու եւ քէներու:*

*Պ. Քերոբ Սուքիասեան, այժմ Ֆիլատելֆիա, որ իր հօրը եւ հօրեղբօրը յիշողութիւնները գրի առած է, Մալաթիոյ բողոքականութիւնը կը մերկացնէ ամէն բարոյական եւ գաղափարական շարժառիթներէ, յայտնելով թէ Նարօլէն Մզտիսի Պաղտայեան եւ Պօնաբարթեան հայ եկեղեցւոյ հոգաբարձութեան հետ գժտելով բողոքականութեան Մալաթիոյ մէջ տարածումին կը սատարեն, բայց այս մասին մեզի կը պակսի առարկայական փաստ մը:*

*Ֆրէզնօ բնակող Յ. Ն. Շէքէրճեանի տեղեկութեան համաձայն* 1850–*ական Թուականներուն սկիզբներէն Մալաթիա մօտ տասը տարի քարոզած են Մաշկերտցի Շէրօ Պապան, Արապկիրցի Յակոբ, Փալանճի Պօղոս, Մարկոս վարդապետ, վարդապետ Յովհաննէս Գաբրիէլեան ու Այնթապցի Պօղոս Գալֆան*[1]:

*Այս տասը տարուան մէջ հազիւ երկու տուներ բողոքական եղած են. —Խաչատուր Տէլի Տէտէենց եւ Յովհաննէս Զըթափեան (կամ՝ Սըվարդեան) ընտանիքները:*

*Զըթափեան կը մեռնի* 1856–*ին: Երկու օր մեռելը թաղել չեն թողուր: Միսիոնար Ալէն Պոլիսէն Խարբերդ երթալու ճամբուն վրայ, Մալաթիոյ մէջ կ'իմանայ իրողութիւնը, կը դիմէ կառավարութեան եւ արտօնութիւն կ'առնէ*

---

(1) *Հաւանօրէն «Գալֆա» բառը հոս ուսուցիչի իմաստով գործածուած պիտի ըլլայ եւ ոչ ճարտարապետի:*

թաղելու հին Մալաթիոյ Ասպուզի գերեզմանատան մէջ։

1863-ին Մարտիրոս Կիրակոսեան, Խարբերդի աստուածաբանական դպրոցին ընթացքը աւարտելով կը ղրկուի իբր քարոզիչ Մալաթիա, ուր միայն երկու տուն էին բողոքականները։

Անոնցմէ Զըթաֆեանք 30 տարի բողոքական մնալէ ետք Չնքուշցի Պէտօ Կարոյին իրենց ունեցած 20 ոսկի պարտքը Պատ. Մարտիրոս Կիրակոսեան վճարել յորդորած ըլլալուն համար կը ցաւին անոր դէմ եւ կը դառնան մայրենի եկեղեցիին ծոցը, ինչ որ կը հաստատէ թէ որքան դոյզն էր համոզումը այդ նորադարձներուն։

Ասով հանդերձ այս կերպ, այն կերպ, վերջապէս նորադարձներ կ'ըլլան եւ իրենց թիւը կը բարձրանայ։

Ըստ Կարապետ Քհնյ. Պէննէեանի (Ը.71–72), «ժամանակ մը այս ու այն թաղին մէջ տուն վարձելով աղօթք ու քարոզութիւն ընելէ յետոյ ԽԱՐԱՋԱ ըսուած թաղին մէջ օժանդակութեամբ Ամերիկեան միսիոնարութեան կանգնեցին բաւական փառաւոր, այլ փայտաշէն ժողովարան մը եւ այլ շէնքեր»։

Յ. Ն. Շէքէրճեան ունի յաւելուածական տեղեկութիւններ։ Անոր գրածին համաձայն Միսիոնար Richardous Փամփալ Ակօին տունը կը վարձէ տասը տարուան համար 100 ոսկի վճարելով, իսկ ժողովարանին հողը՝ որ նախապէս Մուհարհէմ Օղլու Հաճի Իպրահիմին կը պատկանի եղեր, կը ծախուի Թէրզի Եաղուպենց Թոշիկին եւ յետոյ Աթթար Գէորգ աղայի միջնորդով կը ծախուի Բողոքականներուն, գործածուելու համար իբր ժողովարան, 14,000 դահեկանի, ոսկին 140 ղրշ. հաշուելով։

Պատ. Մարտիրոս Կիրակոսեան կը բնակի այս երիցատան մէջ, 30 տարի շարունակ, մինչեւ 1895-ի ջարդը, որուն միջոցին ժողովարանը, դպրոցը եւ երիցատունը հրոյ ճարակ կ'ըլլան, զոհ երթալով թրքական վանտալականութեան։

Բողոքականութիւնը ինչպէս ուրիշ տեղերու մէջ, նոյնպէս Մալաթիոյ մէջ պառակտումի եւ վէճերու տեղի տուած է. իր սկզբնական շրջանին հանդիպած է ժողովուրդին բուռն դիմադրութեան։ Նորադարձները կը քարկոծուէին, եւ տուներու մէջ պառակտումներ կը պատահէին։ Գտնուած են հայրեր որ իրենց «հաւատուրաց» զաւակները ժառանգութենէ զրկած են։

Եղած են ժամանակներ, երբ մոլեռանդ աղանդաւորներ իրենց չդաւանած եկեղեցիին դրան առջեւէն անցնիլը մեղք համարած են եւ ինչպէս Գէորգ Մելիտինեցի (Նախճիրներ, 1915–1918, 1920 Պոսթըն, էջ 39) կ'ըսէ. «Դրացին երբ դրացւոյն դէմ, եղբայրն՝ իր եղբօր եւ հայրն իր զաւկին, եւ այս՝ այն ժամանակ, երբ աստուածավախ հայ ժողովուրդի հոծ զանգուածները կը խարխափէին խաւարի մէջ, անգիտակ զանազանելու չարն ու բարին, մասնաւորապէս ԱԶԳԱՅԻՆ ՏԵՍԱԿԷՏԷ»։ Պահ մը ամէնքին մոլեռանդութիւնը այնքան գերադրդռուած է, որ անոնք յարձակելով ժողովարանին

վրայ, փչրած են բոլոր ապակիները եւ արգիլած են պաշտամունքը (տես Գէորգ Մելիտինեցի. Նախճիրներ էջ 47)։

Այդ օրերուն երկու կողմին կիրքերը յուզող միջադէպեր պակաս չեն եղած։ Անոնցմէ մէկն է Ալթը Պարմաքեան Փիլիպպոս եւ Սարգիս եղբայրներէն՝ Մարիամի խնդիրը։ Այս աղջիկը՝ Պէչիք քէմէրով նշանուած էր Քէօրօղլուենց Մահտեսի Աւետիսի տղուն հետ։

Մտածելով որ աղջկան բողոքական ծնողքը իր աղջիկը Հայ եկեղեցիի զաւակի մը պիտի չուզէ տալ, խումբ մը երիտասարդներ աղջիկը կ'առեւանգեն եւ հայ ծէսով պսակել կու տան։ Աւետարանականները կը զայրանան եւ դատի կը դիմեն։ Աղջիկը դատարանին առջեւ կը յայտարարէ թէ «Ես կամքովս չեմ գացած, զիս բռնի տարած են։ Ես բողոքական եմ»։

Ասոր վրայ կառավարութիւնը կ'որոշէ աղջիկը բողոքականներուն յանձնել։ Այս անգամ ալ Հայոց Առաջնորդարանը կը բողոքէ եւ կառավարութիւնը կ'որոշէ աղջիկը յանձնել Հայ կաթոլիկ հովիւին իբր անկողմնակալ երրորդի մը, մինչեւ նոր տնօրինութիւն։

Երկար պայքարէ յետոյ, ուր հնչուն փաստն ալ իր դերը կ'ունենայ, այս անգամ Մարիամ կը յայտարարէ թէ «Ես բողոքական չեմ, ամուսինս կ'ուզեմ»։ Դատը կը շահի ուրեմն փեսան որ բանտէն կը հանուի եւ կը տիրանայ իր կնոջ։

Ասոր նման ուրիշ դէպք մըն ալ պատահած է եւ մեծ յուզումի տեղի տուած է։ Ասիկա Բողոքական եւ Հայ Առաքելականներու միջեւ Մալաթիոյ մէջ ամենէն ծանր միջադէպը եղած է, որ «Ազգին Մարիամ»ին խնդիրը կըրնանք կոչել եւ այս խնդիրը 1895-ի կոտորածէն առաջ Մալաթիոյ հայերը պառակտող եւ երկար ժամանակ պայքարի տեղի տուող խնդիրը եղած է։

Մալաթիոյ երեւելիներէն բողոքական ազդեցիկ անձ մը Նափոլէոն Պաղտօեան 1882-ին օդափոխութեան համար Հեքիմ խան կ'երթայ։ Հոն պատահմամբ կը տեսնէ Հեքիմխանցի Մարիամը, որ ամուսնացած էր Հայ քահանայի մը ձեռքով Ջուլհակ Կարապետին հետ եւ երկու ամիս յետոյ անհամաձայնութիւն ունենալով ամուսնոյն հետ իր հօրը տունը ապաստանած էր, եւ հակառակ ամուսնոյն թախանձանքներուն աղջկան հայրը մերժած էր աղջիկը իր տունը դարձնել։ Պաղտօեան այս ամուսնութիւնը կը գտնէ անյարմար, վասնզի Մարիամ բարձրահասակ, առողջ, նազանի եւ գեղեցիկ էր, ամուսինը անոր հակապատկերը։

Նափոլէոն Պաղտօեան, առանձին կը լսէ Մարիամի դժգոհութիւնները, զայն իր հետ Մալաթիա կը բերէ, իր ծառային Մկրտիչ Օրտուլի Պօյաճեանի հետ ամուսնացնելու մտադրութեամբ։

Մալաթիա հասնելէ ետք, կը խորհրդակցի Ասատուր աղա Ջաճեանի, Յովհաննէս Թիւթէլեանի, Ս. Պօնճուքլեանի եւ պատուելի Կիրակոսեանի հետ, բոլորին համաձայնութեամբ պատուելի Կիրակոսեան Աղաներու ճընշման տակ Մարիամը կը պսակէ Մկրտիչին հետ։

*Յաջորդ օրը այս ապօրինի պսակին լուրը ռումբի մը նման կը պայթի Մալաթիոյ մէջ:*

*Այս կրկնամուսնութիւնը Մալաթիան տակնուվրայ կ'ընէ: Դժգոհութիւնը կը մեծնայ: Անհանդուրժելի էր Հայոց որ բողոքական պսակով քանդուէր լուսաւորչական պսակը, որուն դերակատարներն ալ Բողոքականներ էին:*

*Եւ ահա սկսաւ մեծ պառակտում մը: Սրապիոն եպիսկոպոս, ուրիշ մեծատունի մը՝ Գրիգոր աղա Ասլանեանի եւ Քաղ. Ժողովի անդամներուն հետ կը խորհրդակցի եւ կ'որոշուի որ «ամէն գնով բեկանուի երկրորդ ամուսնութիւնը եւ Մարիամը վերադարձուի իր առաջին ամուսնին:*

*Սրապիոն եպիսկոպոս կը դիմէ կառավարութեան որ իբր առժամեայ կարգադրութիւն Մարիամը փոխադրել կու տայ «Հաւկթուկ Տէրտէր» մականուանուած Տ. Գրիգոր քհնյ. Երէցեանի տունը: Բողոքականները կը փորձեն աղջիկը փախցնել եւ միացնել նոր ամուսինին, սակայն չեն յաջողիր, որով աղջիկը այս անգամ կառավարութիւնը կը փոխադրէ Հայ կաթոլիկներու մայրապետանոցը: Վէճը աւելի խորացաւ: Դատարանը երկու կողմը լսելէ վերջ, Գերապայծառ Ղեւոնդ եպիսկոպոս Խորխոռունիի խորհուրդին կը դիմէ: Գերապայծառը կը պատասխանէ թէ Քրիստոնէական եկեղեցիին եօթը խորհուրդներէն երկուքը Մկրտութիւնը եւ Պսակը, չեն կրնար կրկնուիլ, որով առաջին պսակը անլուծելի եւ երկրորդը ապօրինի է: Դատարանը իսկոյն կը վճռէ կինը իր առաջին ամուսինին տալ:*

*Երկու ամիս մայրապետանոց մնալէ ետք Մարիամը կը յանձնուի Սրապիոն եպիսկոպոսի, որ բերել կու տայ Կարապետը, Մարիամի առաջին ամուսինը: Մալաթիոյ Հայերը մեծ խրախճանք կը սարքեն իբր յաղթանակ:*

*Եւ որովհետեւ Մարիամը անտէր էր եւ անկարող հոգալու իր կարիքները, ազգը որդեգրեց զայն, իբրեւ նուէր պատրաստելով անոր բոլոր հագուստեղէնները եւ տան բոլոր կահկարասիները:*

*Այնուհետեւ Հեքիմխանցի Մարիամը կոչուեցաւ «Ազգին Մարիամը» եւ վերջ գտաւ երկու համայնքներու վէճը (տես* ՊԱՊ ՈՒԽՏԻ *Թ.* 24 *էջ* 8 *Գրիգոր Զուլալեանի յուշերը,* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ *Գ. տարի Թ.* 2 *էջ* 16. ՊԵՀԵՄՆԵՅԻ ՍՐԱՊԻՈՆ ԵՊՍ.Ի ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԸ. *այս երկու յօդուածները համադրուած են ուշադրութեամբ եւ ճշդուած):*

*Մալաթիոյ Հայ-Աւետարանական եկեղեցին բաւական բարգաւաճ կեանք ունեցած է:*

1891*-ին* Vital Guinet *Բողոքականներու թիւը կը նշանակէ* 350 (150 *այր եւ* 200 *կին): Իրենց թիւը մինչեւ* 70–80 *տունի հասած է* 1912*-ին (Կարապետ քհնյ. Պէննէեան Ը. էջ* 72):

1900*-ին Մկրտիչ Ս. Որբերեան* (Բիւրակն. 1900 *էջ* 88) *անոնց թիւը կը նշանակէ* 65 *տուն: Մալաթիոյ Հայ-Աւետարանական համայնքը,* 1870*-էն սկսեալ ինքնաբաւ եղած է եւ միսիոնարներու նպաստին կարօտ չէ եղած (Յ. Ն. Շէքէրճեան):*

*Ըստ Կարապետ քհնյ. Պէնէեանի* (Ը. *էջ* 76) *Ամերիկեան միսիոնարութեան օժանդակութեամբ կանգնած են բաւական փառաւոր այլ փայտաշէն ժողովարան մը եւ այլ շէնքեր, որոնք հազիւ աւարտած* 1894*ին* (Գ. *Մելիտինեցի. նոյն* 48) 1895–*ի դէպքին ամբողջութեամբ այրեցան, եւ մինչեւ* 1912 *մնացին չվերաշինուած* :

*Կարապետ քհնյ. Պէննեան* (Ը. 72) 1912–*ին անոր համար կը գրէ թէ* «Ներկայիս քանի մը ներքնայարկ ծածքեր կան, ուր կը լեցուին երկսեռ ուսանողները» :

*Բայց ինչպէս Գէորգ Մելիտինեցիին գրածէն կը հասկցուի* (Նախճիրներ *էջ* 48) *վերաշինուած է* 1912–*էն ետք եւ հազիւ աւարտած* 1914–*ին երբ վրայ հասած է մեծ եղեռնը* :

*Թուրքերը կը գրաւեն այս նոր ժողովարանը եւ կը գործածեն իբրեւ զօրանոց* :

«Երկու անգամին ալ դժբախտ հաւատացեալները պատեհութիւն չեն ունեցած բացման աղօթքը կատարելու ժողովարաններուն մէջ» (Նախճիրներ *էջ* 48) :




**Խումբ մը պատուելիներ, որոնց մէջ կ'երեւին Պատ. Կիրակոս Խաչատուրեան (թիւ 4) եւ Պատ. Մարտիրոս Կիրակոսեան (թիւ 12):**

1895-ի դէպքը բնաւեր դարձուց Հայ-Աւետարանական համայնքը, որ բաւական զոհեր ալ տուած էր ջարդին, ինչ որ կարօտ դարձուց զիրենք միսիոնարական նպաստին:

Հովիւին Խարբերդի միսիոնարները 1895-էն ետք տալ սկսան տարեկան 4500 ղրշ., իսկ դպրոցին ծախքը կէս առ կէս համայնքը եւ միսիոնարները կը հայթայթէին: (Յ. Ն. Ճէքէրճեան):

## ՀՈՎԻՒՆԵՐԸ

Մալաթիոյ մէջ պաշտօնավարած են յաջորդաբար իբրեւ հովիւ կամ պատուելի հետեւեալները.

ՊԱՏ. ՄԱՐՏԻՐՈՍ ԿԻՐԱԿՈՍԵԱՆ (1863–1905): Հիմնադիր Մալաթիոյ Հայ Աւետարանական եկեղեցիին եւ դպրոցներուն: Ծնած է Արաբկիրի Վանք գիւղը[1] եւ ամուսնացած 1855-ին: Ապրուստ ճարելու համար Պոլիս կ'երթայ եւ յայտնի չէ ինչպէս կը յարի բողոքականութեան եւ Աւետարան կարդալու ջերմ փափաքը կ'ունենայ:

Իր ազգականներէն քահանայ մը սաստիկ կը հակառակի իր այս փափաքին բայց չի կրնար արգիլել: Միսիոնարները զինք կը տանին Խարբերդ, ուր կը դնեն Աստուածաբանական դպրոց մը, ուր կը դասախօսէին Հուիլըր, Ալէն եւ Պարնըմ Ամերիկացի միսիոնարները եւ Մարտիրոս Շմաւոնեան:

Մարտիրոս Կիրակոսեան, Ազնցի (?) Սիմոն Տիրատուրեան, Ճեփիկցի Մելքոն Մինասեան եւ ուրիշներ հոն միասին կը ստանան իրենց ուսումը Արաբկիրցի Պատ. Սիրականին մօտ:

1863-ին, ութ ընկերներով ընթացաւարտ կ'ըլլայ Խարբերդի Աստուածաբանական դպրոցէն եւ կը նշանակուի քարոզիչ Մալաթիոյ Հայ Աւետարանականներու եւ 26 Մարտ 1866-ին, կը ձեռնադրուի Պատուելի (Լուսաշաւիղ, էջ 134) եւ կ'ըլլայ առաջին հովիւը Մալաթիոյ:

Իր ջանքերով Հայ Աւետարանականներու թիւը աճած է եւ ոմանք մինչեւ հարիւր տունի կը բարձրացնեն անոնց թիւը, թէեւ 90 եւ 65 բաղներ ալ եղած են:

Պատ. Մարտիրոս Կիրակոսեան, 1869-ին մասնակցած է այն առաքելութեան, որ կազմակերպուած էր դէպի քրտախօս հայ շրջանները:

Այս պատեհութեամբ կը շրջի Քիւրտիստան, Մուշ եւ Վան, ընկերակցութեամբ Ս. եւ Ն. Պարնըմներու, Պատ. Մարտիրոս Շմաւոնեանի, Պատ. Ապտուլ Նուրի, Պատ. Յակոբ Սիմոնեանի, Պատ. Գրիգոր Թամզարեանի եւ Պատ. Կարապետ Տէր Գասպարեանի: Անոնք կ'այցելեն Տիգրանակերտ, Մերտին, Սղերդ, Ռըտվան, Ֆարղին, Պիթլիս, ուր ձեռնադրած են Պատ. Սիմոն Դաւիթեանը:

Մուշի մէջ զիրենք կը հիւրասիրէ Մկրտիչ Եպս. Խրիմեան (յետոյ Ա-

---

(1) Յիշատակարան Եփրատ Գոլէճի (էջ 47) մալաթիացի կը ներկայացնէ:

մենայն Հայոց Կաթողիկոս) որ նոյն տարին Կ. Պոլսոյ Պատրիարք կ'ընտրըուէր:

Հայր եւ որդի Ժորժ Նափ (George Knapp) Մուշ կը հաստատուին եւ շատ սերտ յարաբերութիւններ կը մշակեն հայոց հետ:

Հոն կը հանդիպին Պատ. Յակոբ Գաբրիէլեանի որ բազմակի մշակութեան ռահվիրան եղած է (Յ. Ն. Ճէքէրճեան): Գարեգին Եպս. Սրուանձտեանց իր Թորոս Աղբարի մէջ (Ա. Հատոր էջ 313) իր մասին արտայայտուած է իրեն համար ըսելով թէ «անկեղծ հայ մ'է եւ բարեսիրտ անձ մը»: Իսկ Մըկրտիչ Ս. Որբերեան (Բիւրակն 1900 էջ 87) զայն կը ներկայացնէ «միջակ միտքի տէր, հեզ եւ ընդհանուր Թուրք եւ Հայ ժողովուրդին համակրանքը շահած անձնաւորութիւն մը: Քարոզելէ աւելի հովուել եւ յառաջդիմելէ աւելի յարաբերիլ գիտէ: Իր շուրջ երբեմն հաւաքած է հայուն է'ն ազդեցիկ եւ խելահաս տարրերը, որոնք իրաւամբ կրթական խնդրին մէջ մեծ նախանձաւորութեամբ կարեւոր թափ տուած են: Հիմա Պատ. Մարտիրոս իր ձագերուն է'ն զօրեղները կորսնցնող թռչունին նման 65 տուն մնացորդները թէեւ կը ճգնի թեւերուն տակ ժողվել եւ բարձրացնել, բայց բարեյաջող արդիւնք մը չի տեսնուիր»:

Պատ. Մարտիրոս Կիրակոսեան ճանչցուած էր «Մալաթիոյ պապան»: Ան 43 երկար տարիներ շարունակ քարոզած էր հոն եւ սիրուած՝ բոլորէն: Ունէր բազմաթիւ բարեկամներ Թուրքերէն, Հայ եւ Հայ Կաթոլիկ եւ Լատին համայնքներէն: (Ճէքէրճեան):

1895-ին կը բանտարկուի, իբրեւ յեղափոխական, ուրիշ խումբ մը յայտնի հայերու հետ (նոյն), որոնք եօթը արձակուեցան, մէկիկ մէկիկ: Պատ. Կիրակոսեան անոնց վերջինը եղաւ: Ասիկա զինքը ջլատեց: Ուստի 1905-ին, իր հպատակութենէն հրաժարելով (Թէրքի Թապա) կ'երթայ Ամերիկա, ուր արդէն իրմէ առաջ հաստատուած էին իր 11 զաւակները:

Իր կեանքին վերջին տարիներուն անպաշտօն կերպով աշխատած է Պոսթընի եւ անոր շրջականերու, ինչպէս նաեւ Ֆաուըլըրի, Հայ Աւետարանականներու եկեղեցիներու եւ առաքելութիւններուն մէջ: (Հմմտ. Յիշատակարան Եփրատ Գոլէճի. էջ 146):

1914-ին կը մեռնի ի Ֆաուըլըր:

ՊԱՏՈՒԵԼԻ ԿԻՐԱԿՈՍ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ: Մալաթիացի, շրջանաւարտ եղած է 1863ին Խարբերդի Աստուածաբանական Ճեմարանէն: 1868ին ձեռնադրուած է Բալուի հովիւ:

Պաշտօնավարած է Խարբերդի Վարի Թաղի, Մէզրէի, Խուլի գիւղի եւ Մալաթիոյ աւետարանական եկեղեցիներուն մէջ: Մէզրէի մէջ իր ջանքերով կառուցած է փառաւոր նոր եկեղեցի մը: Իր պաշտօնավարութեան շրջանին 1895ի ջարդերուն երկար ատեն նպաստի եւ որբապաշտպան գործերով զբաղուած է:

Պատ. Կիրակոս Խաչատուրեան ունէր արտակարգ սուր յիշողութիւն, իր քարոզներու միջոցին յաճախ Սբ. Գիրքէն վկայութիւններ կ'արտասանէր

յիշողութեամբ ։ Քաջ հմուտ էր գրաբար գրականութեան, ունէր ճոխ հաւաքածոյ մը, Ներսէս Շնորհալիի, Նարեկացիի եւ Մայր եկեղեցւոյ եկեղեցականներու կրօնական գործերը ։ 1913ին կը հրաւիրուի Մալաթիոյ Աւետարանական եկեղեցւոյ հովուութեան ։ Իր առաջին գործը կ'ըլլայ 1895-ի կոտորածէն հրդեհուած եկեղեցւոյ նորոգութիւնը ։ 1915ի համաշխարհային պատերազմի շրջանին, Գերման միսիոնարութիւնը, որ Մալաթիոյ Աւետարանական եկեղեցին կը հովանաւորէր եւ Խարբերդի գայմաքամը, որ իր որդւոյն Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեանի բարեկամն էր, որուն շնորհիւ Փրոֆ. Խաչատուրեանը եւ իր ընտանիքը աքսորէ եւ մահէ փրկուեցան, կը ջանան զինք ալ պաշտպանել, սակայն կը մերժէ անոնց միջամտութիւնը, եւ կը նախընտրէ միանալ իր հօտի աքսորեալ խումբին, քանի որ անոնք առաւել եւս կարօտ էին այս ճգնաժամային օրերուն իր հոգեւոր մխիթարութեան եւ քաջալերութեան ։ Իր խումբին հետ կը նահատակուի Մալաթիոյ մօտակայ շրջանները ։



Պատուելի Կիրակոս Խաչատուրեան

ՊԱՏ. ՏՐԴԱՏ ԹԱՄՋԱՐԵԱՆ ։ Իշմեցի, որ 1892-ին Եփրատ Գոլէճի աւարտականներէն է ։ Քարոզած է Մօրէնիկի, երկար ատեն Փէրչէնճի եւ Մալաթիոյ եւ Քղիի եկեղեցիներուն մէջ (Յիշատ. Եփրատ Գոլէճի էջ 56) ։ 1905-ին յաջորդած է իբրեւ հովիւ Մալաթիոյ Պատ. Մարտիրոս Կիրակոսեանի անոր Ամերիկա մեկնելէն վերջ ։ Թէեւ Կար. քհնյ. Պէննէեան բսած է որ 2-3 տարի պաշտօնավարելէ յետոյ դադրած է, սակայն հաւանօրէն ճիշդ չէ ։ Եփրատ Գոլէճի յիշատակարանը (էջ 193) կը հաստատէ թէ տասը տարի պաշտօնավարած է Մալաթիա, եւ կը ճշդէ անոր զանազան քաղաքներու մէջ պաշտօնավարութեան տարիները, որոնք աւելի հաւանական կը թուին ։

Պէննէեան քահանայ կը ներկայացնէ զինքը 1912-ին Գերմանական որբանոցին Հայրիկը եւ գործակալը, սակայն ճիշտ չի թուիր ։ Եփրատ Գոլէճի յիշատակարանը անոր կեանքին վերջին երկու տարիները զայն կը ներկայա-

ցընէ Նիըր Իսթ Ըըլիֆի գործակատար եւ որբերու հայրիկ: Վախճանած է 1919–ին (Յիշատակարան Եփրատ Գոլէճի, էջ 198 եւ Յուշարձան էջ 380), եւ ոչ թէ նահատակուած 1915–ին, ինչպէս գրած է Եփրատ Գոլէճի Յիշատակարանը գիրքին ուրիշ մէկ էջին (էջ 56) վրայ:

ՊԱՏ. ԳՐԻԳՈՐ ԳԸՐԳԵԱՇԱՐԵԱՆ: Թէեւ ցինքը ներկայացուցած են Հոլիւ Մալաթիոյ, բայց ան եղած է օգնական քարոզիչ Պատ. Մարտիրոս Կիրակոսեանի եւ դասատու քանի մը տարի: 1895ի կոտորածէն յետոյ մեկնած է Մալաթիայէն: Ան Յունիս 1892ին շրջանաւարտ եղած է Մարաշի Աստուածաբանական Ճեմարանէն եւ եղած նախ արտօնեալ քարոզիչ (Լուսաշաւիղ 372):



**Պատ. Գրիգոր Գրգեաշարեան**
**եւ**
**Պատ. Աստուր Թօփալեան**

Պաշտօնավարած է Նէվշէհիր, Ստանոզ եւ վերջապէս 1918 Յունիս 22–ին երէց ձեռնադրուած է Կարնոյ Աւետարանական եկեղեցիին վրայ (Լուսաշաւիղ 311): Յետոյ փոխադրուած է Մալաթիա:

1918–ի զինադադարէն վերջ անցած է Կիլիկիա եւ Հաճընի պատուելի եղած է: 1915ի համաշխարհային պատերազմին աքսորուելով նահատակուած է:

---

## ՄԱԼԱԹԻՈՅ ԳԱՒԱՌԻՆ ՀԱՅ-ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆՆԵՐԸ

Մալաթիոյ շրջակայ մի քանի քաղաքներուն մէջ տարածուած էր բողոքականութիւնը: Այսպէս, Ադըեամանի կամ Հիւսնի Մանսուրի եւ Պէհեսնիի մէջ գոյութիւն ունէին պզտիկ Աւետարանական համայնքներ, իրենց սեփական հովիւներով:

### ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ կամ ԱՏԸԵԱՄԱՆ

Ադըեաման կամ Հիւսնի Մանսուր, Տաւրոսէն հարաւ հայախօս վայր մըն է ուր նախապէս Խարբերդի շրջանակէն քարոզիչներ գործած էին, բայց յետոյ Կիլիկիոյ Միութեան յարած, մինչ Մալաթիա մնացած էր Խարբերդի կապուած (Լուսաշաւիղ, էջ 129 եւ 134): Նախնական կազմակերպութիւնը

1863ին է (Յուշարձան 317)։ 1873ին վերակազմուած է (Յուշարձան 371)։ Հոն պաշտօնավարած են իբրեւ հովիւ․

ՊԱՏ․ ՅԱԿՈԲ ՔԷՇԻՇԵԱՆ։ Ծնած է Մարաշ 1855–ին, իր ուսումը առած է Մարաշ եւ բաւական տարիներ ժողովական եկեղեցիներու մէջ քարոզութիւն բրած է։ Այդ շրջանին է որ պահ մը գտնուած է Հիւսնի Մանսուր։

1895ին Հայկական ջարդերու նախօրեակին, շրջան մը կը կատարէ Հաճըն, Մարաշ եւ Այնթապ եւ կը նախատեսէ վերահաս աղէտը։ Հետեւաբար ինքն ալ կը մասնակցի Տէօրթ Եօլը ամրացնելու եւ հաւանական պաշտպանութեան համար դիրքեր որոշելու գործին։ Թրքական խուժումին դէմ Տէօրթ Եօլի ինքնապաշտպանութեան կը մասնակցի 60 ձիաւորներու գլուխը անցած, տկարացող ճակատի օգնութեան հասնելով։ Ասոր համար զինքն կոչած են «հրացանակիր պատուելի» (Յուշարձան էջ 335)։

1899–ին եւ ոչ թէ 1896ին ինչպէս գրած է Լուսաշաւիղ էջ 309, կը հրաւիրուի Մարաշի եպիսկոպոսական կամ Անկլիքան եկեղեցիին իբր քարոզիչ։ 1901–ին երէց կը ձեռնադրուի Անկլիքան դաւանութեան յարած Մկրտիչ Եպս․ Շահինեանէ եւ իր տան մէջ պաշտամունք կը կատարէ։ Յետոյ Մարաշի Պէքթութիւէ Թաղին մէջ տուն մը կը գնեն, զոր կը գործածեն իբրեւ եկեղեցի եւ դպրոց։ Պատ․ Յակոբ Քէշիշեան ի զուր կ՚աշխատի Անկլիքան եկեղեցիին աջակցութեամբ զօրացնել իր եկեղեցին, բայց դրական արդիւնք մը ձեռք չի կրնար բերել։

Վեր․ Եղիա Քասունի կ՚ըսէ թէ 1906ին շրջանաւարտ եղած է Մարաշի Աստուածաբանական վարժարանէն (Լուսաշաւիղ էջ 305)։

1912 Դեկտեմբեր 21ին մեռած է 56 տարեկան (Լուսաշաւիղ էջ 309)։

ՊԱՏ․ ԳՐԻԳՈՐ ԳԱՋԱՆՃԵԱՆ։ Նախապէս Հիւսնի Մանսուր պաշտօնավարելէ վերջ, նաեւ պաշտօնավարած է Եդեսիա, Քեսապ եւ Մանիսա։



Պատ. Վարդան Նաճարեան



Պատ. Տիգրան Գունտաճեան
եւ
Պատ. Ներսէս Գույումճեան

ՊԱՏ․ ՎԱՐԴԱՆ ՆԱՃԱՐԵԱՆ։ Նախապէս պաշտօնավարած է իբր հովիւ Պէյլան (1909) եւ յետոյ փոխադրուած է Ատըեաման։ 1910ին Այնթապի հովիւն էր երբ մեռաւ (Լուսաշաւիղ 266 եւ 302)։

ՊԱՏ․ ՏԻԳՐԱՆ ԿՈԼՈՏԵԱՆ։ Իր առաջին հովուական պաշտօնին

ձեռնարկած է Հիւսնի Մանսուր։ Պատ. Կոլոտեան որ Առաջին աշխարհամարտին զինադադարէն ետք Էյպէզ կը պաշտօնավարէր (Լուսաշաւիղ էջ 427) 1922–ին Կ. Պոլիս եկած էր (Լուսաշաւիղ էջ 448) եւ Սամաթիա կը քարոզէր։ Վերջապէս գնաց Ամերիկա Քլիվլէնտ։

ՊԱՏ. ՆԵՐՍԷՍ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ։ Հիւսնի Մանսուրի հովիւն էր 1909ին եւ Օսմանիյէի մէջ նահատակուեցաւ Ատանայի ջարդին(Լուսաշաւիղ էջ 264)։

ՊԱՏ. ՍԵԴՐԱՔ ԷՔՄԷՔՃԵԱՆ։ Այնթապցի. 1906–ին շրջանաւարտ եղած է Խարբերդի Աստուածաբանական Ճեմարանէն (Լուսաշաւիղ էջ 305)։ Քարոզիչ Խույլուի եւ Կարմըրի, ինչպէս նաեւ Այնթապի (Յիշատակարան Եփրատ Գոլէճի էջ 58)։ Ուրֆայի հովիւ էր 1909ին։ Սպաննուեցաւ այդ թըւականին Օսմանիյէ (Ճոյն 244), եւ ոչ թէ 1915–ին ինչպէս Եփրատ Գոլէճի Յիշատակարանը գրած է։

ՊԵՀԵՍՆԻ

Մալաթիոյ վիճակին պատկանող այս վայրին մէջ ալ բողոքականութիւնը քարոզուած էր, եւ 1873ին կազմուած էր եկեղեցի մը (Յուշարձան 318 եւ 471)։

Հոն պաշտօնավարած են.

ՊԱՏ. ԳՐԻԳՈՐ ԳԱՉԱՆՃԵԱՆ։ Ինչպէս ըսուեցաւ նախապէս պաշտօնավարած է Հիւսնի Մանսուր եւ ետքը Եղեսիա, Քեսապ եւ Մանիսա։

ՊԱՏ. ՃՐՐՃԻ ՇԱՄՄԱՍ։ Ծագումով Ասորի, Ուրֆայի եկեղեցիին նախկին մէկ սարկաւագին որդին էր։ Գործած էր նաեւ Հայոց մէջ (Լուսաշաւիղ էջ 315)։ Երբ1903ին Ասորի բողոքականներուն եկեղեցին անջատուեցաւ, ինքն ալ հոն ծառայել սկսաւ (Լուսաշաւիղ էջ 215)։ 1909ին Կիլիկիոյ միութեան ժողովին գալու ատեն ուրիշ շատ մը պատուելիներու հետ նահատակուեցաւ (Լուսաշաւիղ էջ 264)։

ՊԱՏ. ԱՍԱՏՈՒՐ ԹՕՓԱԼԵԱՆ։ 1894էն առաջ պատուելի եղած է։ 1909–ին Չէքէի (Վահկայ) հովիւ էր։ Կիլիկիոյ միութեան ժողովին գալու ատեն սպաննուած է Սայ Կէչիտ (Լուսաշաւիղ էջ 265) իր կնոջ հետ, որ իրր կին գործիչ միութեան ժողովին մասնակցելու կ'երթար։

ՊԱՏ. ՏԻԳՐԱՆ ԳՈՒՆՏԱՔՃԵԱՆ։ Պեհեսնիէ վերջ փոխադրուած է Քէսապ (Լուսաշաւիղ 266) ուր մեռած է 1916 Հոկտ. 10–ին (Ճոյն 421)։ Հոն ձեռնարկած է 1912ին փառաւոր եկեղեցիի մը շինութեան որ չէ կրցած լրացնել (Ճոյն 514)։

ՊԱՏ. ՄԱՆՈՒԿ ՆԻԿՈՂՈՍԵԱՆ։ Կը յիշատակուի Պատ. Ատանալեանէ իբր հովիւ Պեհեսնիի։ Իր մասին կենսագրական ոչ մէկ տեղեկութիւն կըրցայ ունենալ։

# ՀԱՅ-ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ

*Մալաթիոյ Հայ-Աւետարանական համայնքը ունէր երեք դասեան դըպրոց մը մանկարանով, կրթարանով եւ վարժարանով։*

*Մալաթիոյ բողոքականները, նոյնիսկ իրենց կազմակերպութեան առաջին տարիներուն, ունեցած են իրենց առանձին սեփական դպրոցը, ինչպէս կը հաստատուի Մարտիրոս Իգնատիոսեանի մէկ յիշատակագրութենէն (տես Արտաւազդ Արքեպ.* Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Հալէպի. *Բ. հատոր էջ* 97)։

*Մարտիրոս Իգնատիոսեան* 1867 *Դեկտ.ին հոն կը պաշտօնավարէր իրբեւ ուսուցիչ եւ տարի մը վերջ* (1868 *Դեկտ.*) *կը հեռանար։ Անիկա ծնած էր* 1842*ին Ակն ուր առած էր իր նախնական ուսումը տեղւոյն Ներսէսեան եւ Նարեկեան դպրոցներուն մէջ եւ յետոյ անցած է Խարբերդ։* 1860*ին գացած է Ակն ուր շարունակած է իր ուսումը։* 1862*ին գացած է Ատրեաման իր եղբօրը Յակոբի քով եւ* 1863*ին յարած է բողոքականութեան։* 1866*ին կը դառնայ Ակն ուր կը հալածուի իբր* Բրօտ, *վեց ամիս վերջը կ'երթայ Մալաթիա վաճառականութիւն ընելու համար, սակայն, հոն, ինչպէս բացատրուեցաւ ուսուցիչ կ'ըլլայ եւ ապա կ'անցնի իր ծննդավայրը Ակն, ապա Խարբերդ ուր կ'աշակերտի Աստուածաբանական ճեմարանին։* 1871*ին Ակնայ մէջ կը կազմակերպէ Աւետարանական համայնքը եւ ինքը կ'ըլլայ անոր առաջին պատուելին՝* 1875–*ին*։

1881*ին Այնթապի Գոլէճին հայերէն լեզուի դասախօս կ'ըլլայ* (Լուսաշաւիղ 383—4)։ *Յետոյ կրկին Ակն կը պաշտօնավարէ եւ անկէ* 21 *Յունիս* 1893*ին Կիլիկիոյ Միութեան ժողովին կը ղրկէ* «Հայր Մաշտոց եւ Լուսաւորչական եկեղեցւոյ վարդապետութիւնը» *խորագրով հմտալից գրութիւն մը* (Լուսաշաւիղ 180)։

*Պաշտօնավարած է նաեւ իբր հովիւ Մարզուան, Այնթապ, Իզմիր եւ Նիկոմիդիա* (Յուշարձան *էջ* 490)։ *Ունի շահեկան գիրք մը* «Հանդէս Լուսաւորչական եւ բողոքական Հայոց որ ի Տաճկաստան» (*Կ. Պոլիս* 1880)։

*Ուրեմն Մալաթիոյ Հայ Աւետարանականները* 1860*ական թուականներէն սկսեալ ունեցած են իրենց դպրոցները եւ* 1880*ական թուականներէն ետք այնքան զօրացած էր որ նման Խարբերդի շրջանակին պատկանող Չնքուշի, Խույլուի, Խուլագիւղի, Արաբկիրի եւ Ակնայ եկեղեցիներուն այլեւս Պորտէն օգնութիւն չէին ստանար։*

*Ըստ* V. Guinet*ի ունէին բարձրագոյն վարժարան մը* 20 *մանչ եւ* 5 *աղջիկ աշակերտի համար եւ մէկ դասարան միայն։ Դպրոցին պիւտճէն էր* 30 *ոսկի, որ ժողովուրդը ինքը կը հայթայթէր։*

*Սակայն* 1895*ի սոսկալի պատահարը որ որքան հայոց, նոյնքան թուրքերուն սուղի նստած էր, քայքայեց քաղաքին տնտեսական կեանքը եւ Հայ բողոքականները, մնացին կրկին կարօտ Պորտին աջակցութեան։ Այնպէս որ Խարբերդի միսիոնարները ստանձնած էին Մալաթիոյ Հայ Աւետարանական դպրոցին ծախքերու կէսը։*

Մկրտիչ Ս. Որբերեան որ 1895ի ջարդէն միայն հինգ տարի ետքը 1900ին այցելած է Մալաթիա, կը գրէ թէ «բողոքականները կը կառավարեն առանձին արական եւ իգական երկու վարժարաններ, իւրաքանչիւրին մէջ երեքական ուսուցիչ եւ ուսուցչուհի կան: 204 տղայ եւ 170 աղջիկ կը յաճախեն: Վարժապետներուն կը վճարուի տարեկան 4560 դհկ· եւ վարժուհիներուն 1920 դհկ· համագումար 6480 դհկ·» (Բիւրակն· 1900 էջ 85):

Նոյն թուականի Հայ Առաքելականներու դպրոցը ունէր 8 ուսուցիչ եւ մէկ վարժուհի, եւ թիւով աւելի աշակերտ, սակայն երկսեռ ուսուցչութեան կը վճարուէր 7680 դրշ·, որով կը հաստատուի թէ ուսուցիչները աւելի լաւ կը վճարուէին բողոքականաց վարժարանին մէջ:

Թերեւս այս խակ պատճառով, հակառակ անոր որ ըստ Մ· Ս· Որբերեանի (Բիւրակն 1900 էջ 86) «ընդհանուր առմամբ կրթական հաստատութիւնները անգոհացուցիչ վիճակի մը մէջ» կը գտնուէին, «սակայն բաղդատաբար առաջին բարենիշը բողոքականներուն եւ երկրորդը լատիններուն վարժարանները կ'առնեն»:

Յ· Ն· Շէքէրճեան ալ կը հաստատէ թէ Հայ Աւետարանական երկսեռ դպրոցները ունեցած են փայլուն շրջաններ, 1895էն առաջ, իրենց դպրոցը Թրքական վանտալականութեան զոհ երթալէ վերջ, 1900ին Մ· Ս· Որբերեան լաւ կը խօսի անոնց վրայ, մինչ Կարապետ քհնյ· Պէննէեան (Ը· էջ 72) ինչպէս յիշեցի 1912ին «քանի մը ներքնայարկ ծածքեր» լեցուած ցոյց կու տայ երկսեռ ուսանողները, որոնք «բացի կրօնական դասերէն, յարանուանութեանց դպրոցներու մէջ ալ կ'ուսուցուին եւ կ'աւանդուին գրեթէ միեւնոյն դասերը ու լեզուները» (Ը· էջ 74):

Նոյն քահանան իր գործին մէջ կը վկայէ թէ բողոքականներն ալ 1906էն ետք, այսինքն Հայոց Առաջնորդարանին նախաձեռնութեամբ մանկապարտէզ մը բացուելէն ետք, բացին մանկապարտէզ մը, բայց հազիւ երկու տարի տեւեց եւ փակուեցաւ (Ը· էջ 74):

Հայ Աւետարականներու երկսեռ վարժարանին մէջ պաշտօնավարած են բաւական թիւով ուսուցիչներ, մեծ մասամբ աշակերտներ Եփրատ Գոլէճի (Տեղեկ· Պ· Խօսրով Պոնարբրթեան):

Այսպէս կը յիշուի·—

1·— Պատ· Յովհաննէս Պէշկէօթիւրեան, Խարբերդցի 1880ին շրջանաւարտ Եփրատ Գոլէճի:

2·— Պատ· Կարապետ Մանաւեան, Ակնցի, 1883ի շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն· 1885—87ին Մալաթիոյ մէջ իբր ուսուցիչ պաշտօնավարած է: 1888ին գաղթած է Ամերիկա եւ գործօն դեր կատարած է Աւետարանական համայնքին մէջ: Հոն հետեւած է նաեւ ուսման Շիքակոյի Աստուածաբանական ճեմարանին ու հոգեբանութեան եւ փիլիսոփայութեան Lake Forest Համալսարանին մէջ: Ամերիկեան զանազան քաղաքներու մէջ հովուական պաշտօններ վարած է (տես Յիշատ· Եփրատ Գոլէճի էջ 185): Եղած է խըմ—

բադէր կոչնակի, հիմնադիրներէն Հայ. Աւետ. Միութեան, պատուոյ անդամ Հ. Բ. Ը. Միութեան: Վախճանած է 1939-ին Ֆաուլըր:

3.— Բրօֆ. Կարապետ Պէշկէօթիւրեան, Խարբերդցի, եւ անդրանիկ շրջանաւարտներէն Եփրատ Գոլէճի: Երեք տարի Մալաթիա ուսուցիչ եղած է: 25 տարի պաշտօնավարած է Իզմիրի միջազգային Գոլէճին մէջ իբրեւ հայերէն լեզուի եւ գրականութեան դասախօս: Յետոյ գաղթած է Ամերիկա, ուր մեռած 1941-ին Տիթրոյիթ: Աշխատակից հայ թերթերու:

4.— Պատ. Առաքել Թայեան, Մալաթիացի, Խարբերդի Աստուածաբանական վարժարանէն 1887ին վկայուած:

5.— Պատ. Վարդան Ամիրխանեան, Ուրֆացի, Եփրատ Գոլէճէն եւ ապա Մարաշի ճեմարանէն շրջանաւարտ (1902): Ձեռնադրուած է հովիւ 1903ին Տիարպէքիր: (Կենս. տես Յիշատակարան Եփրատ Գոլէճի էջ 466): Մալաթիոյ ուսուցչութեան մասին ուրիշ տեղէ մը ծանօթ չեմ:

6.—Գրիգոր Խոթխոթեան, Մալաթիացի, կրթութիւնը ստացած է Մալաթիոյ մէջ: Նահատակուած 1895ի ջարդին:

7.— Աստուր Եղօեան, Խույլուցի, Եփրատ Գոլէճէն 1890ին վկայուած: Խարբերդ երկու տարի ուսուցիչ: 1894-ին Մարաշի Աստուածաբանական ճեմարանը կ'աւարտէ: Մալաթիոյ ուսուցչութիւնը կը յիշէ Պ. Խ. Պօնաբարթեան: Ուսուցիչ Եփրատ Գոլէճի Աստուածաբանական եւ գերման ճեմարանին: Շրջած է իբրեւ Աւետարանիչ Կիլիկիոյ գաւառին եկեղեցիները: 1937-ին մեռած է Տիթրոյիթի մէջ:

8.— Սիրական Սիրականեան, Արաբկիրցի:

9.— Գրիգոր Թաշճեան, Մալաթիացի, յետոյ քահանայ:

10.— Խորէն (Թերզեան) Գալընեան, Քէսրիկցի, 1899ին վկայուած Եփրատ Գոլէճէն: Մէկ տարի ուսուցիչ:

11.— Աբրահամ Պօղիկեան, Հիւսէյնիկցի, 1899-ին վկայուած նոյն Գոլէճէն:

12.— Աւետիս Նահիկեան, Հիւսէյնիկցի, 1901ին Եփրատ Գոլէճէն շըրջանաւարտ: Մէկ տարի Մալաթիա ուսուցիչ եղած է Հայ Աւետարանականաց վարժարանին:

13.— Յովհաննէս Սերկիճեան, Հիւսէյնիկցի, 1906ին շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն. մէկ տարի ուսուցիչ Մալաթիա:

14.— Տիգրան Տիրատուրեան, Ագընցի, 1906ին շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն: Մէկ տարի ուսուցիչ:

15.— Մանասէ Ալթունեան, Այնթապցի. Այնթապ գոլէճէն:

16.— Արմենակ Սառաճեան, Բերթակցի. Եփրատ Գոլէճէն:

17.— Միհրան Թէրխանեան, Մալաթիացի, 1909ին Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ:

18.— Եդուարդ Պաղտօեան, Մալաթիացի, 1913ին Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ:

Մալաթիոյ Հայ Բողոքականները դժբախտաբար չունէին կանոնաւոր կազմակերպութիւն։

1900ին Մկրտիչ Որբերեան (Բիւրակն, 1900 էջ 99) կը գրէ թէ բողոքականներու ազգային ժողովը գոհացուցիչ վիճակ չունի, բայց իբր բարենշան երեւոյթ մը մատնանիչ եղած է, ինչ որ ճշմարիտ իրողութիւն մըն է շատ կանուխէն, այսինքն նոյնիսկ 1879էն սկսեալ բողոքականք «գրեթէ անխտիր են իրենց հայադաւան եղբարց հետ»։

Նոյնիսկ Սահակ Կաթողիկոս Խապայեան իր Մալաթիա այցելութեան ատեն հրաւիրուած է Հայ բողոքականներու ժողովարանը եւ հոն քարոզած է։

## ԱՂԱՆԴԱՒՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ

Ինչպէս շատ մը տեղերու մէջ տեսնուած է կարգ մը մարդիկ մոլեռանդութիւն արծարծելով, ուզած են շահագործել ժողովուրդը։

Այս տեսակ շարժումներու օրօրան եղած է գլխաւորապէս Կիլիկիա եւ մասնաւորապէս Այնթապ, ուրկէ ծնած են տեսակ տեսակ աղանդներ։

Ասոնց ամէնէն գլխաւորն էր «Քրիստոսասիրաց Ընկերութիւնը» որ հիմնուած էր 1896ին Համիտեան ջարդերէն քիչ ետքը, Հայաստանեայց եկեղեցիին հետեւորդներէն եւ շուտով տարածուած (տես Յուշարձան էջ 323–325)։

Այս շարժումը հասաւ նաեւ եթէ ոչ Մալաթիա, գէթ անոր թեմերէն Ատըեաման (Յուշարձան 325) ուր ունէր հետեւորդներ։

Կարապետ քհնյ. Պէննէեան (Ը. 71–72) կը յիշէ նաեւ մի քանի աղանդաւորներու թափթփուքներ. իր գործին մէջ կը կարդանք թէ «Մալաթիոյ բողոքականները 70–80 տունի չափ են որոնց մէջ մէկ երկու տուն Մկրտչական կենալուն պէս, վերջերս[1] 8–10 տուն «շաբաթականներ» (հիմա Շաբաթապահներ Ա. Ա.) ալ երեւան եկան։ Կրօնապէս արդէն շաբաթացած ժողովուրդը աղմկելու համար», սակ վասնզի «համարեայ կարելի է ըսել, որ անոնց ճիգերը անցած են ապարդիւն եթէ չհաշուենք մատի վրայ համրուող 4–5 ընտանիքները, որոնք դաւանափոխ եղած էին ինչ ինչ շէլ նպատակներով։ Նորընծաները կ'ենթարկուէին ժողովրդեան եւ մասնաւորապէս իրենց բաժնուած եկեղեցւոյն անդամներուն արհամարհանքին եւ զգուշութեամբ կ'ընտրէին իրենց աղօթատեղիները, փողոցի տղաքներու կողմէ չքարկոծուելու համար» (Նախճիրներ 49)։

Տխուր եւ ցաւալի պատկեր մը որ քիչ մը ամէն տեղի համար նոյնը եղած է։

---

(1) Ըստ Գէորգ Մելիտինեցիի՝ Շաբաթապահները Մալաթիոյ մէջ քարոզչութեան սկսած են 1908-էն վերջ (Նախճիրներ, էջ 49)։